# Պ Ղ Ա Տ Ո Ն Ի

## ՏՐԱՄԱԽՕՍՈՒԹԻՒՆՔ

## ՅԱՂԱԳՍ ՕՐԻՆԱՑ ԵՒ ՄԻՆՈՎԱՅ



Ի Վ Ե Ն Ե Տ Ի Կ
Ի ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆԻ
*1890*

# ՊՂԱՏՈՆԻ

ՏՐԱՄԱԽՕՍՈՒԹԻՒՆՔ

## ՅԱՂԱԳՍ ՕՐԻՆԱՑ ԵՒ ՄԻՆՈՎԱՍ



Ի ՎԵՆԵՏԻԿ

Ի ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆԻ

1890

# ԱԶԴ

Զպղատոնէ և զհայերէն Թարգմանութենէ գրոց նորա ի նախնեաց անտի մերոց վաստակասիրաց, գտցեն լիուլի խնդրողք ի բազմահմուտ յառաջաբանին կարգելոյ ի գլուխ Տրամախօսութեանց մեծի և քաջանուն իմաստասիրին, և ամօք ինչ յառաջագոյն ի մերոց մամլոց ընծայելոց ի լոյս։ Իսկ այժմ, ըստ տուելոյ այնժամու խոստմանս, կարգեմք ի վայելս և յուսումն բանասիրաց ազգիս նաև զգիրս Օրինաց կամ Օրէնսդրութեանց, զմի յընտրելագունից Տրամախօսութեանց նորա, յերկոտասան գիրս, և զանուանեալն Մինովս կամ Յաղագս օրինի։

Այսչափ միայն ի բազմապատիկ երկասիրութեանց Պղատոնի հասին առ մեզ Թարգմանութեամբ նախնեաց. բայց և այնոքիկ ոչ միշտ զերծք ի վրիպակաց գրչաց, և ոչ անեղծք՝ յապականիչ ժանեաց ժամանակին և տարերաց։ Քանզի ի վերայ միոյ եւեթ և անթուական գրչագրի՝ զոր ունիմք ի մատենադարանիս, բռնադատեալք առնել զտպագիրս, և ի համեմատութիւն արկեալ զայն ընդ բնագրին, գտանեմք ուրեք զԹարգմանիչն ոչ այնչափ հմուտ հելլեն բարբառոյ, վասն որոյ և մերթ վրիպեալ յուղիղ և ի բուն ընթերցուածոյ բանից և յիմաստից հեղինակին, թող զբազմագոյն եւս վրիպակս՝ յանհմտութենէ գրչին. որ թէպէտ բոլորագիր ընտիր՝ այլ յոգնախուռն և անճահ կէտադրութեամբքն յաճախ անիմանալի գործեալ զբանսն, զոր ջանացաք ուղղել, որչափ ինչ մարթ եղև մեզ առնել, ի դիւրութիւն ընթերցանելեացն։

Նա և զայս եւս երախտապարտ մտօք և սրտիւ հարկ համարիմք հռչակել աստէն, զի քաջալեր և ձեռնտու ի ծախս տպագրութեան գրոցս երևեցաւ մեզ ուսումնասէր և բազմահմուտ այրն Փրեդերիկ Կ. Կոնիբիար՝ հայագէտ անգղիացի, վարդապետ ի մեծի համալսարանին Օքսֆըրդի։

# ՊՂԱՏՈՆԻ

## ՕՐԻՆԱՑ
## ԵՒ
# ՕՐԷՆՍԴՐՈՒԹԵԱՆՑ

## ԳԻՐՔ ԱՌԱՋԻՆ



ՊԱՏՃԱՌՍ ՏՐԱՄԱԴՐՈՒԹԵԱՆՆ ԱՌ ԱԹԵՆԱՑԻ ՈՄՆ ՕՏԱՐ*,

ԵՒ ԱՌ ԿՂԻՆԻԱՍ ԵՒ ՄԵԳԻԼՈՍ

*Պղատոն.* Աստուած, եթէ այլ ոք 'ի մարդկանէ ձեզ, ով սիրելիք, ընկալաւ զպատճառն զտրամադրութեանն օրինացն:

*Կղինիաս.* Աստուած, ով սիրելի, իբրու է իսկ զարդարագոյնն ասել. առ մեզ իսկ Զեւս, առ Լակեդոմոնացւոցն, ուստի աստ Մեգիլոս[1], թուի ինձ ասել սոցա զԱպողոն. այսպէս է:

*Մեգիլոս.* Այո:

*Պղատոն.* Ապա ուրեմն ըստ Հոմերոսի ասես, իբրու Մինոսի գնալով առ հօրն յամենայն ժամ զուգաւորութիւն 'ի ձեռն իննամեայ ժամանակի[2], ըստ այնոցիկ՝ որ 'ի նմանէն համբաւք՝ դնել քաղաքացն զօրէնսն:

*Կղինիաս.* Ասի իսկ այսպէս առ մեզ. և արդ զեղբայր նորա զՌադամանթիւս, լսեմք անուն արդարոյն ընկալեալ. զսա արդ ասեմք մեք իսկ կրետացիքս[3], վասն յայնժամ իրաւապէս բաշխելոյն զդատաստանսն գով մեծ ընկալեալ:

* Աթենացի օտարականն և՛ հիւրն է, որպէս դնի յայտնի 'ի մերում թարգմանութեան՝ ինքն Պղատոն. զոր և Կիկերոն ասէ յառաջին գիրս Օրինացն:

1 Յոյնն. Ուստի Մեգիլոսն է:

2 Յոյնն. Զիննն ամ հանապազօր առ հայրն երթեալ՝ զրուցել ընդ նմա:

3 Յոյնն. Զեղբայր նորա զՌադամանթիւս, (քանզի լսէք զանունն), գով արդարագոյն. զսա արդ ասեմք մեք իսկ կրետացիքս:

Պղատոն. Եւ ազնիւ իսկ է գովասանութիւնս, այսմիկ որպէս վայելէ որդւոյ Արամազդայ։ Եւ քանզի այսպիսի բարեօք օրինակօք[1] սնուցեալ էք դու իսկ և սա, ակն ունիմ զի ոչ նուազապէս յաղագս քաղաքավարութեան և օրինաց զդեգերումնս առնելով մեր՝ ասել իսկ և լսել համանգամայն ըստ գնալոյս 'ի Ճանապարհի, մինչև ցԱրամազդայ այրն և տաճարն, իբրու լսեմ[2]. և հանգիստք ըստ Ճանապարհին, տապելոյ, վայելչականք մերում հասակիս. և ծառք բարձունք են՝ սաղարթացեալք, և անտառախիտն ստուերացեալ 'ի հովանեաց. և վայել է մեզ հանգստի հանդիպեալ փութապէս, և բանիւք մխիթարել զմիմեանս, և դիւրաւ այսպէս զՃանապարհն ամենայն կատարել։

Կղինիաս. Սակայն է իսկ, ով սիրելի, յառաջագոյն հասանելոյ՝[3] նոճոյ բարձրութիւնք և գեղեցկութիւնք սքանչելի, առ որս հանգուցեալք դեգերեսցուք։

Պղատոն. Ուղղապէս ասես։

Կղինիաս. Յոյժ իսկ, քանզի տեսանելով զայսպիսին՝ յաւետագոյն ասասցուք. այլ գնասցուք բարի պատահմամբ։

Պղատոն. Արդ այսպէս եկեսցես, և ինձ ասասցես թէ զինչ է 'ի միասին երախանսն՝ զոր հրամայեաց օրէնքն, և կրթութիւնս՝ առ սպառազինութեանցն ունակութեան։

Կղինիաս. Թուի ինձ, ով սիրելի, և ամենայնի զմտաւ ածելն դիւրաւ գոլ զմերս. քանզի զգաւառիս մերոյ զԿրիտիոյ տեսանեմք զբնութիւնս, իբրու ոչ է, որպէս թէ ոչ Սաղացւոցն[4] դաշտ։ Վասն որոյ իսկ և նոքա ձիօք յաւէտ վարին, և ընթացմամբ՝ մեք. քանզի սա դժուարին է իսկ, և առ հետևակացն ընթացսն կրթութիւնն յոյժ չափաւոր[5]։ Թեթև արդ

1 Յոյնն. Օրինական կամ օրինաւոր բարուք սնեալ էք։
2 Յոյնն. Իբրև լսեմ, են բաւական, և հանգիստք...
3 Այսինքն՝ յառաջելոյ 'ի Ճանապարհին։
4 Յոյնն. Թեսաղացւոցն։
5 Յոյնն. Եւ 'ի հետևակ ընթացիցն կրթութիւն յոյժ Ճահաւոր։

զէնք 'ի հարկէ մեզ ստանալ 'ի սմա, և ոչ յայնցանէ՝ որ ծանրութիւնք ունին. և արդ աղեղանցն և նետիցն թեթևութիւնն առ այսոքիկ յարմարական մեզ թուի։ Եւ այսոքիկ ամենայն առ պատերազմունսն մեզ պատրաստեալ է. և օրինադիրն, որպէս երևի իսկ ինձ, առ այսոքիկ հայելով՝ կարգաւորէր զամենայն։ Քանզի և երախանս ժողովել այսոքիկ ասացաւ. տեսանելով իբրու ամենեքեան յորժամ 'ի զինուորութեան իցեն, յայնժամ հարկ է առ 'ի նորին իրէ՝ 'ի սակս պահպանութեան իւրեանց երախանիլ ըստ այնմիկ ժամանակին։ Անխոհեմութիւն արդեւք թուի ինձ՝ ապաստան լինել զբազմաց[1] իբրու ոչ ուսողաց՝ եթէ պատերազմ միշտ ամենեցուն 'ի կենցաղումս փոյթ իցէ, առ ամենայն քաղաքս. և թէ պատերազմի իսկ ելոյ, 'ի սակս պահպանութեանն հարկ է ժամանակի կերակրոցն՝ 'ի միում վայրի ժողովել յերախանս. և զոմանս իշխանս, իշխեցեալս, սպառազինեալս գոլով՝ պահապանս նոցունց. այս իսկ և 'ի խաղաղութեան առնելի է։ Քանզի զոր յոլովք 'ի մարդկանէ կոչեն խաղաղութիւն, զայս իսկ անուն միայն գոլ, սակայն գործով առ ամենայն քաղաքս՝ ըստ բնութեան պատերազմ անքարոզ գոլ։ Եւ գրէ արդեւք, եթէ դիտողութիւն արարեալ՝ այսպէս գտցես զկրետացւոցն օրինադիրն։ Իբրու 'ի պատերազմ հայելով յայտնապէս՝ զամենայն զօրինականսն մեզ շարադասեաց. և ըստ այսոցիկ այսպէս պահել աւանդեաց զօրէնսն, իբրու յայլոցն ոչ երբեք յոչ և միոյ 'ի ստացուածոցն գոլ օգտակարութիւն, և ոչ 'ի խորհրդոցն, եթէ ոչ յաղթող իցէ ոք 'ի պատերազմի. այլ զամենայն զյաղթելոցն զինչսն և զբարիսն՝ յաղթողացն լինել։

Պղատոն. Բարեւք, ով սիրելի, երևիս ինձ կրթեալ՝ առ 'ի գիտել զօրինականսն զկրետացւոց։ Բայց զայս ինչ ասա ինձ ևս հաւաստի. զի սահմանս այս՝ որ եդաւ առ 'ի քէն՝ բարեւք քաղաքավարեալ քաղաքիս, թուիս ինձ ասել՝ այսպէս զարդարելով բնակիլ պարտ գոլ,

1 Ցոյնն. Թուի ինձ արդ զանմտութիւն ոմանց կշտամբել՝ իբրու ոչ ուսողաց։

իբրու պատերազմաւ յաղթել այլոց քաղաքաց։

Կղինիաս. Ցոյժ իսկ և կարծիս գոյ ինձ, թէ և Մեգիլլոսի այսպէս թուի։

Մեգիլոս. Եւ ո՞րպէս արդեւք տացէ ա՞յլպէս պատասխանի, ով աստուածայինդ, 'ի լակեդեմոնացւոց ոք՝ որ և իցէ։

Պղատոն. Եւ ո՞րպէս արդեւք. քաղաքաց իսկ առ քաղաք ուղղապէս ա՞յս են, գեղ առ գեղ իսկ ա՞յլ իցէ։

Կղինիաս. Ոչ։

Պղատոն. Այլ նո՞յնս իսկ է։

Կղինիաս. Այո։

Պղատոն. Եւ զի՞նչ է. տուն առ տուն՝ այնոցիկ որ 'ի գիւղն իցեն, և առն առ առն միոյ, նո՞յնպէս է տակաւին։

Կղինիաս. Նոյնդ իսկ։

Պղատոն. Եւ ինքեան առ ինքեան՝ որպիսի՞ ինչ է. իբրու առ մարտուցելոյ ընդ ինքեան տրամախորհել պարտ է, թէ ո՞րպէս տակաւին ասիցեմք։

Կղինիաս. Ո՛վ սիրելի աթենացի, զի ոչ կամիմ ատտիկեցի արդեւք առասել զքեզ. քանզի թուի՛ ինձ աստուծոյ մականուանութեան արժանի գոլ, կամ մականուանիլ մանաւանդ. քանզի զբանս առ սկզբանն ուղղապէս վերստին ածելով՝ հաւաստի արարեր. իբրու դիւրաւ վերստին գտցես՝ զոր ինչ այժմ առ 'ի մէնջ ուղղապէս ասացաւ, մարտուցեալ գոլն զամենեսեան ամենեցուն հրապարակաբար և յատկապէս, և զիւրաքանչիւրս ինքեանց անձանց իւրեանց։

Պղատոն. Որպէս ասացեր, ով սքանչելի։

Կղինիաս. Եւ աստանօր, ով սիրելի, յաղթելն ինքեան անձին իւրոյ՝ յամենայն յաղթութեանցն նախկին է և արիագոյն, և պարտիլն ինքեան յինքենէ՝ յամենայն պարտութեանց յոռին է համանգամայն և չարագոյն. զի այսոքիկ՝ իբրու պատերազմ գոյ իւրաքանչիւրում 'ի մէնջ առ մեզ ինքեանս՝ նշանակէ։

Պղատոն. Դարձեալ այսուհետև զբանս դարձուսցուք. քանզի մի ոք իւրաքանչիւր ոք 'ի մէնջ լաւագոյն ան-

ձին իւրոյ, և միւսն նուազագոյն է, որպէս՝ ասասցուք զտուն և զգեւղ և զքաղաք զնոյնս ունել յինքեան, եթէ չասասցուք[1]:

Կղինիաս. Զյաւագո՞յն գոլն ուրուք անձին իւրոյ ասես, և զնուազագո՞յնն:

Պղատոն. Այո:

Կղինիաս. Եւ զայս ուղղապէս հարցեր. քանզի յոյժ է այս ինչ յայտնապէս և ոչ նուազաբար՝ առ քաղաքսըն. քանզի որչափ վեհագոյնքն յաղթիցեն յոլովիցն[2] և վատթարագունիցն, ուղղաբար արդեւք լաւագոյն անձին իւրոյ այս թուեսցի քաղաքս, և գովեսցի արդեւք յանժամ արդարապէս այսպիսի յաղթութեամբս. և զներհականսն կրէ՝ յորժամ ներհակքն հանդիպիցին:

Պղատոն. Իսկ արդ եթէ իցէ երբեք վատթարագոյնն վեհագոյն ուրուք լաւագունին, թողուցումք այժմ զայս, քանզի երկարագոյն բանի կարօտանայ. բայց զասացեալս առ 'ի քէն այժմ ուսանիմ, իբրու երբեք քաղաքացիք ազգակիցք և 'ի նորին քաղաքէ լեալք, ապիրատք և բազումք 'ի միասին եկեալք՝ զսակաւագոյնք արդարք բռնադատեսցին՝ զի ընդծառայութեամբ արկցեն. և յորժամ յաղթիցեն իսկ՝ քաղաքն այն ինքեան նուազ[3] ուղղապէս ասասցի արդեօք համանգամայն և չար, և յորժամ յաղթիցին՝ վեհագոյն և բարի:

Կղինիաս. Եւ յոյժ է անտեղի, ով սիրելի, այժմ ասացեալդ. սակայն խոստովանել այսպէս՝ հարկաւորագոյն է:

Պղատոն. Հուպ լեր արդեւք և զնոյնս դարձեալ խնդրեսցուք. բազում եղբարք ուրեք եղիցին արդեւք միոյ առն և միոյ կնոջ որդիք, և արդ սքանչելի ոչ ինչ է՝ զյոլովսն 'ի սոցանէ ապիրատք լինել, և զսակաւսն՝ արդարք:

1 Յօրինակին՝ էնէ ասասցուք:
2 Յօրինակին՝ վեհագոյնքն յոլովիցն, ուղղեցաք ըստ յոյն բնագրին:
3 Այսինքն՝ ինքն պարտեալ յինքենէ:

# Պ Ղ Ա Տ Ո Ն Ի

ՏՐԱՄԱԽՕՍՈՒԹԻՒՆՔ

# ՅԱՂԱԳՍ ՕՐԻՆԱՑ ԵՒ ՄԻՆՈՎԱ



Ի ՎԵՆԵՏԻԿ

Ի ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆԻ

1890

# ԱԶԴ

Զ Պղատոնէ և զՀայերէն թարգմանութենէ գրոց նորա ի նախնեաց անտի մերոց վաստակաւորաց, գտցեն լիուլի խնդրողք ի բազմահմուտ յառաջաբանին կարգելոյ ի գըլուխ Տրամախօսութեանց մեծի և քաջանուն իմաստասիրին, և ամօք ինչ յառաջագոյն ի մերոց մամլոց ընծայելոց ի լոյս։ Իսկ այժմ, ըստ տուելոյ այնժամու խոստմանս, կարգեմք ի վայելս և յուսումն բանասիրաց ազգիս նաև զգիրս Օրինաց կամ Օրէնսդրութեանց, զմի յընտրելագունից Տրամախօսութեանց նորա, յերկոտասան գիրս, և զանուանեալն Մինովս կամ Ցաղագս օրինի։

Այսչափ միայն ի բազմապատիկ երկասիրութեանց Պղատոնի հասին առ մեզ թարգմանութեամբ նախնեաց. բայց և այնոքիկ ոչ միշտ զերծք ի վրիպակաց գրչաց, և ոչ աներծք՝ յապականիչ ժանեաց ժամանակին և տարերաց։ Քանզի ի վերայ միոյ եւեթ և անթուական գրչագրի՝ զոր ունիմք ի մատենադարանիս, բռնադատեալք առնել զտպագիրս, և ի համեմատութիւն արկեալ զայն ընդ բնագրին, գտանեմք ուրեք զթարգմանիչն ոչ այնչափ հմուտ հելլեն բարբառոյ, վասն որոյ և մերթ վրիպեալ յուղիղ և ի բուն ընթերցուածոյ բանից և յիմաստից հեղինակին, թող զբազմագոյն եւս վրիպակս՝ յանհմտութենէ գրչին. որ թէպէտ բոլորագիր ընտիր՝ այլ յոգնախուռն և անճահ կէտադրութեամբքն յաճախ անիմանալի գործեալ զբանսն, զոր ջանացաք ուղղել, որչափ ինչ մարթ եղև մեզ առնել, ի դիւրութիւն ընթերցանելեացն։

Նա և զայս եւս երախտապարտ մտօք և սրտիւ հարկ համարիմք հռչակել աստէն, զի քաջալեր և ձեռնտու ի ծախս տպագրութեան գրոցս երևեցաւ մեզ ուսումնասէր և բազմահմուտ այրն Փրիդերիկ Կ. Կոնիբիար՝ Հայագէտն անգղիացի, վարդապետ ի մեծի համալսարանին Օքսֆըրդի։

# ՊՂԱՏՈՆԻ

## ՕՐԻՆԱՑ

## ԵՒ

# ՕՐԷՆՍԴՐՈՒԹԵԱՆՑ

## ԳԻՐՔ ԱՌԱՋԻՆ



### ՊԱՏՃԱՌՍ ՏՐԱՄԱԴՐՈՒԹԵԱՆՆ ԱՌ ԱԹԵՆԱՑԻ ՈՄՆ ՕՏԱՐ*, ԵՒ ԱՌ ԿՂԻՆԻԱՍ ԵՒ ՄԵԳԻԼԼՈՍ

Պղատոն. Աստուա՞ծ, եթէ այլոք 'ի մարդկանէ ձեզ, ով սիրելիք, ընկալաւ զպատճառն զտրամադրութեանն օրինացն։

Կղինիաս. Աստուած, ով սիրելի, իբրու է իսկ զարդարագոյնն ասել. առ մեզ իսկ Զեւս, առ Լակեդոմոնացւոցն, ուստի ասէ Մեգիլլոս[1], թուի ինձ ասել սոցա զԱպողոն. այսպէս է։

Մեգիլլոս. Այո։

Պղատոն. Ապա ուրեմն ըստ Հոմերոնի ասես, իբրու Մինոսի գնալով առ հօրն յամենայն ժամ զուգաւորութիւն 'ի ձեռն իննամեայ ժամանակի[2], ըստ այնոցիկ՝ որ 'ի նմանէն համբաւք՝ դնել քաղաքացն զօրէնսն։

Կղինիաս. Ասի իսկ այսպէս առ մեզ. և արդ զեղբայր նորա զՌադամանթիւս, լսեմք անուն արդարոյն ընկալեալ. զսա արդ ասեմք մեք իսկ կրետացիքս[3], վասն յայնժամ իրաւապէս բաշխելոյն զդատաստանսն գով մեծ ընկալեալ։

* Աթենացի օտարականն և՛ հիւրն է, որպէս դնի յայտնի 'ի մերում թարգմանութեանն՝ ինքն Պղատոն. զոր և Կիկերոն ասէ յառաջին գիրս Օրինացն։

1 Յոյնն. Ուստի Մեգիլոսն է։

2 Յոյնն. Զիննն ամ հանապազօր առ հայրն երթեալ՝ զրուցել ընդ նմա։

3 Յոյնն. Զեղբայր նորա զՌադամանթիս, (քանզի լսէք զանունն), գով արդարագոյն. զսա արդ ասեմք մեք իսկ կրետացիքս։

Պղատոն. Եւ աղնիւ իսկ է գովասանութիւնս, այսմիկ որպէս վայելէ որդւոյ Արամազդայ։ Եւ քանզի այսպիսի բարեաց օրինակօք[1] սնուցեալ էք դու իսկ և սա, ակն ունիմ զի ոչ նուազապէս յաղագս քաղաքավարութեան և օրինաց զդեգերումնս առնելով մեր՝ ասել իսկ և լսել համանգամայն ըստ գնալոյս 'ի Ճանապարհի, մինչև ցԱրամազդայ այրն և տաճարն, իբրու լսեմ[2]. և հանգիստք ըստ Ճանապարհին, տապելոյ, վայելչականք մերում հասակիս. և ծառք բարձունք են՝ սաղարթացեալք, և անտառախիտն ստուերացեալ 'ի հովանեաց. և վայել է մեզ հանգստի հանդիպեալ փութապէս, և բանիւք մխիթարել զմիմեանս, և դիւրաւ այսպէս զՃանապարհն ամենայն կատարել։

Կղինիաս. Սակայն է իսկ, ով սիրելի, յառաջագոյն հասանելոյ՝[3] նոճոյ բարձրութիւնք և գեղեցկութիւնք սքանչելի, առ որս հանգուցեալք դեգերեսցուք։

Պղատոն. Ուղղապէս ասես։

Կղինիաս. Յոժ իսկ, քանզի տեսանելով զայսպիսին՝ յաւետագոյն ասասցուք. այլ գնասցուք բարի պատահմամբ։

Պղատոն. Արդ այսպէս եկեսցես, և ինձ ասասցես թէ զինչ է 'ի միասին երախանսն՝ զոր հրամայեաց օրէնքն, և կրթութիւնս՝ առ սպառազինութեանցն ունակութեան։

Կղինիաս. Թուի ինձ, ով սիրելի, և ամենայնի զմտաւ ածելն դիւրաւ գոլ զմերս. քանզի զգաւառիս մերոյ զԿրետիոյ տեսանեմք զբնութիւնս, իբրու ոչ է, որպէս թէ ոչ Սաղացւոցն[4] դաշտ։ Վասն որոյ իսկ և նոքա ձիօք յաւէտ վարին, և ընթացմամբ՝ մեք. քանզի սա դժուարին է իսկ, և առ հետևակացն ընթացմն կրթութիւնն յոյժ չափաւոր[5]։ Թեթև արդ

1 Յոյնն. Օրինական կամ օրինաւոր բարուք սնեալ էք։
2 Յոյնն. Իբրև լսեմ, են բաւական, և հանգիստք...
3 Այսինքն՝ յառաջելոյ 'ի Ճանապարհին։
4 Յոյնն. Թեսաղացւոցն։
5 Յոյնն. Եւ 'ի հետևակ ընթացիցն կրթութիւն յոյժ Ճահաւոր։

զէնք 'ի հարկէ մեզ ստանալ 'ի սմա, և ոչ յայնցանէ՝ որ ծանրութիւնք ունին. և արդ աղեղանցն և նետիցն թեթևութիւնն առ այսօքիկ յարմարական մեզ թուի։ Եւ այսօքիկ ամենայն առ պատերազմունսն մեզ պատրաստեալ է. և օրինադիրն, որպէս երևի իսկ ինձ, առ այսօքիկ հայելով՝ կարգաւորէր զամենայն։ Քանզի և երախանս ժողովել այսօքիկ ասացաւ. տեսանելով իբրու ամենեքեան յորժամ 'ի զինուորութեան իցեն, յայնժամ հարկ է առ 'ի նորին իրէ՝ 'ի սակս պահպանութեան իւրեանց երախանիլ ըստ այնմիկ ժամանակին։ Անխոհեմութիւն արդեւք թուի ինձ՝ ապաստան լինել զբազմաց[1] իբրու ոչ ուսողաց՝ եթէ պատերազմ միշտ ամենեցուն 'ի կենցաղումս փոյթ իցէ, առ ամենայն քաղաքք. և թէ պատերազմի իսկ ելոյ, 'ի սակս պահպանութեանն հարկ է ժամանակի կերակրոցն՝ 'ի միում վայրի ժողովել յերախանս. և զոմանս իշխանս, իշխեցեալս, սպառազինեալս գոլով՝ պահապանս նոցունց. այս իսկ և 'ի խաղաղութեան առնելի է։ Քանզի զոր յոլովք 'ի մարդկանէ կոչեն խաղաղութիւն, զայս իսկ անուն միայն գոլ, սակայն գործով առ ամենայն քաղաքք՝ ըստ բնութեան պատերազմ անքարոզ գոլ։ Եւ գրէ արդեւք, եթէ դիտողութիւն արարեալ՝ այսպէս գտցես զկրետացւոցն օրինադիրն։ Իբրու 'ի պատերազմ հայելով յայտնապէս՝ զամենայն զօրինականսն մեզ շարադասեաց. և ըստ այսոցիկ այսպէս պահել աւանդեաց զօրէնսն, իբրու յայլոցն ոչ երբեք յոչ և միոյ 'ի ստացուածոցն գոլ օգտակարութիւն, և ոչ 'ի խորհրդոցն, եթէ ոչ յաղթող իցէ ոք 'ի պատերազմի. այլ զամենայն զյաղթելոցն զինչսն և զբարիսն՝ յաղթողացն լինել։

Պղատոն. Բարեւք, ով սիրելի, երևիս ինձ կրթեալ առ 'ի գիտել զօրինականսն զկրետացւոց։ Բայց զայս ինչ ասա ինձ ևս հաւաստի. զի սահմանս այս՝ որ եդաւ առ 'ի քէն՝ բարեւք քաղաքավարեալ քաղաքիս, թուիս ինձ ասել՝ այսպէս զարդարելով բնակիլ պարտ գոլ,

1 Յոյնն. Թուի ինձ արդ զանմտութիւն ոմանց կշտամբել՝ իբրու ոչ ուսողաց։

իբրու պատերազմաւ յաղթել այլոց քաղաքաց։

Կղինիաս. Ցոյժ իսկ և կարծիս դոյ ինձ, թէ և Մեգիլլոսի այսպէս թուի։

Մեգիլլոս. Եւ որպէս արդեւք տացէ այլպէս պատասխանի, ով աստուածային դու, 'ի Լակեդոմոնացւոց ոք՝ որ և իցէ։

Պղատոն. Եւ որպէս արդեւք. քաղաքաց իսկ առ քաղաքս ուղղապէս այս են, գեղ առ գեղ իսկ այլ իցէ։

Կղինիաս. Ոչ։

Պղատոն. Այլ նոյնս իսկ է։

Կղինիաս. Այո։

Պղատոն. Եւ զինչ է. տուն առ տուն՝ այնոցիկ որ 'ի գիւղն իցեն, և այր առ այր միոյ, նոյնպէս է տակաւին։

Կղինիաս. Նոյնդ իսկ։

Պղատոն. Եւ ինքեան առ ինքեան՝ որպիսի՞ ինչ է. իբրու առ մարտուցելոյ ընդ ինքեան տրամախորհել պարտ է, թէ որպէս տակաւին ասիցեմք։

Կղինիաս. Ո՛վ սիրելի աթենացի, զի ոչ կամիմ ատտիկեցի արդեւք առասել զքեզ. քանզի թուիս ինձ աստուծոյ մականուանութեան արժանի գոլ, կամ մականուանիլ մանաւանդ. քանզի զբանս առ սկզբանն ուղղապէս վերստին ածելով՝ հաւաստի արարեր. իբրու դիւրաւ վերստին գտցես՝ զոր ինչ այժմ առ 'ի մէնջ ուղղապէս ասացաւ, մարտուցեալ գոլն զամենեսեան ամենեցուն հրապարակաբար և յատկապէս, և զիւրաքանչիւրս ինքեանց անձանց իւրեանց։

Պղատոն. Որպէս ասացեր, ով սքանչելի։

Կղինիաս. Եւ աստանօր, ով սիրելի, յաղթելն ինքեան անձին իւրոյ՝ յամենայն յաղթութեանցն նախկին է և արիագոյն, և պարտիլն ինքեան յինքենէ՝ յամենայն պարտութեանց յոռին է համանգամայն և չարագոյն. զի այսոքիկ՝ իբրու պատերազմ գոյ իւրաքանչիւրում 'ի մէնջ առ մեզ ինքեանս՝ նշանակէ։

Պղատոն. Դարձեալ այսուհետև զբանս դարձուսցուք. քանզի մի ոք իւրաքանչիւր ոք 'ի մէնջ լաւագոյն ան-

ձին իւրոյ, և միւսն նուազագոյն է, որպէս՝ ասասցուք զտուն և զգեւղ և զքաղաք զնոյնս ունել յինքեան, եթէ չասասցուք[1]:

Կղինիաս. Զլաւագո՞յն գոլն ուրուք անձին իւրոյ ասես, և զնուազագո՞յնն:

Պղատոն. Այո:

Կղինիաս. Եւ զայս ուղղապէս հարցեր. քանզի յոյժ է այս ինչ յաւէտապէս և ոչ նուազաբար՝ առ քաղաքսըն. քանզի որչափ վեհագոյնքն յաղթիցեն յոլովիցն[2] և վատթարագունիցն, ուղղաբար արդեւք լաւագոյն անձին իւրոյ այս թուեսցի քաղաքս, և գովեսցի արդեւք յայնժամ արդարապէս այսպիսի յաղթութեամբս. և զներհականսն կրէ՝ յորժամ ներհակքն հանդիպիցին:

Պղատոն. Իսկ արդ եթէ լիցէ երբեք վատթարագոյնն վեհագոյն ուրուք լաւագունին, թողուցումք այժմ զայս, քանզի երկարագոյն բանի կարօտանայ. բայց զասացեալս առ 'ի քէն այժմ ուսանիմ, իբրու երբեք քաղաքացիք ազգակիցք և 'ի նորին քաղաքէ լեալք, ապիրատք և բազումք 'ի միասին եկեալք՝ զսակաւագոյնք արդարք բռնադատեսցին՝ զի ընդ ծառայութեամբ արկցեն. և յորժամ յաղթիցեն իսկ՝ քաղաքն այն ինքեան նուազ[3] ուղղապէս ասասցի արդեօք համանգամայն և չար, և յորժամ յաղթիցին՝ վեհագոյն և բարի:

Կղինիաս. Եւ յոյժ է անտեղի, ով սիրելի, այժմ ասացեալդ. սակայն խոստովանել այսպէս՝ հարկաւորագոյն է:

Պղատոն. Հուպ լեր արդեւք և զնոյնս դարձեալ խնդրեսցուք. բազում եղբարք ուրեք եղիցին արդեւք միոյ առն և միոյ կնոջ որդիք, և արդ սքանչելի ոչ ինչ է՝ զյոլովսն 'ի սոցանէ ապիրատք լինել, և զսակաւսն՝ արդարք:

1 Յօրինակին՝ եթէ ասասցուք:
2 Յօրինակին՝ վեհագոյնքն յոլովիցն, ուղղեցաք ըստ յոյն բնագրին:
3 Այսինքն՝ ինքն պարտեալ յինքենէ:

Կղինիաս. Ոչ իսկ արդ։

Պղատոն. Եւ ոչ արդեւք իցէ վայելչական ինձ և ձեզ[1], զայս ինչ որսալ, եթէ յաղթելով իսկ չարացն, տուն և ազգականքն այնմիկ ամենայն՝ նուազագոյն ինքեանց ասասցին արդեւք. և լաւագոյն յայնժամ՝ յորժամ պարտին չարքն։ Քանզի ոչ 'ի սակս բարեձևութեան և տարաձևութեան բանից այժմ եղև մեզ դիտողութիւնս՝ ըստ բազմաց բանին, այլ 'ի սակս ուղղութեան և 'ի սխալանաց օրինաց՝ որ իցէ երբեք բնութեան։

Կղինիաս. Ճշմարտապէս, ով սիրելի, ասես։

Մեգիլլոս[2]. Բարւոք իսկ արդ այսպէս և ինձ լինել քեզ կարծակից յայսմ իրի այժմ այսչափ։

Պղատոն. Տեսցուք[3] արդեւք և զայս ինչ. եղբարցս այսմիկ՝ որ այժմ ասացան, եղիցի՞ ոք արդեւք ուրեք դատաւորք։

Կղինիաս[4]. Յոյժ իսկ։

Պղատոն[5]. Ո՞ր է արդ վեհագոյն. այն որ զոմանս կորուսանէ 'ի սոցանէն, որչափ չարքն են, և վեհագունիցն՝ իշխել սոցունց հրամայէ. եթէ այն իսկ՝ որ քաղցունցն արդեւք հրամայէ իշխել վատթարագունիցն, և զվատթարագոյնսն թողուցու կեալ, և կամաւ ստորանկիլ ընդ իշխանութեամբ։ Եւ երրորդ իսկ դատաւոր առ 'ի յարիութեան իսկ ասասցուք, թէ իցէ ոք այսպիսի՝ որ ըմբռնեալ մի ազգակցութեան[6] զանկազանեալ, ոչ կորուսանիցէ և ոչ զոք, այլ հաշտեցուցեալ մանաւանդ առ մնացեալ ժամանակաւն, օրէնք սոցա դնելով՝ առ միմեանս կարասցէ պահել զսոսա, իբրու գոլ բարեկամք։

Կղինիաս. Երկարաւ վեհագոյն[7] լինիցի արդեւք այսպիսի դատաւոր և օրէնսդիր։

1 Յօրինակին՝ ինձ 'ի ձեզ։
2 Յօրինակին՝ Պղատոն։
3 Յօրինակին՝ այսչափ փեսցուք...
4 Յօրինակին՝ Պղատոն։
5 Յօրինակին՝ Կղինիաս։ Աստի յառաջ կարգ անուանցն խառնակեալ էր 'ի հայումս. ուղղեցաք ըստ բնագրին։
6 Յօրինակին՝ ազգակցութեան։
7 Յոյնն. Յոյժ վեհագոյն։

Պղատոն. Եւ սակայն ներհակապէս իսկ, եթէ առ պատերազմ արդեւք հայելով սոցունց՝ զօրէնքն օրինադրիցէ։

Կղինիաս. Այս իսկ ճշմարտապէս է։

Պղատոն. Եւ զի՞ է, որ զքաղաքն շարայարմարելով առ 'ի պատերազմել, եթէ զարտաքինն տեսանելով զկենցաղն զարդարիցէ՝ մանաւանդ, եթէ առ պատերազմ այնմիկ՝ որ ինքեան յամենայն ժամ ելանելով որ կոչի արդեւք հակառակութեան[1]. զոր մանաւանդ ախորժէ ամենայն ոք ոչ երբէք լինել յիւրում քաղաքի, և եղեալ իսկ՝ իբրու վաղվաղակի գտանել ըղհաշտութիւնն։

Կղինիաս. Յայտ է, եթէ առ այսորիկ։

Պղատոն. Եւ որպէս կորուսանելով իսկ միւսոցն խաղաղութիւն՝ լինել հակառակութեանն, և ոմանց յաղթելով, եթէ ընդունիցի ոք արդեւք, մանաւանդ՝ զբարեկամութիւն և զխաղաղութիւն եղեալ 'ի ձեռն հաշտութեանն. և այսպէս առ արտաքինս նայել պատերազմունս հարկ գոլ մտացն։

Կղինիաս. Այսպէս արդ կամեսցի ամենայն ոք՝ յառաջագոյն քան զայնպէս՝ առ իւրումն լինել քաղաքին։

Պղատոն. Ո՞չ ապաքէն և այսպէս օրինադիրն։

Կղինիաս. Զիա՞րդ իսկ։

Պղատոն. Սակայն իսկ արիագոյնն[2]. ոչ է պատերազմ, և ոչ է հակառակութիւնն, — քանզի 'ի բաց ըղձալ պարտ է զկարօտանալն սոցունց, — այլ մանաւանդ խաղաղութիւնն առ միմեանս, և խոհեմութեանն սիրելութիւն. քանզի և յաղթելն, որպէս թուի ինձ, ինքեան նորին քաղաքին՝ ոչ է յարիագունիցն, այլ 'ի հարկաւորագունիցն. նման այսորիկ, եթէ հիւանդացեալ մարմինն՝ բժշկական մաքրութեան հանդիպե-

1 Յոյնն. Եւ զի՞ է որ զքաղաքն յարդարիցէ. արդեւք յարտաքին պատերազմն հայելով եւեթ՝ զկենցաղն զարդարիցէ, եթէ 'ի պատերազմն որ յինքեան գործի հանապազօր, որ և կոչի ապստամբութիւն։

2 Յոյնն. Կղինիաս. Զիա՞րդ իսկ։ — Պղատոն. Արդ ուրեմն վասն բարւոյ ո՞չ զամենայն օրինաւորս կարգեսցէ ամենայն ոք։ — Կղինիաս. Զիա՞րդ ոչ։ — Պղատոն, Այս իսկ է լաւագոյնն. ոչ պատերազմ և ոչ հակառակութիւն. — քանզի չէ բաղձալի ինչ կարօտանալն սոցունց. — այլ...

լով վարկանիցի ոք զարիագոյնսն յայնժամ գործել, և առ այն իսկ մարմինն՝ որ բժշկութեան ոչ լինի կարօտացեալ՝ ամենեւին ոչ բնաւ խորհիցի. այսպէս և որ առ քաղաքացի բարեբաստութեան[1] և կամ առ ռամկի տրամախորհելով ոք այսպէս, ոչ երբէք արդեւք քաղաքական լինիցի, ուղղապէս առ արտաքին պատերազմականսն նայելով միայն, և առաջին՝ և ոչ թերևս ստոյգ օրինադիր, եթէ ոչ 'ի սակս խաղաղութեան զպատերազմին իրսն մանաւանդ օրինադրեսցէ, և կամ 'ի սակս[2] պատերազմացն՝ զխաղաղութեանն։

Կղինիաս. Երևի իսկ բանդ[3], ով սիրելի, որպէս ուղղաբար ասացեալ։ Սակայն սքանչասցի, եթէ այս որ առ մեզ են օրինականս՝ և տակաւին առ Լակեդեմոն ոչ զամենայն զփոյթ արարեալ է 'ի սակս այսորիկ։

Պղատոն. Թերևս իսկ արդեւք. և պարտ է մեզ[4] ոչ խստաբար մարտնչել այժմ ընդ սոսա, այլ դիւրաւ վերստին հարցանել, իբրու մանաւանդ յաղագս այսոցիկ մեր և նոցա փութացեալ. և ինձ իսկ արդ բանիւս հետևեսցուք։ Առաջին արդ դիցուք զՏիւրտէոս՝ զբնիկն աթենացի, քանզի աստուստ էր քաղաքացի, որ մանաւանդ յաւէտագոյն ամենեցուն մարդկան՝ առ այսոքիկ փութացեալ ասէ, թէ Ոչ թերևս[5] յիշեցից և ոչ բանիւ՝ այր եդից, և ոչ՝ թէ Ճոխագոյն, ասէ, ոք իցէ 'ի մարդկանէ, ոչ թէ բազում բարիք ստացեալ է, և գրէ եթէ զամենայն ասացեալ, զայն՝ որ ոչ առ պատերազմունս արիագոյն միշտ լինիցի։ Զայս իսկ քերթուածս և դու լուեալ ես ուրեք, քանզի աստանօր, թուի ինձ, յագուրդ գոլ սոցա։

Մեգիլլոս[6]. Յոյժ իսկ։

Կղինիաս[7] Սակայն և առ մեզ հասեալ է՝ կրեալ 'ի Լակեդոմոնոյ։

1 Յոյնն. Առ քաղաքին բարեբաստութեան։
2 Յոյնն. Քան 'ի սակս պատերազմացն։
3 Յօրինակին. Երևի 'ի սկզբանդ։
4 Յօրինակին. Կղինիաս. Թերևս իսկ արդեւք։ Պղատոն. Եւ պարտ է մեզ։
5 Յօրինակին. Ոչ էր թերևս յիշեցից։
6 Յօրինակին. Կղինիաս։
7 Յօրինակին. Պղատոն։

Պղատոն. Եւ արդ վերստին այժմ հարցցուք հաղորդաբար[1] զքերթողս զայս այսպէս. ով Տիւրտէոս, քերթողս աստուածային, քանզի թուիս մեզ բարի գոլ և իմաստուն, զի զայնոսիկ որ 'ի պատերազմունսն զանազանին՝ ներբողեցեր զանազանաբար. Աւասիկ արդ հանդիպիմք՝ ես և Կլինիաս կնոսացիս այս, միաբանելով ընդ քեզ յաղագս այսորիկ յոյժ որպէս մեզ թուի. և թէ յաղագս նոցունց արանցն ասեմք և եթէ ոչ՝ կամիմք հաւաստի գիտել: Ասա դու մեզ արդ. երկու տեսակք են պատերազմի, որպէս և մեք վարկանիմք, նոյնպէս և դու վարկանի՞ս հաւաստի, թէ ո՞րպէս: Առ այսոսիկ թուի ինձ, իբրու թէ և յոյժ յոռին կամիցի ոք ասել և օտարացեալ 'ի Տիւրտիոսէ, Ճշմարիտ իցէ՝ զի երկու. մին իսկ զոր ամենեքին կոչեմք հակառակութիւն, որ և ամենեցուն պատերազմաց դժուարագոյն է, իբրու մեք ասացաք այժմ թերևս. և զմիւս սեռն դիցուք մեք պատերազմի, ամենեքին՝ որով արտաքինսն և այլացեղսն մարտուցեալ վարիմք՝ յոյժ հեզագոյն առաջնոյն:

Կղինիաս. Ո՞րպէս ոչ:

Պղատոն. Բեր արդ, ո՞րպէս և առ որպիսի՞ս գովելով զպատերազմ՝ այսպէս գերագոյն գովեցեր, և զոմանս պարսաւեցեր 'ի յարանց. քանզի նմանեալ ես 'ի յարտաքինսն: Ասացեր արդ այսպէս 'ի քերթուածսն, իբրու ոչ այնպիսեացն ներելով՝ որք ոչ համարձակին տեսանել զմահ ուռոգեալ արեամբ, և ոչ հեշտասյին ցանկութեամբ հուպ կալով[2]: Ապաքէն զայն որ յետ այսորիկ են՝ մեք թերևս ասասցուք, զի դու իսկ՝ որպէս թուիս, ո՛վ Տիւրտէոս, զայնոսիկ յաւէտագոյն որ առ օտար և արտաքին պատերազմն լինին երևակք, ասէ զայսոսիկ և խոստովանի:

Կղինիաս. Եւ զի՞նչ արդ այլ:

Պղատոն. Բայց մեք իսկ, բարի ելով սոցունց, ասասցուք տակաւին վեհագոյնս գոլ զայնոսիկ՝ որ 'ի մեծագոյն պատերազմին լինիցին արիագոյնք և յոյժ երև-

1 Այս ինքն՝ 'ի միասին, հասարակ:
2 Ցայնն. Եւ ոչ աւարաց ցանկացին՝ հուպ կալով:

ւանկք. և ունիմք վկայ մեզ քերթող զԹէոգնիս զքաղաքացին այնմիկ՝ որ 'ի Սիկիլիայն է մեգարեցւոցն, որ ասէ. Այր հաւատարիմ՝ ոսկոյ և արծաթոյ հակակշիռ գոլ արժանագոյն, 'ի դժուարագոյն հակառակութեանն ճողոպրելով[1]։ Զայս իսկ ասեմք 'ի պատերազմի դժուարագունի վեհագոյն նորա լինել. ուժգնաբար, գրեթէ որչափ լաւագոյն է արդարութիւն և ողջախոհութիւն և խոհեմութիւն, 'ի միասին գոլով համդերձ արիութեամբ. քանզի հաւատարիմ և ողջ առ հակառակութիւնսն ոչ երբեք լինիցի առաքինութեանց ամենայն, զի սոքա անցեալք և քաջ մարտուցեալք՝ կամեսցին մեռանիլ 'ի պատերազմի, ասէ Տիւրտէոս. իսկ 'ի վարձաւորացն են յոյժ բազումք, որոց յոլովագոյնքն լինիցին յանդգունք և ապիրատք և ամբարհաւաճք և անխոհեմականք գրեթէ ամենեքեան՝ բաց 'ի յոմանց արդեւք 'ի յոյժ սակաւուց։ Ո՞ւր արդեւք վախճանի բանս այս, և զի՞նչ յանդիման երբեք առնել կամեցեալ՝ ասէ զայնոսիկ։ Յայտ է թէ զայս ինչ իբրու ամենեցուն յաւէտագոյն, և որ աստանօր և առ 'ի յԱրամազդայ օրինադիր, և ամենայն որոյ փոքր ինչ օգուտ է՝ այն այլ ոչ ինչ է, քան եթէ[2] առ մեծագոյն առաքինութիւնն միշտ հայելով մանաւանդ դիցէ զօրէնքն։ Եւ տակաւին, իբրու ասէ Թէոգնիս, այս է հաւատարմութիւն առ դժուարինսն, զոր արդարութիւն կատարեալ անուանիցէ ոք արդեւք. զոր և Տիւրտէոս դարձեալ յաւէտագոյն գովեաց, զի է գեղեցիկ և ըստ ժամանակի զարդարեալ առ քերթողիս, սակայն չորրորդ իսկ թուով և զօրութեամբ պատուական գոլն ասի արդեւք ուղղապէս։

Կղինիաս. Ո՛վ սիրելի, զօրէնադիրն մեր 'ի բաց ձգեմք առ հեռագոյնքն[3]։

Պղատոն. Ոչ մեք իսկ, ո՛վ արիագոյն, այլ զմեզ ինքեանս, յորժամ կարծեսցուք զամենայն զայն որ 'ի Լակեդոմոն, և զայնոսիկ՝ որ աստանօր առ պա-

1 Յոյն. Ի դժուարագոյնն, Կիւռնոս, երկպառակութեան։
2 Յօրինակին՝ փանդի ԷԲԷ։
3 Այս ինքն՝ զօրէնադիրն մեր 'ի կշիռ համեմատութեան արկցուք ընդ հեռագոյն եւս օրէնադիրսն։

տերազմն մանաւանդ հայելով, զԼիւկուրգոս և զՄինովս դնել զօրինականսն։

Կղինիաս. Եւ զայս որպէս պարտ է մեզ ասել։

Պղատոն. Իբրու զճշմարիտն իսկ և զարդարն յաղագս աստուածայնոյ իրի ասել պատմելով, ոչ իբրու առաքինութեան ինչ մասն մանրագոյն, և զայսոսիկ զյաւրինն, տեսանելով առնէր. այլ ամենայն առաքինութիւն, և ըստ տեսակացն նորին խնդրել սոցա զօրէնսն, և ոչ ըստ այն տեսակացն՝ զոր այնոքիկ որ այժմ յաւելուն՝ խնդրելով։ Քանզի որոյ իւրաքանչիւր ոք թերևս ՚ի պէտս լինիցի՝ զայն ինչ և խնդրէ առաջի եդեալ. ոմն յաղագս վիճակացն և մակավիճակացն, և ոմն յաղագս բռնութեան. և այլք իսկ յայլոց բազմաց այդպիսեաց։ Բայց մեք ասեմք զայն ինչ գոլ յաղագս օրինաց՝ բարւոք խնդրողացն, որպէս և այժմ մեք սկսաք. և զքո իսկ պատմութեանդ ձեռնարկութիւնդ յաղագս օրինաց՝ ամենևին սքանչացեալ եմք. քանզի յառաքինութենէ սկսանիլն՝ ասելով իբրու թէ ՚ի սակս այսորիկ եդաւ օրէնքն, ուղիղ[1] է։ Բայց զայս որ յամենայն ՚ի մանրամասն առաքինութեան, զայսոսիկ ՚ի փոքրագոյնն վերաբերելով ասացեր օրինադրել, ոչ ուղղապէս ևս երևեցար՝ ասելովն, և զվերջինս այժմ բանս՝ զամենայն ասացի վասն այսորիկ. ո՞ւր արդեւք հանդերձեալ ես բաժանելով՝ ախորժեն, զի ասասցես և լուայցես։ Ախորժե՞ս զի ասացից։

Կղինիաս. Յոյժ իսկ։

Պղատոն. Ո՛վ սիրելի, պարտ է ասել իբրու զկրետացւոց օրէնքն ոչ են ունայնք զանազանապէս ամենեցուն ելլենացւոցն փորձեալք բարւոք. քանզի ուղղապէս իսկ ունին, զնոքօք վարողքն բարեբաստս կատարելով, քանզի ամենայն բարիքն առատուիցեն։ Եւ բարիք ամենայն կրկին են. ոմանք մարդկայինք և միւսքն աստուածայինք, և երկաքանչիւրքն աստուածայնոցն պարտին[2]. և եթէ ընդունիցի քաղաք՝ զմեծագոյնսն, առ՝ եթէ ոչ՝ երկաքանչիւրոյն զրկի։ Եւ են իսկ փոք-

1 Յօրինակին՝ խուլխուղ։

2 Յոյնն. Եւ մարդկայինքն՝ յաստուածայնոցն զծագումն ունին։

րագոյնքն այս՝ որոց առաջին իսկ է ողջութիւն[1], գեղեցկութիւն երկրորդ՝ և երրորդ զօրութիւն յընթացսն իսկ, և առ այլ ամենայն շարժութիւնքն մարմնոյ։ Եւ չորրորդ իսկ փարթամութիւն. որ ոչն է կուրութեամբ թերևս՝ եթէ համանգամայն և խոհեմութիւն հետևեսցի այնմիկ։ Արդ որ աստուածային բարութեանցն նախկին է և արքունական, և երկրորդ հանդերձ մտօք՝ ողջախոհ ունակութիւն հոգւոյ, և այսոքիկ ընդ արութեան խառնեալք, և երրորդ՝ թերևս իցէ արդարութիւն, և չորրորդ՝ արիութիւն։ Բայց այսոքիկ ամենայն՝ այնոցիկ բնութեամբ առաջինք են դասեալ. և արդ՝ օրինադրին այսպէս պարտ էր դասել. և յետ այսոցիկ, զայլ կարգաւորութիւնս քաղաքացեացն՝ առ այսոքիկ գոլ սոցայ նայեցեալ՝ հրամայել պարտ է, և 'ի սոցանէ մարդկային իսկ առ աստուածայինսն, և աստուածայինքն առ արքունական միտքն հային, 'ի միասին և հարսանեօք՝ միմեանց հաղորդելով. և յետ այսոցիկ՝ առ մանկանցն ծնունդքն և սնունդքն՝ որչափ արուք են և որչափ էգք, համբակաց եղելոց, և առ երիցագոյնն հասանելով մինչև ցծերութիւնն՝ ուղղապէս պատուողին դարմանել պարտ է, զանարգողն ամենայն սոցունց միաբանութիւնքն, զտրամադրութիւնքն և զհեշտութիւնքն, և 'ի միասին զամենայն տռփութեանցն զփոյթն քննելով և պահելով, և պարսաւել ուղղապէս և գովել 'ի ձեռն նոցունց օրինացն։

Սակայն 'ի բարկութիւնս և յերկիւղս, և որչափ այլ 'ի ձեռն դժուարապատահման խռովութիւնք անձանց լինիցին, և որչափ առ բարեբախտութիւնքն յայսպիսեացս լինիցին առիթք ճողոպրելոյ, և որչափ ըստ հիւանդութեանց, և կամ ըստ պատերազմաց. կամ որ տնանկութեան, կամ որ ինչ սոցունց ներհակս լինիցին՝ անկանին առ մարդկան ախտք, առ ամենայն այսպիսեացս զիւրաքանչիւրոց տրամադրութիւնքն՝ ուսուցանելի է, և սահմանելի զբարին իսկ և զոչն։

1 Յոյնն՝ խոհեմութիւն, խոհականութիւն (φρόνησις)։

Երրորդ՝ և յետ այսոց՝ հարկ է օրինադրին զստացուածսն քաղաքացւոց, և զծախսն պահել, որով և լինիցի յեղանակաւ, և զառ միմեանս ամենեցուն հաղորդութիւնք, և բաժանմունքն կամաւոր և անկամաւոր՝ ըստ որում գործիցեն արդեւք, իւրաքանչիւրք յայսպիսեացս առ միմեանս վերադիտել՝ զիրաւինն և զոչն։ Եւ առ որս գոյ և յորոց պակասի ինչ, և այնոցիկ որ բարեւք անսայցեն օրինացն զպատիւս բաշխել. և որ դժուարահաւանքն են՝ այնոցիկ պատուհասս հասուցանել՝ մինչև ցվախճան, ամենայն քաղաքավարութեամբ անցուցանելով. տեսցէ 'ի վախճանելոցն թէ որով յեղանակաւ պարտ է իւրաքանչիւրոցն լինել շիմք[1] և պատիւս, զոր պարտ է սոցունց բաշխել. և տեսանելով, այն որ եդիր զօրէնսն սոցունց, ամենեցուն պահապանս 'ի վերայ կացուցանէ. զոմանս 'ի ձեռն խոհեմութեան, և զոմանս 'ի ձեռն ճշմարիտ կարծեաց հասեալք. զի այսպէս զայս ամենայն 'ի միասին կապելով միտքն՝ հետևեալք ողջախոհութեան և արդարութեան երևեցուցանէ, և ոչ ճոխութեան և պատուասիրութեան։ Այսպէս, ով սիրելիք, ես իսկ կամէի զձեզ թերևս. տակաւին այժմ կամիմ պատմել. որպէս 'ի յԱրամազդայ՝ ասացեալ օրէնքն, և 'ի Պիթեայ Ապողոնի՝ զորս և Լիւկիւրգոս եդեալ են, այս ամենայն գրեալ է. և որպիսի՞ են զդասութիւն ընկալեալ, յայտ են այնմ որ առ օրէնս հմտագոյն է արհեստիւ, և կամ սովորութեամբ ումամբ։ Իսկ այլոցս մեզ ոչ են յայտնիք։

Կղինիաս. Ո՞րպէս արդ պարտ է, ով սիրելի, ասել զայն որ յետ այսոցիկ են։

Պղատոն. Ի սկզբանէ դարձեալ թուի ինձ պարտ գոլ՝ պատմել զամենայն որպէս և սկսաք, նախ զարիութեանն խորհուրդ, և ապա զայլ ինչ. և դարձեալ 'ի միւս տեսակացն առաքինութեանց անցանելով՝ եթէ ախորժիցէք, և թէ որպէս արդ զառաջինն դարձեալ պատմեսցուք և զայլսն փորձ արասցուք զայս ինչ

1 Այսպէս յօրինակին. յոյնն՝ շիրիմք (ταφάς)։

դնելով յարացոյց, և այսպէս առասպելաբանելով զբաղումն ինչ և մխիթարութիւն ճանապարհի արասցուք, և անդ հայելով բացերևեցուսցուք՝ եթէ աստուած կամեսցի։

Կղինիաս. Բարւոք ասես. արդ փորձ արա յառաջագոյն դասել զայսոսիկ՝ զգովասանականն զԱրամազդայ։

Պղատոն. Փորձեցից և զքեզ և զանձն իմ. քանզի հասարակաց է բանս. և ասասցուք արդ զհաղորդակցութիւնն՝ զոր յառաջագոյն պատմեցաք երախանս, * որոյ խորհուրդն է այսպէս։ Քանզի արք տասն էին սոցա վերակացուք, և շարադասութիւնն սոցա այսպիսի ինչ էր. զի մակդաղիայ՝ որ է կերակուր ինչ ճաշպոյ, իւրաքանչիւր ոք բերէր, և ումն առաջի սոցայ կալով՝ անօթ կրէր 'ի վերայ գլխոյ իւրոյ, յորում դատողութեամբ զկերակուրսն արկանէին. որ արժանի դատողութեանն հասանէին՝ առանց օրինի ամենևին և չափու, և որք ոչ՝ մատամբն յարմարելով, այսպէս արկանէր զկերակուրն չափաւք. յետ որոյ եթէ մին միայն առ 'ի նոցանէ տպաւորեալ գտանի որչափ՝ զայնպիսիքն արտամերժէին 'ի յընտրութենէ հաղորդակցութեանն, զի ոչ իբրու այն որ առ աթենացւոցն էր դատակնիք յոլովագունիցն կամքն յաղթէր։ Իսկ արդ զընտրեալն՝ երիցագոյնն հաղորդակցացն մուծանէր 'ի տունն, յորում հաղորդակցութիւնն լինէր, և ներքոյ առ դրամբն կացեալ ասէր այսպէս. Ընդդուռնս ընդ այս բանք արտաքս ոչ ելցէ, պատուիրելով անճառաբար ունել՝ զամենայն որ 'ի սմայ են իրս. և կրէր իւրաքանչիւր ոք 'ի տանէ իւրմէ նկանակ և պանիր, և արմաւ և գինի, և որչափ 'ի սոցանէ յորս և կամին զոհ, հանդիպէին գոլ մասունք, առաքէին 'ի հաղորդակցութիւնս. և էին պարս երիս առ լակոնացիքն՝ համբակացն, արանց և երիցագունից. և երգէին ծերքն այսպէս. Մեք երբեմն էաք երիտասարդք զօրեղ. և արքն՝ Մեք ենք իսկ տակաւին. և թէ հաճոյ թուիցի՝ ընկալցին զփորձ. և մանկունքն՝ Մեք լիցեմք։

* Աստեղանիշ հատուածդ պակասէ 'ի յոյն բնագրին։

Իսկ վեհագոյնք յոլովից՝ ասասցուք և զկրթութիւնսն պատերազմին գտեալ առ՚ի յօրինադրէն*։

Կղինիաս. Այո։

Պղատոն. Եւ երրորդ և կամ չորրորդ՝ այսինքն է զվարչահարութիւնս, և զմերկակրութիւնսն, և զթաքուստն, զի այսոքիկ առ արութիւն արածանին. թերևս արդեւք այսպէս պարտ է ընդ թուով արկանել և զայլ մասունսն առաքինութեան, և կամ զինքեանսն իսկ, եթէ այսպէս անուանել պարտ է, յայտնելով միայն զոր ասեն. քանզի լակոնացիքն բազում իմացութեամբ և ոչ բազում բանիւք վարէին։

Մեգիլլոս. Այսուհետև երրորդ անգամ ես իսկ ասացից թերևս, և զայն 'ի լակեդոմոնացւոց՝ որ եգիտ զորսորդութիւն, Եւ չորրորդ՝ եթէ կարեմք ասել փորձեսցուք։ Տակաւին արդ և զչորրորդն ես իսկ փորձեցից ասել զայն ինչ որ առ ժուժկալութիւնքն խոշտանգանս[1], որ լինէին առ բազինն արդարուհոյն Արտեմիդեայ, այնմ որ զքաղաքավարութիւնն ուղղէր. քանզի առաջի կայր սորա քահանայուհին բերելով ինչ առ ձեռս թաքուցեալ, որ է մինչև ցայժմ անծանօթ. և եթէ նուազագոյն քան զոր պատշաճն էր՝ խոշտանգիւր, քանզի շարժել զձեռսն ոչ իշխէր ունելով 'ի վերայ գլխոյ խոշտանգեալն ծանրանայր՝ աստուածուհին, առ այնմ որ առաջի կայր՝ զիրն ունելով 'ի ձեռինն, և պատշաճապէս այնմ համբերելով խոշտանգանացն, թեթևապէս տրամակայիր առ քահանայուհին։ Եւ այսպիսիս առ մեզ յոյժ լինէր և 'ի մարտքն որ առ միմեանց էր, և յափշտակութիւնք ոմանց ընչից, 'ի ձեռն բազում խոշտանգանաց՝ յամենայն ժամ լինելով 'ի մերկակրութիւնսն. քանզի կրթելով զմանկունսն առաջի արեգականն՝ տային հարկանել զմիմեանս մինչև ցյաղթութիւնն. երբեմն՝ յորժամ և գունդ ձգէին, կամ այլ ինչ. իբրու զի նախ որ յափշտակէրն՝ ստանայր զյաղթութիւնն, և յոյժ լինէր առ նոցա աշխատութիւնս այս,

1 Նաև աստէն տարբերի թարգմանութիւնս 'ի յունականէն։

և տակաւին այն որ Թաքուստ[1] անուանիւր, սքանչելապէս և բազմաչխատ առ ժուժկալութիւնս. ձմերայն[2] 'ի բոկութեանցն[3]…. և առանց պաշտօնէի զանձինս իւրեանց սփոփեալ՝ 'ի գիշերի և 'ի տուընջեան մոլորելով ընդ ամենայն գաւառն։ Տակաւին և 'ի հրահանգս մերկութեան չարաչար ժուժկալութիւն լինէին առ մեզ՝ ընդ տապոյն զօրութիւնն մարտնչելով, և այսպիսի այլ բազումք՝ զորս գրէ եթէ կամիցի ոք պատմել թէ որչափ են, թերևս ոչ երբէք դադարիցի. քանզի ցանկայր ոմն 'ի քաղաքէ համբակ գոլով ոչ երևիլ առ սահմանեալ ժամանակաւ*, հարկիր արդ շրջելով ընդ լերունս՝ ոչ ննջել բնաւ, զի մի ըմբռնեսցի, և ոչ պաշտօնէիւք վարելով, և ոչ կերակուրս կրելով առ ինքն վասն կելոյ, և այլս այլ տեսակ մերկութեան առ կրթութիւն պատերազմի. քանզի արձակելով զիւրաքանչիւր ոք 'ի սոցանէ մերկ, հրամայէին ամ մի բոլոր՝ 'ի լերինս յածիլ. և կերակրել զանձն իւր՝ 'ի ձեռն գողութեան, և այլոց այսպիսեաց, և այսպէս իբր ոչ ուրուք յայտնիլ, վասն որոյ և ծածուկ անուանիւր, քանզի տանջէին այսպիսիքս եթէ երևէին երբէք ուրուք*։

Պղատոն. Բարեւք իսկ, ո՛վ Լակեդոմոնացի սիրելի, ասես։ Բեր արդ զարիութիւնն դիցուք որպիսի պարզաբար այսպէս գոլ առ երկիւղսն և տրտմութիւնսն վասն մարտի, միայն թէ և առ փափագանաց իսկ և հեշտութեանց, և առ ոմանս՝ թուղութիւնս առանց այնոցիկ որ առ էս սքանչանան, որք և 'ի պարկեշտիցն գոլ կարծիցեն, և զցասմունսն մոմատեսակ գործիցեն առ այսոսիկ 'ի միասին։

Կղինիաս. Թուի ինձ իսկ այսպէս, առ այսոսիկ ամենայն 'ի միասին։

Պղատոն. Արդ եթէ յիշեմք զյառաջագոյն բանքն զայն որ նուազագոյն ինքեանս քաղաք գոլ ասէր և զայր զի այսպէս ասացաք, ո՛վ սիրելի կնոսացի։

1 Յոյնն κρύπτεια, 'ի κρύπτειν ծածկել բայէ։
2 Յօրինակին ձմայն, զոր ուղղեցաք ըստ յունին։
3 Այսպէս թերի յօրինակին, ուր յոյնն ունի ἀστρωσίαι.
* Աստեղանիշդ պակասէ 'ի յոյն բնագրին։

Կղինիաս. Եւ յոյժ իսկ։

Պղատոն. Եւ այժմ արդ որպէս ասեմք. զտրտմու-թեա՞նցն նուազագոյն գոլ չար, եթէ մանաւանդ զհեշտութեանցն։

Կղինիաս. Ինձ իսկ թուի զհեշտութեանց. և ամենեքեան մանաւանդ լսեմք զայն որ 'ի ձեռն հեշտութեանցն յաղթահարի։

Պղատոն. Արամազդայ արդեւք և Պիւթիոսի օրինադիրն զօրութիւն՝ ոչ կաղութեամբ խեղկեալ օրինադրեցին առ ահեակսն միայն կարելով թեւակոխել, և առ այն որ աջակողմունսն են՝ թուղաքար պաճուճեալ, անհնարին ունելով առ երկաքանչիւրսն։

Կղինիաս. Առ երկաքանչիւրսն՝ ես իսկ արժանի համարիմ։

Պղատոն. Ասացից արդ դարձեալ խորհուրդք որ իցեն ձեզ՝ երկաքանչիւր քաղաքացդ որ ճաշակին հեշտութեամբն, և ոչ ճողոպրին 'ի սոցանէ. որպէս և 'ի տրտմութեանցն ոչ փախչէր, այլ ածել 'ի մէջ հարկէր և հաւանեցուցանէր պատուօք իբրու յաղթեալ սոցա. ո՞ւր իցէ արդ այս շարադասեալ յօրէնսն յաղագս հեշտութեանցն։ Ասացի արդ եթէ զի՞նչ է այս որ գործէ զմեզ նմանապէս առ ցաւաքերսն և առ հեշտութիւնքն՝ զնոյնս իսկ արիագոյնքն յաղթելով, յորում պարտ է յաղթել. և ոչ նուազագոյն գոլ թշնամեաց՝ որք մերձ իցեն ինքեանց և դժուարագունից։

Կղինիաս. Այսպէս արդ, ով սիրելի, որպէս առ ցաւաքերսն ունի օրէնք բազումք ընդդիմադասեալք՝ ասել ոչ թերեւս կարացից ըստ մեծի մասանց և երկուելեացն՝ ասելով յաղագս հեշտութեանցն։ Իսկ զփոքունսն՝ թերեւս կարացից արդեւք։

Պղատոն. Ապաքէն և ես ոչ իսկ այնոքիւք որ 'ի Կրետէ են օրինօքն՝ ունիմք զայսպիսին նմանապէս առնել յանդիմանն։

Կղինիաս. Ո՛վ արիագոյնդ 'ի բարեկամաց, և ոչ ինչ սքանչելի։ Իսկ ո՞յլ ուրեմն եթէ յաղագս օրինացն որ 'ի տանէն խնդրէր ոք՝ արդեւք կամելով տեսանել զճշմարիտն և զվեհագոյնն՝ ոչ դժուարապէս,

այլ հեզաբար ունէաք զմիմեանս։

Պղատոն. Ուղղաբար, ով սիրելի աթենացի, ասացեր, և հաւատալի է. քանզի ոչ արդեւք, ով Կղինիաս, այսչափ արանց մեծագունից վայել է այսպէս։

Կղինիաս. Չի և ոչ արդ։

Պղատոն. Արդ եթէ ուղղաբար է եթէ ոչ, ով է որ սաստէ ղակոնական և կրետական քաղաքավարութեան, բանտ արդեւք. թերևս այլ իցէ և զասացեալքն։ Իսկ առ 'ի բազմաց, թերևս մանաւանդ ունիցիմ ասել, քան զձեզ զերկաքանչիւրոց.. քանզի ձեզ, թէպէտ և չափաւորապէս կազմեալ է իրս՝ օրինացն մին 'ի գեղեցկագունիցն արդեւք իցէ՝ օրինացն ոչ թողուլ զոք 'ի համբակացն խնդրել և ոչ զինչ, թէ որք 'ի սոցանէ բարեւք ունին, և որք ոչ բարեւք սակս օրինացն, այլ միով ձայնիւ և միոյ բերանոյ միաբանել ամենեցուն հաղորդաբար՝ զհաւանականն, որում պատահեցաւ օրինադրութիւնն, և ոչ հակաբանել երբեք, զի յաստուածոցն են եդեալ. իսկ եթէ այլաբար ոք կամիցի ասել, անունկնդիր նորագոյն բանիցն, մի հաւանեսցի մատուցանել լսելիս։ Իսկ 'ի ծերոց ոք եթէ այլաբար 'ի մտածութիւն իւր անկցի, կարծիս կասկածանաց ինչ քննութեան մի զսա առաջի մանկանց և խակագունիցն և ոչ կատարելոցս սփռեսցէ, այլ առ երիցագոյն ընկերս իւր և առ իշխանս։

Կղինիաս. Ուղղապէս ասացեր, ով սիրելի, իբրև տեսանող կամ բաղխոհական, նախուստն օրինադրին հետևելով։ Թուի ինձ եթէ յոյժ ճշմարտապէս ասացեր։

Պղատոն. Եւ ահա այժմ յոյժ անապատ 'ի մանկանց եմք. և վասն զի ծերք եմք՝ ուրեմն թողացուցանէ մեզ օրէնսն, ոչ ծածկիլ ինչ 'ի միմեանց, այլ յատկաբար առ միմեանս ասել. վասն զի ոչ ինչ գայթակղեցուցանէ զմեզ այսոքիկ։

Կղինիաս. Ճշմարիտ։

Պղատոն. Եւ ահա յորժամ ծերագոյնքս 'ի մի վայր հուպ ելոյ, այժմ ոչ ինչ վնասէ, եթէ զնախուստ օրինադրութիւնս քննեսցուք և զվատթարագոյնն ծա-

նիցուք. այս ոչ անտեղի, այլ մանաւանդ դատողութիւն. իբրու զգուշութիւն, եթէ ոչ մախանօք որ հակառակաբար զասացեալսն վայրապար պարսաւէ, այլ բարեմտաբար տնօրինէ։

Կղինիաս. Բարւոք ասացեր։

Պղատոն. Այսպէս ուրեմն ես այժմ ոչ արհամարհեմ զօրէնս, մինչև ոչ ըստ իմում զօրութեան տիրապէս թևակոխել զնա. բայց տարակուսիմ[1], քանզի օրէնսդիրն ձեր հաղորդաբար ելլենացւոցն և բարբարոսացն հրամայէ 'ի բոլոր ծայրագոյն հեշտութեանցն 'ի բաց լինել, և 'ի տրտմականագունիցն և յարհաւրացն և յերկիւղէ՝ ըստ կարողութեան 'ի մանկութենէ փախչել պարտ վարկանէր. իսկ եթէ հասանէր 'ի վերայ եկեալ՝ տևել և ժուժալ փորձութեանցն իբրու զառաքինի և 'ի մանկութենէ կրթեալ։ Որ և թուին, և սակս իւր իսկ օրէնսդիրն, և յաղագս հեշտութեանցն այսպէս հաւանէր 'ի մտածութեան իւրում՝ այսքար խոկալով. քանզի եթէ 'ի մանկութեան հեշտութիւնքն հանդիպեալք քաղաքացեացն կամ այլոց ոմանց՝ անեզրական և առանց թշուառութեան՝ անարիս և հեղգս զնոսա գործէ. վասն որոյ ոչ կարեն ժուժկալ, և աստուստ պարապինորագոյն գարշելեաց գործառնութեան, վասն որոյ ծառայեն ախտի, յորմէ երկիւղէ կասկածանս ընկալեալ, կրեն հոգի ունել սոցայն՝ երբեմն աղախնական հիքութեամբ, և երբեմն ազատագոյն ըստ խոկմանն. զնոսա ոչ կամիմ պարզ, և յատկաբար իք անուանել[2]։ Եւ արդ տեսցուք, եթէ այսօքիկ յասացելոցս իրաւաբար թուեսցի ձեզ՝ ըստ իւրում եղանակին, եթէ ոչ։

Կղինիաս. Իրաւացի մեզ ասացեալքս 'ի քէն թուեցեալ։ Սակայն յաղագս այսպիսի իրողութեան, մե-

1 Յոյնն. Մինչև ըստ իմում կարի թևակոխեալ 'ի քննութիւնն, մանաւանդ թէ յանդիման արարեալ ձեզ զտարակուսանս իմ։ Քանզի դուք միայն էք 'ի մէջ յունաց և բարբարոսաց, որոց օրէնսդիրն հրամայէ...

2 Յոյնն. Վասն որոյ և չէ մարթ արիականս և ճշմարիտ ազատս կոչել զնոսա։

ծագոյն վաղվաղակի հաւանեալ՝ անտիական[1] տիոց և համբակաց և անխոհից է։

Պղատոն. Արդ՝ եթէ և զայնոսիկ որ զկնի այսոցիկ պատմեցից՝ յաւելլով 'ի բանս, ով Կղինիայ և ղակեդոմոնացի սիրելի, յետ արութեանն սակս ողջախոհութեանն՝ ասեմ զի՞նչ գտցուք տարբերութիւն 'ի քաղաքավարութիւնս կամ 'ի քաղաքավարեալսն՝ որպէս նախ քան զայսոսիկ սակս պատերազմին ասացաք։

Մեգիլոս. Թուի եթէ ոչ դիւրաւ այսոքիկ բաժանին։

Կղինիաս. Սակայն բարեւք թուի ինձ, եթէ 'ի նախուստն մերում՝ գործառնութեան բարեւք ասացաք սակս սեղանակցութեան և հաղորդաբար կրթութեան և զգուշութեան մրցման, քանզի յարմարագոյնք են միմեանց երկաքանչիւրքն։

Պղատոն. Թուի արդեւք, ով սիրելի, դժուարին գոլ առ քաղաքավարութիւնս անընդերկուաբար և առանց պատճառի՝ նմանապէս լինել բանիւ և գործով[2]. քանզի որպէս 'ի մարմինսն ոչ է հնար գոլ հրամայել ինչ միոյ մարմնի մի ինչ խորհուրդ՝ յորում ոչ երեւեսցի ումն վնասակար գոլով 'ի մարմնոյն, և ումանց օգտակար. քանզի 'ի կրթութիւնքս այսոքիկ և սեղանակցութիւնքս՝ առ բազումս այլ ինչ օգտակար է քաղաքացն. բայց առ հակառակութիւնսն դժուարին է, և յայտնեն մելիսիացւոց և բիւոտացւոց և թուրիացւոցն մանկունքն. և հին օրէն իսկ թուի ինձ այս խորհուրդ և ըստ բնութեան, զայնոքիկ որ առ ափրոդիտականքն են հեշտութիւնքն, ոչ միայն մարդկան, այլ և անասնոց ապականիչք գոն և գազանաց. և այսոցիկ պատճառ զձերն գոլ ասեն քաղաք։ Որչափ յաւէտագոյն քան զայլ քաղաքս մերձեցեալ է յայսպիսի կրթութիւնս, և եթէ խաղալիս. և եթէ փոյթ

1 Յօրինակին՝ փանփոկան։

2 Յոյնն. Ինձ այնպէս թուի զի 'ի սահմանադրութեան օրինաց չէ գիւրին այնպէս զամենայն ինչ գնել 'ի կարգի 'ի վարդապետականին որպէս 'ի գործնականին՝ զի չունիցի ոք ասել ինչ հակառակ։

պարտ է զմտաւ ածել՝ գոլ զայսպիսիքս խորհելի իսկ է, եթէ իգական բնութեան և արուական՝ 'ի հաղորդութիւն հասանելով ծննդականութեանն՝ առ այնմիկ հեշտութիւնն թուի ըստ բնութեան 'ի բաց հատուցեալ: Իսկ արուաց առ արուս, կամ իգաց առ էգս օտար 'ի բնութենէն, և նախկին յանդըգնութեանցն գոլ վասն անժուժկալութեան հեշտութեանցն: Եւ ամենեքեան իսկ զԿրետացիսն՝ այնմիկ որ յաղագս Գանիմիդեայ է առասպելսն՝ ստորոգեմք, իբրու զբանս զայս գործողաց: Քանզի առ յԱրամազդայ եղեալ սոցա էին օրէնքն հաւատացեալ, և զայս զառասպելս՝ առ 'ի յԱրամազդայ ասացին յաւելեալ. քանզի հետևելով աստուծոյն, և զհեշտութիւնն զայնմիկ շահեսցին: Եւ արդ առասպելին իր՝ ողջ մնասցէ: Իսկ յաղագս օրինացն դիտաւորութիւնս առնելով մարդկան[1], սակաւ ինչ պակաս՝ դրեթէ ամենայն խորհուրդն այսոցիկ յաղագս հեշտութեանց է և տրտմութեանց՝ քաղաքական և յատկագոյն բարուք. քանզի այսոքիկ՝ երկու աղբեւրք բնաւորեալ են հոսիլ, յորոց մինն ոռոգեալ ուստի և յորժամ և որչափ պարտն է՝ բարեբաստի և քաղաք՝ նմանապէս և ռամիկ, և ամենայն կենդանի: Իսկ այն որ առանց մակացութեան՝ միանգամայն և արտաքոյ ժամանակացն, զհակակայեալսն այնմիկ արդեւք ունիցի կեանս:

Մեգիլոս. Ասին արդեւք, ով սիրելի, այսոքիկ բարեւք իսկ. սակայն անյայտութիւն իսկ ըմբռնէ զմեզ թէ զինչ պարտ է արդեւք ասել առ այսոքիկ[2]: Սակայն ինձ իսկ ուղղապէս թուի հրամայեալ 'ի հեշտութեանցն փախչել, և այն որ 'ի Լակեդոմոն էր օրինադիրն՝ յաղագս այնոցիկ որ 'ի Կնոսոսէ էին օրինացն, այսմիկ արդեւք օգնել կամեսցի[3]: Եւ այնոքիկ որ 'ի Սպարտէ էին՝ վեհագոյն քան զմարդիկ թուին ինձ եդեալ առ հեշտութիւնսն. քանզի մանա֊

1 Այս ինքն՝ յորժամ մարդիկ կամիցին սահմանել օրէնս:
2 Յոյնն. Իսկ յորժամ խնդրիցեմք գիտել թէ զիարդ արժան է խափանել զայսոսիկ. 'ի վարանս տարակուսանաց անկանիմք:
3 Յոյնն. Կլինիայ թողում զպաշտպանութիւնն:

ւանդ ուր մարդիկ առ մեծագոյնսն անկանին հեշտութիւնս և ամբարհաւաճութիւնս՝ հանդերձ ամենայն անխմաստութեամբ, զայսոքիկ արտաքս եհան օրէնքն մեր յամենայն գաւառէ 'ի միասին. և ոչ առ ագարակս իսկ տեսցես և ոչ 'ի քաղաքս. որչափ սպարտիացւոց փոյթ է 'ի միասին խումբ առնել. և որչափ սոցունց միանգամայն հետևելով զամենայն հեշտութիւնս շարժեն ըստ զօրութեան[1], և ոչ ոք գոյ ընաւ յամենեցուն՝ որ հանդիպելով այնմիկ որ լկտի երգս առնէ արբեցութեան, և ոչ զմեծագոյնն դատապարտութիւն վաղվաղակի վերայ այնմիկ հասուցանէ, և ոչ արդեւք զդիոնիսեանցն ունելով պատճառ՝ արձակեսցէ զնա։ Որպէս առ սայլքն երբեմն տեսայ ես առ ձեզ. և 'ի Տարանտիայ՝ առ մեր արտաքնակսն[2] տեսայ զամենայն քաղաքն արբեցեալ առ դիոնիսեանքն. բայց առ մեզ ոչ և մի ինչ գոյ այսպիսի։

Պղատոն. Ո՛վ լակեդեմոնացի սիրելի, գովելի են ամենայն այսպիսիքս, ուր և իցեն ումանք ժուժկալողք. ուր թուլասցին, խենեշագոյնք լինիցին։ Քանզի վաղվաղակի հասցէ ոք քեզ, զի ասի մերժելով զքեզ[3] ցուցանելով զկանանցն առ ձեզ՝ 'ի ձէնջ զներողութիւն։ Եւ այսպիսեացս ամենեցուն արդեւք, և 'ի Տարանտիայ և առ մեզ և առ ձեզ, մի պատասխանի արձակել ինձ թուի, զի մի չարաչար ունիցին իրողութիւնս՝ այլ ուղղապէս։ Քանզի ամենայն ոք պատասխանի տալով սքանչացեալ օտարի՝ զառ սոցա անսովորութիւնն տեսանելով՝ ասէ այսպէս. մի սքանչանար, ով սիրելի, զի օրէն մեզ այսպէս է. 'ի ձեզ թերևս յաղագս այսոցիկ այլպէս է։ Բայց մեզ այժմ, ով սիրելիք, ոչ յաղագս այլոց մարդկան է բանս, այլ յաղագս նոցունց օրինադրացն, և յաղագս չարութեան և առաքինութեան։ Եւ տակաւին արդ ասասցուք յոլովապէս յաղագս ամենայն արբեցութեան. քանզի ոչ

1 Յոյն. Մերժեն յամենայն զօրութենէ իւրեանց։
2 Այսինքն՝ առ գաղթականս մեր։
3 Յոյն. Քանզի և ոթենացիքս կարեմք կշտամբել զձեզ՝ ցուցանելով ...

*փոքր ինչ է՝ և ոչ յոռին, իմանալ զայսոսիկ խորհուրդս օրինադրին. և ասեմ զայս ոչ յաղագս գինի ամենևին ըմպելոյ կամ ոչ, այլ յաղագս արբեցութեան՝ եթէ որպէս սկիւթացիքն վարին և պարսք, պարտ է վարիլ և ես կարքեդոնացիք և կելտացիք և վիրք և թրակացիք, պատերազմական 'ի միասին ամենայն սեռք գոլով, եթէ որպէս դուք. քանզի դուք, որպէս ասեսդ, 'ի բաց հրաժարէք։ Իսկ սկիւթացիք և թրակացիք անխառն՝ գինով վարին՝ կանայքն և ինքեանքն. և 'ի վերայ հանդերձիցն հեղլով՝ գեղեցիկ և բարեբաստ խորհուրդ խորհիլ կարծիցեն։ Իսկ պարսիկք յոյժ իսկ վարին սովաւ և այլովք փափկութեամբք՝ զոր դուքդ 'ի բաց հրաժարէք։ Սակայն մանաւանդ դասութեամբ և կարգաւ։*

**Մեգիլոս.** *Ո՛վ եղբայր սիրելի, հալածեմք մեք իսկ զայսոսիկ զամենեսեան՝ յորժամ զէնս 'ի ձեռս մեր առցուք*[2]*։*

**Պղատոն.** *Ո՛վ արիագոյն, մի ասեր զայսոսիկ. քանզի բազում փախուստք և հալածանք անարուեստք լեալ են և լինիցին։ Վասն որոյ յայտնի ոչ երբեք զայս ասացեմք սահման՝ այլ ընդերկուալի, յաղագս բարի հանդիպմանց, և ոչ յաղթութիւն և զպարտութիւն ասելով մարտի. քանզի մեծագոյն քաղաքքն՝ փոքրագունիցն յաղթեն մարտակցութեամբ, և ընդ ծառայութեամբ արկցեն զսոսա։ Իսկ սիւռակուսացիք զլիւկռացիք, որք թուին քաջօրէնագոյնք լեալք այնոցիկ՝ որ առ այնմիկ տեղւջն են. և կիտացւոց աթենացիք. և այլ բազումք այսպիսիք արդեւք։ Սակայն յաղագս իւրաքանչիւրում խորհրդոյն ասելով, փորձ արասցուք հաւանեցուցանել զմեզ զինքեանս։ Իսկ զյաղթութիւնք և զպարտութիւնք՝ արտաքոյ բանիս այժմ դիցուք, և ասեմք իբրու ումն 'ի սոցանէ բարի է, և ումն ոչ բարի։ Բայց նախ լուարուք ինձ յաղագս այսոցիկ նոցունց՝ իբրու պարտ է*

1 Յօրինակին՝ առ խառն։

2 Յոյնն. Այլ եթէ գրգռիցի պատերազմ ընդ մեզ և ընդ նոսա, հեշտեաւ և յաղթանակաւ 'ի փախուստ դարձուցանեմք։

զբարին և զչարն՝ գիտել։

Մեգիլոս. Եւ ո՞րպէս արդեւք ասես։

Պղատոն. Թուի ինձ՝ ամենեքեան որ բանիւ ինչ ընկալեալ են խորհուրդ, և նախադրեալ պարսաւել զնոյնն և կամ գովել փաղփաղակի՝ ատացեալ զիրն՝ ոչ առնեն ըստ յեղանակի. այլ զնոյնն գործեն՝ իբրու եթէ գովելով ուրուք զցորեան իբրու կերակուր բարի, փաղփաղակի պարսաւիցէ ոք՝ ոչ քննելով զսորա զգործն և ոչ զպատրաստութիւնն. թէ որպիսի՛ յեղանակաւ, և որոց ումանց, և յետ որոց, և որպէս ունելով, և որպէս մատուցանել ունիցին. այժմ իսկ նոյնպէս թուի ինձ և մեզ առ բանքս գործել. քանզի յաղագս արբեցութեան լուեալք այսչափ միայն փաղփաղակի՝ ոմանք պարսաւելով զսա և միւսք գովելով, և մանաւանդ անտեղաբար, քանզի վկայիւք և գովչօք վարելով գովեմք երկաքանչիւր[1]. և ոմանք քանզի բազումք ունիցիմք վկայք՝ արժանանամք ասել ինչ տիրապէս. և միւսք՝ քանզի զայնոսիկ որ ոչ վարին նովաւ, տեսանեմք զի յաղթեն մարտնչելով։ Սակայն և այս մեզ ընդերկուաբար երևի։ Եւ արդ եթէ յաղագս իւրաքանչիւրոց այլոց օրինացն այսպէս պատմեսցուք, ոչ թուի ինձ հաճոյ իսկ գոլ. այլ յեղանակաւ միւսով՝ որ ինձ պարտ գոլ թուի, կամիմ ասել յաղագս նորին իսկ հարբեցութեան, փորձ առնելով արդեւք եթէ հնար իցէ ինձ, զայն որ յաղագս ամենեցուն այսպիսեացն է ուղիղ իրաւութիւն մեզ յայտնել. քանզի և բիւրք առ բիւրից ազգք յաղագս այսոցիկ ընդերկուեալք են՝ մարտնչելով ընդ ձեզ՝ երկու քաղաքիդ։

Մեգիլոս. Եւ սակայն եթէ ունիմք ուղիղ խնդրուած ինչ այսպիսեացս, ոչ է պարտ մեզ դանդաղել առ լսողութիւնս սոցա։

Պղատոն. Խորհեսցուք արդեւք յաղագս այսորիկ ասել այսպէս։ Բեր արդ եթէ ասիցէ ոք զսնուցանող այծուց, և զնոյն իսկ զկենդանին իբրու ստացուած գոլ բարի՝ գովիցէ, և այլ ոք տեսանելով այծք զի ճա-

1 Յոյն. Քանզի միայն զանունն լուեալ արբեցութեան փութացար յանդգնել, որպէս և ես 'ի գովութիւնն. երկաքանչիւր՝ անտեղաբար, նաև վկայս և գովիչս 'ի մէջ ածելով։

բանկին առանց արածողին իւրեանց, և 'ի գործեալ վայրս զչարիս գործելով՝ պարսաւիցէ, և զամենայն կենդանի՝ կամ անիշխան և կամ չար իշխանօք հանդերձ տեսանելով, այսպէս պարսաւիցէ. զայնպիսոյն զբանբասանքն ո՞ղջ վարկանեմք երբեք արդեւք, զի բամբասիցէ զոր ինչ և իցէ։

Մեգիլլոս. Եւ ո՞րպէս։

Պղատոն. Քա՞ղցր ումն իշխան դիցուք մեզ թէ է 'ի նաւարկութեան, որպէս զնաւավարականն ունիցի միայն մակացութիւն, եթէ նաւաբեկ իսկ լինիցի, և եթէ ոչ ո՞րպէս արդեւք ասասցուք[1]։

Մեգիլլոս. Ոչ իսկ, եթէ առ արուեստաւն ունիցի և զայսպէս ախտանալն իբրու ասեսդ։

Պղատոն. Եւ իշխան բանակի զիա՞րդ ուրեմն՝ եթէ զպատերազմականն ունիցի մակացութիւն՝ կարողապէս իշխել, և զանգիտող գոլով 'ի չարիսն 'ի ձեռըն երկիւղի արբեցութեանն նաւակոծի։

Մեգիլլոս. Եւ ո՞րպէս։

Պղատոն. Իսկապէս[2] եթէ ոչ ունիցի զարհեստն, և զանգիտող իցէ։

Կղինիաս. Ամենեւին զումեմնէ չարէ ասես, և ոչ զարանց իշխանէ, այլ ումանց յոյժ զկանանց։

Պղատոն. Եւ զինչ, եթէ զգովող կամ զբամբասող հաղորդութեամբ ումեմն իսկ ըստ որում՝ բնաւորեալ է իշխան գոլ, և նովաւ օգտակար է, և սա իսկ ոչ տեսեալ երբեք եթէ ուղղապէս[3] է սմա հաղորդել ընդ այլոյ իշխանի, այլ միշտ ընդ անիշխան և կամ ընդ չար իշխանաց հաղորդել. կարծիցե՞մք արդեւք զայնպիսի տեսողքն այնոցիկ հաղորդութեանցն, եթէ բարի ինչ պարսաւելոց է և կամ գովելոց։

1 Յօյնն. Պատուակա՞ն արդեւք համարիցիմք զնաւապետ՝ որ թէպէտ զնաւավարականն ունիցի մակացութիւն, այլ 'ի նաւաբեկութեան զախտ ծովու ախտանայցէ, եթէ ոչ...

2 Յօյնն. Իսկ ո՞րպէս։

3 Յօյնն. Իսկ զիա՞րդ թէ զհասարակութիւն ոք գովիցէ կամ ընդ վայր հարցէ, որում պարտ և պատշաճական իցէ բնաւորապէս ունել զոք իշխան, և նորա տեսչութեամբն օգտակար լինել, և զայնպիսին չիցէ երբեք տեսեալ ուղղապէս հաղորդել...

Մեգիլոս. Ո՞րպէս արդեւք ոչ երբեք տեսանելով, և ոչ 'ի միասին լինելով, ուղղապէս պատահելոյ, ոչ և միոյ յայսպիսի հաղորդութեանց։

Պղատոն. Ընկալ դու, արդեւք բազում հաղորդութեանցն խմբակիցք և խմբակցութիւնք դիցո՞ւք արդեւք մի ումն գոլ զուգակցութիւն։

Մեգիլոս. Եւ յոյժ իսկ։

Պղատոն. Զայս իսկ արդեւք ուղղապէս լինելով, թերևս տեսեալ իցէ երբեք[1]. և այնոցիկ իսկ պատասխանի տալ դիւրին է իբրու ոչ իսկ երբեք ամենեւին. քանզի ոչ է այս ձեզ գաւառային, և ոչ օրինական. բայց ես հանդիպեցայ և բազմաց և 'ի բազում տեղիս, և տակաւին առ ամենեսեան իբրու զտաղս ասելի է[2], և հարցայ և գրեթէ զբոլորն իսկ ոչ և մի ուղղապէս լինելով տեսայ և ոչ լուայ՝ բայց մանր մասնկունքն՝ փոքունք՝ ուրուք և սակաւս։ Իսկ զբազումս 'ի միասին զամենայն իբրու ասելի է սխալեալս։

Կղինիաս. Որպէս զայսոսիկ ասես, ո՜վ սիրելի, ասա ևս հաւատի. քանզի մեք իսկ ասացելոցդ առ 'ի քէն հմուտ եմք՝ ոչ հանդիպելով արդեւք վաղվաղակի. թերևս ծանիցուք զուղիղն և զոչն լինելով առ սոսա։

Պղատոն. Վայելչապէս ասես. այլ իմ ասելովս զփորձ առ ուսանել, քանզի յամենայն ուղղէկցութիւն և հաղորդութիւն գործոց ումանց որ երևիցին, իբրու ուղիւղ յամենայնի իւրաքանչիւրոց իշխան գոլ իմանաս։

Կղինիաս. Ո՞րպէս ոչ։

Պղատոն. Սակայն արիագոյնն[3] քան զզանգիտողքն յարհաւիրս անկեալ խռովիցի։

Կղինիաս. Այսպէս։

Պղատոն. Ապա եթէ հնար էր ինչ, ոչ ամենեւին զարհուրեալ և կամ զանգիտեալ՝ կացուցանել 'ի վե-

1 Յոյնն. Տեսեա՞լ իցէ ուրուք երբեք կանոնս և կարգս յայսպիսի խմբակցութիւնս։

2 Յոյնն. ὥς ἔπος εἰπὸν, որպէս բանիւ կարգ է ասել։ Թարգմանչին թուի չփոթեալ ընդ ἔπος, փոխ. էրգ բառին։

3 Յոյնն. Նուաղ քան զզանգիտողքն 'ի մէջ վտանգաց...

րայ զօրաց զօրավար, ո՞չ արդեւք յամենայն յեղանակաւ թերեւս զայս ինչ գործեաք։

Կղինիաս. Յոյժ իսկ։

Պղատոն. Եւ այժմ իսկ ոչ յաղագս զօրաց ասեմք և իշխելոյ 'ի հանդիսի արանց՝ թշնամիք թշնամեաց 'ի ձեռն պատերազմին, այլ բարեկամաց՝ խաղաղութեամբ առ բարեկամս հաղորդելոց խոհեմութեամբ։

Կղինիաս. Ուղիղ ասացեր։

Պղատոն. Եւ է՞ այսպիսի միաբանութիւնս, եթէ արբեցութեամբ իցէ, ոչ առանց խռովութեան։

Կղինիաս։ Եւ որպէս ոչ. այլ թուի ինձ ամենայն ներհակապէս։

Պղատոն. Ապաքէն յառաջագոյն իսկ և սոքա կարօտանան իշխանի։

Կղինիաս. Սակայն և որպէս, իբր ոչ միոյ իսկ իրի։

Պղատոն. Եւ որպէս արդ առանց խռովութեան, եթէ հնար իցէ, զայսպիսի իշխանս պարտ է գտանել։

Կղինիաս. Եւ զիա՞րդ ոչ։

Պղատոն. Սակայն և յաղագս միաբանութեան, որպէս թուի ինձ, խոհեմական սմա գոլ պարտ է։ Զի պահող լինիցի բարեկամութեանն իսկ որ գոյ, և ևս յոլովագունի դարմանող, զի իցէ 'ի ձեռն միաբանութեանն, որ յայնժամ իցէ։

Կղինիաս Ճշմարտապէս։

Պղատոն. Ո՞չ ապաքէն զուարթուն և իմաստուն իշխան՝ 'ի վերայ արբեցելոց կացուցանել պարտ է, և ոչ զներհակն. քանզի արբեցող՝ արբեցողաց և համբակաց իշխան, ոչ իմաստուն, եթէ ոչ մեծ ինչ չար գործէ՝ յոյժ արդեւք վարիցի բարի պատահմամբ։

Կղինիաս. Ամենեւին իսկ արդար։

Պղատոն. Ո՞չ ապաքէն եթէ լինելով իբրու հնար է այսոցիկ միաբանութեանցս ուղղագոյն առ քաղաքս՝ բամբասիցէ ոք զիրն այն, թերեւս ուղղապէս արդեւք բամբասի. ապա եթէ սխալելով իբրու խորհուրդ ինչ մանաւանդ տեսանելով պարսաւիցէ։ Նախ իսկ յայտ է իբրու ոչ գիտէ զնոյն ինչ ուղղապէս լինելով, և ապա զի ամենայն այսմիկ յեղանակաւ չար երեւես-

ցի առանց զուարթութիւն տեառն և իշխանի գործելով. և զայս ոչ իսկ խորհիս, զի եթէ հարբեցեալ վարիչ՝ և կամ ամենայնի իշխան՝ դղրդուեցուսցէ զամենայն, եթէ նաւք, և եթէ կառք, եթէ զօրք, և եթէ զոր ինչ և իցէ երբեք հանդիպեսցի՝ մատակարարեալն առ 'ի նմանէ:

Կղինիաս. Ամենեւին զայս իսկ ճշմարիտ ասացեր, ով սիրելի:

Պղատոն. Զոր առ այսուիկ է մեզ ասել, զինչ երբեք եթէ լինիցի այս ուղիղ որ առ խումբսն է, օրէն բարի արդեւք գործիցէ առ մեզ: Որպէս այժմ իսկ ասէաք, եթէ զօրք ուղիղ առաջնորդութեան հանդիպիցեն՝ յաղթութիւն պատերազմի հետեւելոցն արդեւք լինիցի, ոչ փոքր ինչ բարի՝ և այլոն այսպէս»[2]: Իսկ խմբակցութեան ուղղապէս դաստիարակելով՝ զինչ մեծ ռամկաց կամ քաղաքի արդեւք լինիցի:

Պղատոն. Եւ զինչ մանկան միոյ և կամ դասու ըստ յեղանակի դաստիարակելով, զինչ մեծ ասացաք արդեւք լինել քաղաքին: Եւ կամ զայս այսպէս հարցեալ ասասցուք արդեւք, իբրու միայն[3] իսկ քաղաքին լինիցի՝ դուզնաքեայ ինչ օգուտք. ապ՝ եթէ ընդհանրապէս հարցցես եթէ խրատելոցն զինչ մեծ շահեցոյց զքաղաքն, ոչ է դժուարին ասել, եթէ բարեւք իսկ խրատեալքն լինիցին արդեւք արք բարիք, և այսպիսիք լեալք՝ զայլոն իսկ բարեւք գործիցեն, և տակաւին յաղթիցեն թշնամեացն արդեւք մարտուցեալք: Քանզի խրատ իսկ բերէ զյաղթութիւն. և յաղթութիւն իցէ՝ յորժամ բերիցէ զանհրահանգութիւնս[4]. քանզի բազումք ամբարհաւաճեալք վասն պատերազմաց յաղթութեանց, բիւրիւք այլօք չարեօք լի եղեն 'ի ձեռն ամբարտաւանութեան: Եւ

1 Յօրինակին՝ ղայր ինչ. ուղղեցաք ըստ յոյն բնագրին (κυβερνήτης).

2 Այսինքն՝ ոչ գուգնաքեայ ինչ օգուտ է. զոր այսպէս արժան է իմանալ և զայլոց...

3 Յայնն. Միոյն:

4 Յայնն. Բայց և յաղթութիւն՝ մերթ ապականիչ է խրատու (կամ դաստիարակութեան):

խրատ իսկ ոչ երբեք եղև արհամարհեալ. բայց յաղթութիւնք մարդկան՝ բազումք իսկ եղեն այսպիսիք և լինիցին ևս։

Կղինիաս. Թուիս մեզ, ով սիրելի, զայն որ առ գինիսն հասարակաց դեգերմունքն են, իբրու ՚ի խրատու մեծ մասն ինչ տարածիլ ասել, եթէ ուղղապէս արդեւք լինիցի։

Պղատոն. Եւ զիա՞րդ ոչ։

Կղինիաս. Ունիցիս արդեւք յետ այսմիկ ասել, իբրու այժմ ասացելոյս ճշմարտէ։

Պղատոն. Ճշմարիտն իսկ ով սիրելի, հաստատել թէ այս այսպէս ունի՝ աստուծոյ է, քանզի բազում երկբայութիւնք են. բայց իբրու ինձ երևի պարտ է ասել, քանզի ոչինչ մախանք հանդիպիցին։ Իսկ յաղագս օրինաց և քաղաքավարութեան զբանքս այժմ իսկ առնել[1]։

Կղինիաս. Այսորիկ արդեւք փորձ արասցուք, զի զոր թուիդ քեզ յաղագս այժմ երկբայելոցն՝ իմասցուք։

Պղատոն. Բայց պարտ է առնել այսպէս ձեզ առ ՚ի յուսանիլ, և ինձ առ ՚ի յայտնելն զփորձ առնել փութապէս և տարածել զբանս։ Բայց նախ իսկ լուարուք՝ յաղագս այսմիկ իրի զքաղաքս մեր ամենեքին Ելլենացիք կարծեն իբրու բանասէր և բազմաբան գոլ։ Իսկ զԼակեդոմոն և զԿրիտէ, զմին նուազաբան, և զմիւսն՝ բազմամտութեամբ մանաւանդ՝ քան եթէ բազմաբանութեամբ կրթեալ։ Բայց պատրաստիմ՝ գուցէ կարծիս առատուեցից ձեզ՝ եւ առ փոքունս զմեծս ասելով, յաղագս արբեցութեամբ փոքումբ իրի՝ ամենևին երկարաբան։ Վերստին մաքրելով, և ըստ բնութեան սորա ուղղութեան, ոչ է հնար երբեք առանց երաժշտականի ուղղութեան զհաւաստին և կամ զբաւականսն առ բանսն ընկալուլ. և երաժշտականին առանց ամենայն հրահան-

1 Յոյնն. Բայց զթուեցեալն ինձ ասացից մտադիւրութեամբ, ուր զօրինաց քաղաքավարութեան առեալ է մեր խօսել։

գի ոչ երբեք կարասցէ[1]. և այսոքիկ ամենեքին բազում բանից կարօտանան։ Տեսէք արդեւք եթէ զինչ արասցուք. ապա թողցուք իսկ զայսոքիկ 'ի հասեալ ժամն, և փոխեսցուք առ այլ ինչ բան յաղագս օրինաց։

Մեգիլոս. Ո՛վ սիրելի աթենացի, թերևս ոչ գիտես եթէ զինչ հանդիպի տունս մեր, քաղաքիս ձերոյ գոլով առիթ[2]. Թերևս իսկ և ամենեցուն մանկանց յորժամ լուիցեն եթէ քաղաքն ուրուք առիթք են, յայնմ ժամու զբարեմտութիւն 'ի համբակացն վաղվաղակի զգենեցուն, իւրաքանչիւրք 'ի մէնջ յայսոցիկ՝ որ առիթք են քաղաքիս, իբրու երկրորդ հայրենի գաւառ գոլով յետ իւրում քաղաքի։ Եւ ինձ արդեւք այժմ այս ինչ եղէ. քանզի լսելով առ 'ի մանկանցն վաղվաղակի[3], թէ բամբասիցեն ինչ և կամ գովիցեն լակեդեմոնացիք զաթենացիս, իբրու քաղաքս մեր, ով մի... է[4]. ոչ է բարեւք և կամ բարեւք իսկ հաճոյ թուեցաւ[5]։ Զայս իսկ լսելով, և մարտընչելով առ այսոսիկ միշտ վասն ձեր առ այնոքիկ որ զքաղաքն 'ի բամբասանս արկանէին՝ զամենայն բարեմտութիւն ընկալայ։ Եւ ինձ այժմ իսկ ձայնդ ձեր սիրելի է, և առ 'ի բազմաց ասացեալն. իբրու որչափ յաթենացւոց բարիք են՝ զանազանապէս են, այսպիսիք թուի ճշմարտագոյն ասել։ Քանզի միայն առանց կարծեաց՝ ինքնաբնակաբար աստուածային մասամբ ճշմարտապէս, և ոչ ինչ ստեղծանելով ունին զբարութիւն։ Վստահանալով արդեւք 'ի սակս իմ ասասցես թերևս այսչափ, որչափ և քեզ իցեն սիրելի։

1 Յոյն. Եւ զերաժշտականէն անմարթ է ինձ խօսել՝ առանց զամենայն մասունս հրահանգայց (դաստիարակութեան) բովանդակելոյ։

2 Յոյն՝ Πρόξενος զոր հինքն մեր մերթ առիթ թարգմանեցին, և այլուր ասպնջական, վանատուր, վանատու և նախասպնջական։ Բնագիրն այսպէս ունի զմթին տողդ հայ թարգմանչին. Ո՛վ սիրելի աթենացի, թերևս ոչ գիտես զի գերդաստանն իմ 'ի Լակեդեմոն՝ զպարտս հասարակաց ասպնջականութեան ունի առ աթենացիս։

3 Յոյն. Անդստին 'ի մանուկ տիոցս։

4 Այսպէս թերի յօրինակին. յոյնն ունի ով Մեգիլէ։

5 Յոյն. Բարիոք կամ ոչ նոյնպէս ասպնջականեալք։

Կղինիաս. Եւ սակայն, ով սիրելդ, և զառ յինէն բանս լուեալ և ընդունել վստահութեամբ, որչափ ախորժես ասա: Քանզի աստանօր թերևս լուար՝ իբրու Եպիմանիդէս եղև այր աստուածային, որ էր մեր իսկ ընտանի. և եկեալ նախ քան զպարսկական տասն ամաւ յառաջագոյն առ մեզ, ըստ այն դիւթութեանն, և զոք զոհեաց զումանս, զոր աստուած 'ի բաց եբարձ[1]: Եւ արդ զարհուրելով աթենացւոցն 'ի պարսկական զօրացն, ասաց այսպէս՝ եթէ մինչև 'ի տասն ամ ոչ եկեսցեն, հրաժարիցեն գործելով ոչ ինչ յայնցանէ զոր ինչ յուսացան՝ կրելով զյոլովագոյն չարս քան եթէ առնելով: Յայնժամ իսկ օտարացան բնակելով առ մեզ նախածինքն մեր, և բարեմտութիւն յայնմհետէ առ մեզ ես և ծնողքն մեր ունիմք:

Պղատոն. Եւ զձերդ իսկ այսուհետև այժմ լսել իբրու թուի ինձ պատրաստէ արդեւք: Իսկ իմս առ 'ի կամել պատրաստէ. և առ 'ի կարել՝ ոչ ամենևին դիւրին: Սակայն իսկ զփորձ առնել պարտ է, նախ առ բանիւ սահմանեսցուք թէ զի՞նչ երբեք իցէ խրատ, և զի՛ ունի զօրութիւն. քանզի 'ի ձեռն սորա ասեմք հասանել 'ի գոլ յառաջագոյն ձեռնարկեալն առ 'իմէնջ 'ի հասեալ ժամս մինչև առ աստուած թերևս հասցէ:

Կղինիաս. Ցոյժ իսկ ա՛րասցուք զայս ինչ՝ եթէ քեզ իցէ հեշտագոյն:

Պղատոն. Ասելով այժմ իմ եթէ զի՞նչ երբեք պարտ է ասել խրատ գոլ խորհեսցուք. զի թերևս համոյ թուեսցի ձեզ ասացեալքս:

Կղինիաս. Ասասցես արդեւք:

Պղատոն. Ասելով իսկ ասեմ այսպէս. այնմ որ բարի այր հանդերձեալն է գոլ՝ որպէս և իցէ զայս ինչ 'ի մանկութենէ վաղվաղակի խոկալ պարտ է խաղալով իսկ և փութալով առ իրողութիւնն՝ առ իւրաքանչիւր պատշաճմն. ումեմն շինելով ինչ մանկական շինուածովքն խաղալ պարտ է, և ումեմն երկրա-

1 Յոյն. Աստուծոյ նախագիտութեամբն (μαντεία), զոհս հրամանաւ նորա մատուցանէր:

գործելով, և գործիս երկաքանչիւրոց փոքունց ճշմարտագունիցն նմանս կազմել այնոցիկ որ զերկաքանչիւրսն կերակրեն[1]: Եւ 'ի յուսմանց իսկ որչափ հարկաւոր են նախ ուսանիլ՝ յառաջագոյն ուսանել. իբրու հիւսանն զչափելն և զկշռելն, և պատերազմականին զհեծանելն խաղալեօք, կամ այլ ինչ յայսպիսեացն առնելով. և փութալ 'ի ձեռն մանկականացն՝ անտանօր դարձուցանել զհեշտութիւնն և զցանկութիւնքն մանկանցն, ուր և հասանելով սոցա՝ պարտ է զկատարածն ընկալուլ: Եւ զգլուխ իսկ խրատու ասեմք զուղիղ սնունդն, որ և զանձն իսկ խրատելոյն[2] 'ի փափագումն այնմիկ մանաւանդ ածցէ, որոյ կարօտանայ յարութիւն հասանելով կատարեալ գոլ իրողութեանն առաքինութեամբն: Տեսէք իսկ թէ մինչև ցայսմիկ զոր ասացիս հաճոյ ձեզ թուեսցի:

Կղինիաս. Եւ ո՞րպէս ոչ:

Պղատոն. Մի՛ այսուհետև այս որ խրատս անուանեմք իցէ անորոշ. քանզի այժմ գովելով զիւրաքանչիւրոց զսնունդսն ասեմք, իբրու ոմն 'ի մէնջ խրատեալ գոլով, և ոմն է յորժամ անխրատ 'ի վաճառականութիւնս և 'ի նաւավարութիւնս, և 'ի յայլոց այսպէս մանաւանդ յոյժ խրատելով մարդկան. քանզի ոչ զայսոքիկ վարկանելով, իբրու խրատ գոլ, թերևս այժմ իցէ մեզ բանս, այլ զայն որ առ արիութիւնսն են 'ի մանկութենէ, խրատքն առնելով ցանկալի, իսկ և տռփալի լինել քաղաքաց՝ 'ի կատարեալ և իշխել, և ընդ իշխանութեամբ կալ. գիտել իրաւամբք զայս առ զօրութիւն և կամ առ այլ ինչ իմաստութիւն, առանց մտաց և իրաւանց դարբնական[3] իմն գոլ և առանց ազատութեան, և ոչ արժանացեալ ամենևին կոչիլ խրատ: Արդ մեք ոչ ինչ անուամբ տարբերեսցուք սոքօք. այլ այժմ իսկ խոստացեալ մեզ բանս կացցէ և հաստատուն մնասցէ, իբրու ուղղապէս խրատեալքն գրեթէ բարիք լինիցին, և պարտ է արդեւք

1 Այսինքն՝ գաստիարակեն կամ կրթեն, որպէս յոյնն ունի:
2 Յոյն. Խաղացողին:
3 Յոյն. βάναυσόν, պաճուճեալ, արտաքնայարդար:

զխրատն ոչ երբեք անարգել, իբր նախկին գեղեցկագունիցն՝ առ արիագոյն արքն լինելով. և եթէ երբեք արտաքս ելցէ՝ սակայն հնար է վերստին ուղղել զայս միշտ առն, պարտ է ըստ զօրութեան յամենայն կենցաղումս:

Կղինիաս. Ուղղապէս, և տեղի տացուք բանիցդ քոց զոր ասացեր:

Պղատոն. Իսկ և կանխաւ ներեցաք, իբրու ելով այնոցիկ՝ որ կարողք են իշխել. չարքն իցեն այնոքիկ՝ որ ոչ[1]:

Կղինիաս. Ասես ուղղագոյն:

Պղատոն. Եւ հաւաստագոյն ևս այժմ վերստին առցուք զայսոսիկ՝ զոր երբեմն ասէաք. և եթէ իբրու 'ի ձեռն պատկերի, թերևս հնարաւոր 'ի ձեզ[2] յայտնել զայսպիսիս ընկալարուք զիս:

Կղինիաս. Ասա միայն:

Պղատոն. Ո՞չ ապաքէն զմի ոք իսկ 'ի մէնջ՝ զիւրաքանչիւր ոք համարիմ:

Կղինիաս. Այո:

Պղատոն. Եւ երկու ստանալով յինքեան խորհըրդակիցք, ներհականք իսկ և անխոհեմք, զորս առասեմք հեշտութիւնք և տրտմութիւնք:

Կղինիաս. Են այսոքիկ:

Պղատոն. Այսպէս և առ երկրորդիւ սոքօք զկարծիս հանդերձելոցն, որոց հասարակաց իսկ անուն է յոյս՝ և յատուկ երկիւղ, որ նախ տրտմութեան է յոյս. և վստահութիւն, որ նախ քան զներհականն. և առ այսոքիկ ամենեցուն խորհուրդ՝ որ ինչ երբեք 'ի սոցունց լաւագոյն է կամ վատթարագոյն. որ և լինելով աւանդութիւն քաղաքի՝ իբրու հասարակաց՝ օրէնք մականուանեցաւ[3]:

1 Յոյնն. Յառաջագոյն կանխեցաք ասել, թէ որ գիտիցեն իշխել անձանց՝ բարիք են, իսկ որ ո՛չ՝ չարք:

2 Յօրինակին՝ 'ի ձեզ. եդաք ըստ յունին:

3 Մթին են տողքս, զոր այսպէս ունի յոյն բնագիրն.— Պղատոն. Յերկոսին 'ի սոսա յաւելուլ արժան է և զնախազգածութիւն հանդերձելոցն, զոր յոյս սովոր եմք կոչել հասարակաբար 'ի հաճոյականս, և երկիւղ՝ յորժամ գուշակ թուիցին տրտմականաց.

Կղինիաս. Հազիւ իսկ իբրու հետևեին. սակայն և զայն ինչ ասա որ յետ այսոցիկ իբրու հետևելով:

Մեգիլլոս. Եւ առ ինձ իսկ նոյն կիրդ է, և ոչ եմ 'ի բացէ:

Պղատոն. Արդ յաղագս այսոցիկ խորհեսցուք այսպէս: Աքանչանս ինչ աստուածային զիւրաքանչիւր ոք վարկցուք 'ի մէնջ կենդանի, եթէ իբրու խաղալիք նոցունց, և եթէ իբրու փութով ումամբ բաղկացեալ, քանզի զայս իսկ ոչ գիտեմք. բայց զայս ինչ գիտեմք, զի այսոքիկ կիրքս 'ի մեզ իբրու աղիք ոմանք և կամ լարք գոլով, թերեն զմեզ, և հանդէպ միմեանց ձգելով 'ի ներհական գործս, որոյ որոշելով արդեւք կայ առաքինութիւն և չարն[1]: Քանզի միով ասէ բանս[2] պարզ[3] գոլով ձգմանցն 'ի միասին հետևիլ, և ոչ երբեք պակասե...[4] նմանէ հակակային՝ առ այլ լարքն իւրաքանչիւր. սա իսկ գոլով զբերումն բանականին՝ լար ոսկի և վսեմական՝ քաղաքին հասարակաց օրէնք կոչեցեալք: Եւ այլք ոմանք կարծք և երկաթիք, և ոմն կակղագոյն՝ իբրու ոսկի գոլով, և այլք ամենայն պէսպէս տեսակաց նմանեալք՝ և պարտ գոլ իսկ գեղեցկագոյն թերմամբն՝ օրինացն միշտ 'ի միասին ըմբռնիլ: Իբրու զի բանականին անուանն՝ չեմք գոլ հեզագունի, արդ և ոչ խստագունի կարօտանալ 'ի պաշտօնէիցն. զի սորա բերումն այսպէս իսկ մեզ բերելով՝ ոսկի սեռ յաղթիցէ այլոց սեռից: Եւ այսպէս յաղագս սքանչելեաց առաքինութեան գոլով մեզ ճառս՝ ողջ իցէ արդեւք, կատարեալ և վեհագոյն ինքեան. և նուազագոյն գոլովն՝ յեղանակաւ ումամբ յայտնապէս լինիցի թերևս որչափ մանաւանդ իմանալի է. և զի քաղաք և ռամիկ զբանն իսկ ճշմարիտ ինքեան ընկալեալ՝

սոցա ներհական՝ վստահութիւն: Այլ 'ի վեր քան զամենեսին բանականն՝ (λογισμός,) որ թելադրէն մեզ որ 'ի սոցունց լաւագոյն իցէ և կամ վատթարագոյն. որ քանզի հասարակաց աւանդութիւն է քաղաքի, վասն որոյ և օրէնք կոչեցաւ:

1 Այսինքն՝ յորոց 'ի զանազանութենէ յառաջագային առաքինութիւնք կամ ախտք:

2 Այս է՝ միտք կամ խոհականն որ 'ի մեզ:

3 Այսպէս յօրինակին. յոյնն՝ պարտ:

4 Թերի յօրինակին. յոյնն՝ պակասել 'ի նմանէ:

յաղագս ձգմանցն նոցունց, սովաւ հետեւելով պարտ է կեալ և քաղաքի՝ կամ առ 'ի յաստուածոցն ումեմնէ կամ առ 'ի սմանէ իսկ ասացելոյդ ճանաչողի. զայսոսիկ բանս ընկալեալ և օրէն եդեալ՝ ընդ ինքեան իսկ և ընդ այլոց քաղաքաց կաճառիլ. այսպէս իսկ և չարութիւն և առաքինութիւն հաւաստագոյն մեզ իցէ արդեւք յարմարեալ։ Եւ հաւաստագոյն սորա լինելով խրատով և այլ խորհրդովք, թերեւս իցէ մանաւանդ երեւելի իսկ, և առ այնոցիկ որ 'ի գինիսն են դեգերմունք, որով թուիցիմք արդեւք յոռին գոլ. յաղագս այնորիկ յերկարութիւն բազում բանից, յաճախապէս ասացեալ։

Կղինիաս. Եւ երեւեսցի թերեւս երկարութիւն սոցա ոչ ինչ տարաժամ։

Պղատոն. Բարւոք ասես։ Բերելով առ 'ի սքանչանս այս զարբեցութիւն, որպիսի՞ ինչ զսա 'ի բաց գործեսցուք։

Կղինիաս. Եւ առ ի՞նչ դիտելով զսա վերստին հարցանես։

Պղատոն. Ոչ ես առ մի ինչ. բայց այս բոլորովին հաղորդեալ ընդ սմա, որպիսի՞ ինչ 'ի միասին անկանի լինելով[1]. և ես հաւաստագոյն զոր կամիմս փորձ արարից ասել։ Քանզի հարցանեմք այսպիսի ինչ. յուժգնագո՞յնք արդեւք զհեշտութիւնք և զտրտմութիւնք և զցասմունք և զտռփմունք՝ գինեացն արբեցութիւն մակատարածէ։

Կղինիաս. Յոյժ իսկ։

Պղատոն. Սակայն զզգայութիւնքն և զյիշմունքն և զկարծիսն զխոհեմութիւնքն՝ որպիսի՞ ինչ. սապէս յուժգնագո՞յնք, զի ամենեւին պակասեցուցանէ զնոսա, եթէ յագեցեալ ոք արբեցութեամբն լինիցի։

Կղինիաս. Ամենեւին պակասեցուցանէ։

Պղատոն. Ո՞չ ապաքէն 'ի նոյնն հասուցանէ զունակութիւն հոգւոյն՝ յայն որ մինչդեռ համբակ էր։

1 Այս է՝ 'ի խառնիլ անդ ընդ նմա արբեցութեան (կամ գինւոյն), զորպիսի՞ գործիցէ ազդեցութիւն։

Կղինիաս. Եւ զիա՞րդ ոչ։

Պղատոն. Նուազագո՛յն իսկ յայնժամ սա լինիցի իսկ ժուժկալող։

Կղինիաս. Նուազապէս։

Պղատոն. Զարագո՞յն արդեւք ասասցուք գոլ զայնպիսին։

Կղինիաս. Ցոյժ իսկ։

Պղատոն. Ապա ուրեմն ոչ միայն ծերն՝ որպէս թուի ինձ, երկրորդ անգամ մանկական բարք բերիցէ թերեւս, այլ և արբեալն։

Կղինիաս. Քաջ ասացեր, ով սիրելի։

Պղատոն Այսմիկ իսկ խորհրդոյս, է՞ ոմն բան՝ որ ձեռնարկութիւն առնէ հաւանեցուցանել զմեզ, իբրու զի պա՞րտ է ճաշակել, և ո՛չ փախչել ամենայն կարիւ, ըստ որում հնարն է։

Կղինիաս. Թուի այսպէս գոլ. դու արդ ասես, և պատրաստ լեր այժմ ասել։

Պղատոն. Ճշմարտապէս իսկ յիշես, և այժմ ես պատրաստ եմ. քանզի երկոցունց կամելով յօժարապէս ասացիք լսել։

Կղինիաս. Եւ ո՞րպէս ոչ լուիցուք, թէպէտ և յոչ միոյ այլ իրի սակս, այլ վասն սքանչանացն իսկ և անտեղութեանն, թէ պա՛րտ է կամաւ երբեք առն յամենայն չարութիւն արկանել զանձն իւր։

Պղատոն. Հոգւո՞յ արդ ասես։

Կղինիաս։ Այո։

Պղատոն. Եւ մարմնոյ զի՞նչ. ո՞վ ընկեր 'ի չարութեան անօսրութիւն և 'ի գարշանս և 'ի տկարութիւնս, եթէ երբեք ոք կամաւ 'ի յայսպիսիս հասցէ։

Կղինիաս. Եւ ո՞րպէս ոչ։

Պղատոն. Եւ զիա՞րդ զայնոսիկ որ 'ի բժշկանոցն գնան զի ըմպիցեն դեղք, տգէ՞տք գոլ կարծիցեմք. զի սակաւ ինչ յետոյ՝ առ բազում աւուրս այնպիսի մարմին ունիցին՝ որպէս թէ իսպառ ունել հանդերձեալ էին զկեանս, յանձն ոչ առնուին, կամ զայնոսիկ որ 'ի կրթութիւնս և աշխատանսն հասանին, ոչ գիտեմք իբրու տկարք վաղվաղակի լինիցին։

Կղինիաս. Զայսոսիկ զամենայն գիտեմք։

Պղատոն. Եւ զի 'ի սակս այնոցիկ որ յետ այսմիկ օգտակարութեանցն են՝ կամաւ գնան։

Կղինիաս. Գեղեցկապէս։

Պղատոն. Ո՞չ ապաքէն և յաղագս այլոց խորհրդոց պարտ է զնոյնս տրամախոհիլ յեղանակ։

Կղինիաս. Ցոյժ իսկ։

Պղատոն. Եւ յաղագս դեգերմանն որ առ գինիսն է, այսպէս պարտ է տրամախոհիլ, եթէ է իսկ ուղղապէս զայս ինչ՝ առ այսպիսիսն խորհիլ[1]։

Կղինիաս. Եւ ո՞րպէս ոչ։

Պղատոն. Ապա եթէ երևեսցի մեզ՝ թերևս զօգտակարութիւն ինչ ունելով, ոչ ինչ նուաղագոյն քան զայն որ առ մարմնոյն է յարմարանացն՝ սկրամամբ իսկ յաղթահարէ. քանզի այն վիրօք և հատուածօք լինիցի, և այս ոչ։

Կղինիաս. Ուղղապէս ասես։ Բայց ես սքանչացայց արդեւք եթէ կարասցուք այսպիսի ինչ իմանալ[2]։

Պղատոն. Զնոյնս իսկ այժմ, որպէս թուի ինձ, պարտ է ձեռնարկութիւն առնել և ասել. և դու ինձ զայս ինչ ասա. երկո՞ւ երկիւղից տեսակք՝ գրեթէ ներհականք, հնարաւորք իմանալ։

Կղինիաս. Զի՞ւրս իսկ։

Պղատոն. Զայսոքիկ իսկ. երկնչիմք երբեք՝ ակն ունելով լինել մեզ չար ինչ։

Կղինիաս. Այո։

Պղատոն. Եւ երկնչիմք իսկ բազում անգամ 'ի կարծեաց, վարկանելով թուիլ չարք՝ գործելով և կամ ասելով ինչ յայնցանէ՝ որ ոչ են բարիք. զոր երկիւղիւ կոչեմք մեք իսկ, թուի ինձ թէ և ամենեքեան, ամօթ։

Կղինիաս. Եւ զիա՞րդ ոչ։

Պղատոն. Եւ զայսոքիկ արդեւք երկու ասէի երկիւղ,

1 Այսինքն՝ եթէ և 'ի գինեացն դեգերմանէ մարթ իցէ օգուտ ակն ունել։

2 Այսինքն՝ եթէ կարացից խելամուտ լինել թէ զիա՞րդ այդչափ օգուտք յառաջ գայցեն 'ի գինեըմբուայ (յերախանաց)։

յորոց միունն ներհական իսկ է խոշտանգանաց և այլոց երկիւղից. և ներհական է յոլովիւք և մեծագոյն հեշտութեամբն։

Կղինիաս. Ուղղագոյն իսկ ասես։

Պղատոն. Ապաքէն ո՛չ օրինադիր, և ամենայն որում փոքր ինչ օգուտ է, զայսպիսի զերկիւղս պատուաւ մեծագունիւ պաշտիցէ, և կոչելով պատկառանս. զարտաքոյ սորա յանդգնութիւնս՝ անպատկառութիւն և մեծ չար առանձնապէս և 'ի հրապարակի առասելով ամենեցուն թուեցայց։

Կղինիաս. Ուղղապէս ասես։

Պղատոն. Ո՞չ ապաքէն զայլ բազումս և զմեծագոյնս՝ երկիւղս այս զմեզ կեցուցանէ, և առ պատերազմունս զյաղթութիւն և զփրկութիւնն մի ըստ միոջէ ոչ այլ ինչ այսպէս յոյժ 'ի մեզ գործեսցէ. քանզի երկու ելով այնոցիկ որ զյաղթութիւն գործեն, վստահութիւն իսկ և համարձակութիւն առ թշնամեացն. իսկ առ բարեկամացն երկիւղ ամօթոյ՝ յաղագս չարի ուրուք։

Կղինիաս. Է այդ այդպէս։

Պղատոն. Ապա ուրեմն աներկիւղ պարտ է լինել և զարհուրեցուցիչ իւրաքանչիւրոյ 'ի մէնջ. 'ի սակս որոց երկաքանչիւրոց՝ ընդ երկուս բաժանեմք[1]։

Կղինիաս. Յոյժ իսկ։

Պղատոն. Իսկ և աներկիւղք զիւրաքանչիւր կամեցեալք առնել յերկիւղոց, բազում ումանց յերկիւղ ածելով զսա օրինօք գործեսցուք այսպիսի։

Կղինիաս. Երևիմք այսպէս։

Պղատոն. Եւ զի՞ յորժամ ձեռնարկութիւն առնեմք ահագին զոմն գործել իրաւամբք։ Ո՞չ արդեւք առանց ամօթոյ 'ի միասին բերելով զսա և կրթելով պարտ է առ 'ի յաղթել, մարտնչելով՝ բերել սովաւ զյաղթութիւնս. և կամ զանգիտութեամբն որ 'ի սմա է մարտնչելով, և յաղթելով սմա պարտ է կատարել.

1 Յոյնն. Ապա ուրեմն իւրաքանչիւրոյ 'ի մէնջ աներկիւղս պարտ է լինել, և երկիւղիւ զարհուրեալս. և զվասն էրն ասացաք։

գոլով առ այսպիսի նահատակութիւնս, ոչ մինչև ցկէս անձին իւրոյ լինիցի առ արիութիւնն, և ողջախոհ արդեւք կատարելապէս իցէ, ոչ բազում հեշտութեամբ և ցանկութեամբ յորդորելով անամօթել և անիրաւել՝ մարտնչելով և յաղթելով բանիւ և գործով, և արհեստիւ 'ի խաղք և 'ի փոյթք, այլ առանց ախտի գոլով յամենեցունց յայսպիսեացս։

Կղինիաս. Ո՞չ ապաքէն զվայելչական բանն արդեւք ունիցի։

Պղատոն. Եւ զի՞նչ արդ դեղ է երկիւղի զոր աստուած ետ մարդկան։ Իբրու թէ որչափ յոլովագոյն արդեւք կամիցի ոք արբիլ 'ի սմանէ զներկայս և զհանդերձեալս սմա ամենայն և զվախճանսն՝ յամենայն երկիւղ հասուցանել՝ զարիագոյնն մարդկան, և նրնջել իսկ, և յըմպելոյն 'ի բաց թափելով, դարձեալ յամենայն ժամ զնոյնն սա լինել։

Կղինիաս. Եւ զի՞նչ այսպիսի ասասցուք, ով սիրելի, առ մարդիկ ըմպելի երբեք լեալ։

Պղատոն. Եւ ոչ ինչ. ապա եթէ լեալ էր երբեք, էր զի և առ արիութիւն էր, թերևս օրինադրի պիտանացու։ Իբրև այսպիսի ինչ յաղագս նորա և մանաւանդ ունէաք թերևս ընդ սմա տրամաբանել. Բեր, ով օրինադիր, եթէ կրետացւոց և որոց իցեն ոմանց՝ օրինադրես, նախկի իսկ 'ի քաղաքացւոց ընկալցէ արդեւք քննութիւն՝ հնարաւոր գոլով հասանել յաղագս արիութեան և զանգիտութեան։

Կղինիաս. Յայտ է եթէ ասիցէ թերևս ամենայն ոք։

Պղատոն. Եւ զի՞արդ. զգուշութեամբ և առանց վշտաց մեծաց, եթէ ներհականօքն նոցունց։

Կղինիաս. Եւ զայս յետ զգուշութեանն 'ի միաւին խոստովանեսցի ամենայն ոք։

Պղատոն. Վարեսցի՞ արդեւք յերկիւղն զսոսա ածելով և յանդիմանելով առ 'ի կիրսն՝ իբրու թէ հարկել աներկիւղ լինել հրամայելով, և պատուիրել խրատու, և զայն իսկ անարգելով եթէ ոք քեզ ոչ հաւանեսցի գոլովն այսպիսի՝ իբրու դուդ յամենայնի կարգես, և կրթելով իսկ քաջ և արիապէս առանց տուժի.

՝ի բաց արդեւք թողուցուս, ապա եթէ չարաչար զտուժս ՝ի վերայ դիցես. և կամ եթէ ամենևին ոչ վարեցի՝ այլ ոչ ինչ ամբաստանելով ըմպելոյն։

Կղինիաս. Եւ որպէս ոչ վարեցի, ով սիրելի։

Պղատոն. Կրթութիւն արդ, ով սիրելի, զի զայս որ այժմէն[1] սքանչելի իցէ թերևս պատրանաց՝ ըստ սակաւուց, և ըստ այնմ որչափ և իցեն, միշտ ոք կամիցի[2]։ Եւ եթէ յանապատի միայն ոք արդեւք զյառաջագոյն ամօթալին եդեալ առաջի, նախ քան զունելն բարեւք՝ զերևելն ոչ պարտ վարկանելով, այսպէս կրթիցի առ երկիւղսն, զըմպելի միայն պատրաստելով փոխանակ բիւրից իրողութեանց, ուղղապէս թերևս ինչ գործիցէ։ Ապա եթէ հաւատալով ոք անձին իւրոյ՝ բնութեամբ և խոկմամբ բարեւք պատրաստիլ ոչ իսկ դանդաղեսցի խմբակցօք բազմօք կրթելով՝ ցուցանել զայն որ առ ըմպելոյն կարևոր տարբերութեանն է զօրութիւն, գերակոխելով և յաղթելով. իբրու ՝ի ձեռն խայտառակութեան ոչ ինչ սղալել մեծագոյն, և ոչ այլայլիլ ՝ի ձեռն առաքինութեան, և ՝ի վերջին արբեցութենէ ՝ի բաց կացցէ, նախ քան զհասանիլն առ պարտութիւն ըմպելոյն՝ յամենայն մարդկանէ երկուցեալ։

Կղինիաս. Այո, զի ողջախոհիցի, ով սիրելի, այսպէս գործելով այնպիսին։

Պղատոն. Դարձեալ իսկ առ օրէնսդիրն, ասասցուք զայս ինչ. Իցէ արդ, ով օրէնսդիր, զի երկիւղին արդ գրեթէ ոչ աստուած եդ մարդկան այսպիսի դեղ, և ոչ մեք հնարաւորեալ եմք. — քանզի զկախարդքն ոչ ասացից ՝ի խրախճանութիւնս —։ Իսկ արդ աներկիւղութեան և յոյժ յանդգնելոյ, և առանց ժամու և յոր ոչն է պարտ՝ որպիսի իցէ, կամ որպէս ասեմք։

Կղինիաս. Ասիցէ ոք, թէ և զգինոյն ասելով։

1 Յոյնն. Բան զայս որ այժմէն... և դիւրագոյն (ρᾳστώνης)։ Զայն բառդ պարզանաց թարգմանէ հայն։

2 Յոյնն. Ըստ որում՝ կամ ուր կամիցի։

Պղատոն. Թէպէտ և ունիցի այս զներհականն և ասելովն այժմ, եթէ ըմպեալ զսա մարդ՝ զանձն առանձին իւրոյ խանդաղատեալ գործիցէ վաղվաղակի մանաւանդ քան զառաջինն. և որչափ թերևս յոլովագոյն ճաշակիցէ 'ի սմանէ, յոլովագոյն բարի յուսով լնուլի և զօրութեամբ առ կարծիս. և վախճանելով իսկ այսպիսիս ամենայն համարձակութեամբ և ազատութեամբ՝ իբրու իմաստուն գոլով լի լինիցի և ամենայն աներկիւղութեամբ, իբրու ասելի է առանց դանդաղանաց, այսպէս իսկ և գործել։

Կղինիաս. Ամենայն ոք թուի ինձ եթէ այսոցիկ ներ... ութիւն արասցէ[1]։

Մեգիլլոս. Զիա՞րդ իսկ։

Պղատոն. Վերստին արդեւք յիշեսցուք զայս ինչ՝ որ երկուց ասացաք հաճութեանց կարօտանալ անձանց մերոց։ Ումեմն՝ թէ որպէս մանաւանդ համարձակեսցուք, և ումեմն՝ զներհակի նորին, զի մանաւանդ երկիցուք։

Կղինիաս. Այն իսկ են՝ որ զպատկառանացն ասէիր[2], որպէս թուի մեզ։

Պղատոն. Բարեւք յիշէք. այլ քանզի զարիութիւնն և զաներկիւղութիւնն երկիւղիւքն պարտ է խօկալ, ապա ուրեմն խորհելի է զի ներհականօքն զներհականսն իսկ բժշկել պարտ է։

Կղինիաս. Զի այս է վայելչական։

Պղատոն. Զայս ինչ ախտանալով ուրեմն՝ բնաւորեալ եմք զանազանապէս համարձակք գոլ և յանդուգնք. և զայսոսիկ թերևս խօկալ, որպէս թուի ինձ, պատշաճ իցէ, իբրու նուազագոյն գոլ անամօթութեամբ և յանդգնութեամբ լցեալ և ահագինք՝ առ 'ի համարձակել յամենայն ժամ ասել ինչ կամ կրել, և կամ առնել ամօթալի ինչ զինչ և իցէ[3]։

Կղինիաս. Այսպէս թուի։

Պղատոն. Ո՞չ ապաքէն այսոքիկ են ամենայն որովք եմք այսպիսիք. սրտմտութիւն, տրփումն, ամբարհա-

1 Այսպէս թերի յօրինակին. յոյնն՝ համախորհուրդ երևեսցի։
2 Յոյնն՝ ասէիր։
3 Այսինքն՝ չառնել ինչ ընդ որ ապա զամօթ կրիցեմք։

ւաձութիւն, անուսումնութիւն, շաՀասիրութիւն, զանգիտումն: Եւ ևս այսոքիկ. Ճոխութիւն, գեղեցկութիւն, զօրութիւն, և ամենայն որչափ 'ի ձեռն Հեշտութեան արբեցուցանելով, անխոՀեմս գործէ: Եւ սոցունց՝ նուաստագոյն իսկ և անվնասակարագոյն՝ առաջին իսկ առ 'ի ընկալուլ Հմտութիւն, և ապա 'ի խօկալն առ գինոյ Հրահանգի և խաղալեաց: Վէրք ունիմք ասել Հեշտութիւն չափաւոր՝ մանաւանդ թէ որպէս իցէ բարի Համամամբ լինիցի. զի դիտեսցուք արդեւք դժուարին Հոգւոյ և վայրենոյ յորմէ ապիրատութիւնք բազում լինիցին. որպէս Հասանելով 'ի միասին արկուածքն՝ փորձութիւն առնուլ և վշտագնելով յաղագս սոցունց սխալագոյն, և կամ 'ի միասին լինելով Դիոնիսոսի տեսութեամբն, և կամ առ ափրոդիտականօքն՝ պատրեալ ումեմն Հոգւոյ փորձ առնուլ, յորդորելով զդստերս իւր և զուստերս, և զկանայս. այսպէս առ սիրելագոյնքս վշտագնելով, զսովորութիւն անձին տեսանել: Եւ բիւրինս իսկ ասելով, ոչ ոք երբեք գործիցէ ինչ զանազան 'ի մանկական խաղալեօքն, յայնմէ՝ որ այլպէս է՝ առանց վարձու տեսանել՝ որ ունի տեսակ տուգանաց. և այս իսկ նոյնս յաղագս նոցունց, ոչ թերևս կրետացիք, և ոչ զայլ մարդիկ կարծեմք, եթէ ընդ երկբայութեամբ անկցիմք, և ոչ փորձ միմեանց՝ Հեզագոյն զայս գոլ, զնուաստագունութեանն, և զգուշութեանն տարբերիլն առ այլ կրթութիւնսն:

Կղինիաս. Ճշմարիտ այս իսկ է:

Պղատոն. Այս ինչ արդեւք մի իցէ յայնցանէ որ պիտանացուն իսկ են ճանաչելն զբնութիւնքն և զունակութիւնքն զանձանց՝ արՀեստիւն այնմիկ որոյ է զայսօսիկ բժշկելն. և է ուրուք ասէքդ՝ որպէս թուի, քաղաքականին: Ա՞յսպէս է:

Կղինիաս. Յոյժ իսկ:

# ՊՂԱՏՈՆԻ

## ՕՐԷՆՔ ԿԱՄ ՕՐԷՆՍԴՐՈՒԹԻՒՆ

## ԵՐԿՐՈՐԴ



Պղատոն ասէ. Իսկ զոր յետ այսորիկ է, որպէս թուի ինձ, այսպէս խորհիլ պարտ է յաղագս սորա թէ զի՞րդ միայն զայս ունի բարի զտեսանելս, որպէս ունիմք մեք բնութեամբ, թէ և այլ ինչ մեծագոյն ունի օգտութիւն և արժանի բազում փութոյ, 'ի պիտանացու ուղղութեան՝ 'ի միասին գոլոյն առ գինիսն[1]: Զինչ արդեւք ասեմք: Մի՞ իր մեզ իցէ, որպէս թուեցաւ բանիս կամելով մեզ նշանակել, թէ ո՞ւր, կամ ո՞րպէս: Լսեմք մտովք մերովք նայելով, գուցէ գայթագղեսցուք 'ի ձեռն սորա:

Կղինիաս ասէ. Ասա արդ:

Պղատոն. Վերստին յիշել[2] այժմ ես իսկ դարձեալ ցանկամ, թէ զինչ երբեք ասէաք՝ զուղեղ խրատն մեզ գոլ. զի այս ինչ՝ որպէս ես իսկ կասկածեմ այժմ, 'ի խորհուրդս այսմիկ է բարեւք ուղղելով զփրկութիւն:

Կղինիաս. Մեծ ինչ ասես:

Պղատոն. Ասացից արդեւք զմանկանցն՝ մանկական գոլ առաջին սգայութիւն, զհեշտութիւն և զտրտմութիւն. և 'ի ձեռն նոցա առաքինութիւն և չարութիւն՝ և առ հոգւոյն նախկին լինիցի զայսոքիկ գոլ: Եւ զխոհեմութիւն և զճշմարիտ հաստատուն կարծիս՝ բարեբախ-

1 Այս է՝ 'ի խմբակցութեան առ գինիսն:

2 Յօրինակին՝ յէղէւ (թերեւս յէղյէղէւ). եդաք ըստ յոյն բնագրին:

տութիւն այնմիկ՝ որոյ առ ծերութիւն պատահեսցի։ Եւ կատարեալ իսկ իցէ այրն՝ զայսոքիկ և զսոյն որ առ սոցունց են՝ ամենայն ստացեալ քաղութիւնս։ Խրատ իսկ ասեմ զայն որ․․ կին[1] լինիցի առ մանկութեանս, արիութիւն և հեշտութիւն, թերևս և սիրելութիւն, և տրտմութիւն և ատելութիւն՝ ուղղապէս լինիցին յանձին․ ոչ ևս հնարաւորելով սոցա բանիւ հասանել․ և հասու լինելով բանին, խոհեմակիցք լինիցին բանիւ, ուղղապէս սովորել 'ի ձեռն պատշաճաւոր բարուց․ և սորա իսկ ձայնակցութիւնն ամենայն արիութիւն է[2]։ Իսկ այն որ առ հեշտութիւնքն և արիութիւնքն[3], սնանիլն սորա ուղղապէս[4], իբրու ատել իսկ՝ զոր պարտն է ատել, վաղվաղակի[5] մինչև ցկատարած, և գորովել յայն ինչ որ պարտն է, զնոյնս իսկ 'ի բաց հատանելով բանիւ և խրատու, ասելով ըստ իմում կարծեաց, ուղղապէս արդեւք առասիցես։ Բարեւք իսկ այժմ․ քանզի ուղղապէս սոցունց սնանելով հեշտութեանց և տրտմութեանց որք խրատք են[6], 'ի վայր խոնարհի բազում ինչ մարդկան 'ի կենցաղումս և ապականի․ իսկ աստուածքն գթալով առ մարդկան աշխատութեան բնաւորեալ սեռս, հանգիստք սոցա վաստակոցն կարգեցին զտօնս փոխարէն աստուածոցն, և երաժիշտք զԱպողոն, զերաժշտիցն ուղղեսցեն զմնունդքն[7] իսկ լինելով առ տօնս աստուածօքն․ և տեսանել՝ զոր ինչ պարտն է՝ որպէս ճշմարիտ ձեզ ըստ բնութեան գովլի բանս այժմիկ թէ որպէս ասեն։ Իսկ զնոր ամենայն, իբրու ասելի է, տաղս 'ի մարմինս, և 'ի ձայնս հանդարտութիւն բերել․ պշարժութիւն միշտ խնդրելով և զբարբառիլ․ ոմանց՝ վազելով և խայտալով, իբրու կաքաւելով առ հեշտութիւնն և խաղալով, և ոմանց՝ բարբառելով զձայնս ամենայն։

1 Թերի յօրինակին․ անշուշտ նախկին՝ որպէս ունի յոյնն։
2 Այսինքն՝ կատարեալ արիութիւն է։
3 Յոյնն՝ տրտմութիւն (λύπη)։
4 Այսինքն՝ գիտել այնպէս ուղղութեամբ վարիլ նոքօք,
5 Յոյնն՝ 'ի սկզբանէ (ἐξ ἀρχης)։
6 Այս է՝ ուղիղ սահմանադրութեամբ հեշտութեանցն և տրտմութեանց որ խրատք (կամ դաստիարակութիւն) են։
7 Յոյնն․ Զմուսայս, զԱպողոն՝ զերաժշտացն առաջնորդ, և զԴիոնիսոս սահմանելով զի ընոցա ուղղեսցեն զմնունդն։

Իսկ արդ այլ կենդանիք՝ ոչ ունին զզայութիւն շարժութեանցն դասուցն, և ոչ անկարգութեանցն՝ որոց արդեւք անուն է յեղանակ և յարմարութիւն[1]։ Եւ մեզ իսկ զաստուածքն զոր ասացաք պարակիցք՝ պարգևիչ զսոսա գոլ, և տուիչք ներյարմար և ներյեղանակ զգայութեան, հեշտութեամբ արդեւք շարժել զմեզ, և առտուել մեզ զայսոսիկ երգօք և կաքաւմամբք 'ի միասին փակեալք, և պարք անուանել, զայն որ առ 'ի խնդութեան անուն ներբնակ[2]։ Նախկի արդ զայս ինչ ընդունեսցուք, և դիցուք առաջին՝ խրատ գոլ 'ի ձեռն երաժշտիցն և Ապողոնի, եթէ որպէս։

Կղինիաս. Այդպէս։

Պղատոն. Ո՞չ ապաքէն որ անխրատն է, իսկ անպարտելի[3] մեզ իցէ, և զխրատեալն բաւականաբար՝ պարեալ դնելի է մեզ։

Կղինիաս. Զիարդ ոչ։

Պղատոն. Եւ պար իսկ՝ կաքաւումն և երգ է բոլորովին։

Կղինիաս. Հարկաւոր է։

Պղատոն. Ապա ուրեմն բարեւք խրատեալն, բարեւք երգել և կաքաւել հնարաւոր իցէ։

Կղինիաս. Թուի ինձ ասել։

Պղատոն. Տեսցուք արդ եթէ զի՞նչ երբեք իցէ այժմ ասացեալս։

Կղինիաս. Ո՞ր արդեւք։

Պղատոն. Որպէս ասեմք թէ բարեւք երգէ և բարեւք կաքաւէ, եթէ զբարիս երգէ և զբարիս կաքաւէ, յաւելուցո՞ւք եթէ ո՞չ։

Կղինիաս. Յաւելուցուք։

Պղատոն. Եւ զիարդ զբարիսն վարկանելով բարիս գոլ, և զյոռիսն զարշելիսն, այսպէս սոքօք վարի և վեհագոյն մեզ իցէ, այսպէս խրատեալն առ պարսն և երաժիշտսն, եթէ այն որ մարմնաւ և ձայնիւ առ

1 Յոյնն οἷς δὴ ῥυθμὸς ὄνομα καὶ αρμονία.

2 Յոյնն ἔμφυτος ընդաբոյս՝ բնաւոր։

3 Այսպէս յօրինակին. յոյնն՝ անպարաւոր, անպարելի։

տութիւն այնմիկ՝ որոյ առ ծերութիւն պատահեսցի։ Եւ կատարեալ իսկ իցէ այրն՝ զայսոքիկ և զայն որ առ սոցունց են՝ ամենայն ստացեալ բարութիւնս։ Խրատ իսկ առեմզայն որ․․ կին[1] լինիցի առ մանկունսն, արիութիւն և հեշտութիւն, թերևս և սիրելութիւն, և տրտմութիւն և ատելութիւն՝ ուղղապէս լինիցին յանձին. ոչ ևս հնարաւորելով սոցա բանիւ հասանել. և հասու լինելով բանին, խոհեմակիցք լինիցին բանիւ, ուղղապէս սովորել 'ի ձեռն պատշաճաւոր բարուց. և սորա իսկ ձայնակցութիւնն ամենայն արիութիւն է[2]։ Իսկ այն որ առ հեշտութիւնքն և արիութիւնքն[3], սնանիլն սորա ուղղապէս[4], իբրու ատել իսկ՝ զոր պարտն է ատել, վաղվաղակի[5] մինչև ցկատարած, և գորովել յայն ինչ որ պարտն է, զնոյնս իսկ 'ի բաց հատանելով բանիւ և խրատու, ասելով ըստ իմում կարծեաց, ուղղապէս արդեւք առասիցես։ Բարեւք իսկ այժմ. քանզի ուղղապէս սոցունց սնանելով հեշտութեանց և տրտմութեանց որք խրատք են[6], 'ի վայր խոնարհի բազում ինչ մարդկան 'ի կենցաղումս և ապականի. իսկ աստուածքն գթալով առ մարդկան աշխատութեան բնաւորեալ սեռս, հանգիստք սոցա վաստակոցն կարգեցին զտօնս փոխարէն աստուածոցն, և երաժիշտք զԱպողոն, զերաժշտիցն ուղղեսցեն զսնունդքն[7] իսկ լինելով առ տօնս աստուածօքն. և տեսանել՝ զոր ինչ պարտն է՝ որպէս ճշմարիտ ձեզ ըստ բնութեան գովլի բանս այժմիկ թէ որպէս ասեն։ Իսկ զնոր ամենայն, իբրու ասելի է, տաղս 'ի մարմինս, և 'ի ձայնս հանդարտութիւն բերել. զշարժութիւն միշտ խընդրելով և զբարբառիլ. ոմանց՝ վազելով և խայտալով, իբրու կաքաւելով առ հեշտութիւնն և խաղալով, և ոմանց՝ բարբառելով զձայնս ամենայն։

1 Թերի յօրինակին. անշուշտ նախկին՝ որպէս ունի յոյնն։

2 Այսինքն՝ կատարեալ արիութիւն է։

3 Յոյնն՝ տրտմութիւն (λύπη)։

4 Այսինքն՝ գիտել այնպէս ուղղութեամբ վարիլ նոցօք։

5 Յոյնն՝ 'ի սկզբանէ (ἐξ ἀρχῆς)։

6 Այս է՝ ուղիղ սահմանադրութեամբ հեշտութեանցն և տրտմութեանց որ խրատք (կամ դաստիարակութիւն) են։

7 Յոյնն. Զմուսայս, զԱպողոն՝ զերաժշտացն առաջնորդ, և զԴիոնիսոս սահմանելով զի ընդ նոցա ուղղեսցեն զսնունդն։

Իսկ արդ այլ կենդանիք՝ ոչ ունին զզգայութիւն շարժութեանցն դասուցն, և ոչ անկարգութեանցն՝ որոց արդեւք անուն է յեղանակ և յարմարութիւն[1]։ Եւ մեզ իսկ զաստուածքն զոր ասացաք պարակիցք՝ պարգևիչ զսոսա գոլ, և տուիչք ներյարմար և ներյեղանակ զգայութեան, հեշտութեամբ արդեւք շարժել զմեզ, և առտուել մեզ զայսոսիկ երգօք և կաքաւմամբք 'ի միասին փակեալք, և պարք անուանել, զայն որ առ 'ի խնդութեան անուն ներբնակ[2]։ Նախկի արդ զայս ինչ ընդունեսցուք, և դիցուք առաջի՝ խրատ գոլ 'ի ձեռն երաժշտիցն և Ապողոնի, եթէ որպէս։

Կղինիաս. Այդպէս։

Պղատոն. Ո՞չ ապաքէն որ անխրատն է, իսկ անպարտելի[3] մեզ իցէ, և զխրատեալն բաւականաբար՝ պարեալ դնելի է մեզ։

Կղինիաս. Զիա՞րդ ոչ։

Պղատոն. Եւ պար իսկ՝ կաքաւումն և երգ է բոլորովին։

Կղինիաս. Հարկաւոր է։

Պղատոն. Ապա ուրեմն բարեւք խրատեալն, բարեւք երգել և կաքաւել հնարաւոր իցէ։

Կղինիաս. Թուի ինձ ասել։

Պղատոն. Տեսցուք արդ եթէ զի՞նչ երբեք իցէ այժմ ասացեալս։

Կղինիաս. Ո՞ր արդեւք։

Պղատոն. Որպէս ասեմք թէ բարեւք երգէ և բարեւք կաքաւէ, եթէ զբարիս երգէ և զբարիս կաքաւէ, յաւելուցո՞ւք եթէ ո՛չ։

Կղինիաս. Յաւելուցուք։

Պղատոն. Եւ զիարդ զբարիսն վարկանելով բարիս գոլ, և զյոռիսն զարշելիսն, այսպէս սոքօք վարի և վեհագոյն մեզ իցէ, այսպէս խրատեալն առ պարսն և երաժիշտան, եթէ այն որ մարմնաւ և ձայնիւ առ

1 Յոյնն οἷς δὴ ῥυθμός ὄνομα καὶ ἁρμονία.
2 Յոյնն ἔμφυτος ընդաբոյս՝ բնաւոր։
3 Այսպէս յօրինակին. յոյնն՝ անպարաւոր, անպարելի։

տրամախոհեալսն իցէ գեղեցիկ՝ և բաւականապէս պաշտել կարասցէ յամենայն ժամ։ Սակայն խնդայ ո՛չ բարեաւքն, և ոչ առէ զայնոսիկ որ ոչ են բարի։ Եթէ այն իսկ որ ձայնիւն և մարմնովն յոյժ կարող իցէ ուղղել կամ տրամախոհել, սակայն հեշտութեամբն և տրտմութեամբն ուղղիցէ. զոմանս սիրելովն որչափ բարիքն են, և առ ոմանս դժուարանալով, որչափ ոչ բարիք։

Կղինիաս. Յոյժ զտարբերութիւնդ, ո՛վ սիրելի, զխրատուն ասես։

Պղատոն. Ո՞չ ապաքէն եթէ զբարին իսկ զերգոցն և զկաքաւմանցն, երիս գոլ մեք ճանաչեմք, գիտեմք և զխրատեալքն իսկ... և զանխրատն ուղղապէս։ Ապ՝ եթէ զայս ոչ իսկ գիտեմք, և ոչ զայն՝ թէ ո՛վ խրատու պահապան է՝ ճանաչել արդեւք երբեք կարասցուք. ուրեմն այսպէս է։

Կղինիաս. Այդպէս իսկ։

Պղատոն. Եւ այսոքիկ արդեւք, յետ այսորիկ, մեզ իսկ իբրու շանց հետախուզից՝ քննելի է և բարի և երգ, դաշինք և կաքաւք. ապ՝ եթէ այս ՚ի մէնջ ճողոպրեալք ՚ի բաց գնասցեն, ունայն է մեզ, որ յետ յաղագս ուղիղ խրատու՝ կամ եղլենականի և կամ բարբարոսականի բանն արդեւք իցէ։

Կղինիաս. Այո։

Պղատոն. Իցէ արդ. բայց զի՞նչ զգեղեցիկ ձեւն կամ զդաշն գոլ։ Պա՞րտ է ասել երբեք բարերարիական հոգւոյ[1] աշխատանօք գոլով, և վատի ումեմն՝ առ նոյնս իսկ և առ հաւասարս։ Արդ նմանապէս ձեւքն և բարբառքն՝ պատահի լինել երկոցունց։

Կղինիաս. Եւ որպէս և ոչ գոյնքն իցեն։

Պղատոն. Բարեւք իսկ ո՛վ ընկեր. քանզի յերաժըշտականումն և ձեւք իսկ ներքոյ, և դաշինք առ յեղանակս, և յարմարութիւնքն երաժշտականին գոլով իբրու բարեյեղանակ և քաջայարմար, և բարեգոյն դաշն կամ ձև ոչ իցէ նմանեցուցանելով որպէս պարուց վարդապետքն նմանեցուցանեն՝ ուղղապէս բար-

1 Այսպէս յօրինակին. յոյնն՝ φέρε, ανδρικης ψύχης.

բառիլ։ Զի արիագունիցն իսկ ազնիւք են, և վատացն յոռինք. և քանզի ոչ երկարաբանութիւն բազում լինիցի մեզ առ այսոսիկ, ամենայն ինչ պարզաբար լիցի. ոմանք յարիութիւն հպելով հոգւոյ կամ մարմնոյ, կամ 'ի նոյնն իսկ. և կամ 'ի պատկեր ոմն նորին' 'ի միասին զամենայն ձևք իսկ և զդաշինք բարի առնեն։ Իսկ այն որ 'ի չարութիւն, զամենայն ներհական։

Կղինիաս. Ուղղապէս իսկ հրաւիրէ և զայսոսիկ մեզ այսպէս ունել. տացի արդ պատասխանի։

Պղատոն. Տակաւին իսկ և այս ինչ. ո՞րպէս, ամենեքեան ամենայն պարօք նմանապէ՞ս խնդամք, եթէ յոյժ իսկ նուազագոյն։

Կղինիաս. Ամենայնիւ իսկ։

Պղատոն. Զի՞նչ երբեք արդեւք ասասցուք մոլորեալ գոլով մեզ' որպէս ոչ այսոքիկ են մեզ բարի ամենեցուն, եթէ նոյնն իսկ' այլ ոչ թուի նոյնպէս գոլ. քանզի ոչ երբեք ասիցէ ոք զչարութեանն քան զարիութեանն պարքն' գեղեցկագոյն գոլ։ Եւ ո՛չ իբրու սա խնդայ յոռին ձևօքն, և այլքն ներհակօքն սմա ոմամբք երաժշտիւք. և ասեն արդեւք յոլովագոյնքն, երաժշտակի ուղղութիւն գոլ զայնմիկ զօրութիւնն, որ անձանց առնուէ զհեշտութիւնն։ Այլ այսոցիկ ոչ են երևելի, և ոչ է իրաւացի ամենևին' բարբառել։ Բայց այսոցիկ մանաւանդ վայել է մոլորեցուցանել զմեղաւորս[1]։

Կղինիաս. Առ ո՞րս։

Պղատոն. Քանզի նմանութիւնք են յեղանակաց այն որ առ պարսն գործօք և պէսպէս բարեւք[2] և նմանութեամբք լինին. պատահմամբ արտաքս հանելով իւրաքանչիւրոցն' որովք իսկ առ յեղանակի ասացեալսն, և կամ առ երգսն. և կամ որպէս և իցէ առ պարեալսն, կամ ըստ բնութեան, կամ ըստ սովորութեան, և կամ ըստ երկաքանչիւրս, զայսոսիկ իսկ սոքօք խնդալ և գովել զսոսա, և բարիս առասել հար-

1 Յոյն բնագիրն զեղչ։
2 Յոյնն' բարուք։

կաւոր է. և որոց թերևս օտարաբնակ, կամ յեղանակաւ, և կամ սովորութեամբ իւիք, ոչ ուրախանալ հնար է և ոչ գովել, այլ յոռինս ասել. իսկ այնոցիկ որ բնութեանն իսկ ուղիղ պատահին, և սովորութեանն՝ ներհակապէս, և սոքա հեշտութեամբ զգովասանութիւնն՝ ներհականք առասեն, քանզի հեշտ գոլ ասեն զիւրաքանչիւրն 'ի սոցանէ. և չարք և ներհականք այլոցն զայնոսիկ՝ յորս կարծեն խորհիլ, ամաչեն իսկ շարժել մարմնովն զայսպիսիս, և ամաչեն երգել իբրու երևեցուցանելով բարիս՝ փութով, և խնդան առ սոքօք։

Կղինիաս. Ուղղագոյն ասասցես։

Պղատոն. Ապա ուրեմն մնասակա՞ր ինչ բերէ՝ այնմ որ խնդայ չարութեան ձևօքն և կամ դաշամբքն, եթէ զօգտակարութիւն ոմն սոցա առ ներհականսն զհեշտութիւնս ընդունողացն։

Կղինիաս. Վայելչագոյն իսկ։

Պղատոն. Ո՞րպէս. վայելչագո՞յն եթէ և հարկաւոր նոյնդ գոյ, այն իսկ որ յորժամ չար բարուք զուգաւորի ոք ընդ մարդկան չարեաց, ոչ ատիցէ, այլ խնդայ ընդունելով, և բամբասէ իբրու խաղալեաց մասամբ երազացուցանելով զնոցա չարաբարութիւնն. յայնժամ հարկ է իսկ նմանել խնդացողին, նմանել յայնոսիկ որով ուրախանայ, թէ և գովել արդեւք ամաչիցէ, և մանաւանդ քան զայսպիսիս զինչ մեծ բարի և կամ չար ասասցուք մեք թերևս յամենայն հարկէ մեզ լինել։

Կղինիաս. Կարծեմք եթէ ոչինչ։

Պղատոն. Իսկ արդ օրէնք բարեօք եդեալ իցեն, և կամ առ ապառնի ժամանակն լինելոց իցեն՝ զայն իսկ որ առ երաժիշտքն խրատքն են և խաղալիսն, կարծեմք պարտ գոլ քերթողականացն. զի որ ինչ թերևս զնոյն իսկ զքերթողն՝ քերթուածոցն զուարճացուցանէ եղանակաւ և կամ դաշամբ և կամ բանիւ հպելով զայս ուսուցանելով, և զքաջ զօրինացն զմանկունսն և զհամբակսն պարիւքն, զոր ինչ և պատահի իսկ գործել առ 'ի յառաքինութիւն և կամ 'ի չարաբարութիւն։

Կղինիաս. Այսպէս արդ՝ այս իսկ ունի խորհուրդ զի որպէս Թերևս[1]։

Պղատոն. Եւ այժմ իսկ, որպէս ասելի է, տաղս զայս յամենայն քաղաքն պարտ է առնել, բաց յայնցանէ որ յԵգիպտոս են։

Կղինիաս. Եւ յԵգիպտոս իսկ ո՛րպէս զայս ասես օրինադրիլ։

Պղատոն. Եւ լսելն իսկ սքանչելի է. քանզի կանխաւ իսկ երբեք, որպէս թուի, ծանօթի եղև առնոցունց բանս այս՝ զոր այժմ ասեմք մեք, եթէ գեղեցիկ իսկ ձևք և գեղեցիկ դաշինք՝ պարտ է ընձեռել սովորութեամբքն՝ այնոցիկ որ 'ի քաղաքսն են համբակաց. և կարգելով զսոսա թէ ո՛րք են, և կամ որպիսիք, բայց երևեցուցին[2] առ տաճարսն։ Եւ քան զայնոքիկ՝ ոչ պատկեր ոչ կենդանագրաց և ոչ այլոց որչափ ձևք զորպիսի և իցէ գործիցեն նորաձևել, և ոչ խորհել, այլ որպէս էին հայրենի և գաւառային սովորութիւնք։ Ո՛չ այժմ իսկ պարտ է առ այսոսիկ, և ո՛չ առ ամենայն երաժշտականաւն։ Եւ դիտելով գտցես աստանօր զայնոսիկ՝ որ բիւրուք ամաց յառաջագոյն գրեալ էին և կամ տպաւորեալ. ոչ իբրու ասելի է տաղս բիւրամեանս՝ այլ ճշմարտապէս այժմ իսկ գոյացելոցս ոչինչ լաւագոյն և ոչ վատթարագոյն, այլ նոյն իսկ արհեստիւս գործեալ։

Կղինիաս. Սքանչելի ասես։

Պղատոն. Օրինադրական արդ և քաղաքական գերազանցապէս։ Այլ զոմանս յոռինս արդեօք գտցի աստանօր[3]։ Սակայն այն որ առերաժշտականաւն է ճշմարիտ է և արժանի հանճարոյ. քանզի հնարէր արդեւք յաղագս այնոցիկ օրինադրել, հաստատապէս վստահացեալ դաշինք որ զուղղութիւն բնութեամբ առտուիցեն. և այս իսկ աստուծոյ, և կամ աստուածայնոյ ուրուք թերևս իցէ, որպէս անտանօր ասեն

1 Յոյնն. — Կղինիաս. Ոչ առողջ մտաց թուի այդ խորհուրդ։ — Մեգիլոս. Եւ զիա՞րդ։

2 Յոյնն. բացերևեցուցին (եդին 'ի տեսիլ)։

3 Այս է՝ գտանիցին յօրէնս նոցա և ինչ ինչ ոչ զերծ 'ի թերութեանց. այլ...

զայնոսիկ որ զբազում ժամանակն բաւեցուցեալ են երգքն Իսիդոսի[1] եղեալ քերդուածք: Զի որպէս ասէին[2] հնար էր ուրուք 'ի բաց բառնալ զոմն 'ի սոցանէ, և թէ որպէս ունի զուղղութիւն՝ վստահութեամբ ընդ օրինաւ ածել և ընդ դասութեամբ զսոսա, որպէս հեշտութեանն և տրտմութեանն խնդրուածն ուրուք է, և նորայով խնդրել միշտ երաժշտականաւ վարիլ գրեթէ ոչ մեծ զոմն զօրութիւն առ 'ի յապականել զորբազանեալ պարն՝ բողոքելով զհնութիւն: Իսկ արդ անտանօր[3] ոչ ամենևին թուեցաւ հնար լինել, զի ապականիցէ, այլ ամենայն ներհականն:

Կղինիաս. Երևի այսպէս թերևս ունելն այնոցիկ, որ առ 'ի քէն այժմ ասացան:

Պղատոն. Վստահացեալ արդեւք ասասցուք զերաժշտականաւ և խաղալեօք պարիցն պիտոյութիւն ուղիւղ գոլ այսուիկ ոմամբ յեղանակաւ: Խնդամք, կարծեմք բարի իսկ գործել. արդեւք ո՞չ այսպէս:

Կղինիաս. Այսպէս իսկ:

Պղատոն. Եւ սակայն այսպիսի իրիւ խնդալով՝ հանդարտութիւն բերելով ոչ կարեմք:

Կղինիաս. Են իսկ այդպէս:

Պղատոն. Արդ ո՞չ 'ի մենջ համբակագոյնքն ինքեանք պարել պատրաստ են: Իսկ մեզ երիցագունիցս՝ զնոսա իսկ տեսանելով, հանդարտութիւն բերել վարկանիմք, և եթէ վայելչագոյն՝ խնդալով նոցունց խաղօքն իսկ և տօնախմբութեամբն. քանզի առ մեզ իսկ թեթևութիւնն մեր պակասեալ է այժմ. զոր փափագելով և սիրելով դնեմք այսպէս նահատակութիւնք՝ կատարողացս մեզ զոր ինչ մանաւանդ 'ի մանկութիւն յիշմամբ զարթուցանէ:

Կղինիաս. Ճշմարտապէս:

Պղատոն. Արդ իսկ թուի մեզ և յոյժ ունայն գոլ այժմ ասացեալ բանն՝ յաղագս տօնողացն զբազումն ասել: Այլ զսա պարտ է իմաստնագոյն վարկա-

1 Ի պատիւ Իսոսի՝ ըստ յոյն բնագրին:
2 Յոյնն՝ ասէի:
3 Այս է՝ առ եգիպտացիսն:

նել, և տալ սմա զդատ յաղթութեանն, որ և զմեզ թերևս ուրախանալ և խնդալ մանաւանդ գործիցէ. քանզի պարտ է իսկ՝ զի թողացաք խաղալ այսպիսեօքս։ Զայս իսկ որ յոլովից մանաւանդ առնէ զխնդութիւն, յաւէտապէս պատուել իսկ, և որպէս ասացի այժմ՝ զյաղթութիւնսն տալ զի բերիցէ. արդեւք ոչ ուղղապէս ասի այս ինչ և գործիցի թերևս. և եթէ ո՞յսպէս լինիցի։

Կղինիաս. Թերևս այդպէս։

Պղատոն. Այլ, ով երանելի, ոչ վաղվաղակի զայս ինչ դատեսցուք, այլ բաժանելով զսա ըստ մասանց՝ դիտեսցուք այսպիսեաւ ոմամբ յեղանակաւ. զիարդ կամ երբ իսկ ոք այսպէս պարզաբար նահատակութիւն դիցէ զոր ինչ և իցէ, ոչ որոշեալ զմերկմն[2] և զերաժիշտքն և զմակածիմն[3], այլ զամենեսեան ժողովելով զայնոսիկ որ 'ի քաղաքին իցեն։ Նախ ասիցէ դնելով զյաղթութիւնքն՝ ախորժողին զալ նահատակել յաղագս միայն հեշտութեան, և այն իսկ որ զուարճացուցանէ զտեսողքն յաւէտաբար ոչ ինչ մակ սաստելով ոմամբ յեղանակաւ. և յաղթիցէ զայս ինչ, զնոյնս իբրու յաւէտապէս գործելով. և դատեսցի նահատակելոցն եղեալ հեշտութիւն։ Զինչ երբեք թերևս վարկանիցուք յայսմիկ առաջացուցութենէս պատահիլ։

Կղինիաս. Յաղագս որո՞յ ասես։

Պղատոն. Վայելչագոյն է ումեմն իսկ ցուցանել այնպէս, որպէս Հոմերոս հագներգութիւն. և այլոյ իսկ փանդեռներգութիւն, և միւսոյ իսկ կատակերգութիւն։ Եւ ո՞չ սքանչելի է, եթէ սքանչելիս ոք ցուցեալ մանաւանդ՝ թերևս յաղթել վարկանիցի։ Այսոցիկ արդ այսպիսեացս, և այլոց նահատակաց բիւրից գոլով, ունիմք ասել թէ ով թերևս յաղթի իրաւապէս։

Կղինիաս. Անտեղի հարցեր. քանզի ո՞վ արդեւք այսմիկ տացէ քեզ պատասխանի, իբրու ճանաչեալ

1 Այս է՝ զմերկակռիւսն։
2 Այսինքն՝ զձիավար հեծեալսն։

թերևս երբեք, նախ քան զլսելն և նահատակացն իւրաքանչիւրոց ինքնալուր լինել սմա։

Պղատոն. Զիա՞րդ ախորժէք. ես զայսմիկ զանտեղի պատասխանիս նոցա պատասխանեցայց։

Կղինիաս. Զիա՞րդ ոչ։

Պղատոն. Իսկ այսուհետև եթէ յոյժ փոքունքն դատիցեն մանկունք, դատ արասցեն և այնմ որ սքանչելիսն ցուցանէ. այսպէ՞ս է։

Կղինիաս. Եւ ո՞րպէս ոչ։

Պղատոն. Ապ՛ եթէ մեծագոյն մանկունքն՝ զայնոսիկ որ զկատակերգութիւնսն, և ողբերգութիւն այն են՝ որ առ 'ի կանանցն են խրատեալ, և նոր պատանիքն, և գուցէ թերևս բազմութիւնն ամենեցուն[1]։

Կղինիաս. Թերևս այդպէս։

Պղատոն. Եւ բարեւք հագներգող, որ զԻլիականն և կամ զՈդիսեան, և կամ ինչ յՀեսիոդոսեանցն տրամադրիցէ, թերևս արդ մեք ծերքս հաճոյապէս լսելով յաղթել արդեւք ասասցուք ամենեւին յոյժ։ Ո՞վ իցէ արդ ուղղապէս յաղթեալ այս ինչ յետ այսորիկ. այսպէ՞ս է։

Կղինիաս. Այո։

Պղատոն. Յայտ է իբրու ինձ իսկ թուի, և ձեզ հարկաւոր է ասել զայնոսիկ որ առ 'ի մերոց ընկերակցացս՝ դատեալք իցեն, ուղղապէս թերևս յաղթել. քանզի մեզ սովորութիւնս, որ այժմ իսկ է, ամենեւին յոյժ թուի քան զայնոսիկ որ յամենայն քաղաքսն են և յամենայն տեղիս լաւագոյն լինել։

Կղինիաս. Զի՞ իսկ ոչ։

Պղատոն. Ներդնեմ արդեւք զայս իսկ այսչափ և ես բազմաց պարտ գոլ՝ զերաժշտականն հեշտութեամբ դատել, և ոչ առ 'ի յայնցանէ իսկ որ հանդիպիցին. այլ գուցէ զայն ասեմք գոլ գեղեցիկ երաժիշտ՝ որ զվեհագոյնսն և զբաւականապէս խրատեալսն հըրճուեցուցանէ, կամ մանաւանդ զայն որ զմի ոք յայն-

1 Յոյնն. Ապա եթէ երիցագոյն մանկունքն զկատակերգութիւն նախամեծար ընտրիցեն, և 'ի կանանց խրատեալքն և երիտասարդք, և գուցէ թերևս ամենայն բազմութիւնն զողբերգութիւն։

ցանէ որ առաքինութեամբ և խրատու տարբերին յայլոյն. և վասն այսոցիկ ասեմք առաքինութեան կարօտանալ զդատաւորս. քանզի այլ իսկ խոհեմութեանն կցորդ գոլ սոցա պարտ է և արիութեանն իսկ, զի ոչ 'ի տեսարանէ պարտ է ուսանել զդատելն ճշմարիտ դատաւորին՝ զարհուրելով 'ի ձեռն բազում խռովութեանցն, և իւրոյ անհրահանգութեանն. և ոչ դատել՝ գիտելով վասն անարիութեան և զանգիտութեան, 'ի նոյն բերանոյն, ուովք առ աստուածքըն կարդաց. հանդերձեալ դատիլ 'ի սմանէ՝ ստելով տարտամապէս, բացասել զդատն. քանզի ոչ աշակերտ՝ այլ վարդապետ, իբրու զիրաւն 'ի տեսողացն մանաւանդ նստուցանէ դատաւոր, և հակակայելով ընդ այնոցիկ, որ զհեշտութեանն ոչ պատշաճաբար 'ի տեսողացն բացատրիցեն. զի պարտ էր նախնի և ելլենական օրինին, որպէս սիկիլացին իսկ և իտալիացի օրէնն. այժմ բազմութեան տեսողացն յորդորելով և զյաղթողն ընտրելով տարածմամբ ձեռացն՝ ապականեաց իսկ զքերթողքն. քանզի առ դատաւորացն հեշտութեանն առնեն, գոլով յոռին քան զնոյնս իսկ զինքեանս՝ խրատեսցեն տեսողքն. և ապականեաց զնոյն իսկ զտեսարանին հեշտութիւնքն. քանզի պարտ էր սոցա լաւագոյն զնոյն սովորութիւնսն լսելով՝ լաւագոյն ունել զհեշտութիւնն. այժմ իսկ արարողացն՝ ամենայն ներհակապէս պատահի: Եւ զինչ արդ մեզ այժմ իսկ կատարեալքս բանիւ կամի նշանակել՝ դիտեսցուք, եթէ ոչ զայս ինչ:

Կղինիաս. Զորպիսի՞[1]:

Պղատոն. Թուի ինձ երրորդ անգամ կամ չորրորդ՝ բանն առ ինքեան շրջաբերելով հասանել. իբրու ուրեմն խրատ է իսկ մանկանցն ձգմունքն և բերմունքն առ ընդ օրինիւ ստորանկեալ բանն և ուղիղ ասացեալն. և հեզագունիցն և երիցագունիցն՝ 'ի ձեռն հմտութեան 'ի միասին թուեցեալն. իբրու թէ ճշմարտապէս ուղիղ

1 Յօրինակին՝ միայար Պղատոնի ընծային բանքս. ուղղեցաք ըստ յոյն բնագրին:

է։ Արդ զի ոչ հոգւոյն մանկանն ներհակապէս խնդալ և տրտմել սովորիցի օրինին՝ և այնոցիկ որ ըստ օրինօքն իցեն, այլ ՚ի միասին հետևեսցի խնդալով և տրտմելով՝ այնոքիւք որովք և ծերն. ՚ի սակս այսոցիկ՝ զայնոսիկ որ երգք կոչեմք՝ Ճշմարտապէս իսկ ողոքանք անձանցն սոքա այժմ լինելով՝ առ այնպիսին որ ասեմք ձայնակցութիւնն ՚ի միաբանութիւնս փութացեալք։ Եւ վասն ոչ հնարաւորիլ զփոյթն բերել անձանցն համբակաց՝ խաղք և երգք կոչիլ և գործիլ. որպէս աշխատելոցն, և տկարապէս ունողացն զմարմինքն՝ հեշտագունիւք ումամբք կերակրովք և ըմպելեաւ՝ զքաղցր սնունդն ջանան մատուցանել՝ այնոքիկ որոց փոյթ է յաղագս սոցա. և զչարեացն դժուարիւք, զի զոմանս սիրեսցին, զոմանս ատել ուղղաբար սովորեսցեն։ Սապէս իսկ և զքերթականն՝ ուղիղ օրինադիրն գեղեցիկ և գովասանական բանիւք հաւանեցուցանէ, և հարկէ ոչ անսալ զողջախոհիցն և զարիագունիցն, և ամենևին զամենայն բարի արանցն, զեղանակաւ ձևքն և զյարմարութեամբ դաշինքն առնելով ուղղապէս քերդել։

Կղինիաս. Այժմ արդ այսպէս քեզ թուին, — առ ՚ի յԱրամազդ երդմնեցուցանեմ զքեզ ով սիրելի, — յայլ քաղաքսն գործել։ Ես իսկ, որչափ և հասանեմ, բաց ՚ի ձէնջ և ՚ի լակեդոմոնացւոց զոր դուդ այժմ ասես, ոչ գիտեմ գործելով. այլ նորագոյնս միշտ լինելով առ կաքաւսն, և առ այլ ՚ի միասին ամենայն երաժըշտական. ոչ օրինօք փոփոխելով, այլ ոմամբ հեշտութեամբք՝ առանց դասութեան բազմացելոց նոցունց. և ըստ այսոցիկ՝ գոլ իբրու դու առ Եգիպտոս ՚ի բաց առնես զմեկնութիւնդ, այլ ոչ երբեք նոցունց։

Պղատոն. Արիագոյն, ով Կլինիա։ Եթէ թուեցայ քեզ ասել զայդ իսկ, զոր դուդ ասես իբրու այժմ լինելով, ոչ սքանչացայց, եթէ ոչ հաւաստի ասացեալ, զոր ինչ տրամախոհիմս. զայս ինչ արարի և կրեցի։ Այլ զոր ինչ ախորժեմ լինել առ երաժշտականաւն՝ այնպիսի ինչ, թերևս ասացից, իբրու թուել քեզ զայսոսիկ ասել ինձ։ Քանզի բամբասել զիրողութիւնս անքոյժս, և զհեռագոյնս ՚ի սխալանաց հաստատեալս,

ոչ ինչ հեշտ է. իսկ այլ իցէ յորժամ է կարևոր. և քանզի քեզ այսոքիկ՝ համդերձ իմով թուեցան, բեր արդ[1] ասես առ մեզ, և առ սոցա մանաւանդ՝ քան զառ այլոց ելլենացւոց լինել զայսպիսիս:

Կղինիաս. Զիարդ ոչ:

Պղատոն. Եւ զինչ՝ թէ և առ այլոցն լինիցի այսպէս, որպէս զսոսա գեղեցկաբար. ա՞յսպէս ասասցուք թերևս, թէ որպէս այժմ լինի լինելով:

Կղինիաս. Բազում է տարբերութիւնդ՝ եթէ որպէս առ սոքօք և առ մեզ և ես, որպէս ասացեր դու այժմ, պարտ իսկ գոլ լինիցի:

Պղատոն. Բեր արդ 'ի միասին խոստասցուք այժմ: Այլ զինչ առ ձեզ յամենայն խրատ և յերաժշտական ասացեալքս են. այսպէս զքերթողքն հարկէք ասել, իբրու զբարին իսկ, այր ողջախոհ գոլով և արդար, բարեբաստ է և երանելի. և թէ մեծ իսկ և զօրաւոր, և թէ փոքր և տկարագոյն իցէ, և եթէ փարթամ է և եթէ ոչ. և եթէ փարթամ իսկ է, և 'ի քնար և 'ի փող՝ յուժգին, և իցէ ապիրատ՝ եղկելի է և թշուառապէս կացցէ: Եւ ոչ թերևս յիշեցից, ասէ քերթողն, եթէ ուղղապէս ասէ, եթէ ոչ բանիւ այր եղից զայնոքիկ[2] որ ոչ զամենայն բարի ասացեալսն՝ արդարութեամբ գործիցէ և ստասցի. քանզի այսպիսի գոլով՝ և հրակիրկութեան տենչացի հուպ կալով, և ապիրատ գոլով ոչ համարձակիմ[3] տեսանել սպանումն ընդ արեան խառնեալ, և ոչ յաղթեալ ընթանալով առ ծայրաստաղարքն ծայրիցն. և ոչ այլ ինչ սմա և ոչ ինչ յասացելոց բարեացն լինիցի. քանզի առ 'ի բազմաց ասացեալքն բարիք՝ ոչ ասին ուղղաբար: Քանզի ասի իսկ՝ ողջանալն իբրու արիագոյն ինչ[4]. և երկրորդ՝ գեղեցկութիւն, և երրորդ ճոխութիւն. և բիւրինս այլ բարիք ասին, զի զարագ տեսանելն և լսելն, և զամենայն որչափ հուպ են 'ի

1 Այս է՝ ասէ տսա, տուր ինձ պատասխանի:
2 Ի քերթուածոց Տիրտէոսի լակեդեմոնացւոյ են տողքս:
3 Յոյնն՝ համարձակի.... յաղթէ:
4 Այսինքն՝ զքաջողջութիւն նախամեծար համարին քան զամենայն բարիս:

զգայութիւնքն քաղաքագաբար ունել. տակաւին և առանելն ինչ գոռոզութեամբ. զայն ինչ որոյ ցանկայ, և զայն իսկ որ կատարած է ամենայն երանութեան գոլ. զայս ամենայն ստանալով՝ անմահ գոլ, լինելով իբրու վաղվաղակի։ Դուք իսկ և ես, յորժամ զայս ասեմք, իբրու այս ամենայն 'ի միասին արդարոց իսկ և սուրբ արանց՝ արիագոյնք են ստացուածք. իսկ ապիրատաց չարաչարք 'ի միասին ամենայն՝ սկսանելով յողջութենէն, և տեսանելն իսկ և լսելն և զգալն և ամենևին կեալն. մեծագոյն իսկ չար 'ի միասին զամենայն ժամանակն անմահ գոլով, և ստանալով զայս ամենայն զոր ասեմքս բարութիւնք, բայց յարդարութենէ իսկ և յամենայն յառաքինութենէ. և նուազ չար է սմա թերևս, եթէ սակաւ ժամանակ կեայր կենդանի։ Զայսոսիկ արդեւք թուի ինձ ասել ձերոցն քերթողաց. զոր ես առնել և հարկ՝ և տակաւին զայնոսիկ որ սոցունց հետևին եղանակք և յարմարութիւն բացատրելով, խրատել այսպէս զձերսն համբակ։ Զի եթէ տեսանիք՝ ես իսկ ասեմ հաւաստի զչար աստացեալսն, իսկ ապիրատացն՝ բարի գոլ. և արդարոցն չարս, և զբարիսն բարի արանցն բարիս, և չարեացն չարս։ Արդ զոր հարցանէի, ձայնակցիմք ուրեմն ես և դուք եթէ որպէս լինիցի։

Կղինիաս. Զոմանս իսկ ես երևեցուցանեմ, և զոմանս ոչ[1]։

Պղատոն. Ողջութի՞ւն արդեւք ստանալով, և ճոխութիւն և գոռոզութիւն իսպառ. և ևս յաւելից ձեզ՝ զօրութիւն զանազանեալս, և արիութիւն հանդերձ անմահութեամբս. և ոչ այլ ինչ սմա ստացեալ չարեացն գոլ՝ լինելով, և զանիրաւութիւն և զամբարհաւաճութիւն ունելով յինքեան, միայն զայսպէս կացեալն. թերևս զձեզ հաւանեցուցանեմ թէ ոչ արդեւք բարեբաստէ, այլ եղկելի լինել հաւաստի։

Կղինիաս. Ճշմարտապէս ասես։

Պղատոն. Իցէ. զի՞նչ է արդ յետ այսորիկ պարտ

1 Այս է՝ է ինչ յորս ձայնակցիմ, իսկ յայլսն ոչ։

է մեզ ասել։ Քանզի արիագոյն իսկ և զօրաւոր, գեղեցիկ և ճոխ, և արարող այնոցիկ զոր ինչ ցանկայ 'ի կենցաղումս. ո՛չ թուի ձեզ, եթէ անիրաւ իցէ և ամբարհաւաճ, 'ի հարկէ գարշելի արդեւք կեալ սմա։ Կամ զայս իսկ թերևս ներեսցո՞ւք սմա զգարշելիս։

Կղինիաս. Ցոյժ իսկ։

Պղատոն. Զխա՞րդ և զչարաչարն[1]։

Կղինիաս. Ոչ ևս զայս նմանապէս։

Պղատոն. Եւ զխա՞րդ, զոչ գեղեցկապէսն և զոչ պատշաճեալսն սմա։

Կղինիաս. Եւ ո՞րպէս արդեւք զայս ևս ներեսցուք։

Պղատոն. Այսպէս թէ աստուած մեզ, որպէս թուի, ո՛վ սիրելիք՝ տացէ զմիաբանութիւն, իբր այժմ իսկ գրեթէ հեռագոյնք եմք 'ի միմեանց. զի ինձ արդեւք երևին այսոքիկ այսպէս կարևոր հաւաստի, ո՛վ սիրելի Կղինիա, իբրու ոչ Կրետէ կղզին և օրինադիր գոլով 'ի սմա փոքր արարից թերևս զքերթողն հարկել բարբառել, և զամենեսեան զայն որ 'ի քաղաքին. և տուրժ սակաւ ինչ մեծագոյն եդից թերևս 'ի վերայ այնմիկ եթէ 'ի գաւառին բարբառիցի, իբրու են ոմանք մարդիկ, երբեք չարք իսկ և հեշտապէս կացեալք, և կամ այլ ինչ իսկ՝ որ կատարելապէս ունիցին զշահս խորագիտութեամբ, և այլք են որ իրաւամբք. և բազում՝ իսկ են այսպիսիքն արդեւք առ 'ի կրետացւոցն ասացեալք այժմ, և 'ի լակեդոմոնացւոցն, որպէս թուի, և այլոց մարդկան զանազանն, թերևս հաւանեցուցից արդեւք զքաղաքացիքն ոչ բարբառիլ։ Զի բեր, ո՛վ արիագոյնքդ արանց, առ 'ի յԱրամազդ և յԱպողոն երդուեալք, եթէ զօրինադրողքն ձեզ զայսոսիկ զնոյն զաստուածսն հարցանեմք, թէ իրաւագոյն կենցաղն է հեշտագոյն թերևս, և կամ երկուց ելոյ կենցաղաց, որոց մինն հեշտագոյն գոլով հանդիպի, և միւսն արդարագոյն իսկ։ Եթէ երկու ասիցեն, հարցցուք թերևս դարձեալ զնոսա, և թերևս ուղղապէս և վերստին հարցանես, թէ և զո՛ր բարե-

1 Այսինքն՝ զչարարարն կամ զչարագործ։

քաստագոյնք պարտ է ասել. զայն իսկ որ զարդարագոյն, եթէ զայնոսիկ որ զհեշտագոյնն, անտեղի թերեւս բանն նոցա լինիցի։ Եւ կամիմ ոչ առ յաստուծոցն այսպիսի ինչ ասել ինձ, այլ առ 'ի հարցն և 'ի յօրինադրացն մանաւանդ. և ինձ զյառաջագոյն հարցեալսն՝ զհայր և զօրինադիրն հարցից, և ասասցէ, իբրու այն իսկ՝ որ կեցցէ զհեշտագոյն կենցաղն՝ երանելի է. ապա յետ այսոցիկ ես ասացից. ով հայր, ոչ իբրու բարեբաստ ախորժէիր զիս կեալ, այլ միշտ հրամայելով ոչինչ դադարէիր կեալ ինձ իբրու իրաւապէս։ Այսպէս արդեւք եղեալն, եթէ օրինադիր և եթէ հայր իցէ, անտեղի ինձ թերեւս թուի, և տարակուսեալ երեւեսցի 'ի միաբանութենէ անձին իւրոյ՝ զայս ասել։ Ապա եթէ զարդարագոյնն բարեբաստ բաց ասիցէ գոլ կենցաղ, խնդրիցէ երբեք, թուի ինձ որպէս որ լսէն, թէ զի՞նչ 'ի սմա հեշտութեանն լաւագոյն՝ ազնիւն և բարին, զոր օրէնսն գովէ. քանզի զի՞նչ արդարոյն որոշեալ 'ի հեշտութենէ՝ բարի արդեւք լինիցի։ Բեր պարծանս իսկ և գովեստ առ 'ի մարդկանէ և յաստուծոյն է արդեւք՝ բարի իսկ և ազնիւ, և թախանձ իսկ, և դժուարագովութիւնք, ներհականք սոցա։

Կղինիաս. Նուազագոյն իսկ, ով սիրելի, օրինադիր ասասցուք։

Պղատոն. Այլ ոչ անիրաւելն զոք և ոչ 'ի ձեռն ուրուք անիրաւիլն՝ թախանձէ իսկ արդեւք. սակայն բարի կամ ազնիւ և այլքն հեշտագոյնքն են, սակայն գարշելիք և չարք։

Կղինիաս. Եւ ո՞րպէս։

Պղատոն. Ո՞չ ապաքէն բանն որ ոչ բաժանէ իսկ զհեշտն և զարդարն, և զբարին և զազնիւն, հաւանական իսկ կամ այլ ոչ ինչ կամելով ուրուք զսուրբն և զարդարն կեալ կենցաղ. զի օրինադրի իսկ գարշելի ամենայն բանից և ներհակագոյն թերեւս որ ոչ ասիցէ զայսոքիկ այսպէս ունել. քանզի ոչ ոք կամաւ կամեսցի հաւանել գործել զայն ինչ՝ որոյ խնդալն քան զտրտմելն ոչ յաճախագոյն հետեւի. քանզի աղջամղջին տեսեալն 'ի հեռաստանէ ամենեցուն, իբր

ասելի է տաղս, և մանկանց և այլոց ամենեցուն. Իսկ օրինադիրն՝ եթէ ոչ զկարծիսն 'ի ներհականն սորա հաստատիցէ, 'ի բաց բառնալով զխաւարն, և հաւանեցուցանէ դիւրապէս՝ սովորութեամբ և գովութեամբ և բանիւք՝ իբրու ստուերագրելով արդարացիքն են և անիրաւքն: Իսկ անիրաւքն արդարոյն ներհակապէս երևելով յանիրաւէ, իսկ և 'ի չարէ անձին իւրոյ՝ տեսանելոյն զհեշտութիւնս: Իսկ արդարացիքն թախանձագոյնք, և 'ի յարդարոյ զամենայն հակակայեալսն ամենայնի առ երկաքանչիւրս:

Կղինիաս. Երևի:

Պղատոն. Իսկ զճշմարտութիւնն ընտրութեանն, զո՞ր ասասցուք տիրապէս գոլ կամ ծրպէս. զվատթարագո՞յնն հոգւոյն եթէ զվեհագունին:

Կղինիաս. Կարևոր է ուրուք այն որ վեհագունին է:

Պղատոն. Ապա ուրեմն հարկաւոր է անիրաւ կենցաղոյն, ոչ միայն գարշելի և յոռին, այլ և թախանձական ճշմարտութեամբ՝ քան զարդար և զիրաւացի գոլ կենցաղն:

Կղինիաս. Տագնապի իսկ ըստ այժմ ասացեալ բանից, ով սիրելի:

Պղատոն. Եւ օրինադիր ոչ ինչ փոքրագոյն իսկ օգուտ, թէ և այս այսպէս ոչ ունէր իբրու այժմ ասաց բանս ունել, թէ և այլ ինչ յանդգնիլ յաղագս բարւոյ ստել առ համբակսն, է՞ր ինչ օգտակար ստոյս այսմիկ, որ ստելով երբեք հնարաւորի մանաւանդ ոչ բռնութեամբ, այլ կամելով՝ զամենայն իրաւացիսն:

Կղինիաս. Բարի է իսկ ճշմարտութիւնն, ով սիրելի, և տևական. և թուի իսկ ոչ դիւրին գոլ հաւանեցուցանել:

Պղատոն. Իցէ. սիդոնացոյն իսկ առասպելաբանութիւնն՝ դիւրին եղև առ 'ի հաւանեցուցանել՝ այնպէս գոլ անհաւան, և այլ յոգունս:

Կղինիաս. Ո՞րք:

Պղատոն. Սերմանելոց երբեմն ատամանց՝ զինուորք 'ի սոցանէ բուսուցանելով. և մանաւանդ մեծ է օրինադրի յարացոյց, յոր ինչ թերևս և ձեռնարկիցէ

ղք հաւանեցուցանել զհամբակացն անձինս։ Իբրու այլ ոչ ինչ սմա պարտ է գիտելով գտանել, քան եթէ հաւանեցուցեալ զնոյն մեծագոյն բարի գործիցէ քաղաքի. և յաղագս այսորիկ զամենայն հնար գտանել՝ որով և յեղանակաւ՝ այսպիսի ամենայն զուգաբանութիւնս. յաղագս այսոցիկ մի և զնոյնն զոր ինչ յաւէտագոյնն է միշտ՝ բարբառիցի յամենայն կենցաղումն երգօք և առասպելօք և բանիւք։ Ապ՝ եթէ այլպէս թուեսցի քան զայսոսիկ, առ այնոքիկ և ոչ մի մախանք ընդերկբայեցուսցէ զբանս։

Կղինիաս. Այլ ինձ ոչ երևի առ այսոքիկ հնարաւորիլ մեզ երկբայիլ երբեք արդեւք, կամ այլոյ ուրուք։

Պղատոն. Զայն իսկ որ յետ այսորիկ այժմ է, իմ իցէ ասելն թերևս։ Քանզի ասեմ ամենեցուն պարտ գոլ երգել երիս զպարտսն[1]. գոլով տակաւին որոց անձանց և մանկանց մատաղագունից, այլ ամենայն բարիքն ասելով, որչափ ասացաք։ Իսկ և ևս, ասելոց եմ արդեւք, և գլուխ սոցունց իցէ այս ինչ. զնոյնս իսկ հեշտագոյն և արիագոյն առ 'ի յաստուածոցն կենցաղս ասիլ։ Ասելով ճշմարտապէս ասեմք միանգամայն, և մանաւանդ հաւանեցուցանեմք զորս հաւանեցուցանել պարտ է, կամ թէ այլաբար երբեք բարբառիմք ասելով։

Կղինիաս. Ներելի են այդ ինչ ասեսդ։

Պղատոն. Նախ իսկ այսու հետև յերաժշտիցն պար՝ մանկականն ուղղագոյն արդեւք մտաց է առաջին, զայսպիսիսս 'ի միջին երգելով ամենայն փութով և բոլոր քաղաքիս։ Երկրորդ իսկ որ մինչև ցերեսուն ամացն են, զՊէան իսկ բողոքելով վկայ ասացելոց յաղագս ճշմարտութեան, և համբակաց քաւութիւն հաւանութեամբ լինել ըղձալով, և պարտ է իսկ։ Եւ երրորդ ևս զայնոսիկ որ գերագոյնն երեսուն ամաց՝ մինչև ցվաթսնիցն լինելով երգել։ Իսկ զայնոսիկ որ յետ այսոցիկ՝ քանզի ոչ տակաւին կարող են հանդուրժել երգոցն, առասպելաբանք յաղագս նո-

1 Յոյնն՝ զպարսն։

ցունց բարուցն 'ի ձեռն աստուածային համբաւի թողուլ պարտ է։

Կղինիաս. Եւ ասես, ո՛վ սիրելի, զայսոսիկ զերիս պարսս. ոչ յոյժ հաւաստի 'ի միտ առնումք թէ զի՛նչ կամիս ասել յաղագս սոցա։

Պղատոն. Գրեթէ են իսկ սոքա 'ի սակս որոց յոլովագոյնքն յառաջագունիցն ասացան բանք։

Կղինիաս. Ոչ ես իմացաք՝ այլ տակաւին հաւաստագոյն փորձեա ասել։

Պղատոն. Ասասցուք. եթէ յիշեմք ըստ սկզբանն բանից, իբրու բնութեանն ամենայն համբակացն ջերմագոյն գոլով, հանդարտութեան բերել ոչ կարէ, ոչ ըստ մարմնոյն և ոչ ըստ ձայնին, այլ բարբառի միշտ, և վազէ անկարգաբար և դասութեան. իսկ զգայութիւն այսոցիկ երկաքանչիւրոց այլոց իսկ կենդանեացն ոչ ինչ մերձենայ. իսկ մարդոյ բնութիւնս ունիցի զայս միայն։ Իսկ շարժութեանն հետևողին անուն իցէ զուգաւորութիւն, և ձայնին իսկ սրագունին՝ համանգամայն խառնել յարմարութիւն՝ առասացի անուն, և պար իսկ 'ի միասին երկաքանչիւրս կոչեսցի. զաստուածք ասացաք՝ ողորմելով մեզ՝ պարակիցք իսկ և առաջնորդք մեզ պարգևեալ զԱպողոնին իսկ և զերաժիշտքն. և երրորդ իսկ ասացաք, եթէ յիշեմք, զԴիոնիսիոս։

Կղինիաս. Եւ որպէս ոչ յիշեմք։

Պղատոն. Իսկ արդ Ապողոնի և երաժշտիցն պարքն՝ ասացան. և զմիւսն իսկ երրորդ պարն հարկ է ասել, Դիոնիսիոսի։

Կղինիաս. Ո՞րպէս արդեւք, ասա. քանզի յոյժ անտեղի լինիցի արդեւք յանկարծակի լսելով Դիոնիսիոսի պար 'ի ծերոց յարմարեալ, եթէ այնոքիկ որ գերագոյն երեսուն և յիսուն ամացն են մինչև ցըվաթսնիցն պարիցեն սմա։

Պղատոն. Ճշմարտապէս իսկ ասես, և բանի առ այսոքիկ որպէս թուի ինձ կարօտանամք, թէ որպէս այս այսպէս իրաւապէս արդեւք լինիցի։

Կղինիաս. Զի՞ իսկ։

Պղատոն. Մեզ ապա ուրեմն յառաջագոյն ասա-

ցեալքն խոստացեալ են։

Կղինիաս. Ցաղագս որոյ։

Պղատոն. Պարտ գոլն ամենայն առն և մանկան, ազատի և ծառայի, իգի և արուի, և բոլոր քաղաքի, բոլորովին իսկ հեշտաբար՝ միշտ փոփոխելով, և ամենայն ջանիւ պէսպէս առատուելով զպաճուճանս, իբրու անյագութիւն և հեշտութիւն գովութեանցն և երգոցն։

Կղինիաս. Եւ ո՞րպէս ոչ խոստացի արդեւք պարտ գոլ այսպէս գործել։

Պղատոն. Ո՞ւր արդեւք այս մեզ, արիագոյնս քաղաքիս, հասակօք և խոհեմութեամբ համանգամայն՝ հաւանական գոլով այսոցիկ որ 'ի քաղաքումս են երգելով գեղեցկապէս, զմեծագոյնսն թերևս գործիցէ բարիս։ Եւ եթէ զայս առանց մտածութեան, ա՞յսպէս թողցուք՝ որ իսկագոյն թերևս իցէ գեղեցկագունիցն և շահաբեր երգոցն։

Կղինիաս. Այլ անհնար է պատմելն, իբրու իսկ զայժմ ասացեալքս։

Պղատոն. Եւ ո՞րպէս արդ վայելչագունից է այս. թերևս տեսէք այսպէս աստանօր։

Կղինիաս. Ո՞րպէս արդեւք կամ ո՞ւր։

Պղատոն. Ամենայն ոք ծեր՝ լինելով առ երգս, լի լինի նախատանօք, և խնդայ իսկ նուազ գործելով զայս ինչ. և հարկի եղելոյ, ամաչէ արդեւք՝ մանաւանդ որչափ ծերագոյն և ողջախոհ լինիցի՝ այսչափ յաւէտ. ո՞չ արդեւք այսպէս։

Կղինիաս. Այսպէս արդ։

Պղատոն. Ապաքէն 'ի տեսարանի իսկ, և առ ամենայն մարդկան, ուղիղ առ երգս կալով տակաւին, յաւէտագոյն թերևս ամաչէ. և զայսոսիկ իսկ, որպէս այն որ վասն յաղթութեան աշխատելով պարքն բացականչեն, նուրբք և առանց կերակրոյ հարկեցին երգել այսպիսիքս ամենեքին երբեք թախանձաբար, և ամօթալի երգով, առանց յօժարութեան թերևս զայս ինչ գործիցեն։

Կղինիաս. Հարկաւորագոյն իսկ ասես։

Պղատոն. Թէ ո՞րպէս արդ զսոսա մխիթարեսցուք

յօժարագոյն գոլ առ երգս. արդեւք ո՞չ օրինադրես-ցուք նախ զմանկունսն իսկ մինչեւ ցամս ութուտասանց ամենեւին 'ի գինի ոչ ճաշակիլ ուսուցանելով. իբրու զի ոչ է պարտ զառու հրոյ 'ի վերայ հրոյ 'ի մարմնի իսկ և 'ի հոգին, նախ քան զսկսանիլն սորա աշխատա-նօքն վարիլ՝ խորշել 'ի մոլորական ունակութենէ համ-բակաց։ Եւ յետ այսորիկ գինով իսկ ճաշակիլ չափա-ւոր մինչեւ յերեսուն ամն. սակայն 'ի յարբեցու-թենէ և 'ի բազմախմբութենէ ամենեւին 'ի բաց կալ համբակին. Եւ 'ի քառասներորդ ամն հասանելով՝ հաղորդակցութեամբքն խրախանալով՝ կոչելով իսկ զաստուածքն՝ այլ և զԴիոնիսուս, մխիթարել զսո-սա 'ի ծերագունիցն խոկումն միանգամայն, և 'ի խրատն՝ զոր մարդկան կարծր ծերութեան օգնական պարգեւեաց և դեղ զգինին՝ իբրու վերստին անձամբ զուարթանալ, և տրտմութեան զանխլութիւն լինել՝ կակղագոյն 'ի խստագունէ բարքն հոգւոյն, որպէս երկաթ 'ի հուր եդեալ լինելով. և այսպէս գոլ դիւ-րաստեղծ։ Նախ իսկ իւրաքանչիւր ոք այսպէս տրա-մադրեալ ո՞չ արդեւք կամեսցի 'ի յօժարագոյն լինել՝ նուազ ինչ ամաչելով, ոչ բազմօք այլ չափաւորօք, և ոչ օտար ոտիւք, այլ ընտանեւք. և զոր բազում իսկ ասացաք մակերգել։

Կղինիաս. Եւ յոյժ իսկ։

Պղատոն. Իսկ արդ յեղանակս յորդորելոցն զսո-սա երգոյ հաղորդելն ընդ մեզ, ոչ թերեւս ամենեւին խայտառակ լինիցի։

Կղինիաս. Ոչ իսկ։

Պղատոն. Իսկ որո՞վ արդ երգիցեն արքն ձայնիւ կամ երաժշտականաւ. յայտ է եթէ վայելչականաւ սոցունց ոմամբ իսկ։

Կղինիաս. Եւ ո՞րպէս ոչ։

Պղատոն. Ս.յս արդեւք վայել իցէ աստուածայնն արանցն, քան եթէ պարօքն։

Կղինիաս. Մեք արդ, ո՛վ սիրելի, և սոքա ոչ զայլ ոք երբեք կարասցուք երգել երգ, քան եթէ զայն որ պարօքն է ուսեալ իսկ, և սովորականք ե-ղեալք։

Պղատոն։ Վայելչապէս իսկ, քանզի ոչ իսկ հասու էք լեալ գեղեցկագոյն երգոյն, զի ունիք զզօրականաց քաղաքավարութիւն, և ոչ զայնոցիկ որ 'ի քաղաքի իւեն բնակեալ. այլ յանկարծակի իբրև զձիք շամբուշ յերամակի ձորակեալք ընդարձակ՝ զհամբակն էք ստացեալք։ Արդ ոչ ոք 'ի ձենջ հասեալ զիւրն առ 'ի ձարակակցաց պատառելով յոյժ, վայրենի ելով և մռնչելով ընկալցի. այլ պահանջեա 'ի պահակ ձիոյ յատկապէս, և հրահանգեա հանդարտացուցանելով և ընտանեցուցանելով, և զամենայն զպատշաձն բացատրելով մանկական սննդեանն, ուստի ոչ միայն բարի թերևս զինուորիցէ, այլ զքաղաք և զապարանս մատակարարել իցէ հնարաւոր, որպէս 'ի սկզբանն ասացաք, քան զՏիւրտէոս 'ի պատերազմականքն պատերազմականագոյն գոլով, չորրորդ առաքինութեան, այլ ոչ զառաջին զառաքինութեանն պատուելով ստացուածս, միշտ և յամենայն ժամ ռամկօք իսկ և հանդերձ ամենայն քաղաքաւ։

Կղինիաս. Ոչ գիտէք 'ի մենջ[1], ով սիրելի, եթէ վասն էր դարձեալ իսկ զօրինադիրան արհամարհես։

Պղատոն. Ոչ, ով բարի այր, նայելով աստանօր մտօքդ գործես զայս ինչ թերևս[2], այլ եթէ ախորժիցէք, ուր և բանս բերէ անտանօր գնասցուք. զի եթէ ունիմք երաժիշտ քան զբոլոր պարսն գեղեցկագոյն, և քան զայն որ առ 'ի հասարակաց տեսարանքն են, փորձ արասցուք բացատրեալ սոցունց՝ զորս ասեմք յայնմէ իսկ ամաչել, և խնդրել զոր գեղեցկագոյնն է, և սմա հաղորդել։

Կղինիաս. Յոյժ իսկ։

Պղատոն. Ո՞չ ապաքէն նախ իսկ պարտ է՝ զայն ինչ գոլ ամենեցուն, որովք հանդերձ հետևի ինչ շնորհ. և կամ զայս ինչ միայն՝ զի իցէ յանձին իւրում փութագոյն, և կամ հետևիցի սմա ուղղութիւն և կամ երրորդն օգտակարութիւն։ Որզան, ասացից արդեւք, կերակրոյ իսկ և ըմպելոյ, և ամենայն ընդ-

1 Յոյնն՝ ոչ գիտեմ։
2 Յոյնն՝ ոչ եթէ նախատինս ինչ գնելով զայս ասեմ։

դեանն հետևիլ իսկ շնորհին այնմիկ՝ որ ողջութիւն ասեմք կրողացն յամենայն ժամ զայս ինչ գոլ առ ստացունց, որպէս և զուղղութիւնն։

Կղինիաս. Ցոյժ իսկ։

Պղատոն. Իսկ և ուսմանն հետևիլ սակայն այս ինչ շնորհեն զհեշտութիւնն և զուղղութիւնն և զօգտակարութիւնն և զքաջ բարեօքն՝ զճշմարտութիւնն գոլ կատարելով։

Կղինիաս. Է այնպէս։

Պղատոն. Եւ զի՞նչ է. նմանեացն գործովն, որչափ արհեստք են նմանական, ո՞չ զայս ինչ գործիցեն։ Եթէ հեշտութիւն լինիցի ստացունց հետևելով, շնորհք իրաւապէս առասել զսա պարտ է։

Կղինիաս. Այո։

Պղատոն. Իսկ և զուղղութիւնն այնպիսեացն երբեք հաւասարութիւն Թերևս բոլորովին ասել պարտ է, որպէս գործիցէ նախկին քան զայն՝ որ այսչափ է և կամ այսպէս՝ այլ ոչ հեշտութեամբ։

Կղինիաս. Բարւոք։

Պղատոն. Ապաքէն հեշտութիւն ընտրեալ արդեւք այն միայն լինիցի ուղղապէս, որ ոչ զօգուտս ինչ և ոչ զնմանութիւն գործելով առատուիցէ, և ոչ սակայն զմնասակարութիւն, այլ 'ի սակս այսմիկ միայն լինիցի՝ հանդերձեալ այլոցն հետևելով շնորհով, զոր գեղեցկապէս արդեւք անուանիցէ ոք զհեշտութիւն, յորժամ ոչ ինչ սմա յայսցանէ հետևիցէ։

Կղինիաս. Առանց մնասու զհեշտութիւնն միայն ասես։

Պղատոն. Այո, և հրահանգ իսկ գոլ զնոյնդ աստացիդ յայնժամ՝ յորժամ ոչ ինչ գործիցէ մնաս, և ոչ օգտիցի բանից կամ փութոյ արժանի։

Կղինիաս. Ճշմարտապէս ասես։

Պղատոն. Ո՞չ արդեւք զամենայն զնմանութիւն ասասցուք Թերևս յասացելոցս այժմիկ, ոչ իսկ հեշտութեամբ պատշաճ գոլ դատիլ և կամ կարծեօք, որ ոչ իցէ ճշմարիտ։ Եւ զամենայն իսկ հաւասարութիւն, զի ոչ այնմ որ Թուիցի, եթէ ոչ խնդութեամբ հաւասարն իսկ հաւասար, և չափաւորն Թերևս

իցէ չափաւոր ամենեւին. այլ այնմ որ ճշմարիտ իցէ մանաւանդ ամենայնի, և ոչ երբեք այլոյ ուրուք երեւեցի։

Կղինիաս. Ամենեւին ամենեցուն։

Պղատոն. Ո՞չ ապաքէն զերաժշտականն իսկ ամենայն ասեմք կարծեօք գոլ և նմանական։

Կղինիաս. Զի՞ իսկ։

Պղատոն. Ո՞չ արդեւք յորժամ երաժշտականօք ասիցէ հեշտութեամբ դատիլ՝ զայս բանս ընդունել պարտ է, և խնդրելի ոչ է զսա իբրու զփութացեալ ոմն, եթէ լինիցի թերեւս, այլ զայն իսկ որ ունիցի զնմանութիւն գեղեցկագունին կերպովն։

Կղինիաս. Ճշմարտապէս։

Պղատոն. Եւ այսոցիկ արդեւք՝ որ զգեղեցիկ երգն և զերաժիշտն խնդրեն, խնդրելի է՝ իբրու թուի ինձ, ոչ այն որ հեշտն է, այլ ոմն որ ուղիղն է. զի որպէս ասեմք նմանութեամբ էր ուղղութիւնք՝ են և կարծիս. և զայս իսկ ո՞չ արդեւք 'ի միասին խոստովանեսցին քերթողք և լսողք և նմանողք։

Կղինիաս. Եւ յոյժ իսկ։

Պղատոն. Պարտ է արդ իւրաքանչիւրում, որպէս թուի ինձ, ճանաչիլ 'ի քերթուածոցն, եթէ զի՞նչ երբեք իցէ, առ 'ի յայնմանէ որ հանդերձեալ է 'ի սմա գոլ սխալական. քանզի զգօյութիւնն ոչ ճանաչելով թէ զի՞նչ իցէ, և կամ որո՞յ երբեք պատկեր իցէ ճշմարտապէս, յամառութեամբ իսկ զուղղութիւնն ախորժանաց սորա և կամ սխալանացն ճանաչիցէ։

Կղինիաս. Եւ ո՞րպէս ամենայն յամառութեամբ։

Պղատոն. Եւ որ զուղղապէսն ոչ ճանաչէն՝ զբարին կամ զքաջն բարի, իցէ՞ արդեւք հնարաւոր ճանաչել. և ասեմ զայս ոչ ամենեւին հաւաստի, այլ աստանօր թերեւս ասացի հաւաստագոյն։

Կղինիաս. Ո՞րպէս։

Պղատոն. Ե՞ն իսկ առ երեսս մեր և տեսութիւնս՝ բազում նմանութիւնք։

Կղինիաս. Այո։

Պղատոն. Զի՞նչ արդ եթէ և սոցունց ոգէտ ոք իցէ, եթէ զի՞նչ իցէ իւրաքանչիւր 'ի մարմնոցն, և

կամ որոյ նմանութիւն. ծանիցէ՞ արդեւք եթէ մի 'ի սոցանէ ուղղապէս իցէ գործեալ։ Եւ ասեմք զայս ինչ. իբրու զթիւսն մարմնոյն, և զդրութիւնսն անդամոցն իւրաքանչիւր՝ թէ որչափ են, կամ որպիսի՞ք առ որպիսեայ գոլով՝ զպատշաճաւորն ընկալաւ դասութիւն, և ևս զգոյնս իսկ և զձևս. և եթէ այսոքիկ ամենայն շփոթաբար ընդ միմեանս խառնեալ գործեցան, թուի՞ քեզ իսկ ճանաչել երբեք ամենեւին զայսոքիկ ամենայն՝ ումեմն որ տգէտ է եթէ զի՞նչ իցէ նմանեալ կենդանին։

Կղինիաս. Եւ ո՞րպէս։

Պղատոն. Եւ եթէ ծանիցուք իսկ եթէ գրեալն և կամ ստեղծեալն մարդ է, և զամենայն մասունսն անձին իւրոյ և զգոյնսն համանգամայն և զձևսն՝ առ 'ի յարուեստէն ընկալեալ է, հարկաւո՞ր է արդեւք այն որ զայսոսիկ գիտէն, և զայն ինչ պատրաստաբար ճանաչեն, եթէ գեղեցիկ է, կամ ո՞րպէս երբեք նուազութիւն ունիցի ինչ գեղեցկութեան։

Կղինիաս. Ամենայն թերևս, ո՜վ սիրելի, իբրու ասելի է, առ 'ի յամենեցունց զգեղեցկագոյնսն, և կենդանեացն ճանաչեմք։

Պղատոն. Ուղղապէս ասացեր. ո՞չ ապաքէն առ ամենայն պատկեր, և ներ գիր և ներ երաժիշտ[1], և յամենայն իսկ հանդերձելոյն՝ խոհեմական գոլ դատաւոր, պարտ է զերիսս ունել. եթէ զի՞նչ է յառաջագոյն ճանաչել, և ապա եթէ ուղղապէ՞ս է. և ապա երրորդ, եթէ բարե՞ւք է գործեալ պատկերն, որոյ և իցէ, բանիւք իսկ և երգօք և յարմարութեամբ։

Կղինիաս. Նմանէ իսկ։

Պղատոն. Ոչ այսուհետև բացասասցուք՝ առասելով առ երաժիշտսն, ըստ որում դժուարին է. քանզի գովութիւն գոյ առ սմա զանազանապէս քան զառ այլոց պատկերացն. քանզի 'ի սմանէ խորշիլ պարտ է յոլովապէս՝ քան յայլոց յամենեցունց յայսպիսեացս. քանզի սխալելով ոք՝ մեծագոյն թերևս վնասիցի՝

1 Յոյնն՝ καὶ ἐν γραφικῇ καὶ ἐν μουσικῇ.

զչարբարք խոհեմասիրելով. և դժուարին է իմանալ վասն այսորիկ զքերթողն՝ յուրինք գոլ քերթողք, նոցունց երաժշտիցն։ Զի ոչ թերևս նոքա իսկ երբեք իցեն այսչափ սխալականք՝ իբրու թէ զբանք արանց քերթելով, զդոյնն և զերգն հիգական՝ բացատրիցէ. և երգ իսկ ազատաց և ձևք 'ի միասին դնելով, զյարմարութիւնք իսկ և ձևք ազատական[2] ենթադրեալ զերգ կամ զբանն, զներհականն յարմարութեանց բացատրիցէ տակաւին։ Եւ գազանաց ձայնք և մարդկան և գործեաց զամենայն թնդմունք ոչ 'ի միասին երբեք թերևս շարադրիցէ, իբրու զմի ինչ նմանեցուցանելով։ Իսկ արդ քերթողք մարդկայինք, յոյժ զայսպիսիքս շարամանելով և 'ի միասին անբանաբար իսկ գալարելով՝ ծաղր թերևս պատրաստիցեն մարդկան, այնոցիկ՝ որպէս ասէ Որփեւս՝ որ հանդիպողք լինիցին հրճուանացն գեղեցկութեան. քանզի զայսոսիկ զամենայն տեսանիցեն գալարելով տակաւին, օգտիցեն քերթողքն զյարմարութիւն իսկ և զձևք՝ առանց դաշանց՝ սոսկ բանք առ չափս դնելով, զերգ և զյարմարութիւն առանց բանից՝ սոսկ փանդռնահարութեամբ և փողահարութեամբ վարելով, որոց ամենեւին դժուար՝ առանց ձև բանի յեղանակ և յարմարութիւն լինել, և ճանաչելն թէ զինչ կամեսցի, և կամ որպիսի ինչ իցէ 'ի բանից՝ արժանի նմանութեանցն։ Այլ զմտաւ ածել հարկաւոր է, զի ամենայն այնպիսին լի է բազում վայրաքնակութեամբ, որչափ արագութեան և անվթարութեան և գազանային ձայնի յոյժ իցէ սիրելի. իբրու թէ փողահարութեամբ վարիլ և փանդռնահարութեամբ պարտ է, սակայն որչափ ընդ երգով է և ընդ կաքաւանօք. և սոքօք իսկ երկաքանչիւրովք վարիլն սոսկապէս՝ ամենեւին զարմանալի է և առանց երաժշտութեան, և զայնոսիկ ունիցի իսկ՝ և այսպէս բան։ Բայց մեք իսկ՝, ոչ

1 Այսպէս յօրինակին. յոյնն՝ խգակաւ։

2 Ըստ յունին՝ զերգս ազատաց և զձեւ՝ ծառայից և ստրկաց պատշաճեցուցէ։

զի երաժշտօքն մերօք ոչ պարտ է վարիլ այնոցիկ որ ոչ են երեսնամեայք, և քան զյիսներորդն վեհագոյնք լեալք, առնեմք զդիտաւորութիւնս, այլ եթէ ե՞րբ իցէ պարտ զայս ինչ։ Արդ յայտնանէ թուի ինձ բանս նշանակել զգեղջկաց երաժշտութիւնն, զի հրահանգիլ պարտ է, և վեհագոյն այնոցիկ որ յիսնամեա՛յքն են, այնոքիւք ամենայնիւ որչափ պարտ է երգել. քանզի յեղանակացն և յարմարութեանցն հարկաւոր է սոցա ունել բարի մտածութիւն, և ճանաչել թէ ո՛րպէս պարտ է գիտել զուղղութիւն երգոցն, թէ առ որո՞յ յարմարեալ են կամ ոչ յարմարեալ, և զփոփոխումն յարմարութեանցն՝ զոր քերթողն 'ի միասին շարամերձեաց, թէ ուղղապէ՞ս են և կամ ոչ։

Կղիմիաս. Յայտ է իբրու ոչ իսկ։

Պղատոն. Քանզի ծիծաղական է բազում ամբոխն վարկանել բաւականապէս գիտել զքաջայարմարն և զչիւրայեղանակն և զոչն, այնոցիկ որչափ երգել առ սոցունց և 'ի վերայ հասանել յարմարութեամբ հարկեալք եղեն. և թէ զի՞նչ գործեն իւրաքանչիւր ոք 'ի սոցանէ տգէտք գոլով այսոցիկ՝ ոչ բաղախոհին զայս ինչ պատշաճելով։ Իսկ ամենայն երգ ուղղապէս ունիցի, և անպատշաճաբար գոլով՝ սխալաբար։

Կղիմիաս. Հարկաւոր է այդ։

Պղատոն. Զի՞նչ է. արդ այնոքիկ որ ոչ թէ զի՞նչ երբեք ունիցի գիտեն, զո՞ր ինչ ասասցուք. արդեւք իբրու ուղղապէ՞ս իսկ զայս ունիցի, ծանիցէ երբեք յորում և իցէ։

Կղիմիաս. Եւ զի՞նչ է հնար։

Պղատոն. Այս արդ, որպէս թուի, վերագոյն գտանեմք զսոսա յայժմ։ Քանզի զայնոքիկ որ մաղթեմք երգօքս և կամ կամաւ յեղանակաւ ոմամբ երգել, հարկեմք մինչև ցայն վայր գրեթէ հարկաւոր է հրահանգել իսկ, մինչև հնար գոլ 'ի միասին հետևիլ իւրաքանչիւր հաստատութեանցն յեղանակացն և աղեաց երգոցն. զի տեսանելով զյարմարութիւնքն և զյեղանակքն՝ ընտրեալ իսկ զպատշաճաւորս որպէս և իցեն այնոքիկ, որ այսքան և այսչափ

գոլով սոցա, երգել վայել է, և այսպէս երգել. և երգելով ինքեանք իսկ հեշտութիւն վաղվաղակի անմնաս հեշտասցին, և համբակագունիցն առաջնորդք բարուց քաղցունց և սիրայարմար լինիցին։ Եւ մինչև ցայս վայր խրատեալք, ստուգագոյն թերևս խրատ՝ զայն որ առ բազմութիւնն բերէ ընծեռեալք իցեն, և այնմ որ առ սոցունց իսկ է քերթողաց։ Իսկ զերրորդն՝ ոչ և մի կամ երիս է քերթողի[1] գիտել եթէ բարի է և եթէ ոչ բարի նմանութիւն. բայց յարմարութեան և յեղանակի գրեթէ հարկ է։ Այսոցիկ երիցն ամենայն՝ 'ի սակս ընտրութեանն գեղեցկագունին, և կամ երկրորդին, և կամ ոչ երբեք բաւական մակերգող լինել համբակացն առաքինութեան։ Եւ զոր բանս իսկզբանն ախորժեաց, զայն որ Դիոնիսուսի պարին օգնականութիւնն է մակացուցանել՝ բարիոք ասացեալ ասաց ըստ զօրութեան, դիտեսցուք։ Արդ եթէ այս այսպէս եղև՝ խռովատեսակ. իսկ երբեք այսպիսի ժողովս 'ի հարկէ յառաջ հասանելով, խմբոյս պատահի մանաւանդ լինելով զոր և 'ի սկզբանն յաղագս սորա ենթադրեցաք՝ հարկ գոլ լինել յաղագս այժմ եղելոցս։

Կղինիաս. Հարկ է։

Պղատոն. Եւ ամենայն ոք իսկ ինքն ինքեան թեթևագոյն ամբառնայ, և սխրացեալ և համարձակութեամբ լցեալ, և անլրութեան առ այսուիկ ընկերացն և իշխել բաւական արժանանայ անձին իւրոյ և այլոցն։

Կղինիաս. Զի՞նչ իսկ։

Պղատոն. Ո՞չ ապաքէն ասացաք թէ յորժամ այսոքիկ լինիցին, որպէս երկաթ ոմն՝ հոգիքն քաղցելոցն հրատեսակ լինելով՝ կակղագոյնք լինել և նորագոյնք, իբրու դիւրայարմարք պատահիլ կարողին և մակացողին՝ խրատել զսա, և ստեղծանիլ՝ որպէս էին յառաջագոյն մինչդեռ նորք էին. և ստեղծիչ իսկ սմա գոլ՝ զուգախմբականս հնարելով. զքաջայոյսն և զհամարձակագոյնն լինելով և անամօթա-

1. Ցայնն՝ իսկ զերրորդն ոչ է հարկաւոր քերթողի գիտել...

գոյն քան զոր պարտն է. և ոչ կամեցեալ զդաս և զմասն լռութեան, և զբանի համբերելն, և երաժըշտի և խմբման կամելով առնել զամենայն զոր սոցունց են ներհականք։ Եւ 'ի ներքս մտանելով, ոչ բարի վստահութեամբ ընդ ոչ գեղեցիկ երկիւղն մարտնչելով 'ի ներքս մուծանել իբրու իրաւամբք գոլով այնմիկ՝ զոր պատկառումն և ամօթ և աստուածային երկիւղ անուանեցաք։

Կղինիաս. Են այսոքիկ։

Պղատոն. Սոցունց իսկ օրինացս օրինապահք գոլ և արարչակիցք սոցունց, զուարթունքն և զանխռովքն՝ զօրավար այնոցիկ որ ոչ են արթունք. առանց որոց իսկ ընդ արբեցութեան մարտնչիլ չարաչար է, քան զառ պատերազմունսն գոլն առանց անխռովարար իշխանաց։ Եւ զայնոսիկ որ ոչ հնարաւորի կամաւ հասանել սոցունց, և առաջնորդացն Դիոնեսիոսի՝ այնոցիկ որ վերագոյնք իցեն քան զամս վաթսուն, հաւասար և կամ մեծագոյն զամօթն կրել. քան զայնոսիկ որ Արեսայ իշխանացն անհաւանք լինիցին։

Կղինիաս. Ուղղապէս։

Պղատոն. Ո՞չ ապաքէն եթէ այսպիսի ինչ է արբեցութիւն, և այսպիսի խրատ շահեսցին արդեւք այսպիսի խմբակիցքս. և մանաւանդ իցեն բարեկամք եթէ յառաջագոյն 'ի միմեանց 'ի բաց կացեն, և ոչ այսպէս թշնամիք, որպէս այժմ իսկ են։ Իսկ ըստ օրինացն 'ի միասին գոլով յամենայն ժամ, և հետևելով այնոցիկ՝ զոր ինչ և պատմիցեն հսկողքն այնոցիկ որ ոչ հսկեն։

Կղինիաս. Ուղղապէս իսկ, եթէ լինիցի այդպէս իբրու ասեսդ այժմ։

Պղատոն. Ոչ այսուհետև և զայն ինչ 'ի Դիոնիսոսի պարգևացն պարսաւեսցուք պարզաբար, իբրու զի չար է և ոչ արժանի ընդունիլ 'ի քաղաքք. քանզի տակաւին ևս 'ի յոլովագոյն պատմիցէ ոք թերևս վասն սորա ասելով, քանզի և մեծագոյն բարին զոր և պարգևէ, դանդաղելի է իսկ ասել բազմաց. քանզի մարդիկ չարաչար զսա կարծեցին, և Ճանաչեն ասացեալ։

Կղինիաս. Զորպիսի՞ ինչ։

Պղատոն. Բանք ինչ միանգամայն և համբաւ հասեալ իսկ բերի, իբրու սա իսկ աստուածս առ 'ի մօրուէ իւրմէ Հերայ այլայլեցաւ զկամս հոգւոյն, վասն որոյ պատուհասեալ զվաւաշական և զմոլեկան պարքն յարմարել, քանզի և զգինին՝ առ այսորիկ պարգեւեաց։ Բայց ես զայսպիսիքս իսկ այնոցիկ որ վարկանին զգոյշ գոլ ասել յաղագս աստուածոցն՝ թողուցում ասել։ Բայց զայն իսկ գիտեմ, զի ամենայն կենդանի, որչափ պատշաճէ սմա միտք ունել կատարելապէս, զայնպիսին և զայնչափ ոչ երբեք ունելով բուսանի և յայսմիկ ժամանակիս, յորում՝ ոչ է ստացեալ զխոհեմութիւն իւր, մոլի ամենայն անկարգաբար, աղաղակելով, և զմիական մոլութիւնն շարժելով յինքեան վաղվաղակի անհմտաբար՝ առանց դասութեան վաճէ։ Վերստին իսկ յիշեսցուք, զի երաժշտականի իսկ և կրթականի առաջք գոլ զայս ինչ ասացաք։

Կղինիաս. Յիշեմք՝ զիարդ ոչ։

Պղատոն. Ո՞չ ապաքէն և զերդանակի իսկ և զյարմարութեան զգայութիւն մեզ մարդկանս, սկզբնամաս այս ասացաք պարգեւիլ. և զԱպողոն և զերաժիշտքն և զԴիոնիսիոս յաստուածոցն՝ լինել այսմիկ պատճառ։

Կղինիաս. Եւ ո՞րպէս ոչ։

Պղատոն. Եւ զգինին իսկ որպէս նմանեցուցանէ այլոցն բանք, զի մոլեցուք ասէ, առ 'ի պատուհաս մարդկան է առուեալ. բայց այժմ առ 'ի մէնջ ասացեալքս ներհակապէս ասէ դեղ պատկառանաց, 'ի սակս ստացման հոգւոյ պարգեւիլ՝ և մարմնոյ ողջութեան իսկ և զօրութեան։

Կղինիաս. Գեղեցկապէս, ո՛վ սիրելի, զբանս 'ի բաց յիշեցեր։

Պղատոն. Եւ կէսն իսկ պարիս այսպէս առ եզր հասցէ, և միւսն կէսն, ո՞րպէս թուիցի ես, արդեւք կատարեմք և կամ թողումք։

Կղինիաս. Զո՞ր ասես, և ո՞րպէս զերկաքանչիւրսն բաժանելով։

Պղատոն. Բոլոր պարն՝ բոլոր խրատ էր մեզ։ Եւ

սորա իսկ ոմն իսկ յեղանակք և յարմարութիւնք, այն որ ըստ ձայնին են։

Կղինիաս. Այո։

Պղատոն. Եւ միւսն իսկ որ ըստ մարմնոյն շարժութեանն էր՝ յեղանակ իսկ հաղորդաբար ունէր ըստ ձայնին շարժութեանն, սակայն ձև յատուկ և անդ ուր դաշն ասի ձայնին շարժութիւնն։

Կղինիաս. Ճշմարտապէս։

Պղատոն. Իսկ արդ զձայնիս, մինչև զհոգւոյ առ արիութիւն հրահանգն, ոչ գիտեմ թէ իւ յեղանակաւ երաժշտական անուանեցաք։

Կղինիաս. Ուղղապէս իսկ։

Պղատոն. Եւ զայնոսիկ իսկ որ մարմնոյն են՝ զոր խաղալով կաքաւս ասացաք, եթէ մինչև ցմարմնոյն արիութիւնն այսպիսի շարժութիւնս լինիցի, զներարհեստ բերումն առ այնպիսին առասացուք կրթական։

Կղինիաս. Ուղղագոյն իսկ։

Պղատոն. Եւ զերաժշտականին զոր այժմ գրեթէ կէս պատմեցաք պարին, ասասցուք առ եզր հասանել, և այսպէս այժմ ասացի. և զկէսն ասեմք՝ թէ ո՞րպէս և կամ ո՞ւր պարտ է առնել։

Կղինիաս. Ո՛վ արիագոյն, ընդ կրետացիք և ընդ լակեդոմոնացիք տրամաբանելով դու յաղագս երաժշտականի· մեր պատմելով, և պակասելով յաղագս կրթականի, զի՞նչ երբեք կարծիցես դու, և որպիսի՞ մեզ տալ պատասխանի առ այսմիկ հարցումնս։

Պղատոն. Պատասխանի իսկ տուեալ քեզ իսկ ասացից, գրեթէ զայս հարցեալ հաւաստապէս և իմանամ իբրու հարցումն գոլով սա այժմէն և պատասխանի իբրու ասացի. և տակաւին հրամայեա կատարել զոր ինչ յաղագս կրթականին է իրս։

Կղինիաս. Քաջ քեզ թուեցաւ իսկ, և այդպէս արա արդեւք։

Պղատոն. Պարտ է առնել, զի ոչ է յոյժ դժուարին ասել ձեզ զերկաքանչիւրոց իսկ զծանօթութիւն իրիս. քանզի յոյժ՝ յայսմ արհեստիս՝ զյաճախն ունիք հմտութիւն, քան թէ 'ի յայնմիկ։

Կղինիաս. Գրեթէ ճշմարտապէս ասես:

Պղատոն. Ո՛չ ապաքէն իսկ այսմիկ խաղալեաց սկիզբն զբնութեամբ վազելն սովորեալ է ամենայն կենդանի: Իսկ մարդկայինս իբրու ասացաք զգայութիւն յեղանակի ծնաւ ըմբռնեալ զկաքաւսն, և դաշանցն յիշեցուցանելով և զարթուցանելով զեղանակն և 'ի միմեանց իսկ հաղորդեալ, պար և խաղալիս ծնան:

Կղինիաս. Ճշմարտապէս:

Պղատոն. Եւ ասեմք իսկ զի զմիմեանս սորա[1] պատմեցաք, և զմիւսն փորձ արասցուք պատմել ըստ կարգի:

Կղինիաս. Ցոյժ իսկ:

Պղատոն. Իսկ այսուհետև առ պէտսն արբեցութեան զպատճառն 'ի միասին խառնըմանն մակադրեսցուք, թէ և ձեզ երկաքանչիւրոց՝ հաճոյերձ ինև թըւեսցի:

Կղինիաս. Զո՞ր իսկ, և կամ՝ զորպիսի՞ ինչ ասես:

Պղատոն. Իսկ եթէ քաղաք ոմն՝ իբրու գոլով 'ի սմա արագութիւն առ ասացեալ խորհրդոյս, վարեսցի օրինօք և կարգաւորութեամբ, իբրու 'ի սակս խորհելոյ, վարելով խոկմամբ, և յայլոց հեշտութեանցն 'ի բաց ոչ կացցէ, սապէս և ըստ նոյն բանիս 'ի սակս յաղթելոյ նոցա հնարեսցէ, այս իսկ յեղանակաւս ամենեցուն սոքօք վարիլ պարտ է: Ապ' եթէ իբրու խաղալեօք իսկ պարտ իցէ ախորժողին, յորժամ կամիցի, և առ որոց կամեսցի ըմպել այլօք ոմամբ խորհրդօք՝ ոչ իսկ օրինեմ ես զայսմիկ օրէնս, իբրու թէ պարտ է երբեք վարիլ արբեցութեամբ քաղաքիս այսմիկ, և կամ այսմիկ առն. այլ տակաւին մանաւանդ առ կրետացւոցն և լակեդոմոնացւոցն պիտոյիցն յաւելուցում թերևս կարքեդոնացւոցն օրինօքն, զոք ոչ երբեք զինուորութեամբ 'ի բանակի գոլով ճաշակիցէ այսպիսի ըմպելեացս, այլ ջրարբութեամբ լինել առ միմեանս, զայսպիսին յամենայն ժամանակ, և 'ի քաղաքի, ոչ աղախին և ոչ ծառայ ճաշակել ոչ երբեք,

1 Ցայն՝ զմիոյ յերկոցունց՝ պատմեցաք:

և ոչ զիշխանս յայսմիկ ժամանակիս յորում իշխիցեն թերևս, և ոչ զվարիչք և ոչ զդատաւորք՝ ներգործօղք ելով, գինի ամենեւին ճաշակել. և ոչ այն ոք որ խորհրդածուն իցէ, և 'ի խորհուրդ՝ արժանի բանից մտանիցէ, ոչ 'ի տունջեան իսկ և ոչ այլ երբեք ամենևին, եթէ ոչ 'ի սակս մարմնական բժշկութեան, վասն հիւանդութեանց, և ոչ 'ի գիշերի իսկ յորժամ խորհեսցի ոք մանկունս առնել, այր կամ կին։ Եւ այլ իսկ ամենևին բազումք ասիցեք թերևս՝ առ որս այնոցիկ որ միտք և օրէն ուղիղ ունիցին, ոչ է գինիս ըմպելի. իբրու թէ ըստ այսմիկ բանիս, և ոչ այգեաց բազմաց թերևս և կարօտանայ քաղաքն, որ և իցէ, և զայլ երկրագործութիւնքն, թերևս և զամենայն վարք այսպէս կարգաւորութեամբ ունիցի։ Իսկ արդ գրեթէ առ գինի ամենեցուն չափաւորս պարտ է ստանալ զտեսակս որա, սակաւ իսկ այսպէս՝ ո՛վ սիրելիք, եթէ 'ի միասին՝ մեզ թուիցի, յաղագս գինոյ ճառիս ասասցի շաղկապս։

Կղինիաս. Բարեւք հանդերձ քև մեզ թուի։

# ՊՂԱՏՈՆԻ

## ՕՐԷՆՍԴՐՈՒԹԻՒՆ ԵՐՐՈՐԴ



### ՏՐԱՄԱԲԱՆՈՒԹԵԱՆՍ ԴԷՄՔՆ

#### ԱԹԵՆԱՑԻ ՈՄՆ, ԵՒ ԿՂԻՆԻԱՍ ԵՒ ՄԵԳԻԼՈՍ

Պղատոն ասէ. Այսուքիկ արդեւք այսպէս. բայց քաղաքավարութեան սկիզբն զո՞ ոք երբեք լինել ասասցուք. ոչ ապաքէն աստուստ ոք զսա տեսցէ դիւրապէս և գեղեցկագոյն։

Կղինիաս. Ո՞ւստ։

Պղատոն. Ուստի՞ իսկ և զքաղաքացն առ 'ի յարիութիւնս աճմունս փոխաբերելով համանգամայն և առ 'ի չարութիւնս յամենայն ժամ տեսանելի է։

Կղինիաս. Եւ ուստի՞ իսկ ասես։

Պղատոն. Թուի ինձ եթէ 'ի ժամանակի երկարութենէ իսկ և յանեզրութենէ և 'ի փոխաբերութեանցն որ 'ի սմա են։

Կղինիաս. Ո՞րպէս ասես։

Պղատոն. Բեր, յետ որում քաղաքք են և մարդիկ քաղաքավարելով, կարծիցե՞ս թերևս զմտաւ ածել զժամանակի երկարութիւն ո՞րչափ եղև։

Կղինիաս. Ապաքէն դիւրագոյն իսկ այս ոչ է։

Պղատոն. Սա իբրու անեզր ինչ և անհնար թերևս ամենայնի իցէ։

Կղինիաս. Յոյժ իսկ այսպէս է։

Պղատոն. Ապաքէն ուրեմն բազումք իսկ եղեն մեզ քաղաքք 'ի յայսմ ժամանակի՝ և ըստ այսմիկ բազմութեան բանիւ ոչ սակաւագոյնք ապականեալք և քաղաքավարեալք։ Իսկ բազում անգամ զամենայն քաղաքավարութիւն յամենայն ժամ, և երբեմն իսկ

'ի փոքունց մեծագոյնք, և երբեմն 'ի մեծագունից փոքունք. և վատթարք 'ի լաւագունից եղեն, և վեհագոյնք 'ի վատթարագունից:

Կղինիաս. Հարկաւորապէս իսկ:

Պղատոն. Յաղագս այսորիկ արդեւք փոփոխմանս հասու եղերուք, եթէ իցէ մեզ հնար՝ պատճառին, թերևս ցուցցէ մեզ զառաջին զքաղաքավարութեանց լինելութիւնն և փոխադրութիւն:

Կղինիաս. Բարեւք ասես, և յօժարանալ պարտ է քեզ իսկ՝ զոր ինչ խորհիսդ յաղագս այսոցիկ բացերևեցուցանել, և մեզ իսկ 'ի միասին՝ բանից քոց հետևել:

Պղատոն. Արդեւք թուին ձեզ 'ի նախնի բանքն ունել ինչ ճշմարտութիւն:

Կղինիաս. Ո՞րք իսկ:

Պղատոն. Բազում ապականութիւն մարդկան լինելն ջրհեղեղօք իսկ և հիւանդութեամբք և այլօք բազմօք, որովք 'ի սուղ ինչ 'ի մարդկան մնացեալ էր սեռէ:

Կղինիաս. Յոյժ իսկ հաւանական է ամենայն այդպիսիդ ամենայնի:

Պղատոն. Բեր արդ զմտաւ ածցուք մի 'ի բազմացն՝ զայս որ եղև երբեմն ջրհեղեղաւ:

Կղինիաս. Զորպիսի՞ ինչ յաղագս սորա խորհելով:

Պղատոն. Իբրու զի այնոքիկ որ յայնժամ փախուցեալք յապականութենէ, գրեթէ լեռնայինք ոմանք թերևս էին անդիորդք, առ գագաթունս փոքունս ինչ նշմարանս մնացուցանելով մարդկային սեռիս:

Կղինիաս. Յայտ է:

Պղատոն. Եւ այսպիսեացս իսկ հարկ էր, երբէք անհմուտք գոլ այլոց արհեստից, և այնոցիկ որ առ քաղաքս են հնարիցն առ միմեանս յագահութիւնս իսկ և 'ի վիճաբանութիւնս, և որչափ այլ չարագործութիւնք՝ զինչ խորհին առ միմեանս:

Կղինիաս. Այդպէս իսկ վայել էր:

Պղատոն. Դիցուք արդ զայնոքիկ՝ որ 'ի գաշտան

էին քաղաքք՝ և առ ծովք բնակեալ միահամուռն 'ի յայնմ ժամանակի ապականեալ:

Կղինիաս. Դիցուք:

Պղատոն. Ո՞չ ապաքէն և զգործարանս ամենայն կորուսանել, և զոր ինչ արհեստի հուպ էր ճեպով գտեալ, կամ քաղաքականաւ, և կամ այլով ումամբ իմաստութեամբ, զամենայն ասասցուք այնմիկ ժամանակաւն հոսիլ:

Կղինիաս. Եւ որպէս իսկ, ով արիագոյն, եթէ կալով մնացեալ էր այսօրէն այսպէս, զամենայն ժամանակն, իբրու այժմիկ զարդարեալս է՝ գտանիր երբեք տեղի դատարկ, որ և իցէ իսկ:

Պղատոն. Բիւրիցս բիւրուց ամս զանխլեալ էին արհեստքն՝ յայնցանէ որ էին յայնժամ, և հազար ամ. յետ որոյ ոչ եղև այս ինչ և կամ այսչափ երկու հազար ամաց, ոմանք Դեդաղոսի եղեն յայտնի, և ոմանք Որփեայ, և ոմանք Պաղամիդեայ, և որ առ երաժշտականաւն էր իրս Մարսիւայ և Ողոմպոսի. և որ ինչ առ քնարաւն էր՝ Ամփիոնի, և այլ ինչ այլոցն ամենևին բազում, իբրու ասելի է, տաղն երէկ եղեալ և յառաջագոյն:

Մեգիլլոս. Գիտե՞ք արդեւք, ով Կղինիա, զսիրելին այնմիկ առ որով զանց արարեր, զայն իսկ որ պարզաբար եհաս առ մեզ:

Պղատոն. Թերևս զԵպեմինիդէս ասես:

Կղինիաս. Այո զսա, քանզի յոյժ գերագոյն քան զամենեսեան թևակոխեաց հնարաւոր սիրելի, զոր բանիւ իսկ Եսիոդոս կանխաւ դիւթաբար ասէր՝ իսկ գործով նա կատարէր, իբրու դուքդ ասէք:

Մեգիլլոս. Ասեմք արդ այսպէս:

Պղատոն. Ո՞չ ապաքէն այդպէս ասեմք զոլ յայնժամ յորժամ եղև ապականութիւն՝ զիրողութեանցն առ մարդկան, յոյժ իսկ և ահաւոր անապատ, և առատութիւն երկրի ամենևին բազում և կենդանեաց այլոց, պակասելով խաշանց յանկարծակի, և որ ինչ 'ի նոխազաց մնացեալ հանդիպէր սեռէ նուազագոյն, և այսօրէն ճարակելով զոլ սոցա կեալ յայնժամ իսկ բանն:

Կղինիաս. Զի՞ իսկ։

Պղատոն. Իսկ յաղագս քաղաքի և քաղաքավարութեան և օրինադրութեան, զորս այժմ բանս մեզ առաջի կացոյց, արդեւք իբրու տա՞ղս ասելի է կարծեսցուք և յիշատակ գոլ ամենեցին։

Կղինիաս. Ոչ։

Պղատոն. Ո՞չ ապաքէն յայնցանէ որ այսպէս էին տրամակայեալ՝ եղեն մեզ ամենայն այսոքիկ որ այժմ են քաղաքք իսկ և քաղաքավարութիւնք և արհեստք և օրէնք, և բազում ինչ չարութիւն և բազում առաքինութիւն։

Կղինիաս. Ո՞րպէս ասեսդ։

Պղատոն. Թերևս կարծիցո՞ւք, ո՛վ սքանչելի, զայնոսիկ որ յայնժամ էին անհմուտք բազում իսկ բարութեանցն որ առ քաղաքն էին. և բազում ներհակացն նոցունց կատարելագոյնս առաքինութեամբ լեալ կամ չարութեամբ։

Կղինիաս. Բարեւք ասես, և իմանամք զոր ասեսդ իսկ։

Պղատոն. Ո՞չ ապաքէն յառաջելով ժամանակին և աճելով մերոյ սեռիս՝ յայսոսիկ ամենայն որ այժմ հաստատեալս են յառաջմամբ հասան ամենայն։

Կղինիաս. Ուղղապէս իսկ։

Պղատոն. Սակայն ոչ յանկարծակի, իբրու զի ոչ էր վայելչական, այլ ըստ փոքումբ, ամենևին բազմաւ ոմամբ ժամանակաւ։

Կղինիաս. Եւ մանաւանդ վայել է այդպէս։

Պղատոն. Քանզի 'ի բարձանց 'ի դաշտքն իջանելն՝ կարծեմ թէ ահագին ևս էր ամենեցուն։

Կղինիաս. Եւ ո՞րպէս ոչ։

Պղատոն. Ո՞չ ապաքէն հաւանեալս տեսանէին զինքեանս վասն սակաւութեանն որ էր առ այնմիկ ժամանակաւ, և հնարաւոր զառ միմեանս յայնժամ գնալն առ ծով և կամ 'ի ցամաքի հանդերձ արհեստօքն, իբրու ասելի է բանս՝ գրեթէ ամենայն կորուսեալ էր, և 'ի միասին խառնիլ կարծեմ թէ ոչ էր միմեանց յոյժ հնարաւոր, քանզի երկաթ և պղինձ և ամենայն հալական քարինս խառնեալ էին և կորու-

սեալ, իբրու թէ տարակուսանս էր ամենեցուն վերըս-տին մաքրել և գտանել զայսոսիկ, և հատուածս ծառոց ունէին նուազ. քանզի թէպէտ և մնացեալ լինէր ու-րուք 'ի լերինս գործարան՝ վաղվաղակի մաշելով, այն-պիսին աներկեան գտանէր, և լինելոյ այլ ոչ էր հնար, նախ քան զհայլական քարանցն արհեստին գտանելն առ մարդկան։

Կղինիաս. Եւ ո՞րպէս։

Պղատոն. Եւ ո՞րչափ ազգաց յետոյ կարծեմք զայս այսպէս լինել։

Կղինիաս. Յայտ է թէ ամենևին բազմաց ոմանց։

Պղատոն. Ո՞չ ապաքէն և արհեստքն որչափ երկա-թոյ կարօտանան կամ պղնձոյ, կամ այլոց այսպիսեաց ամենեցուն, յայնմ ժամանակին աներևանք էին թերևս յայնժամ։

Կղինիաս. Եւ զիա՞րդ ոչ։

Պղատոն. Եւ հակառակութիւնք միանգամայն և պատերազմունք կորուսեալք էին յայնմ ժամանակի 'ի բազում տեղիս։

Կղինիաս. Ո՞րպէս։

Պղատոն. Նախ իսկ զի սիրէին և բարեմտու-թեամբ տրամակայեալ էին առ միմեանս վասն անա-պատին, և ապա կերակուրն և սնունդ նոցա ոչ աշ-խատութեամբ և մախանօք առ միմեանս էր. քանզի ճարակոյ նուազութիւն ոչ գոյր՝ բաց 'ի յոմանց սա-կաւուց, թերևս 'ի սկզբանն ըստ որում ունէին գյո-լովագոյն կեանս յայնմ ժամանակի. քանզի կաթին և մսոյ ոչ էին կարօտացեալ, տակաւին որսալովն ոչ յոռին ինչ և ոչ սակաւ գտանէին զսնունդն, և օթոցի և վերածածկութից և բնակութեանց, և ա-նօթից հրափորձից և անփորձից 'ի հրոյ՝ ոչ ունէին նուազութիւնք, քանզի ստեղծական արհեստքն և որչափ շարամանականքն ոչ կարօտանան երկաթոյ. և զայս ամենայն այսոքիւք արհեստիւքս աստուած պար-գևեաց մարդկան, զի յորժամ այնպիսի տարակու-սանս հասցեն՝ ունիցին մարդկային սեռս զաճումն և զշառաւիղ։ Եւ տնանկք իսկ վասն այսորիկ ոչ էին բազում, և ոչ 'ի ձեռն տնանկութեան հարկեալք

և զանազանեալք լինէին առ միմեանս, և ճոխանալ երբեք ոչ կարէին. քանզի առանց ոսկւոյ էին և առանց արծաթոյ, և ամենայն զուգաբանութիւն որ առանց ճոխութեան և աղքատութեան լինիցի՝ գրեթէ ամենայն արիագոյն բարեօք լինիցի. զի ոչ ամբարհաւաճութիւն, և ոչ անիրաւութիւն, և ոչ նախանձ իսկ, և ոչ մախանք լինէին, և վասն այսորիկ էին արք բարիք: Եւ վասն դիւրաբարութեանն, զոր այսպէս իսկ կ՚՚չէին բարիք. քանզի զոր ինչ լսէին, եթէ բարի էր և եթէ յոռին՝ դիւրաբարք գոլով ճշմարիտ ասել վարկանէին և հաւանէին, քանզի ստութեան կարծիս ոչ ոք ունէր վասն խորագիտութեան, որպէս և այժմ իսկ: Այլ յաղագս աստուծոցն և մարդկան զասացեալսն ճշմարիտ կարծելով, ըստ այսմիկ ունէին զկեանս. վասն որոյ էին այսպիսիք, որպէս մեք այժմ զսոցանէ պատմեցաք:

Կղինիաս. Ինձ իսկ և սմա՝ հանդերձ.քև այդպէս թուի:

Պղատոն. Ապաքէն ասասցուք եթէ ազգք բազումք կեցեալք յեղանակաւս այսմիկ, քան զայնոսիկ որ յառաջ քան զջրհեղեղն են եղեալ, և քան զայս իսկ որ այժմս են անարհեստագոյնք և անուսումնականք, այլ առ այլքն իսկ հանդերձեալ են գոլ արհեստքն, և առ պատերազմականքն՝ որչափ հետևակ են իսկ, և որչափ առ ծով այժմ լինին, և որչափ առ քաղաքն միայն հանդէսք և հակառակութիւնք ասին բանիւք և գործովք հնարաւորեալք քան զամենայն հնարս առ 'ի չարագործել զմիմեանս և յապիրատել: Եւ էին իսկ դիւրաբարք և արիագոյնք, և միանգամայն ողջախոհք, և ամենեին արդարագոյնք, և զպատճառի այսոցիկ աւասիկ պատմեցաք:

Կղինիաս. Ուղղապէս ասես:

Պղատոն. Ասացին և այսոքիկ՝ որ սոցունց հետևին, և ամէն իսկ ասացին 'ի սակս այսորիկ, զի իմասցուք եթէ անոցիկ որ 'ի յայնժամ էին օրինաց երբեք էր պէտս, և ով էր օրինադիր սոցա:

Կղինիաս. Եւ բարեւք իսկ ասացեր:

Պղատոն. Ապա ուրեմն նոքա ոչ կարօտանային եր-

բեք օրինադրաց, և ոչ ևս տիրէր ըստ այնոցիկ ժամանակացն լինել այսպիսի, զի ոչ գիր ունէին տակաւին այսոքիկ որ յայնմ մասին լեալ էին շրջաբերութեան, այլ սովորութեամբ և հայրենի օրինացն հետեւելով ունէին զկեանսն։

Կղինիաս. Վայելչագոյն իսկ։

Պղատոն. Եւ քաղաքավարութեան իսկ յեղանակ է ոմն այս իսկ։

Կղինիաս. Ո՞րք։

Պղատոն. Թուի ինձ զի ամենեքեան զքաղաքավարութիւն որ էր 'ի ժամանակին յայնմիկ՝ զօրեղութեան[1] կոչէին, որ և այժմ տակաւին 'ի բազում տեղիս է առ Եղլենացիս և առ բարբարոսս, և ասէ իսկ զսա Հոմերոս լինել առ կեկլոպեանցն բնակութիւն՝ ասելով. «Սոքա իսկ էին ոչ վաճառականք, ոչ խորհրդածուք և ոչ յօրինողք, այլ 'ի բարձրագոյն լերանց գագաթունս բնակելով, և յայրս գետնափորս հանգուցեալ էին, իւրաքանչիւր ոք ոչ մանկանցն խնամս տանելով, և ոչ միմեանց, և այսպէս վարէին զկեանս[2]»։

Կղինիաս. Թուի ձեզ քերթողդ[3] այդ լեալ սխրալի. քանզի և այլ սորա բանք, մանաւանդ քաղաքական՝ ընթերցաք, սակայն ոչ բազում, զի ոչ վարիմք յոյժ կրետացիքս օտարք քերթուածովքն։

Մեգիղոս. Բայց մեք վարիմք իսկ, որպէս թուի յաղթել այդպիսի քերթողացդ, ոչ իսկ լակոնացի, այլ մանաւանդ յունական կենցաղ վարելով յամենայն ժամ. և այժմ իսկ բարեւք քո բանիդ թուի վկայեալ՝ նախնին սոցա վայրենութիւնն, 'ի ձեռն առասպելաբանութեանն 'ի վերայ բերելով։

Պղատոն. Այո. քանզի վկայակից լինիցի մեզ, և առցուք իսկ զսա յաղթող. զի այսպիսի քաղաքավարութիւնք լեալ են երբեք։

Կղինիաս. Բարեւք։

Պղատոն. Ո՞չ արդեւք յայսցանէ որ ըստ միոյ

1 Յոյնն δυναστεία, որ է զօրութիւն, հարստութիւն, բռնութիւն։

2 Յիններորդ գրոց Ոդիսականին Հոմերի։

3 Յօրինակին՝ քերթողդ. ուղղեցաք ըստ յունին։

բնակութեան և սեռի սերմանեալ են՝ տարակուսամամբն այնմիկ որ յապականութիւնքն լինէր, որով երիցագոյնն իշխէ։ Վասն զի սկիզբն սոցա 'ի հօրէ և 'ի մօրէ լինելոյն, որոց հետևելով՝ որպէս հաւք երամ մի առնեն, արածելով հայրենի օրինաւ և թագաւորութիւն թագաւորելով ամենեցուն արդարագոյն։

Կղինիաս. Եւ յոյժ իսկ։

Պղատոն. Եւ յետ այսոցիկ առհասարակ մեծագոյնս առնելով՝ քաղաքք գան 'ի միասին յոլովք, և առ 'ի յերկրագործութիւնս այնոցիկ որ առ կողմունքն են լերանցն նախ դարձցին. և ցանկ արկանեն թանձրափուշ, և պարսպաց բարձրութիւնք առնեն 'ի սակս գազանացն, մի բնակութիւն կատարելով, մեծ և հասարակաց։

Կղինիաս. Վայելչագոյն է այդոցիկ այսպէս լինելն։

Պղատոն. Եւ այս իսկ զի՞նչ ոչ վայելչագոյն։

Կղինիաս. Որպիսի՞ ինչ։

Պղատոն. Բնակութեանցս այսոցիկ մեծագունիցս աճելով և փոքրագունից, և նախ զիւրաքանչիւր 'ի փոքունցն թողուլ, ըստ սեռի ունելով երիցագոյնն իշխան, և ինքեան սովորութիւնք յատկագոյն՝ վասն որոշ 'ի միմեանց բնակելոյն, և այլ յայլոց ծնողաց և սնուցողացն գոլով, զոր և սովորեցան առ աստուածքն իսկ և առ ինքեանս, զարդարելոցն զարդարելագոյնս, և արիագունիցն արիագոյնս, և ըստ յեղանակի այսպէս իւրաքանչիւրոց զբացքարձմունքն՝ իւրեանց մանկունքն տպաւորելով. և 'ի մանկանցն մանկունքն՝ զոր ասեմք հասանիլ, ունելով յատուկ օրէնք 'ի մեծագոյն զուգաբանութիւնն։

Կղինիաս. Եւ ո՞րպէս ոչ։

Պղատոն. Սակայն և զիւրեանց օրէնսն՝ հաճոյ գոլ իւրաքանչիւր ուրուք հարկաւոր էր. իսկ զայլոցն համարելով վերջին։

Կղինիաս. Այդպէս։

Պղատոն. Ի սկիզբն արդ օրինադրութեան որպէս մտանելով՝ զանխլացաք իբրու թուի ինձ[1]։

[1] Այս է. ինձ այնպէս թուի թէ զանխուլ 'ի սկիզբն օրինադրութեան մուտ գործեցաք։

Կղինիաս. Յոյժ իսկ:

Պղատոն. Զայնոսիկ որ յետ այսոցիկ է՝ հարկաւոր է ասել 'ի միասին եկելոցս այսոցիկ հասարակաց՝ առանձինս գիտելով զամենայն օրէնսն՝ զհաճոյ թըւեցեալսն իւրեանց, մանաւանդ առ հասարակաց առաջնորդացն, և այնոցիկ որ ընդ ձեռամբ ունին զամբոխսն և զհրապարակսն ցուցանել, իբրու թագաւորաց յայտնապէս, և 'ի հաճութիւն բերելով ինքեան: Իսկ օրինադիրք կոչեցին և զիշխանսն հաստատել՝ զքաջայաղթութիւն առ 'ի զօրութեանցն աւարեալ, և կամ զթագաւորութիւն՝ այսմիկ փոխաբերութեամբս քաղաքավարութեանն բնակեցին:

Կղինիաս. Ըստ կարգի արդեւք այդպէս և այսմիկ յեղանակաւ լինիցի:

Պղատոն. Ասասցուք արդեւք երրորդ այսուհետև ձև քաղաքավարութեան լինելով. յորում ամենայն տեսակք և կիրք քաղաքավարութեանց՝ և միանգամայն քաղաքաց՝ 'ի միասին անկանի լինել:

Կղինիաս. Եւ որպիսի՞ ինչ է այս իսկ:

Պղատոն. Զոր յերկրորդումն և Հոմերոս նշանակեաց՝ ասելով զերրորդն այսպէս լինել. «շինել, ասէ, ուրուք զԴարդանիայ, քանզի ոչ երբէք Իլոն բնակէր 'ի դաշտի քաղաքանալով, քաղաք բազմութեանց մարդկան. այլ տակաւին առ ծայրս լերանց բնակէին»[1]: Ասէ իսկ զայսոսիկ տաղքս, և զայնոքիկ որ յաղագս կիկլոպեանցն ասացաւ, 'ի յաստուածոցն ասացեալք և ըստ բնութեան, քանզի աստուածային է և տեսական քերթողական սեռ՝ երգելով օրհնութեամբ. և առ բազումս յայնցանէ որ ըստ ճշմարտութեան լինի, հանդերձ շնորհօք ումամբ և երաժշտիւք յիւրաքանչիւր ժամու 'ի վերայ հասանիլ[2]:

Պղատոն. Իսկ արդ յառաջագոյնսն հասցուք տակաւին այսուհետև, 'ի վերայ հասանելով մեր առասպելին. թերևս նշանակիցէ իսկ յաղագս մերոյ խորհրդոյս և կամացս:

1 Ի քսաներորդ գրոց Իլիականին:

2 Յոյն բնագիրն այսպէս ունի. «յիւրաքանչիւր ժամու:— Կղինիաս. Արդ 'ի վերայ հասի ստուգութեան բանիցդ:

Կղիմիաս. Ո՞չ ապաքէն պարտ է յոյժ իսկ։

Պղատոն. Ասասցուք եթէ բնակեցաւ առ 'ի բարձանցն 'ի մեծ իսկ և 'ի գեղեցիկ դաշտ Իլիոն, 'ի վերայ բլրոյ իսկ ոչ բարձրագունի. և ունելով գետք բազումք 'ի վերուստ 'ի լեռնէ անտի դիմեալք։

Կղիմիաս. Ասեն արդ։

Պղատոն. Ապա ուրեմն ոչ բազում ժամանակաւ ոմամբ յետ Ջրհեղեղին՝ զայս ինչ կարծիցեմք լինել։

Կղիմիաս. Որպէս ոչ բազմաւ։

Պղատոն. Վարկանիլ պարտ է, որպէս թուի ինձ, թէ մոռացումն եհաս սոցա այժմ ասացեալ ապականութեանս, զի այսպէս առաջի բազում գետոց 'ի բազմաց հոսելով՝ յօրինեցին զքաղաքն՝ վստահանալով 'ի բլուրս ոչ յոյժ բարձունս։

Կղիմիաս. Յայտ է արդ՝ իբրու ամենևին հեռացեալ էին երկար ժամանակաւ յայնպիսի ախտէն։

Պղատոն. Կարծեմ եթէ և այլ քաղաքք բազումք յայնժամ բնակեալ էին բազմանալով մարդկան։

Կղիմիաս. Զիա՞րդ ոչ։

Պղատոն. Որք և սպառազինեէին իսկ 'ի վերայ սորա, և առ ծով իսկ թերևս՝ առանց ահի վարելով սոցա առ ծովն։

Կղիմիաս. Երևի այդպէս։

Պղատոն. Եւ տասնամեայ ժամանակք կալով և մնալով՝ աքեացիք զՏրովադայ վերջնանահանջ առնէին։

Կղիմիաս. Եւ յոյժ իսկ։

Պղատոն. Ո՞չ ապաքէն յայսմիկ ժամանակի տասնամեայ գոլով Իլոմն պաշարիր, և պաշարողացն իւրաքանչիւրոց՝ առ տունսն բազում ինչ դժուարինս պատահէին լինել՝ առ 'ի հակառակութեանէն համբակացն, որք և հասանելով զզինուորքն 'ի քաղաքք իւրեանց և 'ի տունքն ոչ բարեաք և ոչ արդարութեամբ ընդունէին, այլ իբրու մահք և սպանմունք, և փախուստք ամենևին յոյժ լինել, որք և դարձեալ արտաքս անկեալ չոգան 'ի ստորինս, փոխարկելով զանուն՝ դովրացիք կոչեցեալք աքէացւոցն փոխանակք.

վասն զի այնոքիկ որ յայնժամ զփախուցեալսն հաւաքեր՝ դովրայի էր։ Եւ զայսոսիկ արդ ամենայն աւասիկ դուք, ով Լակեդովմոնացիք, աստուստ առասպելաբանելով 'ի կատարած հասուցէք։

Կղինիաս. Զո՞ իսկ[1]։

Պղատոն. Ուստի արդ զսկզբանն 'ի բաց դդուեցաք[2] յաղագս օրինաց տրամաբանելով անկեալք առ երաժշտականաւն, և յաղագս արբեցութեանցն, այժմ առ նոյնս դարձեալ հասանեմք՝ որպէս յաստուածուստ յաջողեալք, և բանս մեզ իբրու պաշտպանութիւն ինչ պարգևէ. զի եհաս առ 'ի Լակեդովմոն բնակութիւնդ այդմիկ և Կրետէ՝ զոր դուք ուղղապէս ասացիք բնակիլ իբրու եղբարք գոլով սոյա օրինիւք։ Այժմ այսուհետև՝ այսչափ յաճախելով յածմամբս բանիս 'ի ձեռն քաղաքավարութեանց ոմանց և բնակութեանց, շրջելով պատմութեամբս՝ տեսաք զառաջին և զերկրորդ և զերրորդ քաղաքսն միմեանց, որպէս կարծեմք, բնակութեամբն հպագոյնք՝ ժամանակի ոմամբ անեզր երկարութեամբ։ Եւ այժմ իսկ չորրորդ մեզ ոմն սա է քաղաք, ապ՝ եթէ ախորժիցէք՝ ազգ, երբեք հացէ բնակելով, և յառաջ քան այժմ բնակեալ իսկ։ Որոց ամենայնէ եթէ կարասցուք խորհել ինչ՝ բարեա՞ք և կամ ոչ բնակեցաւ արդ սա, և ո՞ ոք են օրէնք որ կեցուցանեն զսա, և ինքեանք կան և մնան, և ո՞ ոք են որ ապականեն զապականեալսն, և փոխանակ որո՞ց՝ որք եղան բարեբաստ զքաղաքն գործելով, ով Մեգիլէ և Կլինիա։ Զայսոսիկ դարձեալ արդ՝ իբրու իսկզբանէ ասել մեզ պարտ է, եթէ ոչ զյառաջագոյն ասացեալ բանիցն ամբաստան լինիցիմք։

Կղինիաս. Ապ՝ եթէ աստուած ոմն խոստասցի մեզ, ով սիրելի, իբրու թէ 'ի ձեռնարկութիւն արասցուք օրինադրութեանն դիպողութեամբ՝ առ բանս այժմիկ ոչ վատթարագոյնք և ոչ նուազագոյնք, լսիցուք եր-

1 Մեգիլեայ ընծայի հարցումնս 'ի բնագրին, որպէս և որ 'ի ստորեւ յանուն Կղինիայ պատասխանիք և բանք։

2 Այսպէս յօրինակին. Թերևս դըդուեցաք, յոյնն՝ ἐξεῖραπόμεθα։

կար. Թերևս պատմեցից իսկ ես, և սուղ ինձ թուեսցի հասեալ օրս լինել. Թէպէտ և է այն իսկ որ յամառնային յեղանակացն 'ի ձմեռնայինսն դառնայ՝ հանդերձ աստուծով:

Պղատոն. Պարտ է իսկ զայսոսիկ, որպէս թուի ինձ, դիտել:

Կղինիաս. Ցոյժ իսկ:

Պղատոն. Եղերուք արդ մտածօրէն ժամանակն այնմիկ, յորժամ Լակեդոմոն և Արգոս և Մեսենէ, և այնոքիկ որ յետ սոցունց ընդ ձեռամբ նախածնացն մերոց, ով Մեգիլէ, լինել բաւականապէս. և այն իսկ որ յետ այսորիկ էր, թուեցաւ սոցա՝ որպէս ասի առասպելին՝ որ եռակի զպայքն բաժանելով՝ երիս քաղաքս բնակեցուցանել, զԱրգոս և զՄեսսենեա և զԼակեդոմոն:

Կղինիաս. Արդար իսկ:

Պղատոն. Եւ թագաւոր իսկ արգիացւոց լինէր Տեմենոս, և Մեսենայ՝ Կրեսփոնտէս, և Լակեդոմոնոյ՝ Պրոկլէս և Իւռիւսթենէս:

Պղինիաս. Ո՞րպէս ոչ:

Կղատոն. Եւ սոցա իսկ ամենեքեան որ յայնժամ էին երդուան, և դաշինք եդին զի օգնեսցեն եթէ ոք զթագաւորութիւն նոցա ապականեսցէ:

Կղինիաս. Զի՞արդ ոչ:

Պղատոն. Եւ թագաւորութիւն լուծանի, երդնուլով յԱրամազդ, և եթէ այլ ոմն երբեք իշխանութիւն լուծեալ է, ոչ 'ի ձեռն այլոյ ուրուք՝ այլ 'ի ձեռն ինքեանց նոցունց. որպէս և սակաւ ինչ յառաջագոյն այսոցիկ բանիցս հանդիպելով՝ այսպէս յաղագս սոյա ասասցուք:

Կղինիաս. Եւ ո՞րպէս:

Պղատոն. Ո՞չ ապաքէն այժմ մանաւանդ ստուգեսցուք զայսպիսիս. քանզի հանդիպելով գործոց լինելով՝ կարծեմ եթէ հասաք առ բանս: Իբրու ոչ առ ունայն ինչ վնոյն բանս խնդրեսցուք, այլ առ եղեալ ունելով զճշմարտութիւնն: Եւ եղև այսպէս: Թագաւորութիւնք երիս՝ երից թագաւորեալ քաղաքաց, երդուան միմեանց երկաքանչիւրքն ըստ օրինացն որ

եղան, զի իշխեսցեն. և իշխեն հասարակաբար, ոմանք ոչ գոռոզագոյն զիշխանութիւնն գործել, յառաջագոյն հասանելով ժամանակին և ազգին, և ոմանք զայսոսիկ հաստատելով իշխանացն, զի ոչ սոքա զթագաւորութիւնն երբեք լուծցեն, և ոչ այլոց առ այլ ինչ յորդորեցուցիչք լինիցին, այլ օգնեսցեն մանաւանդ թագաւորքն իսկ առ 'ի յայլոց անիրաւեալ թագաւորաց և ժողովրդոցն. և ժողովուրդքն առ 'ի յայլոց անիրաւել ժողովրդոցն և թագաւորացն. ո՞չ արդեւք այսպէս։

Կղինիաս. Այդպէս իսկ։

Պղատոն. Ո՞չ ապաքէն մեծագոյնն քաղաքավարութեանցն հաստատութեանն էր այն, որ առ երիսն քաղաքսն օրինադրեալք էին, եթէ թագաւորքն օրինադրէին և եթէ այլ ոմանք։

Կղինիաս. Որպիսի՞ ինչ։

Պղատոն. Օգնականք իսկ գոլն երկուցն միշտ 'ի վերայ միոյ քաղաքին՝ այնմիկ որ եդեալ օրինացն ոչ անսայր։

Կղինիաս. Յայտ է։

Պղատոն. Եւ զայս ինչ բազումք հրամայեն օրինադրացն, իբր զի այսպիսիս դիցեն զօրէնսն՝ զորս կամաւ ժողովուրդն և բազմութիւնքն ընդունիցին. որպէս թէ առ հրահանգիչքն թերևս կամ առ բժիշկն հրամայեսցի հեշտութեամբ բուժել և կրթել զառաջիկայս սոցա մարմինս։

Կղինիաս. Ամենևին իսկ այդպէս։

Պղատոն. Եւ այս իսկ է բազում անգամ սիրելի, եթէ ոք առանց մեծի տրտմութեան կարասցէ ըղձալի և ողջ գործել զմարմինս։

Կղինիաս. Զի՞ իսկ։

Պղատոն. Եւ տակաւին յայնժամ ոչ էր փոքր 'ի պատրանս այս ինչ առ դրութիւնսն օրինացն։

Կղինիաս. Որպիսի՞ ինչ։

Պղատոն. Ո՞չ էր օրինադրացն մեծագոյնն 'ի պարսաւանաց՝ զոմն հաւասարութիւն սոցա կազմելով գոյացութեանն, որ և առ այլս օրինադրեալ քաղաքս բազումս լինելով, եթէ ոք խնդրիցէ շարժել զստա-

ցուածս երկրի, և զպարտուց լուծումն տեսանելով իբրու ոչ կարացէ առանց այսոցիկ լինել երբեք հաւատարմութիւնն բաւականապէս: Իբրու ձեռնադրելով[1] իսկ օրինադրին շարժելի այսպիսեացս ինչ՝ ամենայն ոք հանդիպելով սմա՝ սա է ոչ շարժել զանշարժսն, և անէծս 'ի վերայ հաստուցանէ՝ զերկրի գրաւահարկումն պատմելով և զպարտուցն 'ի բաց հատումն, իբրու աստուստ 'ի տարակուսութիւն և 'ի տնանկութիւն հաստուցանել զամենայն այր: Բայց դովրացեաց և այս այսպէս էր բարեւք. և առանց աւտելութեան զերկիրն անընդերկուաբար բաժանեալ, և պարտք մեծք և հինք ոչ էին 'ի վերայ սոցա:

Կղինիաս. Ճշմարտապէս:

Պղատոն. Եւ որպէս արդ երբեք, ով արիագոյնք, այսպէս չարաչար առ սոքօք տանելի եղև բնակութիւնն իսկ և օրինադրութիւնն:

Կղինիաս. Ո՞րպէս արդ և զինչ պարսաւելով զսոսա ասես:

Պղատոն. Զի երից լինելով սոցա բնակութեանց՝ երկու մասն սոցունց փաղփաղակի զքաղաքավարութիւնն և զօրէնսն ապականեաց, և մնաց մէկ մասն՝ միայն ձերոյ քաղաքիդ:

Կղինիաս. Ոչ ամենևին դիւրին ինչ հարցանես:

Պղատոն. Այլ սակայն պարտ է մեզ՝ զայս ինչ առ այժմ ժամուս դիտելով և քննելով յաղագս օրինաց, խաղալով զծերական ողջախոհ խաղալիսն՝ անցանել առ ճանապարհաւս անտրտմաբար, որպէս ասացաք, գնալ յայնժամ յոր և գայաք:

Կղինիաս. Զի իսկ ապա և պարտ է առնել իբրու ասեսդ:

Պղատոն. Զո՞ ոք արդեւք խորհուրդ գեղեցկագոյն արասցուք յաղագս օրինաց, և կամ յաղագս այնոցիկ որ զսոսա իցեն զարդարեալ. և կամ քաղաքաց ոմանց՝ յաղագս ընտիր և մեծագոյն բնակութեանց դիտեսցուք:

Կղինիաս. Ոչ է դիւրին՝ փոխանակ սոցունց զայս առնել:

1 Այս է՝ ձեռն արկանելով:

Պղատոն. Ո՞չ ապաքէն զի զմտաւ ածէին իսկ այնուքիկ յայնժամ՝ զպատրաստութիւնս և զկազմութիւնս զայս՝ ոչ Պելոպոնոսոյ միայն բաւական օգնական լինել, գրեթէ յայտ է, այլ և ելլենացւոցն ամենեցուն, եթէ ոք 'ի բարբարոսաց անիրաւեսցէ զոսա. որպէս և այնուքիկ որ առ Իլիոն բնակեալ էին յայնժամ՝ վստահանալով յասորեստանեացն զօրութիւն յայնմիկ իրի որ առ Նինոս եղև՝ յանդգնելով զպատերազմն յարուցին 'ի վերայ Տրովադայ. քանզի տակաւին ոչ ինչ փոքր մնացեալ ձևն իշխանութեանն այնմիկ, որպէս այժմ 'ի մեծագոյն թագաւորէն երկնչիմք մեք, և յայնժամ յայնմանէ՝ որ 'ի միասին հաստատեալ էր շարադասութիւնն զօրացն՝ երկնչէին որ յայնժամ էին. քանզի մեծ ամբաստանութիւն առ սոսա լինէր երկրորդ աւարտումն Տրովադայ. քանզի մանր մասն է նոցունց իշխանութիւնն։ Առ սովաւ իսկ ամենայն բնակին բազմութիւնն՝ բաժանելով յերիս քաղաքս միով կազմութեամբ 'ի ձեռն թագաւորաց եղբարց, մանկանց Հերակլէի. բարեւք, որպէս թուի, վերստին գտեալ և զարդարեալ զանազանապէս այնմիկ որ հասեալ էր 'ի վերայ Տրովադայ. զի նախ իսկ զհեռակլիդեանքն՝ պելոպիդեանցն վեհագոյնս վարկանէին իշխանացն իշխան առնել. և ապա զբանակն՝ զայս քան զայն, որ հասեալ էր 'ի վերայ Տրովադայ՝ տարբերիլ առաքինութեամբ. քանզի յաղթահարեալ սոցա, և պարտիլ 'ի ձեռն սոցա այնոցիկ աքեացիք գոլով 'ի ձեռն դովրացւոց։ Ո՞չ արդեւք այսպէս կարծեմք, և այսպիսեաւ ոմամբ մտածութեամբ պատրաստիլ զայնոսիկ որ էին յայնժամ։

Կղինիաս. Եւ մանաւանդ յոյժ։

Պղատոն. Ո՞չ ապաքէն և զհաստատագոյն թուելն այսոցիկ հանդիպիլ՝ վայելչագոյն էր սոցա. և ժամանակաւ ոմամբ՝ թերևս բազմաւ, կալ մնալ իբրու հաղորդելով իսկ միմեանց բազմաւ աշխատանօք և վշտագնութեամբ. և 'ի ձեռն մի սեռի թագաւորացն եղբարց գոլով՝ ընկալուլ զզարդարումն. առ այսոցիկ տակաւին և բազում դիւթիւք վարեալք գոլով այլօքն իսկ և դեղփիական Ապողոնիւն։

Կղինիաս. Եւ՛ որպէս ոչ վայելչագոյն։

Պղատոն. Այսոցիկ արդ մեծագունիցս ակն ունելով՝ 'ի բաց թռուցեալ անցիր յայնժամ վաղվաղակի. սակայն զոր ասացաք այժմիկ՝ փոքր մասն ձերոյ ինչ տեղւոյն, սա ընդ երկուս մասունսն պատերազմելով ոչ երբեք դադարեաց մինչև ցայժմ. քանզի 'ի վերայ հասեալ մտածութիւնն, որ էր յայնժամ՝ և 'ի միասին ձայնակցեալ, անհանդուրժելի թերևս զոմն զօրութիւն ընկալաւ առ պատերազմունսն։

Կղինիաս. Եւ որպէս ոչ։

Պղատոն. Ո՞րպէս արդ և կամ ո՞ւր կորուսանի. ո՞չ արդեւք արժանի է դիտողութեան այսքան և այսպիսի 'ի միասին բազմութեանս բաղկացութիւն, և կամ ո՞չ երբեք պատահումն ապականէ զսա։

Կղինիաս. Զբաղանօք թերևս զայլ ինչ դիտելով ոք ասիցէ, եթէ ոչ զօրէնս և զքաղաքավարութիւնս տեսանիցէ՝ պահողք բարի և մեծագոյն իրողութեանց, և կամ ներհակապէս սոցունց ապականողք ամենևին, եթէ ծուլութիւն սոցունց լինիցի։

Պղատոն. Յայսոսիկ արդեւք, որպէս թուի, բարի բախտի հանդիպմամբ 'ի ներքս մտաք՝ իբրու 'ի բաւական ինչ և 'ի խնդրուածս։

Կղինիաս. Եւ յոյժ իսկ։

Պղատոն. Ո՛վ սքանչելի, մոռացեալք եղաք մարդիկ ամենայն, և այժմ իսկ մեք՝ կարծելով յամենայն ժամ բարի ինչ տեսանել իրողութիւն լինելով, և զսքանչելի" արդեւք գործելով, եթէ ոք թերևս ոչ վստահանայ բարեւք վարիլ սովաւ, ըստ յեղանակի ումամբ. բայց այժմիկ իսկ մեք՝ ո՞չ թերևս յաղագս այսորիկ ուղղապէս տրամախոհիմք և ոչ ըստ բնութեան, և առ այլսն իսկ ամենեքեան՝ ամենայն յաղագս որոյ այսպէս տրամախոհիցեմ։

Կղինիաս. Եւ ասես արդեւք զի՞նչ. և յաղագս որո՞յ ասացուք մանաւանդ ասել քեզ զբանս զայս։

Պղատոն. Ո՛վ բարի, և ես առ անձն իմ այժմ ծիծաղեցայ. քանզի 'ի բաց հայեցեալ առ այսմիկ զարդարեալ զօրութիւնս, յաղագս որոյ առնեմք զզրոյցատրութիւնս, և ամենևին գեղեցիկ գոլ թուե-

*ցաւ ինձ, և սքանչելի ստացուած պնտահեալ յելլենացւոցն. իբրու ասացի, եթէ վարիր ոք արդեւք սովաւ յայնժամ բարեւք:*

Կղինիաս. *Ո՞չ ապաքէն բարեւք, և բարի միտս ունողապէս դու զամենայն ասացեր, և մեք գովեցաք:*

Պղատոն. *Թերևս իսկ զմտաւ արդ ածեմ՝ իբրու որ տեսանիցէ մեծ ինչ և զօրութիւն բազում ունելով՝ վաղվաղակի կրէ զայս ինչ, իբրու թէ գիտիցէ ստացեալն վարիլ սովաւ. այսպիսի իսկ և այսքան ելով, զմեծամեծս արդեւք և զբազումս գործելով լինիցի բարեբաստ:*

Կղինիաս. *Ո՞չ ապաքէն ուղիղ և զայս ինչ, և կամ ո՞րպէս ասես:*

Պղատոն. *Դիտեա իսկ զի հայելով ուրուք՝ այն որ զգովասանութիւնս զայս յաղագս իւրաքանչիւրոյ եդեալ իցէ՝ ուղղաբար ասէ. նախ իսկ յաղագս այսորիկ որ այժմ ասացաւս, որպէս թէ ըստ յեղինակի ոչ հաւատացին կարգաւորեալ զզօրմն այնոքիկ՝ որոյ յայնժամ զարդարէին զնոսա ժամանակին, որպէս թերևս հանդիպէին, եթէ ոչ արդեւք բաղկացուցեալ էին զնա զգուշութեամբ: Սա իսկ պահիր միշտ ժամանակք իբրու զնոսա ազատք գոլ. և այլոց իշխանք՝ ուրոց և ախորժէին, և ամենեւին առ ամենայն մարդկան՝ ելլենացւոց 'ի բարբարոսաց գործել զոր ինչ և ցանկային ինքեանք իսկ ծնունդ իւրեանց. ո՞չ արդեւք 'ի սակս այսոցիկ ցանկային:*

Կղինիաս. *Արդար:*

Պղատոն. *Ապա ուրեմն և ոյ տեսանիցի հարստութիւն մեծ, և կամ պատիւս ազգի զանազանք, և կամ զինչ և իցէ յայսպիսեացն, եթէ ասիցէ զայսոսիկ զնոյնս առ այս ինչ հայելով ասաց, իբրու վասն այսորիկ լինելոց են սմա այսոքիկ՝ որոց ցանկայ ամենայն, և յոլովագոյնք և կամ որչափ՝ արժանագոյնք են բանի:*

Կղինիաս. *Թուի ինձ այդպէս:*

Պղատոն. *Բէր արդ. ամենեցուն մարդկան է հասարակաց մի ինչ ցանկութիւն այժմ առ 'ի բանէս յայտնելով, իբրու ինքս ասէ բանս:*

Կղինիաս. Որպիսի՞ ինչ։

Պղատոն. Այն իսկ որ ըստ անձին իւրոյ կարգաւորութեան լինիցին լեալք մանաւանդ իսկ ամենայն. ապ՚եթէ ոչ՝ սակայն մարդկայինքն։

Կղինիաս. Զի՞ իսկ։

Պղատոն. Ո՞չ ապաքէն քանզի ախորժեմք ամենեքեան միշտ զայս ինչ ելով, մանկունք իսկ և որք 'ի ծերութեան հասեալք, զոր ինչ ըղձալի մեզ մինչև իսպառ հարկաւոր։

Կղինիաս. Ո՞րպէս ոչ։

Պղատոն. Սակայն իսկ և բարեկամացն իսկ երբեք հանդերձ մեւք զայս ինչ ըղձամք, զոր ինչ և նոքա իսկ անձանց իւրեանց։

Կղինիաս. Զո՞ր ինչ։

Պղատոն. Սիրելի՞ իսկ որդի հօր առն գոլով մանուկ։

Կղինիաս. Ո՞րպէս ոչ։

Պղատոն. Սակայն և որոց մանուկն ըղձայ զի լինիցի անձին իւրոյ, բազում անգամ հայրն 'ի բաց ըղձայ թերևս առ աստուածքն, ոչ լինել ըստ որդւոյն ըղձից։

Կղինիաս. Յորժամ իմա գոլով և տակաւին համբակ՝ և աղօթէ իսկ, զա՞յն ասես։

Պղատոն. Եւ յորժամ հայրն ծեր գոլով և յոյժ յանդուգն, ոչինչ 'ի բարեացն և յարդարագունիցն գիտելով՝ աղօթս արասցէ մանաւանդ յօժարապէս առ ախտք գոլով եղբայրագոյնք այնոցիկ որ եղեն Թեսէոսի, առ դժուարաբախտապէս առ վախճանեալն Իպպոլիտոսն, և մանուկն գիտիցէ. յայնժամ ո՞րպէս կարծես զմանուկն ըղձալ յաղագս հօրն։

Կղինիաս. Իմանամ զոր ասեսդ. քանզի թուիս ինձ ասել, իբրու ոչ է այս ըղձալի և ոչ ցանկալի, զի հետևեսցի ամենայն ոք իւրոյ խորհրդոցն. և զխորհուրդն ոչ մանաւանդ յաղթահարեալ իւրոյ խոհեմութեանն. և այս իսկ և քաղաքի, և միոյ 'ի մէնջ իւրաքանչիւրում է ըղձալն, և փութալն զի ունիցի միտք։

Պղատոն. Այո։ Եւ քաղաքական իսկ առն և օրինա-

դրի՝ առ այսոսիկ միշտ պարտ է հայիլ, և դնել զկարգաւորութիւնքն օրինացն։ Իբրու ես իսկ յիշեցի արդ՝ և ձեզ վերստին յիշեցուցանեմ ըստ սկզբանն, եթէ զասացեալքն յիշեսցուք։ Զի ոմն յայնցանէ նոցունց էր հրաման, իբրու պարտ իցէ բարի օրինադրին զամենայն օրէնսն 'ի սակս պատերազմի դնել. և ես զինչ ասէի այսպէս, եթէ այս իսկ առ մի առաքինութիւն ունի զտեսութիւն, չորից ելոց սոցունց. բայց պարտ է զի առ ամենեսեան 'ի սոսա հայեսցի, կամ մանաւանդ՝ առաջինն և ամենայն առաքինութեանն թագաւորականն՝ որ է խոհեմութիւնն, և միտք և կարծիս հանդերձ փափագանօք և ցանկութեամբ հետևելով սոցունց։ Եհաս արդ դարձեալ բանս 'ի նոյն. և ես որ ասեմս այժմ, ասեմ դարձեալ զայնոսիկ զոր ասէի յայնժամ եթէ ախորժիցէք իբրու խաղալով, կամ իբրու ճեպելով. և ասեմ արդ՝ զի ըղձմամբ վարիլն սխալական է այնմիկ՝ որ միտք ոչ է ստացեալ, այլ ներհակացն իւրոցն խորհրդոց՝ պարտ է լինել առ սմա փութով։ Արդ եթէ կամիցիք զիս զի եդից, եդից այսպէս. քանզի յոյժ ունիմ այժմ գտանել զձեզ բանիս հետևողք, զոր սակաւ ինչ յառաջագոյն եդաք յաղագս թագաւորացն ապականութեան. և բոլոր տրամախոհութեանն, ոչ զանգիտութիւն գոլով պատճառին, և ոչ զի զպատերազմի իրս ոչ գիտէին իշխանքն իսկ, և այնոքիկ որոց պարտ է ընդ իշխանութեամբ լինել, բայց այլով ամենայն չարութեամբ եւն ապականեալ, և մանաւանդ մեծագունիւն առ մարդկայինն իրողութիւնս՝ անուսումնութեամբն։ Այսոքիկ արդ՝ իբրու այսպէս եղև առ այնոքիկ որ յայնժամ էին, և այժմ թերևս լինի, և 'ի յապառնի ժամանակն ոչ այլաբար պատահիցի, եթէ կամիցիք փորձեցից՝ գալով բանիւս և ըստ կարգի, և վերստին գտանել իսկ և ձեզ ըստ զօր յայտնել՝ իբրու բարեկամաց գոլով։

Կղինիաս. Բանիւ իսկ զքեզ այսուհետև գովելով, ով սիրելի, յոյժ է ծանրագոյն. բայց գործով արագապէս գովեսցուք, քանզի յօժարապէս ասացելոցդ հետևեսցուք. որով իսկ որ ազատն իցէ յամենայն

ախտէ գովելով, և ոչ գովել մանաւանդ՝ յայտնի իցէ։

Պղատոն. Քաջ ասացեր, ո՛վ Կլինիա, և արասցուք զայդոքիկ որ ասացերդ։

Կղինիաս. Լինիցին այսոքիկ եթէ կամեսցի աստուած. ասա միայն։

Պղատոն. Ասասցուք այժմ, ըստ ճանապարհաւս գնալով, զմնացորդս բանին զմեծ անուսումնութիւնն յայնժամ՝ զայնմիկ զզօրութիւնն կորուսանել, և այժմ զնոյնս իսկ բնաւորեալ և գործել. իբրու զի օրինադրին, եթէ այսպէս ունիցի, պարտ է ջանալ քաղաքացն խոհեմութիւն որչափ հնար իցէ նախախնամել, և զանխոհեմութիւնն 'ի բաց բառնալ։

Կղինիաս. Յայտ է։

Պղատոն. Ո՞ր էր արդ մեծագոյն իրաւապէս թերևս ասացի անուսումնութիւնն գիտիցէ՞ք. եթէ հանդերձ իմով և ձեզ թուեսցի՝ ասելով ես իսկ զայսպիսիս դնեմ։

Կղինիաս. Զո՞ր։

Պղատոն. Զայն իսկ զի յորժամ թուեսցի ինչ բարի գոլ կամ գեղեցիկ՝ ոչ սիրեսցի զայն ինչ, այլ ատեսցի. և զչարն իսկ և զանիրաւ գոլ թուեցեալն՝ սիրէ նա և համբուրեսցէ։ Զայսոքիկ իսկ զերկբայութիւնս տրտմութեան և հեշտութեան՝ ըստ բանի կարծեացն ասացից ես գոլ ծայրագոյնն յանուսումնութեանց և զմեծագոյնն, քանզի տրտմեալն և հեշտացեալն նորին այն է, զոր ինչ ամբոխ իսկ և բազմութիւն քաղաքի է։ Արդ յորժամ մակացութեամբ և կարծեօք կամ բանիւ հակակայի ընդ բնութեամբ արքունականն հոգին, զայս ես անխոհեմութիւն առասեմ. և քաղաքի՝ յորժամ իշխանացն և օրինացն՝ բազմութիւնն ոչ հաւանեսցի, նոյնպէս է։ Եւ արդ իմոյ առն հոգւոյ, յորժամ բազում գեղեցիկ բանք իցեն, և ոչինչ յաճախագոյն գործիցեն, այլ զամենայն ինչ սոցունց ներհականք, զայսոսիկ ամենայն անուսումնութիւնք՝ սխալականք յոյժ է դիցես քաղաքի, և միոյ իւրաքանչիւրոց քաղաքացեաց, այլ ոչ գոյացուցչացն, եթէ կամիմք իմանալ՝ ո՛վ սիրելի զոր ասեմս։

Կղինիաս. Իմանամք, ով սիրելի, և ներեմք այդոցիկ որ ասեսդ:

Պղատոն. Այս իսկ այսուհետև այսպէս կացցէ և մնասցէ՝ թուեցեալ իսկ և ասացեալ, իբրու զի այնոցիկ՝ որ զայսոսիկ ուսանին, 'ի քաղաքացեացն՝ ոչ է պարտ հրամայել ինչ յայնցանէ որ հուպ են յիշխանութիւն: Այլ իբրու անուսումնականք՝ նախատել զոսա պարտ է, թէպէտ և յոյժ իցեն բանականագոյն, և ամենևին պաճուճեալք, և զամենայն՝ որչափ առ 'ի յերագութիւն հոգւոյ իցեն բնաւորեալ, առ ամենայն ունիցին աշխատութիւն: Իսկ զայնոսիկ որ առ այսոցիկ ներհակապէս ունիցին, իբրու իմաստունք անուանել պարտ է. թէպէտ իբրու ասելի է բանս՝ ոչ գրոյ իցեն մակացողք, և ոչ այլոյ ուրուք գործառնութեան. և զիշխանութիւնս իբրու խոհեմականաց՝ սոցա տալ պարտ է. քանզի որպէս, ով սիրելիք, առանց միաբանութեան առ խոհեմականութիւնն լինիցի ինչ արդեւք մինչև ցփոքրագունի ումեմն տեսակի, ոչ գոյ այլ գեղեցկագոյն և մեծագոյնն միաբանութեանցն. մեծագոյն իրաւապէս իսկ ասացի իմաստութիւն, որոյ հաղորդ է իսկ այն որ ըստ բանի կենցաղավարի. իսկ այն որ յայսմանէ պակասեալ իցէ, ապականիչ տան և քաղաքի, ոչ երբեք փրկիչ այլ ներհակապէս, անուսումնական գոլով՝ յայսոսիկ յամենայն ժամ երևեսցի: Զայսոսիկ որպէս ասացաք՝ ասացեալք, դիցեն այսպէս:

Կղինիաս. Եւ կացցեն արդ:

Պղատոն. Իշխանք արդ և որք ընդ իշխանութեամբ են՝ հարկ է գոլ 'ի քաղաքիս:

Կղինիաս. Զիա՞րդ ոչ:

Պղատոն. Իցեն. արդ իշխանութիւնք և իշխեցեալք որպիսիք, և որչափ իցեն 'ի քաղաքս մեծագոյնք և 'ի փոքունք. նոյնպէս և 'ի տունս՝ ոչ արդ մի իսկ զհօր և զմօր, և ամենևին ծնողացն՝ ծննդոցն իշխելով, ուղղագո՞յն իցէ իշխանութիւն յամենայն տեղի:

Կղինիաս. Եւ մանաւանդ արդար:

Պղատոն. Եւ այսմիկ հետևի զի ազնուականքն՝

անարեացն իշխեսցեն։ Եւ երրորդ ևս սոցունց հետևի, երիցագունիցն պարտ է իշխել, և համբակագունիցն ընդ իշխանութեամբ լինել. և չորրորդ՝ զի ծառայքն ընդ իշխանութեամբ լինիցին, և տերքն իշխեսցեն։

Կղինիաս. Է այդպէս։

Պղատոն. Եւ հինգերորդն՝ զի վեհագոյնքն իշխեն, և վատթարագոյնքն ընդ իշխանութեամբ իցեն։

Կղինիաս. Յոյժ իսկ հարկաւոր իշխանութիւն ասացեր արդ։

Պղատոն. Եւ յոլովագոյն առ ամենայն կենդանեաց այս իսկ գտանիցի ըստ բնութեան, իբրու Թեբեացին երբեմն ասէ Պինդարոս։ Եւ մեծագոյն իսկ իշխանութեանց՝ վեցերորդ արդեւք լինիցի, զի հետեւիցի անմակացողն՝ ընդ հրամանաւ գոլով և խոհեմականն առաջնորդեսցէ և իշխեսցէ։ Եւ զայս մանաւանդ, ով իմաստնագոյնդ Պինդարէ, գրեթէ ոչ օտարոտի ես 'ի բնութենէ ասեմ իսկ լինել, այլ ըստ բնութեան օրինացն իշխանութեանն կամաւոր և ոչ բռնութեամբ բնաւորեալ։

Կղինիաս. Ուղղապէս ասես։

Պղատոն. Իսկ աստուածասէր և բարեբախտ զոմն ասելով, եւթներորդ իշխանութիւն առ 'ի վիճակի ումեմն հասուցանեմք, և որոյ հասանին իշխել, և որ վիճակահարլին 'ի սմանէ, ընդ իշխանութեամբ անկցին. և այս իսկ է արդարութիւն որով իցէ ոք իրաւագոյն։

Կղինիաս. Ճշմարտապէս իսկ ասես։

Պղատոն. Տեսանես արդ, քանզի ասասցուք, ով օրէնսդիր, առ ոմն խաղալով յայնցանէ որ առ օրէնսդրութիւնն հասանեն դիւրապէս, որչափ են առ իշխանս արժանաւորութիւն, և որ ինչ բնաւորեալ են առ միմեանս ներհակապէս. զի այժմ իսկ աղբիւր վիճաբանութեան մեք գտաք, զոր քեզ պարտ է իսկ բժշկել։ Բայց նախ՝ հանդերձ մեւք քննեա, թէ որպէս և զինչ առ այսոքիկ սխալելով՝ թագաւորքն որ 'ի յԱրգոս էին և 'ի Մեսսինէ, զանձինս՝ միանգամայն զելլենացւոցն զօրութիւնն՝ սքանչելի գոլով 'ի յայնմ ժամանակին, ապականեցին. ոչ արդեւք տգէտք գոլով

ուղղապէս ասացելոյն առ 'ի յԵսիդոսէ, եթէ «կէսն բազում անգամ քան զբոլորն յոլովագոյն լինիցի». յորժամ իցէ զբոլորն իսկ առնուլն՝ տուժական, և զկէսն՝ չափաւոր. յայնժամ չափաւորն քան զանչափն յոլովագոյն վարկանի և վեհագոյն գոլ, և միւսն վատթարագոյն։

Կղինիաս. Ուղղապէս իսկ։

Պղատոն. Ո՞րպէս արդ կարծեսցուք. առ թագաւորսն զայս ինչ լինելով նախ յամենայն ժամ ապականիլ՝ թէ առ ժողովուրդսն։

Կղինիաս. Իսկ վայելչագոյնն և յոլովագոյնն՝ թագաւորացն ցուցանէ գոլ զախտս զայս իսկ, ամբարտաւանաբար կալով վասն փափկութեան։

Պղատոն. Ո՞չ ապաքէն յայտ է, իբրու նախ զայս իսկ ունէին թագաւորքն որ յայնժամ էին՝ զյաղթահարելն զեդեալ օրէնքն. և զոր բանիւ և երդմամբ գովեցին՝ առ այնոցիկ ոչ միաբանեցան։ Այլ երկբայութիւն իբրու մեք ասեմքս գոլով անուսումնութիւն՝ մեծագոյն թուիր նոցա իմաստութիւն, և զամենայն զայնոսիկ՝ ծուլութիւնն դառն և աներաժշտականութիւն ապականեաց։

Կղինիաս. Թուի ինձ այդպէս։

Պղատոն. Իցէ արդ։ Եւ զի՞նչ յօրինադրէն պարտ էր յայնժամ խորշել յաղագս այսմիկ լինելութեան կրիցս՝ եդեալ զօրէնսն։ Արդ յաստուածսն երդնուլով, այժմ իսկ ոչ է իմաստուն զայս ինչ գիտելն և ոչ ասելն դժուարին. բայց եթէ յառաջագոյն կանխաւ գիտացեալ, յայնժամ իմաստնագոյն էր թերևս քան զմեզ կանխագէտն։

Մեգիլոս. Զո՞րպիսի ինչ ասես[1]։

Պղատոն. Առ եղեալն առ ձեզ, ով Մեգիլէ, է այժմ նայիլ և գիտենալ, և ծանուցեալ ասել դիւրապէս զոր ինչ պարտ էր յայնժամ լինել։

Մեգիլոս. Հաւաստագոյն ասա։

Պղատոն. Հաւաստագոյնն թերևս իցէ այս ինչ։

1 Յօրինակի մերում Կղինիայ ընծային բանքս և հետևորդքն. ուղղեցաք ըստ յոյն բնագրին։

Մեգիլլոս. Որպիսի՞ ինչ։

Պղատոն. Եթէ ոք մեծագոյն տայցէ նուազագունիցն զօրութիւն՝ չափաւորն 'ի բաց թողեալ։ Իսկ նաւաց առագաստ, և մարմնոց կերակուր կամ սնունդ, և անձանց իշխանութիւնք[1], վերստին դրդուեցուցանէ երբեք զամենայն, և ամբարհաւաճելով՝ զոմանս 'ի խօթութիւն վանէ, և զմիւսս 'ի ծնողաց անարգանս և յապիրատութիւնս։ Զի՞նչ արդ երբեք ասեմ իսկ զայսպիսի իրէս. իբրու ոչ է, ով արք սիրելիք, մահկանացու անձին բնութիւն, որ կարէ ոք զմեծագոյնն մարդկան բերել իշխանութիւն, նոր իսկ և առանց քննութեան գոլով. իբրու ոչ մեծագոյն ախտիւն անխոհեմութեամբն լցեալ տրամախոհութիւնն սորա ընկալցի զատելութիւն առ 'ի հուպ բարեկամացն, որ և լինելով վաղվաղակի ապականեաց զսա և աներևան արար զամենայն զօրութիւն նորին։ Յայսմանէ արդ խորշիլն գիտելով զչափաւորութիւնն՝ մեծ օրէնսդրացն, որպէս և յայնժամ լինելով, այժմ առ մեզ կասկածանս ունի չափաւորութեան, այս ինչ թուի ինձ գոլ։

Մեգիլլոս. Որպիսի՞ ինչ։

Պղատոն. Աստուած գոլ զոմն որ մատակարարէր զձեզ, որ զհանդերձեալսն կանխաւ տեսեալ երկաւոր 'ի ձեզ բուսոյց 'ի միածնէ զթագաւորացն լինելութիւն, 'ի չափաւորն մանաւանդ ամփոփեաց։ Եւ յետ այսորիկ տակաւին բնութիւն ոմն մարդկային ընդ աստուածայնոյ խառնեալ զօրութիւն, տեսանելով զձեր իշխանութիւնն վիրաւորեալ ամբարհաւաճութեամբ, տակաւին խառնէ զայն՝ որ ըստ ծերութեանն ողջախոհ զօրութիւնն է ընդ նահատակութեան, յուժգին զօրութեան զութ և քսան ծերիցն՝ հաւասարաթիւ 'ի մեծագոյնսն թագաւորացն արարեալ զօրութեան։ Եւ երրորդն ձեր փրկիչ տակաւին՝ յանդրգնելով և տրտմելով զիշխանութիւնն ձեր տեսեալ, իբրու դանդանաւանդ ինչ արկանէր սմա զդիտողացն զօրութիւնն, հուպ բերելով զսա զօրութեանն այնմիկ՝

1 Այս է՝ ի վեր քան զպատշաճականն և զկարևոր։

որ ընկալեալ էր վիճակաւ։ Եւ ըստ այսմիկ բանիս՝ թագաւորութիւնն առ ձեզ այնոքիւք որովք պարտ էր զուգախառնեալ և չափաւորութիւն ունելով, սա իսկ փրկիր՝ և փրկութեան այլոց եղև պատճառ։ Քանզի յաւուրսն Տիմենոսի և Կրեսփոնտոսի՝ և այնոցիկ օրինադրացն՝ որք և էին թերևս օրինադրողք, ոչ Արիստոդիմոսի մասն մնացեալն էր թերևս, քանզի ոչ բաւականապէս օրինադրութեան հմուտք էին. զի գրեթէ ոչ երբէք զմտաւ ածին երդմամբ 'ի չափաւորութիւն ածել զանձն համբակի ընկալեալ զիշխանութիւնն, յորմէ հնար էր լինել հարստահարութիւն։ Բայց այժմ աստուած եցոյց, որպէս պարտն էր, և պարտ է արդ ումեմն իշխանութիւն գոլով յաւէտագոյն լինել. և ոմն առ 'ի մէնջ ճանաչիլ զայսոսիկ, որպէս ասացաք յառաջագոյն, այժմ իսկ լեալ, ոչ ինչ իմաստուն է, յարացուցով տեսանելով՝ եղեալ զսա ոչ ինչ դժուարին։ Բայց եթէ էր ոք յառաջագոյն տեսանելով յայնժամ զայսոսիկ՝ և կարող գոլով չափաւոր առնել զիշխանութիւնն, և յերից մին գործել, իմացեալքն թերևս յայնժամ գեղեցկագոյն էին՝ և զամենեսեան կեցուցեալ էր, և ոչ երբէք պարսկականն 'ի վերայ Ելլադայ, և ոչ այլ ոք, և ոչ մի թերևս դիմեալ էր զօրութիւն՝ արհամարհելով իբրու գոլով մեր սուղ ինչ արժան իսկ։

Կղինիաս. Ճշմարիտ ասես։

Պղատոն. Եւ ամօթալի արդ վանեցին զսոսա, ո՛վ Կլինիա։ Եւ ամօթալիս որ ասեմս, ոչ եթէ ո՛չ յաղթելով իսկ այնոքիւք՝ որ առ երկրաւ և ծովու գեղեցիկ մարտութեանց ընկալան յաղթութիւնս, այլ զոր ասեմ ամօթալի յայնժամ գոլն՝ զայս ինչ ասեմ, զի նախ իսկ այնոցիկ քաղաքացն երիս գոլով զմինն յաղագս Ելլադիայ վանել[1]. և զերկուսն չարաչար այսպէս գոլ ապականեալս, իբրու մինն իսկ զԼակեդոմոն արգելոյր վանել զսա՝ պատերազմելով ընդ սմա ըստ յաղթութեան, և միւսն նախկի գոլով առ այնոսիկ ժամանակօքն, որ առ բաշխմամբն էին. և կամ առ

1 Յոյնն. Մին և եթ հասանէր յօգնականութիւն Ելլադայ։

Արգոսի՝ աղաչելով 'ի բաց հալածելով զբարբարոսն, ոչ լուաւ և ոչ վանեաց զնա։ Եւ բազում ասելով որք զլեալսն յայնժամ առ այնմիկ պատերազմին, ոչ բարեձևութեամբ ջատագով լինիցի Ելլադայ. այլ եթէ ոչ յայնժամ աթենացւոցն և լակեդոմոնացւոցն հասարակաց խորհուրդն վանեալ էր զ'ի վերայ հասեալն ծառայութիւն, գրեթէ աւասիկ ամենայն ազգքն ելլենացւոցն ընդ միմեանս շփոթաբար խառնեալ էին, և բարբարոսք ընդ ելլենացւոց, և ելլենականքն ընդ բարբարոսքն, որպէս այնոքիկ որք 'ի պարսից են այժմ բռնադատեալք՝ զանազանելով իսկ և շփոթելով չարաչար ցրուեալս առ 'ի բնակութիւնս։ Զայսոսիկ, ով Կլինիա և Մեգիլէ, ունիմք սաստել քաղաքականացն և օրինադրացն որ յայնժամ էին և այժմ։ Զի զպատճառս նոցա վերստին խնդրելով գտանիցեմք թէ զինչ առ այնոցիկ պարտ էր նոցա այլ գործել. իբրու իսկ զայս ինչ ասացաք, զի ուրեմն ոչ է պարտ մեծ իշխանութիւնս և ոչ խառնս օրինադրել. տրամախորհելով զայս ինչ՝ զի քաղաքի ազատ գոլ պարտ է և խոհեմական, և ինքեան բարեկամ, և պարտ է օրինադրին առ այսոքիկ հայելով օրինադրել։ Բայց ոչ սքանչանամք, եթէ բազում անգամ աւասիկ առաջի եդեալ ասացաք, եթէ առ այսոսիկ հայելով պարտ է օրինադրին օրինադրել. և առաջի եդեալքն ոչ առ այսոքիկ երևին մեզ յամենայն ժամ։ Այլ համեմատել պարտ է՝ յորժամ առ ողջախոհելն ասեմք պարտ գոլ հայիլ և առ խոհեմութիւնն և բարեկամութիւնն. իբրու ոչ այլ ումն իցէ դիտաւորութիւնս այս, այլ նոյնս։ Եւ այլ բազումք իսկ և այսպիսի բանք եթէ լինիցին, ոչ զմեզ խռովեցուցանել։

Կղինիաս. Փորձ արասցուք առնել այսպէս՝ վերստին առեալք զբանս։ Եւ այժմ արդ զոր ինչ յաղագս վասն բարեկամութեանն և խոհեմութեանն և ազատութեանն, զոր ինչ ախորժելով հանդերձեալ ես ասել պարտ գոլ դիտողութիւն առնել օրինադրին, ասա։

Պղատոն. Լուր արդ այժմէն։ Քաղաքավարութեանց՝ երկու ոմանք իբրու մարք՝ առ 'ի յորոց զայլսն լինել

տանելով ոք՝ Թերևս ուղղապէս ասիցէ. և զմինն իսկ առասեմք միփշխանութիւն ուղղապէս, և զմիւսն իսկ հրապարակակալութիւն¹: Եւ զմինն իսկ ունել զանուն պարսից, և զմիւսն՝ մեք. և այլքն՝ գրեթէ ամենայն, որպէս ասացի, 'ի սոյանէ են պաճուճեալ: Պարտ է արդ և հարկաւոր՝ երկոցունցս հաղորդիլ սոցունց, եթէ ազատութիւն իսկ և բարեկամութիւն խոհեմութեամբ իցէ, զոր և կամի բանս հրամայել մեզ տանելով՝ իբրու ոչ երբեք 'ի սոցունց անմասն լինելով քաղաք՝ հնարաւոր լինի բարեւք քաղաքավարել:

Կղինիաս. Եւ ո՞րպէս արդ:

Պղատոն. Իսկ մին զմիփշխանականն, և միւսն զազատն սիրելով մեծապէս քան զոր պարտն էր միայն՝ ոչ և մինն 'ի սոյանէ ստանայ զչափաւորութիւնն սոցունց, բայց ձեր իսկ՝ որ է լակոնականն, և կրետականն յաւէտաբար: Իսկ աթենացիքն և պարսքն 'ի հնումն իսկ այսպէս, բայց այժմ նուազագոյն, և զպատճառսն պատմեսցուք եթէ կամիցիք:

Կղինիաս. Այդպէս, եթէ հանդերձեալ եմք երբէք զառաջի եդեալս մեզ կատարել:

Պղատոն. Եւ լուիցուք արդ. զի պարսք յորժամ զչափաւորն յաւէտագոյն քան զծառայութիւնն իսկ և զազատութիւնն ունէին առ Կիւրոսիւ, նախ իսկ ազատք եղեն, և ապա այլոց բազմաց տեարք. քանզի ազատութեան իշխանացն հաղորդեցուցանելով զիշխեալսն, և առ հաւասարութիւնն ածելով մանաւանդ՝ բարեկամք էին զինուորքն զօրավարացն, և յօժարապէս զանձինս իւրեանց մատնէին 'ի նահատակութիւնս. և եթէ ոք խոհեմական էր 'ի սոցանէ, և խորհրդածու լինել հնարաւոր, ոչ նախանձոտ գոլով Թագաւորին, այլ շնորհելով զհամարձակութիւնն և պատուելով զայնոսիկ որ կարողք են լինել ինչ խորհրդածուք հասարակաց, զխոհեմութեանն առաջի ամենեցուն շնորհեցեր զօրութիւն, և զամենայն ինչ յայնժամ հատուցանէր սոցա վասն ազա-

¹ Յոյնն δημοκρατία, զոր հինք Թարգմանիչն նաև ընկերահաշտութիւն. ամբոխաժողովրդութիւն:

տութեան իսկ և բարեկամութեանն և մտացն հաղորդութեան։

Կղինիաս. Թուի ինձ ասասցեալքս այդպէս լինել։

Պղատոն. Եւ արդ յորժամ կորեաւ այս յաւուրսն Կամբիւսոսի, և դարձեալ յաւուրսն Դարեհի գրեթէ գտաւ, կամիք եթէ իբրու դիւթութիւն ինչ զմտաւ ածեալ վարեսցուք սովաւ[1]։

Կղինիաս. Բերէ իսկ մեզ զխնդրուածս այս՝ մինչ 'ի վերայ որոյ դիմեալք եմք։

Պղատոն. Պատմեսցի արդ ես յաղագս Կիւրոսի, այլօք ամենայնիւ զօրավար բարի գոլ զնա և քաղաքասէր. բայց զուղիղ խրատէ ամենևին բուռն ոչ հարեալ, և տնօրէնութեան ոչ ինչ մտօք լեալ նայեցող։

Կղինիաս. Ո՞րպէս զայսպիսիս ասեմք։

Պղատոն. Թուի սա 'ի մանկութենէ զինուորիլ յամենայն կեանս իւր. և զմանկունսն աւանդեալ 'ի կանայսն՝ զի սնուցանիցեն. և սոքա իբրու բարեբաստս զմանկունսն 'ի մանկութենէ անտի վաղվաղակի երանելիք լեալք և ոչ միոյ իրի կարօտացեալք, սնուցանէին արգելլով զնոսա իբրու բարեբանապէս բարեբաստս գոլով. ոչ անձանց իւրեանց հակակայիլ յոչ և մի իրս, գովել հարկէին զամենեսեանն զառ 'ի նոցանէ ասացեալն և կամ գործեալն, և սնուցին այսպիսի ոմանք զնոսա։

Կղինիաս. Գեղեցիկ սնունդ ասացեր։

Պղատոն. Ցիդական[2] իսկ՝ արքայուհի կանանցն նորոգոյն եղելոց փարթամս, և անապատի յարանց վասն ոչ պարապ էլոյ սոցա 'ի պատերազմացն, և 'ի բազում վշտացն՝ զմանկունսն սնուցանելով[3]։

Կղինիաս. Ունի իսկ նմանութիւն բանս։

Պղատոն. Բայց հայրն սոցա՝ հօտք և ոչխարք և երամք բազում արանց իսկ և այլոց ստանայր. բայց

1 Յոյնն. Կամիք զի յանդիման արարից զկարծիս մտաց իմոց և զերկմտութիւն՝ զխնդրոյն զորմէ բանքս են։

2 Յօրինակին հէփական. ուղղեցաք ըստ յունին։

3 Այս է՝ առ նուազութեան արանց՝ զի չունէին նոքա պարապ 'ի պատերազմաց և 'ի վտանգաց։

զոսա որոյ հանդերձեալ էր աւանդել՝ տգիտանայր զհայրենի արհեստքն, ոչ հրահանգելով սոցա զայն որ էր իսկ պարսկական՝ հովիւք գոլով պարսից 'ի դժուարին գաւառի հարցն և խիստագունի, որ բաւական էր հովիւք կազմել յաւէտ զօրաւորք, և հնարաւորեալք արտաքոյ շրջել և բնակիլ, առնելով զհըսկումն, և զինուոր իսկ եթէ պէտս լինէր այնպիսոյ։ Սակայն ապականեալ հրահանգ ունելով 'ի ձեռն ասացեալ բարի պատահմանն, զպարսկականն արհամարհելով, առ 'ի կանանց և 'ի ներքինեաց խրատելով զորդիս սորա։ Ուստի և եղեն որպէս և պարտ էր վայելչագոյն սոցա լինել սնուցեալք և վարժեալք՝ անվարժական սնընդեամբն. և ըմբռնեալք զիշխանութիւնն մանկունքն յետ վախճանելոյն Կիւրոսի, փափկութեամբ և անհամութեամբ լի գոլով, նախ իսկ մինն զմիւսն հարստահարելով 'ի բաց սպանանէր ընդ հարստութիւնն դժուարացեալք, և յետ այսորիկ ինքն մոլեալ 'ի ձեռն արբեցութեան և անվարժութեան՝ զիշխանութիւնն կորուսանէ, 'ի ձեռս գամրաց և ներքինոյն այնմիկ որ յայնժամ արհամարհէր զԿամբիւսսի յիմարութիւնն։

Կղինիաս. Այնն այսուքիկ իսկ. և նման են գրեթէ այսպէս են լեալ[1]։

Պղատոն. Եւ դարձեալ իսկ 'ի պարսս եկեալ իշխանութիւնն 'ի ձեռն Դարեհի, և այլոց եւթանցն՝ որպէս ասի երբեք։

Կղինիաս. Զինչ։

Պղատոն. Տեսանեմք արդ՝ հետևելով բանիս, զի Դարեհ թագաւորի որդի ոչ էր, և փափուկ սնընդեամբ ոչ էր խնենշացեալ. և հասեալ իսկ յիշխանութիւն, և ըմբռնեալ զսա եւթներորդ գոլով, բաժանեաց եւթն մասունս հատանելով, յորոց և այժմ ևս փոքունք նշմարանք մնացեալ են. և օրէնս դնելով արժանի համարիր բնակիլ հասարակաց՝ հաւասարութիւն 'ի ներքս բերելով՝ և զԿիւրոսի հարկն զոր խոստացաւ պարսից՝ ներքոյ օրինացն դնէր, սիրելու-

1 Նման էն ուղղորդարանութիւն է 'ի հայումս։

թիւն և հաղորդութիւն ամենայն պարսից պարգևելով, ընչիւք և պարգևօք զպարսից ամբոխն առ ինքն ձգելով։ Այսուհետև զօրացն բարեմտութիւն ունելով առ նմա, ստացաւ գաւառք ոչ սակաւք յայնցանէ որ կորուսեալ էր Կիւրոս։ Իսկ յետ Դարեհի՝ այնմեկ որ թագաւորական և փափկացեալ սննդեամբն վարժեցաւ Քսերքսէս. վասն որոյ ասեն թերևս արդարագոյն է՝ թէ ով Դարեհ, որ զԿիւրոսի չարութիւնն ոչ ուսար, սակայն ուսուցեր զՔսերքսէս նոյն ախորժակօքն, որովք Կիւրոս իսկ զԿամբիւսոս. և սա իբրու նոյն վարժմանցն ծնունդ գոլով՝ զնմանսն Կամբիւսոսի կատարեաց ախտքն։ Եւ գրեթէ այսչափ ժամանակաւ թագաւոր 'ի Պարսս՝ ոչ ևս մեծ եղև ճշմարտապէս, բայց անուամբ միայն. և պատճառն սորա, որպէս իմ բանս է, պատահումն ոչ է բարեւք այլ չարաչար կենցաղ, որով զանազանապէս փարթամացն և բռնաւորացն մանկունքն բազում անգամ կենցաղավարին։ Քանզի ոչ երբեք լինիցի՝ մանուկ գոլով և այր ծեր՝ յայսմ սննդենէ առաքինութեան տարբերութիւն ընկալեալ ինչ։ Արդ զոր ասեմքս օրինադրին ստուգութեամբ քննել պարտ է՝ և մեզ իսկ առ հասեալ ժամս իրաւացի է։ Իսկ, ով լակոդոմնացիք, զայս ինչ ձերոյ քաղաքին բացատրել՝ որ տնանկութեան և փարթամութեան, և ռամկութեան և թագաւորութեան ոչ զանազանելով՝ զպատիւ ինչ և զսնունդ բաշխէ, զորս ոչ 'ի սկզբանէ ձեզ աստուածայինն առ 'ի յաստուծոյ ումեմն աղդեաց. քանզի ոչ է պարտ 'ի քաղաքի գերունակութիւնք գոլ պատուոյ, թէ ով է ճոխութեամբ տարբերեալ, և ոչ թէ ով է արագ կամ գեղեցիկ և կամ զօրաւոր, առանց առաքինութեամբ, և ոչ առաքինութեամբ յորմէ թերևս ողջախոհութիւնն հեռացեալ իցէ։

Կղինիաս. Ո՞րպէս զայս ասես, ով սիրելի։

Պղատոն. Արիութիւն մասն մի է առաքինութեան։

Կղինիաս. Արդար։

Պղատոն. Դատեա արդ դու լսելով զբանս, եթէ ընդունիցես բնակակից զոմն և կամ դրացի, որ յոյժ գոյ արիագոյն, և ոչ իցէ ողջախոհ, այլ զեխ։

Կղինիաս. Ա՛յլ ինչ բարեբանեա[1]։

Պղատոն. Եւ եթէ արհեստաւոր իսկ է, և ամենայնի հմուտ և իմաստուն, բայց ապիրատ, քեզ զի՞նչ թուեսցի։

Կղինիաս. Ոչ ինչ բարի։

Պղատոն. Այլ սակայն արդարութիւն առանց ողջախոհութեան ոչ բնաւորի։

Կղինիաս. Եւ ո՞րպէս։

Պղատոն. Եւ ո՞չ այն իսկ զոր իմաստուն մեք այժմ առաջի եդաք, որ զհեշտութիւնքն և զտրտմութիւնքն ստացեալ իցէ, ձայնակիցք և ուղիղ բանիցն հետևողք։

Կղինիաս. Ոչ իսկ։

Պղատոն. Տակաւին արդ զայս իսկ քննեսցուք 'ի սակս պատուասիրութեանն՝ որ 'ի քաղաքս լինին, թէ ո՞ր ուղղապէս իսկ, և որ ոչ լինին յամենայն ժամ։

Կղինիաս. Զորպիսի՞ ինչ ասես։

Պղատոն. Ողջախոհութիւն՝ առանց այլ ամենայն առաքինութեան՝ ներ անձին ոմամբ միացեալ, պատուակա՞ն է եթէ անպատիւ լինիցի արդեւք ըստ իրաւանց։

Կղինիաս. Ոչ ունիմ թէ որպէս ասես։

Պղատոն. Եւ ասացեր իսկ չափաւորապէս. քանզի ասելով յայնցանէ ինչ որ հարցանէին, օտարոտի 'ի դաշանցն թուեսցիս ինձ բարբառել։

Կղինիաս. Բարեւք այժմ թուի ինձ ասացեալքդ։

Պղատոն. Իցէ. արդ և յաւելումք յաղագս պատուոյ և անպատուութեան, ոչ բանի՝ այլ անբան լաւութեան ումեմն մանաւանդ արժանանայ։

Կղինիաս. Երեւիս ինձ զողջախոհութենէ ասել։

Պղատոն. Այո, զայնմէ իսկ որ քան զայլսն յաճախագոյն է մեզ օգտակար; յաւելուածաւն մանաւանդ թերեւս պատուելով՝ ուղղապէս պատուեսցի, և երկրորդն իսկ երկրորդաբար. և այսպէս իսկ ըստ բանին որ 'ի կարգին է՝ զպատիւսն որ են 'ի կարգին

1 Յուն. Εύφημει.

հատուցանելով իւրաքանչիւրոյ, ուղղապէս թերեւս հատուցէ։

Կղինիաս. Ունի այդ այդպէս։

Պղատոն. Զիարդ ոչ օրինադրի և զայսոսիկ ասասցուք իսկ գոլով բաշխել։

Կղինիաս. Եւ յաւէտ իսկ։

Պղատոն. Կամիս արդ զի զամենայն առ իւրաքանչիւրոյ գործ և ըստ մանրութեան սմա տացուք բաշխել, և զեռակի բաժանելն, քանզի օրինաց եմք և մեք ցանկացողք. փորձ արասցուք իսկ 'ի բաց հատանել զմեծագոյնքն իսկ և զերկրորդքն։

Կղինիաս. Արդար։

Պղատոն. Ասասցուք այսուհետև, քանզի քաղաքի որ հանդերձեալ է կեալ իսկ և բարեբաստիլ ըստ զօրութեան մարդկայնոյ, պարտ է գոլ այդպէս, և կարեւոր՝ զպատիւս իսկ և զանպատուութիւնս բաշխել։

Կղինիաս. Ուղղապէս։

Պղատոն. Է իսկ թերեւս ուղղապէս պատուաւորագոյնք և նախնիք այնոցիկ գոլ՝ որ առ հոգիսն են բարութեանց, ողջախոհութեամբ գոլով առ սմա. և երկրորդ այն որ առ մարմինսն են բարութիւնք, և երրորդ այնոցիկ որ առ գոյութիւնսն և ինչսն ասին։ Եւ առանց այսոցիկ եթէ պատահեսցի ոք օրինադիր, կամ քաղաքի պատիւս, կամ յինչս յառաջ հատուցանելով, և կամ զոմն 'ի վերջնոցն՝ յառաջագոյնսն պատուով դասելով, ոչ ինչ իրաւացի և ոչ ինչ քաղաքական գործիցէ իր՝ ասացին։ Այսոքիկ ա՞յսպէս թէ ո՞րպէս ձեզ թուին։

Կղինիաս. Ճշմարտագոյն ասացին և հաւաստի։

Պղատոն. Եւ զայսոսիկ մեզ այժմ իսկ յաճախապէս ասել, յաղագս քաղաքավարութեանն պարսից խնդրուածն. և վերստին գտանեմք և ևս վատթարագոյնք սոքա լեալք, և զպատճառն ասասցուք. զի զազատութիւնն 'ի ժողովրդենէն բարձեալք, զտէրութիւնն քան զոր պատշաճն էր յաւէտագոյն 'ի վերայ հասուցանելով՝ զբարեկամութիւնն և զհաղորդութիւնն քաղաքին կորուսին. և սորա ապականեալ՝ ոչ իշխանացն խորհուրդն վասն այնոցիկ որ ընդ իշխանու-

թեամբ էին, և ամենայն բազմութիւնն խոնարհէր, այլ միայն 'ի սակս իւրեանց իշխանութեանն. և եթէ փոքր ինչ առաւելութիւն վարկանէին լինել անձանց իւրեանց, յամենայն ժամ խռովեցուցանէին զքաղաքն, և զազինս սիրելիս խռովեցուցանէին՝ ապականելով հրով, և թշնամաբար և անողորմապէս առնէին և առնեցեալք լինէին. և յորժամ 'ի պէտս հասանէին մարտի՝ ոչ գտանէին զբազմութիւնքն հասարակաց յօժարութեամբ կամեցեալք վշտագնապէս տագնապիլ, այլք ստացեալք բանիւ և թուով՝ անեզր բիւրք առ պատերազմունքն դժպհիք ունէին զսոսա, և որպէս կարօտեալք մարդկան վարձելով 'ի ձեռն վարձեալ և օտարոտի մարդկան վարկանէին կեալ, և առ սոքօք անուսումնականագոյն գոլ հարկէին, ասելով գործովք եթէ շաղփաղփութիւն էն առ ոսկոյ և առ արծաթոյ յամենայն ժամ ստացեալքն պատուականագոյն և գեղեցկագոյն իրողութիւնքն 'ի քաղաքի:

Կղինիաս. Յոյժ իրաւապէս ասացեր:

Պղատոն. Իսկ այն որ պարսից են իրս, իբրու ոչ ուղղապէս մատակարարին, վասն յուժգին տէրութեանն և ծառայութեանն՝ ընկալցի զկատարած:

Կղինիաս. Եւ յոյժ իրաւապէս:

Պղատոն. Իսկ յաղագս ատտիկեցի քաղաքավարութեանն՝ յետ այսորիկ այսպէս պատմել մեզ պարտ է, որպէս զի ամենեքին յամենայն իշխանութեանցն 'ի բաց ազատութիւնն յայնմանէ իշխանութենէն, որ այլոց ունէր զչափաւորութիւնն, ոչ ինչ եղև վատթարագոյն: Քանզի ըստ այնմ ժամանակին, ըստ որում պարսից 'ի վերայ արշաւանս եղենացւոց՝ թերևս և գրեթէ ամենեցուն որ բնակեալ էին յԵւրոպոլին, իբր քաղաքավարութիւն էր իսկ նախնի, և 'ի չորից պատուոց իշխանութիւնք՝ իբրու տիրուհի ոմն էր մեզ պատկառանքն, վասն որոյ ծառայել օրինացն իսկ կամէաք մեք կալեալ: Եւ առ այսոքիւք մեծութիւնն զօրացն առ երկիր և ծով հասանելով՝ ունէր երկիւղ անտարակուսելի, ծառայք և հնազանդք տակաւին մեծապէս առնէր զմեզ իշխանացն իսկ և օրինաց ծառայելով. և վասն այսորիկ ամենայնի 'ի միասին առ միմեանս իսկ, և առ

ինքեանս շաղկապ էր մեզ բարեկամութիւն. զի գրեթէ տասն ամաւ յառաջագոյն քան զնաւամարտութիւնն որ 'ի Սալամինա՝ հասանիր Դատիս պարսկական ունելով զօր՝ առաքելով Դարեհի յանդիմանապէս 'ի վերայ աթենացւոց և երետրեացւոց, զմարդիկն գերելով ածել. մահ սմանախաաացեալ՝ եթէ ոչ գործիցէ զայսոսիկ: Եւ Դատիս զերետրեացիսն իսկ 'ի սուղ ինչ ժամանակի ըստ յաղթութեան ամենևին կալեալ բազում բիւրուք, և զբան ինչ զարհուրեցուցիչ՝ 'ի մերս հասուցանէր քաղաք՝ իբրու ոչ ոք յերետրեացւոցն իցէ ճողոպրեալ 'ի սմանէ, քանզի զձեռսն 'ի միմեանս փակելով կալցին զամենայն երկիրն երետրեացւոցն զինուորքն Դատիսի[1]: Եւ բանս իսկ՝ եթէ ճշմարիտ էր և եթէ այլպէս՝ հասանիր, և զայլ ելլենացիքն և զաթենացիքն զարհուրեցուցանէր:

Եւ մաղթութիւն առնելով սոցա յամենայն կողմանս, զի օգնեսցեն սոցա, ոչ այլ ոք կամէր բաց 'ի լակեդոմոնացւոց: Իսկ սոքա 'ի ձեռն պատերազմին որ առ մեսենացիսն էր, և եթէ այլ ինչ արգելոյր զսոսա, զի ոչ գիտեմ ասել, յետոյ ուրուք հասանէին միով օրով քան զմարտն՝ որ եղև 'ի Մառաթոն: Եւ յետ այսորիկ պատրաստութիւնք մեծագոյնք և սպառնալիք, իբրու ասելի է, հասանէին բազումք 'ի թագաւորէն: Եւ յառաջ հասանելով ժամանակին՝ Դարեհ իսկ ասացաւ մեռանել. և յուժգին ումն համբակ որդին սորա ընկալեալ զիշխանութիւնն. և ոչ արգելոյր զյանդգնութեամբ դիմելն իւր: Իսկ աթենացիքն կարծէին զայս ամենայն 'ի վերայ իւրեանց պատրաստիլ վասն եղելոյ իրին 'ի Մառաթոն. և լուեալ զԱթոն իսկ քակեալ բռնութեամբ, և զԵլլեսպոնդոս և զնաւային բազմութիւնն լծեալ 'ի ծառայութիւն, վարկանէին ոչ յերկիր գոլ սոցա փրկութիւն և ոչ առ ծով, և զոք օգնական սոցա լինել. յիշելով զի ոչ և յայնժամ յորում յառաջագոյն եկին և գործեցին զայն ինչ որ առ երետրեացիսն է, քանզի յայնժամ ոչ ոք օգնեաց սոցա, և ոչ տագնապեցաւ մարտակից սոցա լինելով: Զնոյնս իսկ ակն ունէին և յայնժամ լինել առ երկիր

1 Այս ինքն՝ ձեռն օգնականութեան տուեալ միմեանց զինուորացն Դատի, զամենայն երետրեացիս՝ իբրև յուռկանի 'ի մէջ փակել:

և առ ծով, զամենայն փրկութիւն տեսանելով անկրելի. նաւս հազարս, նաև յոլովագոյնս քան զայս հասանելով 'ի վերայ սոցա։ Մի փրկութիւն խորին անօսր իսկ և տարակուսելի, սակայն միայն նայելով առ յառաջագոյն եղեալն իբրու 'ի տարակուսանաց, և յայնժամ երևիր լեալ յաղթելն մարտնչելով. և 'ի վերայ յուսոյս այսմիկ հաստատելով գտանէին իւրեանց ապաւէն զինքեանս միայն գոլ և զաստուածքն։ Եւ զայսոքիկ զամենայն՝ սոցա առ միմեանս բարեկամութիւնն առնէր։ Իսկ երկիւղն յայնժամ 'ի վերայ էր հասեալ, որ լեալ էր որ յօրինացն որ յառաջագոյն էին, զոր ստացեալ էին ծառայելով օրինացն յառաջագոյն, զոր և պատկառումն բազում անգամ ասացաք 'ի վերագոյն բանսն՝ որոյ և ծառայել ասացաք պատշաճ գոլ, զայնոսիկ որ համգերձեալ են բարիք գոլ, յորմէ վատագոյնն իսկ ազատ է և երկիւղ. և եթէ ոչ աստուած հասեալ էր՝ ոչ երբեք 'ի միասին գոլով վանէին զնոսա, և օգնական լինէին տաճարաց և շիրմաց, և հայրենի գաւառի և այլոց միանգամայն ընտանեաց և բարեկամաց. քանզի օգնեաց յայնժամ, այլ ըստ մանրկութեան իւրաքանչիւր ոք 'ի մէնջ յայնժամ թերևս ցրուելով՝ այլ ոք այլ ուրուք սերմանել։

Կղինիաս. Ուղղապէս ասացեր, ով սիրելի, և անձին քո և հայրենի գաւառին վայելչական։

Պղատոն. Են այսոքիկ, ով Մեգիլէ. քանզի առ քեզ այն իսկ՝ որ յայն ժամանակի եղեն հաղորդաբար լեալ հարանցն բնութեամբ իրաւացի է ասել։ Դիտեա՛ իսկ 'ի վերայ այսոցիկ և դու Կլինիա, եթէ ասեմք ինչ առ օրինադրութիւնն պատշաճաւոր. զի ոչ 'ի սակս առասպելաց զայս ինչ պատմեմք, այլ 'ի սակս որոյ ասեմք զի յեղանակաւ ոմամբ, նոյնպէս մեզ կիրս պատահեցաւ որպէս և պարսից. նոցա իսկ առ ամենայն ծառայութիւն հասուցանելով զժողովուրդքն, և մեզ իսկ ներհակապէս սոցունց առ ամենայն ազատութիւնս յորդորելով զբազմութիւնս, որպէս արդ և զինչ ասասցուք՝ աստուստ նախ եղեալքն մեր յառաջագոյն բանք ոմամբ յեղանակաւ բարեւք են ասացեալքն։

Կղինիաս. Ո՞րպէս բարեւք. փորձեա իսկ տակաւին հաւատացայն մեզ նշանակել զոր այժմ ասացերդ։

Պղատոն. Իցէ այդպէս։ Ոչ էր մեզ ոմանց, ով սիրելիք, առ հին օրինօքն ամբոխն տէր, այլ յեղանակաւ ոմամբ ծառայէաք օրինացն։

Կղինիաս. Որոց իսկ ասես։

Պղատոն. Այնոցիկ որ առ երաժշտականաւն էին։ Նախ զի զայն որ էր յայնժամ 'ի սկզբանէ պատմեսցուք՝ զուժգին անձանն ազատ կենցաղոյն։ Քանզի բաժանեալ էր մեզ յայնժամ երաժշտականն, և տեսակքն սորա և ձեւքն. և էր ինչ տեսակ երգոյ՝ իղձք առ աստուածսն, և անուամբ օրհնութիւն կոչէին, և այսմիկ էր ներհական երգոյս միւս տեսակ՝ զոր ողբս թերեւս իրաւապէս կոչիցէ ոք. և միւս տեսակ՝ զոր կոչէին հարուածք[1]. և այլ Դիոնիսուսի լինելութիւն թուի ինձ՝ երկագուռն մեծավէրշ ասացեալ. և օրէնք իսկ սորա անուն կոչէին իբրու այլ ոմն երգ, և մակասացողք էին փանդեռնահարք։ Եւ սոցունց կարգաւորելով և այլոց ոմանց, ոչ էր պարտ այլոյ ուրուք՝ այլոյ իրիք վարիլ երգոյ տեսակաւ. և զհաստատութիւնն սոցունց ճանաչել, և միանգամայն ճանաչելովն դատել, և զոչ հաւանեալն տուժել։ Ոչ էր ձայն սրնկի, և ոչ այլ ամենք առանց երաժշտութեան աղաղակ բազմութեանն, որպէս և այժմ իսկ, և ոչ թնդմունք. գովասանութիւնք բացատրելով այնոցիկ որ առ վարժմանսն էին կրթեալք, և 'ի խորատ հասեալ էին, թուէր լսել զսոսա կատարեալ լռութեամբ։ Իսկ մանկանց և դաստիարակաց, և յոլովագոյն ամբոխին գաւազանօք զարդարելով լինէր խրատն այնոցիկ։ Արդ այսպէս կարգաւորեալ գոլով՝ կամէր զի իշխեսցէ քաղաքացեայն բազմութիւն, և ոչ յանդգնիլ զընտրութիւնն այնոցիկ առնել խռովութեամբ։ Իսկ յետ այնորիկ յառաջ գոլով ժամանակին՝ իշխանքն իսկ յաներաժիշտ անօրէնութեանն առաջնորդք լինէին. բնութեամբ իսկ քերթողականք՝ սակայն անգէտք առ իրաւունսն և օրէնսն երաժշտականի, մոլեալք, և յաւէտա-

1 Յոյն՝ παίωνες.

գոյն քան զոր պարտ էր՝ 'ի ձեռն հեշտութեանն ըմբռնեալք, խառնելով զողբս և զօրհնութիւնս և զհարուածս, ընդ երկդուռն մեծամեծերգից. և զփողահարութիւնսն փանդռնահարութեան նմանեցուցանելով. և զամենայն ընդ ամենայնի 'ի միասին ածելով երաժշտականաւն անկամաբար 'ի ձեռն անխոհեմութեանն ստելով՝ իբրու ուղղութիւն իսկ ոչ ունիցի ամենեւին երաժշտականն՝ բայց 'ի հեշտութենէն խնդացողին. սովաւ եթէ վեհագոյն ոք իցէ, և եթէ վատթարագոյն, ուղղագոյն ունելով զդատողութիւնն, այսպիսի ինչ առնելով և բանս ասելով այսպիսիս՝ յաւելան առ բազմաց անօրէնութիւնք և յանդգնութիւն յերաժշտականն՝ իբրու բաւական գոլով սոցա առնել ընտրութիւն. ուստի և տեսարանքն՝ յանձայնից եղեն ձայնաւորք՝ իբրու երաժշտիւք 'ի վերայ ածելով զգեղեցիկն և զոչն, և փոխանակ քաջայաղթութեանն 'ի նմա եղև չարաչար տեսարանայաղթութիւն: Քանզի եթէ և հրապարակակալութիւն էր 'ի նմա միայն լեալ ազատ արանց, ոչ ինչ էր թերևս լեալն յոյժ չարաչար. բայց այժմ իշխեաց իսկ ձեզ՝ յերաժշտականէ ամենեցուն առ ամենեսեան իմաստութեան կարծիսն և անօրէնութիւն. որոյ 'ի միասին հետևիւր և ազատութիւն. քանզի աներկիւղք լինէին իբրու գիտողք իւրեն, և այս իսկ ներ...ութիւնս[1] ծնաւ անամօթութիւն. քանզի ոչ երկնչելն 'ի լաւագունին կարծեացն 'ի ձեռն յանդգնութեան, այս իսկ է չարաչար անամօթութիւն 'ի ձեռն ազատութեան ումեմն յուժգնապէս յանդգնելով:

Կղինիաս. Ճշմարտագոյն ասես:

Պղատոն. Եւ ըստ կարգի այսմիկ ազատութեանս լինէր արդեւք՝ ոչ կամելն ծառայել իշխանացն, և այսմիկ հետևիր փախչելն 'ի հօր և 'ի մօր և յերիցագունից ծառայութենէն և յօրինադրութենէն. և մերձ այսուցիկ կատարածին գոլ խնդրելն ոչ անսալ օրինացն, և առ այսոց կատարածին երդմանց և հաւատոց, և ա-

1 Այսպէս յօրինակին. յոյն՝ ἄδεια, ներելն. համարձակութիւն:

մնեւին աստուածոց փոյթ ոչ առնել, և այսպէս զասացեալ նախնի տիտանական՝ բնութիւն 'ի բաց ցուցանէին, և նմանելով սոցա առ նոյնսն նոցունց հասանէին դժուարին յաւիտենական կենցաղավարելով՝ ոչ դադարելովն երբեք 'ի չարեաց, և 'ի սակս որոյ ուրուք այսօրինակ մեզ ասացան։ Բայց ինձ իսկ երևի այսպէս պատշաճ, որպէս յերիվար զբանս յամենայն ժամ՝ զի ըմբռնեցից վերստին, և ոչ իբրու անսանձահար բերան ստացեալ բռնութեամբ բերելով 'ի ձեռն բանիս՝ ըստ ասացեալ առակին 'ի խոհեմութենէ արտաքս անկանիլ. այլ վերստին հարցանել զայժմ ասացեալս, եթէ 'ի սակս որոյ ուրուք այսօրինակ ասացաւ։

Կղինիաս. Բարեւք։

Պղատոն. Այսօրինակ այժմ ասացաւ 'ի սակս այնոցիկ։

Կղինիաս. Որոց։

Պղատոն. Ասացաք՝ իբրու օրէնսադրին պարտ է զերիս այս դիտելով օրէնսադրել. իբրու զի օրէնսադրեալ քաղաքն ազատ իսկ իցէ և բարեկամ ինքեան, և 'ի միտս ունիցի։ Այսպէ՞ս է արդ։

Կղինիաս. Ճշմարիտ։

Պղատոն. Արդ 'ի սակս այսոցիկ քաղաքավարութեանց՝ զտէրունականն նախապատուելով և զազատագոյն, դիտողութիւն արասցուք այժմ թէ որով 'ի սոցանէ ուղղապէս քաղաքավարեսցի. և բուռն հարկանելով երկաքանչիւրոց զումեմնէ չափաւորութենէ՝ զոմանց 'ի տիրելոյն և զոմանց ազատելոյն, տեսցուք զի յայնժամ զանազանապէս առ սոքօք եղև բարեբաստութիւնք։ Իսկ 'ի ծայրագոյնն հասանելով յերկաքանչիւրոցն՝ 'ի ծառայութեանն իսկ և 'ի ներհականին սորա, ոչ պատշաճ եղև ոչ այնոցիկ, և ոչ այսոցիկ։

Կղինիաս. Ճշմարտապէս ասես։

Պղատոն. Սակայն և վասն այնոցիկ տեսաք, և զդորացին բնակելով զօրութիւն, և զԴարդանոսի՝ առ լեառնակողմունքն և առ ծովն բնակութիւն, և զյա-

2 Յոյնն՝ Τιτανικῆν φύσιν.

ռաջագոյնքն զոր եղեալ՝ էին մնացորդք յապականութենէն տակաւին։ Իսկ զյառաջագոյն քան զայսոցիկ եղեալքն մեզ բանք յաղագս երաժշտականի և արբեցութեան և քան զայսոսիկ ևս յառաջագոյն, զի այս ամենայն ասացաւ վասն իմանալոյ՝ թէ որպէս երբեք արիապէս բնակեսցի քաղաք, և կամ յատուկ ոք որպէս թերևս վեհագոյն բերիցի զկենցաղն։ Արդ եթէ արարաք ինչ վարկպարազի, լինիցի՞ արդեօք կշտամբանք մեզ երբեք առ 'ի յինքեանց ասացեալ, ով Մեգիլէ իսկ և Կլինիա։

Կղինիաս. Ես անձին իմոյ թուիմ, ով սիրելի, թէ տեսանեմ։

Պղատոն.[1] Կարծեմ եթէ ըստ պատահման մեզ հանդիպեցաւ բանիցս այսոցիկ որ ասացաք իրողութիւնս ամենայն. քանզի գրեթէ առ պէտս սոցա հասայ ես այժմ, և ըստ ժամանակի ումեմն՝ դու իսկ եկիր միանգամ և սա Մեգիլոս։ Զի ես ոչ թաքուցանեմ 'ի ձէնջ զպատահեալսն ինձ այժմ, այլ և դուշակումն արարից ես զոմն։ Քանզի յոլովագոյնն Կրետէոյ՝ ձեռնարկութիւն առնէ առնել բացաքնակութիւն[2]. և հրամայէ կնոսացւոց քաղաքն՝ ինձ և այլոց ինն արանց միանգամայն, և օրէնս յայնցանէ որ առ ձեզ են, եթէ ոմանք հաճոյ մեզ թուեսցին, գնել հրամայէ. և եթէ ոմանք այլուստ ուրեք՝ զմտաւ ածելով զօտարութիւնն սոցունց, եթէ երևեսցին լաւագոյնք։ Այժմ արդ ինձ և ձեզ զայս տացուք շնորհս, յասացելոցս ընտրել որ բաղկացուսցուք քաղաք։ Այսմիկ[3] բաղկացութեամբս ոչ պատերազմ խոստանալով, ով Կլինիա. այլ եթէ և Մեգիլոսի ոչ դժուարին թուեսցի՝ առ յինէն ասացեալքս դու զամենայն վարկանէիր ըստ քոյոց կամաց, ըստ զօրութեան ասացեալ։

Կղինիաս. Բարեւք ասես։

1 Ի յոյն բնագրին Կղինիայ ընծային և այս բանք։

2 Յոյնն՝ αποικία, որ է գաղութ, գաղթականութիւն, բնակափոխութիւն։

3 Յոյնն՝ Պղատոնի ընծայէ զայս վերջին հատուած բանի։

Պղատոն. Սակայն և առ 'ի յինէն ասացեալքն ասացան իսկ գեղեցկագոյն։ Իսկ արդ փորձ արասցուք՝ բանիւ նախ բնակեցուցանել զքաղաքն[1]։

1 Ցոյն բնագիրն.— Կղինիաս. Բարեւք ասես։— Մեգիլլոս. Եւ իմ խորհուրդք մտաց՝ ոչ օտար ինչ են 'ի քոյոցդ։— Պղատոն. Քաջ է. արդ փորձ արասցուք բանիւ նախ բնակեցուցանել զքաղաք։

# ՊՂԱՏՈՆԻ

## ՕՐԷՆՍԴՐՈՒԹԻՒՆ ՉՈՐՐՈՐԴ



### ՏՐԱՄԱԲԱՆՈՒԹԵԱՆՍ ՊԱՏՃԱՌ

#### ԱԹԵՆԱՑԻ ՈՄՆ ՕՏԱՐ, ԵՒ ԿՂԻՆԻԱՍ ԵՒ ՄԵԳԻԼՈՍ

*Պղատոն. Բեր արդ, թէ որպիսի՞ պարտ է զմտաւ ածել մեզ լինել քաղաքին։ Եւ ասեմ իսկ ոչ զանունն սորա հարցանելով թէ որպիսի՛ ինչ իցէ այժմ, և յապառնի ժամանակին թէ զի՞նչ պարտ է կոչել զսա. քանզի զայս իսկ թերևս և բնակութիւն նորին, և կամ տեղի ինչ, և կամ գետոյ ուրուք և աղբեւր, և կամ աստուածոց մականուանութիւն այնոցիկ որ 'ի տեղւոջ են՝ յաւելուն զիւրեանցն համբաւ, նոր լինելով քաղաքին։ Իսկ ախորժմամբ մանաւանդ հարցանեմ յաղագս սորա այժմ այս ինչ, եթէ որպիսի՞. առ ծովն իցէ, թէ ցամաքին։*

*Կղինիաս. Ո՛վ սիրելի, գրեթէ հեռի իսկ է 'ի ծովէ քաղաքն յաղագս որոյ մեք այժմ տրամաբանեմք, ութսնօք ոմամբք ասպարիսօք։*

*Պղատոն. Եւ մերձ. նաւահանգիստք արդեւք են առ սովաւ, եթէ ամենևին առանց նաւահանգըստի։*

*Կղինիաս. Քաջանաւահանգիստ է սա ըստ զօրութեան յաւէտագոյն, ով սիրելի։*

*Պղատոն. Վա՜յ թէ որպիսի՞ ինչ ասես. և զի՞նչ շուրջ զսովաւ գաւառն. որպէս ամենաբե՞ր է, եթէ ոմանց ուրուք կարօտանայ։*

*Կղինիաս. Գրեթէ ոչ և միոյ իրի իցէ կարօտացեալ։*

Պղատոն. Եւ մերձաւոր սորա իցէ՞ արդեւք քաղաք հուպ:

Կղինիաս. Ոչ ամենեւին, վասն որոյ և բնակի[1]. քանզի նախնի բացարձակութիւն լինելով ներտեղւոյն զգաւառն այն անապատ գործեաց, իբրու անբաւ ինչ ժամանակ:

Պղատոն. Եւ լերանց և դաշտաց, և նիւթոյ ամենայնի՝ որպիսի՞ մասն յիւրաքանչիւրոց մեզ հասեալ է:

Կղինիաս. Նմանեալ է 'ի միւսում Կրետոյ բոլորովին բնութիւն:

Պղատոն. Դժուարին եթէ դաշտային թերեւս ասիցես զնա:

Կղինիաս. Յոյժ իսկ զերկաքանչիւրսդ:

Պղատոն. Ապա ոչ է անբոյժ իսկ առ 'ի ստացումն առաքինութեան: Քանզի թէ առ ծով հանդերձեալ էր գոլ և քաղաքանաւահանգիստ, և ոչ ամենաբեր՝ այլ բազմօք նուազեալ, մեծի ուրուք կարօտանայր փրկչի իւրոյ, և օրինադրաց ոմանց աստուածայնոց, եթէ ոչ էր հանդերձեալ՝ բազում զանազան և յոռին ունել բարս՝ բնութեամբ այսպիսի լինելով: Բայց այժմ մխիթարութիւն ունի զութսուն ասպարիսացն. մերձաւորագոյն իսկ քան զոր պատշաճն է գրեթէ կալով առ ծովուն՝ որչափ քաղնաւահանգիստ ասես գոլ զսա. Սակայն սիրելի ինչ է և այս. քանզի գաւառն բնակեալ առ ծով ումեմն՝ քաղցր զօրհանապազ հեշտագոյն է, սակայն մանաւանդ ճշմարտապէս և աղտաղտուկ և դառն ունի մերձաւորութիւն. քանզի վաճառաւ և ընչիւք 'ի ձեռն վաճառականութեան լցեալ զանձն իւր, բարս դիւրափոփոխս և անհաւատագոյն ծնանի առ հոգիսն, և զինքն իսկ առ ինքեան քաղաքն առնէ առանց հաւատարմութեան և առանց բարեկամութեան, և առ այլ մարդիկ նոյնպէս: Բայց առ այսոցիկ մխիթարութիւն զամենաբեր գոլն ստացեալ է, և դժուարին գոլովն յայտ է եթէ ոչ բազմաբեր իսկ և միանգամայն ամենաբեր. քանզի զայս առնե-

1 Յոյնն՝ վասն որոյ խորհիմք հաստատել անդէն գաղթականս. քանզի...

լով բազում պատճառս գտանէր՝ հաւաքմամբ գահե-կանս ոսկոյ և արծաթոյ, և սոքօք լի լինէր արդեւք, որոյ մեծագոյն չար՝ իբրու ասելի է բանս՝ մի փոխա-նակ միոյ ոչ ինչ արդեւք լինիցի քաղաքի 'ի ստացուած արդարագոյն և ազնուական բարուց, իբրու ասացաք՝ եթէ յիշիցէք 'ի յառաջագոյն բանսն։

Կղինիաս. Եւ յիշեմք և ներեմք, զի և յայնժամ և այժմ ասելդ քո ուղղապէս է։

Պղատոն. Եւ զի՞նչ արդ իցէ նաւակառուցական նիւ-թիւ տեղին գաւառին այնմիկ, կամ որպէս ունի։

Կղինիաս. Ոչ գոյ բնաւ ոչ հաճարի ոմն բանից ար-ժանի, և ոչ սօսի և նոճի ոչ բազում, և չոճի և լայն-տերևի սակաւ թերևս գտցէ ոք՝ որով վարիլ նաւա-կառուցացն առ ներքին մասունս և ողնափայտիցն հարկաւոր է։

Պղատոն. Եւ այսուքիկ ոչ ինչ չարաչար ունիցի գաւառին բնութեանն։

Կղինիաս. Զի՞ իսկ։

Պղատոն. Զնմանութիւնս չար նմանել թշնամեա-ցըն ոչ դիւրաւ հնար է քաղաքի, թէպէտ և բարի է[1]։

Կղինիաս. Առ ո՞ իսկ յասացելոցդ հայելով՝ ասա-ցեր զոր ասեդ։

Պղատոն. Ո՛վ դիւցային, պահեա զիս հայելով յասացեալն յառաջագոյն յաղագս կրետացւոցն օրի-նացն, իբրու զի առ մի ինչ հային։ Եւ զայս արդ ա-սէաք, իբրու զնոյն ինչ գոլով առ 'ի պատերազմունսն։ Բայց ես զմտաւ ածեալ ասացի՝ իբրու զի թէ յառա-քինութիւն հայէին իսկ այսպիսի օրինադրութիւնքս եդեալ՝ բարեւք ունիցի. բայց եթէ առ մասն ինչ՝ և առ ամենայն ոչ, դրեթէ ոչ ամենեւին ներէին։ Արդ դուք ինձ փոխանակ հասեալ օրինադրութեանս հե-տևելով, զգուշասջուք եթէ ոչ թերևս առ 'ի յառա-քինութիւն տարածելով, կամ յառաքինութեան մանր մասն ինչ օրինադրեմ։ Քանզի զայս իսկ զօրէնսն մի-

1 Ըստ յոյն բնագրին. Զի օգտակար է քաղաքի՝ չունել դիւրու-թիւն նմանելոյ թշնամեացն, ուր չգուցէ ինչ բարի։

այն կարծեմ եղեալ ուղղապէս՝ որ 'ի նմանութիւն աղեղնաւորի յամենայն ժամ այնմիկ դիտողութիւն արասցէ՝ որոյ յայնցանէ որ միշտ բարի են հետեւի ինչ շարունակաբար. և զայլն ամենայն 'ի միասին 'ի բաց պակասեցուցանէ, եթէ փարթամութիւն ոք՝ և եթէ այլ ինչ յայլոցն այնպիսեացն գոլով հանդիպի։ Բաց յասացելոցն յառաջագոյն, և զնմանութիւն իսկ առէի զթշնամեացն՝ զայն որ չարաչարն է՝ այսպիսի ինչ լինել, յորժամ բնակիցի ոք առ ծով, և տրտմի 'ի ձեռն թշնամեաց. որպէս ասաց իսկ ոչ յիշելով՝ ախորժելով առ ձեզ զչարութիւն։ Զի Մինովս երբեք զբնակեալսն յԱտտիկէ յանդիման կացոյց 'ի դժուարին ոմն բերումն հարկի, զօրութիւն բազում ստացեալ առ ծով. և նոքա ոչ եւս ստացեալ էին նաւք պատերազմականք որպէս այժմ. և ոչ զգաւառն իսկ լի նաւակառուցական ծառօք՝ իբրու դիւրապէս զնաւակառուցականն առտուիցեն զօրութիւն։ Ո՞չ ապաքէն այսպիսիք ոմանք եղեն 'ի ձեռն նմանութեան նաւավարութեան. ինքեանք նաւավարք եղեալք՝ վաղվաղակի յայնժամ զթշնամիսն վանեցին։ Զի տակաւին թերեւս բազում անգամ եւթն կորուսանել մանկունս սոցա պատշաճ էր՝ նախ քան զհետեւակ զինուորացն փոխանակ նաւավարք լինել, և սովորել փութապէս 'ի բաց վազելով ընթացմամբ առ նաւսն հասանել վաղվաղակի, և դարձեալ 'ի բաց գնալ, թուելով ոչ ինչ առնել ամօթալի. ոչ հրաման արձակելով մեռանել թշնամեացն 'ի վերայ հասանելով, այլ վայելչագոյն պատճառս լինել սոցա, և յոյժ պատրաստ՝ զզէնս կորուսանելով և փախչելով զփախուստ՝ իբրու ասեն ոչ ամօթալի։ Քանզի այսոքիկ 'ի նաւակառուցական զինուորութենէ բանք սիրեն պատահել ոչ արժանիք գովութեան բազում անգամ բիւրուց՝ այլ նորին ներհակի. քանզի զբարս չարս՝ ոչ է պարտ երբեք սովորել։ Եւ այն իսկ էր լաւագոյն մասն քաղաքացեաց, էր իսկ զայս ինչ և 'ի Հոմերոսէ ընկալուլ. զի խորհուրդս այս՝ բարի ոչ էր, քանզի Ոդիսեւս այսոքիւք դաւաճանէ զԱգամեմնոն՝ յորժամ աքէացիքն 'ի ձեռն տրովադացւոցն ըմբռնեալք էին մարտիւն. և նա հրամայեաց

զնաւքն 'ի ծովն քարշել. և նա դժուարացեալ անարգելով ասէ ցնա. «Իբրու անհմուտ ումն պատերազմիս լինելով հաստատապէս զգեղեցիկ զնաւսդ առ թշնամիսն մերժես. քանզի մանաւանդ տրովացւոցն լինիցին ընձալի, և մեզ պատճառ արմատի խլելոյ. քանզի ոչ աքէացիքս յաղթեցին պատերազմիս՝ նաւացս այսպէս ձգելով, այլ դարձուցանեն զերեսս իւրեանց վաղվաղակի, և այսմ պատճառ քոյդ իցէ խորհուրդ՝ որպէս յայտնէ ոգեալդ առ 'ի քէն»: Զայսոսիկ դիտէր և նա եթէ չար են 'ի ծով նաւքն՝ առ զինուորքն մարտուցեալք կալով. առիւծք եթէ իմացին արգեւք փախուցեալ զեղջերուս՝ այսպիսեաւ վարին սովորութեամբ: Առ սոքօք և քաղաքացն 'ի ձեռն նաւարկութեան և զօրութիւնքն միանգամայն փրկութեան, և պատիւս՝ ոչ գեղեցկագունին 'ի պատերազմականացն բացատրեցին. քանզի 'ի ձեռն վարչութեան յիւնապետութեամբ և նախապետութեամբ պէսպէս գոլով մարդկան, և ոչ երևելով առանձնապէս արիագունիցն, զպատիւսն իւրաքանչիւրոց ոչ կարիցէ ոք բացատրել ուղղապէս, և մանաւանդ որպէս քաղաքավարութիւն տակաւին ուղիղ լինիցի յայտմանէ զրկեալ:

Կղինիաս. Անհնարին է, ով սիրելի: Բայց զնաւամարտութենէն որ եղև յելլենացւոցն առ բարեբաստքն[1] մեք ասեմք իսկ կրետացիք՝ կեցուցանել զԵլլադա:

Պղատոն. Քանզի բազումք յելլենացւոցն և 'ի բարբարոսացն՝ ասեն զայսոսիկ. բայց մեք, ով սիրելի, ես իսկ և սա Մեգիլոս, ասեմք զհետևակ մարտն որ եղև 'ի Մառաթոն և 'ի Պլատէքն. զմինն սկսանի՝ զփրկութեանն ելլենացւոցն, և զմիւսն 'ի կատարած հասուցանել, և զոմանս յելլենացւոցն վեհագոյնս արարեալ, և զոմանս ոչ վեհագոյնս, զի այսպէս ասացուք, յաղագս այնոցիկ որ յայնժամ կեցուցին զմեզ մարտքն: Քանզի առ այնմիկ որ 'ի Սալամինայ էր՝ յաւելայց քեզ զայն որ առ Արտեմեսիոս առ ծովեզր մարտն: Այլ և այժմ հայելով առ քաղաքավարու

1 Յոյն՝ ընդդէմ բարբարոսացն:

թեան առաքինութիւնն, և զգաստի բնութիւն, զի-տեմք և զօրինացն կարգաւորութիւն. զայսպէս կեալն և ոչ զգոլն միայն մարդկան՝ պատուականագոյն վարկանելով որպէս և բազումք. այլ զմեծագոյն լինելն և զգոլն, իբրու այսչափ ժամանակ, որչափ և իցեն. ասացաւ մեզ իսկ այս, որպէս թուի ինձ, յառաջագոյնքն։

Կղինիաս. Զի՞ իսկ։

Պղատոն. Զայս ինչ դիտեսցուք միայն. ըստ ճանապարհացն եմք 'ի գալ այնմիկ՝ որ գեղեցկագոյն է քաղաքաց յաղագս բնութեանց և օրինադրութեանց։

Կղինիաս. Եւ յոյժ իրաւապէս։

Պղատոն. Ասա իսկ զոր յետ այսոցիկ 'ի կարգին է. ով իցէ ժողովուրդն բնակեալն առ ձեզ, կամ որպիսի՞ յամենայն Կրիտիոյ է յօժարացեալն. ո՞րպէս՝ ամբո՞խ յոլով լիեալ 'ի քաղաքին, եթէ միայն գաւառին են մնունդք. քանզի ոչ միայն յելլենացւոց հաւաքին, այլ տեսանեմք զոմանս և յարգիացւոցն և յԵգինոյ, և այլուստ բաց յելլենացւոցն բնակելով 'ի գաւառն։ Սակայն առ հասեալ ժամս ասա մեզ, ուստի՞ ասես լինել զզօրս քաղաքացն այժմ։

Կղինիաս. Յամենայն Կրետէոյ իսկ թուի ինձ լինել. և այլոցն իսկ յելլենացւոց՝ մանաւանդ երևէր ինձ զայնոսիկ որ 'ի Պելոպոնիոսի էին ընդունել բնակակիցք. քանզի և զայդ իսկ զոր այժմ ասես ճշմարիտ ասես՝ իբրու թէ յԱրգոս էին, զի և յաւէտագոյն ընտիրք են այժմ աստանօր սեռն գորտինացւոց. քանզի 'ի Գորտինոյ հանդիպի 'ի պելոպոնիսականէն յայսմանէ լեալ բացաբնակ։

Պղատոն. Ո՞չ այսուհետև դիւրաւ այսուիկ նմանապէս թերևս լինիցի բնակութիւնն քաղաքին. յորժամ ոչ մեղուացն հոյլիցն լինիցի յեղանակաւ, մինն սեռի միոյ գաւառէ հասանէ, հասանելով բարեկամաց՝ և առ բարեկամս բնակիցի, անձկութեամբ ոմամբ

1 Յոյնն. Եթէ կամիցիմք ընդ նոյն ճանապարհ յառաջ խաղալ, որ պատշաճագոյնն իցէ յաղագս քաղաքաց հաստատութեան և օրինադրութեանց։

պաշարելով երկրին, և կամ այլօք այսպիսի կրիւք հարկեալ, լինիցի երբեք զի և հակառակութեամբ բռնադատեալ մասն ինչ քաղաքի հարկեսցի թերևս այլ ուրուք ստարանալ։ Եւ երբեք 'ի միասին քաղաք ոմանց փախեաւ միահամուռն՝ վեհապ ունիւն յաղթեալ պատերազմաւ։ Այսուքիկ արդ ամենայն ունին զոմն դիւրագոյն ինչ առ 'ի բնակիլ և յօրինադրիլ, և զոմն յոյժ ինչ դժուարին. քանզի մի ինչ գոլ սեռ հոմաձայն և օրինակից՝ ունի ինչ սիրելութիւն, հաղորդգոլով տաճարաց, և ամենեցուն այսպիսեացս իսկ՝ զայս օրէնս և զքաղաքավարութիւնս. բաց յայնցանէ որ ընտանիքն իւրեանց ոչ ընկալցին դիւրաբար, և երբեմն իսկ վասն չարութեան՝ օրինաց հակառակելով, և խնդրելով տակաւին՝ նոյն բարուքն վարիլ 'ի ձեռն որոց և յառաջագոյն ապականեցան՝ դժուարին և դժուարահաւան լինիցի բնակեցուցանողին և օրինադրին։ Իսկ պէսպէս սեռն 'ի միասին հաւաքեալ լսել իսկ զօրէնսն նորագոյնս՝ թերևս կամեսցի. բայց միաբանիլն՝ իբրու երիվարաց ոմանց լծակցութիւնք 'ի միասին և 'ի նոյն ըստ ասացելումն փռընչելն, բազում ժամանակի պէտս ունի, և դժուարին է ամենևին։ Այլ է ճշմարտապէս օրինադրութիւն և բնակեցուցանելն զքաղաքս՝ ամենեցուն կատարելագունից առաքինութեամբ արանց։

Կղինիաս. Վայելչապէս. բաց առ ո՞ հայելով զայս ասացեր, ասա ինչ հաւաստագոյն, ով բարի։

Պղատոն. Կարծեմ եթէ յաղագս օրինադրաց վերստին պատմելով՝ միանգամայն ասել ինչ և վատթարագոյն։ Այլ եթէ առժամայն ասացից՝ ոչ լինիցի իրս կատարելապէս տակաւին. և թերևս երբեք դժուարացայց. քանզի գրեթէ ամենայն մարդկայինս թուի այսպէս ունել։

Կղինիաս. Յաղագս որո՞յ ասես։

Պղատոն. Հանդերձեալ էի ասել իբրու ոչ ոք 'ի մարդկանէ երբեք ոչինչ օրինադրէ, այլ պէսպէս հանդիպմունք և պատշաճք 'ի վերայ հասանելով՝ զանազանապէս օրինադրեն մեզ զամենայն ինչ. քանզի կամ պատերազմ բռնադատելով դարձոյց զքաղաքա-

վարութիւն և փոխադրեաց զօրէնս, կամ դժուարին տնանկութեան տարակուսանք, բազում անգամ և հիւանդութիւնք՝ հարկեն նորաձևել, և սասանմունք 'ի վերայ հասանելով առ բազում ժամանակաւ բազում ամաց՝ բազում անգամ տարաժամութեամբ։ Եւ զայսոսիկ իսկ զամենայն յառաջագոյն տեսանելով ոք՝ ճեպեսցի թերևս ասել իբրու ես այժմ, զի մահկանացուն իսկ ոչ և միոյ ուրուք օրինադրէ և ոչ ինչ, այլ պատահմունք գոլ ասիցէ գրեթէ զամենայն մարդկային իրողութիւնս։ Եւ է այս իսկ առ նաւավարութիւն և վարչութիւն և բժշկական և զօրավարական. զայս ամենայն ասելով՝ թուիր բարւոք գոլ, այլ սակայն և զայս ինչ ասելով՝ բարեւք ասել առ նոյնս սոցունց։

Կղինիաս. Զորպիսի՞ ինչ։

Պղատոն. Իբրու իսկ աստուած զամենայն, և աստուծով հանդիպումն և ժամանակ զմարդկայինս զամենայնս նաւապետեն. քանզի հանդարտագոյն իսկ է՝ պարտ վարկանիլն այսմիկ հետևիլ արուեստիս. քանզի 'ի ձմերանի ժամանակ ըմբռնելով զվարչականն զմեծամեծս առնէ. և կամ ոչ և զայս մեծ ինչ յաճախութիւն եղից թերևս արհեստիս։

Կղինիաս. Ո՞րպէս։

Պղատոն. Ո՛չ ապաքէն և առ այլսն այսպէս, և ըստ նորին ունիցի բանին։ Քանզի և օրինադրութիւն զսա իսկ ասել պարտ է, այլոցն 'ի միասին հասանելով, որչափ պարտ է գաւառի հանդիպիլ, եթէ հանդերձեալ է բնակիլ բարեբաստապէս օրինադիրն 'ի ճշմարտութիւն հուպ գոլով, յամենայն ժամ պատահեսցի այնմիկ քաղաքին։

Կղինիաս. Ճշմարտագոյն ասես։

Պղատոն. Ո՞չ ապաքէն որ առ իւրաքանչիւր յասացելոցս ունիցի ինչ զարուեստս, և իղձ արասցէ զի կարասցէ ուղղաբար զհանդիպելոյն յարմարել 'ի ձեռն արհեստին։

Կղինիաս. Եւ ամենևին արդար։

Պղատոն. Եւ այլքն իսկ ամենայն այժմ ասացեալքըն հրամայելով՝ նոյնպէս ըղձալ ըղձային թերևս։

Կղինիաս. Եւ զխա՞րդ ոչ։

Պղատոն. Այսպէս իսկ թուի ինձ թէ և օրինադիրն արասցէ։

Կղինիաս. Եւ ինձ իսկ թուի։

Պղատոն. Բեր արդ, ով օրինադիր,— առ սա ասասցուք.— զի՞ քեզ և որպէս տացուք ունելով քաղաք, զոր առեալ ունիցիս դու։ Իսկ 'ի մնացելոցն բաւականապէս զքաղաքն մատակարարեալ, զի՞նչ յետ այսորիկ ուղղապէս է ասել զօրինադրին. թերևս ասասցուք թէ այսպէս պարտ է։

Կղինիաս. Այո։

Պղատոն. Զայս ինչ ասէ. Տուք ինձ հարստահարեալ քաղաք, և եղիցի տէրն սորա համբակ ոմն բռնաւոր. և 'ի յիշողութիւն սրագոյն և դիւրին առ ուսմունս, և արիագոյն և մեծվայելուչ բնութեամբն, զոր և յառաջագոյն ասէաք, պարտ գոլով հետևիլ 'ի միասին ամենայն առաքինութեան մասանցն. և այժմ հարստահարեալ քաղաքիս հետեւեսցի հոգի այսպիսի, եթէ հանդերձեալ է շահիլ զայլսն 'ի գոյից։

Կղինիաս. Թուի ինձ եթէ զողջախոհութենէ ճառէ օտարս, ով Մեգիլէ, պարտ գոլ հետևիլ, այսպէս իսկ է։

Պղատոն. Զռամկական անունդ ասացեր, ով Կլինիա, և ոչ զայն զոր պանծացուցանելով ասէ խոհեմութիւն հարկելով գոլ զողջախոհութիւնն. այլ զայն իսկ զոր վաղվաղակի մանկանց և գազանաց ոմանց՝ առանց ժուժկալութեան առ հեշտութիւնքն լինելով իբրու կցորդ բնութեամն 'ի վերայ հասանի, և ոմանց ժուժկալութեամբ, զոր և միացեալ ասացաք բազում բարութեանցն՝ ասելով ոչ արժանի գոլ բանի։ Հուպ է արդ յասացեալսն բանս։

Կղինիաս. Ճշմարիտ։

Պղատոն. Այսպիսի իսկ բնութիւն ունիցի բռնաւորն, առ այլովք ասացեալ բնութեանցն, եթէ քաղաքին զօրաւոր գոլ պարտ է. զի ընկալեալ վաղվաղակի քաղաքավարութիւն՝ տրամադրութիւն ոչ է և ոչ լինիցի երբեք։

Կղինիաս. Եւ ո՞րպէս և ի՞ւ՝ բանիւ զայսոսիկ, ով

սիրելի, ասելով որք ուղղապէս ասել՝ զանձն իւր հաւանեցուցանէ։

Պղատոն. Դիւրագոյն իցէ այս հաւանելի, ո՛վ Կլինիա, իբրու ըստ բնութեանց այս այսպէս է։

Կղինիաս. Ո՞րպէս ասես թէ բռնաւորն լինիցի համբակ, ողջախոհ, քաջուսումն, յիշող, արիագոյն, մեծվայելուչ, բարեբաստ։

Պղատոն. Յաւել ոչ այլ ինչ՝ այլ զլինելն առ սովաւ օրինադիր՝ արժանի գովութեան, և զպատահումն ինչ բարի ածել 'ի վերայ սորա։ Քանզի այսորիկ լինելով, գրեթէ ամենայն ինչ աստուծով գործեցաւ. այնոքիկ զորս զանազանապէս բարի գործելով ոք քաղաքի կամեցեալ ախորժէ. և երկրորդ՝ եթէ երկու ոմանք լինիցին իշխանք այսպիսիք. և երրորդ՝ ըստ համեմատութեան։ Այսպէս դժուարագոյն՝ որչափ յոլովագոյնք իցեն. և որչափ ներհականն այսոցիկ պատահէ՝ լինիցի ներհակապէս։

Կղինիաս. Ի հարստահարութենէ արիագոյն ասես լինել զքաղաքն՝ որպէս երևի, օրինադրով ծայրագունիւ իսկ, և զարդարեալ բռնաւորաւ դիւրաւ իսկ և վաղվաղակի փոխաբերիլ յայս ինչ զոր ասեմս 'ի վատթարագունէն։ Եւ երկրորդ իսկ՝ 'ի սուղ իշխանութենէ, որպէս ասես. և երրորդ՝ 'ի հրապարակակալութենէ։

Պղատոն. Ոչ. այլ 'ի հարստահարութենէ իսկ առաջին, և երկրորդ 'ի թագաւորական քաղաքավարութենէ, և երրորդ 'ի հրապարակակալութենէ ումեմնէ, չորրորդ՝ 'ի սուղ իշխանաց ասեմ. զայսոցիկ լինելութիւնս դժուարապէս հնար գոլ թերևս ընդունել, քանզի յոլովք առ սովաւ լինիցին բռնաւորք։ Եւ զայսոսիկ ասեմք լինել՝ յայնժամ ճշմարիտ օրինադիր լինիցի բնութեամբ՝ և հասարակաց պատահիցի սմա զօրութիւն առ այնոցիկ՝ որ 'ի քաղաքին ըզմեծագոյնսն կարեն, և ուր թուով իսկ սակաւ բայց զօրաւոր՝ որպէս 'ի հարստահարութիւն լինիցի. այսպէս և արագութիւն և պարտութիւն փոխաբերութեանն սիրէ լինել։

Կղինիաս. Ո՞րպէս, քանզի ոչ իմանամք։

Պղատոն. Եւ սակայն ասացաւ առ 'ի մէնջ ոչ մի անգամ, այլ և բազում անգամ. բայց դուք թերևս ոչ էք տեսեալ երբեք բռնադատելով զքաղաքս:

Կղինիաս. Եւ ոչ եմ իսկ ցանկացող տեսութեանդ այդմիկ:

Պղատոն. Բայց զայս իսկ տեսանիցես թերևս 'ի սմա իբրու այժմ ասացաք:

Կղինիաս. Զորպիսի՞ ինչ:

Պղատոն. Զի ոչ ինչ կարօտանայ աշխատութեանց՝ և ոչ ամենևին բազում ժամանակի՝ բռնաւորին կամելով փոխել զսովորութիւնս քաղաքի. այլ գնալ ինքն իսկ նախ՝ որպէս և կամեսցի թերևս գոլ զայլսն, եթէ յառաքինութեան խորհուրդս յորդորել կամեսցի զքաղաքացիսն, և եթէ 'ի ներհականսն. ինքեամբ նախ գծագրել զամենայն գործելովն, և զոմանս գովելովն և պատուելովն, և զոմանս 'ի պարսաւանս ածել. և զայն իսկ որ ոչ հաւանին՝ անարգելով ըստ իւրաքանչիւր գործոց:

Կղինիաս. Եւ որպէս կարծեմք, վաղվաղակի 'ի միասին հետևիլ զայլսն քաղաքացիս՝ այնմիկ որ ըմբռնեալ իցէ զայսպիսի հաւանականութիւնս, և ըղ֊ բռնութիւնս միանգամայն:

Պղատոն. Զմեզ ոչ ոք հաւանեցուցանելով, սիրելիք. այլպէս վաղվաղակի և դիւրաւ հնար գոլ փոխել երբեք քաղաքի զօրէնս, բայց եթէ բռնաւորացն առաջնորդութեամբ, և ոչ այժմ այլպէս լինի, և ոչ դարձեալ երբեք լինիցի. զի և այս իսկ ոչ է մեզ անհնարին, և ոչ դժուարապէս թերևս լինելով: Բայց այսուիկ դժուարին է լինել, և սակաւ իսկ՝ եղեալն առ բազում ժամանակաւ. և յորժամ պատահեսցի՝ զյոքունս և զբազում բարութիւնս գործիցէ: Յորժամ տռփումն աստուածային ողջախոհ և արդար խորհրդոցն՝ պատահեսցի առ մեծագոյն ումանս զօրութիւն, կամ ըստ միիշխանութեան զօրացեալ, և կամ ըստ փարթամութեան գերունակութեան տարբերեալս և կամ ըստ սեռից, և կամ զՆեստորոսին եթէ երբեք ոք վերստին նորոգեսցէ բնութիւն, զորմէ ասեն բանիցն զօրութեամբն ամե֊

նեցուն վերագոյն լեալ՝ յաճախապէս տակաւին տարբերիլ և ողջախոհութեամբն։ Եւ սա իսկ առ տրովադացեօքն, որպէս ասեն, եղև. առ մեւք իսկ ոչ։ Ապա եթէ լեալ էր, և կամ լինիցի այսպիսի, և կամ այժմ իսկ է ոք 'ի մէնջ, երջանկապէս ինքն իսկ կեցցէ, և երանելիք իցեն 'ի միասին լուողքն բանիցն՝ որ հոսեն ողջախոհ բերանոյն նորա։ Նոյնպէս և 'ի միասին խորհելն իսկ և ողջախոհիլն, մեծագոյն զօրութիւն առ մարդիկ հասցէ, յայնժամ արիագոյն քաղաքավարութիւն. և այսպիսի օրինացն բուսցի լինելութիւն, զոր ասեմքս, ամենեցուն կանխագոյն և ոչ երկարագոյն։

Կղինիաս. Որպէս։

Պղատոն. Փորձեսցուք՝ յարմարելով զքեզ քաղաքաւս, ծերքն՝ որպէս մանկունք բանիւ ստեղծանել զօրէնս[1]։

Կղինիաս. Հասցուք արդ, ոչ ծուլացեալք տակաւին։

Պղատոն. Կարդասցուք զաստուած առ կազմութիւնս քաղաքիս[2], և սա լուիցէ մեզ. և լուեալ քաղցր և հեշտ հասցէ առ մեզ՝ հանդերձ մեւք զարդարելով զքաղաքս և զօրէնս։

Կղինիաս. Եւ եկեսցէ իսկ։

Պղատոն. Զորպիսի՞ քաղաքավարութիւն ունիմք առ միտս՝ հրամայել քաղաքի։

Կղինիաս. Եւ որպիսի՞ ինչ ասես, խորհելով ասա ևս զհաւաստի։ Իբրու զհրապարակակալութիւն ոմն, և կամ զսուղ ինչ իշխանութիւն, և կամ զարիագոյն յաղթութիւն, և կամ զթագաւորական։ Զի ոչ հարստահարութիւն երբեք ասասցես, իբրու մեք իսկ զմտաւ ածեմք։

Պղատոն. Բեր արդ այսուհետև, թէ ով 'ի ձէնջ կամեսցի տալ յառաջագոյն մեզ պատասխանի. զընտանի քաղաքավարութիւնն ասելով, թէ ո՞ ոք է այնպիսին։

1 Ցոյնն. Որպէս ծերունիք սովոր են խրատել զմանկութիւն։
2 Այս է՝ յաջողել մեզ զգործ օրինադրութեանս։

Մեգիլլոս. Ինձ ծերագունիս արդեւք իրաւացի է ասել յառաջագոյն։

Պղատոն. Թերեւս իսկ ասա։

Մեգիլլոս. Սակայն զմտաւ ածելով, ով սիրելի, զառ ղակեդոմոնացօքն քաղաքավարութիւնն, ոչ ունիմք քեզ այսպէս ասել՝ թէ զո՞ ոք պարտ է առասել զսա։ Թուի ինձ նմանել հարստահարութիւն, քանզի սքանչելի իրն վերդիտողացն[1] իբրու հարստահարական եղև առ սովաւ։ Եւ է յորժամ երեւեցի ինձ ոմն քան..... զաքս՝ հարստահարութեամբն յաւէտագոյն թուեցեալ.....[2] արիագոյն յաղթութիւն գոլ զսա՝ ամենեցուն է անտեղի։ Եւ թագաւորութիւն իսկ 'ի ձեռն կենցաղոյս է 'ի սմա, և նախնի ամենեցուն. և յամենայն մարդկանէ և 'ի մէնջ նոցունց ասացեալ։ Բայց ես այսպէս այժմ յանկարծակի՝ թերևս հարցեալ՝ ճշմարտապէս, որպէս ասացի, ոչ ունիմ սահմանելով ասել, եթէ ո՞ ոք է յայսոսիկ քաղաքավարութեանցս։

Պղատոն. Զնոյնդ ախտով, Մեգիլլէ, երևիմ ես ախտացեալ. զի ամենևին տարակուսիմ զքաղաքավարութիւնն՝ որ 'ի Կնոսոս էր, զոմն յայսցանէ հաստատելով ասել։

Մեգիլլոս. Ճշմարտապէս, ով սքանչելիք, քաղաքավարութեանց հաղորդէք. բայց զոր անուանեցաքս այժմ՝ ոչ են քաղաքավարութիւնք, այլ քաղաքաց բնակութիւնք, տիրելով իսկ և ծառայելով ոմանց մասանց իւրեանց, և տեառն իւրաքանչիւրոյ իշխանութիւնն առասի։ Եւ եթէ պարտ էր այսպիսոյ ուրուք մականուանիլ քաղաքին, ապա իսկ պատշաճ էր՝ զայն որ տէրն է այնոցիկ՝ որ ճշմարտապէս միտք ունիցին՝ զամենայն անունն առասել։

Պղատոն. Բայց ո՞վ էր աստուածն։

Մեգիլլոս. Փոքր ինչ արդեւք առասպելաւ վարել պա՛րտ է, եթէ հանդերձեալ եմք ներդաշնակապէս յայտնել զայժմ ասացեալդ հարցումն առ 'ի քէն։

1 Յոյնն ἔφορος պարէտ, վերատեսուչ, վերակացու։

2 Այսպէս թերի յօրինակին։

Պղատոն. Ո՞չ ապաքէն պարտ է այսպէս առնել:

Մեգիղոս. Ճշմարիտ:

Պղատոն. Զի քան զքաղաքսն զորոց 'ի սկզբանէ զբնակութիւնն պատմեցաք՝ տակաւին յառաջագոյն ամենեքին ասի սկիզբն իսկ և բնակութիւն լինել առ Կռոնոսաւ, յաւէտ բարեբաստ. զորոյ նմանութիւն ունելով է այն իսկ որ յայսցանէ որ այժմէն բնակի արիապէս:

Մեգիղոս. Բարեւք, որպէս թուի ինձ, յաղագս նորա լսել պարտ է:

Պղատոն. Ինձ իսկ այսպէս երևի. վասն որոյ և բանիւքս առաջի զսա եդի:

Մեգիղոս. Ուղղագոյն ինչ գործելով, և զոր ինչ 'ի կարգի էր իսկ առասպելին կատարելով եթէ պաշտէ, յաւէտ ուղղապէս արասցես:

Պղատոն. Առնելի իսկ է իբրու ասէքդ: Համբաւ արդ ընկալեալ եմք երանելի կենացն որ յայնժամ էին, իբրու անսպառ իսկ և ինքնաբուղխ ունէին զամենայն: Եւ այսոցիկ պատճառն ասի այսպիսի ինչ: Գիտելով ուրեմն Կռոնոս, որպէս մեք պատմեցաք, իբրու մարդկային բնութիւն ոչ և մի իցէ բաւական՝ զմարդկայինս տնօրինելով ինքնակալութեամբ զամենայն, ոչ լի լինել ամբարհաւաճութեամբ և անիրաւութեամբ. զայս արդ խորհելով կացուցանէր թագաւորս և իշխանս քաղաքաց մերոց ոչ մարդիկ՝ այլ 'յաստուածայնոյ ուրեմն և վեհագոյն սեռէ զդիքս. որպէս մեք այժմ առ հօտսն առնեմք. և որչափ ընտանիքս են երամք՝ ոչ զարջառս արջառոց, և զնոխազս նոխազաց՝ ինքեանց զոմանս առնեմք իշխանս. այլ մեք տիրեմք սոցունց վեհագոյնս այնոցիկ սեռդ: Այնպէս իսկ և աստուած ուրեմն մարդասէր գոլով՝ սեռիս մերոյ լաւագոյն վերակացուս առնէր զդիսն. որ և սոցա 'ի ձեռն բազում դիւրութեամբն մեզ յոյժ դարման լինէր խաղաղութիւն և պատկառանս և ազատութիւն, և առատութիւն արդարութեան շնորհելով առանց հակառակութեան, և բարեբաստ մարդկային սեռս գործիւր: Ասէ արդ և այժմ բանս այսմիկ ճշմարտութեամբ վարելով,

իբրու որչափ քաղաքաց աստուած ոչ, այլ մահկանացու ոք իշխեսցէ, ոչ իցէ սոցա դադարումն 'ի չարեաց. այլ նմանիլ մեզ պարտ է ամենայն հնարիւք զայնմիկ կենցաղն՝ որ առ Կռոնոսով էր. և որչափ գոյ 'ի մեզ անմահութիւն՝ սմա հաւանելով հրապարակաբար, և յատկապէս զբնակութիւնքն և զքաղաքն մատակարարելով զմտացն բաշխումն մականուանելով օրէնս: Ապա թէ այր մի, և կամ սակաւ իշխանութիւն ոմն, և կամ հրապարակակալութիւն՝ հոգի ունելով հեշտութեամբ ցանկացեալ ըղձալեաց, և ընուլ սոքօք կարօտացեալ տևելով առ ոչինչ, այլ անկատար և անյագ՝ չար հիւանդութեամբ ըմբռնեալ իշխեսցէ քաղաքի, կամ ումեմն ռամկի՝ կոխելով այսպիսի զօրէնքն, իբրու այժմ իսկ ասէաք, ոչ իցէ փրկութեան հնար, գիտել իսկ պարտ է մեզ զբանս զայս, ով Կլինիաս, թէ որպէս սմա հաւանեսցուք, և կամ զինչ գործեսցուք:

Կղինիաս. Հարկէ իսկ հաւանիլ:

Պղատոն. Զմտաւ արդ ածցես, զի օրինաց տեսակք, այնչափ գոլ ասեն ոմանք, որչափ քաղաքավարութեանց իսկ են... Եւ քաղաքավարութեանց՝ արդ պատմեցաք որչափ բազումք ասեն: Բայց մի՛ համարիր 'ի սակս վատթարի ուրուք գոլ զայժմիկ երկբայութեանս, այլ յաղագս մեծագունի. քանզի զարդարն և զանիրաւն, թէ որպէս պարտ է տեսանել, դարձեալ եհաս մեզ երկբայութիւն: Քանզի ոչ առ պատերազմն, և ոչ առ առաքինութիւնն, բոլորովին հպիլ պատշաճ գոլ ասեն զօրէնքն, այլ զոր ինչ հաստատեալ քաղաքավարութիւնն պատշաճ իցէ. թէ որպէս միշտ իշխիցէ, և ոչ քակիցէ զբնութեամբ սահմանն իրաւանց, այսպէս ասել գեղեցկագոյն:

Կղինիաս. Ո՞րպէս:

Պղատոն. Քանզի լաւագունին է պատշաճ:

Կղինիաս. Ասա ինչ հաւաստի:

Պղատոն. Այսպէս դնէ երբեք, որպէս ասեն, զօրէնսն 'ի քաղաքի յամենայն ժամ՝ կալողն[1]:

1 Այս է՝ որ զօրաւորն իցէ, նա միշտ սահմանէ զօրէնս:

Կղինիաս. Ճշմարիտ ասես։

Պղատոն. Կարծես դու արդեւք իբրու ասէի, կամ զՀրապարակ երբեք յաղթելով, և կամ զայլ ոմն քաղաքավարութիւն և կամ զառնաւոր գնել կամաւ՝ նախ առ այլ ինչ օրէնս, քան եթէ առ պատշաճն անձին իւրոյ և զիշխանութեան՝ զի մնացէ։

Կղինիաս. Եւ զիա՞րդ։

Պղատոն. Ո՞չ ապաքէն և որ անցանի ընդ այնոսիկ որ եդեալքն էն՝ տանջեսցի առ 'ի դրողէն իբրու ապիրատեալ, իրաւացի դոլ զստսա մականուանելով։

Կղինիաս. Նման է արդ։

Պղատոն. Զայսոսիկ միշտ և այսպէս, և ըստ այսոցիկ իրաւունսն արդեւք ունիցին։

Կղինիաս. Ասաց արդ բանս այսպէս։

Պղատոն. Քանզի է այս յաղագս այնոցիկ ապիրատութեանցն 'ի սկզբանն։

Կղինիաս. Որո՞ց իսկ։

Պղատոն. Այնոցիկ զորս յայնժամ դիտէաք թէ որո՛ց պարտ է իշխել այլոց։ Եւ երևեցաւ իսկ զի իշխեսցեն ծնողքն ծննդոցն, և համբակացն ծերքն, և նահատակողքն՝ անարեացն։ Եւ փութապէս այսպիսի ինչ էին ասացեալքն. բայց եթէ յիշեմք, և հակառակէին[1] ոմանք միւսոց. և արդ մի էր և այս յայնցանէ, և ասացաք երբեք ըստ բնութեան 'ի վերայ հասեալ զՊինդարոս արդարացուցանելով զառնաւորն՝ այսպէս ասել։

Կղինիաս. Այո, այսոքիկ էին որ ասացան յայնժամ։

Պղատոն. Դիտեա արդ՝ թէ որպիսեաց ոմանց պարտ է աւանդել զքաղաքս մեր. քանզի եղև իսկ բիւր անգամ այսպիսիս՝ առ ոմանց քաղաքօքք։

Կղինիաս. Որպիսի՞դ։

Պղատոն. Իշխանացն առ մարտս հասանելով, յաղթողքն զիրողութիւնն և զոր ինչ 'ի քաղաքն էին այսպէս ընտանեցուցին իւրեանց, իբրու իշխանու-

1 Յօրինակին՝ հակառակինծ էին։

թեան ընաւ ոչ հաղորդեցուցանել զպարտեալսն՝ և ոչ զծնունդս սոցա. և զգուշութեամբ պահելով զմիմեանս՝ կեան այսպէս. գուցէ յիշխանութիւն հասեալ 'ի սոցանէ՝ 'ի վերայ յարիցէ, յիշելով զյառաջագոյն եղեալ չարիսն։ Զայսոսիկ մեք ասեմք այժըմ ոչ քաղաքավարութիւնք գոլ, և ոչ ուղիղ օրէն, որչափ ոչ 'ի սակս հասարակաց 'ի միասին եդան քաղաքին։ Իսկ զայնոսիկ որ 'ի սակս ոմանց հակառակողք՝ և ոչ քաղաքացիք զոր ասասցուք, և զիրաւունքն սոցա, զոր ասեն գոլ, վարկանիմք ունոտի ասացեալք։ Եւ ասացան առ 'ի մէնջ այսոքիկ 'ի սակս այնորիկ, իբրու զի մեք քոյոյ քաղաքիդ իշխանութիւն ոչ տացուք, քանզի փարթամ է, և ոչ յայսպիսեացն այլ ինչ է ստացեալ զօրութիւն, կամ մեծութիւն կամ սեռ։ Բայց այն իսկ է՝ որ եդեալ օրինացն դիւրահաւան իցէ, և յաղթէ զյաղթութիւնն զայն 'ի քաղաքին, սմա ասեմք և զաստուծոյն պաշտօնն տալ, և պատշաճ գոլ զմեծագոյնն։ Զմեծագոյնն՝ առաջնոյն, և զերկրորդն այնոցիկ որ երկրորդաբար յաղթիցէ. և ըստ համեմատութեան այսպէս այնոցիկ որ 'ի կարգին են. զայն որ յետ այսոցիկ են՝ իւրաքանչիւր ոք բացատրելի գոլ։ Եւ զասացեալսն իսկ իշխանք՝ այժմ պաշտօնեայք օրինացն կոչիցի՝ ոչ խակ անուանց ինչ նորաձևութեան, այլ վարկանիմ ամենայնի յաւէտագոյն գոլ առ այսուիկ փրկութիւն իսկ քաղաքի։ Եւ ներհական նորին, քանզի յորում քաղաքի իցէ իշխեցեալ և ապախտ օրէնք՝ տեսանեմ ապականութիւն այնմիկ պատրաստ գոլով։ Եւ յորում տէր իցէ իշխանացն, և իշխանքն ծառայք օրինացն, զփրկութիւն՝ և զամենայն որչափ աստուածքն քաղաքաց պարգևեցին բարութիւնք՝ լինելով տեսանի։

Կղինիաս. Այո. երդնլով յԱրամազդ, ծվ սիրելի, զի ըստ հասակիդ քո արագատես։

Պղատոն. Քանզի համբակ գոլով . . . զայսպիսիս աղօտագոյն տեսանիցի, և ծերացեալ իսկ արխագոյն։

Կղինիաս. Ճշմարտագոյն իսկ։

Պղատոն. Արդ յետ այսոցիկ զի՞նչ 'ի կարգին է բանիդ՝ կատարել պա՞րտ իցէ։

Կղինիաս. Եւ ո՞րպէս ոչ։

Պղատոն. Ասասցուք արդ զսոսա, թէ ով արք, աստուած իսկ, որպէս նախնի բանն է, սկիզբն և զվախճան և զմիջոց զէակացն ամենեցուն ունելով, ուղղապէս կատարէ զամենայն ըստ բնութեան շրջաբերելով, և սմա իսկ հետևի իրաւունս միշտ։ Պակասելոցն յաստուածային օրինացն պատուհասիչ, որոյ որ հանդերձեալն իսկ իցէ բարեբաստ գոլ՝ 'ի միասին հետևի խոնարհութեամբ զարդարեալ։ Իսկ այնոքիկ որ 'ի ձեռն ամբարհաւաճութեան վերացեալ իցէ և կամ ընչիւք գոռոզացեալ, կամ պատուօք և կամ մարմնոյ գեղեցկութեամբ, համանգամայն մանկութեամբ և անխոհեմութեամբ. բորբոքի ամբարտաւանութեամբ հոգւով, իբրու ոչ իշխանի, և ոչ այլոյ ուրուք առաջնորդի կարօտացեալ, այլ և այլոց բաւական գոլով առաջնորդել, մնասցէ իսկ յաստուծոյ մերկացեալ։ Եւ մնացեալ այսպիսի, և զայլս տակաւին այսպիսիս ըմբռնեալ՝ խայտայ խռովեցուցանելով միանգամ զամենայն՝ և բազմաց ոմանց թուիցի ոմն գոլ, և յետ ժամանակի ոչ բազում՝ հատուցանէ պատուհաս ըստ իրաւանցն ոչ բամբասելի. և զանձն իւր, և զտուն և զքաղաք՝ միահամուռ խռովեալ գործիցէ։ Առ այսոսիկ արդ այսպէս կարգաւորեալ, զի՞նչ պարտ է առնել կամ տրամախոհիլ, և զի՞նչ ոչ այնմիկ որ խոհեմականն է։

Կղինիաս. Յայտ իսկ է այս ի՞նչ՝ որ յայնցանէ որ հետևելոց են աստուծոյ, յապա ժամանակաւ պարտ է տրամախոհիլ ամենայն առն։

Պղատոն. Եւ որպիսի՞ գործք սիրելի և հետևող իցէ աստուծոյ։ Մի գոլով և մի բան նախնի ունելով՝ զի նմանոյն իսկ չափաւոր գոլով, նմանին արդեւք իցէ սիրելի։ Իսկ այնոքիկ որ առանց չափոյ են՝ ոչ միմեանց, և ոչ այնոցիկ որ չափաւորքն են[1]։

Արդ մեզ աստուած ամենայն ընչից չափ իցէ, մա-

1 Կարեն հաճոյ լինել, որպէս ունի յոյնն։

նուանդ և յոյժ յաւէտագոյն, իբրու ասեն, քան զայլ ոք 'ի մարդկանէ: Արդ այնոքիկ որ այսպիսոյս սիրելի լինիցի՝ ըստ զօրութեան յաւէտագոյն հարկ է և իւրն այնպիսի լինել. և ըստ այսմիկ բանիս՝ ողջախոհն իսկ 'ի մէնջ՝ աստուծոյ սիրելի է, քանզի և նման. իսկ այն որ ոչ իցէ ողջախոհ՝ աննման է և տարբերեալ և ապիրատ. և զայլսն այսպէս ըստ այսմիկ բանիս ունիցի: Իմասցուք արդ սոցունց հետեւող գոլ՝ զայսմիկ բանս զամենեցուն բանից, որպէս թուի ինձ, գեղեցկագոյնս և ճշմարտագոյնս. իբրու այնմիկ իսկ որ բարին է զոհել աստուածոցն, պարտ է իսկ և կաճառիլ[1] ընդ սոցա ըղձիւք և ամենայն վերադրութեամբ և աստուածային հաճութեամբ. որ և իցէ գեղեցկագոյն և արիագոյն և կատարելագոյն առ բարեբաստ կենցաղումն...[2] իսկ այս զանազանապէս վայելուչ: Իսկ այնմ որ չարն է՝ սոցունց ներհականք են բնաւորեալ. քանզի պիղծ է հոգւով որ չարն իսկ է. և մաքուր իսկ, որ նորին ներհակն է[3]. և առ 'ի յայլմէ որ ոչ է մաքուր, և ոչ այր բարի, և ոչ աստուած երբէք ընդունիցի ուղղապէս: Ունոտի արդ իցէ առ աստուածսն բազում աշխատանս ոչ արդարագունից. իսկ այնոցիկ որ մաքուրքն իցեն՝ ամենայն ինչ իցէ 'ի ժամու: Արդ մեզ զգուշանալ պարտ է առ այս ինչ, թէ որոյ պարտ է առնել զդիտողութիւն. քանզի նետք են այսոքիկ, և իբրու նետից են սոցա ցանկութիւնքն ասելով, թէ ուր 'ի սոցանէ բերցին, թերեւս ուղղապէս նախ իսկ ասացաք պատիւք զայնոսիկ որ մատչին աստուածոցն որ յՈլիմպոս են, և ունին զքաղաքս, և երկրային աստուածոց երկրորդաբար: Իսկ և նորագոյն զարիականսն հատուցանելով ուղղապէս բարեպաշտութեան դիտողութեանն հանդիպիցի: Եւ յետ աստուածոցն այսոցիկ դիցն՝ որ խոհեմականն է ձօնիցէ արդեւք, և դիւցազանցն յետ այսոցիկ, և

1 Այս ինքն՝ հաղորդիլ: Վերադրութիւն կոչէ զնուէրս և զզոհս:
2 Թերի 'ի մերում օրինակին:
3 Յոյնն՝ ուր հոգի արդարոյն մաքուր է:

հետեւի սոցունց ընտանի տաճարացն հայրենի աստուծոյն ըստ օրինացն ձօնելոյ, և ծնողացն իսկ պատիւքն՝ մինչդեռ կենդանի իցեն, յետ այսորիկ իբրու զիրաւացի և պատշաճ հատուցանել սոցա նախ և առաջին և մեծագոյն իբրու պարտս. քանզի ամենայն պարտուց՝ այսոքիկ երիցագոյնք են. և համարել պարտ է, զոր ինչ ունիցի և ստացեալ իցէ՝ ծնողացն գոլ զամենայն և մնուցողացն, առ 'ի շնորհել զայսոսիկ 'ի պաշտօն նոցունց ըստ ամենայն զօրութեան՝ սկսանելով 'ի գոյութենէն իւրմէ, և երկրորդ յայնցանէ որ մարմնոյն են, և երրորդաբար զհոգւոյն փոխսն վճարելով, և դարման տալով վասն աշխատանացն սոցա, և նախնի մրցանացն այնոցիկ որ փոխատրեցին 'ի մանկութեան՝ մանկանց հատուցանել։ Արդ հնացելոց 'ի ծերութեան յոյժ այսոցիկ պէտս ունելով և առ ամենայն կենցաղս, պարտ է ունելով ունել առ ծնողսն բարեբաստութիւն զանազանապէս. քանզի թեթեւագոյն և թռչուն բանիցն՝ ծանրագոյն են տուգանքն. քանզի վերադիտող առ այսոքիկ կարգեալ է իրաւանց հրեշտակ Նեմեսիս, և սաստելոց՝ սոցա հպատակիլ պարտ է. և 'ի բաց թօթափելով զցասումն, եթէ գործովք ծանիցեն զայսպիսիս գործել։ Քանզի վայելչագոյն է մանաւանդ որդւոյ՝ թուեցեալն անիրաւութիւնն հօր և ցասմունքն, թերևս զանազանապէս։ Իսկ ծնողացն վախճանելով՝ շիրիմ լինիցի խոհեմական և գեղեցկագոյն, ոչ 'ի վեր վերացուցանելով զսովորեալսն օրէնսն, և ոչ պակասելով քան զայն իսկ որ նախահարքն եղեալ են իւրոց ծնողացն։ Եւ յորժամ վախճանեալ իցեն՝ զտարեւոր յիշատակքն՝ զայն իսկ որ զարդաբերքն իցեն, հատուցանել, և ոչ պակասեցուցանել ստէպ 'ի յիշատակն նոցունց, այլ այսուիկ մաղթել միշտ յաւէտ. և ծախս զոր ինչ հանդիպեալ իցէ 'ի պատահմանէ զչափաւորն՝ ննջեցելոցն բաշխել[1]։ Զայս իսկ առնելով, և ըստ այսոցիկ կելով յամենայն ժամ, իւրաքանչիւրք զարժանին թերևս առ 'ի յաստուծոցն,

1 Այս է՝ զմասն ինչ յընչից զոր ժառանգիցեմք 'ի ծնողացն։

և որչափ վեհագոյնքն են քան զմեզ պահանջիցեմք՝
բարութեանց յուսով ունելով զյոլովագոյնն կենցա-
ղոյս։ Եւ զայնոսիկ որ առ ծնողք և ազգականք, և
բարեկամք և քաղաքացիք, և որչափ օտարականք՝
առ աստուածոցն հաճոյութիւնք և հանդիպմունք
են, 'ի միասին զամենայն կատարելով՝ զկենցաղն իւր
պայծառացուցանելով ըստ օրինացն՝ զարդարել պարտ
է զելսն նոցունց օրինացն, զոմանս հաւանեցուցանե-
լով, և զայնոսիկ որ ոչ հպատակին հաւանութեամբն
սովորութեանց՝ աշխոյժ իրաւամբք տանջելով, զքա-
ղաքն մեր կամակցութեամբ աստուածոցն երջանիկ
և բարեբաստ կատարէ։ Բայց զոր պարտ է և հար-
կաւոր ասել՝ օրինադիր որ զայս ինչ խորհի, զոր և
ես, և զայն իսկ որ ձեւք օրինի անյարմարապէս ա-
սացեալքն իցեն, յաղագս այնոցիկ թուի ինձ. զի
յարացոյցք առաջի դնելով ինքեան իսկ, և այնոցիկ
որոց օրինադրեսցէ զայլսն ամենայն ըստ զօրութեան
պատմելով, յետ այսորիկ սկսանիլ դրութեանն օրի-
նացն։ Եւ են իսկ այսոքիկ ձեւով ոմամբ կալով մա-
նաւանդ, ոչ ամենեւին դիւրին 'ի միում ըմբռնելով
ասել զսոսա իբրու ումեմն գաղափարաւ։ Այլ այս-
պէս յեղանակաւ հասցուք, եթէ հնար իցէ, յա-
ղագս այսոցիկ հաստատել։

Կղինիաս. Ասա թէ զորպիսի՞ իսկ։

Պղատոն. Կամեցայց թերեւս զսոսա իբրու դիւրա-
հաւանք առ 'ի յառաքինութիւնս գոլ. և յայտ է
թէ զայս ինչ փորձիցէ օրինադիրն առնել յա-
մենայն օրինադրութեանն իւրում։

Կղինիաս. Եւ ո՞րպէս ոչ։

Պղատոն. Արդ զասացեալքդ յաղագս զոհից և
ծնողաց՝ թուեցաւ ինձ յօժարապէս առնել՝ յա-
ղագս որոց եղեւ պատմութիւնդ, ոչ ամենեւին
զկարծր հոգովք բուռն հարկանելով, այլ մանաւանդ
լսել հանդարտագոյն իսկ և դիւրահաշտագոյն. իբ-
րու թէպէտ և ոչ մեծ ինչ, այլ սակայն փոքր՝
զլսողն որպէս ասաց՝ դիւրահաշտ լինելով քաջու-
սումնագոյն գործիցէ, զամենայն սիրել պարտ է։
Քանզի ոչ բազում ինչ հեշտաշարժութիւն, և ոչ

առատութիւն յօժարացելոցն իբրու արիադունից մանաւանդ լինիցի իսկ վաղվաղակի: Բայց զԷսխիղոս՝ բազումք իմաստուն երևեցուցանեն ասացեալ, իբրու առ 'ի չարութիւնն Ճանապարհն դիւրին և առանց քրտանց առաւել զգնալն սուղ գոլով յաւէտագոյն: Իսկ առաքինութեանցն ասէ զքրտինքն առաջի աստուածքըն եդեալ են շրջանակի, այնոքիկ որ անմահք են, երկար իսկ է և ծառայեալ Ճանապարհն նորին, և դժուարին իսկ յառաջագոյն, սակայն յորժամ 'ի ծայրագոյնն հասցէ, դիւրաւ բերիցէ. Թէպէտ և որպէս և էր իսկ դժուարագոյն:

Կղինիաս. Եւ բարեւք իսկ թուեցաւ ասացեալդ ամենևին յոլովագոյն:

Պղատոն. Բայց նախհասեալ բանդ՝ թէ որպէս առ 'ի յինէն գործեցաւ՝ կամիմ ձեզ դնել առաջի:

Կղինիաս. Եւ դիր արդ:

Պղատոն. Ասասցուք արդ ընդ օրինադրին տրամաբանելով զայս ինչ. Ասա մեզ ով օրինադիր, թէ զոր ինչ պարտ է մեզ գործել և ասել գիտիցես, ապա ուրեմն յայտ է եթէ և զոր ինչ ասիցես:

Կղինիաս. Հարկաւոր իսկ է:

Պղատոն. Փոքր իսկ յառաջագոյն ուրեմն ո՞չ լըւաք քո ասելով, իբրու օրինադրին ոչ է պարտ զքերդողն յորդորեցուցանել քերդել զայն ինչ զոր իւրեանցն իցէ սիրելի. քանզի ոչ գիտիցէ եթէ օրինացն երբեք ներհական ասելով՝ ինչ վնաս արասցեն քաղաքին:

Կղինիաս. Ճշմարիտ ասես:

Պղատոն. Արդ յաղագս քերդողացն եթէ զայսոսիկ ասասցուք՝ առ սմա ասացեալքս թերևս իցեն չափաւորք:

Կղինիաս. Ո՞ր:

Պղատոն. Այսոքիկ նախնի առասպել գոյ, ով օրինադիր, առ 'ի մէնջ ասացեալ նոցունց միշտ՝ և այլոց 'ի միասին ամենեցուն թուեցեալ, եթէ յորժամ քերդողն առ եռոտանեաւն երաժշտիցն նստիցի, յայնժամ ոչ իցէ ներխոհեմ, այլ իբրու աղբիւր ոմն, զ'ի վերայ հասեալն պատրաստաբար թողուցու հո-

սել, և արհեստին ելով նմանութիւն՝ հարկի ներհակաբար միմեանց զմարդիկ գործել տրամադրել՝ ներհակք բազում անգամ ասել սմա. սակայն գիտէ ոչ եթէ զայսոսիկ, և եթէ զմինն յասացելոցս ճշմարիտ է: Այլ օրինադրին զայս ինչ ոչ գոյ առնել յօրէնսն՝ երկու յաղագս միոյ. այլ մի յաղագս միոյ համապազ բացերևեցուցանել բան: Զգուշացիր 'ի նոցունց յառ 'ի քէն յասացելոցդ. քանզի ելով թաղման ումեմն գերագունի, և ումեմն նուազագունի, և միւսոյ չափաւորի, զմինն ընտրելով՝ դու զմիջինն զայն հրամայես, և գովասանութիւն արարեր պարզաբար: Այլ ես՝ եթէ կին մի իցէ զանազանեալ ճոխութեամբ, և թաղել զնա հրամայիցէ քերթուածովն զգերագոյն թաղումն, թերևս գովեցից. ապա եթէ նուազ ումն և տնանկ այր՝ զայն որ նուազագոյն է թաղումն. և այն որչափ գոյացութեանն է՝ ստացեալ իցէ, և չափաւոր ինքն իցէ, զնոյնն թերևս գովիցէ: Այլ քեզ ոչ այսպէս ասել պարտ է, որպէս այժմիկ ասացեր, չափաւոր ասելով. այլ եթէ զինչ է չափաւորն և որչափ՝ ասելի է. և կամ զայնպիսի բանն՝ մի՛ ևս խորհիս լինել քեզ օրէն:

Կղինիաս. Ճշմարտապէս ասես:

Պղատոն. Ո՞րպէս արդ մեզ, որ կարգեալ իցէ 'ի վերայ օրինացն, ոչ ինչ այսպիսի առեալ 'ի սկզբանն օրինացն՝ այլ վաղվաղակի զոր ինչ պարտ է առնել, և ոչ ասէ իսկ, և 'ի վերայ սպառնալեաց տուրժիւն, առ այլ ինչ դառնայ օրէնս. այլ մխիթարութիւն և հաւանականութիւն օրինադրելոյն և մի ինչ պարգևէ: Այլ որպէս բժիշկ ումն այսպէս և ումն այնպէս, զմեզ սովորեալ է յիւրաքանչիւրում ժամու բժշկել. վերստին յիշեսցուք զերկաքանչիւր յեղանակըն. զի զօրինադիրն աղաչեմք, որպէս և զբժիշկն աղաչեն մանկունք՝ զի հանդարտագոյն յեղանակաւն բժշկիցէ զնոսա. որպէս ասասցուք, իցեն երբեք ոմանք բժիշկք, և ոմանք պաշտօնեայք բժշկացն, սակայն բժիշկք կոչեմք և զնոսա:

Կղինիաս. Բնաւ իսկ կոչեմք:

Պղատոն. Արդ եթէ ազատք իցեն և եթէ ծա-

ռայք, ըստ հրամանի տէրանցն և տեսութեանցն և ըստ հմտութեանցն՝ զարհեստն ստացեալ լինի ըստ բնութեան։ Ոչ որպէս և ազատքն. նոքա իսկ ուսեալք են, այսպէս զիւրեանցն ուսուցանեն մանկունք։ Գիտես արդեւք զայսոսիկ երկու սեռս՝ կոչեցելոցն բժշկաց։

Կղինիաս. Քանզի որպէս ոչ կոչեմք։

Պղատոն. Եւ ընդ նմին իմանաս արդեւք, զի ծառայից և ազատաց եղով հիւանդաց որ 'ի քաղաքին իցեն, զծառայսն իսկ գրեթէ ծառայքն բազում անգամ բժշկեն ընթանալով շուրջ զօրօք, և 'ի բժշկարանսն սպասելով, և ոչ ինչ փոյթ յաղագս ցաւոց իւրաքանչիւրում իւրաքանչիւրոյ 'ի ծառայիցն, ոչ և մի յայնպիսի բժշկացն հատուցանէ, և ոչ առ 'ի նմանէ բան պահանջէ, այլ հրամայելով սմա զթուեցեալսն 'ի հմտութենէ՝ իբրու ստուգապէս գիտելով, որպէս գոռոզ ոմն յանդգնաբար 'ի բաց գնացեալ լինի վազելով առ այլ ոմն հիւանդացեալ ծառայ, և դիւրութիւն այսպէս տեառն իւրոյ պատրաստէ յաղագս մատակարարութեանն հիւանդաց։ Այլ ազատն՝ իբրու յոլովագոյն զազատացն հիւանդութիւնս բժշկէ և մակադիտէ։ Եւ զայսոսիկ քննելով 'ի սկզբանէ իսկ՝ ըստ բնութեան, ըստ հիւանդին, խորհելով իսկ և ընդ բարեկամաց նորա՝ համանգամայն ուսուցանէ զնոյն հիւանդացեալն. և ոչ յառաջագոյն հրամայէ ինչ, նախ քան եթէ երբեք ընդ նմին հաւանեցուցանէ, և յայնժամ հանդերձ հաւանականութեամբ հանդարտեալ միշտ պատրաստելով զհիւանդացեալն, և յառողջութիւն ածեալ, փութայ սմա կեալ այսպէս։ Ո՞րպէս արդ. ա՞յսպէս եթէ այնպէս բժիշկ որ բժշկէ լաւագոյն է. և վարժիչ՝ որ վարժէ երկակի զմինն կատարելով զօրութիւն, եթէ միակի և ըստ վատթարագունին երկոցունց՝ և վայրենագունին 'ի բաց գործելով։

Կղինիաս. Բազում ինչ զանազանի կրկինն, ո՛վ սիրելի։

Պղատոն. Կամիս արդ զի տեսցուք զկրկինս զայս և զպարզս, առ նոյն օրինադրութիւնսն լինելով։

Կղինիաս. Քանզի և ո՞րպէս ոչ կամիմ։

Պղատոն. Բեր արդ վասն աստուծոյն, զի՞նչ արդեւք առաջին օրէն դիցէ օրինադիրն. ո՞չ արդեւք զայն որ ըստ բնութեան է՝ զոր յաղագս լինելութեան սկիզբն է վասն քաղաքաց առաջին զարդարէ գործոցն։

Կղինիաս. Եւ զիա՞րդ ոչ։

Պղատոն. Այլ սկիզբն լինելութեան յամենայն քաղաքաց՝ ո՞չ է արդեւք ամուսնութիւն զուգակցութիւնն և հաղորդութիւնն։

Կղինիաս. Քանզի ո՞րպէս ոչ։

Պղատոն. Եւ ամուսնական օրէնք արդեւք առաջին տայնապին դնիլ բարեւք, թերևս դնելով ըստ ուղղութեան ամենայն քաղաքին։

Կղինիաս. Բնաւ է այդպէս։

Պղատոն. Ասեմք արդ նախ զպարզն, քանզի ունիցի թերևս այսպէս ամուսնանալ իսկ յորժամ ամաց իցէ երեսնից, մինչև ամայ հնգից և երեսնից։ Ապ՝ եթէ ոչ, տուժիցի իսկ ընչիւք և անարգանօք. ընչիւք՝ այսչափ և այս, և անարգանօք այսուիկ և այս։ Որ պարզն իսկ է, յաղագս ամուսնութեան իցէ այսպիսի ինչ. և որ կրկինն է՝ իցէ այսպէս. այլ ամուսնանալ՝ յորժամ ամաց իցէ երեսնից, մինչև ցհնկից և երեսնից. տրամախոհելով իբրու իցէ ճշմարտապէս մարդկային սեռս՝ և բնութեամբ ումեմն հաղորդեալ է անմահութեան, որոց և բնաւորեալ է ամենայն ոք ունել զամենայն ցանկութիւն. քանզի լինելն գովասանելի և ոչ յանանուն կալն վախճանելով։ Այսպիսոյ ումեմն է ցանկութիւն սեռ. արդ մարդկան է՛ ինչ բնակակից յամենայն ժամանակի, որ իսպառ սմա հետևեալ լինի և հետևեսցի, այսուիկ յեղանակաւ անմահ գոլով, մանկունք մանկանց թողլով՝ նոյն և մի գոլով միշտ լինելութեանն՝ անմահութեամբն հաղորդիլ։ Արդ յայսմանէ կամաւ զրկել զանձն իւր՝ ոչ երբէք է՛ սուրբ, և նախախնամութեամբ 'ի բաց զրկէ որ և մանկանց և կնոջ ծուլացող իցէ։ Հաւանելով արդ օրինացն՝ առանց տուժի արդեւք 'ի բաց փոխեսցի՝ թերևս

ոչ հաւանելով իսկ և ոչ ամուսնանալով ամաց ե-ղեալ հնգից և երեսնից՝ տուրժեսցի ըստ ամի ամի՝ այսչափ և այս։ Չի մի Թուիցի զմիաբանուԹիւնն[1] շահ իւր և դիւրուԹիւն բերել, և ոչ հաղորդեսցի պատուոց այնոցիկ՝ որովք համբակագոյնքն 'ի քաղաքին զծերագոյնքն իւրեանց պատուեն յիւրաքանչիւր ժամու։ Զայս ինչ արդ առ օրինին այնմիկ լսելով՝ պարտ է յաղագս միոյ իւրաքանչիւրում տրամախոհել, Թէ զինչ կրկին սոցա։ Այսպէս պարտ է սոցա լինել. երկայնուԹեամբն զփոքրագոյնն, վասն հաւանեցուցանելոյն, իսկ համանգամայն և սպառնալոյն, Թէ սպառնալովն միայն վարելով պարզ լինելն երկարուԹեամբ։

Մեգիլլոս. Ըստ լակոնական յեղանակին, ով սիրելի, զնուազագոյնն հանապազ նախապատուել այսոցիկ։ Սակայն գրոց եԹէ ոք ինձ հրամայէ լինել դատաւոր զինչ ախորժեցից Թերևս 'ի քաղաքին դնել զգրեալս, զյերկարագոյնսն ընտրեցից։ Եւ արդ յաղագս ամենայն օրինացս ըստ այսորիկ, եԹէ լինիցի իւրաքանչիւր յարացոյց, զնոյն զայս Թերևս ընտրեցից. այլ սակայն և Կղինիասայ սմա հաճիլ պարտ է յայժմիկ յօրինագրեալս. քանզի սորա քաղաքս որ այժմիկ է՝ այսպիսի օրինօքս վարիլ տրամախոհի։

Կղինիաս. Բարւոք իսկ, ով Մեգիլլէ, ասացեր։

Պղատոն. Այսուհետև յաղագս բազում կամ սակաւ գրոց առնել զբանն՝ յոյժ պարզմտուԹիւն է. քանզի կարծեմ եԹէ լաւագոյնքն, և ոչ սղալագոյնքն[2] կամ երկարագոյնքն պատուելի են։ Եւ այն իսկ որ յայնմիկ ասացեալ յօրէնքս են՝ ոչ կրկնակիւ միւսքն քան զայլսն զանազանեալ են միայն յառաքինուԹիւն պիտոյից. այլ որպէս ասացաւ այժմիկ՝ երկակի բժշկացն սեռ ուղղագոյն յարադրեցաւ։ Այլ ըստ այսորիկ ոչ և մի ոք կարծեցեալ է տրամախոհիլ ևս երբէք յօրինադրացն. իբրու պարտ

1 Այս է՝ զամուրի կեանսն կամ զմիաբնակուԹիւնն, ըստ յունին։

2 Այսպէս յօրինակին. սղագոյնք կամ համառօտագոյնք ըստ բնագրին։

գոլ երկուօքն վարիլ առ օրինադրութիւնս՝ հաւա-
նականութեամբ և բռնութեամբ, որչափ հնար իցէ
ըստ անեզր թախանձութեան խրատու միւսովն վա-
րիլ. քանզի ոչ հաւանականութեամբ խառնելով
զմարտն օրինադրեն՝ այլ միայն անխառն բռնու-
թեամբ։ Այլ ես, ով երանելիք, և երրորդ ինչ տա-
կաւին ՝առ օրէնսն տեսանեմ զոր ինչ պարտ է լինել,
բայց այժմիկ լինել ոչ և մի ուրուք[1]։

Մեգիղոս. Զորպիսի՞ ինչ ասես։

Պղատոն. Յայսցանէ այժմիկ առ 'ի մէնջ ընտրե-
լոցն ըստ աստուծոյ ինչ լեալ. քանզի գրեթէ յորմէ
հետէ յաղագս օրինացն սկսաք ասել, 'ի վաղոր-
դայնէ միջօրեայ իսկ եղև. և յայսմիկ ամենագեղե-
ցիկ հանգստեանս եղաք ուրուք՝ այլ ոչ ինչ քան եթէ
յաղագս օրինաց տրամաբանելով. և զօրէնս ասել
այժմիկ սկսանիլ թուի ինձ։ Այլ յառաջագոյնսն էր
ամենայն նախերգան օրինացն։ Եւ զի՞նչ ասացի զայ-
սոսիկ։ Զայս ինչ ասել կամելով, զի 'ի բանի՝ ամենայն
և որչափ ձայն հաղորդեալ է, նախերգանք իսկ
գոն. և գրէ եթէ իբրու վերստին շարժութիւնք ոմանք
ունելովն էր արհեստ սկսումն և պիտանացու առ 'ի
կատարել զհանդերձեալն 'ի փանդեռնահարական եր-
գոց, ասելով երբեք օրինացն և ամենայն երաժշտի
նախերգան սքանչելապէս փութացեալ առաջի ե-
դեալ է։ Սակայն այնոցիկ որ ճշմարտապէս օրէնք
են, զորս քաղաքական գոլ ասեմք, ոչ և սոքօք եր-
բեք ոչ ասաց ինչ նախերգան. և ոչ յանձն առնու
եղեալ արտաբերեաց 'ի լոյս՝ իբրու ոչ գոլով բնու-
թեամբ։ Այլ մեզ այժմիկ եղեալ դեգերումնս իբրու
ինձ թուի որպէս գոն. և արդ այժմիկ կրկին ասա-
ցեալ օրէնքս՝ թուեցան ոչ գոլ պարզաբար այսպէս
երկինք, այլ երկուք ոմանք օրէնք. իսկ և նախերգան
օրինիս՝ որ և հարստահարական հրամանի նմանեալ,
ասացաւ կարգաւորութեամբ բժշկացն՝ զորս ասա-
ցաք անազատք՝ զայս ինչ գոլ օրէն անապական։ Իսկ
զյառաջագոյնն քան զայս ասացեալն հաւանական

1 Այս ինքն՝ այժմիկ ոչ ուրեք 'ի կիր արկեալ։

տուեալ 'ի ձեռն սորա ճշմարտապէս իսկ գոլ հաւանական: Սակայն նախերգանի զըստ... Նիցն ունելով զօրութիւն՝ քանզի հաշտաբար, և վասն հաշտութեանն՝ քաջուսումնագոյն, զկարգաւորութիւնն, որ և օրէնք է ընդունիցի, որով զօրէնսն օրինադիրն ասէ, 'ի սակս այսորիկ՝ ասել ինձ երևեցաւ ճառս այս ամենայն, զոր և հաւանեցուցանելով տասց ասացողն: Վասն որոյ արդ ըստ իմոյ բանիս՝ նոյնս այս նախերգան, այս ոչ բան թերևս ուղղորդաբար տուեալ լինիցի, գոլով օրինացն զայս արդարացեալ: Զինչ յետ այսորիկ թերևս ասել ախորժեցից: Զայս ինչ, իբրու զօրինադրին նախ քան զամենայն օրէնսն հանապազ պարտ է ոչ անմասն զսորա առնել 'ի նախերգանէ. և ըստ իւրաքանչիւրում ըստ որում 'ի միմեանց տարբերեալ լինին՝ որչափ և այժմիկ ասացեալքս զանազանեցան:

Կղինիաս. Զիմն իսկ ոչ արդեւք այլաբար օրինադրել հրամայիցէ մեզ այնմիկ որ այսոցիկ մակացու է:

Պղատոն. Բարեւք իսկ այժմիկ, ով Կլինիա, թըւիս ինձ այսչափ զայս..... ամենայն օրինացն իցէ նախերգան. և զի ամենայն օրինադրո..... պարտ է ամենայն նախադրել բանին զինուորեալն.....[1] քանզի ոչ ինչ փոքր է, զոր յետ այսորիկ ասելոց եմ, և ոչ սուղ ինչ զանազանեալ, քան եթէ հաւաստի կամ ոչ հաւաստի՝ սոցա լսելի առնել: Իսկ արդ յաղագս մեծագունից և փոքրագունից տուեալ օրինացն թէ նմանապէս նախերգել հրամայեմք, ոչ թերևս ուղղորդաբար ասիցեմք. քանզի և ոչ երգի, և ոչ ամենայն բանի՝ զայս առնել պարտ է. և մանաւանդ ընաւորեալ իսկ գոլ ամենեցուն, այլ ոչ է պարտ վարիլ. այլ նորին ճարտասանին իսկ և երգողին և օրինադրին զայսպիսի ինչ յիւրաքանչիւր ժամու հրամայել պարտ է:

Կղինիաս. Ճշմարտապէս իսկ թուիս ինձ ասել. այլ մի ևս, ով սիրելի, դեգերումն յոլովագոյն ծուլութեանս արասցուք, այլ առ բանս եկեսցուք, և 'ի

1 Այսպէս թերի 'ի մերում օրինակի:

սոցանէ սկիզբն արասցուք, եթէ քեզ սիրելի է որոց ոչ իբրու նախերգելով ասացեր յայնժամ։ Դարձեալ արդ, որպէս ասեն այնոքիկ որ զխաղալիսն առնեն, լաւագունիցն սկիզբն կրկին իցէ, վերստին սկիզբն արասցուք՝ իբրու նախերգան, այլ ոչ զհանդիպեալ բանն կատարելով որպէս այժմիկ, և ընկալցուք նոցունց սկիզբն խոստովանելով նախերգել։ Իսկ արդ յաղագս աստուծոցն պատուոյ, և նախածնից իսկ հաճոյութեան, և այժմ ասացեալքս բաւական են. այլ 'ի կարգին փութասցուք ասել մինչև ամենայն նախերգանն բաւականապէս ասացեալ թուիցի քեզ. և յետ այսորիկ արդեւք զնոյն օրէնսն պահեսցես ասելով։

Պղատոն. Ո՞չ ապաքէն յաղագս աստուծոցն իսկ և այնոցիկ որ յետ աստուծոցն են, և յաղագս կենդանի ծնողաց և վախճանելոց, յայնժամ բաւականապէս նախերգեցաք, իբրու այժմիկ ասեմք և զմնացեալսն ես յայսմանէ. երևի ինձ զի դու հրամայես այժմիկ իբրու լոյս ածել։

Կղինիաս. Ամենևին իսկ է այդպէս։

Պղատոն. Այլ սակայն յետ այսպիսեացս իբրու պարտ է զառ հոգին և մարմինսն և գոյացութիւնսն, յաղագս փութոյ իսկ և ներողութեան ունել. այլ պատշաճ է և հաղորդ տարածմամբ ասաղին իսկ և լսողին խրատու՝ ըստ որում հնար է լինել յաջորդք։ Զայսոսիկ արդ մեզ զնոյնս յետ այնոցիկ ճշմարտապէս ասել իսկ և լսել պարտ է։

Կղինիաս. Ուղղապէս։

# ՊՂԱՏՈՆԻ

# ՕՐԷՆՔ ԵՒ ՕՐԷՆՍԴՐՈՒԹԻՒՆ

## ՀԻՆԳԵՐՈՐԴ



*Պղատոն.* Լուիցէ արդ ամենայն ոք, այն իսկ որ այժմ յաղագս աստուածայնոցն և սիրելի նախահարցն զասացեալսն լուաւ։ Զի ամենայն նորին ստացուածոցն՝ յետ աստուծոցն՝ հոգի աստուածայինն գոլով և ընտանեգոյն. և սորայս ամենայն և ամենեցուն երկակի է. լաւագոյնքն իսկ և վեհագոյնքն տիրելով, և նուաղքն և վատթարագոյնքն ծառայք գոլով։ Արդ 'ի նոցանէ զտիրեալքն՝ միշտ նախապատուել պարտ է, քան եթէ զայն իսկ որ ծառայքն են։ Այսպէս և զհոգին իւր, յետ աստուածայնոցն որ տէրք են՝ սոցունց հետևելով պատուել պարտ է ասելով երկրորդաբար՝ ուղղապէս հրամայեմք. և պատուէ՝ իբրու ասելի է տալս, 'ի մէնջ ոչ ոք ուղղապէս. սակայն պատուել կարծէ. զի աստուածային ինչ պատիւն գոլով, և 'ի չարեացն պատուական ինչ ոչ է։ Իսկ այն որ վարկանի բանիւք ոմամբ կամ պարգևօք աճեցուցանել զսա. և կամ անսալով ոմանց, ոչ ինչ լաւագոյն 'ի վատթարագունէ զսա գործելով, պատուել զսա թուիցի. բայց առնիցէ զայս ոչ իսկ։ Ա. Ցայնժամ վաղվաղակի մանուկ լեալ մարդ ամենայն՝ վարկանի բաւական գոլ զամենայն ինչ գիտել,

և պատուել կարծէ գովելով զհոգին իւր, և յօժարացեալ յորդորէ գործել զոր ինչ և՛ կամիցի. բայց այժմ իսկ ասացեալս է՝ իբրու առնելով զայսոսիկ վնասէ զնա և ոչ պատուէ։ Բայց պարտ է, որպէս ասեմք, յետ աստուծոցն երկրորդ գոլ սմա։ Բ. Եւ ոչ յայնժամ՝ յորում մարդ սխալանաց իւրոց իւրաքանչիւր ժամու ոչ զանձն իւր պատճառ վարկանիցի և յոլովագոյն չարեացն և մեծագունիցն, այլ զայլս. և զանձն իւր միշտ 'ի պատճառէն որոշէ՝ որպէս թուի իւր՝ պատուելով զհոգին իւր. սակայն բազում ի՛չ կարօտանայ գործել զայս ինչ, քանզի այնպէս վնասի մանաւանդ։ Գ. Եւ ոչ յայնժամ, յորում հեշտութեանցն առանց բանին և գովասանութեան օրինադրին՝ ներուժիւնս առնիցէ. և յայնժամ ոչ պատուէ, այլ անարգէ չարեօք և զղջմամբ լցուցեալ զնա։ Դ. Եւ ոչ յայնժամ, յորում հակառակաբար՝ զգովեցեալսն աշխատանս և զերկիւղս և զվէրս և զտրտմութիւնս ոչ համբերժեսցէ ժուժկալութեամբ, այլ հնազանդի սոցունց. յայնժամ ոչ պատուէ՝ այլ անպատիւ գործիցէ զնա՝ զայսպիսիս ամենայն առնելով։ Ե. Եւ ոչ յորժամ զկեանս ամենևին բարի գոլ վարկանիցի՝ պատուէ, այլ անարգէ մանաւանդ զնա և յայնժամ. քանզի զայն իսկ որ յետ մահու են իրս՝ չարք գոլ հոգւոյն վարկանելով հպատակի, և ոչ ընդդիմամարտի՝ ուսուցանելով և յանդիմանելով, իբրու ոչ գիտէ, և ոչ եթէ ներհակապէս բնաւորեալ են, մեծագոյնք գոլ մեզ բարութիւնք՝ իրսն որ առ աստուածսն են անտանօր։ Զ. Եւ ոչ սակայն նախ քան զառաքինութիւն պատուիցէ ոք զգեղեցկութիւնն. այս է այլ ոչ ինչ՝ քան եթէ հոգւոյն ճշմարտապէս ամենևին անարգանս. քանզի հոգւոյ՝ զմարմին պատուականագոյն ասէ գոլ բանս այս ստելով. զի ոչ ինչ է երկրածին՝ երկնայնոյն պատուականագոյն. այլ որ յաղագս հոգւոյ այլաբար կարծիցէ, ոչ գիտէ իբրու առ սքանչելի ումեմն ստացուածի՝ առ այսմիկ ծուլանայ։ Է. Եւ ոչ իսկ, յորժամ ինչք փափաքի ոք ստանալ ոչ բարեւք, և կամ ստացեալ ոչ դժուարապէս բերիցէ կաշառօք, թերևս պատուէ յայնժամ զհոգի

իւր։ Սակայն յայսմանէ իցէ ամենեւին պակասեալ, քանզի զպատուականն նորին ամենեւին և զգեղեցիկն 'ի բաց մատնէ փոքումբ ոսկով. զի ամենայն որ 'ի վերայ երկրի և ներքոյ սորա է ոսկի՝ զառաքինութիւն ոչ արժէ։ Եւ որպէս ասելի է 'ի միասին, որչափ օրէնսադիրն իսկ գարշելի է, և չար գոլ թուելով կարգեսցէ, և զներհականն սոցունց՝ բարիք և գեղեցկութիւնք, յոմանց 'ի բաց կալ ոչ կամեսցի ամենայն հնարաւ, և առ միւսն խորհիլ՝ ըստ ամենայն 'ի միասին զօրութեան, ոչ գիտէ սոքօք ամենեցուն ամենայն մարդ զհոգին աստուածային՝ գոլ անարգագոյն և խայտառակագոյն տրամակայեալ առ սմա։ Քանզի զասացեալն մեծագոյն դատն չարագործու՝ ոչ ոք է՝ իբրու ասելի է տալս խորհի, և մեծագոյն իսկ՝ նմանել արանց այնոցիկ որ չարքն են. և նմանելովն 'ի բարեացն իսկ փախչել արանց, նաև բանից, և 'ի սոցանէ 'ի բաց անջատիլ, և առ չարագոյնսն յարիլ՝ գնալով զհետ սոցունց շարամերձութեանց. և առ այսպիսիսն բնաւորելով՝ հարկէ առնել և կրել՝ զոր ինչ բնաւորեալ են միմեանց այսպիսիքս՝ առնել և ասել։

Արդ զայս ինչ ախտանալն իրաւունս ոչ է. քանզի բարի է արդարն և իրաւունսն այլ՝ պատուհաս անիրաւութեան հետեւեալ ախտի։ Որոյ իսկ որ հանդիպեսցի, և որ ոչն հանդիպեսցի՝ եղկելի է. ոմն ոչ բժշկելով, և միւսն՝ զի այլք բազումք կեցցեն։ Վեհագունիցն հետեւիլ, և վատթարագունիւքն հնարաւորել լինել վեհագոյն, և զայսոսիկ՝ իբրու արիապէս կատարել հոգւոյ. արդ քաջաբնակագոյն ստացուած մարդոյ ոչ իցէ առ 'ի փախչել իսկ 'ի չարէն և հաճելով զհետ երթալ ամենեցուն արիագունին, և ընդունելով իսկ հաղորդաբար բնակիլ ընդ սմա զմնացեալն 'ի կենցաղէ իւրմէ։ Վասն այսորիկ եր-

1 Զմթին տողս հայ թարգմանչին՝ այսպէս պարզել 'ի դէպ է ըստ բնագրին. Քանզի որ զչար գործիցէ, ոչինչ փոյթ յանձին ունի խոկալ վասն պատուհասին զոր միայն նմա կրել վասն յանցանացն. և պատուհասն է նմանել...։

կրորդ կարգեցաւ պատիւ։ Իսկ զերրորդն ամենայն ոք թերեւս զայս իմանայ՝ զմարմնոյն գոլ զբնութեան պատիւն։ Եւ զպատիւն իսկ գիտել պարտ է, թէ ոյք 'ի սոցանէ ճշմարիտք եւ ոյք ապախտք. եւ զայս իսկ օրինադրի երեւի ազդեալն զայսոսիկ, եւ այսպիսի իսկ ոմանք գոլ զսոսա. պատուական գոլ մարմինն ոչ գեղեցիկն եւ ոչ զօրաւորն, եւ ոչ որ արագութիւն ունիցի, եւ ոչ մեծն, եւ ոչ առողջն, թէպէտ՝ եւ բազմաց թուի այսոքիկ. սակայն եւ ոչ սոցունց ներհականքն. այլ այն որ 'ի մէջ ամենայն ունակութեանս այսմիկ հասանիցեն՝ ողջախոհագոյնք համանգամայն եւ զգուշագոյն՝ երկար գոլով. քանզի ոմանք մեղկեալք եւ յանդուգք առնեն զհոգիսն, եւ միւսքն 'ի վայր կործանեալք եւ անազատք։

Այսպէս եւ ընչիցն եւ արարածոցն ստացուածն եւ պատիւն ըստ այսմիկ յեղանակիս ունիցի։ Իսկ գերագոյնքն իւրաքանչիւրքն 'ի սոցունց՝ թշնամութիւնք եւ հակառակութիւնք առ քաղաքս եւ առ ռամիկս գործելով, եւ պակասեալսն իբրու բազում անգամ ծառայութիւնք։ Արդ մի՛ ոք ընչասէր լինիցի 'ի սակս մանկանց, զի փարթամագոյն մնացուսցէ զսոսա[1]. քանզի ոչ նոցա եւ ոչ քաղաքի իսկ է այս ինչ լաւագոյն. զի համբակացն առանց պակասութեան գոյքն[2], որ կարեւորացն ոչ կարօտանայ, ամենեցուն երաժշտագոյն է եւ արիագոյն. քանզի ձայնակցելով մեզ ըստ ամենայնի, եւ շարայարմարեալ ընդ մեզ՝ անտրտում կենցաղս գործիցէ։ Եւ մանկանց պարտ է բազում պատկառանս, եւ ոչ ոսկի մնացուցանել։ Եւ կարծեցուք սաստելով համբակացն, յորժամ ամօթ ոչ ունիցին, զայս ինչ մնացուցանել. եւ է իսկ յայսմիկ հրամանէս ոչ միայն համբակացն լինելով, զոր ինչ հրամայեն ասելով եթէ պարտ է ամաչել ամենայն համբակի։ Բայց ներխոհեմ օրինադիրն՝ երիցագունիցն մանաւանդ հրամայէ 'ի համբակացն ամաչել, եւ ամենեցուն յաւէտագոյն խորշել, գուցէ տեսցէ

1 Այս է՝ փարթամագոյն թողցէ նոցա ժառանգութիւն։
2 Յօրինակին՝ գոյնքն. ուղղեցաք ըստ յունին։

ոք զսա 'ի համբակացն, և կամ լուիցէ գործելով, և կամ ասելով ինչ գարշելի. քանզի ուր ծերք անվեհերք իցեն, հարկ է և համբակացն աստանօր անպատկառագոյնք լինել։ Քանզի խրատ համբակացն և ծոցունց միանգամայն է զանազանեալ, ոչ խրատելն այլ զոր ինչ այլք ուրուք ուսուցանելով ասիցէ ոք զայն ինչ՝ այլ ինչ առնելով։

Ի կենցաղումս երևելիս, և զազգակցութիւն աստուծոցն հոմածին, և զամենայն հաղորդութիւն նոյն բնութեան արեանս կցորդեալ՝ պատուելով և պաշտելով բարեմիտ թերևս լինել՝ զորս աստուածս 'ի սերմն մանկանց իւրոց կալցի ըստ համեմատութեան։ Եւ սակայն զբարեկամացն իսկ և զընկերացն առ 'ի կենցաղիս կաճառմունս, հաշտեալս ստասցի ոք թերևս մեծագոյն իսկ և պարկեշտագոյնս՝ զնոցունցն առ ինքն պաշտօնն վարկանելով՝ քան զոր նոցունցն թուիցի, և նուազս զիւրսն խորհելով առ բարեկամն շնորհս քան զբարեկամսն իսկ և զընկերսն։ Սակայն առ քաղաք և քաղաքացիք երկարաւ է արիագոյն՝ այն որ նախ քան զընթացսն՝ յամենայն նահատակութիւնսն պատերազմականսն իսկ և առ խաղաղականսն յաղթել թուիցի, ընդունելով զպաշտօնն ընտանի օրինացն, իբրու պաշտելով ամենայն մարդկան՝ գեղեցկագոյն 'ի կենցաղումս։

Զսոսա և առ օտարսն իսկ խորհել պարտ է իբրու նշանակք գոյն սրբագոյնք[1]. զի գրեթէ ամենայն օտարացն և առ օտարսն սղալանք՝ քան զայնոքիկ որ քաղաքացւոցն են յաւէտագոյնք յաստուած ոմն յանձնեալ են. քանզի միացեալ[2] գոլով օտարն յընկերացն իսկ և յազգականացն՝ ողորմելի իցէ աստուծոց և մարդկան։ Արդ որ կարողն իցէ պատուհասել զսա՝ առ յօգնել սմա լիցի յօժարագոյն. քանզի կարէ զանազանապէս հիւրընկալն իւրաքանչիւրոց դևն՝ և աստուածն հիւրընկալին հետևելով Արամազդայ։ Քանզի բազում բարեպաշտու-

1 Այսպէս յօրինակին. յոյն բնագիրն ὡς ἁγιώτατα ξύμβολαια ονῖα.
2 Յոյնն՝ մենացեալ ἔρημος.

թիւն է այնմիկ, որ փոքր ինչ մեղս առ օտարսն մեղանչելով 'ի կենցաղումն՝ գնացեալ 'ի վախճանն իւր հասանել։ Եւ քան զօտարսն իսկ, և առ վայրին բնակիչքն զսխալանքն՝ այն որ առ ծառայքն լինիցի մեծագոյն մեղք են իւրաքանչիւրոց. զի առաջի որոյ վկայի ծառայն զծառայութիւնն խոստացաւ՝ հանդիպեցաւ առ 'ի յաստուծոյ խոստմանց. զի պահապան լինիցի տարբերելով այնորիկ զինչ կրիցէ սա, որպէս ոչ երբեք առանց պատուհասի մնասցէ որ 'ի տարապարտուց կիրք սոցունց պատահի։

Իսկ արդ յաղագս ծնողաց, և ինքեան և իւրոցն առ քաղաքիւ իսկ և բարեկամք և ազգականք, օտարականս իսկ բնակեալսն 'ի վայրին գրեթէ զկաճառումունսն պատմեցաք։ Բայց թէ որպիսի գոլով ոք թերևս գեղեցկագոյն վարիցէ զկենցաղն՝ պատմելն այսոքիկ հետևի, որչափ թերևս ոչ օրէնք, այլ գովասանութիւն. խրատելով և պարսաւ զիւրաքանչիւրս դիւրաւ բերեալս, մանաւանդ և հաշտագոյնք որ հանդերձեալ են դնիլ՝ օրինացն գործիցէ, այսոքիկ յետ այնոցիկ մեզ ասել պարտ է։ Ճշմարտութիւն արդ քան զամենայն ինչ բարի առ 'ի յաստուծոցն վարկանի, նոյնպէս և 'ի մարդկանէ։ Որոյ հանդերձեալ է լինել երանելի իսկ և բարեբաստ՝ բանէ[1] վաղվաղակի կցորդիցէ, զի իբրու բազում ժամանակ կեցցէ. գոլով ճշմարիտ զի հաւատարիմ է, և անհաւատ իսկ է այնոքիկ՝ որոյ սուտն կամաւ սիրելի իցէ. և այնմիկ որ առանց կամաց անխոհեմ գոլով, ոչ իցէ նախանձելի. քանզի ամենայն ոք առանց բարեկամի է, որ առանց ուսման իցէ և հաւատարմութեան. և ժամանակին յառաջ հասանելով ծանուցեալ 'ի դժուարին ծերութեանն, մերկացեալ զսա յամենայնէ՝ պատրաստեաց առ կենցաղոյն կատարածն. իբրու զի կենդանի գոլով՝ և ոչ ընկերաց և մանկանց գրեթէ նմանապէս որբութեամբ սմա լինիցի կենցաղ. պատուական իսկ է և այն՝ որ ոչ ինչ անիրաւէ։ Բայց այն որ ոչ յորդորէ զապիրատսն

1 Յոյնն՝ 'ի սկզբանէ ἐξ ἀρχῆς.

առ 'ի յանիրաւել՝ յաճախագունի քան եթէ կրկնա-
պատիկ քան զայնոքիկ արժանանայ պատուոյ. քանզի՝
այն իսկ միոյ և սա այլոց բազմաց իցէ արժանի ազդելով
զայլոցն անիրաւութիւն իշխանացն, և այն իսկ որ ըստ
զօրութեան հանդերձ իշխանօքն արգելու զսոսա՝ մեծ-
այրն 'ի քաղաքի և կատարեալն սա կոչեսցի յաղթա-
զգեաց առաքինութեամբ. զայսոսիկ զնոյնս գովասա-
նութիւն և յաղագս ողջախոհութեան պարտ է ասել,
յաղագս խոհեմութեան, և որչափ այլ բարութիւնք
հնարաւորեալ իցէ ոք ստանալ, ոչ միայն սմա ունել՝
այլ և այլոց փոխատրել, և զայն իսկ որ փոխատրողն
իցէ՝ իբրու ծայրագոյն պատուել պարտ է: Իսկ զայն
որ ոչ կարեն՝ բայց կամին, երկրորդ այսմիկ թողուլ:
Իսկ զմախացողսն, և կամաւ ոչ և միոյ 'ի ձեռն բա-
րեկամութեան հաղորդ լեալն բարութեաց ումանց,
զսա իսկ պարսաւել. բայց զստացուածն ոչ մանաւանդ
վասն ստացողին անարգել, այլ ըստ զօրութեան
ստանալ: Եւ վիճաբանութիւն արասցէ առ մեզ ա-
մենայն ոք՝ առանց մախանաց վասն առաքինութեան.
քանզի այսպիսիս աճեցուցանէ զքաղաքս՝ ինքն իսկ
հանդիսանալով, և զայլսն ոչ արգելլով դաւաճանու-
թեամբ: Իսկ որ մախացողն իցէ այլոցն՝ դաւաճա-
նօքն պարտ գոլ թուեցեալ գերագոյն լինել ինքն,
իսկ նուազ տարածի առ ճշմարիտ առաքինութիւնն,
և զայնոցիկ՝ որոց զհանդէսն առնէ, 'ի տրտմութիւն
հասուցանէ բամբասելովն 'ի տարապարտուց, և վասն
այսոցիկ անհրահանգ առնելով զբոլորն քաղաքն 'ի
հանդէս առաքինութեան, փոքրագոյն զսա առ 'ի
բարեպաշտութիւն զիւրն իսկ գործիցէ մասն: Ցաս-
մնատեսակ պարտ է գոլ ամենայն առն, և հեզ իբրու
յաւէտագոյն. քանզի այնոքիկ որ քան զայլսն չարա-
չար են, և կամ դժուարաբոյժ և կամ մանաւանդ
ամենևին անբոյժ յանիրաւութիւնքն, 'ի սոցանէ
այլաբար փախչելով ոչ գոյ, քան եթէ մարտնչելով
և վանելով յաղթել, և ոչ մի ինչ թողացուցանելով
խափանել զսոսա. և զայսոքիկ առանց արիագոյն ցաս-
ման՝ ամենայն հոգւոյ անհնար է գործել: Եւ 'ի
սոցանէ որչափ անիրաւեն իսկ՝ որ բժշկելի իցէ զայն

գիտել պարտ է նախ իսկ. զի ամենայն ապիրատ՝ ոչ անիրաւէ կամաւ իւրով. Թերեւս ստասցի՝ և մանաւանդ առ այն իսկ՝ որ իւրոցն ամենայնի պատուականագոյնք են. և հոգի՝ իբրու ասասցաք, ճշմարտութեամբ է իսկ ամենեցուն պատուականագոյն 'ի ներ իւրում. արդ պատուականին զմեծագոյն չարն ոք կամաւ ընկալցի ոք երբէք, և կեցցէ 'ի կենցաղումն ստանալով զսա: Այլ եղկելի իսկ իցէ արդ ամենեւին որ անիրաւն իցէ՝ և որ զչարիսն ունիցի. բայց ողորմել այնմիկ որ զբժշկելիսն ունիցի պարտ է, և խափանելով զցասումն հեզացուցանել՝ և ոչ ծայրագոյն բարկութեամբ հիգապէս՝ դառնանալով 'ի կատարած հասանիլ: Իսկ այն որ անխառնաբար և առանց մխիթարութեան դիմեալ իցէ 'ի սխալանսն չարաբար իսկ, պարտ է 'ի վերայ սորա հասուցանել զբարկութիւնն. վասն որոյ ցասմնատեսակ վայելել, և հեզ ասեմք յիւրաքանչիւր ժամու պարտ գոլ առն որ բարի է:

Եւ ամենեցուն մեծագոյն չարեաց բազմաց 'ի մարդկանէ բնաւորեալ առ հոգիսն է, որոյ ներութիւն ունելով, ամենայն ոք 'ի բաց փախչելոյ ոչ և մի ունիցի հնար. և այս իսկ է զոր ասեն՝ իբրու բարեկամ անձին իւրում[2] բնութեամբ ամենայն մարդ իսկ է, և ուղղապէս ունի զայսպիսի գոլն. բայց ճշմարտութեամբ իսկ ամենայն մեղաց վասն յոյժ անձին իւրոյ բարեկամութեանն՝ 'պատճառ իւրաքանչիւրոյ լինիցի յիւրաքանչիւրում ժամու: Զի կուրացեալ իցէ առ սիրեցեալն սիրողն, իբրու իսկ զիրաւացիսն և զբարիսն և զգեղեցիկսն չարաբար դատէ զիւրն, քան զճշմարիտն նախապատուել պատշաճ միշտ վարկանելով. զի ոչ յանձն իւր, և ոչ յիւրսն պարտ է առն որ մեծ լինել հանդերձեալ է փափագիլ, այլ յիրաւացիսն եթէ առ 'ի յինքենէ, և եթէ առ 'ի յայլմէ ումեքէ մանաւանդ գործելով հանդիպլին 'ի նորին իսկ այսօրինակ սխալանացն,

1 Յոյնն՝ իգապէս:
2 Սէր անձին կամ անձնասիրութիւն՝ ըստ բնագրին:

և զանուսումնութիւն որ առ ինքեան իցէ՝ կարծեն իմաստութիւն գոլ եղև ամենեցուն։ Վասն որոյ ոչ գիտելով, իբրու ասելի է բանս ոչ ինչ՝ կարծեմք զամենայն ինչ գիտել, ոչ յորդորելով զայլս զոր ոչ գիտեմք գործել, հարկիմք մեղանչել ինքեան գործելով. վասն որոյ պարտ է ամենայն մարդոյ փախչել 'ի յոյժ սիրելոյն զանձն իւր. և վեհագունին իւրոյ զհետ երթալ ամենայնի իսկ պատշաճ, ոչ և մի ինչ ամօթ առ այսուիկ առաջի իւր դնելով։ Բայց զայնոքիկ որ փոքրագոյն այսոցիկ, և բազում անգամ ասելով իսկ, են սակայն պիտանացու քան սոցա, ոչ է պարտ նուազ ասել անձին իւրոյ վերստին յիշեցուցանելով. որպէս զի ուսմանն 'ի բաց հոսելով՝ միշտ պարտ է զներհականն 'ի վերայ հոսել, և վերստին յիշելութիւն՝ կալթիլ է խոհեմութեան 'ի բաց պակասելոյ։ Վասն որոյ 'ի ծիծաղելեաց խափանել պարտ է և յարտասուաց հրաշիցն. և պատուիրել ամենայնի՝ ամենայն առն բոլորովին զամենայն ուրախութիւն թաքուցանելով և զվիշտս՝ հանդարտաձև գոլ փութալ, և 'ի բարեբաստ կողմն կալով իւրաքանչիւրում հրեշտակին պատահմանց՝ իբրու առ բարձրագոյնսն և 'ի ներհակագոյնսն գործովք ամամբ ձգելով զնա. և յուսալ միշտ բարութեանցն՝ զորս պարգևիցէ աստուած. և զ'ի վերայ հասեալ աշխատութեանց փոխանակ մեծագունից՝ նուազագոյնս առնել. և այժմ ...լոցն առ 'ի լաւագոյնսն փոխաբերութիւնս՝ ներհականսն ... ցունց միշտ ամենեցուն հասանել հանդերձ բարի հանդիպմամբ։ Այսոքիւք արդ յուսօքս իւրաքանչիւրոյ կեալ պարտ է, և այսոցիկ ամենեցուն յիշմամբս՝ յոչ և մի ինչ խնայել. այլ միշտ ըստ ձեռման իսկ և խաղալեաց՝ յիշեցուցանելով այլոց՝ և անձին իւրոյ։

Հաւաստի այժմ իսկ յաղագս խորհրդոց՝ որպէս պարտ է խորհիլ, և յաղագս անձին իւրոյ իւրաքանչիւրոյ իրի թէ որպիսի գոլ պարտ է, գրեթէ ասացաւ որչափ աստուածայինքն. իսկ մարդկայինն այժմ առ 'ի մէնջ ոչ ասացաւ. բայց պարտ է, քանզի ընդ մարդկան տրամաբանեմք և ոչ ընդ աստուծոյ,

է իսկ բնութեամբ մարդկային, մանաւանդ հեշտութիւնք և տրտմութիւնք և ցանկութիւնք. առ որս հարկ է մահկանացու կենդանւոյն անարհեստաբար իբրու դաւանել իսկ և կախեալ գոլ մեծագոյն ջանօք։ Պարտ է արդ զկենցաղն գեղեցկագոյն գովել՝ ոչ միայն զի ձևով յաղթէ առ 'ի բարեփառութիւն, այլ և որ կամիցի՝ և ոչ համբակ գոլով փախստական 'ի սմանէ 'ի բաց լինիցի՝ յաղթէ և այսուիկ զոր ինչ ամենեքեան խնդրեմք, խնդալն յոլովագոյն, և նըւազ տրտմելոյն առ ամենայն կենցաղն. և որպէս լիցէ այս հաւաստի՝ թերևս ճաշակիցէ ոք ուղղապէս պատրաստաբար, և յոյժ երևեսցի։ Եւ ուղղութիւնն եթէ ո՞ ոք է՝ զայս իսկ առ 'ի բանէս պարտ է առնըլով դիտել, եթէ այսպէս մեզ ըստ բնութեան է բնաւորեալ եթէ այլաբար առանց բնութեան։ Զկենցաղ առ կենցաղումն՝ պարտ է զհեշտագոյն և զտրտմական այսպէս դիտել։ Զհեշտութիւն ախորժեմք գոլ մեզ, և զտրտմութիւն ոչ կամիմք և ոչ ախորժեմք. և զչէզոքն 'ի սոցանէ փոխանակ հեշտութեան ոչ ախորժեմք, բայց փոխանակ տրտմութեան ախորժեմք. և զտրտմութիւն նուազ՝ հանդերձ մեծագոյն հեշտութեամբ ախորժեմք, բայց զնուազ հեշտութիւն հանդերձ մեծագոյն տրտմութեամբ ոչ ախորժեմք, և հաւասար առ հաւասարի զերկաքանչիւրսն զսոսա ոչ ախորժեմք. և ոչ իբրու ոչ ախորժեմք՝ ունիցիմք թերևս ասել հաւաստի այսօքիկ։ Իսկ ամենայն բազմութեամբ և մեծութեամբ, և ուժգնութեամբք հաւասարութեամբք իսկ, և որչափ ներհակք են ամենեցուն այսպիսեացս ախորժս՝ տարբերելով իսկ և ոչ ինչ տարբերելով առ կամս իւրաքանչիւրոց։ Այսպէս արդ այսոցիկ 'ի հարկէ զարդարելով, յորում իսկ կենցաղ երգոյ բազում երկաքանչիւրս և մեծամեծ և ուժգինք, և գերազանցէ հեշտութեանցն իրս՝ ախորժեմք. և յորում ներհականս՝ ոչ ախորժեմք. և յորում իսկ սակաւս երկաքանչիւր և փոքունք և համդարտականս, և գերազանցէ տրտմականս՝ ոչ ախորժեմք. բայց յորում ներհականն սոցա՝ ախորժեմք, և յորում կենցաղի հաւասարին մա-

սունքն սոցա, որպէս յառաջագոյն պարտ է տրամախոհիլ՝ զհաւասարամասն կենցաղն իբրու գերազանցելով։ Իսկ այնմ որ սիրելին է մեզ՝ ախորժեմք, և զայնոսիկ որ թշնամօքն՝ ոչ ախորժեմք զամենայն զկենցաղս մեր՝ իբրու սոքօք են կապակցելով բնաւորեալ. և պարտ է զմտաւ ածել թէ զորս բնութեամբ ախորժեմք. ապա եթէ բայց յայսցանէ առեմ ինչ թերևս ախորժել՝ վասն անգիտութեան և անհմտութեան գոլով կենցաղոյն ասեմք զայսոսիկ։ Արդ եթէ ոյք ումանք և որչափ կենցաղք են, յաղագս որոց պարտ է ընտրել զախորժելին իւր, և զկամաւորն և զանախորժելին իսկ, և զակամայն գիտելով. և յորէնսն ինքեամբ կարգելով սիրելին՝ համանգամայն և զհեշտըն և զպարիագոյնն իսկ և գեղեցիկն ընտրելով կեալ այնպէս՝ իբրու իցէ մարդոյ իսկ երջանկագոյն, ասեմք իսկ ողջախոհ կենցաղ մի գոլ, և խոհեմական մի, և մի զարիագոյնն և զամբողջ կենցաղն մի կարգեսցուք. և սոցունց չորս գոլով ներհականս այլս չորս, անզգամ, անարի, զեխ, և հիւանդոտ։ Արդ զողջախոհն իսկ կենցաղն՝ որ ճանաչեն իբրու հեզագոյն իցէ 'ի վերայ ամենեցուն, և հանդարտագոյն տրտմութիւնք, և հանդարտատեսակ հեշտութիւնք և կակուղ ցանկութիւնք և տռփմունք, ոչ մոլեկանք առտուելով. իսկ զեխն խստագոյն 'ի վերայ ամենայնի, և յուժգին իսկ տրտմութիւնք և յուժգին հեշտութիւնք, և զուգակատարած իսկ, և շամբուշ ցանկութիւնք, և տռփմունք իբրու մոլեկանք առտուելով գերազանցելով իսկ յողջախոհ կենցաղումն հեշտութեանցն զթշուառութիւնսն իսկ, և բազմութեամբ և հոծութեամբ. վասն որոյ այն իսկ հեշտագոյնն է մեզ 'ի կենցաղաց, և սա տրտմականագոյն 'ի հարկէ պատահի ըստ բնութեան լինել, և այնմ իսկ որ կամեսցի կեալ հեշտութեամբ, ոչ է տակաւին պատշաճ կամաւ կեալ զեխութեամբ. այլ աւասիկ յայտ է իբրու եթէ զի այժմ ասացեալս՝ ուղիղ է ամենայն ոք 'ի հարկէ, և ակամայ է զեխ, զի կամ վասն անուսումնութեան և կամ վասն անժուժկալութեան, և կամ վասն երկաքան-

չիւրոց սոցունց ողջախոհութեան կարօտացեալ գոլով, կեցցէ ամենայն մարդկային ամբոխս։ Զայսոսիկ իսկ յաղագս հիւանդոտ և ամբողջ կենցաղի տրամախոհիլ պարտ է. իբրու ունին իսկ հեշտութիւնք և տրտմութիւնք, և գերազանցեն իսկ հեշտութիւնքն զտրտմութիւնքն յողջութեանն, և տրտմութիւնքն զհեշտութիւնքն 'ի հիւանդութեանն, բայց մեզ ախորժմն կամաւորութեանն կենցաղն ոչ է զի տրտմականն գերազանցէ, այլ ուր մանաւանդ գերազանցի, զայսոսիկ կենցաղն հեշտագոյն ընտրեցաք։

Արդ ողջախոհն քան զեխն, և խոհեմականն քան զանզգամն։ Ասասցուք թերևս և որ արիութեանն է քան զանարիութեանն, նուազագոյնք և փոքունս և անգայտ՝ ունելով զերկաքանչիւրս հեշտութեանցն իրիւ՝ երկաքանչիւրն զերկաքանչիւրն գերազանցելով տրտմութեանն իրիւն այնոցիկ գերազանցելով զսոսա. արիագոյնն իսկ անարիագունին և խոհեմականն անզգամին յաղթիցեն, իբրու հեշտագոյնք գոլ կենցաղացն, քան զկենցաղսն ողջախոհին և արիագունին և խոհեմականին և ամբողջին՝ քան զանարին և զանզգամն, և զեխն իսկ և զհիւանդոտն. և միանգամայն առաքինութեան հաղորդեալն ըստ մարմնոյ կամ հոգւոյ, քան զայն որ չարաբարութեան է հաղորդեալ կենցաղն, հեշտագոյն գոլով, և քան զայլսըն գերագոյն յաճախութեամբ գեղեցկութեամբ և ուղղութեամբ և առաքինութեամբ և բարեփառութեամբ. իբրու զի զհպեալն 'ի սա կեալ՝ բարեբաստութեամբ գործիցէ քան զներհականն ամենեւին իսկ և բոլորովին. և նախերգանն իսկ օրինացն բանիցն աստանօր ասացեալ՝ զկատարածն կալցի։

Իսկ յետ նախերգանին հարկաւոր է հետևիլ օրինացն մանաւանդ։ Ճշմարտագոյն է օրէնս քաղաքավարութեան ստորագրել իսկ որպէս 'ի միասին արծարծումն և կամ մանուած՝ այլ ինչ զինչ և իցէ, ոչ 'ի նոցունց ինքեանց որպէս և իցէ զթելն իսկ և զառէջն գործել, այլ հարկ է տարբերիլ առիչիցն սեռի առաքինութեամբ՝ զօրութիւն իսկ և հաստատութիւն յեղանակօքն ըմբռնեալ, և միւսն կակղա-

գոյն և հանդարտութեամբ իրաւացի ումեմն վարեալ. վասն որոյ իսկ զայնոքիկ որ մեծագոյն իշխանութիւն առ քաղաքսն իշխեցեալ իցեն՝ պարտ է ընտրել ումեմն յեղանակաւ. այսպէս և զայնոքիկ որ փոքումբ իսկ խրատով հրահանգեալ իցեն յիւրաքանչիւր ժամու ըստ համեմատութեան: Լիցի արդ երկու տեսակք քաղաքավարութեան. ումն իշխանաց ընտրութիւն իւրաքանչիւրոց, և միւսն օրէնք իշխանութեանցն բացատրելով. և զայն իսկ որ յառաջ քան զայսոսիկ ամենայն պարտ է այսպէս տրամախոհել: Զամենայն հօտ և հովիւ իսկ և անտիորդ և զձիսն մնուցող, և որչափ այլ այսպիսի են ընկալեալ, ոչ այլպէս երբէք արասցէ ձեռնարկութիւն առ 'ի լաւացուցանել զսոսա քան եթէ նախ իսկ զիւրաքանչիւրոյ պատշաճ մաքրութիւն մաքրիցէ, զուգաբնակութեամբ ընտրելով զողջագոյնքն և զոչն, և զազնուականքն և զվատթարքն, և զոմանս իսկ առաքեսցէ առ այլս ոմանս երամս, և զոմանս դարմանեսցէ. տրամախոհելով իբրու ունայն իցէ թերևս աշխատութիւն՝ անկատար առ մարմինք իսկ և հոգիք զորս բնութիւն... մնունդ ապականելով 'ի բաց կորուսանէ յողջա... մահ սովորութեանցն, և մարմնոցս եդ իւրաքանչիւր... ուածոցն եթէ ոչ ոք զոր և ինչ իցեն մաքրիցէ... իսկ արդ այլոց կենդանեացն փոյթըն նուազէ... յարացուցի արժանանայ պատմիլ առքան... կան[1]: Մեծագոյն փոյթ պարտ է առնել օրինադրին, և քննել և ասել զպատշաճսն իւրաքանչիւրոց իսկ յաղագս մաքրութեան և 'ի միասին այլոց ամենայն գործոց. զի վաղվաղակի յաղագս մաքրութեանց քաղաքի այսպէս ունելով՝ թերևս իցէ բազում գոլով մաքրութեանցն՝ ոմանք դիւրագոյնք են

1 Այսպէս թերի յօրինակին, զոր հարկ համարիմք լրացուցանել ըստ բնագրին. Տրամախորհելով իբրու ունայն իցէ թերևս աշխատութիւն՝ առ մարմինք և հոգիք զոր բնութիւն անկատարս գործեաց, կամ առ չարաչար խրատեալս. և զի հիւանդ կամ ախտացեալ մասնն՝ զառողջն և զանարատ ապականէ, եթէ ոք ոչ զգուշասցի. որ թէպէտ զանբանից կենդանեաց չիցէ այնչափ կարեւոր, այլ 'ի դէպ է իբրև զօրինակ յարացուցի 'ի մէջ ածել:

և ոմանք դժուարագոյնք, և զոմանս բռնաւոր իսկ և օրինադիր նոյնն գոլով՝ որչափ դժուարինք իսկ են և արիագոյնք, կարասցէ թերևս զայնոսիկ մաքրել:

Իսկ օրինադիր առանց հարստահարութեան հաստատելով քաղաքավարութիւն նոր և օրէնս, թէ և հեշտագոյնն 'ի մաքրութեանց՝ արասցէն մաքրութիւն սիրելաբար թերևս, և զայն ինչ գործիցէ. և է արիագոյնն իսկ ցաւաբեր, որպէս և այնոքիկ որչափ 'ի դեղիցն այսպիսիք են յեղանակաւ, որ իրաւամբքն հանդերձ պատուհասաւ 'ի տանջանսն հասուցանէ՝ զմահ կամ զփախուստ՝ պատուհասին եղեալ կատարած. քանզի զայնոսիկ որ զմեծագոյնսն իցեն մեղուցեալ և անբոյժ գոլով, զմեծագոյնն վնաս արասցէ քաղաքին, 'ի բաց փոխեալ այնպէս սովորեալ: Իսկ հեզագոյն 'ի մաքրութեանցն՝ այսպիսի է մեզ: Որչափ վասն կերակրոյն նուազութեան առաջնորդօքն 'ի վերայ այնոցիկ որ ունիցին ինքեանք, ոչ ունելով պատրաստեալք սոցա՝ ցուցանեն յարմարելով հետևիլ սոցունց՝ իբրու ցաւու ումեմն առ քաղաքն ընդաւորելով, վասն բարեբանութեան 'ի բաց փոխելոյ՝ անուն եդեալ բացաբնակութիւն հաշտարար՝ զի մանաւանդ արտաքս առաքէ: Ամենայն արդ օրինադրի զայս ինչ փութապէս սկզբանն պարտ է առնել: Սակայն մեզ սոցունց և՛ս անտեղագոյն առ այսոքիկ պատահեալքս այժմ իսկ են. զի ոչ բացաբնակութիւն և ոչ ընտրութիւն զոմն մաքրութեան պարտ է հնարել առ հասեալ ժամս, բայց իբրու ոմանց՝ բազմաց 'ի միասին հոսելով, ոմանք յաղբերաց և ոմանք 'ի մի ժողովս ծովու՝ հարկ է առ միտս նայելով զգուշանալ, իբրու զի որ մաքրագոյնն իցէ հոսեալ ջուր, զոմանս արտաքս արկցէ, և զոմանս զառուսն խոտորեցուցանէ 'ի բաց: Որպէս թուի ինձ, և տագնապ իցէ ամենայն քաղաքական պատմութեանս: Այլ այսոքիկ քանզի բանիւ են այժմ և ոչ գործովք գործեցեալս, առ կատարած հասցէ մեզ ընտրութիւնս, և ըստ կամաց մաքրութիւն սորա եղիցի պատահեալ. քանզի զչարքն՝ յայսցանէ որ ձեռնարկութիւն առնեն խորհելով այժմ քաղաքս քաղաքավարել՝ ամենայն

հաւանականութեամբ և ժամանակաւ հրահանգելով արգելուցուն հասանիլ։ Իսկ զայնոքիկ որ բարիքն են ըստ զօրութեան հաշտութեամբ։ Եւ այս իսկ ոչ զանխլիցէ՝ լինելով մեզ բարեբախտութիւն. զի որպէս ասացաք՝ բարեբախտիլ զհերակլեանցն բացաքնակութիւն իբրու երկրի և պարտուց 'ի բաց հատանելով, օրինադրութեամբ բանիւ 'ի չարաչար և 'ի նախանձուէ 'ի բաց փախեաւ։ Զոր օրինադրիլ հարկելով քաղաքի նախնեայն՝ ոչ թողուլ իբրու անշարժ ինչ, և ոչ շարժիլ հնար է ումեմն յեղանակաւ, այլ ըղձմամբ միայն, իբրու տաղէ իսկ աւելի, մնասցէ և փոքր փոխաբերութիւն բարեպաշտ՝ բազում ժամանակաւ փոքր ինչ փոխաբերելով։

Իսկ այնոցիկ որ միշտ շարժեն ստանալով՝ սոցունց երկրի անսպառ գոլ. և ստանալով իսկ, և պարտապանք սոցունց բազումք՝ կամելով հաղորդութիւն առնել 'ի ձեռն հեզութեան այնոցիկ որ տարակուսեալ իցեն, և զոմանս թողացուցանելով և զոմանս խնդրելով, ներութեամբ հուպ գոլով առ չափաւորութիւնն և տնանկութիւն, վարկանելով գոլ ոչ զայնոսիկ որ զգոյսն նուազ գործիցէ, այլ զայն իսկ որ զանյագութիւնն յոլովագոյն։ Քանզի փրկութեան սկիզբն քաղաքի մեծագոյն այսոքիկ լինիցին, և 'ի վերայ սորա իբրև 'ի հաստատուն խարսխի շինել հնար է, զոր և յետոյ իսկ շինեսցէ ոք՝ զարդ ինչ քաղաքական պատշաճելով այսպիսի ինչ յարմարութեանս. և սորա իսկ տկարագոյն գոլով փոխաբերութեանս՝ ոչ իցէ զօրաւոր քաղաքական գործն որ յետ այսոցիկ, և ոչ մի լինիցի արդեւք քաղաքի այն ինչ յորմէ մեք իբրու ասեմք փախչիմք. բայց սակայն ասել իսկ ուղղագոյն է, թէպէտ և ոչ փախեայք յայնժամ թերևս յորժամ փախչէաք 'ի սմանէ, ասացի արդ այժմ թէ վասն ոչ իրաւապէս ընչասիրութեան։ Եւ այլ ոչ գոյ ոչ անդորր իսկ և ոչ նեղ՝ փախուստ հնարիս այսմիկ. իբրու պարիսպ քաղաքի կացցէ մեզ այժմ։ Քանզի առանց ամբաստանելոյ զգոյսն՝ առ միմեանս պատրաստել դիւրաբար իսկ, և կամ ոչ յառաջ հասանել նախ քան զառա-

ջին գոլն կամաւ այլոյ կազմութեանն՝ որովք իցէ նախնի ամբաստանութիւնք առ միմեանս, և այնոցիկ որչափ մնաց փոքր ինչ իսկ հաղորդեալ իցեն։ Իսկ այնոցիկ որ իբրու մեզ այժմ աստուած պարգեւեաց, հասարակաց քաղաք բնակեցուցանել, և ոչ գոլ զոմանս թշնամութիւնս իսկ առ միմեանս՝ զայսոքիկ 'ի սոցունց թշնամութեան պատճառս լինել վասն բաշխմանն երկրին իսկ և բնակութեանն, ոչ իցէ մարդկային հանդերձ ամենայն չարութեան անուսումնութիւն։

Ո՞վ ոք արդ իցէ յեղանակն ուղղագոյն բաշխմանն։ Նախ իսկ զնոյն հաւաքումն թուոյն կարգել պարտ է որչափ իրաւացի է գոլ, և յետ այսորիկ զբաշխումն քաղաքացւոց՝ ըստ որչափ մասունս բազմութեամբ և որքան բաշխել պարտ է սոցունց վերստին խոստանալով. պարտ է և այսոքիւք զերկիր իսկ՝ և զբնակութիւնքն մանաւանդ զի հաւասար բաշխել պարտ է։ Հաւաքումն արդ բազմութեան բաւական ոչ այլպէս ուղղապէս լինիցի թերեւս ասացեալ, քան եթէ ըստ երկրին, և ըստ մերձաւոր վայրիցն քաղաքն. երկիր իսկ այսչափ՝ որչափ ողջախոհք գոլով կերակրել բաւական՝ և յոլովագունի ոչ ինչ կարօտանայ. և բազմութեան իսկ՝ որչափ հնար իցէ զառ վայրին բնակեալսն անիրաւելով զոսա վանել, և դրացեաց իւրեանց անիրաւելոց՝ օգնականն լինել ոչ գոլ թերեւս ամենեւին անկարող։ Զայսոսիկ արդեւք գիտելով՝ զգաւառն և զդրացիքն սահմանեսցուք գործով և բանիւք այժմ 'ի սակս ձեւոյ և ստորագրութեան, զի կատարեսցի առ օրինադրութիւնն։ Բանս լիցի այս ինչ։ Հինգ իսկ հազարք լիցին և քառասուն՝ 'ի սակս պատշաճեալ ումեմն թուոյ՝ սահմանակիցք իսկ և բաշխակիցք՝ զայլս վանելով։ Եւ երկիր և բնակութիւնք այսպէս ըստ այսքան մասանց բաշխեալք՝ լինելով այր և վիճակ բաշխակից։ Երկու արդ մասունք ամենայն թուոյն նախ բաշխիցի, և յետ այսոցիկ երիս նորինտ[1], զի բնաւորեալ

1 Այսպէս յօրինակին։

է և չորս և հինգ և մինչև ցտասն ըստ կարգի։ Պարտ է արդ յաղագս Թուոց՝ զայսչափ իսկ ամենայն առն օրինադրելով իմանալ թէ ո՛ ոք Թիւ, և որպիսի ամենայն քաղաքաց՝ Թերևս իցէ պիտանացու։ Ասասցուք արդ զայն որ յոլով և ըստ կարգի մանաւանդ բաշխմունս ստացեալ իցէ ներ յինքեան. քանզի ամն իսկ առ ամենեսեան զամենայն հատուածսըն ընդունեալ է, բայց քառասնից և հնգից հազարացն 'ի պատերազմի իսկ և 'ի խաղաղութեան՝ առ ամենայն նշանակըն և հաղորդութիւնըն յաղագս 'ի միասին բերմանցն և բաշխմանց՝ ոչ յոլովք միոյ կարօտանալով՝ 'ի վաթսուն հատուածս Թերևս հատանիլ հնար իցէ։ Բայց շարունակք 'ի միակէն և ցտասնեակն. զայսոսիկ արդ՝ ըստ պարապութեան պարտ հաստատապէս ընկալուլ՝ այնոցիկ որոց օրէնքն հրամայէ ընկալուլ. քանզի ունիցի ոչ այլպէս, քան եթէ ըստ այսորիկ։ Բայց պարտ է առնել զսոսա 'ի սակս այսոցիկ բնակեցուցանելով զքաղաք, ոչ Թերևս նոր իսկզբանէ արասցէ զսա՝ և ոչ արդեւք հնացեալ և ապականեալ արծարծէ։ Իսկ յաղագս աստուծոց և տաճարաց՝ զորս վաղվաղակի 'ի քաղաքին իւրաքանչիւրոց շինել պարտ է, և որոց ոմանց անուանիլ աստուծոց կամ դից, ոչ ձեռն ոք ձեռնարկութիւն արասցէ, միտս ունելով շարժել զսոսա որչափ 'ի դելփէացւոց կամ 'ի Դոդոնեայէ և կամ 'ի Պարամմինեայ[1], և կամ Թէ զայլս ոմանս նախնի բանք[2] հաւանեցուցին. որք և զոմանս երբեք հաւանեցուցանելով զասացեալսն, կամ շունչ յաստուածոցն 'ի վերայ հասանելով և հաւանեցուցեալ՝ զպատարագս և զձօնեալ 'ի միասին խառնեալք հաստատեցին, եթէ անտուստ իսկ 'ի վայրէն ներքինակք, եթէ հարստահարականք[3], և եթէ կիպրուացիք և եթէ այլուստ ուստեք. սակայն քահանայագործեցին այսպիսի բանիւքս զհամբակօք[4]։ Իսկ և զպատկերս և

1 Յոյնն՝ յԱմմոնեայ, ր̂ παρ' Ἄμμωνος.
2 Այսինքն՝ պատգամք աստուածոց։
3 Յոյնն՝ տիւռենացիք τυῤῥενικας.
4 Յոյնն՝ զհամբաւս կամ զաւանդութիւնս։

զբագինս և զտաճարս և զվերնատունս սոցունց իւրաքանչիւրոց սարաւանդեցին. 'ի սոցունց՝ օրինադրի զփոքրագոյնն ամենեցուն շարժել ոչ է պարտ։ Եւ մասանցն իւրաքանչիւր՝ աստուած կամ դև, և կամ զդիւցազին ոմն բացատրել պարտ է. քանզի ընտրողք իւրաքանչիւրոց մասանցն ըստ ժամանակաց լինելով զկարգեալսն յիւրաքանչիւր պէտս բարեկարգապէս պատրաստիցեն. և զբարեկամութիւն խորհին առ միմեանս, հանդերձ պատարագօքն ընտանենեան և ծանօթք լինիցին. որոյ մեծագոյն բարի ոչ ինչ է քաղաքի՝ քան եթէ ծանօթք սոցունց գոլն. քանզի ուր ոչ լոյս իցեն միմեանց յեղանակօք՝ այլ խաւար, ոչ թերևս պատուոյ՝ այնմ իսկ որ արժանի է, և ոչ իշխանութեանց և ոչ իրաւանց ոք երբեք այնմ իսկ որ պատշաճն է՝ հանդիպիցի ուղղապէս։ Պարտ է արդ ամենայն առն՝ միոյ առ միւսն զայս ինչ փութալ յամենայն քաղաքս. իբրու զի ոչ ոք ինքն իսկ ապախտ երբեք երևեսցի ուրուք, այլ պարզ միշտ և ճշմարիտ, և ոչ այլ ոք այսպիսի գոլով պարտիցէ զնա։

Քանզի հանդերձ այսուիկ բերումն իբրու խաղալեօք ոմամբք մաքրագունիւք՝ օրինացն կազմութեանն անսովոր գոլով, սքանչանալ թերևս տացէ նախ լսողին. ոչ սակայն համեմատելով և փորձ առնլով՝ երևեսցի երկրորդաբար թերևս քաղաքն բնակիլ առ 'ի լաւագոյն. թերևս իսկ ոչ ոք ընդունիցի զսա, վասն զի ոչ է սովորական օրինադրի, ուր ոչ իցէ բռնաւոր։ Բայց այս իսկ է ուղղագոյն ասելս իսկ զարիագոյն քաղաքավարութիւնն, և երկրորդ և երրորդ. և տալով զյօժարութիւն ասողին՝ իւրաքանչիւրում բնակութեանն տան[1]։ Արասցուք արդ ըստ այսմիկ բանիս այժմ և մեք, ասելով առաքինութեամբ առաջին քաղաքավարութիւն, և երկրորդ և երրորդ. բայց զյօժարութիւն Կղինիայ իսկ այժմ բացատրեսցուք.

1 Այս ինքն՝ թողլով զընտրութիւնն որպէս իւրաքանչիւրում հաճոյ թուեսցի։

և եթէ այլ ոք թերևս կամիցի երբեք՝ առ 'ի սացունցն հասանելով ընտրութիւն ըստ իւրում յեղանակին 'ի բաց բաշխեալ՝ զսիրելին ինքեան իւրոյ գաւառին։

Իսկ առաջին արդ և քաղաքավարութիւն և օրէնք արիագոյնք՝ այն է որ կանխաւ ասացեալ թերևս լինիցի մանաւանդ առ ամենայն քաղաքաւն. և ասի իսկ՝ իբրու են ճշմարտապէս բարեկամացն իր հասարակաց. այս իսկ՝ կանայս և հասարակաց մանկունս գոլ, և հասարակաց ինչս 'ի միասին ամենայն և ամենայն հնարաւ ստացեալ. յատուկն՝ ամենևին 'ի կենցաղոյս 'ի բաց բարձցի. և հնարաւորեալ է ըստ կարի այն որ բնութեամբ յատուկք են՝ հասարակաց իսկ տեսանել թուին և լսել և գործել. և գովել իսկ և պարսաւել իբրու 'ի միասին, մանաւանդ միանգամ առ այնոցիկ նոյնս ուրախանալով և տրտմելով, և ըս.... որք ումանք օրէնք մի մանաւանդ գործիցեն զքաղաքըն, սոցունց գերազանցութեամբ ըստ առաքինութեան՝ ոչ երբեք զայլ ոք սահման դնելով ուղղագոյն և կամ վեհագոյն արասցէ իսկ։

Արդ այսպէս 'ի քաղաքս, եթէ աստուածք երբեք և կամ աստուածոց մանկունք 'ի սմա բնակիցեն՝ յոլովս միոյ կենցաղ ունելով, այսպէս ուրախացեալք բնակեսցեն։ Վասն որոյ իսկ յարացոյց քաղաքավարութեան ոչ այլպէս պարտ է դիտել. այլ սմա հուպ գոլով զայն իսկ որ յաւէտագոյն այսպիսի է խնդրել ըստ կարի, և այս իսկ յորս մեք այժմ ձեռնարկեցաք։ Եւ մինն իսկ, և երկրորդն ասացաւ. զերրորդն յետ այսոցիկ, եթէ աստուած կամիցի, 'ի կատարած հասուսցուք. իցէ թերևս լեալ անմահութեան մերձաւորագոյն։ Եւ այժմ իսկ զսա, զո՛ ոք ասեմք, և ո՛րպէս լեալ թերևս այսպիսի։

Իսկ արդ բաշխեսցէ նախ զերկիրն և զտունս՝ ոչ հասարակաց երկրագործելով. քանզի այսպիսիս՝ մեծագոյն քան ըստ այժմ լինելութիւնս և սնընդեանս և խրատուս ասացաւ։ Եւ բաժանեսցին արդ այսպիսի տրամախոհութեամբ՝ իբրու պարտ գոլ զհասեալ

վիճակն հասարակաց համարիլ անձնային քաղաքին 'ի միասին՝ այնմ որ տէրն իցէ վիճակին. և հայրենի գոլով գաւառին՝ մեծապէս այց առնել պարտ է, քան եթէ մանկունս մօր, տիրուհի զնա և աստուածուհի ելով՝ մահկանացու գոլով սոցա համարելովն. և առ ներաբնակ աստուածքն իսկ՝ միանգամայն և դիւքն։ Իբրու զի այսոքիկ արդեւք առ միշտ ժամանակն իցեն, այսպէս զայս ինչ խորհիլ պարտ է։ Որչափ այժմիկ են մեզ տունք թուով բաշխեալք՝ սոցա պարտ է միշտ գոլ այսչափ, և ոչ ինչ յոլովագոյն լինել, և ոչ ինչ երբեք նուազագոյն։ Որով արդ թերևս այս ինչ հաստատագոյն լինիցի յամենայն քաղաքի. է այս ինչ. որոյ հասցէ վիճակն, թողցէ միշտ բնակութեանն սորա մի միայն ժառանգորդ 'ի մանկանց իւրոց, զոր և իցէ սմա մանաւանդ սիրելի՝ փոխանորդ իւր, և աստուծոցն հաճոյեցուցիչ, և քաղաքին և ազգին, այնոցիկ իսկ որ կենդանի իցեն, և զորս վախճանն արդեւք ունիցի ըստ այնմիկ ժամանակի։ Իսկ զայլ մանկունսն՝ որոց թերևս յոլովագոյնս միոյ լինիցին, զէգքն արտաքս տալ ըստ կարգաւորեալ օրինին. և զարուքն այնոցիկ որոց թերևս ծնունդքն պակասեալ իցէ 'ի քաղաքացեացըն՝ սոցունց որդիս բաշխեալ ըստ շնորհի։ Իսկ ապա եթէ ոմանց պակասեալ իցէ շնորհք՝ և կամ յոլովագոյնս լինիցին ծնունդք, էգք և կամ արուք ոմանց իւրաքանչիւրոց, և կամ ներհական սոցունց՝ յորժամ նուազք իցեն՝ մանկանց անբերութիւն լինելով, ամենեցուն սոցունց սկիզբն զոր դիցեմք թերևս և զմեծ և զպատուականագոյն այսուիկ խորհելով, զոր պարտ է առնել առ աճեցեալսն իսկ և կամ պակասեալսն գտցէ հնար մանաւանդ, հինգ հազար և քառասուն բնակութիւնք միշտ միայն իցեն։ Եւ հնարք բազումք իսկ են լինելութեան, որովք թերևս անդորրագոյն լինիցի ծնունդն, և ներհակն սոցունց՝ ջանս և փոյթս բազմութեան ծննդոց են՝ պատուօք իսկ

1 Δημήτηρ կամ γῆ-μήτηρ մայր երկրի՝ Դեմետրէ աստուածուհի հնձոց ըստ առասպելաց։

և անարգութեամբ և խրատով, երիցագունիցն առ համբակսն 'ի ձեռն բանից խրատականաց հանդիպելով հնարաւորին։

Զոր ասեմս առնել՝ թէ և ամենայն տարակուսանս լինիցի առ անհաւասարութեան հինգ հազար և քառասուն տանցն՝ 'ի վերայ հոսումն իսկ գերազանցութեամբ քաղաքացեացն[1], 'ի ձեռն խոհեմասիրութեան 'ի միասին բնակելոցն միմեանց պատահի մեզ քաղաքացեացս և տարակուսիմք, նախնին իցէ երբեք հնար, զոր բազում անգամ ասացաք, արտաքս առաքումն բացաբնակութեանց, սիրելի լինելով առ բարեկամացն՝ այնոցիկ թերեւս որ ճահաւոր գոլ թուի։ Ապա եթէ և ներհակն իսկ հասցէ երբեք, իբրու կոհակք հեղեղաց բերելով զցաւս, և կամ զառ 'ի պատերազմաց ապականութիւնս, և նուազագոյնք յոյժ կարգեալ թուոյն, 'ի ձեռն որբութեան[2] լինիցին, կամաւ իսկ ոչ է պարտ քաղաքացիք գերազանցեալս առնել օտարատի և խորթ խրատեալս խրատաւ. քանզի զկարիս իսկ բռնադատել՝ ասի ոչ աստուծոյ գոլ հնար։

Զայսոսիկ արդեւք ասեմք ողոքելով մեզ ասել այժմ ասացեալ բանիւ. Ով ամենայն արանց արիագոյնք, զնմանութիւնն և զհաւասարութիւնն, և զնոյնն և զխոստովանեալն պատուելով ըստ բնութեան, մի թողացուցանէք ըստ թուոյ իսկ և ամենայն զօրութեան զգեղեցիկ և զբարի իրողութեանց։ Եւ արդ այժմ իսկ, զթիւն նախ ամենայն կենցաղումս պահեցէք զասացեալն. և ապա զգոյութեանն բարձրութիւնն իսկ, և զմեծութիւնն՝ զոր յառաջագոյն բաշխեցէք՝ չափաւոր գոլով, մի անարգեցէք գնելովն իսկ և վաճառելովն առ միմեանս։ Քանզի ոչ բաշխողն վիճակ՝ աստուած գոլով՝ իցէ ձեզ մարտակից, և ոչ օրինադիրն։ Զի այժմ իսկ նախ այնմիկ որ անհաւանն իցէ՝ հրամայէ օրէնքն նախասացեալ, 'ի վերայ

1 Այս է՝ 'ի պատճառս բազմածնութեան՝ յաճախելով յոյժ թուոյ քաղաքացեացն։

2 Յօրինակի մերում ուրախութեան. ուղղեցաք ըստ յունին ὀρφανία.

տոցա վիճակիլ՝ այն որ կամողն իցէ և կամ ոչ՝ վիճակիլ։ Իբրու նախ իսկ երկիրն վասմական գոլով ամենայն աստուծոցն, ապա քահանայիցն և պատարագացն. աղօթս առնելով առաջին զոհիւքն և երկրորդիւքն և մինչև ցերրորդն՝ զայն որ իսկ գնէ և կամ 'ի բաց վաճառէ յայնցանէ որ հասեալ իցեն մասանցն, և կամ այլոցն պատահելոց սմա յերկիրն վիճակացն՝ զայն որ առ այսոսիկ իրաւացիքն են և վայելչականն կիրս ախտանաց, և գրելով 'ի տաճարսն գիցեն, և անփուտ տախտակօք, զի յիշել գնիցեն յապառնի ժամանակն ըստ որում գրեալ իցեն առ այսոքիւք։ Իսկ սակաւին պահապան տոցունց զի լինիցին Թերևս՝ կարգեն 'ի սմա յիշխանացն զայնոքիկ որ արագագոյն արդեւք տեսանի. զի այնոքիկ որ առ 'ի սմանէ յիւրաքանչիւր ժամու լինիցին յառաջաբերութիւնքն, ոչ զանխլիցեն տոցունց. այլ տանջիցեն զանհաւանեալն, համանգամայն օրինօք իսկ և աստուծօքն։ Քանզի որչափ այժմ հրամայեալս բարի գոլով հանդիպի ամենայն հաւանեալ քաղաքացն՝ առ այսուիկ ըմբռնելով զհետևեալ կազմութիւնն, ըստ նախնի առակին ոչ ոք գիտիցէ երբեք չար գոլով, այլ հմուտ իսկ և հեզ սովորութեամբն լինելով. քանզի վաճառ ոչ իցէ յոյժ առ այսպիսի կազմութիւնս, և 'ի միասին հետևի սմա՝ ոչ ինչ պարտ գոլ և ոչ պատշաճ վաճառել յայնցանէ որ անազատագոյնքն են՝ վաճառս. ոչ և միոյ զոչ և մի ինչ ըստ որչափ նախատելի է ասացեալն՝ ոսկէվաճառութեան արհեստն, 'ի բաց դարձուցանէ զազատագոյն բարք, ամենևին արժանի ոչ համարելով յայսպիսեացս հաւաքել ինչս։ Առ այսոքիւք տակաւին օրէնս հետևեին, ամենեցուն այսոցիկ ոչ պատշաճ գոլ զոսկի և կամ զարծաթ ստանալ ոչ ինչ և ոչ միոյ ուրուք ռամկի. և դահեկանի սակս օրըստօրէ վաճառոյն այնմիկ՝ զոր չինողացն իսկ գրեթէ կ՚ հարկաւոր վաճառել, և ամենեցուն որչափ պէտս իցէ այսպիսեացս՝ վարձք վարձաւորացն ծառայից իսկ հատուցանել և մանկաբնակաց[1], 'ի սակս որոց ասեմք պարտ գոլ զգահեկանս

1 Այսպէս յօրինակին, Թերևս մակաբնակաց. յոյնն՝ ἐποίχοις.

ստանալ՝ սոցունց իսկ պատուականս, և այլոց մարդկանց ամենեցուն ապախտ։ Եւ հասարակաց ելլենական դահեկանն՝ 'ի սակս զինուորաց իսկ և Ճանապարհորդաց՝ որ գնայցեն առ այլս 'ի մարդկանէ իբրու 'ի մաղթութիւնս[1], և կամ յայլ ոմն 'ի կարևոր քարոզութիւն քաղաքի, եթէ արտաքս առաքել կարօտանայ. 'ի սակս այսոցիկ հարկ է իւրաքանչիւր ժամու քաղաքին ստանալ ելլենական դահեկան։ Իսկ ռամկի ուրուք եթէ հարկ իցէ արդեւք գնալ՝ խնդրելով յիշխանացն գնասցէ. և եթէ դահեկան երբեք օտար ունելով՝ 'ի տուն հասցէ, 'ի քաղաքն իսկ տացէ զսա, ըստ համեմատութեան 'ի բաց առնլով զներաքնակն[2]։ Իսկ առանձնեալ եթէ երևեսցի ոք՝ հրապարակին լինիցի. և այն իսկ որ գիտեն և ոչ ասեն՝ զնախատանս և զտուրժս ունելով առ 'ի յայնմանէ որ զիշխանութիւնն ունիցի. և իցէ տուրժս առ այսոքիւք ոչ նուազագոյն քան զկրեալն առ 'ի սմանէ օտարական դահեկան։

Իսկ ամուսնանալով և այլոց կին տալով, ոչ տալ իսկ և ոչ ընդունել զհետևեալ մասն, ոչ զինչ և իցէ իր[3]։ Եւ դահեկանս 'ի պահեստի ոչ դիտէ առ այնկ որ ոչ իցէ հաւատարիմ. և ոչ փոխ տալ տոկոսեւք. իբրու զի ոչ իցէ պատշաճ ամենեւին հատուցանել այնմ որ զփոխն առնու, ոչ զտոկոսիսն և ոչ զգլուխն։ Զայսոսիկ իսկ զի լաւագոյն են քաղաքի՝ խորհիցին խորհուրդք. առ որս եթէ դիտեսցէ ոք ուղղապէս, թերևս զսոսա դատիցի վերստին բերելով 'ի սկիզբն միշտ և 'ի կամսն։ Է արդ այնմ՝ որ միտս ունիցի՝ ասեմք քաղաքական կամս, ոչ զոր բազումք թերևս ասիցեն այն պարտ գոլ ախորժել բարի օրինադրի, իբրու մեծագոյն գոլ զքաղաքն, ըստ որում իմանալով բարեւք օրինադրեսցէ և մանաւանդ փարթամագոյն՝ ստացեալ իսկ զոսկեղէնս և զարծաթեղէնս,

1 Այս ինքն՝ 'ի պատգամաւորութիւն կամ յայլ ինչ գործ կարևոր։

2 Այս է՝ 'ի կեր արկեալն 'ի քաղաքին՝ զդրամ։

3 Զի արգելեալ էր յօրինաց առ սպարտացիս՝ չտալ օժիտս դստերաց իւրեանց 'ի հարսնացուցանելն զնոսա։

և առ երկիր և ծով խշխելով յոլովից՝ յաւելուցուարդեւք, և իբրու արիագոյն գոլ ախորժիցէ զքաղաքն, և իբրու բարեբաստագոյն այն իսկ որ ուղղապէս օրինադրեսցէ։ Բայց 'ի սոցունց ոմանց հնար է լինել, և ոմանց ոչ է հնար։ Արդ զայնոքիկ իսկ որ հնարն է՝ ախորժիցէ թերևս զարդարեցուցանել. իսկ զոր ոչն է հնար՝ թերևս ախորժիցէ, և 'ի սնոտի խորհուրդս թերևս ձեռս ոչ արկցէ. զի գրէ եթէ բարեբաստք միանգամ և բարիք հարկ է լինել, զայս իսկ թերևս ախորժիցէ։ Բայց փարթամ յոյժ և բարիք անհնար է, զորս արդեւք բազումք փարթամացուցանեն. քանզի առեն այսպէս ասացեալս առ սակաւ մարդիկ բազում դաշնականաց արժանի ստացուած՝ զորս և չար ոք գոլով ստասցի արդեւք։ Ապա եթէ այս այսպէս ունիցի, սոցունց ես ոչ երբեք ներեցից՝ զփարթամն բարեբաստ ճշմարտութեամն լինել բարի ոչ գոլով. իսկ բարի գոլով զանազանապէս և ճոխ գոլ՝ տարբերութեամբ անհնար է։ Զինչ արդ եթէ ասիցէ ոք թերևս եթէ ասասցուք՝ զի յիրաւանց և յապիրատութենէ ստացուածն յոլովագոյն իցէ, քան եթէ զկրկնապատիկն այնմ որ յիրաւանցն միայն իցէ, և վատնել ոչ բարեւք իսկ, և ոչ չարաբար կամեսցի վատնել, բարի արանցն 'ի բարութիւնս կամելով ծախել կրկնապատիկ նուաղ։ Ո՞չ ապաքէն կրկնապատիկ արդեւք ստացուածըն՝ յորժամ ծախսն այսորիկ կէսն իցէ. որ զներհակն սոցունց գործիցէ, լինիցի թերևս փարթամագոյն. և է իսկ 'ի սոցունց մինն բարի, և միւսն ոչ բարի՝ յորժամ իցէ դանդաղկոտ առ տուրս ընչից, յայնժամ երբեք և ամենևին չա՛ր. և բարի իսկ ոպէս ասացաւ այժմ ոչ երբեք։ Քանզի այն որ իրաւապէս և ապիրատաբար առնուն՝ և ոչ իրաւապէս և ոչ անիրաւաբար վատնեն, փարթամ է՝ յորժամ իցէ և դանդաղկոտ առ տուրսն. և ամենևին չարն, իբրու բազում անգամ գոլով զեխ՝ յաւէտն տնանկ է։ Իսկ այն որ վատնէ 'ի բարիսն, ստացեալ յիրաւանցն միայն, ոչ թերևս զանազանութեամբ փարթամանայ դիւրաւ, և ոչ յոյժ իսկ տնանկանայ։

Իբրու թէ ուղիղ է առ 'ի մէնջ բանս, զի ոչ են ամենևին փարթամքն՝ բարիք. և եթէ ոչ բարիք, և ոչ բարեբաստք։ Բայց մեզ օրինացս ենթադրութիւնս աստանօր հայէր, իբրու զի բարեբաստագոյնք իցեն, և մանաւանդ միմեանց բարեկամք. և իցեն ոչ երբեք քաղաքացիք բարեբաստք՝ յորժամ բազում հանդէպք[1] առ միմեանս իցեն և բազում անիրաւութիւնք։ Այլ յորժամ փոքրագոյնք իսկ և սակաւագոյնք ասեն արդ ոչ ոսկի գոլ և ոչ արծաթ 'ի քաղաքին. և ոչ բազում ինչս 'ի ձեռն ոսկեվաճառաց և տոկոսից, և ոչ կենդանիս գարշելիս իսկ և վնասակար, այլ որչափ երկրագործութիւն տացէ և բերէ, և 'ի սոցանէ որչափ պէտսն ոչ հարկէ՝ առ այնոցիկ ծառայել 'ի սակս որոց բնաւորեալ են ինչք. և այսոքիկ են հոգի և մարմին, որք առանց վարժման են և այլոց խրատի՝ ոչ երբեք լինիցին համեմատութեան արժանիք։ Վասն որոյ իսկ զընչիցն պատուասիրութիւն միանգամ միայն ոչ ասացաւ՝ թէ պարտ է յետոյ իսկ պատուել։ Քանզի երիս գոլով ամենեցուն՝ յաղագս որոց մարդկան փութայ, յետին և երրորդ է ընչիցն ուղղապէս ձեռնելով փոյթն, և յաղագս մարմնոյն՝ միջին, և առաջին իսկ հոգւոյն։ Եւ արդ այս իսկ զոր այժմ պատմեմք քաղաքավարութիւնս՝ եթէ զպատիւսն այսպէս կարգաւորէ, ուղղապէս օրինադրեալ։ Ապա եթէ ոք 'ի կարգեալ աստանօր օրինացս՝ ողջախոհութեան վերագոյն, և կամ առաջին զողջախոհութիւնն 'ի քաղաքի երևեսցի առնելով պատուական, և կամ զփարթամութիւն՝ ողջախոհութեան, ոչ ուղղապէս երևեսցի եդեալ։ Զայս իսկ արդ բազում անգամ նշանակել պարտ է օրինադրին, թէ զինչ կամի. և եթէ պատահեսցի ինձ այս ինչ, և կամ եթէ դիտողութեանն ոչ հանդիպին։ Եւ այսպէս թերևս յօրինադրութենէն ինքն իսկ ելցէ, և զայլսն 'ի բաց խոտորէ։

Եւ ըստ այլոյ իսկ յեղանակի՝ ոչ թերևս զի մի երբեք այն որում հասանի ստանալով վիճակ 'ի վերայ

1 Այս է՝ դատք, վէճք, որպէս առի 'ի բնագրին։

այսոցիկ, որոց ասացաք հաւանի[1]: Էր իսկ արդեւք գեղեցիկ, և զայլսն ամենայն հաւասար ունելով իւրաքանչիւր գալ 'ի բացարձակութիւն. բայց զի ոչ է հնար, այլ ոմն յոլովագոյն ստացեալ ինչս հասցէ և ոմն նուազ, պարտ է 'ի սակս բազմաց այնոցիկ իսկ որ առ քաղաքին են՝ ժամանակաց վասն հաւասարութեանն պատիւս անհաւասարս լինել քան իշխանութեան իսկ. և բերումն մտաց և բաշխումն, զարժանաւորութեանն իւրաքանչիւրոց պատիւն՝ ոչ միայն ըստ առաքինութեանն ծնողացն իսկ և իւրն, և ոչ ըստ մարմնոցն զօրութեանցն և գեղեցկութեանցն, այլ ըստ վարուց փարթամութեան իսկ և տնանկութեան՝ զպատիւսն և զիշխանութիւնսն իբրու հաւասարագոյնս՝ անհաւասարաւն: Սակայն չափաւորաւն ընկալեալք՝ ոչ տարբերիցին 'ի սակս այսոցիկ. չորս մեծութիւն գոյացութեանցն պատիւս առնել պարտ է. առաջինք և երկրորդք և երրորդք և չորրորդք. կամ այլօք ոմամբք առասացեալք անուամբք, յորժամ կացցեն իսկ և մնայցեն 'ի նոյն պատիւս, և յորժամ փարթամագոյնք 'ի տնանկութենէ, և 'ի փարթամութենէ տնանկք լինելով՝ փոխաբերիցին յայն որ պատշաճն է իւրաքանչիւրոց ինքեանց պատիւ:

Զայս իսկ 'ի վերայ այսոցիկ օրինաց ձև եդից ես թերևս իբրու հետևեալ: Քանզի պարտ է 'ի քաղաքի յայնմիկ որ մեծի հիւանդութեանն հաղորդեալ ոչ իցէ՝ այնորիկ որ բաժանումն կամ հակառակութիւն ուղղագոյն իցէ թերևս կոչել, ոչ դժուարագոյն տնանկութեանն գոլ առ ոմանց 'ի քաղաքացեացն և ոչ փարթամութեան, իբրու երկաքանչիւրոց ծնանելով զայսոսիկ զերկաքանչիւրս: Այժմ արդ սահման պարտ է սոցունց երկաքանչիւրոցս օրինադրին ասել. և եղիցի արդ տնանկութեան իսկ սահման՝ վիճակին պատիւն, որոյ պարտ է կեալ և մնալ. և զոր իշխան ոչ ոք, ոչ և միով իւիք երբեք

1 Բնագիրն ասէ. Կամեցեալ յառաջ խաղալ 'ի սահմանադրութիւն օրինաց, ոչ ոք կարասցէ մտանել 'ի ժառանգութիւն վիճակին տուելոյ ինքեան՝ առանց նախընթաց պայմանաց:

անտես արասցէ նուազագոյն լինելով. և յայլոցն ըստ այսոցիկ, ոչ և մի ոք որ պատուասէր է առաքինութեամբ։ Եւ չափ զսա դնելով օրինադրին, կրկնապատիկ սորա թողուցու ստանալ և եռապատիկ, և մինչև ցքառապատիկն. իսկ յոլովագոյն քան զայսոսիկ եթէ ստանայ ոք գտեալ, և կամ տուեալ ուստեք և կամ վաճառելով, կամ ոմամբ այլ այսպիսի պատահմամբ ստացեալ զառաւելեալսն քան զչափսն, քաղաքին թերևս զսոսա՝ և այնոցիկ որ զքաղաքն ունիցին՝ աստուածոցն բաշխելով՝ բարեւք ընտրեալ իսկ և առանց տուժի թերևս մնասցէ։ Ապ՛ եթէ անհաւան ոք լինիցի օրինիս այսմիկ, երևեսցի իսկ որ ախորժիցէ 'ի վերայ կիսոցն[1] սոցունց. և որ պարտապանն է, այնչափ մասն այլ հատուցանէ յիւրոց ստացուածոցն, և մնացեալ կէսն իցէ աստուածոցն։ Եւ ստացուածս, բայց 'ի վիճակէն ամենեցուն՝ ամենայն յայտնապէս գրեցին պահեստի իշխանացն որոց օրէնքն թերևս հրամայիցէ, իբրու զի այսպէս հանդէսքն՝ առ ամենայնի որչափ ինչք են՝ դիւրինք իցեն և յոյժ հաւաստիք։

Եւ արդ. յետ այսոցիկ, նախ իսկ քաղաքին պարտ է շինիլ յաւէտապէս 'ի մէջ գաւառին, և զայլսն՝ որչափ քաղաքին պիտանացութեանն իրս ունելով տեղոյն՝ ընտրեալ, զոր իմանալ իսկ և ասել դժուարին ինչ ոչ է։ Եւ յետ այսոցիկ մասունս բաժանել երկոտասան, դնելով տունք[2] յառաջագոյն և Արամազդայ և Աթենայ տաճար ծայրաքաղաք[3] անուանելով, պարաձգելով շուրջ այնմ յորմէ երկոտասան մասունքն հատանին. և քաղաքն իսկ՝ գաւառին հաւասար պարտ է լինել առ երկոտասան մասունս. բարի երկիրն իսկ գոլով մանրագոյնք, և վատթարին իսկ մեծագոյնք վիճակք։ Իսկ և բաժանիլ հինգ

1 Ըստ յոյն բնագրին՝ որ ամբաստան լիցի զնմանէ, տիրեսցէ 'ի վերայ կիսոյ մասինն ստացուածոց նորա։

2 Յոյնն՝ Εστίας Եստայ աստուածուհւոյ. զոր հայն փոխ թարգմանէ։

3 Յոյնն άκρόπολιν որ է գլխաւոր կամ բերդ բարձրաւանդակ, որպէս թարգմանեն նախնիք։

հազարս և քառասուն. և 'ի սոցանէ իսկ զիւրաքանչիւրն երկակի հատանել. և միճակակից առնել երկու հատուածք այնմ իսկ որ հուպ իցէ, և այնմ որ հեռևի հազորդելով երկաքանչիւրոցն այնմ որ առ քաղաքին է մասն. այնմ որ առ եզերսն իցէ՝ մի միճակ. և երկրորդն 'ի քաղաքէն այնմ որ յեզերացն, երրորդ՝ և զայլսն։ Այսպէս զամենայն հնարիլ. իսկ առ երկու հատուածսն այժմ իսկ ասացեալս՝ վատթար և ազնիւ գաւառին հաւասարելով բազմութեամբն իսկ և սակաւութեան բաշխմամնն։ Բաշխելով իսկ և զարսն իսկ երկոտասան մասունս այլս իսկ գոյութեանցն 'ի հաւասարս, մանաւանդ զերկոտասան մասունսն շարադասելով, և անուանագիր ամենեցուն լինելով. և յետ այսորիկ երկոտասան աստուածոց երկոտասան միճակ դնելով սրբազանել զհասեալն մասն երկաքանչիւրում աստուծոյ. և ազգ զսա անուանել։ Հատանել իսկ և երկոտասան հատուածսն քաղաքիս ըստ այսմ եղանակի՝ ըստ որում և զայլսն բաշխեցին գաւառ, և երկու բնակութիւնք երկաքանչիւրում բաշխելով՝ զհուպն իսկ միջոցին և զմերձն եզերացն և բնակութեանս իսկ այսպէս ունել զկատարած։

Բայց զմտաւ ածել զայսպիսի ինչ պարտ է առանց ամենայն յեղանակի. իբրու զի այժմ ասացեալքս ամենայն՝ ոչ երբեք թերևս յայսպիսի ժամանակս 'ի միասին անկցին, իբրու զի պատահեսցին ըստ համեմատութեան այսպէս ամենայնի լինելով, և արք ոչ դժուարասցին վասն այսմիկ զուգաբնակութեանս, այլ համբերեսցեն ունելով զինչս կարգաւորեալս և զչափաւորս յամենայն կենցաղումս, և զմանկանց լինելութիւնս. զորս ասացաք երկաքանչիւրոց յոսկոյ պակասեալք և յայլոց, զորս յայտ է օրինադրին հրամայելով առ 'ի յայսցանէ որ այժմ ասացան։ Եւ տակաւին գաւառի իսկ և քաղաքի, որպէս ասացաք, միջոցք և շրջանակի բնակութիւնք՝ ամենևին դրեթէ իբրու անուրջք ասելով կամ ստեղծանելով իբրու ումեմն խորասով[1] մեղուաց զքաղաք և զքաղաքացիք.

1 Յոյնն՝ χήρες մոմ, մոմեղէն։

և ունին արդ այսոքիկ ոչ վատթարագոյն ումեմն յեղանակաւ ասացեալք. բայց պարտ է վերստին յանձն առնլով առ սմա զայսպիսիս դարձեալ՝ թէ օրինադրողն արդեւք առիցէ մեզ զայս ինչ բանիւք այսոքիւք. ով սիրելիք, մի համարիցիք զանխլել առ 'ի յինէն զասացեալս այժմ, իբրու զի ճշմարիտ յեղանակաւ ումեմն պատմի։ Այլ զիւրաքանչիւրոց համդերձելոցն լինել՝ իրաւագոյն վարկանիմ գոլ զայս ինչ. զայն իսկ որ զարացոյցն ցուցանէ, թէ որպիսի պարտ է ձեռնադրութեանն լինելով ինչ 'ի բաց պակասիլ 'ի գեղեցկագունիցն իսկ և 'ի ճշմարտագունիցն, և որում անհնար է ինչ պատահի լինել այսոցիկ՝ յայսմանէ իսկ խոտորիլ և ոչ գործել. և որ ինչ 'ի սմանէ այլոցն հուպ իցէ, և բնաւորեալ բազազանագոյն պատշաճագունիցն գործիլ՝ զնոյնս իսկ հնարիլ թէ որպէս արդեւք լինիցի, և յօրինադիրն թողուլ զի ածցէ խորհրդոյն կատարած. և այսոցիկ լինելով՝ յայնժամ հաղորդաբար դիտել համդերձ նովաւ զոր ինչ պատշաճն իցէ զասացելոցն, և զոր ինչ ընդդիմամարտիցի օրինադրութեանն. քանզի զխոստովանեալն իսկ ամենայն պարտ է գործել յամենայնի, և զայն իսկ որ յուրն բանի գոյացուցիչ գոլ արժանանալոց է՝ այժմ իսկ պարտ է յօժարանալ տեսանել զնոյնս։

Իսկ յետ թուելոցն երկոտասան մասանցն բաշխմանս թէ որպիսի է յեղանակաւ, և յայտ է զի երկոտասան մասունքն՝ ներքոյ իւրեանց բազում առնելով բաշխմունս, և զայն իսկ որ սոցունց հետեւին, և 'ի սոցանէ լինին մինչև ցքառասնիցն և 'ի հինգ հազարիցն։ Ուստի ցեղք և հրապարակք և գեւղք. և առ սոքօք իսկ զպատերազմական դասքն և զզերմունքն, և տակաւին գահերկանք, և չափ իրողութեան ցամաքագունից և խոնաւատեսակաց. և զկշիռս զայսոքիկ ամենայն չափաւորս իսկ, և միմեանց զուգաձայնս պարտ է օրինադրին կարգել. և

1 Այս է՝ որում եթէ խուչընդոտն ինչ անյաղթելի ընդ առաջ ելցէ, հրաժարել 'ի բաց կալ 'ի գործոյն։

առ այսոցիկ ոչ յայնցանէ երկնչիլ պարտ է զանզիտելով 'ի թուեցեալ թերեւս լինել անարգաքանութենէ. եթէ կարգիցէ ոք որչափ արդեւք անօթք ստացեալ իցեն, զոչ և մի 'ի սոցանէ անչափ գոլ թողուլ. և հասարակաց բանիւ յօրինելով՝ առ ամենայն գոլ պիտանացուք զթուոցն բաշխմունքն և զանազանութիւնքն, որչափ սոքա ինքեանց պաճուճեալ իցեն. և որչափ երկայնութեամբ և խորութեամբ զանազանին, և հնչմամբ իսկ և շարժութեամբք այնոքիւք իսկ որ ըստ ուղիղ գնացիցն են՝ 'ի վեր և 'ի ստորին բերմանն և բոլորատեսակ շրջաբերութեանն. զի առ այսոքիկ ամենայն հայելով պարտ է օրինադրին հրամայել քաղաքացեացն ամենեցուն՝ ըստ զօրութեան իւրեանց ոչ պակասիլ 'ի շարադասութենէս. քանզի առ տնօրէնութիւն և առ քաղաքավարութիւն և առ արհեստ ամենայն՝ մի ոչ ինչ այսպէս զօրութիւն ունիցի մանկական ուսումն մեծագոյն՝ իբրու որ առ թիւսն է դեգերումն, և մեծագոյն իսկ զի զնիրհեալն և բնութեամբ անուսումնականն զարթուցանէ, և քաջուսումն և յիշող և հուպ 'ի խոհեմութիւն գործիցէ՝ առաւել քան զբնութիւնն իւր աճեցուցանելով աստուածային արհեստիւ:

Արդ զայսոսիկ ամենայն եթէ այլօք իսկ օրինօք և խորհրդովք 'ի բաց բարձցէ ոք զանազատութիւնն և զընչասիրութիւնն յանձանցն հանդերձելոցն ստացա, բաւականապէս իսկ և մեծաշահաւոր ստանալ բարի հրահանգքն, և պատշաճագոյնք լինելով թերեւս. ապա եթէ ոչ՝ զանուանեալն իսկ խորագիտութիւն՝ իմաստութեան փոխանակ 'ի բաց գործելով ոք զանխլասցի՝ որպէս զեգիպտացիսն և զփիւնիկեցիսն և այլ բազում ազգս գործել՝ այժմ է տեսանել 'ի ձեռն այլոց խորհրդոցն և ստացուածոցն անազատութեանն, եթէ օրինադիր ոք յոռին գոլով. գործեաց նա զայսպիսիս, և եթէ դժուարին պատահեալն հանդիպեալ, և եթէ այլ ումն բնութիւն այսպիսի: Քանզի, ով Մեգիլէ իսկ և Կղինիա, ոչ այս իսկ 'ի մէնջ զանխլիցի, յաղագս տեղեաց՝ իբ-

րու ոչ են այլք ոմանք այլոց տեղեաց տարբերեալք առ 'ի ծնանիլ մարդիկ լաւագոյնս և վատթարագոյնս՝ որոց ներհական ոչ է պարտ օրինադրել։ Զի ոմանք իսկ վասն պէսպէս հողմոց՝ և դարձուած տոցունց այլատեսակք իսկ են և անյարմարք. և ոմանք վասն ջրոցն, և ոմանք վասն 'ի յերկրէ սննդեանն, ոչ միայն մարմնօք լաւագոյնք և վատթարագոյնք, այլ և 'ի հոգիսն ոչ նուազ զօրութիւն ամենեցուն այսպիսեացս գործել։ Բայց այսոցիկ ամենեցուն մեծագոյն իցէ տարբերել տեղիք գաւառի, առ որս աստուածային փչմունք և դից հանգիստք իցեն, զմիշտ բնակեալսն ընդունելով հաշտութեամբ. և ներհակապէս՝ որովք որ միտս իսկ ունիցի օրինադիրն՝ այց առնելով իբրու մարդ՝ թէ որպիսի՛ ինչ են այսոքիկ՝ դիտելով այնպէս համարձակիցի դնել օրէնս, զոր և քեզ առնել պարտ է, ով Կլինիա. և նախ բառնալի է առ այսպիսիս հանդերձելով բնակեցուցանել զգաւառն։

Կղինիաս. Այլ, ով սիրելի աթենացի, ասես իսկ ամենեւին գեղեցկապէս, և ինձ իսկ այսպէս առնել պարտ է։

# ՊՂԱՏՈՆԻ

# ՕՐԷՆՔ ԿԱՄ ՕՐԷՆՍԴՐՈՒԹԻՒՆՔ

## ՎԵՑԵՐՈՐԴ



Պղատոն. Այլ յետ այսոցիկ ամենայն ասացելոցս, գրեթէ իշխանաց կարգաւորութիւնք պարտ է 'ի քաղաքիս լինել, զի ունիցի արդ այսպէս երկու տեսակս այսոքիկ առ քաղաքավարութեան զարգուն լինել պատահի. նախ իսկ կարգաւորութիւնք իշխանաց. և որ իշխելոցն իցեն, թէ որչափ սոցա պարտ է գոլ, և որպիսի յեղանակաւ հաստատեալք. և ապա այսպէս զօրէնսն իշխանութեանց իւրաքանչիւրոց բացատրել, թէ զո՛ ոք ոմանք և որչափ, և որպիսիք պատշաճ իցէ իւրաքանչիւրոց։ Բայց փոքր ինչ արգելլով, նախ քան զընտրութիւնն ասասցուք բան ինչ վայելչական ասել յաղագս սորա։

Կղինիաս. Եւ զի՞նչ իցէ բանս այս իսկ։

Պղատոն. Այս ինչ. ամենայն իսկ յայտ է այսպիսի ինչ՝ զի օրինադրութիւն՝ մեծ գործ գոլով, զքաղաք բարեւք պատրաստեալ, իշխանութիւնք ոչ 'ի դէպ 'ի վերայ սորա կարգել բարեւք եդեալք, և ծաղր առ այսոքիկ ամենեւին յոյժ թերեւս պատահիցի, այլ և վնաս և խուպանմունք յոյժ մեծագոյնք քաղաքացն լինիցին արդեւք յայսցանէ։

Կղինիաս. Ո՞րպէս ոչ։

Պղատոն. Զայս այսուհետև ծանուցաւք քեզ, ով սիրելի, յաղագս այժմ քաղաքավարութեանս և քաղաքիս պատահիլ. քանզի տեսանես զի նախ պարտ

է այնոցիկ՝ որ ուղղապէս հասանեն առ 'ի յիշխանութեանցն զօրութիւնն՝ վարժմունք բազում սոցա, իսկ և սեռն իւրաքանչիւրոց մանկանցն առատուեալ դոլ մինչև ցընտրութեանն. և ապա զսոսա հանդերձեալ ընտրել՝ սնանիլ սովորութեամբ օրինաց՝ բարեւք խրատելով առ այնոցիկ որ դժուարինքն իցեն. և այնոցիկ որ ընդունողքն՝ ուղղապէս դատել, և տալ պատասխանի հնարաւորիլ զարժանիսն երկաքանչիւրոց։ Բայց զայսոսիկ որ նոր ժամանակաւ 'ի միասին իցեն հասեալք՝ գոլով անդէտք միմեանց և տակաւին անխրատք, ո՞րպէս երբեք հնար իցեն անվթարապէս զիշխանութիւնսն ընկալուլ։

Կղինիաս. Գրեթէ ոչ երբեք։

Պղատոն. Այլ քանզի նահատակութիւնն ամենեւին զպատճառս ոչ ընդունի, և քեզ արդ և ինձ այժմ զնոյնս առնել պարտ է. քանզի դու իսկ յանձն առեր զքաղաքն կրետացւոց ազգաւն յօժարապէս բնակեցուցանել՝ տասներորդ գոլով՝ իբրու դուդասես. և ես այժմիկ քեզ պաշտպան իսկ լինել ըստ հասեալ արդ մերոյ առասպելաբանութեանս. ոչ արդեւք առասպել ասելով կամաւ թողից առանց կատարելոյ զսա մոլորելով. քանզի այսպիսի գոլով՝ ամենեւին թերեւս երեւեցի առանց գեղեցկութեան։

Կղինիաս. Արիագոյն ասացեր, ով սիրելի։

Պղատոն. Ոչ միայն ասացից՝ այլ և արարից ըստ զօրութեան այսպէս։

Կղինիաս. Եւ մանաւանդ արասցուք ըստ որում ասեմքս։

Պղատոն. Իցէ այդ թերեւս, եթէ աստուած կամեսցի, և ծերութեամբս ժուժկալ լիցուք այսչափ։

Կղինիաս. Եւ վայելէ իսկ կամիլ։

Պղատոն. Վայելչագոյն իսկ է. բայց հետեւելով այսուիկ՝ ըմբռնեսցուք և զայս ինչ։

Կղինիաս. Զորպիսի՞ ինչ։

Պղատոն. Իբրու արիապէ՞ս տագնապեալ առ հասեալ ժամս, քաղաքս մեր իցէ բնակեալ։

Կղինիաս. Առ ի՞նչ հայելով, և ո՞ւր մանաւանդ զայս ինչ այժմ ասացեր։

Պղատոն. Որպէս զի պարզաբար և առանց երկիւղի անհմուտ արանց օրինադրեմք, զի այսպէս ընկալցին զայժմի եդեալ օրէնքս։ Եւ յայտ է այս իսկ այսչափ, ով Կղինիա, ամենայնի դրեթէ, և այնմ որ ոչ է ամենեին իմաստուն, ոչ դիւրաբար իսկ ընկալուլ սոցա ոչ ումանց իսկզբանն։ Ապ՛ եթէ սպասիցեմք երբեք այսչափ ժամանակ՝ մինչև մանկունք նոր ճաշակեալք իցեն օրինացն և 'ի միասին սնեալք, բաւականապէս սովորեալք, կամք իսկ սոցունց լինելով ընտրողապետացն՝ ամենայն քաղաքին հաղորդք լինիցին. և լինելով իսկ այնմիկ որ ասեմքս, եթէ ումամբք յեղանակաւ և հնարիւ լիցի ուղղապէս, ես իսկ բազում զգուշութիւն վարկանիմ լինել. և յետ այն իսկ որ յայնժամ հասեալ իցէ ժամանակին՝ զմնալն այսպէս դաստիարակեալ քաղաքին։

Կղինիաս. Ունի իսկ բանդ համեմատութիւն։

Պղատոն. Տեսցուք այսուհետև առ այսուիկ եթէ հնարուք բաւական հնարեսցուք թերևս ըստ այսոցիկ։ Քանզի ասեմ, ով Կղինիա, կնոսացեաց պարտ գոլ զանազանաբար քան զայլոց կրետացւոց, ոչ միայն հանդարտութիւն գտանել յաղագս դաւառիդ զոր այժմ բնակեցուցանէքդ՝ այլ և տարածել, այց առնել ըստ զօրութեան առաջին իշխանութեանցն, իբրու զի հաստատեսցին թերևս զգուշագոյն և արիապէս. և զայլսն իսկ դուզնաքեայ ինչ դիցուք գործ. բայց օրինապահք մեզ նախ և առաջինք ընտրել հարկաւորագոյն է ամենայն փութով։

Կղինիաս. Եւ զի՞նչ արդ առ այսուիկ գտցուք բան և հնար։

Պղատոն. Զայս իսկ ասեմ. ով մանկունք կրետացւոց, պարտ գոլ կնոսացւոցն վասն մաղթելոյն բազում քաղաքացն՝ հաղորդաբար հանդերձ այնոքիւք հասելովքն 'ի զուգաբնակութիւնս այսմիկ, 'ի նոցունց իսկ և յայնցանէ ընտրել երեսուն և եօթն իսկ զամենեսեան, և ինն և տասն 'ի մակաբնակելոցն, և զայլսն 'ի նորմէ իսկ 'ի Կնոսոսէ. և զսոսա կնոսացիք քաղաքաւն տալով քեզ, և զքեզ իսկ քաղաքացի գոլ այսպիսի բացաբնակութեանս, և մի 'ի յութ և 'ի

տասանցն՝ հաւանեցուցեալք և կամ չափաւոր զօրութեամբքն բռնադատեալք։

Կղինիաս. Եւ զիա՞րդ. դու իսկ և Մեգիլլոս, ով սիրելի, ո՞չ հաղորդեցայք մեզ քաղաքավարութեանս։

Պղատոն. Մեծ իսկ, ով Կլինիա, խորհին Աթէնք. մեծ իսկ ևս պարտ է, և հեռագոյն բացաքննակեն երկաքանչիւրքն. բայց քեզ ըստ ամենայնի դիւրին է և այլոց բնակչաց։ Ըստ այսոցիկ, որպէս այժմ յաղագս քո ասացեալքս, որպէս լինիցի արդեւք հեզագոյն 'ի ներգոյիցս մեզ այժմիկ ասացաւ. յառաջ հաստատելով ժամանակին և մնալով քաղաքավարութեանն, կամք սոցա եղիցի այսպիսի, ամենեքեան հաղորդելով կամաց իշխանացն. որչափ զէնք հեծելականք և կամ հետևակաց շուրջ պարեալ իցեն և պատերազմի հաղորդեալք իցեն, առ երկաքանչիւրս հասակաց իւրեանց զօրութեանց։ Բայց առնել զկամս ընտրողութեանն 'ի տաճարի՝ զոր և քաղաքն պատուականագոյն վարկանիցի. և բերել առ աստուծոյ բագինն իւրաքանչիւրում 'ի տախտակ գրելով զանունն՝ որ առ 'ի հօրէն, և զազգին և զհրապարակին, ուստի դիմեալ իցէ. հրապարակաւ առ այսուիկ գրել և զիւրն ըստ այսոցիկ այսպէս անունն. և որ կամիցի պատշաճ իցէ 'ի տախտակացն՝ զոր ինչ երևեսցի ոչ ըստ հաճոյից սորա գրեալ, վերստին առեալ դնել առ վաճառանոցն, ոչ նուազ քան զերեսուն օրն։ Եւ 'ի տախտակացն՝ այն որ ընտրեալ իցեն նախ իսկ մինչև ցերեք հարիւրիցն, ցուցանել իշխանացն ամենայն քաղաքին. և քաղաքն իբրու այսպէս 'ի սոցանէ դարձեալ բերել՝ զոր իւրաքանչիւր ոք կամիցի, և զայնոսիկ որ երկրորդ անգամ ընտրիցեն հարիւրն՝ ցուցանել դարձեալ ամենեցուն, և զերրորդն բերիցէ. իսկ 'ի հարիւրէն որ կամիցի՝ զոր և ախորժիցէ ընտրութեամբ գնալով, և եօթն և երեսունն. որոց յոլովագոյնք լինիցին ընտրութեան իշխանք, բացերևեցուցանելով զսոսա ո՛ ոք ոմանք։ Արդ, ով Կլինիա և Մեգիլլէ, զայս ամենայն հաստատիցեն մեզ 'ի քաղաքին՝ յաղագս իշխանացն և ընտրութեանն սոցունց։ Արդ ածեմք զմտաւ որպէս առ այնոցիկ՝

որ յառաջագոյն այսպէս կազմեալ իցեն քաղաքք, Հարկ է իսկ գոլ ոմանց. և եթէ ոքք իցեն թերևս առ 'ի յամենայն իշխանութեանց լինելով ո՛չ իցեն։ Պարտ է իսկ այսպէս երբեք, և այսոցիկ ոչ յուրն՝ այլ մանաւանդ ծայրագոյնք. քանզի ասի իսկ առակօքն՝ Սկիզբն կէս գոլ ամենայն գործոյ. և զբարեւք իսկ սկսանիլն ամենեքեան իւրաքանչիւր ժամու ներբողեմք. բայց այս իսկ է, իբրու ինձ երևի, յոլովագոյն քան զկէսն. և ոչ ոք զսա բարեւք լինելով ներբողեաց բաւականապէս։

Կղինիաս. Ուղղապէս ասես։

Պղատոն. Եւ արդ ոչ ճանաչելով իսկ զսա՝ թողուցուք առանց ճառելոյ, ոչ ինչ հաւատոյ առնելով մեզ նոցունց թէ որո՛վ իցէ յեղանակաւ։ Ես արդ ոչ ունիմ կարողութիւն ասել, բաց 'ի միոյ առ հասեալ ժամս հարկաւոր և պատշաճ բանի։

Կղինիաս. Որո՞յ իսկ։

Պղատոն. Ասացից արդ այսմիկ քաղաքիս, զոր հանդերձեալ եմք բնակեցուցանել, որպէս հայր և մայր ոչ գոլով բաց 'ի բնակեցուցողէն սորա քաղաքէ։ Տգէտ ոչ գոլով, զի բազումք 'ի բնակելոցն տարբերեալք 'ի բնակեցուցողացն՝ բազում անգամ ոմանք եղեն իսկ և իցեն. սակայն այժմ իսկ առ հասեալ ժամս՝ որպէս մանուկ թէպէտ և երբեք հանդերձեալ իցէ տարբերեալ գոլ 'ի ծնողացն, սակայն առ հասեալ ժամն խրատու կարօտանալով գոլովէ իսկ, և առ 'ի ծնողացն փափագէ և ձողոպրելով միշտ առ ընտանիսն կարևորք միայն գտանէ մարտակիցք։ Զոր ինչ այժմիկ ասեմք ցկնոսացիք վասն առ նոր քաղաքին փութոյն. և ցնորն՝ առ Կնոսոս գոլոյն պատրաստապէս լինելով։ Ասացից արդ որպէս ասացի այժմիկ, քանզի երկրորդ անգամ գեղեցիկն իսկ ասացեալ՝ մնաս ինչ ոչ գործէ, կնոսացոյն պարտ գոլ դարմանել զայնոսիկ զամենեսեան հասարակաբար հաճելով յայնցանէ որ 'ի բացարձակութիւն հասեալ իցեն՝ զերիցագոյնքն և զարիագոյնքն 'ի զօրութիւն ընտրելով ոչ նուազ արանց հարիւրից, և սոցունց կնոսացոց իցեն այլք հարիւր։ Սոքա իսկ եկեալք՝ ա-

սացից պարտ գոլ 'ի Նոր Քաղաքն' 'ի միասին փոյթ առնել, իբրու զի իշխանութիւնքն հաստատին ըստ... և հաստատեալք իսկ փորձեսցին և այսոցիկ լին... կնոսացւոցն բնակիլ. իսկ զՆոր Քաղաքն զինքն... փութալ կեալ իսկ և բարեբախտիլ:

Եւ այնոքիկ եւթեանցն և երեսնիցն՝ այժմ իսկ և որ յապառնի... առ այսոցիկ մեզ եղիցին ընտրեալք .... օրինացն. և ապա գրոցն այնոցիկ որ իւրաքանչիւր ոք բացադրիցէ իշխանօքն զբազմութիւնքն գոյիցն իւրեանց: Սակայն որ մեծագոյն գին ունիցի՝ չորից իցէ մնասից. և որ զերկրորդն՝ երից, և որ զերրորդն՝ երկու մնասից, և մնասի միոյ չորրորդն: Ապ՛ եթէ այլ ինչ երևեսցի ոք քան զգրեցեալքդ ստացեալ՝ հրապարակին լիցի ամենայն այնպիսին: Եւ առ այսուիկ՝ դատաստանի պարտապան իցէ այնմիկ որ կամիցի քննել զնա՝ ոչ գեղեցիկ և ոչ բարի անուանագոյն՝ այլ գարշելի իսկ եթէ կալցի վասն շահի զօրէնս արհամարհեալ: Եւ չարաշահութիւն արդ գրելով 'ի վերայ սորա՝ որ կամիցին 'ի վերայ հասցէ իբրաւամբք հանդերձ նոքօք օրինապահօքն: Ապ՛ եթէ հալածեալն պարտապան իցէ՝ հասարակաց ստացուածոցն ոչ հաղորդեսցի. և բաշխումն ինչ յորժամ լինիցի քաղաքին՝ անմասն իցէ բաց 'ի վիճակէն. և գրեսցի պարտապան մինչև կենդանի իցէ՝ անդանօր՝ ուր ընթերցցի ամենայն որ և կամեսցի: Յոլովագոյն իսկ քան զքսան ամս ոչ երբեք օրինապահ իշխեսցէ. բերիցի յիշխանութիւն ոչ նուազ յիսնից լինելով ամաց, և վաթսնամեայ ածեալ՝ տասն միայն իշխեսցէ ամս: Եւ ըստ այսմիկ բանիս՝ եթէ ոք յոլովագոյն կեցցէ ամաց եւթանասնից, ոչ ևս առ այսոքիւք ամս առ 'ի յիշխանացն՝ զայնպիսի իշխանութիւնն իբրու իշխելով տրամախորհիցի: Իսկ արդ յաղագս օրինապահացն այսոքիկ ասասցին կարգաւորութիւնք երիս. և յառաջագոյն հասանելով, իւրաքանչիւր ոք յօրինացն հրամայեսցէ այսոցիկ արանցս՝ որոց ոմանց պարտ է ըստ այժմիկ ասացելոցս ստացւոց փոյթ առնել: Բայց այժմ ըստ կարգի յաղագս այլոց իշխանութեանց ընտրութեան ասասցուք արդեւք.

զի պարտ է իսկ յետ այսոցիկ զօրավարք ընտրել. և սոցունց 'ի պատերազմունսն իբրու պաշտօնեայք ամենք հեծելապետք և ազգագլուխք և հետևակք ցեղիցն դասուցն զարդարողք, որոց վայելուչ իցէ թերևս իսկ այս անուն մանաւանդ՝ որպէս և բազումք դասապետք մականուանեն զսոսա սոցունց։

Արդ զօրավարք իսկ 'ի նորին քաղաքէն. իսկ օրինապահքն նախարկցեն և ընտրիցեն իսկ յառաջարկելոցս ամենեքեան պատերազմի հաղորդքն լեալք հասակօքն՝ և լինելով յիւրաքանչիւր ժամու։ Ապ՝ եթէ արդեւք թուիցի ումեմն յառաջագոյն նախարկելոցն վեհագոյն գոլ քան զոմն յայնցանէ որ յառաջարկիցեն մականունելով. որոյ փոխանակ նախարկիցէ զոմն, զայս իսկ երդնուլով՝ փոխանակ յառաջարկիցէ զմիւսն։ Բայց որպէս և թուիցի արդեւք ձեռնադրելով 'ի հաճեցեալսն, ընտրեցի և երիս՝ որոց թերևս յոլովագոյն ձեռնադրութիւնն լինիցի, սոցա գոլ զօրավարք։ Իսկ և դարմանողք այսոցիկ որ 'ի պատերազմին ընտրեալս իցեն, որպէս և օրինապահքն և դասապետքն։ Իսկ սոցունց յառաջարկել զհաճեցեալքն՝ երկոտասան զօրավարքն իւրաքանչիւրում պահու դասապետք. և սոցունց փոխանն նախարկութիւնն գոլ որպէս և զօրավարացն լինիր զնոյնն։ Եւ յաղագս դասապետացն և զմակաձեռնարկութիւնն և զդատն. բայց ընտրեալ բազմութեանն այնմիկ առ հասեալ ժամն նախ քան զպահապանքն իսկ և կացուրդ ընտրիլն, զօրինապահքն 'ի միասին ժողովելով 'ի վայրի ուրուք սրբազանի իսկ և բաւականագունի նստուցանել. որիշ իսկ զինուորքն, և որիշ զհեծեալքն, և երրորդ սոցունց՝ ըստ կարգի զամենայն, որչափ պատերազմողն իցէ. և ձեռնադրելով զզօրավարքն իսկ, և զհեծելապետքն ամենեքեան։ Իսկ զդասապետքն՝ այնոքիկ որ վահանք են եդեալ. և զազգագլուխքն իսկ սոցունց՝ ամենայն հեծելականն ընտրիցէ։ Իսկ այնոցիկ որ զինից թափուրք են կամ այլոցն 'ի պատերազմականացն՝ առաջնորդք զօրավարքն ըստ ինքեանց կարգիցեն։ Եւ արդ հեծելապետաց կարգաւորութիւն թերևս մեզ լինիցի տա-

կաւին՝ սոքա արդ յառաջ արկցեն. իսկ այնոքիկ որ զզօրավարքն նախարկիցեն, և զընտրութիւն և զփոխարկութիւն սոցունց նոյնպէս լինել որպէս և զօրավարացն լինէր։ Եւ ձեռնադրիցէ զոսսա հեծելականն՝ յանդիման տեսանելով հետևակացն և երկուորաց, թերևս յոլովագոյն ձեռնադրութիւնն լինիցի, առաջնորդք գոլ ամենայն հեծելոցն, և զերկբառութիւնքն ձեռնադրութեանցն մինչև ցերկոցունցն գոլ։ Իսկ զերրորդն՝ եթէ երկու լիցէ՝ համարտացին սոյունց այնոքիկ որ ձեռնադրութեանն չափ իւրաքանչիւրոց իւրաքանչիւրն փոյթ էր։ Եւ կացուրդ իսկ գոլ երեսուն երկոտասանք, որ վաթսուն և երեքհարիւրք լինելով՝ վայելչականք իցեն 'ի բաշխմունսն. և մասունս բաժանելով չորս, իւրաքանչիւր ոք իննըսուն թիւ գոլով, 'ի սոցանէ իւրաքանչիւրոյ 'ի գնոցն բերելով իննսուն խորհրդածուքն։ Նախ իսկ 'ի մեծագոյն գնոյն զամենեսեան բերելով 'ի հարկէ, և կամ տուժել զանհաւանեալն՝ թուեցեալ տուժիւն. և յորժամ ածցին՝ զոսսա իսկ նշանագրել, և 'ի վերջին աւուրն բերել՝ յերկրորդ գնոցն, որպէս և յառաջնոյն և յերրորդ։ Յերրորդ գնոցս բերելով զայն իսկ որ ախորժեն, բայց հարկաւոր գոլով այնոցիկ որ յերրորդ գնոցն են։ Իսկ զչորրորդն և զփոքրագոյնն ազատ թողացուցանել 'ի տուժէ՝ զայն որ ոչ իսկ կամիցի բերել։ Իսկ 'ի չորրորդում աւուրն բերել, 'ի չորրորդ և 'ի փոքրագոյն գնոյն՝ զամենեսեան. սակայն անտուրժ գոլ զայնոքիկ որ 'ի չորրորդ և 'ի յերրորդ գնոյն իցեն, եթէ բերել ոչ ախորժիցեն։ Իսկ զայնոքիկ որ 'ի յերկրորդէն և 'ի յառաջնոյն իցեն, ոչ բերելով՝ տուրժիլ զայն իսկ որ 'ի յերկրորդոյն՝ եռապատիկ յառաջագոյն տուրժին, և զայն իսկ որ 'ի յառաջնոյն է՝ քառապատիկ, և 'ի հինգերրորդ աւուրն՝ զնշանագրեալ անուանսն արտաքս բերեալ իշխանացն, և տեսանել ամենեցուն քաղաքացեացն, և բերել 'ի սոցանէ ամենայն այր, և կամ տուժել տուժաւն առաջնոյն։ Բայց ութսուն և հարիւր ընտրելով յիւրաքանչիւրոց պատուոյն՝ զկէսն 'ի սոցունց վիճակաւորս առնելով ընտրել, և գոլ զոսսա տարոյն այնմիկ խորհրդածուք։

Իսկ արդ բաժանումնս այսպէս լինելով, միջոց թերևս ունիցի մի իշխանական և հրապարակակալական քաղաքավարութեան, որոյ պարտ է միջոց գոլ հաւասար քաղաքավարութեան։ Քանզի ծառայք և տեարք ոչ երբեք լինիցին բարեկամք, և ոչ հաւասարապատուով կոչեցեալք՝ յոռիք և առաքինիք. քանզի անհաւասարիւքն՝ հաւասարքն անհաւասարք լինիցին թերևս. և եթէ ոչ հանդիպեսցին չափուն, զի վասն երկաքանչիւրոցս այսոցիկ քաղաքավարութիւնքն լինին հակառակութեամբ լի. քանզի նախնի բանն ճշմարիտ գոլով՝ իբրու հաւասարութիւն զսիրելութիւն գործէ մանաւանդ՝ ուղղապէս ասացեալ է և ներդաշնապէս. բայց թէ ո՛ ոք է երբեք հաւասարութիւն որ զնոյնս այսպէս կարող է, վասն ոչ յոյժ հաւասարի գոլոյն, խռովեցուցանէ զմեզ։ Քանզի երկուց հաւասարութեանց գոլով համանունք իսկ են. սակայն գործով 'ի բազում ինչ զրեթէ ենն ներհականք. զի զմինն 'ի սոցանէ 'ի պատիւսն ամենայն քաղաքն բաւական է յառաջաբերել. և ամենայն օրինադիր զչափով հաւասարն, և զկշռոյն և զթուոյն՝ միճակաւ 'ի բաց ուղղելով զսա 'ի բաշխմունսն։ Իսկ զճշմարտագոյն և զարիագոյն հաւասարութիւնսն՝ ոչ է դիւրաւ ամենայն 'ի տեսանել. քանզի Արամազդայ է ընտրութիւնն, և միշտ առ մարդկան սակաւ ինչ երկարանայ։ Բայց որչափ արդեւք բաւիցէ, քաղաքաց և ռամկաց զամենայն բարութիւնս գործէ. քանզի մեծագունին յոլովագոյն, և փոքրագունին զմանրագոյնսն բաշխէ չափաւոր՝ առատուելով ըստ իւրում բնութեանն իւրաքանչիւրում և պատիւս իսկ. մեծագունիցն ըստ առաքինութեան միշտ մեծագոյնս. և այնոցիկ որ զներհակն ունիցին առաքինութեան և խրատոյ, զվայելչագոյնն. երկաքանչիւրոց բաշխէ ըստ համեմատութեան. քանզի է երբեք և քաղաքականն մեզ միշտ սա իսկ նոյնս իրաւունս՝ որոյ և այժմ մեզ ցանկանալով, պարտ է առ նոյնս իսկ հաւասարութիւն, ով Կլինիա, 'ի բաց հայելով զայժմիկ բռնեալս բնակեցուցանել քաղաք, և զայլ թերևս երբեք բնակեցուցանէ։ Առ այս իսկ նոյնս դիտելով պարտ է օրի-

նադրել. այլ ոչ առ սակաւք բռնաւորք՝ կամ առ մի կամ կալողութիւն ինչ հրապարակի, այլ առ իրաւունսն միշտ այնոքիկ է այժմիկ արդեւք ասացեալքս. զայն որ ըստ բնութեան հաւասարն է՝ անհաւասարիւք յիւրաքանչիւր ժամու բացատրել հարկաւոր իսկ է, և այսոցիկ հոմ անուամբս երբեք վարիլ առ ամենայն քաղաքի, եթէ հանդերձեալ իցէ հակառակութեամբ ինքեան ոչ հաղորդել, ըստ մասին ուրուք. քանզի հեզութիւնն և ներողութիւնն կատարելագունին և ստուգագունին՝ առանց ուղղագոյն իրաւանցն իցէ խորտակեալ, յորժամ այսպէս լինիցի։ Վասն որոյ առ վիճակին հաւասարութեամբ հարկէ վարիլ 'ի սակս բազմաց դժուարութեանց զաստուած և զբարի պատահումն. և յայնժամ ըղձիւք կարդալ՝ 'ի բաց ուղղել սոցա զվիճակն առ իրաւագոյն։ Այսպէս արդ վարիլ հարկաւորապէս իսկ երկաքանչիւր հաւասարութեամբն. իբրու զի մանաւանդ առ սակաւագոյնս միոյն պատահման կարօտանալով. զայսոքիկ այսպէս վասն այսոցիկ, ո՛վ սիրելիք, հարկաւոր է առնել քաղաքին՝ որ կեալ իցէ հանդերձեալ։ Այլ զի նաւ իսկ 'ի ծովի զնաւարկութիւն առնելով կարօտանայ պահպանութեան 'ի տուընջեան միշտ և գիշերի, այսպէս և քաղաք 'ի ծըփմունս այլոց քաղաքացն գոլով և պէսպէս դաւաճանութեամբ բնակեալ վշտագնելով՝ ըմբռնիլ պարտ է իսկ 'ի տուընջենէ մինչև ցգիշեր, և 'ի գիշերէ առ տիւն շարամերձիլ իշխանաց առ իշխանս, և պահապանաց առ պահապանս, փոխադրելով միշտ և աւանդելով ոչ երբեք դադարել։ Բայց բազմութեան ոչ է հնար արագապէս ոչ երբեք ոչ ինչ յայսցանէ գործել. բայց հարկաւոր է բազմաց իսկ այնոցիկ որ խորհրդածուք են՝ առ յոլովագոյնն ժամանակին թողուլ առ նոյնս իւրեանց ընտանեգոյնս՝ կալ և մնալ, և ուղղութիւնս առնել իրի իւրեանց մատակարարութեան. և զերկոտասաներորդ իսկ մասն իւրեանց՝ առ երկոտասան ամիսսն բաշխելով. մինն առ միոյն առտուիցեալ զպահապանսն, և հասանելով ուրուք այլուստ երբեք և կամ 'ի նորին քաղաքէս՝

պատրաստապէս հանդիպիլ. եթէ պատմել ինչ ախորժիցէ, և եթէ հարցանել ինչ յանցանէ իսկ յորոց պատշաճ է քաղաքի առ այլոց քաղաքաց՝ տալ պատասխանի, և հարցանելով այլաբար ընկալուլ զպատասխանիսն։

Եւ արդ 'ի սակս այնոցիկ որ ըստ քաղաքին իցեն յիւրաքանչիւր ժամու յանդգնութեանցն պէսպէս՝ սովորելոյն միշտ լինել, որպէս զի մանաւանդ ոչ լինիցին. և լինելով իսկ, զի վաղվաղակի իմացեալ քաղաքին՝ բժշկիցէ զլեալն. և 'ի ձեռն ընտրեալ ժողովրդեանն՝ միշտ պարտ է այսորիկ գոլ՝ որ նստեալն է առաջի քաղաքին տիրութեանս, և ընտրութեանց՝ այնոցիկ որ ըստ օրինացն յանկարծակի հասանին քաղաքին։ Իսկ արդ զայսոսիկ ամենայն երկոտասաներորդ մասն թերևս իցէ խորհրդոյն, որ զաքդարեցուցանեն զմետասան մասունսն տարոյն հանգչելով. և հաղորդաբար համդերձ այլօք իշխանօքն պարտ է զպահպանութիւնքս այսոքիկ պահել առ քաղաքաւն այսմիկ միշտ մանր մասինս խորհրդոյս։ Արդ իրսն որ առ քաղաքաւն են այսպէս ունելով չափաւորապէս, թերևս իցեն կարգեալս։ Իսկ այլոյ *ամենայն գաւառին որպիսի ինչ է փոյթ, կամ որպիսի կարգաւորութիւն։ Արդ ո՞չ յորժամ ամենայն քաղաքն, և 'ի միասին ամենայն գաւառն՝ ըստ երկոտասան մասանց բաշխեցին նորին քաղաքիս ճանապարհացս, և բնակութեանց և շինութեանց և նաւահանգստից և վաճառանոցի և աղբերաց և տաճարաց և վերնատանց, և ամենեցուն այսպիսեացս մատակարարողս պա՞րտ է ոմանց գոլ 'ի բաց երևենալով։

Կղինիաս. Եւ ո՞րպէս ոչ։

Պղատոն. Ասեմք արդ զի տաճարացն իսկ տաճարապետք, և քահանայք և քահանայուհիք պարտ է լինել։ Իսկ ճանապարհաց և շինութեանց և զարդուց որ առ այսոքիկ՝ և մարդկան, զի մի ապիրատասցեն, և այլոց գազանաց 'ի նոյն իսկ քաղաքին, որպէս զի վայելչագոյնսն քաղաքացն լինիցին, բաժանել պարտ է երիս տեսակս իշխանաց՝ առ այժմիկ իսկ ասացեալս.

յօրինողք[1] քաղաքիս մականունելով, և զայն իսկ որ առ վաճառուն զարդն իցեն՝ վաճառօրէնս[2]. և տաճարացն քահանայք՝ որոց իսկ իցեն ազգաւ քահանայութիւնք. և զսոսա ոչ շարժել։ Այլ՝ եթէ իբրու զառաջինն բնակեցուցանելով՝ պարտ է լինել առ այսոքիւք կամ ոչ իւիք, և կամ սակաւ ումամբ որոց ոչ իցեն հաստատեալք, հաստատել պարտ է քահանայք, և քահանայուհիք տաճարապետք լինել աստուածոցն։ Այսոցիկ արդ ամենեցուն՝ ոմանց կամաւ պարտ է և ոմանց վիճակաւ՝ այնոցիկ որ առ կարգաւորութիւնսն են իւրս լինել. շարամերձելով առ բարեկամութիւն միմեանց զհրապարակ և զոչ հրապարակ, յիւրաքանչիւրում գաւառի իսկ և քաղաքի, իբրու զի մանաւանդ հոմախոհք։ Իսկ արդ տաճարացն իւրս աստուծոյ՝ յորդորելով զսա, և շնորհելով լինել վիճակաւ այսպէս աստուածայինն պատահմամբ բացատրելով. բայց պարտ է ընտրել զայն իսկ որ միշտ հասանի՝ նախ իսկ ամբողջ և հարազատ. և ապա իբրու զի մանաւանդ 'ի մաքրելոց իցէ բնակութեանց, 'ի սպանմանէ մաքուր, և յամենեցուն որ առ այսպիսիս են յաստուածայինս մեղանչելով սոցա. և հայր իսկ և մայր այսպէս կենցաղավարեալք։ Բայց 'ի Դելփեաց պարտ է զամենայն օրէնս յաղագս աստուածայնոցն պահանջելով, և հաստատելով 'ի վերայ սորա պատմողք՝ սոքօք վարիլ. բայց ըստ ամի գոլ և ոչ երկարագոյն՝ զիւրաքանչիւր քահանայութիւն. և տակաւին ոչ նուազ քան զվաթսուն իցէ մեզ լեալ՝ որ հանդերձեալ իցէ ըստ սրբազան օրինացն առ աստուածայինսն բաւականապէս մաքրագործել։ Այսոքիկ և յաղագս քահանայագործութեանն եղիցին օրէնս։

Եւ զպատմողսն՝ երիս բերիցեն իսկ չորս ազգքն[3]. չորս իւրաքանչիւր ոք 'ի սոցանէ. և երից իսկ որոց թերևս յոլովագոյն լինիցին համարս իսկ և քննու-

1 Յոյնն՝ αστυ – νόμος.
2 Յոյնն՝ ἀγορα – νόμος.
3 Բնագիրն՝ երկոտասան ցեղքն կամ տոհմք։

*թիւնս ինն՝ առաքել 'ի Դելփիս. բաժանել յիւրաքանչիւրում եռակէ զմինն, և զընտրութիւնն սոցա և զժամանակին հասակն գոլ՝ որպէս և քահանայիցն. և սոքա լինիցին պատմողք յամենայն կենցաղումն, և զպակասեալն ընտրիցեն՝ չորս ազգքն ուստի և պակասիցի. և շտեմարանապետք արդեւք սրբազան ընչից իւրաքանչիւրոց տաճարացն, և տղայոցն՝ սոցունց և վարձուցն տեարք։ Եւ ընտրել 'ի մեծագոյն ստացուածոցն երիս 'ի մեծագոյն տաճարսն, և երկու 'ի փոքրագոյնսն, և առ չափաւորագոյնսն մի. և զընտրութիւնն սոցունց և զհաճոյսն առնել նոյնպէս որպէս և զօրավարացն լինիր, և յաղագս տաճարացն իսկ լինիցի այսպէս։*

*Բայց առանց պահպանութեան ոչ ինչ իցէ, որչափ հնար է։ Արդ յաղագս քաղաքին պահպանութեանն այսպէս լինիցին. զօրավարացն փոյթ առնելով և դաստապետացն և հեծելապետացն և ազգապետացն և պահապանաց և յօրինողացն քաղաքին և վաճառացն օրինացն, յորժամ առ 'ի մէնջ ասացեալքս հաստատեսցին բաւականապէս, պահել և զայլ գաւառն ամենայն ըստ այսոցիկ յերկոտասան։ Իսկ մեզ գաւառն ամենայն ըստ զօրութեան հաւասար մասունս բաշխեցաւ, և ազգ մի իւրաքանչիւրում մասին մակավիճակեալ, ըստ ամի ամի առատուիցէ հինգարք իբրու ագարակաց օրինողք իսկ և ազգապետք. և սոցունց պարտ է յանձնուլ զիւրեանց ազգին իւրաքանչիւրում երկոտասաներորդ 'ի հինգ 'ի համբակացն, ոչ նուազ քան եթէ հինգ և քսան ամաց լինելով, և ոչ յոլովագոյն քան եթէ եռասնից. և սոցունց վիճակեսցին մասունքն գաւառին, ըստ ամսոց իւրաքանչիւրքն՝ իւրաքանչիւրոց. իբրու զի ամենայն գաւառին հմուտք իսկ և մակացողք՝ ամենեքեան լինիցին։ Եւ երկու ամս իշխանութեանն և պահպանութեանն լինել, և պահպանողացն իսկ և իշխանացն, իբրու զի յառաջագոյն թերեւս հասցին մասունքն, զգաւառին տեղիքն փոխաբերելով. միշտ*

զայն որ 'ի կարգին է տեղի իւրաքանչիւր ամսոյ վարկանել՝ պահպանապետացն յաջակողմն շրջանակին, և աջակողմն լինիցի ընդ առաւօտն[1]: Իսկ և շրջաբերելով տարոյն յերկրորդում ամին, իբրու զի յոլովագոյնք 'ի պահպանորդացն ոչ միայն հմուտք գաւառին լինիցին առ մի ժամ տարոյն, և հանդերձ գաւառաւն համանգամայն և ժամուն իւրաքանչիւրում առ իւրաքանչիւր տեղի լինելով, իբրու յոլովագոյնք իմասցին այնոքիկ որ յայնժամ առաջնորդք իցեն, դարձեալ պատիցեն[2] 'ի ձախակողմն միշտ փոխաբերելով տեղի՝ մինչև ցերկրորդ ամն հասցեն: Իսկ 'ի յերրորդումն այլք յօրինողք ագարակացն ընտրել, և պահապանապետք զհինգն երկոտասանիցն դարմանողք:

Իսկ արդ 'ի դեգերմունսն իւրաքանչիւրում տեղւոյ այսպիսի գոլ փոյթ. Նախ իսկ իբրու ամրագոյն իցէ գաւառն մանաւանդ առ պատերազմունսն՝ փոսս երկարաձիգ հատանելով՝ որչափ սորա իսկ կարօտանայ, և խորափիտս հատանելով. և շինուածօք ըստ զօրութեան արգելլով զայնոսիկ որ ձեռնարկութիւն առնեն զինչ և իցէ չար գործել ստացուածոցն գաւառին, վարելով իշօքն և ծառայիւքն՝ այնոքիւք որ իւրաքանչիւրում են տեղւոջ: Առ այսոքիւք 'ի ձեռն սոցունց առնելով սոցունց վերակացուս լինելով՝ իւրեանց գործն 'ի խափանմանէ 'ի բաց ընտրելով, և դժուարակոխ իսկ զամենայն առնելով թշնամեացն: Իսկ 'ի բարեկամացն՝ մանաւանդ դիւրակոխ մարդկան իսկ և իշոց և այլոց անասնոց և ճանապարհաց փոյթ առնելով՝ իբրու հանդարտագոյնք իւրաքանչիւր ոք լինիցին. և առ 'ի յԱրամազդայ ջուրցն[3], զի մի ինչ գաւառին չար գործիցէ, այլ մանաւանդ օգտութիւն, հոսելով 'ի բարձանց առ այնոցիկ որ 'ի լերինսն են բլուրք և որչափ հովիտք[4] զարտահաստութիւնքն սոցա խափանելով շինուածովք իսկ

1 Յոյնն՝ յարևելակողմն:
2 Յօրինակին՝ պատփիցէն. ուղղեցաք ըստ յունին:
3 Յոյնն՝ ἐκ Διὸς ὑδάτων, ջուրց 'ի բարձանց հոսելոց:
4 Յօրինակին հովիտ. ուղղեցաք ըստ բնագրին:

բանկան տուրժեսցի՝ վասն իշխելոյն համբակաց և կամ պատուիցէ զամենայն։ Սոցունց իսկ օրինապահքն դիտողք ստուգագոյնք իցեն, իբրու զի ոչ լինիցի ինչ իսկզբանն՝ և կամ լինելով արժանի դատին հանդիպիցի, պարտ է արդ ամենայն առն տրամախոհիլ, յաղագս ամենայն մարդկան՝ իբրու ոչ ծառայեր. ոչ եթէ տէր լինիցի՝ արժանի լինիցի գովասանութեան, և գեղեցկանալ պարտ է բարեւք ծառայելով մանաւանդ՝ քան եթէ բարեւք իշխելովն։

Նախ իսկ օրինացն, իբրու զի այս իսկ է աստուածոցն ծառայութիւն. և ապա ծերագունիցն իսկ և պատուականսաբար կենցաղավարելոցն՝ համբակքն. և յետ այսոցիկ օր ըստ օրէ կենցաղոյն պարտ է նուաստագունին իսկ և տարակուսելոյն ճաշակելով գոլ՝ զերկու ամճն զայսոսիկ առ որս ագարակացն օրինող իցէ. քանզի յորժամ ստորոգիցեն երկոտասանսն 'ի միասին հասանելով հանդերձ հնկիւք, խորհիցին որպէս զծառայք ոչ ունին ինքեանց, այլ ընտանիք և ծառանիք և ծառայք. և ոչ յայլոց մշակացն իսկ, և յայսցանէ՝ որ գեղջուկքն են նոքումբք առ իւրեանցն վարելով պաշտօնսն պաշտօնայիւք. առ այսոքիւք զամենայն գաւառն արտախուզելով յամարանի իսկ և 'ի ձմերանի՝ հանդերձ զինօք 'ի սակս պահպանութեան, և ծանօթութիւն ամենեցուն միշտ տեղեացն։ Քանզի տագնապի և ոչ միոյ նուազ գոլ սա իսկ յուսմանց, ստուգութեամբ մակացող լինել ամենեցուն իւրեանց գաւառին, 'ի սակս որոյ զամենայն տեսակս որսոյ՝ ոչ նուազ ինչ է խորհիլն այնմ որ համբակն իցէ, քան եթէ այլոց հեշտութեան, միանգամայն և օգտակարութեան որ վասն սոցունց լինիցին ամենեցուն։ Զայսոսիկ արդեւք զնոյնս, և զխորհուրդն նոցունց եթէ գաղտնիք, և եթէ ագարակաց օրինողք, և եթէ զոր ինչ կոչելով բերկրիցի. զայս ինչ ասացեալ յօժարապէս՝ ամենայն այր ըստ զօրութեան խորհիցի, որչափ հանդերձեալ իցեն զքաղաքն իւրեանց կեցուցանել բաւականապէս։ Իսկ յետ այսորիկ յաղագս իշխանաց ընտրութեան և օրինացն արդարոց քաղաքի էր մեզ հետևեալ

հետևիցին արդեւք ագարակաց արդարացն քաղաքաբաշխք երիս՝ վաթսուն գոլով, եռակի զերկոտասան մասունսն քաղաքին ըմբռնեալք՝ նմանելով այնոցիկ, և ճանապարհացն փոյթ տանելով այնոցիկ՝ որ առ քաղաքաւն են, և այնոցիկ որ 'ի գաւառէն՝ ուղղեալ են պողոտայիցն՝ առ քաղաքն միշտ երկարաձգելով, և շինուածոյցն, զի ըստ օրինացն լինիցի ամենայն։ Եւ ջուրցն արդ, իբրու զի առաքեսցեն առ սոսա, և աւանդիցեն պահապանքն վճիտ և մաքուր. քանզի յաղբիւրն իսկ բաւականապէս և ականակիտ հասանելով զարդարէ միանգամայն և զուարճացուցանէ զքաղաքն։ Եւ սոցա պարտ է զօրաւորք գոլ և պարապեալս, փոյթ տանել հասարակաց օգտութեան։ Վասն այսորիկ նախարկցէ իսկ ամենայն այր 'ի մեծաց գնոցն քաղաքաբաշխս, զոր և ախորժիցէ. և ձեռնադրելով իսկ՝ և հասանելով 'ի վեց՝ որոց թերևս յոլովագոյնսն լինիցին, զերիսն ի բաց վիճակելով՝ այնոքիկ որոց յաղագս սոցա փոյթ է ընտրելով զսոսա իշխանքն ըստ եդեալ օրինացն։

Եւ ագարակաց յարդարիչք յետ սոցունց ընտրիլ իսկ յերկրորդ և 'ի յառաջին գնոցն, արք հինգ։ Այլ ընտրութիւն սոցա լինիցի որպէս յարդարողացն քաղաքին. տասնելով սոցունց 'ի ձեռնադրութիւն՝ զհինգն 'ի բաց վիճակել, և ընտրելով զսոսա իշխանք բացերևեցուցանեն։ Բայց ձեռնադրիցէ իսկ ամենայն ոք զամենայն. և որ ոչ կամիցի, թէ պատմիցի առ իշխանս՝ տուժեսցի դրամք յիսուն՝ անթուելոյն չար գոլ։

Եւ հասցէ իսկ յեկեղեցին և 'ի հասարակաց ժողովուրդն՝ որ ախորժիցէն։ Եւ հարկաւոր լիցի այնմիկ որ յերկրորդ և առաջին գնոյն՝ տասն դրամ տուժեալք եթէ ոչ մերձ գոլով քննիցի առ ժողովսն։ Իսկ երրորդ գնոյն և չորրորդին ոչ իցէ հարկ, այլ անտուժս մնասցէ, եթէ ոչ ինչ բողոքեսցեն իշխանքն ամենեցուն 'ի հարկէ իմեքէ 'ի միասին գոլ սոցա։ Եւ վաճառայօրինիցն իսկ՝ զզարդըն որ առ վաճառուն իցէ 'ի ձեռն օրինացն կար-

որ յառաջագոյն այսպէս կազմեալ իցեն քաղաքք, հարկ է իսկ գոլ ոմանց. և եթէ որք իցեն թերևս առ 'ի յամենայն իշխանութեանց լինելով ո՛չ իցեն։ Պարտ է իսկ այսպէս երբեք, և այսոցիկ ոչ յուրն՝ այլ մանաւանդ ծայրագոյնք. քանզի առի իսկ առակօքն՝ Սկիզբն կէս գոլ ամենայն գործոյ. և զբարեւք իսկ սկսանիլն ամենեքեան իւրաքանչիւր ժամու ներբողեմք. բայց այս իսկ է, իբրու ինձ երևի, յոլովագոյն քան զկէսն. և ոչ ոք զսա բարեւք լինելով ներբողեաց բաւականապէս։

Կղինիաս. Ուղղապէս ասես։

Պղատոն. Եւ արդ ոչ ձանձրացելով իսկ զսա՝ թողուցուք առանց ճառելոյ, ոչ ինչ հաւաստի առնելով մեզ նոցունց թէ որով իցէ յեղանակաւ։ Ես արդ ոչ ունիմ կարողութիւն ասել, բաց 'ի միոյ առ հասեալ ժամս հարկաւոր և պատշաճ բանի։

Կղինիաս. Որո՞յ իսկ։

Պղատոն. Ասացից արդ այսմիկ քաղաքիս, զոր հանդերձեալ եմք բնակեցուցանել, որպէս հայր և մայր ոչ գոլով բաց 'ի բնակեցուցողէն սորա քաղաքէ։ Տգէտ ոչ գոլով, զի բազումք 'ի բնակելոցն տարբերեալք 'ի բնակեցուցողացն՝ բազում անգամ ոմանք եղեն իսկ և իցեն. սակայն այժմ իսկ առ հասեալ ժամս՝ որպէս մանուկ թէպէտ և երբեք հանդերձեալ իցէ տարբերեալ գոլ 'ի ծնողացն, սակայն առ հասեալ ժամն խրատու կարօտանալով գոլովէ իսկ, և առ 'ի ծնողացն փափագէ և ձողոպրելով միշտ առ ընտանիսն կարևորք միայն գտանէ մարտակիցք։ Զոր ինչ այժմիկ ասեմք ցկոնոսացիք վասն առ նոր քաղաքին փութոյն. և ցնորն՝ առ Կնոսոս գոլոյն պատրաստապէս լինելով։ Ասացից արդ որպէս ասացի այժմիկ, քանզի երկրորդ անգամ գեղեցիկն իսկ ասացեալ՝ վնաս ինչ ոչ գործէ, կնոսացոյն պարտ գոլ դարմանել զայնոսիկ զամենեսեան հասարակաբար հաճելով յայնցանէ որ 'ի բացաբնակութիւն հասեալ իցեն՝ զերիցագոյնսն և զարիագոյնսն 'ի զօրութիւն ընտրելով ոչ նուազ արանց հարիւրից, և սոյունց կնոսացոց իցեն այլք հարիւր։ Սոքա իսկ եկեալք՝ ա-

սացից պարտ դոլ 'ի նոր քաղաքն՝ 'ի միասին փոյթ առնել, իբրու զի իշխանութիւնքն հաստատին ըստ... և հաստատեալք իսկ փորձեսցին և այսոցիկ լինի... կնոսացւոցն բնակիլ. իսկ զնոր քաղաքն զկնքն... փութալ կեալ իսկ և բարեբախտիլ։

Եւ այնոքիկ եւթեանցն և երեսնիցն՝ այժմ իսկ և որ յապառնի... առ այսոցիկ մեզ եղիցին ընտրեալք .... օրինացն. և ապա գրոցն այնոցիկ որ իւրաքանչիւր ոք բացադրիցէ իշխանօքն զբազմութիւնքն գոյից իւրեանց։ Սակայն որ մեծագոյն գին ունիցի՝ չորից իցէ մնասից. և որ զերկրորդն՝ երից, և որ զերրորդն՝ երկու մնասից, և մնասի միոյ չորրորդն։ Այլ եթէ այլ ինչ երևեսցի ոք քան զգրեցեալքդ ստացեալ՝ հրապարակին լիցի ամենայն այնպիսին։ Եւ առ այսուիկ՝ դատաստանի պարտապան իցէ այնմիկ որ կամիցի քննել զնա՝ ոչ գեղեցիկ և ոչ բարի անուանագոյն՝ այլ գարշելի իսկ եթէ կալցի վասն շահի զօրէնս արհամարհեալ։ Եւ չարաշահութիւն արդ գրելով 'ի վերայ սորա՝ որ կամիցին 'ի վերայ հասցէ իրաւամբք հանդերձ նոքօք օրինապահօքն։ Այլ եթէ հալածեալն պարտապան իցէ՝ հասարակաց ստացուածոցն ոչ հաղորդեսցի. և բաշխումն ինչ յորժամ լինիցի քաղաքին՝ անմասն իցէ բաց 'ի վիճակէն. և գրեսցի պարտապան մինչև կենդանի իցէ՝ անդանօր՝ ուր ընթերցցի ամենայն որ և կամեսցի։ Ցոլովագոյն իսկ քան զքսան ամս ոչ երբեք օրինապահ իշխեսցէ. բերիցի յիշխանութիւն ոչ նուազ յիսնից լինելով ամաց, և վաթսնամեայ ածեալ՝ տասն միայն իշխեսցէ ամս։ Եւ ըստ այսմիկ բանիս՝ եթէ ոք յոլովագոյն կեցցէ ամաց եւթանասնից, ոչ ևս առ այսոքիւք ամս առ 'ի յիշխանացն՝ զայնպիսի իշխանութիւնն իբրու իշխելով տրամախորհիցի։ Իսկ արդ յաղագս օրինապահացն այսոքիկ աստացին կարգաւորութիւնք երիս. և յառաջագոյն հասանելով, իւրաքանչիւր ոք յօրինացն հրամայեսցէ այսոցիկ արանցս՝ որոց ոմանց պարտ է ըստ այժմիկ ասացելոցս սոցունց փոյթ առնել։ Բայց այժմ ըստ կարգի յաղագս այլոց իշխանութեանց ընտրութեան ասասցուք արդեւք.

զի պարտ է իսկ յետ այսոցիկ զօրավարք ընտրել. և սոցունց 'ի պատերազմունսն իբրու պաշտօնեայք ամենք հեծելապետք և ազգագլուխք և հետևակք ցեղիցն դասուցն զարդարողք, որոց վայելուչ իցէ թերևս իսկ այս անուն մանաւանդ՝ որպէս և բազումք դասապետք մականուանեն զսոսա սոցունց։

Արդ զօրավարք իսկ 'ի նորին քաղաքէն· իսկ օրինապահքն նախարկցեն և ընտրիցեն իսկ յառաջարկելոցս ամենեքեան պատերազմի հաղորդքն լեալք հասակօքն՝ և լինելով յիւրաքանչիւր ժամու։ Այլ եթէ արդեւք թուիցի ումեմն յառաջագոյն նախարկելոցն վեհագոյն գոլ քան զոմն յայնցանէ որ յառաջարկիցեն մականունելով. որոյ փոխանակ նախարկիցէ զոմն, զայս իսկ երդնուլով՝ փոխանակ յառաջարկիցէ զմիւսն։ Բայց որպէս և թուիցի արդեւք ձեռնադրելով 'ի հաձեցեալսն, ընտրեցի և երիս՝ որոց թերևս յոլովագոյն ձեռնադրութիւնն լինիցի, սոցա գոլ զօրավարք։ Իսկ և դարմանողք այսոցիկ որ 'ի պատերազմին ընտրեալս իցեն, որպէս և օրինապահքն և դասապետքն։ Իսկ սոցունց յառաջարկել զհաձեցեալքն՝ երկոտասան զօրավարքն իւրաքանչիւրում պահու դասապետք. և սոցունց փոխան նախարկութիւնն գոլ որպէս և զօրավարացն լինիր զնոյնն։ Եւ յաղագս դասապետացն և զմակաձեռնարկութիւնն և զդատն. բայց ընտրեալ բազմութեանն այնմիկ առ հասեալ ժամն նախ քան զպահապանքն իսկ և կացուրդ ընտրիլն, զօրինապահքն 'ի միասին ժողովելով 'ի վայրի ուրուք սրբազանի իսկ և բաւականագունի նստուցանել. որիշ իսկ զլինուորքն, և որիշ զհեծեալքն, և երրորդ սոցունց՝ ըստ կարգի զամենայն, որչափ պատերազմողն իցէ. և ձեռնադրելով զզօրավարքն իսկ, և զհեծելապետքն ամենեքեան։ Իսկ զդասապետքն՝ այնոքիկ որ վահանք են եղեալ. և զազգագլուխքն իսկ սոցունց՝ ամենայն հեծելականն ընտրիցէ։ Իսկ այնոցիկ որ զլինից թափուրք են կամ այլոցն 'ի պատերազմականացն՝ առաջնորդք զօրավարքն ըստ ինքեանց կարգիցեն։ Եւ արդ հեծելապետաց կարգաւորութիւն թերևս մեզ լինիցի տա-

կաւիճ՝ սոքա արդ յառաջ արկցեն. իսկ այնոքիկ որ զզօրավարքն նախարկիցեն, և զընտրութիւն և զփոխարկութիւն սոցունց նոյնպէս լինել որպէս և զօրավարացն լինէր։ Եւ ձեռնադրիցէ զսոսա հեծելականն՝ յանդիման տեսանելով հետևակացն և երկուորաց, թերևս յոլովագոյն ձեռնադրութիւնն լինիցի, առաջնորդք գոլ ամենայն հեծելոցն, և զերկբառութիւնքն ձեռնադրութեանցն մինչև ցերկոցունցն գոլ։ Իսկ զերրորդն՝ եթէ երկու լիցէ՝ համար տացին սոցունց այնոքիկ որ ձեռնադրութեանն չափ իւրաքանչիւրոց իւրաքանչիւրն փոյթ էր։ Եւ կացուրդ իսկ գոլ երեսուն երկոտասանք, որ վաթսուն և երեքհարիւրք լինելով՝ վայելչականք իցեն 'ի բաշխմունսն. և մասունս բաժանելով չորս, իւրաքանչիւր ոք իննըսուն թիւ գոլով, 'ի սոցանէ իւրաքանչիւրոյ 'ի գնոցն բերելով իննսուն խորհրդածուքն։ Նախ իսկ 'ի մեծագոյն գնոյն զամենեսեան բերելով 'ի հարկէ, և կամ տուժել զանհաւանեալն՝ թուեցեալ տուժիւն. և յորժամ ածցին՝ զսոսա իսկ նշանագրել, և 'ի վերջին աւուրն բերել՝ յերկրորդ գնոցն, որպէս և յառաջնոյն և յերրորդ։ Ցերրորդ գնոցս բերելով զայն իսկ որ ախորժեն, բայց հարկաւոր գոլով այնոցիկ որ յերրորդ գնոցն են։ Իսկ զչորրորդն և զփոքրագոյնն ազատ թողացուցանել 'ի տուժէ՝ զայն որ ոչ իսկ կամիցի բերել։ Իսկ 'ի չորրորդում աւուրն բերել, 'ի չորրորդ և 'ի փոքրագոյն գնոյն՝ զամենեսեան. սակայն անտուրժ գոլ զայնոքիկ որ 'ի չորրորդ և 'ի յերրորդ գնոյն իցեն, եթէ բերել ոչ ախորժիցեն։ Իսկ զայնոքիկ որ 'ի յերկրորդէն և 'ի յառաջնոյն իցեն, ոչ բերելով՝ տուրժիլ զայն իսկ որ 'ի յերկրորդոյն՝ եռապատիկ յառաջագոյն տուրժին, և զայն իսկ որ 'ի յառաջնոյն է՝ քառապատիկ, և 'ի հինգերրորդ աւուրն՝ զնշանագրեալ անուանսն արտաքս բերեալ իշխանացն, և տեսանել ամենեցուն քաղաքացեացն, և բերել 'ի սոցանէ ամենայն այր, և կամ տուժել տուժաւն առաջնոյն։ Բայց ութսուն և հարիւր ընտրելով յիւրաքանչիւրոց պատուոյն՝ զկէսն 'ի սոցունց վիճակաւորս առնելով ընտրել, և գոլ զսոսա տարոյն այնմիկ խորհրդածուք։

Իսկ արդ բաժանումնս այսպէս լինելով, միջոց թերեւս ունիցի մի իշխանական և հրապարակակալական քաղաքավարութեան, որոյ պարտ է միջոց գոլ հաւասար քաղաքավարութեան։ Քանզի ծառայք և տեարք ոչ երբեք լինիցին բարեկամք, և ոչ հաւասարապատուով կոչեցեալք՝ յոռիք և առաքինիք. քանզի անհաւասարիւքն՝ հաւասարքն անհաւասարք լինիցին թերեւս. և եթէ ոչ հանդիպեսցին չափուն, զի վասն երկաքանչիւրոցս այսոցիկ քաղաքավարութիւնքն լինին հակառակութեամբ լի. քանզի նախնի բանն ճշմարիտ գոլով՝ իբրու հաւասարութիւն զսիրելութիւն գործէ մանաւանդ՝ ուղղապէս ասացեալ է և ներդաշնապէս. բայց թէ ա՛ ոք է երբեք հաւասարութիւն որ զնոյնս այսպէս կարող է, վասն ոչ յոյժ հաւասարի գոլոյն, խռովեցուցանէ զմեզ։ Քանզի երկուց հաւասարութեանց գոլով՝ համանունք իսկ են. սակայն գործով 'ի բազում ինչ գրեթէ են ներհականք. զի զմինն 'ի սոցանէ 'ի պատուեան ամենայն քաղաքն բաւական է յառաջաբերել. և ամենայն օրինադիր զչափով հաւասարն, և զկշռոյն և զթուոյն՝ վիճակաւ 'ի բաց ուղղելով զսա 'ի բաշխմունսն։ Իսկ զճշմարտագոյն և զարիագոյն հաւասարութիւնսն՝ ոչ է դիւրաւ ամենայն 'ի տեսանել. քանզի Արամազդայ է ընտրութիւնն, և միշտ առ մարդկան սակաւ ինչ երկարանայ։ Բայց որչափ արդեւք բաւիցէ, քաղաքաց և ռամկաց զամենայն բարութիւնս գործէ. քանզի մեծագունին յոլովագոյն, և փոքրագունին զմանրագոյնսն բաշխէ չափաւոր՝ առատուելով ըստ իւրում բնութեան իւրաքանչիւրում և պատիւս իսկ. մեծագունիցն ըստ առաքինութեան միշտ մեծագոյնս. և այնոցիկ որ զներհակն ունիցին առաքինութեան և խրատոյ, զվայելչագոյնն. երկաքանչիւրոց բաշխէ ըստ համեմատութեան. քանզի է երբեք և քաղաքականն մեզ միշտ սա իսկ նոյնս իրաւունս՝ որոյ և այժմ մեզ ցանկանալով, պարտ է առ նոյնս իսկ հաւասարութիւն, ով Կլինիա, 'ի բաց հայելով զայժմիկ բուսեալս բնակեցուցանել քաղաք, և զայլ թերեւս երբեք բնակեցուցանէ։ Առ այս իսկ նոյնս դիտելով պարտ է օրի-

նադրել. այլ ոչ առ սակաւք բռնաւորք՝ կամ առ մի կամ կալողութիւն ինչ հրապարակի, այլ առ իրաւունսն միշտ այնոքիկ է այժմիկ արդեւք ասացեալքս. զայն որ ըստ բնութեան հաւասարն է՝ անհաւասարիւք յիւրաքանչիւր ժամու բացատրել հարկաւոր իսկ է, և այսոցիկ հոմ անուամբս երբեք վարիլ առ ամենայն քաղաքի, եթէ հանդերձեալ իցէ հակառակութեամբ ինքեան ոչ հաղորդել, ըստ մասին ուրուք. քանզի հեզութիւնն և ներողութիւնն կատարելագունին և ստուգագունին՝ առանց ուղղագոյն իրաւանցն իցէ խորտակեալ, յորժամ այսպէս լինիցի: Վասն որոյ առ միջակին հաւասարութեամբ հարկէ վարիլ 'ի սակս բազմաց դժուարութեանց զաստուած և զբարի պատահումն. և յայնժամ ըղձիւք կարդալ՝ 'ի բաց ուղղել սոցա զմիջակն առ իրաւագոյն: Այսպէս արդ վարիլ հարկաւորապէս իսկ երկաքանչիւր հաւասարութեամբն. իբրու զի մանաւանդ առ սակաւագոյնս միոյն պատահման կարօտանալով. զայսոքիկ այսպէս վասն այսոցիկ, ում սիրելիք, հարկաւոր է առնել քաղաքին՝ որ կեալ իցէ հանդերձեալ: Այլ զի նաւ իսկ 'ի ծովի զնաւարկութիւն առնելով կարօտանայ պահպանութեան 'ի տուընջեան միշտ և գիշերի, այսպէս և քաղաք 'ի ծըփմունս այլոց քաղաքացն գոլով և պէսպէս դաւաճանութեամբ բնակեալ վշտագնելով՝ ըմբռնիլ պարտ է իսկ 'ի տուընջենէ մինչև ցգիշեր, և 'ի գիշերէ առ տիւն շարամերձիլ իշխանաց առ իշխանս, և պահապանաց առ պահապանս, փոխադրելով միշտ և աւանդելով ոչ երբեք դադարել: Բայց բազմութեան ոչ է հնար արագապէս ոչ երբեք ոչ ինչ յայսցանէ գործել. բայց հարկաւոր է բազմաց իսկ այնոցիկ որ խորհրդածուք են՝ առ յոլովագոյնն ժամանակին թողուլ առ նոյնս իւրեանց ընտանեգոյնս՝ կալ և մնալ, և ուղղութիւնս առնել իւրի իւրեանց մատակարարութեան. և զերկոտասաներորդ իսկ մասն իւրեանց՝ առ երկոտասան ամիսսն բաշխելով. մինն առ միոյն առատուիցեալ զպահապանսն, և հասանելով ուրուք այլուստ երբեք և կամ 'ի նորին քաղաքէն՝

պատրաստապէս հանդիպիլ. եթէ պատմել ինչ ախորժիցէ, և եթէ հարցանել ինչ յայնցանէ իսկ յորոց պատշաճ է քաղաքի առ այլոց քաղաքաց՝ տալ պատասխանի, և հարցանելով այլաբար ընկալուլ զպատասխանիսն։

Եւ արդ 'ի սակս այնոցիկ որ ըստ քաղաքին իցեն յիւրաքանչիւր ժամու յանդգնութեանցն պէսպէս՝ սովորելոցն միշտ լինել, որպէս զի մանաւանդ ոչ լինիցին. և լինելով իսկ, զի վաղվաղակի իմացեալ քաղաքին՝ բժշկիցէ զլեալն. և 'ի ձեռն ընտրեալ ժողովրդեանն՝ միշտ պարտ է այսորիկ գոլ՝ որ նստեալն է առաջի քաղաքին տիրութեանս, և ընտրութեանց՝ այնոցիկ որ ըստ օրինացն յանկարծակի հասանիցն քաղաքին։ Իսկ արդ զայսոսիկ ամենայն երկոտասաներորդ մասն թերևս իցէ խորհրդոյն, որ զարդարեցուցանելն զմետասան մասունսն տարոյն հանդչելով. և հաղորդաբար հանդերձ այլօք իշխանօքն պարտ է զպահպանութիւնքս այսոքիկ պահել առ քաղաքաւն այսմիկ միշտ մանր մասինս խորհրդոյս։ Արդ իրսն որ առ քաղաքաւն են այսպէս ունելով չափաւորապէս, թերևս իցեն կարգեալս։ Իսկ այլոյ ամենայն գաւառին որպիսի ինչ է փոյթ, կամ որպիսի կարգաւորութիւն։ Արդ ո՞չ յորժամ ամենայն քաղաքն, և 'ի միասին ամենայն գաւառն՝ ըստ երկոտասան մասանց բաշխեցին նորին քաղաքիս ճանապարհացս, և բնակութեանց և շինութեանց և նաւահանգստից և վաճառանոցի և աղբերաց և տաճարաց և վերնատանց, և ամենեցուն այսպիսեացս մատակարարողս պարտ է ոմանց գոլ 'ի բաց երևենալով։

Կղինիաս. Եւ ո՞րպէս ոչ։

Պղատոն. Ասեմք արդ զի տաճարացն իսկ տաճարապետք, և քահանայք և քահանայուհիք պարտ է լինել։ Իսկ ճանապարհաց և շինութեանց և զարդուց որ առ այսոքիկ՝ և մարդկան, զի մի՛ ապիրատասցին, և այլոց գազանաց 'ի նոյն իսկ քաղաքին, որպէս զի վայելչագոյնս քաղաքացն լինիցին, բաժանել պարտ է երիս տեսակս իշխանաց՝ առ այժմիկ իսկ ասացեալս.

յօրինողք[1] քաղաքիս մականունելով, և զայն իսկ որ առ վաճառուն զարդն իցեն՝ վաճառօրէնս[2]. և տաճարացն քահանայք՝ որոց իսկ իցեն ազգաւ քահանայութիւնք. և զսոսա ոչ շարժել։ Այս՛ եթէ իբրու զառաջինն բնակեցուցանելով՝ պարտ է լինել առ այսոքիւք կամ ոչ իւիք, և կամ սակաւ ոմամբ որոց ոչ իցեն հաստատեալք, հաստատել պարտ է քահանայք, և քահանայուհիք տաճարապետք լինել աստուածոցն։ Այսոցիկ արդ ամենեցուն՝ ոմանց կամաւ պարտ է և ոմանց վիճակաւ՝ այնոցիկ որ առ կարգաւորութիւնսն են իրս լինել. շարամերձելով առ բարեկամութիւն միմեանց զհրապարակ և զոչ հրապարակ, յիւրաքանչիւրում գաւառի իսկ և քաղաքի, իբրու զի մանաւանդ հոմախոհք։ Իսկ արդ տաճարացն իրս աստուծոյ՝ յօրդորելով զսա, և շնորհելով լինել վիճակաւ այսպէս աստուածային պատահմամբ բացատրելով. բայց պարտ է ընտրել զայն իսկ որ միշտ հասանի՝ նախ իսկ ամբողջ և հարազատ. և ապա իբրու զի մանաւանդ 'ի մաքրելոց իցէ բնակութեանց, 'ի սպանմանէ մաքուր, և յամենեցուն որ առ այսպիսիս են յաստուածայինս մեղանչելով սոցա. և հայր իսկ և մայր այսպէս կենցաղավարեալք։ Բայց 'ի Դելփեաց պարտ է զամենայն օրէնս յաղագս աստուածայնոցն պահանջելով, և հաստատելով 'ի վերայ սորա պատմողք՝ սոքօք վարիլ. բայց ըստ ամի գոլ և ոչ երկարագոյն՝ զիւրաքանչիւր քահանայութիւն. և տակաւին ոչ նուազ քան զվաթսուն իցէ մեզ լեալ՝ որ հանդերձեալ իցէ ըստ սրբազան օրինացն առ աստուածայինսն բաւականապէս մաքրագործել։ Այսոքիկ և յաղագս քահանայագործութեանն եղիցին օրէնս։

Եւ զպատմողսն՝ երիս բերիցեն իսկ չորս ազգքն[3]. չորս իւրաքանչիւր ոք 'ի սոցանէ. և երից իսկ որոց թերևս յոլովագոյն լինիցին համարս իսկ և քննու-

1 Յոյնն՝ αστυ – νόμος.
2 Յոյնն՝ ἀγορα – νόμος.
3 Բնագիրն՝ երկոտասան ցեղքն կամ տոհմք։

թիւնս ինն՝ առաքել 'ի Դելփիս. բաժանել յիւրաքանչիւրում եռակէ զմինն, և զընտրութիւնն սոցա և զժամանակին հասակն զոլ՝ որպէս և քահանայիցն. և սոքա լինիցին պատմողք յամենայն կենցաղումն, և զպակասեալն ընտրիցեն՝ չորս ազգքն ուստի և պակասիցի. և շտեմարանապետք արդեւք սրբազան ընչից իւրաքանչիւրոց տաճարացն, և տղայոցն՝ սոցունց և վարձուցն տեարք։ Եւ ընտրել 'ի մեծագոյն ստացուածոցն երիս 'ի մեծագոյն տաճարսն, և երկու 'ի փոքրագոյնսն, և առ չափաւորագոյնն մի. և զընտրութիւնն սոցունց և զհաճոյսն առնել նոյնպէս որպէս և զօրավարացն լինիր, և յաղագս տաճարացն իսկ լինիցի այսպէս։

Բայց առանց պահպանութեան ոչ ինչ իցէ, որչափ հնար է։ Արդ յաղագս քաղաքին պահպանութեանն այսպէս լինիցին. զօրավարացն փոյթ առնելով և դասապետացն և հեծելապետացն և ազգագլխացն և պահապանաց և յօրինողացն քաղաքին և վաճառացն օրինացն, յորժամ առ 'ի մէնջ ասացեալքս հաստատեսցին բաւականապէս, պահել և զայլ զաւառն ամենայն ըստ այսոցիկ յերկոտասանս։ Իսկ մեզ գաւառն ամենայն ըստ զօրութեան հաւասար մասունս բաշխեցաւ, և ազգ մի իւրաքանչիւրում մասին մակավիճակեալ, ըստ ամի ամի առուիցէ հինգարք իբրու ագարակաց օրինողք իսկ և ազգապետք. և սոցունց պարտ է յանձնուլ զիւրեանց ազգին իւրաքանչիւրում երկոտասաներորդ 'ի հինգ 'ի համբակացն, ոչ նուազ քան եթէ հինգ և քսան ամաց լինելով, և ոչ յոլովագոյն քան եթէ եռասնից. և սոցունց վիճակեցին մասունքն գաւառին, ըստ ամսոց իւրաքանչիւրքն՝ իւրաքանչիւրից. իբրու զի ամենայն գաւառին հմուտք իսկ և մակացողք՝ ամենեքեան լինիցին։ Եւ երկու ամս իշխանութեանն և պահպանութեանն լինել, և պահպանողացն իսկ և իշխանացն, իբրու զի յառաջագոյն թերևս հասցին մասունքն, զգաւառին տեղիքն փոխաբերելով. միշտ

2 Յոյնն՝ պողոց։

զայն որ 'ի կարգին է տեղի իւրաքանչիւր ամսոյ վարկանել՝ պահպանապետացն յաջակողմն շրջանակին, և աջակողմն լինիցի ընդ առաւօտն[1]: Իսկ և շրջաբերելով տարոյն յերկրորդում ամին, իբրու զի յոլովագոյնք 'ի պահպանորդացն ոչ միայն հմուտք գաւառին լինիցին առ մի ժամ տարոյն, և հանդերձ գաւառաւն համանգամայն և ժամուն իւրաքանչիւրում առ իւրաքանչիւր տեղի լինելով, իբրու յոլովագոյնք իմասցին այնոքիկ որ յայնժամ առաջնորդք իցեն, դարձեալ պատիցեն[2] 'ի ձախակողմն միշտ փոխաբերելով տեղի՝ մինչև ցերկրորդ ամն հասցեն: Իսկ 'ի յերրորդումն այլք յօրինողք ագարակացն ընտրել, և պահապանապետք զհինգն երկոտասանիցն դարմանողք:

Իսկ արդ 'ի դեգերմունսն իւրաքանչիւրում տեղւոյ այսպիսի դոլ փոյթ. նախ իսկ իբրու ամրագոյն իցէ գաւառն մանաւանդ առ պատերազմունսն՝ փոսս երկարաձիգ հատանելով որչափ սորա իսկ կարօտանայ, և խորափիտս հատանելով. և շինուածօք ըստ զօրութեան արգելլով զայնոսիկ որ ձեռնարկութիւն առնեն զինչ և իցէ չար գործել ստացուածոցն գաւառին, վարելով իշօքն և ծառայիւքն՝ այնոքիւք որ իւրաքանչիւրում են տեղւոջ: Առ այսոքիւք 'ի ձեռն սոցունց առնելով սոցունց վերակացուս լինելով՝ իւրեանց գործն 'ի խափանմանէ 'ի բաց ընտրելով, և դժուարակոխ իսկ զամենայն առնելով թշնամեացն: Իսկ 'ի բարեկամացն՝ մանաւանդ դիւրակոխ մարդկան իսկ և իշոց և այլոց անասնոց և ձանապարհաց փոյթ առնելով՝ իբրու հանդարտագոյնք իւրաքանչիւր ոք լինիցին. և առ 'ի յԱրամազդայ ջուրցն[3], զի մի ինչ գաւառին չար գործիցէ, այլ մանաւանդ օգտութիւն, հոսելով 'ի բարձանց առ այնոցիկ որ 'ի լերինսն են բլուրք և որչափ հովիտք[4] զարտահոսութիւնքն սոցա խափանելով շինուածովք իսկ

1 Յոյնն՝ յարևելակողմն:
2 Յօրինակին՝ պատիցէն. ուղղեցաք ըստ յունին:
3 Յոյնն՝ έχ Δίος ὑδάτων. ջուրց 'ի բարձանց հոսելոց:
4 Յօրինակին հովիտ. ուղղեցաք ըստ բնագրին:

և խորափորիւք․ քանզի զառ 'ի յԱրամազդայ զջուրքն ընդունելով, արբեալք այնոցիկ որ ստորագոյնք են ագարակացն, և ամենեցուն տեղեացն ջուրք և աղբիւրք առնելով, և զերաշտացեալ տեղիսն բազմաջուրս իսկ և քաջաջուրս գործիցեն աղբիւրացեալ։ Իսկ ջուրքն և եթէ գետ ոք և կամ աղբիւր իցէ, զարդարելով տնկօք իսկ և շինուածովք վայելչապէս, և 'ի միասին ժողովելով գբօք զջուրսն՝ ամենեցուն առատացուցանեն։ Եւ սափորօք՝ իսկ ըստ իւրաքանչիւր ժամու եթէ տունկք և կամ տաճարք՝ առ այսոքիկ իցէ, թողեալք զջուրսն, հասուցանելով անտանօր զաստուածոցն զտաճարսն զարդարիցեն։ Եւ յամենայն առ այսոքիւք վարժանօցք պարտ է կազմել համբակաց սոցունց իսկ, և ծերական ջերմութիւն, առտուելով զնիւթ հաւաքելով ցամաքեցուցանել գօսագոյն անսպառ[2]․ վասն օգտակարութեան վաստակելոցն հիւանդութեամբք, և աշխատանօք տագնապեալ երկրագործականօք՝ զմարմինսն ընդունելով հեզաբար։ Իսկ զբժշկի ունակութիւն, ոչ եթէ յոյժ իցէ իմաստուն՝ ստիպելն վեհագոյն ոչ է։

Այսոքիկ իսկ և այսպիսիքս ամենայն զարդ և օգտակարութիւն թերևս լինիցին տեղեացն հանդերձ խրատով ոչ անբերկրեալ։ Եւ փոյթ իսկ առ այսոքիկ իցէ այս ինչ։ Վաթսնից իւրաքանչիւրոց զիւրեանց տեղին պահելով, ոչ միայն 'ի սակս թշնամեաց, այլ և 'ի բարեկամ գոլ ասացելոցն դրացեացն իսկ, և այլոյն քաղաքացեացն, զոր ինչ այլ ոք՝ զայլ ոք անիրաւէ ծառայ կամ ազատ՝ դատելով ասացելոյն անիրաւել, զփոքրագոյնս սոցունց իսկ հինգիշխանացս, և զմեծագոյնս՝ հանդերձ երկոտասանիւքն՝ եւթն և տասանց դատել մինչև ցերիս ամսասիցն, որչափ թերևս ոմն զայլմէ ումեքէ ամբաստան լինիցի․ և դատաւորի իսկ և իշխանի՝ անպարտ ոչ զոք դատել և իշխել պարտ է, բայց յայնցանէ որ հարկահանքն իցեն՝ իբրու են թագաւորաց։ Եւ

1 Յոյնն՝ ջրագործիւք։
2 Այս է՝ տալով նոցա առատաբար զփայտ չոր։

արդ զագարակաց օրինողք զայսոսիկ, եթէ անար-
գիցեն ինչ վասն այսոցիկ որոց փոյթ առնեն, կար-
գաւորութիւնք ինչ անհաւաստարս հրամայելով, և
ձեռնարկելով ըմբռնել իսկ և բերել յայնցանէ որ
յերկրագործութիւնքն իցեն, ոչ հաւանեցուցանել,
և եթէ ընդդունիցին ինչ 'ի սակս ողորքանաց ումանց
տալով, և կամ եթէ իրաւունս և կամ անիրաւա-
պէս բաշխիցեն՝ սուտակապատութեան իսկ անսա-
լով, զնախատինսն կրիցեն յամենայն քաղաքին. և
այլոցն իսկ անիրաւութեանցն՝ զոր ինչ և ապիրա-
տեցին՝ զայնոցիկ որ 'ի տեղւոջն են՝ մինչև միոյ ամսա-
սի առ գեղջուկքն և առ դրացիսն՝ հանդուրժիցեն
կամաւ դատին: Իսկ մեծագունիցն յիւրաքանչիւր
ժամու անիրաւութեանցն, կամ նուազագունիցն,
եթէ ոչ կամիցեն հանդուրժել՝ վստահանալով 'ի
փոխադրելն ըստ ամսոց միշտ յայլ տեղի՝ ձողոպրե-
լով 'ի բաց փախչել, յաղագս այսոցիկ հաստանել իսկ
'ի հասարակաց հանդէսն անիրաւելոյն: Ապ՛ եթէ
հաւանիցի՝ զկրկնապատիկն հատուսցէ փախուցեալն
և ոչ կամեցեալն հանդուրժել կամաւ տուրժին. և
բնակեսցին իշխանքն և ագարակացն օրինողքն զեր-
կու ամս այսմիկ յեղանակաւս, նախ իսկ առ իւրա-
քանչիւրսն տեղիք գոլ զուգահաղորդութիւն, առ
որ զբնակիլն իսկ և զհաղորդիլն հացի ամենեցուն
առնել պարտ է. որ և 'ի բաց մնասցէ 'ի զուգահա-
ղորդութենէս այսմիկ, յորում և իցէ իսկ աւուր և
կամ 'ի գիշերի նիրհեալ իշխանացն ոչ հրամայե-
լով, և կամ ամենևին հարկի ուրուք 'ի վերայ հա-
սանելով, եթէ բացասիցեն զսոցանէ հինգ, և գրե-
լով դիցեն 'ի վաճառանոցին իբրու զքակողէ պահ-
պանութեանն՝ նախատանս իսկ ունիցի իբրու մատ-
նել զքաղաքն յիւրում կողմանէն. և տանջիցի գա-
նիւք առ 'ի յայնմանէ որ հանդիպիցի. և կամեսցի
տանջել զսա առանց տուրժի: Եւ 'ի յիշխանացն իսկ
սոցունց՝ եթէ առնիցէ ոք ինչ այսպիսի.... առնել իսկ
սորա՝ ամենայն վաթսնիցն պարտ է. և որ իմացեալ
և քննեալ, ոչ կամեսցի սաստել նմա, սոցունց օրի-
նացն իցէ պարտապան, և յոլովագոյն քան զհամ-

բաւական տուրժեսցի՝ վասն իշխելոյն համբակացն և կամ պատուիցէ զամենայն։ Սոցունց իսկ օրինապահքն դիտողք ստուգագոյնք իցեն, իբրու զի ոչ լինիցի ինչ իսկզբանն՝ և կամ լինելով արժանի դատին հանդիպիցի, պարտ է արդ ամենայն առն տրամախոհել, յաղագս ամենայն մարդկան՝ իբրու ոչ ծառայել. ոչ եթէ տէր լինիցի՝ արժանի լինիցի գովասանութեան, և գեղեցկանալ պարտ է բարւոք ծառայելով մանաւանդ՝ քան եթէ բարւոք իշխելովն։

Նախ իսկ օրինացն, իբրու զի այս իսկ է աստուածոցն ծառայութիւն. և ապա ծերագունիցն իսկ և պատուականաբար կենցաղավարելոցն՝ համբակքն. և յետ այսոցիկ որ ըստ օրէ կենցաղոյն պարտ է նուաստագունին իսկ և տարակուսելոյն ճաշակելով գոլ՝ զերկու ամն զայսոսիկ առ որս ագարակացն օրինող իցէ. քանզի յորժամ ստորոգիցեն երկոտասանսն 'ի միասին հասանելով հանդերձ հնկիւք, խորհիցին որպէս զծառայք ոչ ունին ինքեանց, այլ ընտանիք և ծառանիք և ծառայք. և ոչ յայլոց մշակացն իսկ, և յայսցանէ՝ որ գեղջուկքն են նոքումբք առ իւրեանցն վարելով պաշտօնսն պաշտօնայիւք. առ այսոքիւք զամենայն գաւառն արտախուզելով յամարանի իսկ և 'ի ձմերանի՝ հանդերձ զինօք 'ի սակս պահպանութեան, և ծանօթութիւն ամենեցուն միշտ տեղեացն։ Քանզի տագնապի և ոչ միոյ նուազ գոլ սա իսկ յուսմանց, ստուգութեամբ մակացող լինել ամենեցուն իւրեանց գաւառին, 'ի սակս որոյ զամենայն տեսակս որսոյ՝ ոչ նուազ ինչ է խորհիլն այնմ որ համբակն իցէ, քան եթէ այլոց հեշտութեան, միանգամայն և օգտակարութեան որ վասն սոցունց լինիցին ամենեցուն։ Զայսոսիկ արդեւք զնոյնս, և զխորհուրդն նոցունց եթէ գաղտնիք, և եթէ ագարակաց օրինողք, և եթէ զոր ինչ կոչելով բերկրիցի. զայս ինչ ասացեալ յօժարապէս՝ ամենայն այր ըստ զօրութեան խորհիցի, որչափ հանդերձեալ իցեն զքաղաքն իւրեանց կեցուցանել բաւականապէս։ Իսկ յետ այսորիկ յաղագս իշխանաց ընտրութեան և օրինացն արդարոց քաղաքի էր մեզ հետեւեալ

Հեռանիցին արդեւք ագարակաց արդարացն քաղաքաբաշխք երիս՝ վաթսուն գոլով, եռակի զերկոտասան մասունսն քաղաքին ըմբռնեալք՝ նմանելով այնոցիկ, և ճանապարհացն փոյթ առնելով այնոցիկ՝ որ առ քաղաքաւն են, և այնոցիկ որ 'ի գաւառէն՝ ուղղեւորեալ են պողոտայիցն՝ առ քաղաքն միշտ երկարաձգելով, և շինութեանցն, զի ըստ օրինացն լինիցի ամենայն: Եւ ջուրցն արդ, իբրու զի առաքեսցեն առ սոսա, և աւանդիցեն պահապանքն վճիտ և մաքուր. քանզի յաղբիւրն իսկ բաւականապէս և ականակիտ հասանելով զարդարէ միանգամայն և զուարճացուցանէ զքաղաքն: Եւ սոցա պարտ է զօրաւորք գոլ և պարապեալս, փոյթ առնել հասարակաց օգտութեան: Վասն այսորիկ նախարկցէ իսկ ամենայն այր 'ի մեծաց գնոցն քաղաքաբաշխս, զոր և ախորժիցէ. և ձեռնադրելով իսկ՝ և հասանելով 'ի վեց՝ որոց թերևս յոլովագոյնսն լինիցին, զերիսն ի բաց վիճակելով՝ այնոքիկ որոց յաղագս սոցա փոյթ է ընտրելով զսոսա իշխանքն ըստ եդեալ օրինացն:

Եւ ագարակաց յարդարիչք յետ սոցունց ընտրիլ իսկ յերկրորդ և 'ի յառաջին գնոցն, արք հինգ: Այլ ընտրութիւն սոցա լինիցի որպէս յարդարողացն քաղաքին. տասնելով սոցունց 'ի ձեռնադրութիւն՝ զհինգն 'ի բաց վիճակել, և ընտրելով զսոսա իշխանք բացերևեցուցանեն: Բայց ձեռնադրիցէ իսկ ամենայն ոք զամենայն. և որ ոչ կամիցի, թէ պատմիցի առ իշխանս՝ տուրժեսցի դրամք յիսուն՝ առթուելովն չար գոլ:

Եւ հասցէ իսկ յեկեղեցին և 'ի հասարակաց ժողովուրդն՝ որ ախորժիցէն: Եւ հարկաւոր լիցի այնմիկ որ յերկրորդ և առաջին գնոյն՝ տասն դրամ տուրժեալք եթէ ոչ մերձ գոլով քննիցի առ ժողովսն: Իսկ երրորդ գնոյն և չորրորդին ոչ իցէ հարկ, այլ անտուրժս մնասցէ, եթէ ոչ ինչ բողոքեսցեն իշխանքն ամենեցուն 'ի հարկէ իմեքէ 'ի միասին գոլ սոցա: Եւ վաճառայօրինիցն իսկ՝ զզարդրն որ առ վաճառուն իցէ 'ի ձեռն օրինացն կար-

դաւորելով պահել. և տաճարացն և աղբերացն փոյթ տանել այնոցիկ որ առ վաճառանոցն են, զի մի ինչ անիրաւութիւն առնէ ոք կամ կրէ։ Եւ զանիրաւողըն տանջել զանիւք և կապանօք՝ զծառայ և զօտարական. ապ'եթէ ներաքնակ գոլով՝ առ այսոքիկ անզարդութիւն արասցէ, մինչև ցհարիւր դրամս և դահեկանս՝ տէր գոլ զսոսա դատել իսկ մինչև ցկրկնապատիկն այսուիկ հաղորդաբար հանդերձ քաղաքայօրինացն տուրժել, դատ առնելով այնմիկ որ անիրաւեալ իցէ։ Այսոքիկ իսկ և քաղաքայօրինացն իցէ տուրք և տանջանք յիւրեանց իշխանութեանն, մինչև ցմնասի միոյ տուրժել սոցա՝ և զկրկնապատիկն հանդերձ վաճառացն յարդարողօքն։

Իսկ երաժշտականի որ յետ այսորիկ և կրթականի՝ իշխանք կարգել թերևս վայելչագոյն իցէ կըրկինս երկաքանչիւրոցն. զոմանս 'ի սակս խրատու սոցա, և զոմանս 'ի նահատակութեանն։ Խրատու իսկ ախորժէ ասել զօրէնս կրթութեանց դարմանողք՝ զարդու իսկ և խրատու միանգամայն, և այնոցիկ որ առ սոցունց են փոյթ յաղագս ուսման և բնակութեան արուաց իսկ և իգաց, երիտասարդաց, և նահատակութեան կրթմունսն, և յերաժըշտականսն նահատակութեան՝ յորդորիչք այնոցիկ որ նահատակին, երկու զնոյնս և առ երաժշտականին։ Իսկ միւս և առ այնոցիկ որ զընթացսն առնեն՝ այլք ընթացողացն առ մարդկանն, և երիվարացն զնոյնս։ Իսկ երաժշտականին՝ այլ իսկ առ դալալըկսն և նմանականսն՝ իբրու հագներգողսն և փանդեռնահարս և փողահարս, և ամենայն այսպիսիքն՝ այլոց նահապետացն ծայրի վայելչական է թերևս լինել, և այնոցիկ որ պարերգողսն են այլս. նախ իսկ առ պարուցն խաղսն՝ մանկանց իսկ և արանց և իգից երիտասարդաց՝ կաքաւմամբ, և ամենայն դասուն լինելով՝ առ երաժշտականին իշխանացըն զայսոսիկ ընտրել պարտ է. բայց բաւականապէս մի իշխան սոցա ոչ նուազ քառասուն ամաց լինելով բաւական իսկ է, և առ դալալըկսն մի ոչ նուազ քան երեսուն ամաց լինելով 'ի ներքս մուծող իսկ

գոլով և այնոցիկ որ հանդիսանան զընտրութիւնսն թուականապէս բացատրեալ: Եւ արդ պարուցն իշխանին՝ այնմիկ որ տրամախոհիցն է, ընտրել պարտ է այսպիսի ինչ յեղանակ. այնոքիկ իսկ որ խոհեմասիրութիւն ունիցին առ այսպիսի՝ ժողովուրդն եկիցեն, և եթէ ոչ՝ տուրժեալք լինիցին. բայց այսոցիկ օրինապահքն են դատաւորք: Իսկ այլոցն եթէ ոչ ախորժիցեն, ոչ ինչ հարկ իցէ: Եւ զնախարկութիւն իսկ այնմ որ կամիցի՝ 'ի հմտագունիցն պարտ է առնել. և 'ի յընտրութիւնսն՝ ըստորոգումն մի իցէ այս իսկ և բացասումն ոմանց իսկ, իբրու անհմուտ է հասեալն, և միւսոյ իբրու հմտագոյն: Եւ մի իսկ որ յառաջագոյն ձեռնադրելոցն՝ որ 'ի տասնեկին էին պատահի ընտրեալ, առ ամենայն[1] պարուցն իշխեսցէ ըստ օրինին: Ըստ այսոցիկ իսկ նոցունց և այսպէս հասեալն ամին այնմիկ ընտրութիւն եկելոց իսկ և փողահարութեանց իշխեսցէ, 'ի դատաւորսն բացատրելով հասեալն զդատն:

Իսկ յետ այսոցիկ պարտ է ընթացից նահատակութեան յորդորիչք ընտրել այնոցիկ՝ որ 'ի կըրթմունսն են երիվարացն իսկ և մարդկանն, յերրորդիցն և տակաւին յերրորդիցն[2] գնոց. բայց փոքրագոյնն իսկ առանց տուրժի թողցի: Եւ երիս իցեն հասեալքն յառաջագոյն ձեռնադրեալք իսկ քսանիցըն, և երից հասելոցն 'ի քսանիցն՝ զորս իսկ և դատ ընտրողացն փորձէ: Ապ'եթէ ոք յընտրութենէն 'ի բաց մերժի՝ ըստ որ և իցէ իշխանութեան յանդգի կամ դատի յայլս 'ի հաճիլ, ըստ այսոցիկ և զընտրութիւնն այսպէս առնել յաղագս սոցա:

Իսկ միւս իշխան է մեզ առ նախասասցեալս՝ որ խրատուն ամենայնի փոյթ առնէ իգիցն իսկ և արուացն: Մի իցէ և այն իսկ որ սոցունց իշխելոցն է ըստ օրինացն՝ լեալ իսկ ամաց ոչ նուազ քան թէ յիսնից. հարազատաց մանկանց հայր մանաւանդ ուստերաց և դստերաց. ապ'եթէ ոչ՝ միոյ մասին տրա-

1 Յոյնն. զմի ամ:

2 Յոյնն. ի չորրորդիցն:

մախոհիցի։ Իսկ որ նախ ընտրեալս իցէ, և որ նախ դատիցէ զսա, իբրու գոլով զիշխանութիւնս այսմիկ՝ այնոցիկ որ 'ի քաղաքին են ծայրագոյն իշխանութեացն մեծագոյն յոյժ։ Քանզի ամենայն տնկոց առաջին շառիղն՝ բարեւք դիմեալ առաքինութեամբ իւրոյ բնութեան իսկապէս, և 'ի կատարածն պատշաճապէս հասանի։ Այլոց իսկ տնկոց և կենդանեաց ընտանի և վայրենի՝ մարդկան, և մարդ որպէս ասացաք, ընտանի է. սակայն ուղիղ խրատու իսկ հանդիպեալ և բնութեան բարեբաստագունի՝ աստուածային և ընտանեգոյնս իւրէ լինել կենդանի. իսկ բաւականապէս ոչ և ոչ բարեւք սնուցեալ՝ վայրենագոյն է ամենեցուն՝ որչափ բուսուցանէ երկիր։ Յորոց սակս՝ ոչ երկրորդ և ոչ վարկպարազի պարտ է զմանկանցն սնունդ՝ օրինադրին թողացուցանել լինել. բայց նախ ընդ իշխանութեամբ գոլ պարտ է այնմ որ հանդերձեալ է բարեւք դարմանել. և հաճոյ գոլ այնոցիկ որ 'ի քաղաքին իցեն վեհագունիցն, զի այսպէս արիագոյն իցէ ամենայնի. սա իսկ ըստ զօրութեան մանաւանդ 'ի վերայ սոցա հաստատելով հրամայել փոյթ առնել։

Այժմիկ ամենայն իշխանութիւնքն, բայց 'ի խորհրդոյն և 'ի պահպանողացն յԱպողոնի տաճարն գոլով՝ բերիցեն դատակնիք գաղտնի զօրինապահացն զո ոք իւրաքանչիւր վարկանի գեղեցկագոյն լինել առ խրատուցն իշխանութեանցն. և որում յոլովագոյն պատահեսցին դատակնիք՝ ընտրելով յայլոց իշխանացն։ Բայց յօրինապահացն իշխեսցէ ամս հինգս։ Իսկ 'ի վեցերորդին՝ ըստ այսոցիկ այլոյ ուրուք յիշխանութիւնս յայսմիկ ընտրել. ապ'եթէ ոք ատենական իշխանութիւն իշխելով մեռանի նախ քան զկատարելն զիշխանութիւնն, յոլովագոյն քան եթէ երսուն աւուրց կարօտանալով, ըստ նորին յեղանակի յիշխանութիւնն զայլ ոք կարգել, այնոցիկ որոց էր այս ինչ փոյթ պատշաճաբար։ Եւ եթէ որբոց պաւառապետն վախճանիցի, որ պատշաճաւորքն իցեն և դիմեալք առ 'ի հօրէ կամ 'ի մօրէ, մինչև ցեղբօր որդեաց մանկունս՝ զայլ ոք կարգել, ներքոյ

աւուրց տասանց, կամ տուրժիցի իւրաքանչիւր ոք 'ի սոցանէ աւուր աւուր դրամ մի՝ մինչև հաստատիցեն զմանկանցն գաւառապետքն:

Եւ արդ ամենայն քաղաք թերևս առանց քաղաքանալոյ լինիցի, յորում դատարանք ոչ իցեն հաստատեալ ըստ յեղանակի: Եւ անբան իսկ դատաւոր՝ մեզ ոչ ինչ յոլովագոյն է՝ քան զհանդիսակիցքն այնպէս բարբառելով առ դատոմն որպէս և 'ի տունսն, և ոչ երբեք բաւական լիցի առ իրաւանցն ընտրութիւնն. 'ի սակս որոյ բազումք ոչ գոլով՝ դիւրին է բարեւք դատել, և ոչ սակաւք յորժամ չարք իցեն: Բայց հաւաստի պարտ է երկբայութեանն լինել առ 'ի յերկաքանչիւրոցն, և ժամանակն միանգամայն և երկարութիւն յայնժամ բազում անգամ վերստին ընտրելով: Առ 'ի յանդիման լինել երկբայութեանն պատշաճ է 'ի սակս որոց՝ նախ իսկ առ դրացիսն հասանել պարտ է ամբաստանելոցն զմիմեանց և առ բարեկամսն, և գիտողքն մանաւանդ երկբայեալ գործոյն: Եւ եթէ ոչ արդեւք առ սոքօք զբաւական դատն կալցի, առ այլ հասցէ դատարան. և երրորդ իսկ եթէ երկու դատարանքն ոչ կարասցեն հաշտեցուցանել. դիցէ իսկ զկատարած հանդիսին՝ յեղանակաւն յայնմիկ ըստ որում դատարանացն կարգաւորութիւնքն են և կամքն իշխանացն, զի ամենայն իսկ իշխանի հարկ է և դատաւոր գոլ ոմանց. և դատաւոր ոչ իշխան, և ումեմն յեղանակաւ ոչ իշխելով. ոչ յոյժ յաւէն լինիցի ըստ այնմիկ աւուրն յարում իսկ դատելով զիրաւունսն 'ի բաց կատարէ: Եդեալք արդ և զդատաւորքն իբրու իշխանք, առեմք թէ ո՞ ոք ոմանք իցեն վայելուչք, և որո՞ց արդեւք դատաւորք, ո՞րչափ 'ի վերայ իւրաքանչիւրոց:

Տիրապէս այժմ իցէ դատարան և դատ՝ զոր ինչ ինքեանք անձանց իւրեանց իւրաքանչիւրք բացասիցեն հասարակաբար՝ յոմանս հաճելով: Եւ երկու իսկ այլք իցեն հանդիսարանք. մի իսկ՝ յորժամ ոք զոմն ռամիկ՝ զռամիկ պատճառելով անիրաւել զինքն, ածցէ 'ի հանդէսն և ախորժիցէ դատիլ. և միւսն՝ յորժամ զատեան 'ի ձեռն ումեմն 'ի քաղաքացեայն

վարկանիցի ոք անիրաւել, և կամեսցի հասարակաց օգնութիւնս առնել։

Բայց ասել պարտ է թէ որպէս ոմանք և ո՞ ոք իցեն դատաւորքն։ Առաջին արդ հանդիսարան լինիցի մեզ հասարակաց ամենեցուն այնոցիկ որ զերկրորդ երկբայութիւնն ունիցին, ռամկացն առ միմեանս լինելով։ Այսպէս զամենայն արդ զիշխանութիւնն՝ որչափ իսկ ամի ամի. և որչափ յոլովագոյն քան զամն իշխեսցեն՝ յորժամ հանդերձեալ իցէ նոր ամ, յետ ամառնային յեղանակացն դարձման. յորժամ 'ի միւսում ամսեանն լինելոց իցէ, միոյ աւուր այնմիկ յառաջ՝ ամենայն իշխանացն պարտ է ժողովել 'ի մի տաճար, և զաստուած անուանելով իւրու զիշխող ամենայն սկզբան, մի դատաւոր որ և յիւրաքանչիւրում իշխանութեան արիագոյն գոլ թուիցի և առաքինագոյն և արդարագոյն, զդատաստանն քաղաքացեացն առ 'ի վերայ հասեալ ամն սմա դատել երևեսցի. և սոցունց ընտրելով լինել իսկ զքննութիւնն, ուր և սոքա կամեսցին. և եթէ յընտրութեանն 'ի բաց ոք մերժիցի, զայլ ոմն ընտրել։ Ըստ այսոցիկ և յընտրելոցն դատել իսկ զայնոքիկ որք յայլոց հանդիսարանացն փախչին. և դատակնիքն բերել յայտնապէս 'ի վերայ, լսողք գոլ և տեսուչք այսոցիկ դատաստանացս. 'ի հարկէ իսկ խորհրդածուք, և այլ իշխանս յորս հաճիցին՝ սոքա իսկ այլոցն՝ որ և ախորժիցէ։ Ապ'եթէ ոք պատճառէ զոմն կամաւ անիրաւապէս դատել զդատն, յօրինապահքն հասեալ՝ ջատագով լիցի. և որ պարտապանն իցէ այսպիսի դատիս՝ հատցէ[1] իսկ 'ի վնասելն զկէսն վնասուն։ Ապ'եթէ մեծագոյն տուրժի արժանի գոլ թուիցի՝ գին հատանելով դատողացն դատաստանի՝ զոր ինչ պարտ է այսոցիկ կրել սմա և կամ հատուցանել ատենին, և այնմ իսկ որ զհանդէսն դատիցէ։

Իսկ յաղագս հանդիսական ամբաստանութեանցն նախ իսկ հարկ է հանդերձ բազմութեամբն հատանել զդատն, քանզի անիրաւեալքն ամենեքեան են՝

1 Այս է՝ հատուսցէ, որպէս ունի յոյն բնագիրն։

յորժամ ոք անիրաւեսցէ զքաղաքն, և իրաւաբար թերևս դժուարապէս հանդուրժեն տարամասունք լինելով յայսպիսի ընտրութեանցս։ Սկիզբն իսկ գոլ պարտ է և վախճան այսպիսի հանդիսիս՝ յատեանն բացատրելով. բայց զքննութիւն մեծագոյն՝ երիւք իշխանութեամբքն այնոքիւք՝ զոր այն իսկ որ հալածին, և որ հալածեն 'ի միասին խոստովանիցին[1]։ Ապ'եթէ ոչ կարիցեն հաղորդել միմեանց խոստովանելովն, խորհուրդն դատիցէ զոցա զկամսն երկաքանչիւրոցն։ Պարտ է արդ և յատուկ հանդիսիցն ըստ զօրութեան ամենեցուն հաղորդիլ. քանզի որ անհաղորդն իցէ դատակից լինել իշխանութեանն, վարկանի ամենևին ոչ գոլ կցորդ քաղաքին։ Վասն այսորիկ արդ և ըստ ազգաց պարտ է դատարանս լինել, և վիճակաւ դատաւորքն. քանզի վաղվաղակի առանց ապականութեան դատիցեն զաղաչանսն. և 'ի կատարածին զամենայն զայսպիսիս դատել այնմիկ դատարանին՝ զորմէ ասեմք իսկ ըստ մարդկային զօրութեանն իբրու անապականագոյն կազմիլ, այնոքիկ իսկ որ ոչ հնարաւորին ոչ դրացեօք իսկ և ոչ ազգական հանդիսարանօքն հաշտիլ։

Եւ այժմ իսկ առ դատարանքս մեզ՝ զորս ասեմք այսպէս որպէս իշխանութիւնք, և ոչ որպէս դիւրաւ ոչ ասելով անընդերկուաբար ասացեալ։ Քանզի առ ոքօք իբրու պարագիծ ինչ արտաքոյ պարագծելով զոմանս ասաց, և ոմանք դրեթէ պակասեալ են։ Քանզի առ կատարած օրինադրութեան՝ հեշտութեանց օրինացն դրութիւնն՝ միանգամայն և բաժանումն ստուգագոյն՝ երկարաւ թերևս ուղղագոյն լիցի։ Զայսոքիկ առ կատարածին բանիս ասել մեզ սպասիցէ։ Իսկ առ այլ իշխանութիւնքն կարգաւորութիւնքն՝ դրեթէ զյոլովագոյնն ըմբռնիցեն օրինադրութիւն։ Բայց զբոլորին և ստուգագունին՝ յաղագս միոյ իսկ և ամենեցուն՝ որ առ քաղաքաւ և քաղաքական ամենայն մատակարարութիւնք

[1] Այս է 'ի ձեռն երից ատեննակալաց ընտրելոց միաբան հաւանութեամբ յամբաստանողաց և յամբաստանելոյն։

ոչ իցէ լինել հաւատալի նախ քան զելն ի սկզբանէ զերկրորդն իսկ և զմիջինսն և զամենայն մասունսըն իւր բացընկալեալ՝ առ վախճանն հասանիցի։ Սակայն այժմ առ հասեալ ժամն՝ մինչև յիշխանաց ընտրութիւնն լինելով վաղճան իսկ՝ յառաջագունիցն այսպէս լինել թերևս բաւականապէս։ Բայց օրինադրութեան սկիզբն և ընդերկութեան՝ միանգամայն և դանդաղանացն տակաւին իսկ ոչ կարօտացեալ։

Կղինիաս. Ամենևին ըստ կամաց իմոց, ով սիրելի, զյառաջագոյնսն ասացեալ, սկիզբն առ վախճանաւդ հուպ արարեր յաղագս ասացելոցն իսկ, և որ հանդերձեալ են ասել. զայսօրիկ իսկ մանաւանդ քան զայնօրիկ սիրելապէս ասացեր։

Պղատոն. Բարեւք այժմ թերևս առ 'ի մէնջ ծերական ներխոհեմ խաղալիկս մինչև աստանօր հասաւ այժմիկ խաղացեալ։

Կղինիաս. Թուիս ինձ ազնիւ յայտնելով զփոյթըն իսկ արանց։

Պղատոն. Վայելչապէս իսկ։ Բայց զայս ինչ զմտաւ ածէնք, եթէ թուի քեզ որպէս և ինձ։

Կղինիաս. Զորպիսի՞ ինչ արդ, յաղագս որոց ոմանց։

Պղատոն. Գիտես զի որպէս կենդանագրացն ոչ կատարած ունել իբրողութիւնն թուի առ ամենայն կենդանիս՝ դեղելոյն և ոչ դեղելոյն. և կամ թէ այլ ինչ զինչ և իցէ երբեք կոչիցեն զայսպիսիս կենդանագրացն մանկունք, ոչ երբեք թուի նմա դադարել զարդարելովն՝ մինչև ոչ իցէ հնար աճումն տակաւին ընդունել առ 'ի գեղեցկագոյն և երևան լինել գրեալն։

Կղինիաս. Գրեթէ իմանամ լսելով և ես զայդօքիկ զոր ասեսդ. քանզի ներկուռ իսկ ոչ եմ լեալ այդպիսի արհեստիդ։

Պղատոն. Եւ ոչ ինչ վնասեալ ես։ Սակայն վարեսցուք բանիւս որ այժմիկ առ 'ի մէնջ պատահեցաւ, յաղագս սորա զայսպիսի ինչ. որպէս թէ երբեք զմտաւ ոք իսկ ածցէ գրել գեղեցիկ կենդանի.

և այս իսկ ոչ երբեք 'ի վատթարագոյնն,̊ այլ 'ի լաւագոյնն հասանել յառաջելով ժամանակին. խորհի զի մանկանացու գոլով, եթէ ոչ զոք նմա ցուցանէ փոխանորդ իւր զի վերստին ուղղիցէ եթէ սղալիցի ինչ կենդանին 'ի ձեռն ժամանակաց. և զպակասեալն 'ի տկարութենէ անձին իւրոյ առ արհեստն, իբրու զի յառաջագոյն իցէ որք պայծառացուցիչ և աճեցուցող առ փոքումն ուրուք ժամանակի, սպասիցէ սմա յոյժ աշխատանք:

Կղինիաս. Ճշմարտապէս ասացեր:

Պղատոն. Զինարդ. մի՞ թերևս այսպիսի թուիցի քեզ գոլ կամքն օրինադրին: Նախ իսկ գրել զօրէնքն առ ստուգութիւն¹ ըստ զօրութեան բաւականապէս, և ապա յառաջելով ժամանակին և զթուեցեալսն փորձել գործով, կարծես արդեւք զոմն այսպէս անխոհեմ լինել օրինադիր՝ իբրու ոչ գիտել թէ ամենեւին բազում հարկ է մնացուցանել այսպիսիս զորս պարտ է ումեմն հետևելով վերստին ուղղել. զի ոչ ինչ վատթարագոյն այլ վեհագոյն իսկ քաղաքավարութիւն և զարդարումն միշտ լինիցի առ բնակեալսն 'ի սմանէ քաղաք:

Կղինիաս. Վայել է իսկ. զի ո՞րպէս ոչ կամեսցի ամենայն ոք զայսպիսի ինչ:

Պղատոն. Ո՞չ ապաքէն եթէ ոք հնար ինչ ունիցի առ այսոքիկ, գործով և բանիւ յեղանակաւ ոմամբ ուսուցանէ թերևս զայլ ոք, կամ մեծագոյն միշտ և կամ փոքրագոյն առ այսոքիկ ունել կարծիս՝ իբրու զի պարտ է պահել և վերստին ուղղել զօրէնս, ոչ երբեք ասելով բացասիցէ զայսպիսիս նախ քան 'ի կատարած հասանիլ:

Կղինիաս. Ո՞րպէս արդեւք:

Պղատոն. Ո՞չ ապաքէն առ հասեալ ժամս պարտ է առնել ինձ և ձեզ զայս ինչ:

Կղինիաս. Զորպիսի՞ ինչ ասես արդեւք:

Պղատոն. Քանզի օրինադրել իսկ հանդերձեալ

1 Այսպէս յօրինակին, բնագիրն՝ πρὸς τὴν ἀκρίβειαν ստուգութեամբ՝ բազում ճշգիւ:

եմք, և ասացան առ 'ի մէնջ օրինապահք; և մեք առ մուտս կենցաղոյս որք իբրու համբակք ընդ մեզ, համանգամայն իսկ որպէս ասեմք՝ պարտ է մեզ օրինադրել, և միանգամայն փորձ առնել՝ գործել և պահել զսոսա օրինադիրք իսկ և օրինապահք՝ ըստ որում հնար է։

Կղինիաս. Զիա՞րդ իսկ, եթէ որպէս և մեք բաւականապէս։

Պղատոն. Սակայն ջանալ, և յօժարանալ պարտ է։

Կղինիաս. Եւ ո՞րպէս ոչ։

Պղատոն. Ասասցուք արդ առ սոսա։ Ով սիրելիք և կեցուցիչք օրինացն, մեք յաղագս իւրաքանչիւրոց որոց դնեմք զօրէնս, ամենևին բազում ինչ պակասեցուցանեմք, քանզի հարկէ։ Սակայն այլ ոչ որչափ զփոքունս իսկ և զբոլորն ըստ զօրութեան՝ ոչ թողուցուք առանց պատմութեան իբրու պարագծիւ ումամբ. և զայս ընուլ ձեզ պարտ է զպարագրելս. և եթէ ո՞ւր հայելով առնիցէք զայսպիսիս, լսել պարտ է։ Քանզի Մեգիլոս իսկ և ես և Կլինի ասացաք զնոյնս միմեանց, ոչ սակաւ անգամ. և խոստովանիմք իսկ բարւոք ասել, և զձեզ կամիմք մեզ կամակիցք՝ միանգամայն և աշակերտք լինել, հայելով առ այսոքիկ զոր մեք ներեցաք միմեանց, օրինապահին իսկ և օրինադրին պարտ գոլ հայիլ. և էր իսկ ներութիւնս զմի ունելով կատարած՝ իբրու զի երբէք այրն թերևս բարի լինիցի՝ զոր ինչ մարդոյ պատշաճն է հոգւոյ առաքինութիւնն ունելով առ 'ի խորհրդէ ումեմնէ և կամ 'ի սովորութենէ իմեքէ, և կամ յորակութենէ ստացուածոց կամ 'ի ցանկութենէ մի կարծեաց կամ 'ի յուսմանց ումանց, եթէ ուրուք 'ի միասին բնակելոցն իցէ բնութիւն, և եթէ իգական համբակաց կամ ծերոց, որպէս զի առ նոյնս իսկ որ ասեմք կարգեալք՝ յամենայն ժամ փոյթ իցէ յամենայն կենցաղումն։ Իսկ այլոցն՝ որչափ արգել իցէ այսոցիկ՝ ոչ ինչ նախապատուելով երևեսցի, ոչ որ և իցէ ոք։ Իսկ վախճանելով և քաղաքի, և եթէ հակառակութեան հարկ երևեսցի լինել, նախ քան զկամելն ծառայական լծի ստորանկեալ՝ իշխել առ

'ի վատթարագունիցն, և կամ թողուլ փախստեամբ զքաղաքն. իբրու զամենայն այսպիսիս իցէ թերևս պարտ կրելով համբերել, նախ քան զփոխելն զքաղաքավարութիւնն, և կամ վատթարագոյն մարդիկ բնաւորիլ առնել: Զայսոսիկ մեք իսկ յառաջագոյն 'ի միասին խոստովանեցաք. և դուք այժմ տեսանելով զերկաքանչիւրքս առ 'ի մէնջ գովէք իսկ և պարսաւէք զօրէնքս՝ որչափ առ այսոքիկ ոչ են հնարաւորք, և զհնարաւորսն սիրէք իսկ և ընդունիք բարեկամաբար կելով սոքօք: Իսկ զայլ խորհուրդքն՝ և առ այլ ասացեալ արութիւնքն ձկտեալս խնդութեամբ առասել պարտ է:

Եւ սկիզբն այնոցիկ օրինացն որ յետ այսոցիկ են՝ եղիցի այս ինչ 'ի սրբազանիցն սկսանելով: Քանզի զթիւն արդ պարտ է նախ վերստին ըմբռնել մեզ զհինգ հազարաց, և զքառասնիցն՝ որչափ ունէր իսկ և ունի հատուածս ընդունելիս բոլորն իսկ միանգամայն, և որ ըստ ազգացն է, զոր և եդաք ամենայնի երկոտասաներորդ մասն, մինչև քսան՝ քսանիցն բուսուցանել ուղղագոյն. և ունի բաշխմունք երկոտասանս: Իսկ ամենայն մեզ թիւն՝ և երկոտասան՝ այն որ ազգացն է, է զիւրաքանչիւր արդ մասն՝ տրամախոհիլ պարտ է, իբրու գոլով աստուծոյ սրբազան պարգև, հետևելով ամսոցն և ամի շրջաբերութեանն. վասն որոյ և զամենայն քաղաքն ածէ իսկ բնակակից՝ սրբազանել զսոսա: Բայց այլք թերևս քան զայլս ուղղագոյն բաշխեցին իսկ, և բարեբաստագոյն գովասանեցին զբաշխումն: Բայց մեք ասեմք՝ ուղղագոյն ասացեալ զհինգ հազարացն և զքառասնիցն թիւ, որ և զամենայն բաշխմունքն ունի մինչև ցերկոտասանիցն, 'ի միակէն սկսանելով, բաց 'ի մետասաներորդէն. քանզի սա ունի փոքրագոյն ինչ յամբողջութիւն 'ի վերայ երկաքանչիւրոցն, ողջ լինելով երկուց տանցն 'ի բաց բաշխելով, և իբրու են այսոքիկ ճշմարտապէս էակք՝ ըստ բազում պարապութեան:

Ոչ ես ցուցցէ երկար ինչ ճառ, և հաւատալով այժմ հասեալ համբաւիս և բանիս՝ բաշխեցաք իսկ զայ-

տօքիկ. և իւրաքանչիւր մասին աստուած կամ մանուկ աստուծոյ 'ի վերայ համբաւել, և բազմնս ըստ այսոցիկ պատշաճագոյնս բացատրելով յաղագս զօրից, ժողովք առ սոցա արասցուք յամենեանն երկու, երկուտասան իսկ ազգին բաշխմանն և երկոտասան քաղաքիս բաժանմանն. և նախ իսկ 'ի սակս աստուածոցն շնորհի և այնոցիկ որ ինչ աստուածոցն են. և երկրորդ իսկ յաղագս մեր նոցունց ընտանութեան իսկ և ծանօթութեան միմեանց ասացուք. թերևս և 'ի սակս ամենայն կաճառման, քանզի առ ամուսնութեանն հաղորդութիւնն և շարամերձութիւնն հարկաւոր է զանգիտութիւնն 'ի բաց բառնալ, թէ առ 'ի յորմէ ոք ածցէ 'ի կնութիւն, և եթէ որմէ կինս տացէ, յոյժ փոյթ առնելով և յաւէտապէս, զի ոչ սխալեսցի իսկ և ոչ երբեք առ այսպիսիս ըստ որում հնար է։ Արդ 'ի սակս այսպիսի փութոյս պարտ է և զխաղալիսն առնել պար գոլով երիտասարդաց և աղջկանց. և միանգամայն տեսանել իսկ, և տեսեալք լինել համդերձ բանիւ և հասակաւ ոմամբ ունելով պատճառս վայելչագոյնըս, մերկացեալս զերկաքանչիւրս ցպատկառումն ողջախոհ երկաքանչիւրոյ։ Եւ այսոցիկ դարմանողք ամեցուն և զարդարիչք պարուցն՝ իշխանացն լինել և օրինադրացն համդերձ օրինապահօքն, որչափ մեք իսկ պակասեցուցանեմք կարգելով։ Եւ հարկ է, որպէս ասացաք, որչափ փոքրագոյնք և բազումք են՝ օրինադրին իսկ պակասել. իսկ հմտագունիցն միշտ ըստ ամի ամի լինելով սոցունց՝ առ 'ի պիտոյիցն ուսանելով կարգել և վերստին ուղղելով շարժել ըստ ամի ամի մինչև սահմանն բաւական թուիցի այնպիսի օրինացըն և խորհրդոցն լինել։ Եւ ժամանակ իսկ չափաւոր՝ միանգամայն և բաւական լիցի թերևս հմտութեանն՝ տասնամեայ զոհ իսկ և պարուց 'ի վերայ ամենայնի և իւրաքանչիւրոյ կարգեալ։ Կելով իսկ այնմ որ կարգեաց օրինադրին հասարակաբար. իսկ 'ի վախճան հասեալ՝ զնոցունց իսկ իւրաքանչիւրսն յիշխանութեանց 'ի ներքս բերելով առ օրինապահքըն, զմնացեալն յիւրեանց յիշխանութենէն վերստին

ուղղել՝ մինչև կատարած ունել իւրաքանչիւր ոք թուի-ցի, թերևս բարւոք գործելոյն. և յայնժամ ան-շարժ դնելով արդեւք վարիլ հանդերձ այլովք օրինօքն զորս կարգեաց իսկզբանն եղեալ սոցունց օրինադիրն: Յաղագս որոց շարժել իսկ կամիս ոչ երբեք ոչ ինչ. այլ՝ եթէ կարիք ինչ թուիցի երբեք հասանել, զա-մենայն իշխանութիւնքն պարտ է խորհրդակիցք՝ և զամենայն հանդէսքն և զամենայն աստուծոցն դիւ-թութիւնքն 'ի վերայ հասանելով, եթէ միաբանեսցին ամենեքեան՝ այսպէս շարժել: Իսկ այլպէս ոչ երբեք զոչ ոք. այլ այնմ որ խափանիցէ զպատշաճաւորսն ըստ օրինացն՝ յաղթէ իսկ:

Եւ արդ յորժամ լինիցի հնկից և քսանից ամաց՝ դիտեալ և դիտելով առ 'ի յայլոց, ըստ կամաց իւ-րոց և վայելչագոյն 'ի մանկանց հաղորդութիւն և 'ի լինելութիւն գտանելով վստահասցի և ամուսնասցի: Իսկ զայնոքիկ որ 'ի ներքոյ հնկից և երեսնից ամաց իցեն, իսկ զվայելուչն և զպատշաճն իբրու պարտ է խնդրել, նախ լուիցէ իսկ զի պարտ է՝ իբրու ասաց Կլինիաս, յառաջագոյն օրինի նախերգան ընտանի իւրաքանչիւրոյ դնել:

Կղինիաս. Գեղեցկապէս, ով սիրելի, յիշեցեր և ըմբռնեցեր բանիդ ժամանակ, և մանաւանդ ինձ թուեցեալ գոլ միանգամայն չափաւոր:

Պղատոն. Բարւոք ասես. ով մանուկ, և արդ ասասցուք բարի հարց բնաւորելով զայնոքիկ որ առ ներխոհեմսն բարեփառ թուին ամուսնութիւնքն՝ պարտ է ամուսնանալ. որք և զքեզ թերևս ողոքեն, և ոչ փախչել 'ի տնանկացն, և ոչ փարթամացն հե-տևել զանազանապէս ամուսնութեանն, այլ եթէ այլոյն հաւասարին՝ զնուաստագոյնն միշտ պատուելով 'ի հաղորդութիւն միանգամայն հասանել, քանզի քա-ղաքին պատշաճ թերևս այս իցէ, և տանցն որ շարա-մերձին. քանզի կակղագոյնն իսկ և չափաւորն անմահ 'ի բազում ինչ զանազանի առ 'ի յարիութիւնն, և զար-դարեալ հարց իսկ պարտ է յօժարիլ գոլ փեսայ՝ այն որ խորհեալ իցէ առ անձն իւր կարծրագոյն, միանգամայն և փոյթ քան զոր պատշաճն է առ

ամենայն գործման բերելով։ Իսկ այն որ ներհակա-պէս բնաւորեալ է՝ առ ներհականսն պարտ է գնալ ամուսնութիւնս, և առ ամենայնի մի լիցի պատ-ճառ ամուսնութեան. քանզի զոր քաղաքին պատշաճն է՝ խօսիցի 'ի հարսանիս իւրաքանչիւր ոք, և ոչ զհեշտա-գոյնն անձին իւրոյ. և իբրու բերի ամենայն ոք միշտ ըստ բնութեան առ նմանագոյնն իւր՝ ուստի և առանց հանդարտութեան բոլոր քաղաքն լինի ընչիւք իսկ և հասարակաց սովորութեամբ առ 'ի յորոց զոր ոչ ախորժեմք պատահիլ մեզ, և մանաւանդ պատահի յոլովագոյն քաղաքացն։ Զայսոքիկ արդ 'ի ձեռն բարի օրինօք հրամայել՝ ոչ ամուսնանալ փարթամ ընդ փարթամի, և ոչ կարող բազում ինչ գործել ընդ այլում այսպիսոյ. այլ արագագոյնքն բարեւք առ ծանրագոյնքն, և ծանրագոյնքն առ արագագոյնքն հարկիլ ամուսնութեանցն հաղորդութեամբն գնալ, ծիծաղական գոլովն՝ ցասումն թերևս յարուցանել բազմաց. զի ոչ դիւրին է զմտաւ ածել, զի քաղա-քի պարտ է գոլ իբրու բաժակի խառնեալ՝ յորում գինի մոլական հեղեալ եռացուցանէ զսա. բայց խա-փանելով 'ի ձեռն զուարթուն աստուծոյ գեղեցիկ հաղորդութիւն ընկալեալ, բարի ըմպելի և չափաւոր գործիցէ։ Զայս ինչ արդ լինելով առ մանկանցն[1] խառնուածին տեսանել յառաջագոյն, իբրու ասելի է տաղս, ոչ ոք հնարաւորի։ Ի սակս սոցունց արդ եթէ օրինօք իսկ այսպիսիքս հարկաւոր են՝ բայց ողոքելով հաւանեցուցանել ջանայ զկակղութիւնն՝ մանկանցն ինքեանց նոցունց ամուսնութեանն հաւա-սարու անյագագոյն քան զինչս գոլով, փոյթ առ-նել իւրաքանչիւրում, և 'ի ձեռն նախատանաց դար-ձուցանել զկամս որ առ ինչս ամուսնութեամբն իցէ փութացեալ, և ոչ գրեալ օրինօք բռնադատելով։ Արդ յաղագս ամուսնութեանց այսոքիկ իցեն ասա-ցեալք ճառք։ Եւ յառաջագոյն այսոքիկ իսկ ասա-ցեալքն, իբրու պարտ է մշտածին բնութեանն փոյթ առնել զմանկունս մանկանց միշտ մնացուցանելովն

1 Յոյնն՝ առ ամուսնութեանցն։

աստուծոյ պաշտօնեայս փոխանակ անձին իւրոյ աւանդելով զայսոքիկ։

Արդ ամենայն և ես յօլովագոյն, եթէ ասիցէ ոք յաղագս ամուսնութեան, իբրու պարտ է ամուսնանալ, նախերգել ուղղապէս։ Եւ եթէ ոչ ոք արդեւք հաւանեսցի կամաւ, բայց օտար զանձն իւր և անհաղորդ 'ի քաղաքին ունիցի, և առանց ամուսնութեան գոլով լինիցի հինգ և եռամասնեայ[1], տուժեսցի ըստ իւրաքանչիւր ամի մեծագոյն իսկ պատիւ ստացեալն հարիւր դրամս, և երկրորդ՝ եւթանասուն, և երրորդ՝ վաթսուն, և չորրորդ՝ երեսուն։ Եւ այս իսկ լիցի տաճար Հերայի[2]։ Բայց որ ոչ հատուցանէն ըստ ամի ամի՝ տասնպատիկ լիցի պարտական, և պահանջիցէ իսկ զայս աստուածուհոյն շտեմարանապետն, և ոչ պահանջեալ՝ ինքն լիցի պարտական, և այսորիկ պարտուցն համար տայց ամենայնի։ Իսկ արդ առ ինչ որ ոչ կամեսցի ամուսնանալ՝ զայս ինչ տուժեսցի։ Եւ պատուոյ առ 'ի համբակացն յամենայնէ անպատիւ իցէ, և ոչ ոք հպատակիցի սմա, և ոչ ինչ 'ի համբակացն. և եթէ տանջել զոք ձեռն արկցէ, ամենայն ոք այնմ որ անիրաւի 'ի սմանէ, օգնական լիցի և վանիցէ զսա, և ոչ օգնելով պատահեալն՝ վատ իսկ համանգամայն և չար քաղաքացի գոլ՝ առ 'ի յօրինացն ասացի։

Իսկ յաղագս հետևեալ մասինն ասացաւ և յառաջագոյն. ասասցի և դարձեալ իբրու հաւասարք փոխանակ հաւասարաց է, որ ոչ առնելոյն և ոչ արտաքս տալոյն՝ վասն ընչից անկարութեան, ծերանալն տնանկաց, քանզի կարևորսն յընչից են ամենեցուն 'ի քաղաքիս յայսմիկ։ Սակայն անարգանս կանաց նուազ, և ծառայութիւն տառապանօք և առանց ազատութեան վասն ընչից ամուսնացելոցն լինիցի թերևս։ Եւ որ հաւանիցի իսկ՝ մի 'ի գեղեցկագունիցն առնէ զայս ինչ թերևս. և որ ոչն հաւանի՝ տալով իսկ կամ առնլով յօլովագոյն քան

1 Յոյնն՝ երեսուն և հինգ ամաց։

2 Յոյնն՝ և այս արծաթ նուիրեսցի Հերայի։

եթէ վաթսուն արժանիք դրամոց 'ի սակս հանդերձից, և ոմն մնասի միոյ, և միւսն կիսամնասից, և ոմն երկու մնասից, որ զմեծագոյն գինն ասացեալ իցէ՝ պարտապան գոլով իսկ Արամազդայ. այլ այսչափ և տուեալն իսկ կամ առեալն՝ տաճար լիցի Հեռայի իսկ և Արամազդայ։ Եւ պահանջելով շտեմարանապետքն այսոցիկ աստուծոցս՝ որպէս ասացաւ յաղագս ոչ ամուսնացելոցն, յըշտեմարանսն կրիցեն յիւրաքանչիւր ժամու յայնոցիկ որ Հեռայինն են, և եթէ ոչ՝ առ 'ի սոցանէ իւրաքանչիւրոցս զտուրժն պահանջել։

Եւ երաշխիս գոլ տիրագոյն՝ նախ իսկ զհօրն՝ և երկրորդ զհաւուն, և երրորդ զհամահարց եղբարցն։ Ապ'եթէ և ոչ մի իցէ 'ի սոցունց, զառ 'ի մօրէն յետ այսոցիկ գոլ իսկագոյն իբրու այսպէս։ Ապ'եթէ ոչ պատահի անսովորական ոմն, թերևս պատահի մերձաւոր ազգականացն՝ միշտ գոլով իսկագոյն հանդերձ գաւառապետօքն։

Բայց որչափ նախապարգևս ամուսնութեանց, կամ այլ ինչ առ այսպիսիս պաշտեալ հանդերձելոցն կամ որ լինին և կամ եղելոցն պատշաճիցի պարգևիլ, պատմողացն հարցանել պարտ է, և հաւանելով սոցա՝ զիւրաքանչիւր վարկանիլ անձին իւրոյ չափաւորապէս լինել զամենայն։ Եւ յաղագս խրախճանութեանցն՝ զբարեկամս իսկ և զբարեկամուհիս ոչ յոլովագոյնս հնկից երկաքանչիւրոցն 'ի միասին կոչիլ։ Իսկ ազգականաց և ընտանեաց այսպէս. այլ այսչափ երկաքանչիւրոցն և ծախս ոչ լինել յոլովագոյն, եթէ ըստ գոյիցն ոչ և միոյ ուրուք այնմիկ որ առ մեծագոյն ինչսն իցէ՝ մնասի մի, և կիսոյն, նորին կէսն. այսուիկ և ըստ կարգի այսպէս որպէս և ստորանկեալ է գինսն իւրաքանչիւրում. և զայն իսկ որ հաւանին օրինաց՝ ամենեցուն գովել պարտ է, և զանհաւանեալն իսկ տանջելով օրինապահքն, իբրու անհմուտ բարոյ իսկ գոլով և անխրատ այն իսկ օրինացն որ առ հարսնական երաժիշտքն են։

Եւ ըմպել արբեցութեամբ ոչ այլ ուրուք իսկ վայել է, բայց յայնմիկ միայն որ զգինին պարգևէ աստուծոյն տօնքն, և ոչ զգուշագոյն ոչ արդ առ հար-

տանիման փութալով. առ որս ներխոհեմ գոլ մանաւանդ վայել է հարսին իսկ և փեսայի՝ փոխումն իսկ կենցաղոյ ոչ փոքր փոխաբերելովն համանգամայն իսկ. և որ ծնանելոցն է իբրու զի մանաւանդ 'ի ներխոհեմից միշտ լինիցի. զի գրեթէ անյայտ է, թէ որ գիշեր և կամ տիւ հանդերձ աստուծով զսա ծնանիցի։ Եւ վասն այսորիկ պարտ է ոչ մարմնոցն լքելով 'ի ձեռն արբեցութեան լինել մանկագործութեանն, այլ հաստատուն և առանց մոլորութեան, և 'ի հանդարտ մասին բաղկանալով այնմ որ բուսանելոցն է։ Իսկ որ գինով յածեալ իցէ, ինքն իսկ ամենևին առ ամենայն ինչ բերեալ լինի, և բերէ կատաղելով ըստ հոգւոյն՝ մարմնոյն սերմանել։ Արդ անընդունելի է միանգամայն և չար արբեցեալն, իբրու զայն իսկ որ առանց հանդարտութեան են և վստահութեան, և ոչ ինչ ուղղաշաւեղ բարք, և ոչ մարմին 'ի վայելչագունից թերևս ծնանիցի երբեք. վասն որոյ մանաւանդ իսկ առ բոլորն տարին և կենցաղն պարտ է և յաւետապէս իսկ որչափ ժամանակ արդեւք ծնանիցի՝ խորշիլ և ոչ գործել և ոչ որչափ հիւանդոտքն են յայնպիսեացն գոլ ինչ կամաւ, և որչափ անարգութեան կամ ապիրատութեան հուպ են. քանզի 'ի ծնելոցն հոգւոյն և 'ի մարմնոյն հարկ է նշանակելով տպաւորիլ և ծնանիլ ամենևին զվատթարագոյնսն, առաւելապէս իսկ զտիւն զայնմիկ և զգիշերն 'ի բաց կալ պարտ է յայնպիսեացն. քանզի սկիզբն մարդկան աստուած գոլով, կեցուցանէ զամենայն, եթէ պատշաճաւ որ պատուոյն՝ առ իւրաքանչիւրոց սոցա որ սովաւ վարին հասանի։

Եւ թուեցեալ պարտ գոլ ամուսնացելոցն՝ 'ի տանցն որ 'ի վիճակին են՝ զմեւսն իբրու ձագուց առ 'ի ծնունդ և 'ի սնունդ՝ որոշելով 'ի հօրէ և 'ի մօրէ, զհարսանիսն աստանօր առնել, և զսնունդ իւր և զզաւակացն. քանզի առ սիրելութիւնս եթէ փափագ ինչ իցէ՝ 'ի միասին հաւաքէ և կապակցէ զամենայն բարք. իսկ 'ի միասին գոլն յագեցմամբ ոչ ունելով 'ի ձեռն ժամանակի փափագումն, տարակուսէ 'ի միմեանց գերազանցութեամբ յագեցմամբն։

ի սակս որոց մօր և հօր և կնոջ ընտանեացն պարտ է թողլով զբնակութիւնս իւրեանց, իբրու զի հաստատեալս 'ի բազաբնակութիւնս 'ի վերայ դիտելով իսկ համանգամայն, և 'ի վերայ դիտեալք լինելով բնակիչ՝ ծնանելով իսկ և սնուցանելով զմանկունս, որպէս լապտերք զկենցաղս աւանդելով առ 'ի յայլոց 'ի յայլս, հաճեցուցանելով միշտ զաստուածսն ըստ օրինացն. և ստացուած որ յետ այսորիկ՝ որպիսի ինչ արդեւք ստանալով քաղցրայարմար գոյութիւն ստասցի։ Իսկ արդ զբազումս ոչ իմանալ է դժուարին և ոչ ստանալ. բայց ծառայիցն իսկ դժուարինք են ամենեքին. և զպատճառն ոչ ուղղապէս երբեք և ումեմն յեղանակաւ, ուղղապէս սոցունց ասեմք. քանզի ներհականք պիտոյից, և ըստ պիտոյիցն իսկ ասասցուք յաղագս ծառայից զասացեալս։

Կղինիաս. Որպէս իսկ զայս ասեմք. քանզի ոչ ես իմանամք, ով սիրելի, զոր ինչ այժմիկ ասեսդ։

Պղատոն. Եւ մանաւանդ իսկ, ով Մեգիլէ, վայելչապէս. քանզի գրեթէ ամենեցուն ելլենացւոց՝ լակեդեմոնացւոցն ընդ ծառայութեան յոլովագոյն տարակուսանս՝ առտուիցէ թերևս և հեռ, ոմանց իբրու բարեւք իսկ և ոմանց իբրու ոչ բարեւք լեալ է։ Իսկ նուազագոյն հերեկլէացւոցն ծառայութիւն, քան եթէ մարիանդինացւոցն ընդ ծառայութեամբ լինելն հեռ ունիցի, թերևս և թեսաղացւոցն իսկ տնանկական ազգն։ Առ որոց և զայսոսիկ ամենայն հայելով մեզ՝ զինչ պարտ է առնել յաղագս ստացման ծառայիցն։ Առ որոյ իսկ անցանելով բանիս հանդիպեցայ ասացեալ, և դու իսկ վայելչապէս թէ, զինչ երբեք ասեմ հարցեր զիս. և է՞ իսկ այս ինչ։ Գիտեմ զի ամենեքին երբեք ասասցուք թերևս որպէս պարտ է ծառայք իբրու բարեկամագոյնք ստանալ և արիագոյնք. քանզի բազումք՝ եղբարց թերևս ծառայք և ուստերաց ոմանց վեհագոյնք ըստ առաքինութեան ամենայնի լինելով, կեցուցին զտեարքն և զստացուածքն, և զբոլոր բնակութիւնս նոցա. զի զայսոսիկ գիտեմք երբեմն յաղագս ծառայից ասացեալ։

Կղինիաս. Սակայն զինչ։

Պղատոն. Ո՞չ ապաքէն և ներհակն՝ իբրու ոչ ինչ ողջ ծառայական հոգւոյ, և ոչ հաւատացեալ, ոչ երբեք և ոչ ինչ պարտ է այսմ սեռի՝ այնմ որ միտք է ստացեալ։ Իսկ իմաստագոյնն մեր քերթողաց, և բացասաց վասն Արամազդայ ոգելով, իբրու զի «կէս իսկ մտաց, ասէ, համարի ունելով մեծակնդ Արամազդ յարանց որք Թերևս իսկ ընդ ծառայութեամբ պատահեալ իցէ[1] »։ Ըլլենացւոց զայսոսիկ արդեւք ընկալեալ իւրաքանչիւրք տրամախոհութեամբ, ոմանք վստահանան իսկ ոչ 'ի սեռ ծառայիցն, այլ ըստ գազանաց բնութեան, գանիւք և խայթոցիւք՝ ոչ երիցըս միայն՝ այլ և բազում անգամ գործիցեն հնազանդեալս զհոգիսն ծառայիցն, և ոմանք իսկ զամենայն ներհականսն սոցունց առնեն։

Կղինիաս. Սակայն զինչ պարտ է առնել, ով սիրելի, տարբերելով այսպէս մեր, յաղագս մերոյ գաւառիս, յաղագս ստացման միանգամայն և տանջելոյն զծառայսն։

Պղատոն. Եւ զի՞նչ, Կլինիա. քանզի յայտ է իբրու դժուարին կենդանի է մարդս առ 'ի սովորելն սննդեամբ ըստ հարկաւոր սահմանին։ Իսկ զծառայականն գործելով սահմանել և զազատն և զտէրըն, ոչ դիւրահուպ իսկ կամիլ գոլ և լինել՝ երևի դըժուարին։ Է արդ ստացուածս՝ զի բազում անգամ գործով է ցուցեալ առ մեսսենացւոցն հակառակութիւնսն, որ ստէպ սովորեալ են լինել և առ այնոցիկ՝ 'ի միոյ լեզուէ բազում ծառայք ստացեալ իցեն քաղաքացն, և տակաւին առ այնոցիկ որ ասեն փորձիչք՝ առ 'ի յԻտալիա լինելով պէսպէս գթեանց[2] գործք և կիրք, առ որս ամենայն հայեցեալ ոք տարակուսեսցի թէ զի՞նչ է պարտ առնել յաղագս ամենեցուն այնոցիկ։ Բայց երկու միայն մնացեալ են հնարս. զի ոչ գաւառացիք միմեանց գոլն սոցա, զի ծառայեսցեն դիւրապէս առանց միաբանութեան

1 Ցոդիսական գրոց Հոմերի են տողք. ԺԷ, 337։

2 Այսպէս յօրինակին. բնագիրն ունի χλοπῶν գողութեանց։

մանաւանդ յոյժ գոլով և մնուցանելն սոցա ուղղապէս միայն 'ի սակս նոցունց, այլ յոլովապէս իւրեանց նախապատուելով զսոսա և մնունդն այսպիսեաց, զի ոչինչ անարգանս անարգիցեն առ ծառայսն՝ և նուազապէս եթէ հնար իցէ անիրաւեն, քան եթէ հաւասարապէս, քանզի յայտ է զի որ բնութեամբ պատուէ զիրաւունսն և ոչ ստեղծելով, և ատէ ճշմարտապէս զանիրաւն այսոքիւք զմարդկան՝ առ որս դիւրին է նմա անիրաւել և որ առ ծառայիցն։ Արդ սովորութիւնքն և գործքն լինիցին առանց անմաքրութեան, յաղագս ոչ արդարագունին և անիրաւին սերմանել զբոյսս առաքինութեան։ Թերևս բաւական իցէ զնոյնս խսկ ասել, զայս ինչ ուղղապէս ասելով առ տեառն և բռնաւորի և առ զամենայն զօրութիւն ստացեալ առ տկարագունին իւրոյ՝ տանջել խսկ իրաւամբք միշտ զծառայս, և ոչ իբրու զազատս խրատելով տացեն սոցա ամբարհաւաճել։ Եւ առասութեանն ծառայիցն՝ գրեթէ պարտ է ամենայն հրամանաւ լինել, ոչ խաղալեօք և ոչ ինչ ոչ երբեք ոչ ընդ էգս և ոչ ընդ արուս. զոր խսկ առ ծառայսն սիրեն՝ բազումք յոյժ առանց խոհեմութեան սովորեցուցանելով զսոսա խենեշանալ ամբարհաւաճութեամբ, և դժուարագոյն 'ի բաց գործել զկենցաղն, և նոցունց խսկ իշխել, և անձանց իւրեանց ընդ իշխանութեամբ գալ։

Կղինիաս. Ուղղապէս ասես։

Պղատոն. Ո՞չ ապաքէն յորժամ ծառայիւքն պատրաստեալ իցէ ըստ զօրութեան՝ բազմութեամբ և ճահաւորութեամբ առ իւրաքանչիւրոց գործոցն օգնականութիւնսն՝ յետ այսորիկ խսկ բնակութիւնս պարտ է նկարագրել բանիւ։

Կղինիաս. Յոյժ արդար։

Պղատոն. Եւ միանգամայն խսկ իբրու ասել զտաղըս յաղագս ամենայն շինութեանց, զնմանէ ասել՝ զի զնոր և առանց բնակութեան յառաջագոյն քաղաքն՝ դարմանել պարտ է, թէ որպէս յեղանակաւ զիւրաքանչիւրսն 'ի սոցանէ ունիցի առ տաճարսն խսկ և պարիսպքն։ Իսկ յաղագս ամուսնութեամբ յա-

ռաջագոյն իրիս քան զայնոքիկ, ով Կլինիա. բայց այժըմ քանզի բանիւ լինի, և մանաւանդ հնար է ոմն լինել այժմիկ. սակայն գործով յորժամ լինիցի այսոքիկ՝ յառաջագոյն հարսանեացն, եթէ աստուած կամիցի, առնելով զայսոքիկ արդեւք յայնժամ առ ամենեցուն այնոցիկ կատարեսցուք։ Բայց այժմ իսկ՝ միայն իբրու գաղափար ինչ ասցունց 'ի ձեռն սակաւուց պատմեսցուք։

Կղինիաս. Եւ յոյժ իսկ արդար։

Պղատոն. Իսկ այժմիկ զտաճարքն ամենայն՝ շուրջ զվաճառարանաւն պարտ է պատրաստել, և զքաղաքըն բոլոր շրջանիւ տեղեացն 'ի սակս ամրութեան. և առ այսոցիկ բնակութիւնք իշխանացն և հանդիսարանացն՝ առ որս զհանդէսն՝ իբրու սրբազանագոյն գոլով սոցա առցեն իսկ, և տացեն զոմանս՝ իբրու յաղագս արդարագունից, և զմիւս իբրու այսպիսի աստուծոց բնակարանս. և առ սոքօք հանդիսարանք՝ առ որս սպանութեանցն լինիցին, թերեւս որպէս վայել է, և որչափ մահուան արժանի ապիրատութիւնք են։ Բայց յաղագս պարսպաց, ով Մեգիլէ, ես իսկ Թերեւս Սպարտէացւոյն[1]՝ պատշաճ իմն նմջելն Թողացուցանելոյն յերկիր, 'ի խոնարհ կալով զպարիսպքն, և ոչ 'ի վերայ ելանել 'ի սակս այսոցիկ։ Բարեւք իսկ և քերթողական բանն երգէ յաղագս սոցա զպղնձի և երկաթի պարտ գոլն պարսպացն մանաւանդ քան եթէ հողեղէնք։ Բայց մերս ևս առ այսոքիկ ծաղր արդեւք իրաւապէս ամենեւին յոյժ պարտիցի՝ ըստ ամի ամի առաքելն 'ի գաւառն զհամբակսն՝ զոմանս բերելով[2], և առ միւսս՝ փոսս առնելով, և զոմանս 'ի ձեռն շինութեանցն արգելլով զթշնամիսն՝ որպէս 'ի սահմանսն գաւառին ոչ թողլով մտանել. բայց պարիսպք շուրջանակի ածցուք, որ նախ իսկ առողջութիւն իսկ քաղաքացն ոչ ինչ պատշաճի, բայց առ կակղագոյն ունակութիւն զանձինսն ներբնակելոցն առնել սովորեալ է՝

1 Այս է՝ ըստ սպարտացւոցն։

2 Այսպէս յօրինակին. յոյնն՝ Բրեւոն։

հրաւէր տալով առ այս ինչ ապաւինելով, ոչ վանել զթշնամիսն, և ոչ պահելովն միշտ ոմանց զսա 'ի գիշերի և 'ի տուընջեան՝ այսուիկ հանդիպիլ փրկութեանն. այլ պարսպօք և դրամք[1] տրամախոհիլ ցանկելով իսկ և ննջելով՝ փրկութեան ճշմարտապէս հնարս ունել իբրու առ ոչինչ աշխատութիւն լինելով, ոչ գիտելով իսկ զհանգիստն իբրու ճշմարտապէս յաշխատանացն, և որպէս թուի ինձ 'ի գարշելի հանգստենէն և 'ի տարտամութենէն աշխատանքն դարձեալ բնաւորեալ են լինել։ Այլ եթէ պարիսպ ինչ արդեւք պարտ է գոլ մարդկան, զշինութիւնքն զիւրեանց բնակութեանցն այնպէս 'ի սկզբանն արկանել՝ իբրու զի իցէ ամենայն քաղաքն մի պարիսպ՝ անդէզ նմանութեամբ առ ճանապարհըն ամենայն բնակութեանցն ունելով ամրութիւն. և տեսանելն թախանձ ոչ ունիցի՝ միոյ տան ձև ունելով սորա; և 'ի պահպանութեանն դիւրութիւն բոլորի և ամենայնի առ 'ի փրկութիւն ընդունելի թերևս լինիցի։ Եւ սոցա մինչև իցէ իսկ 'ի սկըզբանն շինեալս՝ փոյթ առնել մանաւանդ այնոցիկ որ առ սոքօք բնակեալ.ք իցեն՝ թերևս վայելչական իցէ և 'ի քաղաքաբաշխաց դարմանել. և առ այս ինչ հարկելով և զծուլացեալն տուգանելով. և ամենեցուն իսկ որ առ քաղաքաւն են՝ մաքրութեան փոյթ առնել, և իբրու զի ոչ ոք ռամիկ՝ ոչ ինչ 'ի քաղաքին իրաց՝ ոչ շինուածօք և ոչ բրելով իսկ ըմբռնիցէ։ Եւ արդ և ջուրց այնոցիկ որ առ 'ի յԱրամազդայ բարեխօսութենէն՝ փոյթ առնել սոցա պարտ է. և որչափ ներքոյ քաղաքին, և որչափ արտաքոյ վայել է թերևս բնակիլ. Զայսոսիկ իսկ ամենայն 'ի միասին պիտոյիւքն տեսանելով օրինապահացն, խրատելով և զայլսն որչափ օրէնսն մնացուցանէ վասն տարակուսանաց։

Եւ յորժամ այսոքիկ իսկ, և այնոքիկ որ առ վաճառարանաւն են շինութիւնք, և այնոքիկ որ առ վարժանոցսն են, և ամենայն որչափ կրթարանք են պատ-

1 Այս ինքն՝ գրամբք։

րաստելով՝ սպասիցեն աշակերտացն և տեսողացն տեսարանքն, գնասցուք առ այնոսիկ որ յետ հարսանեացն են՝ օրինադրութեանս ըստ կարգի հպելով։

Կղինիաս. Յոյժ արդար։

Պղատոն. Այսուհետև հարսանիք այժմ լիցին մեզ եղեալք, ով Կլինիա. և վարք նախ քան զմանկածնութիւնքն, ոչ նուազ քան զամ մի լինիցի։ Թերևս յետ այսորիկ զորս, որով իսկ յեղանակաւ պարտ է կեալ փեսայի և հարսին 'ի քաղաքի՝ որ զանազանեալ իցէ 'ի բազմաց։ Եւ արդ զայժմիկ ասացելոցն հուպն ասել՝ ոչ ամենեցուն պարզագոյն իցէ, այլ գոլով ոչ սակաւուց այսպիսեաց որ յառաջագոյն՝ զայս ևս քան եթէ զայնոքիկ զբազում դժուարագոյն ընդունել բազմութեամբն. սակայն զթուեցեալն ուղիղ և ճշմարիտ գոլ։

Կղինիաս. Առանց ամենայն պատճառի։

Պղատոն. Արդ որ զմտաւ ածէ քաղաքաց օրէնս բացերևեցուցանել երբեմն զհրապարակական և զհասարակացն՝ սոցա պարտ է կելով գործել. և իւրոցն ոչ կարծել՝ գոլ պատշաճ և իշխանութիւն իւրաքանչիւրոց գոլ 'ի տուընջեանն կեալ որպէս թերևս և կամիցի, և ոչ զամենայն 'ի ձեռն կարգաւորութեան պարտ գոլ լինել. և 'ի բաց թողեալ զիւրսն՝ առանց օրինադրութեան՝ վարկանի իսկ զհասարակականքն և զհրապարականքն, կամիլ սոցա կեալ 'ի ձեռն օրինացն, ոչ ուղղապէս տրամախոհի։ Եւ 'ի սակս որոյ այսոքիկ ասացաւ։ Այսորիկ՝ զի ասասցուք պարտ գոլ մեզ փեսայեացն ոչ զանազանապէս և ոչ նուազ առ զուգահաղորդութիւնսն առնել զվարսն՝ այն որ նախ քան զհարսանիսն. և ժամանակին լինելով և այս իսկ սքանչելի գոլով՝ յորժամ իսկզբանն առաջին եղև 'ի տեղիքդ որ առ ձեզ են[1], պատերազմի ումեմն իբրու իրաւապէս օրինադրելով զսա, և կամ այլոյ ուրուք իրողութեան այսպիսի ունելով զօրութիւն, սակաւամարդութեամբ ընդ բազում տարակուսանօք գոլով և ճաշակելով 'ի հարկէ վարիլ, զու-

1 Այս է՝ 'ի Կրետէ և 'ի Սպարտա, ուստի խօսակիցքն էին։

զահաղորդութեամբն թուեցաւ մեծ ինչ տարաբերիլ առ 'ի փրկութիւն, որ և հաստատեցաւ իսկ յեղանակաւ ոմամբ այսպիսեաւ խորհուրդն ձեզ զուգահաղորդութեանց։

Կղինիաս· Եւ նման իսկ է։

Պղատոն. Արդ զոր ինչ ասէի, եթէ սքանչելի գոլով այսօրիկ երբեք և անհագին՝ կարգաւորելով ոմանց այժմիկ, ոչ նմանապէս կարգադրին դժուարին թերևս իցէ օրինադրել զսա։ Բայց զոր 'ի կարգին է՝ այսուիկ բնաւորելով իսկ ուղղապէս թերևս լինել՝ լինելով. բայց այժմիկ ոչ ուրուք լինելով՝ սակաւ ինչ առնել օրինադրին զխաղալիսն ինչ. զի 'ի հուր գգելն և բաղումն այլս այսպիսիս անկատարս գործելոյ՝ ոչ դիւրին է ասել, և ո՛չ ասելով 'ի բաց կատարել։

Կղինիաս. Զի՞նչ զայսոսիկ, ով սիրելի, ընձեռեալ ասել թուիս՝ յոյժ 'ի բաց դանդաղիլ։

Պղատոն. Լուիցէք արդեւք, զի մի՛ բաղում դեգերումն լինիցի առ այսօրիկ նոյնս 'ի մնոտի։ Քանզի ամենայն որ ինչ կարգաւորութեան և օրինի հուպ գոլով՝ 'ի քաղաքի լինիցի, զամենայն բարութիւնս գործէ. և այնոցիկ որ առանց կարգաւորութեան են և կամ չարաչար դասեալք, լուծանէ բաղում ինչ այլ միւսք՝ 'ի բարեւք դասելոցն։ Յաղագս որոյ և այժմիկ եհաս ասացեալքս։ Զի ձեզ, ով Կլինի և Մեգիլէ, արանցն իսկ զուգահաղորդութիւնքն[1] բարեւք համանգամայն, և որպէս ասացի, սքանչելապէս կարգեցաւ յաստուածայնոյ ումեմն կարեաց։ Իսկ կանանց ոչ ուղղապէս առանց օրինադրութեան լինիցի, և ոչ առ լոյս հասեալ է խորհուրդ սոցունց զուգահաղորդութեանն։ Այլ և այլպէս այն իսկ սեռն մեր մարդկանս, որ գաղտնի մանաւանդ և 'ի ծածուկ բնաւորեալ իգականս, վասն տկարութեանն ոչ ուղղապէս զայս ինչ ներելով օրինադրին դժուարակարգ գոլ 'ի բաց թողաւ։ Եւ 'ի ձեռն սորա թողլոյ իսկ բաղում հոսեալ անցաւ. յոյժ թերևս լաւագոյն

1 Հասարակաց բաղմեալն ի ճաշ, որպէս բնագիրն ասէ։

գոլով եթէ օրինաց հանդիպեալ էր՝ քան եթէ այժմ. քանզի ոչ կէս միայն՝ իբրու թուիցի թերևս յաղագըս կանանց իւր անզարդաբար արհամարհելով, և որչափ իգական բնութիւնս է մեզ առ 'ի յառաքինութիւն վատթարագոյն քան զարուացն՝ այսչափ զանազանի յաճախագոյն գոլ քան զկրկնապատիկն։ Զայսմանիկ արդ վերստին ընթանել և յուղղութիւն հաստուցանել, և զամենայն հաղորդաբար կարգել արանց և կանանց՝ վեհագոյն խորհուրդ է առ քաղաքի բարեբաստութիւն։ Բայց այժմիկ այսպէս մարդկան սեռս՝ ոչ յայս ինչ բարեւք հանդիպեալ, որպէս ոչ յիշել յաղագս սորա. բայց է այլ տեղիք և քաղաքք՝ խոհեմութիւն ունելով՝ ուր ոչ զուգահազորդութիւն գոյ ամենեւին թուեցեալ լինել առ քաղաքին։ Ուստի արդ աք իսկ գործով ոչ ծաղրական համարեցի՝ ձեռնարկել զկանայս բռնադատելով առ ծախսն իսկ կերակրոցն և ըմպելեացն, յայտնապէս երևիլ զի քան զայս ոչ գոյ դժուարագոյն զոր ինչ կրիցէ թերևս այսուքիկ սեռ. քանզի սովորեալ է վեհերմամբ և 'ի խաւարի կեալ. իսկ բռնութեամբ առ լոյս ածեալ՝ զամենայն հակակայումն հակակայելով յոյժ յաղթիցէ օրինադրին։ Այս արդ այլ ուրուք, իբրու ասացի, թերևս ոչ հանդուրժիցէ ուղիղ բանին ասելով առանց ամենայն աղաղակի իսկ աստանօր արդեւք, եթէ թուիցի ի սակս բանի ոչ անհանդէպ յաղագըս ամենայն քաղաքավարութեանն լինել բանին. կամիմ ասել՝ իբրու բարի է և վայելուչ եթէ իւրաքանչիւրոցն 'ի միասին լսել թուիցի. ապա թէ ոչ, թոյլ տալ։

Կղինիաս. Այլ, ով սիրելի, սքանչելի մեզ զայս ինչ լսել արդ, առանց ամենայն պատճառի հանդերձ քև և մեզ թուի։

Պղատոն. Լսեսցուք արդ. բայց մի սքանչանայք ինչ թէ 'ի վերուստ երբեք թուիցի մեզ ձեռնարկութիւն արարեալ. քանզի պարապմամբ արդ վայելեմք, և ոչ ինչ է որ փութացուցանէ զմեզ ոչ ամենեւին զամենայն ինչ դիտել առ օրէնս։

Կղինիաս. Ուղղապէս ասացեր։

Պղատոն. Դարձեալ այժմիկ առ յառաջագոյն ասացեալսն վերստին գնասցուք։ Քանզի բարեւք և այնչափ իսկ պարտ է ամենայն առն 'ի միասին ըղմտաւ ածել, իբրու մարդկան լինելութիւնս կամ ամենեւին զոչ և մի սկիզբն ընկալեալ, և ոչ ունիցի երբեք իսկ վախճան, այլ էր միշտ և իցէ առանց ամենայն պատճառի. և կամ երկարութեան իսկ սկզբանն՝ յորմէ հետէ լեալ է, անհնար թերեւս ժամանակ որչափ լեալ իցէ։

Կղինիաս. Սակայն զի՞նչ։

Պղատոն. Զիա՞րդ քաղաքաց բաղկացութիւն և ապականութիւն, և պէսպէս ճահաւորութիւնք կարգի իսկ և անդաստութեան ուտելոյ և ըմպելեաց իսկ, և կերակրոց համանգամայն՝ և պէսպէս ցանկութիւնք, առանց պատճառի յամենայն երկրի ոչ թըւիցի մեզ լինել և դարձուածք ժամուց պէսպէսք, որովք կենդանեացն վայել էր փոխաբերիլ ամենեւին բազում փոխմունս։

Կղինիաս. Եւ ո՞րպէս ոչ։

Պղատոն. Զիա՞րդ հաւատամք որթոյ իսկ յայտնել երբեք՝ յառաջագոյն ոչ գոլով. սապէս և ձիթենիք, և զԴեմետրայ իսկ և զաղջկանն ձիր[1], զՏրիփտողեմոս ումն այսպիսեացս լինել պաշտօնեայ։ Իսկ արդ յորում ժամանակի այսոքիկ ոչ էին՝ ո՞չ արդեւք կարծիցեմք զկենդանիսն՝ որպէս և այժմ, 'ի յուտելն զմիմեանս դառնալ։

Կղինիաս. Սակայն զի՞նչ։

Պղատոն. Եւ սակայն զոհել մարդկանն զմիմեանս՝ տակաւին և այժմիկ մնացեալ առ բազմաց տեսանեմք, և զներհակն լսեմք առ այլս, յորժամ ոչ արջառի յանդգնէաք[2] ճաշակել. և զոհք ոչ էին աստուածոցն կենդանիք, այլ հունդք՝ և եղով[3] թաթաւեալ պտուղք, և այսպիսի այլ մաքուր պատարագք, և 'ի մսոյ 'ի բաց կալով. իբրու ոչ արդարա-

1 Յոյնն՝ χόρις δώρα.

2 Յոյնն՝ զմիս արջառի ոչ յանդգնէին ճաշակել։

3 Յոյնն՝ մեղերբ։

դոյն գոլովն ուտել զսոսա, և ոչ զաստուածոցն զբագինսն արեամբ անմաքուր առնել. այլ որփիականք ոմանք ասացեալք կենցաղ լինէին մեղրոցն[1], որ յայնժամ անշնչիցն ամենեցուն հպելով և շնչաւորացն ներհակապէս յամենեցունց 'ի բաց կալով:

Կղինիաս. Եւ բարեւք ասացեալքդ' զոր ինչ ասացեր հաւանականք են հաւատալոյ:

Պղատոն. Արդ առ այսոքիկ զինչ արդեւք, ասիցէ ոք թերևս, ձեզ ամենայն ասացաւ այժմիկ:

Կղինիաս. Բարեւք թուեցաւ քեզ, ով սիրելի:

Պղատոն. Եւ այժմիկ եթէ հնար ինչ իցէ' որ ինչ այսոցիկ 'ի կարգին են, ով Կղինիա, փորձեցից ասել:

Կղինիաս. Ասասցես արդ:

Պղատոն. Տեսանեմ զամենայն ինչ մարդկան' յերից պիտոյից և 'ի ցանկութեանց աւարտեալ, 'ի ձեռըն որոց առաքինութիւնն ուղղապէս բերելով սոցա, և ներհականն պատահի' բերելով չարաչար: Եւ այսոքիկ են իսկ, կերակուր և ըմպելի' վաղվաղակի լինելով, որոյ ամենեւին փոյթ ամենայն կենդանի 'ի բնութենէ ունելով տուփումն, լի շամբշութեամբ իսկ է. և անլրութեամբ[2] ասացողին այլ զինչ պարտ գոլ գործել' բաց 'ի հեշտութեանց և 'ի ցանկութեանցն այնոցիկ որ այսոքիւք ամենայնիւ լցուցանեն յամենայն տրտմութենէ, միշտ պարտ գոլ զանձինս ազատել: Իսկ երրորդ մեզ և մեծագոյն պէտս և արագագոյն' տուփումն է որ յետս իսկ դրժէ. սակայն ջերմագոյնք զմարդիկ առ 'ի մոլութիւն գործէ ամենեւին, այն որ առ ազգի սերմանն' անբարհաւաճութեամբ յոլովիւ բորբոքեալ. զորս արդեւք պարտ էր ցաւս' դարձուցանելով 'ի վեհագոյնն քան զասացեալդ, հեշտագոյն է երիւք իսկ մեծագունիւք փորձ առնել յաղթել' երկիւղի օրինօք, և ճշմարիտ բանիւ վարելով իսկ երաժշտիւք, և նահատակական աստուածովքն շիջանելով սոցա զաճումն իսկ և զմա-

1 Յոյնն' մերոցն:

2 Յոյնն' անլառողութեամբ:

կահոտումն[1]։ Եկեսցուք արդ առ հարմանականն, ուսուցանելով զոսսա թէ որպէս պարտ է, և զինչ յեղանակաւ առնել զմանկունսն. և եթէ ոչ՝ արդեւք հաւանեցուսցուք սպառնալով ամանք օրինօք։

Կղինիաս. Ո՞րպէս։

Պղատոն. Հարսն պարտ է տրամախոհել և փեսային՝ իբրու զի գեղեցկագոյնս և արիագոյնս ըստ զօրութեան մանկունս երևեցուցանելոց իցեն քաղաքին։ Եւ ամենայն մարդիկ հաղորդք ամենայն գործոյ՝ յորժամ նայիցին առ սոսա իսկ և առ գործոյն սոցունց՝ հանճարաւ զամենայն ինչ գեղեցիկ և բարի 'ի բաց գործիցեն[2]։ Իսկ ոչ նայելով և առ անհանճարն ոչ ունելով՝ զներհականսն։ Նայեսցի արդ և փեսայն առ հարսինն, և մանկաբերութեանն մտօքըն, ըստ այսորիկ իսկ և հարսն, զժամանակն զայն զանազանապէս՝ զոր թերևս մանկունս սոցա ոչ եւս իցեն լեալ։ Եւ վերակացուք սոցա իցեն զորս ընտրեմք՝ կանայք յոլովք կամ նուազք՝ իշխանօքն որչափ թուիցի կարգել իսկ։ Եւ յորժամ առ ճշմարտութեանն[3] տաճարաւն՝ յիւրաքանչիւրում աւուր ժողով մինչև ցերրորդ մասինն ժամու՝ ուր ժողովեալք իսկ պատմելով միմեանց, թէ ոք զոմն տեսանիցէ առ այլովք հայելով զայր կամ զկին 'ի մանկաբարացն առ կարգեալսն 'ի ձեռն այնոցիկ որ առ ամուսնութիւնսն զոհքն իսկ են և տաճարքն լինելով։ Իսկ մանկաբարութիւն և պահպանութիւն այնոցիկ որ 'ի մանկաբարութեանն իցեն՝ տասնամեայ իցէ, և ոչ ժամանակաւ յովագունիւ յորժամ քաղահոսութիւն իցէ լինելութեանն։ Ապա եթէ անծինք ամանք առ այսմիկ ժամանակիս լինիցին՝ հանդերձ իշխանուհի և ընտանի կանամբքն, բաժանիլ հաղորդաբար, խորհելով ուր պատշաճն իցէ երկաքանչիւրոցն։ Այլ՝

1 Պակասի աստէն 'ի մերում Թարգմանութեան էջ մի բանից զոր ունի յոյն բնագիրն։

2 Եւ բարի իրաց գործ իցեն, ըստ յունին։

3 Յոյնն՝ ειληθείας, Թուի հայ Թարգմանչին ընթերցեալ ἀληθείας, որ է ճշմարտութիւն։

եթէ երկբայութիւնք ինչ լինիցին յաղագս այնո-
ցիկ որ երկաքանչիւրոցն վայելուչ իցեն և պատ-
շաճ, տասն յօրինապահացն ընտրելով, որոց և հրա-
մայիցեն ողջս կարգելով զսոսա, կալ և մնալ։ Բայց
մնեալք 'ի տունս համբակացն կանայքն՝ զոմանս
խրատելով և ոմանց սպառնալով՝ դադարեցուցանեն
զսոսա 'ի մեղացն և յանուսումնութենէն։ Այլ եթէ
ոչ կարասցեն՝ առ օրինապահքն մնեալք ասելով
զայս ինչ խափանել։ Այլ եթէ և նոքա երբեք
ոչ կարասցեն՝ առ հանդէսն բացասելով. վերստին
գրելով իսկ և երդնուլով, զի եթէ ոչ անհնար լիցի՝
զայս ումն և զայս գործիցեն լաւագոյնս։ Բայց վե-
րըստին գրեալն առանց պատուոյ իցէ, ոչ հաճեցեալ
հանդիսումն առ 'ի ներգրողացն սոցունց իսկ՝ ոչ 'ի
հարսանիսն եկիցէ, և ոչ 'ի կատարմունսն մանկան-
ցըն. այլ եթէ իցէ՝ գանիւք որ կամիցի, առանց
տուժի տանջեսցէ զսա։ Նոյն իսկ և յաղագս կա-
նանց իցեն օրէնք. զի կանանց ծախուցն և պա-
տուոցն, և այնոցիկ որ 'ի հարսանիսն և 'ի ծնունդսն
մանկանցն գալուստքն իցեն՝ ոչ հաղորդիցի, եթէ
անզարդացեալ այսպէս վերստին գրիցի և ոչ հաճի-
ցի 'ի հանդէսն։

Իսկ յորժամ մանկունք ծնցին ըստ օրինացն, եթէ
օտար ումն առ այսոքիւք հաղորդաբար գտցի առ կնոջ
օտարի, կամ կին առ առն, եթէ յայնցանէ էին որ
տակաւին 'ի մանկաբարձութեանն իցեն, յայն տուժ-
քըս իցեն նոցա՝ որպէս այնոցիկ որ դեռածինքն իցեն
ասացաւ։ Իսկ յետ այսորիկ ողջախոհ այրն իսկ և
կինն առ այսպիսիքս ամենայն եղիցի ընտրել բարեւք։
Իսկ որ ներհակն է՝ ներհակապէս պատուեսցի, մա-
նաւանդ անարգեսցի. և խոնարհելով առ այսոսիկ
յոլովագունիցն առանց օրինադրութեան լռելեայն
կացցեն. իսկ անզարդանալովն՝ օրինադրելով այս-
պէս գործիցի ըստ եդեալ օրինացն։

Ամենայն կենցաղոյ իսկ սկիզբն առաջին ամն է
իւրաքանչիւրոց, զոր գրել պարտ է առ տաճարս հայ-
րենիս՝ կենաց սկիզբն երիտասարդի և աղջկան։ Եւ
գրիցի առ որմ սպիտակացեալ ամենայն ազգի՝ զթիւն

զիշխանացն Թուելով, զայնոցիկ՝ որ առ ամեն իցեն. և ազգին միշտ զկենդանիսն իսկ գրել մերձ, և զայնոքիկ որ գնան 'ի կենցաղոյս՝ ջնջել։ Եւ սահման գոլ հարսանեաց աղջկանն իսկ 'ի վեցատասան ամէն մինչև ցքսանն, զերկարագոյն ժամանակն որոշելով. իսկ երիտասարդի յեռասնից մինչև ցհնգից և եռասնից. և առ իշխանութիւնս՝ կնոջն իսկ քառասուն և առն երեսուն ամ։ Իսկ առ պատերազմ՝ առն քսան մինչև ցվաթսուն ամացն, և կնոջ զմր և Թուիցի պէտս պարտ գոլ լինել առ պատերազմականսն՝ զոր հնարն է և վայելուչն իւրաքանչիւրոցն կարգել մինչև ցիսուն ամացն։

# ՊՂԱՏՈՆԻ

# ՕՐԷՆՔ ԵՒ ՕՐԻՆԱԴՐՈՒԹԻՒՆ

## ԵՒԹՆԵՐՈՐԴ



### ՑԱՂԱԳՍ ԱՆԳԻՐ ՍՈՎՈՐՈՒԹԵԱՆՑ

Պղատոն. Եւ լինելով մանկանցն արուաց և իգաց՝ զսնունդն իսկ և զխրատն որ յետ այնոցիկ է ասել ուղղագոյն երկիցի մեզ, որոյ կոչն իսկ անձառ ամենևին և անհնար. և ասացեալն՝ ուսմամբ իր և խրատով մանաւանդ քան եթէ օրինօք իրաւագոյն: Թերևս թուիցի մեզ, զի յատուկ առ տունս՝ բազում և փոքրր և ոչ յայտնի ամենեցուն լինելով, դիւրաւ 'ի ձեռն իւրաքանչիւրոյ տրտմութեանն իսկ և հեշտութեանն և ցանկութեանն, քան եթէ օրինադրին խորհուրդքն լինելով, պէսպէս և ոչ նման միմեանց 'ի բաց գործիցէ զբարքն քաղաքացեացն: Քանզի 'ի ձեռն մանկութեան և բազմութեան տուրժանք եդեալ՝ առնել օրէնս անվայելուչ համանգամայն և տարաձև, ապականէ և զգրով եդեալ օրէնսն, 'ի փոքրագոյնսն և 'ի հոտսն սովորելով մարդկան օրինաց լինելով: Վասն որոյ տարակուսանս է իսկ առ այսոքիկ օրինադրել, և լռել անհնար: Բայց զոր ինչ ասեմս յայտնի լինել պարտ է՝ իբրու զյարացոյց արտաքս բերել առ լոյս, զի այժմիկ ասելովս թուի ինչ խաւարային:

Կղինիաս. Ճշմարտապէս ասես:

Պղատոն. Ո՞չ ապաքէն զի մարմնոյ իսկ և հոգւոյ պարտ է զուղիղ սննդենէն բացայայտութիւն

առնել կարող գոլ, որպէս գեղեցիկ և արիագոյն 'ի բաց գործել. և այս իսկ ուղղապէս ասացաւ ուրեք։

Կղինիաս. Զի՞նչ։

Պղատոն. Մարմինք գեղեցկագոյնք՝ զպարզագոյնն իսկ իբրու ուղղագոյն պարտ է նորա գոլով վաղվաղակի 'ի բուսանել մանկանցն։

Կղինիաս. Յոյժ իրաւապէս։

Պղատոն. Եւ զի՞նչ. զայսոսիկ ո՞չ զմտաւ ածենք, որպէս առաջին շառաւեղն ամենայն կենդանեաց՝ յոյժ մեծագոյն և յոլովագոյն բուսանի. իբրու հեռ բազմաց առաջրեաց՝ ոչ լինելով իսկ մարդկային երկայնութիւնքն կրկնապատիկ, 'ի հնգից ամացն մինչև ցայլ քսան ամսն աճելով։

Կղինիաս. Ճշմարտապէս։

Պղատոն. Զիարդ՞ բազում աճումն յորժամ 'ի վերայ հասիցէ՝ առանց բազում և չարաչար աշխատանաց, ո՞չ գիտեմք զի բիւրինս չարս առ մարմինսն կատարէ։

Կղինիաս. Եւ յոյժ իրաւացի։

Պղատոն. Ո՞չ ապաքէն յայնժամ կարօտանայ յոյժ յոլովագոյն աշխատանաց՝ յորժամ յոլովագոյն սնունդն լինիցի առ մարմինս։

Կղինիաս. Զիարդ, ով սիրելի. թերևս դեռ եղելոյքն և նորագունիցն՝ աշխատանս յոլովագոյնս կարգեմք։

Պղատոն. Ոչ. այլ տակաւին և յառաջագոյն ներքոյ մարցն իւրեանց սնուցելոց։

Կղինիաս. Ո՞րպէս ասես, ով եղբայր սիրելի. թերևս այնոցիկ ասես որոց ոչ իցեն ծնեալ։

Պղատոն. Այո. և սքանչելի ոչ ինչ է, ոչ գիտել ձեզ զկրթութիւնս այսպիսեացն, զոր և կամիցի ձեզ՝ թերևս անտեղի գոլով յայտնել։

Կղինիաս. Յոյժ իրաւացի։

Պղատոն. Եւ է իսկ այժմ առ մեզ մանուանդ զայսպիսիս իմանալ, վասն զխաղալիսն մեծապէս անտանօր խաղալ՝ քան եթէ զոր պարտն է։ Զի սնուցանեն իսկ առ մեզ, ոչ միայն մանկունք՝ այլ և ծերք զհաւս ոմանս սովորեցուցանելով 'ի մարտս առ միմեանս կրթելով և զգաղանսն։ Այսպէս և բազում

ինչ կարօտանան՝ զաշխատանսն գոլ սոցա զայնոսիկ որ առ միմեանս վայելչագոյնս՝ որովք զսոսա շարժեն կրթելով. զի այսպէս առեալք զսոսա՝ զմատաղագոյնքն իսկ իւրաքանչիւրք առ ձեռս՝ և զմեծագոյնքն ներքոյ առ գիրկսն, գնան շրջելով բազում ապարէզս, վասն քաջունակութեան ոչ իւրեանց մարմնոցն, այլ սնուցելոցն առ 'ի սոցանէ: Եւ զայս ինչ այսչափ յայտնեն կամողին՝ ուսուցանել զի ամենայն մարմինքն 'ի ձեռն սասանմանցն իսկ և շարժութեանցն շարժելով՝ անաշխատ ամենեցուն լինիցին. և որչափ 'ի ձեռն իւրեանց 'ի ցամաքի և կամ 'ի ծովսն և կամ 'ի վերայ երիվարացն ելանելովն և 'ի ձեռն այլոց որպէս և իցէ բերելով մարմնոց շարժին. և վասն այսոցիկ ուտելի և ըմպելի յաղթելով կերակրոցն՝ զողջութիւն և զգեղեցկութիւն և զայլ զօրութիւն մեզ հնար է աւանդել:

Արդ թէ ասասցուք ունելով այսոցիկ այսպէս, զո՞ր ինչ յետ այսոցիկ մեզ պարտ է առնել: Կամի՞ք զի համանգամայն ծաղէր ասասցուք ինչ՝ դնելով օրէնս 'ի շաւիղն իսկ շրջել[1]. և որ լինելոցն է՝ ստեղծանել իբրու մոմ մինչև կակղագոյն իցէ, և մինչ ցերկու ամացն խանձարրիւ. և զտիտանքն[2] հարկեմք տանջելով օրինօք զմանկունսն առ ագարակս և կամ առ տաճարի և կամ ընտանիք միշտ բերել, մինչև բաւական լինիցին և հնարաւորք լինիցին կալ կանկուն. և յայնժամ խորշելով տակաւին 'ի նորագունիցն՝ գուցէ բռնութեամբ հաստատելով թիւրիցին ոսկերքն՝ զաշխատանսն բերելով, մինչև ցեռամեայ ամանակն լինելով 'ի բաց կատարեսցի. և զօրութեամբ իսկ զօրեղ գոլ սոցա պարտ է, և ոչ մի միայն սնուցիչ: Առ այսոքիւք՝ իւրաքանչիւրոց եթէ ոչ լինիցի, տուրժս գրեմք այնոցիկ որ ոչ առնեն յոլովագոյն քան զպատճառն. քանզի այժմ ասացեալս լի-

1 Այս է՝ կանանցն յղեաց յաճախել 'ի շրջագայութիւնս, որպէս ունի յոյն բնագիրն:

2 Այսպէս յօրինակին, անշուշտ վրիպական ընթերցմամբ բնագրին καὶ δὲ καὶ τὰς τροφοὺς, որ է՝ դայեակսն:

նիցի Թերևս յոյժ և առատապէս։

Կղինիաս. Որպիսի՞ ինչ։

Պղատոն. Ծաղէր Թերևս յոյժ պարտապանք մեզ լինել, առ ոչ կամելոյն հաւանել հիգական և աղախնական բարուց սնուցողացն։

Կղինիաս. Այլ 'ի սակս ո՞յր իսկ ասացաք պարտ գոլ ասել այսոցիկ։

Պղատոն. Զտերանցն իսկ և զազատացն առ քաղաքն բնութիւնք լսելով՝ 'ի մտածութիւն յուղիղն հասցուք արդեւք, զի առանց իւրոյ մատակարարութեանն առ քաղաքն առլինելով ուղղակի՝ 'ի սնոտի Թերևս զհաղորդսն կարծիցէ ոք ունել ինչ հաստատութիւն դրութեան օրինացն։ Եւ զայսոքիկ զմտաւ ածել սորա՝ օրինօք այժմիկ ասացելովս վարիցի. և վարելով բարեւք՝ զտունն իւր և զքաղաքն համանգամայն տնօրինելով բարեբաստիցի։

Կղինիաս. Եւ մանաւանդ վայելչապէս ասացեր։

Պղատոն. Այսուհետև ոչ ևս դադարեսցուք յայսպիսի օրինադրութենէս՝ նախ քան եթէ յաղագս հոգւոյն յոյժ նորագոյն մանկանցն զխորհուրդսն բացատրիցեն, ըստ այսմ եղանակի՝ որ ինչ սկսաք զայն որ յաղագս ասացելոցն իցէ վասն մարմնոյն զառասացեալսն կատարել։

Կղինիաս. Յոյժ իսկ ուղղապէս։

Պղատոն. Առցուք իսկ այժմիկ զայս ինչ, իբրու տարր ինչ առ երկաքանչիւրսն մարմնոյ իսկ և հոգւոյ յոյժ նորագունից՝ զսնունդն և զշարժութիւնն լինելով մանաւանդ 'ի ձեռն ամենայն գիշերոյն իսկ և տուընջեանն. իբրու է պատշաճաւոր ամենեցուն իսկ, բայց նուազ այնոցիկ[1] որ նորագոյն իցեն, և բնակել՝ եթէ հնար էր, որպէս միշտ շարժելով, որպէս նաւ 'ի վերայ մկանաց ջուրց. բայց այժմիկ որպէս հաղորդ այսմիկ պարտ է առնել առ սնունդս դեռածին մանկանցն։ Եւ արուեստս գործել պարտ է յայսցանէ, իբրու 'ի հմտութենէ զայս ինչ ըմբռնեսցին, և ծանեան գոլով պիտանացու սնուցիչքն իսկ

1 Յոյնն՝ բայց այնոցիկ մանաւանդ։

մանրադաւնիցն. և այնոքիկ կանայքն, և առ 'ի կորիբանտացն[1] իրս զբժշկութիւնսն գործեն։ Քանզի յորժամ կամիցին ննջեցուցանել զդժուարանինջսն 'ի մանկանցն մարքն, ոչ հանդարտութիւն տացեն մատուցանեն, այլ զներհակն շարժութիւնն առ գիրկսն միշտ սասանելով, և ոչ լռութիւն՝ այլ զերգիչսն[2], արհեստաբար իբրու տողալով առ մանկունսն. որպէս այնոցիկ որ 'ի խոհեմութենէ արտաքս լինիցին մոլութեանցն բժշկութիւն՝ այսպէս շարժութեան պարօքն և երաժշտովք վարելովք։

Կղինիաս. Զինչ իցէ արդ պատճառն այսոցիկ, ով սիրելի, մեզ մանաւանդ։

Պղատոն. Զարհուրեցուցանելի է երբեք զայսոսիկ զերկաքանչիւր կիրքս, և է արհաւիրք 'ի ձեռն յոռին ունակութեան ումեմն հոգւոյ։ Արդ յորժամ արտաքուստ ոք մատուցանէ այսպիսի ախտից սասանմունքն՝ արտաքնոցն յաղթէ շարժութիւնն, մատուցանելով այնմ որ ներքոյ իցէ զարհուրական և մոլական շարժութեանն, և յաղթեալ՝ խաղաղութիւն և հանդարտութիւն ներհոգւոյն երևիլ, 'ի բաց գործելով զայնոցիկ որ առ սրտաւն են չարաչար լինելով իւրաքանչիւրոցն թօթափմանց ամենեւին փափագելի ինչ. զոմանս քնոյ հաղորդիլ գործէ, և զոմանս արթնութեամբ խաղալով և փողելով հանդերձ աստուծօքն՝ որոց գեղեցիկ զոհս մատուցանելով իւրաքանչիւրք պատարագեն գործեայ, փոխանակ մոլական տրամադրութեանցն ունակութիւնս ունել ներխոհեմս։ Եւ զայսոսիկ իբրու 'ի ձեռն սղից այս ասել[3] հաւանական բան ունի զոմն։

Կղինիաս. Եւ յոյժ իրաւացի։

Պղատոն. Ապ՝ եթէ այսպէս կամ այսպիսի զօրութիւն ունին այսոքիկ, զմտաւ ածել պարտ է զայս ինչ

1 Յոյնն՝ καὶ αἱ περι τά τῶν κορυβάντων ἰάματα τέλοσσαι։ Մեր օրինակն ունէր և առ 'ի կոր 'ի բանփացն, զոր ուղղեցաք ըստ յունին։ Բառդ κορυβαντίαν նշանակէ կոկողել, կոկողանալ։

2 Թերեւս՝ զերգիկան. յոյնն՝ μελοδίαν.

3 Այս է՝ համառօտիւ ասելով։

առ այսոցիկ, իբրու ամենայն հոգւի ընդ զարհուրանս 'ի միասին գոլով 'ի տղայութենէ, մանաւանդ թերևս զարհուրեալ սովորեսցի լինել, և զայս ինչ ամենայն ոք թերևս ասիցէ զանգիտութեան կրթութիւնն և ոչ արիութեան. Թերևս ասասցուք 'ի մանկութենէ վաղվաղակի հանդիպումն գոլ զյաղթելն զայնոսիկ՝ որ հասանին 'ի վերայ մեր արհաւիրս և երկիւղս:

Կղինիաս. Ուղղապէս ասես:

Պղատոն. Մի իսկ է և այս ինչ առ մասն հոգւոյ առաքինութիւն զայն որ ամենևին մանկագունիցն կրթութիւնսն են առ շարժութիւնսն, մեծապէս մեզ ասասցուք լինել օգտակար:

Կղինիաս. Ամենևին իսկ արդար:

Պղատոն. Եւ սակայն այն իսկ որ ոչ դժուարին է ներհոգւոյն՝ և որ դժուարին է, ոչ փոքր մասն քաջանձնութեան և թշուառութեան հոգւոյ զերկաքանչիւրսն լինելով՝ լինիցի:

Կղինիաս. Ո՞րպէս ոչ:

Պղատոն. Իւ արդ յեղանակաւ վաղվաղակի բնաւորի առ մեզ՝ զոր և կամեսցուք, մինչդեռ նորածին իցէ՝ Ջանիւք ասել պարտ է թէ որպէս ոք և որչափ այսոցիկ պատահի:

Կղինիաս. Զիա՞րդ ոչ լինիցի:

Պղատոն· Ասեմ արդ զառ 'ի մեզ աւանդութիւնս. իբրու զի փափկութիւն՝ դժուարինս և ծայրագոյնս առ 'ի բարկութիւն, և յոյժ մանրագունիւքն շարժելիք զմանկանցն բարքն 'ի բաց գործիցէ. և ներհակն այսոցիկ՝ յոյժ իսկ և վայրենի ծառայութիւն նուաստք թշուառութեամբք և առանց ազատութեան և մարդատեացք առնելով, ճահաւոր զուգաբնակք 'ի բաց կատարէ:

Կղինիաս. Եւ ո՞րպէս արդ պարտ է զայնոքիկ որ 'ի ձայնս ոչ խորհին, և այլ խրատու ճաշակել հնարաւորս ևս ոչ են, սնուցանել յամենայն քաղաքի:

Պղատոն. Այսպէս: Բարբառել երբեք հանդերձ գոչմամբ վաղվաղակի, ամենայն սովորեալ է ծնեալըն. և ոչ նուազագոյն մարդկային սեռս, և զդամ-

բանականն[1] իսկ առ աղաղական մանաւանդ քան զայլսն 'ի միասին ունիցի։

Կղինիաս. Եւ յոյժ իրաւացի։

Պղատոն. Ո՞չ ապաքէն սնուցիչքն դիտելով, թէ որոյ ցանկայ, և նոյն իրօքն, այսօքիւք արուեստըս ընկալեալ մատուցանեն սմա. քանզի որոյ մատուցանելովն լռէ՝ բարւոք թուիցի սոցա մատուցանելն. և որով թերևս լայ և աղաղակէ՝ ոչ բարւոք։ Եւ արդ մանկանցն առ որս փափաքի, և զորս ատէ՝ յայտարարութիւնքն և նշանք լացն և աղաղակն՝ ուստի և ասեն թէ ոչ բարեբախտի. և է իսկ ժամանակս այսմիկ երից ամաց, ոչ նուազագոյն մասն, ոչ փոքր գոլով կենցաղոյս՝ կելով վատթարութեամբ և կամ ոչ։

Կղինիաս. Ուղղապէս ասես։

Պղատոն. Եւ արդ չարն ոչ իսկ հաւանական թուիցի արդեւք ձեզ, այլ թշուառական գոլ և ողբօք, իբրու բազում անգամ մանաւանդ լցեալք՝ որ բարոյն իսկ բնաւ ոչ է պարտ։

Կղինիաս. Ինձ իսկ թուի։

Պղատոն. Չիմ՞րդ եթէ ոք զերիս ամս ջանս դիցէ ամենայն հնարաւ հնարաւորելով, իբրու զի սնուցեալն առ 'ի մէնջ սակաւագունիւք վարիցի ցաւօք և երկիւղիւ և տրտմութեամբ յամենայնի զգօրութեան, ո՞չ արդեւք կարծիցեմք զուարթ մանաւանդ և հաւանական գործել վաղվաղակի զհոգին սնուցելոյն։

Կղինիաս. Յայտ է արդ. և մանաւանդ արդեւք, ով սիրելի, եթէ ոք բազում հեշտութիւնք սմա պատրաստէ։

Պղատոն. Այսորիկ ոչ ևս արդեւք ես, Կլինիա, հետևեցայց ձեզ թերևս ով սքանչելի. զի է արդ մեզ այդպիսի գործդ ապականութիւն մեծ ամենեցուն, զ'ի սկզբանն լինի իւրաքանչիւր սննդեան։ Բայց տեսցուք զոր ինչ ասեմքս։

Կղինիաս. Ասա զինչ ասեսդ։

1 Այս է՝ զլալն կամ զարտասուսն, որպէս ասի 'ի յունին։

Պղատոն. Ոչ յաղագս փոքու մտաց բանիս գոլ։ Տես իսկ և դու, և 'ի միասին իսկ ընտրեա զմեզ, ով Մեգիլէ. քանզի իմն բան ոչ զհեշտութեանց ասէ գոլ պարտ հետևիլ ուղիղ կենցաղին, և ոչ ամենևին 'ի տրտմութեանցն փախչիլ. այլ զնոյն փափագելի կարծել զմիջինն՝ զոր այժմ իսկ առասացի իբրու հաւանական անուանել։ Զոր տրամադրութեան և աստուծոյ ըստ ոմանց դիւթութեան համբաւք բարեւք դիտելով ամենեքեան առասեմք, այս իսկ ունակութեանս հետևիլ ասեմք մեզ պարտ գոլ և այնմ որ հանդերձեալ է աստուածային գոլ։ Ոչ արդ յանդուգն առ հեշտութիւնս ամենևին լինելով, և ոչ արտաքս տրտմութեանցն գոլ, և ոչ զայլ ոք ծեր կամ համբակ թողուլ կրել զնոյնս իսկ որ մեք զարու կամ զէգ. և ամենեցուն նուազագոյն ըստ զօրութեան, զայժմիկ նորածինն. քանզի տիրապէս բնաւորի ամենեցուն յայնժամ ամենայն բարք վասն սովորութեան։ Տակաւին ես իսկ եթէ ոչ հանդերձեալ իցեմ թըւիլ ձեզ առնել խաղալիս՝ ասացից արդեւք պարտ գոլ և այնոցիկ որ յղիքն են ամենեցուն կանանց մանաւանդ դիւրանալ առ ամն այնմիկ. իբրու զի ոչ հեշտութեամբք ինչ բազմօք համանգամայն, և առանց ժուժկալութեան վարեսցի յղացեալն, և ոչ տրտմութիւնք իսկ այլ զհաշտն և զհանդարտն հեզաբար պատուելով իսկ կեցցէ առ այնմիկ ժամանակաւն։

Կղինիաս. Ոչ ինչ է պարտ քեզ, ով սիրելի, զՄեգիլոս վերստին հարցանել, թէ ով 'ի մէնջ ուղղագոյն ասաց. քանզի ես իսկ նոյնս ներեմ քեզ՝ տրտմութեամբ իսկ և հեշտութեամբ, առանց ժուժկալութեան կենցաղոյն՝ փախչել պարտ գոլ ամենեցուն, և առ միջոց ինչ միշտ հասանել[1]։

Պղատոն. Բարեւք իսկ այժմիկ ասացեր՝ միանգամայն և լուար։

Մեգիլոս. Յաւէտ արդ ուղղապէս, ով Կլինիա. բայց զայս ինչ այժմիկ առ այսոցիկ երիս գոլով զմտաւ ածցուք։

1 Ի յոյն բնագրին՝ Մեգիլոսի ընծայի այս բան։

Կղինիաս. Զորպիսի՞ ինչ։

Պղատոն. Զի այսոքիկ են ամենայն որչափ պատմեմք այժմիկ կոչեցեալսն առ 'ի բազմաց անգիր օրէնըս. և զորս հայրենի օրէնս մականուանեն, ոչ են այլ ինչ քան եթէ այսպիսիքս 'ի միասին ամենայն. և տակաւին իսկ այժմիկ բանս առ 'ի մէնջ հեղեալ՝ իբրու ոչ օրէնս պարտ է առասել զսոսա, և ոչ անճառս թողուլ։ Ասացաւ բարեւք զի շաղկապք սոքա ամենայն քաղաքավարութեան հանդերձ ամենեցուն գոլով այնոցիկ որ գրով իսկ եդան, և այնոցիկ որ կային. և այնոցիկ՝ որ դնելոց են անարհեստաբար իբրու հայրենի և ամենեւին նախնի օրինականս, որք բարեւք իսկ եդեալք և սովորեալք՝ ամենայն փըրկութեամբ պարածածկելով ունին զայնոսիկ որ յայնժամ գրեցան օրէնքն։ Ապ'եթէ արտաքս բարոյն ելանէ ցնորելով՝ իբրու հիւսանց առ շինութիւնս հաստատութեանցն 'ի միջոյն՝ ստորահոսելով 'ի միասին անկանիլ համանգամայն ամենեցուն, տացէ և կալ իսկ այլում այլոց 'ի ներքոյ այսոցիկ իսկ, և այնոցիկ որ բարեւք յետոյ իցեն շինեալ՝ առաջնոցն 'ի վայր հոսելով զայսոսիկ։ Արդ տրամախոհելով մեր, ով Կլինիա, քեզ պարտ է զքաղաքն նոր գոլով ամենեւին շաղկապել, ոչ մեծ ինչ և ոչ փոքր ըստ զօրութեան թողլով, որչափ օրէնք և կամ սովորութիւնք և կամ ճահաւորութիւնք կոչիցէ ոք. զի այսոքիւք ամենայնիւ շաղկապի քաղաք, և առանց միմեանց՝ երկաքանչիւրքն սոցունց տեւական ոչ իցեն. վասն սքանչանալոյ ոչ է պարտ, եթէ մեզ բազումք համանգամայն և փոքունք թուելով՝ գոլ օրինականք, և կամ սովորութիւնք 'ի վերայ հոսելով՝ երկարագոյնս առնէ զօրէնս։

Կղինիաս. Ուղղապէս դու ասես, և մեք այնպէս խորհիմք։

Պղատոն. Արդ առ այնմիկ որ եռամեայ լինիցի հասակն երիտասարդի և աղջկան, զայսոքիկ եթէ ստուգապէս ոք կատարիցէ և ոչ վարկպարազի վարիցի ասելովս, ոչ փոքր առ 'ի յօգուտս արդեւք լինիցի նորագունիցն սննդեամբ։ Եւ այնմիկ որ եռամեայ իցէ և քառամեայ՝ և եւս վեցամեայ, սովո-

րութեամբ անձանցն մանկանց պարտ իցէ թերեւս զփափկութիւնս արդեւք լուծանել՝ տանջելով ոչ անպատուաբար. այլ որպէս վասն ծառայիցն ասացաք, ոչ անարգանօք տանջելով, ոչ անպատուաբար գոլ պարտ զտանջեալսն 'ի բարկութիւն շարժել, և ոչ առանց տանջանաց թողլով 'ի փափկութիւն։ Զնոյնս իսկ զայսոքիկ պարտ է առնել և առ ազատացն։ Եւ խաղալիս իսկ են այնպիսեացն ոմանք ինքնաբնակք՝ զորս յորժամ 'ի միասին եկեսցեն ինքեանք՝ գրեթէ վերստին գտանեն։ Եւ խորհել պարտ է առ գեւղսն և տաճարսն ամենայն այսպիսի մանկունս, գոլով յեռամենիցն՝ մինչև ցվեց ամսն հաղորդաբար ներ գեւղից են իւրաքանչիւրք 'ի միասին. և զմնուցիչսն տակաւին՝ այսպիսեացս զարդու իսկ և զեխութեան փոյթ առնել։ Բայց մնուցողաց զոսա և ամենայն երամին՝ յերկոտասան կանանցն մի 'ի վերայ իւրաքանչիւրոյ կարգիլ զարդարելով ըստ ամի ամի նախասացելոցն, զորս և կարգեն արդեւք օրինապահքն։ Բայց զայսոքիկ ընտրիցեն իսկ հարսանեացըն փութոյն տիրուհիքն՝ յիւրաքանչիւր ազգէ մի՝ հասակակից իւրեանց. և սա կարգեալ իշխեսցէ՝ գալով 'ի տաճարն յիւրաքանչիւրում աւուր՝ և տանջելով միշտ զանիրաւեալն զծառայ իսկ և զաղախին և զօտար և զօտարուհի ինքն՝ 'ի ձեռն ոմանց քաղաքին ծառայիցն։ Իսկ զքաղաքացի՝ երկբայեալ տանջանացն, առ քաղաքօրէնքն 'ի հանդէս ածելով. և առանց երկբայութեան գոլով, և զքաղաքացին սա տանջիցէ։ Իսկ յետ վեցամենի պատանւոյ և աղջկան՝ ընտրեսցին սեռք երկաքանչիւրոցն, և պատանեակք առ պատանեկացն, և կուսանք իսկ այսպէս առ միմեանս զդեգերմունսն արասցեն. և առ ուսմունսն իսկ դառնալ պարտ է իւրաքանչիւրոց, և արուացըն իսկ՝ հեծելութեան վարդապետք և աղեղանցն և նիզակաց և ոլորմանց պարսետից։ Ապ'եթէ ներիցեն երբեք՝ մինչև յուսմունսն՝ և էգքն. և արդ իսկ մանաւանդ առ պէտսն զինիցին այժմիկ պատահեալս առ այսոքիկ ամենեքեան՝ փոքր ինչ պակաս տգէտքն։

Կղինիաս. Յոյժ իսկ։

Պղատոն. Որպէս արդեւք աջակողմքս և ահեակ-քըս՝ զանազանելով մեր բնութեամբ առ գէտսն իւրաքանչիւր գործոցն ձեռաց մերոց։ Քանզի առ ոտս և առ իւրաքանչիւրսն անդամոցն ոչ ինչ տար-բերելով՝ ի վաստակսն երևի․ բայց ըստ ձեռացն անհըմ-տութեամբ սնուցողացն և մարցն՝ իբրու կաղք եղաք իւրաքանչիւրք․ քանզի բնութեանն երկաքանչիւրոց անդամոցն գրեթէ հաւասար տալով զզօրութիւնն, մեք 'ի ձեռն սովորութեան՝ զանազանեալք արարաք զսոսա, ոչ վարելով ուղղապէս։ Քանզի որչափ առ գործս՝ որ մեծ ոչ ինչ զանազանի՝ զքնարն իսկ ձա-խոմն վարելով, և զհարիչն աջոմն ունելով, և որչափ այսպիսիք և այսոքիւք յարայուցիւ վարելով. և առ այլս՝ որ ոչ է պարտ այսպէս վարիլ՝ գրեթէ անհըմ-տութիւն է. և եցոյց զայսոսիկ սկիւթացւոցն օրէնք՝ ոչ ահեկոմն իսկ զաղեղն բերելով, և աջոմն զնետն միայն, այլ նմանապէս երկաքանչիւրօքն առ երկա-քանչիւրսն վարելով. և ամենևին բազում այլ այս-պիսի յարացոյցք առ կառավարութիւնս։ Իսկ են և այլս որովք ուսանել հնար է օտարոտի բնութեանն՝ պատրաստք ոյք զահեակքն քան զաջսն տկարագոյնք կազմեն. բայց զայսոքիկ որ ասացաք առ եղջեւրա-հարքն, և այսպիսի գործարանքն՝ ոչ ինչ մեծ։ Բայց երկաթ 'ի պատերազմունսն՝ յորժամ կարօտանայ, վա-րիլն մեծ ինչ զանազանի, և աղեղամբն նիզակօք, և իւրաքանչիւրօք այսպիսեօք. և յոյժ իսկ մեծագոյն յորժամ զինուք պարտ իցէ առ զէնս վարիլ. և զա-նազանի ամենևին յոյժ ուսեալն յանմանէ որ ոչ է ուսեալ, և կրթեալն՝ որ կրթեալ ոչ իցէ։ Քանզի որպէս այն որ կատարելապէս կրթեալ իցէ պան-կրատիոնաւն և կամ մրցանօքն կամ մերկամարտու-թեամբքն, ոչ իսկ ահեկիւքն կարող իցէ մարտնչել՝ կաղալով իսկ ձգեալ ցնորմամբ՝ յորժամ փոխաբե-րելով զսա ոք 'ի միւս կողմն հարկիցէ աշխատել։ Զնոյնս այս ինչ կարծեմ և առ այլ ամենայն զէնսն գոլ պատշաճական՝ ունելով ուղղապէս։ Քանզի այնմ պարտ է որ երկակի ստացեալ իցէ այսուիկ վարելով թե-

րեւս 'ի վերայ հասանել այլոց, և ոչ ինչ խափան 'ի սոցանէ՝ և առանց մակացութեան թողուլ ըստ զօրութեան գոլ: Բայց զԳերիոնէի եթէ ոք զբնութիւնն ունելով, և կամ զԲրիարէի բնաւորեալ իցէ՝ հարիւր ձեռօքն հարիւր նետք ստուցանել հնարաւոր գոլով, այսոքիւք արդեւք ամենեցուն փոյթ պարտ է առ 'ի յիշխանուհեաց և յիշխանացն լինել, կանանցըն իսկ՝ խաղուցն և սննդեանն վերադիտօղք լինելով, և իշխանացն առ ուսմունքն. զի այսպէս աւարտեալք ոտիւք և ձեռօք, ամենեքեան իսկ պատանիք և աղջկունք լինելով այսպիսիք, զի մի երբեք չար սովորութեամբն վնասիցին բնութիւնքն: Ըստ որում հնար է՝ և ուսմամբքն իսկ երկակի իբրու ասելի է վարիլ, թերևս պատահիցի այնոցիկ որ մարմինն է վարժմանն, և այնոքիկ որ 'ի սակս քաջահոգութեան երաժշտականին 'ի վարժանոցսն՝ երկուս. ոմանս 'ի կաքաւս՝ և միւս 'ի մարտ: Եւ կաքաւանացն, այլ ոմն երաժշտից ձայնի նմանութեան՝ զմեծավայելուչսն իսկ պահելով համանգամայն և զազատն, և այլ իսկ բարեհոգութեամբ, 'ի սակս թեթևութեան և գեղեցկութեան մարմնոյն իւրոյ անդամոյն և մասանցն, զպատշաճն թիւրելոյ և տարածմանց 'ի բաց հասուցանելով. իւրաքանչիւրոցն բարեյօդ շարժութեան դալարելով համանգամայն, և 'ի միասին հետևելով առ ամենայն կաքաւմունսն բաւականապէս: Եւ արդ զայնոքիկ որ ըստ մարտին են՝ զոմանս Անտէոս կամ Կեռկէոն՝ ներարհեստիւքն իւրեանց բաղկացուցին ջանիւք 'ի սակս դժպհութեան և կամ մրրցանաց, Եւպիոս կամ Ամիւկոս ոչ ինչ պիտանացու առ պատերազմի հաղորդութիւն գոլով՝ որք ոչ են արժանի բանիւ զարդարիլ: Իսկ այնոքիկ որ ուղեղ մարտիւ պարանոցացն և ձեռացն և կողիցն մանուածով հանդերձ ջանիւ իսկ և հակառակութեամբ աշխատելով՝ բարեձև զօրութեամբ իսկ և 'ի սակս ողջութեան, զայսոքիկ առ ամենայն ինչ գոլով պիտանացու՝ ոչ է պարտ հրաժարել. այլ հրամայել պարտ է աշակերտացն իսկ և այնոցիկ որ ուսուցիչք իցեն՝ յորժամ աստ ուր իցեմք օրինացս ոմանց զամենայն այսպիսիս

հաւանաբար պարգևել, և ոմանց ընկալուլ շնորհիւք։

Եւ ոչ որչափ առ պարզն են նմանութիւնք՝ զպատշաճելով նմանելն պարտ է հրաժարել առ այս իսկ տեղոյս՝ զկուրեացուցն ներազէն խաղալիսն, և առ Լակեդոմոն՝ դիոսկուրեանցն. իսկ և առ մեզ երբեք եթէ աղջիկ ումն տիկին՝ ուրախացեալ պարին խաղալեաւքն, թափուր ձեռօք ոչ կարծեայ պարտ գոլ խաղալոյ, այլ սպառազինութեամբ ամենևին զարդարեալ այսպէս զկաքաւսն կատարել. զոր արդ առանց ամենայն պատճառի նմանել վայելուչ է թերևս երիտասարդաց համանգամայն և աղջկանց զաստուածուհոյն զշնորհսն պատուելով առ պէտս պատերազմաց և 'ի սակս տօնից։ Եւ մանկանց վաղվաղակի և որչափ ժամանակ 'ի պատերազմ ևս ոչ իցեն հասեալ՝ ամենայն աստուածոցն մուտք իսկ և առաքմունս առնելով՝ հանդերձ զինուք և երիվարօք միշտ զարդարիլ. թերևս պարտ իցէ երագագոյնք իսկ և հեղգագոյնք կաքաւանօք և գնացիւք զմաղթութիւնսն առնելով առ աստուածքն իսկ և առ աստուածոցն մանկունքն։ Եւ նահատակութիւնքն եւ նախանահատակութիւնք ոմանց՝ ոչ այլոց քան եթէ 'ի սակս այնոցիկ պարտ է նախանահատակել. քանզի այսոքիկ և 'ի խաղաղութեան և առ պատերազմի պիտանացու են 'ի քաղաքավարութիւն իսկ և 'ի յատուկ տունս։ Իսկ այլ աշխատանքն և խաղքն և ճեպմունքն առ մարմնոսրն 'ոչ ազատ ելով, Մեգիլլէ. իսկ և Կլինիայ զոր ասաց 'ի մրցական յառաջագոյն բանիւքն թէ պարտ է պատմել՝ գրեթէ այժմ իսկ պատմեցի. և է սա ամենևին կատարեալ։ Ապ'եթէ զոմանս այսոցիկ դուք ունիք լաւագոյնս եդեալք՝ առ հասարակաց ասացէք։

Կղինիաս. Ոչ է դիւրին, ո՛վ սիրելի, թողլով զայսոքիկ, ա՛յլ ունել լաւագոյն սոցա՝ յաղագս վարժականի համանգամայն ասել։

Պղատոն. Այն իսկ է այժմ որ այսոցիկ 'ի կարգին է առ երաժշտից և Ապողոնի պատարագացն. յայնժամ իբրու զամենայն ասացեալքս կարծեօք մնացուցանել՝ զոր յաղագս կրթականին են իրս։ Բայց այժմ յայտ է թէ վաղվաղակի է, և այն ինչ զոր նախ

ամենեցուն ասել պարտ է, աւասցուք այսուհետեւ ըստ կարգի զայսոքիկ։

Կղինիաս. Ամենեւին իսկ արդար, ասել պարտ է։

Պղատոն. Լուարուք ինձ. նախ լուեալք իսկ յառաջագունիւքն, սակայն յոյժ յանտեղիցն իսկ և յանսովորէն խորշիլ պարտ է ասելով իսկ և լսելով. և արդ այժմ ասեմ իսկ ես բան՝ ոչ առանց երկիւղի, սակայն ուրուք վստահացեալք 'ի բաց ոչ կացից։

Կղինիաս. Զ՞ ոք արդ ասես, ով սիրելի։

Պղատոն. Ասեմ առ ամենայն քաղաքս՝ խաղալեացն սեւ անգէտ գոլ ամենեցուն որ ինչ իսկագոյն է յաղագս դրութեան օրինացն, կամ տեւականք գոլ զեդեալսն և կամ ոչ. քանզի կարգեաց սա և հաղորդեալ այսպէս և ըստ այսոցիկ, և նոյն միշտ նոցունց խաղալ իսկ և հրճուիլ նոքօք խաղալեօքն թողացուցանէ. և զփութով կացեալ օրինականքն մնալ հանդարտութեամբ. և շարժեալք իսկ, այնոքիկ նորաձեւելով և վարելով այլօք փոխաբերութեամբք և ոչ երբեք զայսոսիկ սիրելիք առասելով համբակացն. ոչ ձեւք իսկ իւրեանց մարմնոցն և ոչ այլօք կազմութեամբ՝ խոստովանելով սոցա միշտ կալ բարեձեւն իսկ և տարաձեւն. այլ զայնոքիկ որ նոր ինչ միշտ նորաձեւելով և 'ի ներքս մուծանելով 'ի սովորելոցն, այլ ըստ ձեւոց և ըստ վարուց ամենայն որչափ այսպիսիք՝ զայն իսկ պատուել զանազանապէս, քաղաքի վնաս քան զայն մեծագոյն ոչ գոլ ասեմք թերեւս ուղղապէս ասելով. քանզի զանխլի 'ի համբակագունիցն զսովորութիւնքն փոխել խառնել, զնախնին իսկ առ այսոքիւք անպատիւ, զնորըն պատուական. և այսմիկ դարձեալ իսկ ասեմ բանիս և աւանդութեանս, ոչ գոլ տուրժ մեծագոյն ամենայն քաղաքացն. բայց լուարուք, թէ որչափ ասեմք զսա չար գոլ։

Կղինիաս. Թերեւս զպարսաւելն նախնի իրացն ասես առ քաղաքս։

Պղատոն. Յոյժ իրաւացի։

Կղինիաս. Ոչ յուրինք այսուհետեւ զմեզ թերեւս ողջք՝ ըստ բանիդ այդմիկ ունիցիս այսոցիկ, այլ որ-

պէս հնար իցէ՝ բարեհեշտագոյնք։

Պղատոն. Եւ վայել է իսկ։

Կղինիաս. Ասա արդ միայն։

Պղատոն. Եկայք մեծապէս զսա լուիցուք առ 'ի մէնջ իւքեանց և առ միմեանս այսպէս ասասցուք։ Քանզի փոխաբերութիւն ամենեցուն՝ բաց 'ի չարեաց, յոյժ սղալական գտանի կամք՝ առ ժամանակ ամենայն և հողմք և շունչք և վարք մարմնոց և եղանակք հոգւոց. և իբրու ասելի է տաղս՝ ոչ առ ոմանս իսկ, և միւսս ոչ. սակայն ոչ ինչ ասացի այժմիկ չարեաց, իբրու թէ հայեսցի ոք առ մարմինք՝ որպէս ամենայն կերակրօք և ամենայն ըմպելեօք և աշխատանօք սովորականք լինելով, և յառաջագոյն խռովելով 'ի ձեռն սոցա. ապա իսկ առ 'ի սոցանէ ժամանակաւն մարմինք բուսուցեալք ընտանիք սոցունց՝ սիրել իսկ և սովորականք և ծանօթք լինելով՝ ամենայն այսոցիկ վարուցն հեշտութեամբ և ողջութեամբ արիապէս շրջիցի։ Եւ եթէ երբեք կարիս հասցէ՝ փոխաբերիլ դարձեալ զոր և իցէ բարեւք ընտրեալ վարուցն, 'ի սկզբանն իսկ խառնակեալ 'ի ձեռն հիւանդութեանց, հազիւ երբեք հասցէ զսովորութիւն կերակրոյն և սնընդեամբն դարձեալ 'ի բաց ընկալեալ. զնոյնս իսկ պարտ է կարծել զայս ինչ լինել և առ մարդկան տրամախոհութիւնքն։ Իսկ համանգամայն է առ հոգւոյն բնութիւնքն. զի որովք սնանին օրինօք, և ըստ ումեմն աստուածային բարեբաստութեան շարժմունք լինիցին երկար և բազում ժամանակօք՝ իբրու ոչ ինչ ունել յիշելութիւն և լուր երբեք, պյլաբար գոլ սոցա քան եթէ իւրու այժմիկ են պաշտելով պատուէ և երկնչի ամենայն հոգի շարժել ինչ 'ի հաստատելոցն։ Արդ հնար է օրինադրին զմտաւ ածել թէ ուստի երբեք կամ զինչ յեղանակաւ այս իցէ քաղաքին. բայց զինչ արդ եթէ գտանիցեմ՝ զխաղալիմն ամենեքեան տրամախոհին շարժեալ զնորագունիցն, որպէս յառաջագոյն ասէաք, խաղալիս գոլ ճշմարտապէս։ Եւ ոչ զմեծագոյնն 'ի սոցանէ փոյթ և զվնաս պատահիլ, իբրու զի ոչ 'ի բաց դարձուցանեն. այլ 'ի միասին հետևեն անսալով, և ոչ խոր-

հին զայս ինչ՝ թէ այսոցիկ հարկ է մանկանց որ առ խաղսն համբականան, այլ այլս յառաջագունիցն լինել մանկանց, յաղագս բարուց գովասանութեան և պարսաւի. և լինելով այլ՝ այլ կենցաղ խնդրեն. և խնդրելով՝ այլոց խորհրդոց և օրինաց ցանկալ. և յետ այսորիկ իբրու հասանելոց գոլով այժմիկ ասացեալ մեծագոյն չարիս քաղաքացն, ոչ ոք 'ի սոցանէ երկնչի. արդ այլքն իսկ նուազագոյն փոխաբերելով չարիս գործեցին թերևս որչափ առ ձևսն ախտանայ այսպիսիս: Իսկ որչափ յաղագս բազմագունիցն փոխադրի, կարծեմ եթէ ամենեցուն մեծագոյն և յոլովագոյն խորշման իցեն թերևս կարօտացեալ:

Կղինիաս. Եւ ո՞րպէս ոչ:

Պղատոն. Զիա՞րդ. յառաջագո՞յն բանիցն հաւատամք՝ այնոցիկ որ ասէաք զոր ինչ առ յօդաւորութիւնքն են, և ամենայն երաժշտականին յեղանակաց նմանութիւնք են՝ և լաւագունի և վատթարագունից մարդկան, կամ որպէս և իցէ:

Կղինիաս. Ոչ. այսպէս քանզի որպէս առ 'ի մէնջ աւանդութիւնս ունելով իցէ թերևս:

Պղատոն. Ո՞չ ապաքէն ասեմք զամենայն հնար հնարիլ. իբրու զի մանկունքն մեր ոչ ցանկան 'ի յայլ նմանութիւնս մերձենալ ըստ կաքաւանաց, և կամ ըստ երգոց, և ոչ զսոսա հաւանեցուցանէ մատուցանելով պէսպէս հեշտութիւնք:

Կղինիաս. Ուղղապէս ասես:

Պղատոն. Ունի՞ ոք արդ 'ի մէնջ առ այսպիսիքս լաւագոյն ինչ արհեստք՝ քան եթէ եգիպտացիքն:

Կղինիաս. Քան զո՞ր իսկ ասես:

Պղատոն. Սրբազանելոյն զամենայն կաքաւսն և զամենայն երգս կարգելով: Նախ իսկ զտօնս 'ի միասին համարելով 'ի տարւոյն, զոր ոմանք առ որո՛ց ժամանակաց և ո՛յց ոմանց իւրաքանչիւրոց յաստուածոցն, և մանկանցն սոցունց և դիցն լինել պարտ է, և յետ այսորիկ առ աստուածոցն զոհսն իւրաքանչիւրոց զորպիսի՛ երգ երգել պարտ է և պարօք, որպիսեօ՛ք պատուել զայն իսկ, որ յայնժամ իցէ պատարագն. կարգել իսկ նախ զոմանք՝ զոր ինչ թերևս

կարգիցի մասամբք և այլոց ամենեցուն աստուածո֊
ցըն զոհելով՝ հասարակաբար ամենայն քաղաքացեացն
նուիրել, և սրբազանել զիւրաքանչիւրսն յերգոցն իւ֊
րաքանչիւրոցն յաստուածոց և յայլոցն։ Բայց յայս֊
ցանէ այլ օրհնութիւնս կամ պարս մատուցանէ քա֊
հանայիցն և քահանայուհեացն, հանդերձ օրինա֊
պահօքն խափանելով արդարապէս խափանել ըստ օրի֊
նացն։ Իսկ այն որ խափանելոյ իցէ՝ եթէ ոչ կամաւ
'ի բաց խափանիցի՝ դատ ամբարշտութեան 'ի ձեռն
ամենայն կենցաղոյն առատուել կամողին։

Կղինիաս. Ուղղապէս ասես։

Պղատոն. Առ այսուիկ արդ հասեալք այժմիկ
բանիւս կրեսցուք՝ զոր ինչ վայել է մեզ 'ի նոցունց։

Կղինիաս. Վասն որո՞յ ասես։

Պղատոն. Ամենայն համբակ՝ ոչ եթէ ծեր, տե֊
սեալ և կամ լուեալ զոր ինչ և իցէ յայնոցիկ որ անտե֊
ղիք են՝ և ոչ ուրուք սովորականք, ոչ ուրուք երբեք
զտարակուսանացն յաղագս սոցունց ներիցէ ընթա֊
նալով այսպէս վաղվաղակի. և կացեալ թերևս ի֊
բրու 'ի կիցս ճանապարհի հասանելով, և ոչ յոյժ գի֊
տելով ճանապարհ, թէ միայն և եթէ հանդերձ այ֊
լովք հանդիպիցի գնալով, վերստին հարցցէ արդեւք
զինքն իսկ և զայլս յաղագս տարակուսանացն. և ոչ
յառաջագոյն դիմիցէ նախ քան զհաստանելն զխու֊
զումն գնայիցն՝ թէ ուր երբեք բերիցէ։ Եւ արդ
զհասեալս մեզ այսպէս առնել պարտ է. քանզի այժ֊
միկ անտեղի բանի հասանելով յաղագս օրինացն՝
հարկ է զամենայն խնդրուած առնել. և ոչ դիւրա֊
բար այսպէս առ այսչափս այսպիսիք գոլով ասել հա֊
կառակելով՝ վաղվաղակի հաւաստի ասել։

Կղինիաս. Ճշմարտապէս ասես։

Պղատոն. Ո՞չ ապաքէն այսուիկ ժամանակ տա֊
ցուք և հաստատեսցուք զսա յայնժամ՝ յորժամ քըն֊
նեսցուք բաւականապէս։ Այլ զի ոչ զհետևեալ կար֊
գաւորութիւնն օրինօքն՝ այսոքիւք որ այժմիկ հա֊
սեալ են մեզ 'ի կատարած հասուցանել խափանես֊
ցուք 'ի սնոտի, հասցուք առ կատարածին սոցունց։
Թերևս, եթէ աստուած կամեսցի, այսոքիկ որ սկը֊

սեալ իցեմք, կատարած բոլորովին ընկալեալք բաւականապէս, թերեւս ազդիցէ և զոր ինչ այժմիկ տարակուսիմք։

Կղինիաս. Արիագոյն, ով սիրելի, ասես, և արասցուք այսպէս իբրու ասացեր։

Պղատոն. Ասեմք զի ատելիս այս ինչ օրէնք երգոցն մեզ լինելով, և որպէս նախնիքն յայնժամ առ երգքն փանդռեանց այսպէս իբրու թուի անուանեցին. իբրու զի թերեւս ոչ ինքեանք արդեւք հեռացեալք իցեն այժմիկ ասացելոցս, բայց իբրու ընդ քուն և կամ անուրջ յարթնութեան երազանելով դիւթեաց սա։ Բայց արդ աւանդութիւն յաղագս սորա իցէ այս ինչ, քան զատենական երգքն 'ի տաճարքն, և զհամբակացն 'ի միասին ամենայն ոք մանաւանդ՝ կամ այլ զոր ինչ և իցէ յօրինացն պարքն ոչ բարբառիցի և ոչ ինչ կաքաւանօք շարժիցէ, և այնպիսին առանց տուժի 'ի բաց մնասցէ։ Իսկ զայն որ ոչ հաւանին, որպէս այժմիկ ասացաւ՝ օրինապահք և քահանայուհիք և քահանայք տանջեսցեն։ Բայց կացցեն մեզ բանիւս այժմիկ այսոքիկ։

Կղինիաս. Կայցեն։

Պղատոն. Ի՞ւ արդ յեղանակաւ օրինադրելով, ոչ ամենեւին ծիծաղելի լինիցի։ Թերեւս տեսցուք արդ զայսպիսի ինչ առ այսոքիկ զգուշութեամբ, իբրու զկնիք առ ինքեանց յառաջագոյն ստեղծնուլ բանիւս։ Եւ ասեմ՝ մի՛ իսկ յայսցանէ որ կնիք ասացաք զոլ այսպիսի ինչ՝ զո՛հի լինելով և պատարագաց ըստ օրինաց կիզելով, եկեսցէ ոք ասեմք յատուկ. և յանդիման կացեալ բագնից իսկ և տաճարաց՝ ուստր և կամ եղբայր հայհոյիցէ ամենայն լեզուագարութեամբ արդեւք, ո՞չ թերեւս ասասցուք՝ զամենայն տրտմութիւնս և զչար դիւթութիւն հօր և այլոց թերեւս ընտանեաց բարբառելով ներգործիցէ։

Կղինիաս. Սակայն զի՞նչ։

Պղատոն. Այժմիկ 'ի տեղիքս որ առ մեզ են, այսինքն է առ քաղաքօքս լինելով, իբրու տաղ ասել գրեթէ ամենեցուն՝ բաց 'ի սակաւուց։ Քանզի ատե-

նավ[1] զոհ ինչ՝ յորժամ զոհիցէ ոք 'ի սկզբանն. յետ այսորիկ ոչ մի պար՝ այլ բազմութիւն պարուց հասանի, և կալով ոչ հեռագոյն 'ի բագնիցն. այլ է յորժամ առ նոցունց իսկ զամենայն հայհոյութիւն հեղուն ընդդէմ տաճարացն բանիւք և երգօք, և խանդաղատական յօդուորութեամբ 'ի միասին տաբածանելով զլսողացն հոգիս. և այն իսկ որ արտօսր հեղու մանաւանդ զոհարանին՝ վաղվաղակի տացէ քաղաքին սա իսկ զյաղթութիւնսն՝ բերիցէ զայս իսկ զօրէնս, ո՞չ արդեւք 'ի բաց դիցուք: Եւ եթէ երբեք թերևս պարտ իցէ այսպիսի խանդաղատանացս լինել, քաղաքացեացն լուռք՝ յորժամ աւուրք ո՛չ մաքուրք իսկ՝ այլ բացասացեալք իցեն, յայնժամ հասանել արդեւք պարտ իցէ պարուց ոմանց մանաւանդ յարտաքուստ վարձեալ երգողաց. որպէս այնոքիկ ոյ առ վաղճանեալսն վարձելով բարբարոսական և ողբաձայն ումեմն երաժշտի՝ վաղճանելոց առաջի գնասցուք, այսպիսի՞ ինչ երբեք վայելչական թերևս իցէ և առ այսպիսի երգոցս լինել: Եւ արդ զգեստք իսկ երբեք դամբանականն երգոցն ոչ պսակք վայելեն, թերևս և ոչ ոսկեհուռն զարդք. այլ ամենայն ներհակն, զոր ինչ վաղվաղակի յաղագս սոցունց ասել 'ի բաց կացից: Բայց զայսչափ՝ զմեզ զինքեանքըդ դարձեալ վերստին հարցանեմք դրօշիցն երգօք, եթէ նախ այս ինչ մեզ հաճոյ գոլով կացցէ:

Կղինիաս. Որպիսի՞ ինչ:

Պղատոն. Բարեբանութիւն. և արդ երգոյն սեռն՝ բարեբանական մեզ ամենեւին իցէ՝ առանց ամենայն պատճառի, և կամ ոչ ինչ: Վերստին հարցանեմ, այլ դիցո՞ւք զայս այսպէս:

Կղինիաս. Ամենայն պատճառաւ դիցես, քանզի յաղթէ ամենայն իրաւամբք այսպիսի օրէնքս:

Պղատոն. Եւ զի՞նչ արդ յետ բարեբանութեանն երկրորդ թերևս իցէ օրէնք երաժշտականի. ո՞չ արդեւք իղձք գոլ աստուածոցն՝ որոց զոհեմք իւրաքանչիւր ժամու:

1 Այս է՝ 'ի դիմաց տանենի կամ քաղաքական իշխանութեան:

Կղինիաս. Եւ ո՞րպէս ոչ։

Պղատոն. Երրորդ թուի ինձ օրէնք, զի գիտել պարտ է քերթողացն, իբրու իղձք՝ առ 'ի յաստուածոցն հայցուածք են. պարտ է արդ՝ մտօքն առ այսոքիկ յոյժ նայիլ, գուցէ զանխլեցին՝ զչար իբրու զբարի հայցելով. քանզի ծիծաղելի ախտս այս թուի ինձ արդեւք հանդիպել՝ ըղձից այսպիսեաց լինելով։

Կղինիաս. Սակայն զի՞նչ։

Պղատոն. Ո՞չ ապաքէն մեք յառաջագոյն փոքր ինչ բանիւս հաւանեցաք, իբրու ոչ արծաթեղինի պարտ է փարթամութեամբ և ոչ ոսկեղինի 'ի քաղաքի ստանալով բնակիլ։

Կղինիաս. Եւ յոյժ իրաւացի։

Պղատոն. Ուրուք արդ իբրև ոչ ոսկեղինի 'ի քաղաքի ստանալով, ո՞չ արդեւք այսուիկ քերթողացն սեռ ոչ ամենայնի իցէ բաւական ճանաչել յոյժ զբարիքն և զոչ արարեալ։ Արդեւք քերթող և կամ երգօք զայս ինչ սղալեալ իղձք ոչ ուղիղք՝ մեզ քաղաքացեացս յաղագս մեծագունից ըղձալ զներհականսն արասցէ, և մանաւանդ զսորա որպէս ասէաք, ո՞չ բազում սխալանս վերստին գտանեմք մեծագոյնք։ Դիցուք արդ և զսա՝ այնոցիկ որ առ երաժշտիւն են յօրինացն և 'ի գաղափարաց մի։

Կղինիաս. Զո՞ ոք, հաւաստի ասա մեզ։

Պղատոն. Քերթողն զի ոչ այլ ինչ՝ բաց 'ի քաղաքին օրինականացն և յիրաւանցն և կամ 'ի բարութեանցն առասասցէ, և զքերթեալսն՝ ոչ դոլ պարտ 'ի յռամկացն ոչ և միոյ ցուցանել նախ, զսոցա այնոցիկ՝ որ առ այսոքիւք 'ի բաց ցուցեալք են մեզ. զորս ընտրեալ եմք օրինադիրք առ երաժշտականքն, և այն որ խրատուն փոյթ առնէ։ Զի՞նչ է արդ զոր բազում անգամ հարցանեմ զսա. կացցէ՞ մեզ օրէնք և գաղափար և երրորդկնել այս ինչ, թէ ո՞րպէս թուի։

Կղինիաս. Կացցէ. սակայն զի՞նչ։

Պղատոն. Իսկ յետ այսոցիկ օրհնութիւնք աստուածոցն և ներբողեանք՝ հաղորդելով ըղձիւք երգեսցեն թերևս ուղղապէս. և յետ աստուածոցն՝ սապէս և դիքն իսկ, և դիւցազինքն հանդերձ ներ-

բողենիւք իղձք լինիցին, թերեւս սոցունց ամենեցուն վայելելով։

Կղինիաս. Ո՞րպէս ոչ։

Պղատոն. Եւ յետ այսոցիկ արդեւք օրէնք առանց մախանաց վաղվաղակի լինիցին, թերեւս այսպէս 'ի քաղաքացեացն՝ որչափ կատարած ընկալցին կենցաղոյս ըստ մարմնոց կամ ըստ հոգւոյն գործք 'ի բաց գործելով բարի և աշխատանօք, և օրինացն բարեւք լեալք հաւանողականք, ներբողենից սոցա հանդիպել իցէ թերեւս վայելչական։

Կղինիաս. Ո՞րպէս ոչ։

Պղատոն. Իսկ զայնոսիկ որ տակաւին կենդանի են, ներբողենիւք և օրհնութեամբք պատուել, հաստատուն ոչ է նախ քան զամենայն կենցաղս ուրուք ընթանալ, և կատարած բարեւք ընկալուլ։ Եւ այսոքիկ ամենայն իցէ մեզ հասարակաց արանց իսկ և կանանց՝ բարեաց և երեւելեաց լինելով։

Եւ երգոցն իսկ և կաքաւանացն այսպէս հաստատել պարտ է։ Բազում են նախնեաց առ երաժշտականաւ նախնի և գեղեցիկք քերթուածք, և առ մարմնոյն իսկ կաքաւանս. սապէս որոց ոչ և մի գոյ մախանս ընտրել առ հաստատեալ քաղաքավարութիւնսն՝ որ վայելուչն են և պատշաճաւորն։ Եւ ընտրողք սոցունց՝ կամեցեալ զընտրութիւնն առնել, ոչ նուազոյնք գոլ յիսուն ամաց. և զոր ինչ բաւական գոլ թուիցի թերեւս 'ի նախնի քերթուածոցն. և որ ինչ աննուազ իցեն և կամ 'ի դէպ՝ զոմանս ամենեւին 'ի բաց դնել, և զոմանս վերստին հարցանելով յօդել քերդողական համանգամայն. և երաժշտական արք ընկալեալք՝ առ իւրեանցն վարելով սոցունց զօրութեամբն քերթուածոյն. և զհեշտութիւնքն իսկ և զցանկութիւնքն ոչ յորդորելով, բաց 'ի սակաւուց ոմանց, և պատմելով զօրինադրին կամսն յաւէտապէս խաղալիս իսկ և երգէ, զամենայն պարս յարմարել ըստ մտացն նոցունց։ Եւ ամենայն անկարգ՝ կարգ ընկալեալ, առ երաժշտիւն դեգերումն, և ոչ ինչ փոխանակ դնելով քաղցրագոյն երաժշտին 'ի լաւագունիցն յօժումբք, և հեշտն իսկ հասարակաց ամե-

նեցուն։ Քանզի յորում 'ի մանկութենէ օք մինչև ցհաստատուն և ներխոհեմ հասակին՝ կենցաղավարիլ ողջախոհ իսկ կարգաւորեալ երաժշտիւն լսելով ներհականին ստէ և անազատ զսա առասէ։ Իսկ մնուցեալն առ հաստարակաց և քաղցրագունիւն՝ ցուրտ և թախանձեցուցիչ զայն իսկ որ յայսմիկ ներհականն է ասէ գոլ։ Որպէս ասացաւ այժմիկ՝ հեշտութեանն կամ թախանձութեանն երկաքանչիւրոյ ոչ ինչ է յաճախ, այլ յոլովապէս ոմն վեհագոյնք և ոմն վատթարագոյնք զմնուցեալսն առ ինքեան յիւրաքանչիւր ժամու առտուիցէ։

Տակաւին իսկ իգաց վայելչական երգք և արուաց որոշել երբեք պարտ իցէ, գաղափարաւ ումեմն սահմանելով, և յօդաւորութեամբ և յեղանակօք յարմարել հարկ է։ Քանզի չարաչար է և յամենայն յօդաւորութեամբ հեռանալ յերգոց. և յամենայն յարմարութեամբ 'ի յարմարանացն ոչ ինչ պատշաճաւոր՝ իւրաքանչիւրոց սոցունց երգօքն բացատրելով, հարկաւոր է արդ և զսոցունց ձևսն օրինադրել. բայց երկաքանչիւրոց իսկ զերկաքանչիւրսն հարկաւ ըմբռնելով բացատրել. և իգացն նորին բնութեանն երկաքանչիւրոյ տարբերելով այսուիկ՝ պարտ է և հաւաստի պատմել։ Արդ զմեծվայելուչն, և զայն որ առ արիութիւնն զօրաւորագոյն է արուատեսակ գոլ՝ պարտ է ասել. և զայն իսկ որ առ զարդարումն և ողջախոհն՝ մանաւանդ խոնարհի իգաց սեռ գոլով աւանդելի է օրէնօք և բանիւք և կարգիւ այսուիկ։

Բայց 'ի սոցունց ինքեանց վարդապետութիւն և աւանդութիւն ասացի յետ այսորիկ, թէ որով յեղանակաւ պարտ է, և ոյց ոմանց, և երբ գործել զիւրաքանչիւր 'ի սոցանէ։ Որպէս նաւակառոյց ոմն՝ զնաւ կառուցանելոյն սկիզբն արկանելով՝ զեղանակսն նախագծէ և զձևսն նաւուցն, նոյնպէս արդ և ինձ ես երևիմ գործել, անձամբ իմով զկենցաղացն ջանալով ձևս յարմարել ըստ յեղանակաց այնոցիկ որ հոգւոցն են, այսպէս և սոցա զհիմունսն արկանել որպէս և իցէ հնարաւ՝ և որովք յեղանակօք 'ի միասին գոլով՝ զկենցաղս արիապէս և 'ի ձեռն նաւիս

այսմիկ զկենացս կրեսցուք, զայս ինչ դիտել ուղղապէս։ Եւ արդ այսուհետեւ մարդկան իրողութիւնս մեծի իսկ փութոյ ոչ արժանի՝ սակայն հարկաւոր է փութալ, եւ այս ոչ բարեբաստ։ Բայց քանզի աստանօր եմք՝ եթէ երբեք 'ի ձեռն պատշաճագունի ուրուք զսա գործիցուք, թերեւս մեզ չափաւոր իսկ իցէ։ Եւ ասացից արդ զի՞նչ. երբեք թերեւս եթէ ոք յիս զայս ինչ կասկածիցէ, ուղղապէս կասկածէ։

Կղինիաս. Եւ յոյժ իրաւացի։

Պղատոն. Ասեմ արդ. առ նոյն իսկ որ փութոյ արժանի է փութալ, եւ զայն որ ոչ է փութալի՝ ոչ. գոլ բնութեամբ զաստուած՝ ամենայն երանելի փութոյ արժանի. իսկ զմարդ, որպէս յառաջագոյն ասացաք, աստուծոյ խաղալիք ինչ գոլ հնարեալ, եւ ճշմարտապէս զայս ինչ նորա խորհելով վեհագոյն, այսուիկ արդ յեղանակաւ պարտ է 'ի միասին հետեւելով եւ խաղալով՝ զոր ինչ գեղեցկագոյն խաղալիսն են՝ ամենայն առն եւ կնոջ կենցաղավարել այսպէս, զներհակն քան եթէ այժմիկ տրամախոհելով։

Կղինիաս. Ո՞րպէս։

Պղատոն. Այժմիկ՝ զփոյթս որպէս պարտ է 'ի սակս խաղալեացն առնել. քանզի այն որ առ պատերազմին փութալի գոլ վարկանին, 'ի սակս խաղաղութեան գոլ վարկանել բարեւք. եւ էր առ պատերազմաւն թերեւս ոչ խաղ բնաւորեալ, եւ ոչ խրատ իսկ երբեք մեզ արժանի բանի ոչ էր՝ եւ ոչ գոլոց էր։ Իսկ արդ զոր ասեմք փութալի մեզ գոլ, պարտ է ըստ խաղաղութեան զկենցաղն իւրաքանչիւրոյ յոլովագոյն իսկ եւ արիագոյն կատարել։ Զի՞նչ արդ է ուղղութիւն.— խաղալով կենցաղավարել. եւ զի՞նչ խաղալիք. զոհելով եւ երգելով եւ կաքաւելով, իբրու զի զաստուածսն հաշտ պատրաստել սմա հնար գոլ՝ եւ զթշնամիսն վանել, եւ յաղթել սոցա մարտնչելով. եւ որպիսի՛ երգելով ոք եւ կաքաւելով զերկաքանչիւրքս զայսոքիկ գործիցէ ո՛ն՝ յօրինականացն ասացաւ, եւ որպէս ճանապարհք հատեալ եղեն, ընդ որս հետեւել պարտ է ակն ունելով, եւ քերթո-

զԻն բարեւք ասել զայն եԹէ «Տելամաքոս, և դու իսկ քոյով խոհեմուԹեամբդ իմասցիս. բայց և դև ոմն յաղդիցէ՝ ոչ քո առանց աստուածոցն լեալ իսկ և սնեալ[1]»: Զայս արդ և մերոց մանկոցն պարտ է տրամախոհելով՝ զասացեալսն իսկ ոչ ուղղապէս վարելով կարծեալ ասել. և զմիւսն առ 'ի դիցն իսկ և յաստուածոցն սոցունց յաղդիլ, յաղագս զոհից իսկ և պարուց. որոց և Մրբ. զիւրաքանչիւրսն իւրաքանչիւրոց խաղալով իսկ և հաշտեցուցանելով ըստ յեղանակի բնուԹեանն կենցաղավարիցին, սքանչելիս գոլով յոյժ, բայց սակաւ ինչ 'ի ճշմարտուԹենէ հաղորդելով:

Կղինիաս. Ամենեւին զմարդկան սեռ, ով սիրելի, առնես յոռին[2]:

Պղատոն. Մի սքանչանար, Մեգիլէ, այլ ներեա ինձ. քանզի առ աստուած հայելով և կրելով ասացի զոր ինչ առասացի այժմիկ: Եղիցի արդ սեռս մեր՝ ոչ յոռին, եԹէ սիրելի է քեզ. և փուԹոյ ուրեմն արժանի կարգին է սոցունց:

Շինութիւնք իսկ ասացան վարժանոցին համանգամայն և կրԹմանց, կցորդաբար եռակի 'ի մէջ քաղաքի և արտաքոյ: Երիվարաց իսկ՝ եռակի առ քաղաքաւ կրԹարանք. իսկ և տեղիս անդորրս 'ի սակս աղեղնաւորուԹեան, և այլոց՝ որ 'ի հեռաստանէ զնետս ոստուցանելն զարդարեալք: Իսկ տեղիքն վասն ուսման՝ միանգամայն և խոկման համբակաց. ապ'եԹէ ոչ Թերևս յայնժամ բաւականապէս ասացան, այժմիկ ասասցին բանիւս՝ հանդերձ օրինօքն: Եւ այսոքիւք ամենայնիւ ուսուցիչք իւրաքանչիւրոց հաւանեալք վարձօք բնակելով օտարք, և ուսուցանել իսկ զամենայն՝ որչափ առ պատերազմունքն են ուսմունք. զայնոսիկ որ գային առ սոսա, և որչափ առ երաժշտականն իսկ՝ ոչ զայն իսկ զոր հայրն կամիցի գալով, և զոր ոչն՝ Թողլով զկրԹատոմն. այլ զասա-

1 Երրորդ գրոց Ոդիսականին Հոմերի, տող 26:

2 Ի յոյն բնագրին Մեգիլեայ ընծայի այս բան, վասն որոյ և պատասխանին Պղատոնի առ նա ուղղեալ:

ցեալն ամենայն՝ այր և մանուկ՝ ըստ որում հնար է իբրև քան զքաղաքն յաւէտագոյն՝ և կամ ծնողքն գոլով խրատել պարտ է 'ի հարկէ։ Եւ զայսոքիկ արդ յաղագս իգիցն՝ իմն իսկ օրէն թերևս ասիցէ զամենայն, որչափ և յաղագս արուացն հաւասարապէս և իգիցն ուսանել պարտ գոլ և կրթիլ. և ոչ ինչ երկուցեալ ասացից թերևս զբանս այս՝ ոչ 'ի հեծելականէ, և ոչ 'ի կրթականէ՝ իբրու արանցն թերևս իցէ վայելուչ, և կանանցն ոչ ևս վայել է։ Քանզի լսելով իսկ զհնաւս նախնիս՝ հաւանեալ եմ և այժմիկ, իբրու ասելի է տաղս, գիտեմ զբազումս անթիւս 'ի կանանց են առ Պոնտոս զոր Սաւրօմատուհիք[1] կոչեն, որ ոչ միայն երիվարաց՝ այլ և աղեղանց և այլոց զինուց գոյ հաղորդութիւն, և հաւասար արանց կարգելով հաւասարապէս կրթի։ Բայց խորհուրդ առ այսոքիւք յաղագս սոցունց այսպիսի ինչ ունիմ։ Եւ ասեմ թէ այդոցիկ այսպէս պատահիլ անհնար է ամենեցուն, անհմտագոյն այժմիկ առ մեզ տեղեացս լինել իրաց, ոչ ամենայն զօրութեամբ՝ ամենեցուն 'ի միասին խորհիլ արանց և կանանց։ Զնոյն ինչ գրեթէ բաց 'ի սակաւէ, ամենայն քաղաք կէս փոխանակ կրկնապատկի՝ այսպէս է իսկ և լինիցի յայսպիսի իրիցս և յաշխատանացս. և արդ սքանչելի թերևս սխալանք օրէնադրի՝ այս ինչ նոյնս լինիցի։

Կղինիաս. Եւ նման իսկ է։ Են արդ ամենեւին բազում 'ի մէնջ, ով սիրելի, առ սովորեալ քաղաքքըն յայդցանէ որ այժմ ասացան։ Բայց ասացեալ իսկ՝ թողուլ բարեւք պատմել զբանս, և պատմելով այնպէս զթուեցեալն ասել պարտ գոլ։

Պղատոն. Այս ինչ ինձ, ով Կլինիա, զոր և յառաջագոյն ասացի, իբրու թէ այսոքիկ էր ոչ բաւականապէս գործովք ընտրեալ, զոր ինչ հնար է լինել թերևս էր ինչ ասել հակառակ բանիցս։ Բայց այժմիկ զայլ ինչ երբեք խնդրել պարտ է այնմիկ որ զօրէնսն ոչ ուրուք ընդունիցիմ. բայց մեր հրաման այ-

1 Օրինակս մեր Ռօսամատուհիք· ուղղեցաք ըստ բնագրին։

տղքիւք ոչ 'ի բաց պատահիցի՝ ոչ ամէն իբրու պարտ է խրատու իսկ, և այլոցն իբրու յաւէտապէս հաղորդել իգական սեռին՝ մեզ արուացս սեռիս. քանզի արդ այսպէս պարտ է յաղագս սոցա տրամախոհիլ՝ ոչ կցորդելով կանայքն ընդ արանցն հաղորդաբար, ո՞չ արդեւք հարկ է լինել այլ ինչ կարգ սոցա։

Կղինիաս. Հարկ իսկ է։

Պղատոն. Զի՞նչ արդ յառաջագոյն յայտցանէ՝ որ այժմիկ 'ի բաց ցուցան՝ դիցուք Թերևս հաղորդութեանս այսմիկ, զոր այժմ մեք այսոցիկ կանանցս հրամայեմք. զայն իսկ որ Թրակացիքն կանամբքն վարին, և այլ բազում սեռք՝ մշակել և անտիորդն և արածել զհօտս և պաշտել, ոչ ինչ 'ի ծառայիցն տարբերելով։ Թէ որպէս մեք ամենեքեան իսկ՝ որ շուրջ զտեղովն այնմիկ՝ քանզի այժմ առ 'ի մէնջ այս ինչ է յաղագս սոցունց լինելով, 'ի մի ինչ բնակութիւն հաւաքելով, որպէս ասելի է, զամեն աւանդեցաք կանանց՝ շտեմարանել իսկ, և իշխել ոստայնանկութեան իսկ և սատարութեան. և կամ զայն ինչ որ այսոցիկ միջասահման է՝ ասասցուք, ով Մեգիլէ, զլակոնացին աղջկանց իսկ կրթութեանց՝ հաղորդք գոլով միանգամայն և երաժշտականին, կեալ ըստ այսմիկ պատշաճ գոլ և կանանցն, պարապելով իսկ 'ի ծառայութեան, կրօնաւորական զոմն կենցաղ. և ոչ յուրին և ոչ նուաստագոյն՝ տառապանօք վարիլ, բայց այլոց հաճութեանց և շտեմարանապետութեանց և մանկանց սննդեան 'ի մէջ ինչ հասանել։ Եւ այնոցիկ որ առ պատերազմունսն են՝ ոչ հաղորդելով, իբրու ոչ երբեք մարտնչել յաղագս քաղաքի իսկ և մանկանց, հարկաւոր ինչ պատահումն լինիցի. ոչ արդեւք աղեղանց՝ իբրու ոմանք Ամազոնք՝ ոչ այլոյ երբեք նետաձգութեան արհեստի հնարաւորելով, և ոչ վահան և նիզակ առնուլով նմանել աստուածուհոյն. իբրու աւերելով սոցա հայրենի գաւառին՝ նահատակապէս հասանելով 'ի վերայ՝ երկիւղ իսկ քան եթէ ոչ ինչ մեծագոյն Թշնամեացն ոչ հնարելով առնուլ դասութեամբ ոմամբ երևելով. և իսաւրոմատուհիքն ոչ արդեւք ամենեքին համարձակին

նմանել՝ այնպիսի յեղանակաւ կենցաղավարելով. բայց առ այսոցիկ կանացս՝ արք Թերեւս նոցունց կանայքն երեւեցին։ Զայսոսիկ արդ 'ի ձէնջ որ կամիցի զօրինադիրքն գովել՝ գովեսցէ։ Բայց առ յինէն այլաբար՝ ոչ Թերեւս առասցի. քանզի ընաւ ոչ պատշաճ համարիմ խորհել ինչ օրինադրին, զկզակամն Թողլով խրախանալ և վատնել անկարգաբար վարուք վարելով, և արուին կատարելապէս փոյթ արարեալ գրեթէ բարեբաստ կենցաղն՝ կրկնապատկի փոխան՝ զկէսն Թողլով քաղաքի։

Մեգիլլոս. Զինչ արասցուք, ով Կլինիա. Թողուցո՞ւք զօտարս, զՍպարտէ[1] 'ի վերայ մեր այսպէս հասուցանելով։

Կղինիաս. Այո։ Քանզի համարձակութիւն տալով սորա Թողուլ պարտ է, մինչև պատմեսցուք Թերեւս ամենեւին բաւականապէս զօրէնքն։

Մեգիլլոս. Ուղղապէս ասես։

Պղատոն. Ո՞չ ապաքէն յետ այսոցիկ գրեթէ իմ է մեծաջան ասելն։

Կղինիաս. Եւ ո՞րպէս ոչ։

Պղատոն. Զինչ արդ յեղանակ մարդկան Թերեւս լինիցի կենցաղոյս, որոց հարկաւորքն իսկ իցեն պատրաստեալ չափաւորութեամբ, և արհեստիցն իրս՝ այլոց աւանդեալ, և երկրագործութիւնք՝ ծառայից աւանդեալք, պտղաբերութիւնք այնոցիկ որ յերկրէ՝ բաւական 'ի բաց կատարել մարդկան կեցելոց զարդարեալ կենցաղավարութեամբ, և զուգահաղորդութիւնք իցեն պատրաստեալք որիշ արանցն, և մերձ հպելով այն իսկ որ իւրեանց զընտանեացն, մանկանց իսկ համանգամայն և աղջկանցն և նոցունց մարցն։ Իսկ իշխանաց և իշխանուհեաց իցէ կարգաւորութիւն լուծանել զայսոսիկ իւրաքանչիւրոց զուգահաղորդ զօրութիւն ամենայն՝ որ ըստ օրէ տեսանելով, և տեսեալք լինելով զվարքն զայն որ զուգահաղորդութեանցն է, և յետ այսորիկ հաւանեցուցանելով զիշխանն և զայլսն՝ որոց Թերեւս հան-

1 Ցօրինակի մերում գտա պակաս է. ուղղեցաք ըստ բնագրին։

դիպիցի աստուածոց յայնժամ գիշերին իսկ և տիւն որբազանեալ։ Ըստ այսոց այսպէս 'ի տունս գնալ։ Եւ արդ այնոցիկ որ այսպէս զարդարեալ իցեն, ոչ ինչ իցէ մնացեալ հարկաւոր գործ, և ամենևին պատշաճաւոր. այլ յեղանակաւ չորքոտանեաց՝ իւրաքանչիւրում 'ի սոցանէ պարարելով պարտ է կեալ։ Ո՞չ ապաքէն իսկ զիրաւացին ասեմք և ոչ զքարին. և ո՞չ իբրու զայսպէս կեցեալն՝ Թշուառական լինիցի, առ այն ինչ որ պատշաճն է՝ և պատշաճ իսկ է խափանել, և ծուլութեամբ պարարեալ կենդանւոյն՝ գրեթէ յայլմէ յափշտակիլ կենդանոյ. յայնցանէ՝ որ խոշորացեալ իցեն հանդերձ արիութեամբ իսկ համանգամայն և աշխատանօքն։ Զայսոսիկ արդ 'ի ձեռն բաւական ստուգութեան իբրու այժմ եթէ խնդրիցեմք իսկ՝ Թերևս ոչ երբեք լինիցի, մինչև ցկանայքն իսկ և մանկունքն՝ բնակութիւնք իւրոց և յառկապէս ամենայնի իւրաքանչիւրոց 'ի մէնջ այս լինիցին պատրաստեալ։ Իսկ այնոքիկ որ յետ այնոցիկ երկրորդ այժմ ասացեալք՝ Թէ լինիցին առ 'ի մէնջ, լինիցի արդեւք և յոյժ չափաւոր։ Բայց գործ իսկ այսպէս կեցելոցն ասացուք, ոչ փոքրագոյն և ոչ յուլին իսկ մնացեալ, այլ մեծագոյն ամենեցուն գոլ կարգեալ 'ի ձեռն արդար օրինացն։ Քանզի կենցաղոյն որ յայլոց ամենայն գործոց պարապութիւն պատրաստէ, և ցանկայ Պիւթիայ և Ողոմպիադայ յաղթութեանն, կրկնապատիկ՝ և ևս բազմապատիկ յաճախ անպարապութեամբ լցեալ իցէ, որ առ մարմնոյն՝ առանց ամենայն պատճառի, և հոգւոյն առ 'ի յառաքինութեան փոյթն կենցաղ ասացեալ ուղղագոյն։ Քանզի ոչ ինչ է պարտ վարկպարազի այլոց գործոցն խափանումն լինել այնոցիկ որ մարմնոցն պատշաճին, առ բացատրութիւն աշխատանաց և ծնրնդեան, և ոչ հոգւոյ իսկ՝ ուսմանց և սովորութեանց. բայց ամենայն գիշեր իսկ և տիւ գրեթէ ոչ իցէ բաւական զայսոսիկ գործողի զկատարեալն իսկ և զբաւականն 'ի սոցանէ 'ի բաց ըմբռնել։

Այսպէս արդ այսոցիկ բնաւորելով դասութիւն՝ պարտ է լինել դեգերմանն ամենեցուն ազատաց առ

ամենայն ժամանակն, գրեթէ սկսանելով յառաւօտէն մինչև միւսոյ միշտ շարունակաբար վաղորդայն իսկ և ծագման արևու: Բազում ինչ արդ և հոծք և փոքունք առնելով՝ թերևս օրինադիր տարաձև երեւեսցի առ այնոցիկ որ ըստ տանց են մատակարարութիւն, և առ այլոն իսկ՝ յաղագս որչափ 'ի գիշերի տքնութիւնքն են վայելչական, հանդերձելոցն 'ի սպառ պահել զամենայն քաղաք ստուգապէս. քանզի զբոլորն կատարելով, որ և իցէ գիշեր 'ի քուն լինելով ոք և իցէ 'ի քաղաքացեացն, և ոչ յանդիման գոլ ամենեցուն ծառայիցն զարթնլով իսկ և յառնելով միշտ նախավաղ՝ պատ է այսորիկ ամօթալի համարել ամենեցուն և ոչ ազատ: Արդ եթէ օրէնք և եթէ ճահաւորութիւն զայս ինչ պարտ է կոչել՝: Եւ արդ և տիկնոջ 'ի տան իւր՝ առ 'ի յաղախնոց ամանց զարթնլով, և ոչ յառաջագոյն սմա քան զայլսըն յառնել, պարտ է գարշելի ինչ առնել առ սոցա ծառայի իսկ և աղախնի և մանկան և երբեք իցէ յորժամ բոլոր ամենայն տունն յառնելով: Ի գիշերի պարտ է զամենայն գործել՝ 'ի քաղաքականաց մասունք բազում և 'ի տնօրինականացն. իշխանացն իսկ առ քաղաքաւն, և տիկնայեացն և տերանցն առ տունըս իւրեանց: Քանզի քուն բազում ոչ մարմնոցն իսկ և ոչ հոգւոցն, և ոչ գործոցն և ոչ առ այսոցիկ ամենայն՝ պատշաճի ըստ բնութեան. քանզի ննջեալ՝ ոչ ոք ոչ ուրուք արժանի՝ ոչ ինչ մանաւանդ այն որ ոչ է կենդանի: Այլ առն իսկ որ կեցոյն մեզ և խորհելոյն յաւէտագոյն իցէ և տնօրինիչ՝ հսկեաց իբրու բազում ժամանակի, պահելով միայն որ ինչ ողջութեանն իւրոյ 'ի պէտս իսկ պիտանացու՝ և ոչ յոյժ բարի հասեալ 'ի սովորութիւն: Բայց իշխանք հըսկելով 'ի գիշերի առ քաղաքքն՝ չարեացն իսկ իցեն ահաւորք թշնամեացն. և թշնամեացն միանգամայն և քաղաքացեացն և սքանչելիք իսկ, և պատուականք արդարոցն և ողջախոհիցն օգտակարք. սոցունց իսկ և 'ի միասին ամենայն քաղաքին: Քանզի գիշեր այս-

1 Բնագիրն յաւելու, Դր. ճ. ֆոյլ:

պիսի ինչ յոլով առ ամենեցուն ասացեալքս արիութիւն ինչ առտուիցէ՝ անձանց իւրաքանչիւրոց որ 'ի քաղաքին իցեն. և տուընջեանն իսկ և առաւօտուն 'ի վերայ հասանելով՝ մանկանցն իսկ առ վարժապետսն դառնալ պարտ է. բայց առանց հովուի՝ ոչ խաշանց և ոչ այլոց իրի պարտ է կենցաղավարիլ. և ոչ մանկանց իսկ՝ առանց ոմանց դաստիարակաց, և ոչ ծառայից առանց տերանց: Բայց մանուկն քան զամենայն գազանս դժուարագոյն է ընձեռելով. քանզի որչափ յաւէտ ունիցի աղբեւր խոհեմութեանս ոչ ևս համեմատեալ՝ դաւաճանող և զկծեցուցիչ և ամբարտաւանագոյն գազան լինիցի: Վասն որոյ պարտ է զսա բազում դանդանավարօք կապել յառաջագոյն. իսկ յորժամ 'ի սնուցչացն և 'ի մարցն 'ի բաց կացցեն՝ դաստիարակօք 'ի սակս տղայութեան և խրատու: Եւ տակաւին սոցունց ուսուցչացս զինչ և իցէ յուսմանց իբրու զազատ և իբրու զծառայ, ամենայն ոք որ հանդիպին յազատ արանց տանջեսցէ զմանուկն իսկ, և զդաստիարակն և զուսուցիչն, եթէ սխալեսցի ոք ինչ 'ի սոցանէ: Ապա եթէ հանդիպելով ոք ոչ տանջեսցէ՝ իրաւամբք նախատանաց պարտապան լինիցի, նախ իսկ մեծագունի. և յօրինադրացն իսկ, որ առ յիշել մանկանցն ընտրեալ իցէ, վերադիտեսցէ զայնոսիկ զհանդիպեալն՝ որոց ասեմք տանջելով զսա՝ յորժամ տանջել պարտ իցէ, և կամ տանջիցէ ոչ ըստ յեղանակի, բայց հայելով առ մեզ արագագոյն, և զանազանապէս փոյթ առնելով մանկանցն սնընդեան, ուղղեսցէ զբնութիւնսն սոցա ըստ օրինաց միշտ 'ի բարին դարձուցանելով:

Եւ զինքն իսկ զնոյնն որպէս թերևս մեզ նոյն իսկ օրէնքս խրատիցեն բաւականապէս: Իսկ արդ զի այժմիկ ասաց ոչ ևս հաւաստի և բաւական՝ այլ զոմանս, և զնոյնս ոչ: Բայց պարտ է սմա ըստ զօրութեան ոչ ինչ մնացուցանել. այլ զամենայն բան 'ի բաց մեկնել, զի սա իսկ այլոց աղդեցուցիչ համանգամայն և սնուցիչ լինիցի: Իսկ արդ յաղագս պարուց և կաքաւանաց և երգոց ասացաւ թէ զինչ գաղափար ունելով զոսա ընտրել պարտ է, և վերստին ուղղել

և սրբազանել: Բայց զայն որ ներգիր գոլով՝ իսկ առանց չափուց, և զնմանս հանդերձ չափօք, զոր օք և կամ զօրպիսիս ընձեռել պարտ է քեզ յեղանակաւ, ով արիագոյն, որ մանկանցդ փոյթ առնես, զայնոսիկ որ առ 'ի քէն մնանին՝ ոչ ասացաք, և մանաւանդ զայն իսկ՝ որ առ պատերազմաւն զոր ինչ պարտ է ուսանել սոցա և խոկալ ունիս թանիւս. բայց յաղագս գրոց նախկի և երկրորդի, յաղագս քնարի, և համարուց այնոցիկ որ ասացաք պարտ գոլ, և որչափ առ պատերազմ և տնօրէնութիւն, և առ քաղաքի մատակարարութիւն, պարտ է իւրաքանչիւրիցըն ընկալուլ. և առ նոյնսն զայսոսիկ եթէ օք պիտանացու են շրջաբերութիւնքն յաղագս աստուածային աստեղացն՝ և արեգական և լուսնի որչափ մատակարարել հարկաւոր է առ այսօքիւք ամենայն քաղաքի: Եւ արդ յաղագս որոց ասեմք աւուրց դասութեան, առ ամսոց շրջաբերութիւնք և ամսոցն առ իւրաքանչիւրոյ յամացն, զի ժամանակք և զոհք և տօնք՝ զպատշաճն իւրոց իւրաքանչիւրք ընկալեալ բնութեամբ բերելով, կենդանի զքաղաքն և արթուն առտուելով աստուածոցն իսկ զպատիւսն բացատրեսցեն, և զմարդիկ առ այսոցիկ մանաւանդ ներխոհեմս գործիցեն: Այսօքիկ այսպէս քեզ ամենայն բաւականապէս, ով սիրելի, առ 'ի յօրինադրէն բաժանեցան. նայեա արդ մտօք առ այսոսիկ որ յետ այսոցիկ հանդերձեալ են ասիլ:

Յաղագս գրոց ասացաք իբրու ոչ ունին բաւականապէս զառաջինն ինչ կոչելով ընտրութեամբքդ. այսպէս իբրու ոչ ասացաւ քեզ թէ որոյ առ 'ի ստուգութիւն ուսման հետևիլ պարտ է այնմ՝ որում հանդերձեալ է քաղաքացի գոլ չափաւոր, և կամ ամենեւին ոչ է պարտ համարիլ: Այսպէս և յաղագս քնարի բերել: Իսկ պարտ ասեմք այժմ առ գիրք զմանուկ տասնամեայ՝ գրեթէ ամս երիս, և 'ի քնար մերձենալ՝ երից ամաց և տասանց լինելով սկսանիլ. չափաւոր է ժամանակն. և մնալ 'ի սմա այլ երիս, և ոչ յոլովագոյն սոցունց, և ոչ նուազագոյն՝ հօր ոչ ուսումնասիրելով առ սմա, և ոչ այս առ այսո-

քիկ առերլութիւն՝ ունելով, ոչ է պարտ մեծագոյն և ոչ նուազագոյն դեգերումն առնել առանց օրինաց։ Եւ որ ոչ հաւանի, անպատիւ իցէ խրատուցն պատուաց՝ զոր սակաւ ինչ յետոյ ասել պարտ է։ Եւ ուսանիլ առ այսոքիւք ժամանակօքս զինչ երբեք պարտ է մանկանցն, և ուսուցանել զուսա ուսուցչացըն. և զայս իսկ ուսիր յառաջագոյն։ Գիր իսկ պարտ է այսուհետև զայն՝ որ մինչև ցգրելոյն իսկ և ընթեռնլոյն կարող իցէ աշխատել ըստ արագութեան և գեղեցկութեան. 'ի բաց ստուգելով ոմանց՝ որոց բնութիւնն ոչ փութացաւ, առ կարգեալ ամօքդ բարեաւ մնալ ասելով թողուլ։ Եւ արդ առ ուսմունք անքնար քերթողաց գրոց կացեալք՝ ոմանց առանց յարմարանաց հատուածոց, զոր շարադրութիւնք ըստ բանի միայն ստացաւ՝ պակասելով 'ի յարմարանաց և 'ի յօդաւորութենէ, սխալանաց գիր է մեզ առ 'ի յոմանց բազմաց այսպիսի մարդկանէ մնացեալ. որովք՝ ով ամենեցուն մեհագոյնք օրինադիր, զիարդ վարիցիք, և կամ զինչ երբեք հրամայելով ձեզ օրինադիրն՝ վարել ուղղապէս արդեւք կարգաւորիցի, և մանաւանդ ակն ունիս սմա տարակուսիլ։

Կղինիաս. Զինչ երբեք զայս, ով սիրելի, երևիս առ այնոքիկ ճշմարտապէս տարակուսելով։

Պղատոն. Ուղղապէս թուեցաւ քեզ, ով Կլինիա։ Բայց արդ հաղորդք առ օրէնս գոլով ձեր, հարկ է որ ինչ երևի հնարաւոր գոլ և ոչ՝ ասել։

Կղինիաս. Զինչ արդ յաղագս այսոցիկ այժմ, և որպիսի ինչ կրելով ասես։

Պղատոն. Ասացից արդ։ Զի բազում անգամ բերանօք բազմօք ներհականս ասել ոչ է հնար։

Կղինիաս. Զինչ. և փոքրագո՞յնք և սակաւք թուիցին ձեզ յառաջագոյն առ 'ի մէնջ ասացեալքն՝ յաղագս օրինացն բազմացն ներհականքն։

Պղատոն. Եւ մանաւանդ ճշմարիտ զայս ինչ ասես, քանզի հրամայես իսկ ինձ, իբրու երևի, այսպիսի ճանապարհիս՝ խստագոյն եղելոյ բազմաց՝ թերևս ոչ նուազագունից այլոց իսկ սիրելագոյն. տալա եթէ նուազից՝ ոչ իսկ վատթարագունից հանդերձ. որովք

հրամայես ինձ վշտագնելով իսկ, և վստահանալով զայժմ առ 'ի հասեալ բանիցս հաստեալ ճանապարհն օրինադրութեան գնալով ոչ ինչ խոտորիլ:

Կղինիաս. Սակայն զինչ:

Պղատոն. Իսկ այժմ 'ի վեր հասանիմ. սակայն ասեմ, եթէ քերթողք մեզ են իսկ ոմանք վեցաչափից՝ ամենևին յոյժ, և եռաչափից, և ամենեցուն արդ ասացեալ չափիցն ոմանք առ 'ի փոյթն և ոմանք առ ծիծաղականք դիմեալ, առ որս ասեն՝ բազում անգամ արագունք բիւրինք զուղղապէս խրատեալքն 'ի համբակաց մնուցանել, և յագեցեալք գործել բազմալուրք. իսկ առ ընթերցմունսն առնելով և բազմուսմունս՝ զբոլոր քերթողքն ուսանելով. և ոմանք՝ յամենայնէ գլուխք ընտրելով, և զոմանս բոլոր ասուածք 'ի միասին ժողովելով ուսանիլ գոլ ասեն առ յիշելիս, դնելով թէ հանդերձեալ ոք բարի մեզ և իմաստուն 'ի բազմահմտութենէ լինել սոքօք. իսկ դու հրամայես ինձ այժմիկ համարձակելով բաց ասել թէ զինչ բարւոք ասեն և զինչ ոչ:

Կղինիաս. Եւ զիա՞րդ ոչ:

Պղատոն. Զինչ երբեք արդեօք յաղագս ամենայնի այսոցիկ միով բանիւ ասացեալ: Ասացից թերևս բաւական կարծեմ իսկ զայս ինչ գրեթէ, զոր և ամենայն ոք թերևս ներիցէ ինձ, բազումս իսկ զիւրաքանչիւր ոք 'ի սոցանէ ասացեալ բարւոք, և բազում ինչ զներհակն: Ապ'եթէ այս ինչ այսպէս ունի, ասացից վշտաբեր գոլ մանկանցն զբազմուսումնութիւն:

Կղինիաս. Ո՞րպէս արդ, և զինչ ողոքանս մատուցանես իսկ օրինադրին:

Պղատոն. Յաղագս այսորիկ ասես, թէ առ ի՞նչ երբեք յարացոյց հայելով, զոմն թողացոյց ամենեցուն ուսանել համբակացն, և զոմն 'ի բաց արգելու:

Կղինիաս. Ասա, և մի ինչ դանդաղիր ասելով:

Պղատոն. Ո՛վ բարի Կլինիա, տագնապիմ ըստ ումեմն յեղանակի բարեբախտի:

Կղինիաս. Յաղագս որո՞յ իսկ:

Պղատոն. Ոչ ամենեւին յարացուցի գոլոյն անկարող։ Քանզի այժմիկ 'ի բաց հայեցեալ առ բանքս զորս 'ի վաղորդայնէ մինչև ցայժմ իսկ մեք պատմեցաք, իբրու ինձ երևիմ իսկ ոչ առանց ումեմն փչման աստուածոյն, և թուեցան արդ ինձ ամենևին քերթուածոյ ումեմն նմանելով ասիլ։ Եւ ինձ թերևս ոչ ինչ սքանչելի հասաւ բանս ընտանիս, իբրու յանկարծակի տեսանելով յաւէտ հեշտանալ. քանզի յոլովագոյնք 'ի բանիցն՝ զորս քերթուածօք և կամ հեզաբար[1] այսպէս ասացեալք ուսայ և լուայ, ամենեցուն ինձ չափաւորագոյնք իսկ գոլ երևեցան, և պատշաճաւորք յաւէտապէս լսելիք գոլ համբակաց։ Եւ արդ օրինապահի իսկ և խրատողի յարացոյց ոչ թերևս ունիցին, իբրու թուի ինձ այսորիկ ասել վեհագոյն, քան եթէ զայսոսիկ ուսուցանել հրամայել վարդապետացն զմանկունսն, և զոր ինչ այսոցիկ հուպ են իսկ և նմանք։ Արդ եթէ երբեք հանդիպիցի՝ զքերթողաց իսկ և զքերթուածս պատմելով և զգրեալս հետևակ բանիւ, և կամ սոսկ՝ այսպէս առանց գրելեացն ասելով եղեաք ինչ, երբեք սոցունց բանից ոչ հետևիլ՝ ոչ և միով յեղանակաւ։ Բայց գրել, և յառաջագոյն իսկ զնոյն ուսուցիչքս հարկել ուսանիլ և գովել, և որք ոչ հաճելի իցեն թերևս 'ի վարդապետացն՝ ոչ վարիլ սոքօք գործակցօք, այլ զայնոսիկ զորս գովելոյն դատակնիք ունիցի՝ սոքօք վարելով զհամբակսն, սոցա աւանդել՝ ուսուցանել և խրատել։ Այս ինձ ճառ աստանօր և այսպէս վախճանեցի, յաղագս գրականաց իսկ ասացեալ համանգամայն և գրոց։

Կղինիաս. Իսկ ըստ ենթադրութեանս, ով սիրելի, ինձ իսկ ոչ թուիմ արտաքոյ շրջել ենթադրեալ բանիցն. բայց եթէ զբոլորն ուղղեմք իսկ կամ ոչ՝ դժուարին է թերևս հակառակիլ։

Պղատոն. Զի յայնժամ, ով Կլինիա, այս իսկ նոյն[2]

1 Ի բնագրին՝ հետևակ բանիւ։

2 Ի բնագրին, ձեզ։

իցէ յայտնագոյն, իբրու վայել է իսկ յորժամ զոր ինչ բազում անգամ ասացաք՝ 'ի կատարած հասցեմք ամենայն պատմութեանս յաղագս օրինացս։

Կղինիաս. Ուղղապէս։

Պղատոն. Արդ ոչ յետ գրականին՝ փանդեռնահարին մեզ ասելի է։

Կղինիաս. Սակայն զինչ[1]։

Պղատոն. Զփանդեռնահարսն իսկ այսուհետև թուի ինձ՝ յառաջագոյն բանիւք վերմտին յիշելով մեր զպատշաճն հատուցանել վարդապետութեանն համանգամայն՝ և ամենայն յաղագս այսպիսեացս խրատու։

Կղինիաս. Յաղագս որոց իսկ ասես։

Պղատոն. Կարծեմ ասացաք զայնոքիկ զԴիոնիսուոի զվաթսնամեայ երգսն՝ զանազանապէս քաջահմուտս պարտ գոլ լինել առ յարմարանս՝ և յօդաւորութեանցն զուգատարածմանք, զերգոցն նմանութիւնք զբարեւք և զչարաչար նմանեալ, ախտիւքն յորժամ լինիցի հոգի՝ զբարոյն իսկ նմանութիւն, և զներհականին ընտրել հնարաւոր ոք գոլով, զմին 'ի բաց ընկենլով, և զմիւսս 'ի մէջ մատուցանելով. ...... է և ողջոյն զանձինս համբակացն, կոչելով զիւրաքանչիւրսն հետևիլ առաքինութեան ստացուածոյ՝ 'ի միասին հետևելով 'ի ձեռն նմանութեանց։

Կղինիաս. Ճշմարտագոյն ասես։

Պղատոն. Պարտ է այժմ 'ի սակս այսոցիկ՝ բարբառիւքն քնարին վարիլ 'ի սակս հաւաստութեան աղեացն զփանդեռնահարին, և այնմ որ խրատեալն է՝ բացատրելով առ աղեացն հնչմունքն զբարբառսն իւրոց։ Իսկ զայլաձայնութիւնն և զպաճուճումն քնարին՝ այլ իսկ երգաղեօքն թողացուցանել, և այլ իսկ այնմ որ 'ի միասին զերգն եդեալ իցէ քերթողին։ Եւ արդ զհոծութիւն՝ անգայտութեամբ, և զարագութիւն հեղգութեամբ, և զարութիւն ծանրութեամբ՝ զուգաձայն և ընդդիմաձայն առնելով, և զյարմարութեանցն այսպէս զզանազանութիւնքն շարամերձելով հնչմանցն քնարին։ Զայսոսիկ արդ զամե-

[1] Ի բնագրին՝ և կարի իսկ քաջ։

նայն՝ ոչ մատուցանել հանդերձելոցն երից ամօք զերաժշտականին զպիտանացուն արագութեամբ 'ի բաց ըմբռնել. քանզի զներհականացն զմիմեանս խառնեցուցանելով դժուարուսումնութիւն առնուէ. բայց զի մանաւանդ պարտ է քաջուսմունք զօլ համբակաց, զի հարկաւորս ոչ փոքունս և ոչ սակաւս ուսունց կարգեալ են ուսմունք, և ցուցանէ զայսոսիկ յառաջելով բանս միանգամայն ժամանակաւն: Այլ զայնոսիկ իսկ այսպէս յաղագս երաժշտականին, խրատիչն մեզ փոյթ արասցէ:

Բայց զերգոցն իսկ սոցունց և զբանիցն, որպէս ուսուցչացն պարուցն, և զոր ինչ պարտ է ուսուցանել յառաջագոյնս. և այսոքիկ ամենայն բաժանեցան առ 'ի մէնջ. զորս սրբազանելով պարտ զօլ ասացաք՝ առ տօնան զիւրաքանչիւրոն պատշաճիլ, հեշտութիւն բարեբախտ քաղաքացն առնուելով օգտակար լինել:

Կղինիաս. Ճշմարտապէս և զայսոսիկ ասացեր:

Պղատոն. Ճշմարտագոյն և զայսոսիկ առ 'ի մէնջ ընկալեալ առ երաժիշտքն հանձեալ իշխանն՝ փոյթ արասցէ հանդերձ բարի հանդիպմամբ: Եւ մեք յաղագս կաքաւանաց, և բոլոր կրթականին ըստ մարմնոյն՝ ըստ յառաջագոյն ասացելոցն բացատրիցեմք, որպէս զերաժշտականին զմնացեալ վարդապետականն զոր և բացատրեցաք՝ այսպէս առնեմք և կրթականին. զի մանկանց իսկ և աղջկանցն՝ առ կաքաւանօն պարտ է կրթիլ և սովորիլ: Արդ ա՞յսպէս է:

Կղինիաս. Այո:

Պղատոն. Իսկ արդ մանկանցն կաքաւող արք՝ և աղջկանցն իցեն կաքաւող կանայք առ 'ի յաշխատելն ոչ ինչ անձահաւորք:

Կղինիաս. Լիցի այդպէս:

Պղատոն. Դարձեալ արդ զայն իսկ որ զյոլովագոյնսն ունելոց է իրողութիւնս՝ կոչեսցուք զմանկանցն դարմանողն, զայն իսկ որ այնոցիկ որ առ երաժշտականին և առ կրթականին են փոյթ առնելով ոչ բազում ունիցի պարապութիւնս:

Կղինիաս. Եւ ո՞րպէս արդ հնար իցէ ծերագոյն

գոլով սմա այս չափուց փոյթ առնել:

Պղատոն. Դիւրաւ, ով սիրելի. քանզի օրէնս տուեալ է սմա և...[1] ուր այսմիկ փոյթ, 'ի քաղաքացեացն՝ արք և կանայք, զորս և բայց ծանիցէ զորս պարտն է, և կամիցի ոչ ցնորիլ, առ այսոցիկ պատկառելով ներխոհեմապէս. և գիտելով զմեծութիւն իսկ, և առ միտս խորհելով, իբրու բարեւք իսկ սնուցեալ սնանելով համքակացն, ամենայն մեզ նաւարկութիւն ուղիղ լինիցի, և ոչ ո՛չ ասել.... անի է. և ոչ մեք՝ ասեմք առ նոր քաղաքաւ զայնոսիկ պատուելով որ յոյժ դիւրասէրքն են:

Բազում արդ մեզ և յաղագս այսոցիկ ասացաւ որ առ կաքաւանս և առ ամենայն կրթութեանցն շարժութիւնս. քանզի կրթութիւն դիցուք՝ և զայն ամենայն որ առ պատերազմունսն՝ մարմնօքն են աշխատանք, աղեղնաւորութեանց իսկ և ամենայն նետաձգութեանց, և ասպարաւորութեան, և ամենայն զէնամարտութեան և սկզբանց կարգաւորութեանց, և ամենայն գնացից զինուորութեանց և կարգից բանակաց, և որչափ հեծելական ուսմանց շարայարմարի: Զի այսոցիկ ամենեցուն ուսուցչաց պարտ է գոլ. հասարակաց առնլով վարձս առ 'ի քաղաքէն, և սոցունց աշակերտք՝ զայնոսիկ որ 'ի քաղաքին են մանկունք իսկ և արք. աղջկունք և կանայք այսոցիկ ամենեցուն մակացողք՝ աղջկունք իսկ գոլով տակաւին՝ զամենայն զինուք կաքաւմունս և մարտս խոկացեալս: Իսկ կանայք՝ զելս կարգաւորութեանց և դրութեանց և 'ի բաց բարձմանց չինիցն գիտելով, եթէ ոչ 'ի սակս այլ ուրուք՝ այլ զի եթէ երբեք կարօտանան ամենայն հանդիսիւն զօրութեամբ թողուլ զքաղաքն արտաքոյ զինուորիլ՝ պահելոյ զմանկունսն, և զայլ քաղաքն: Այսչափ բաւական գոլ սոցա, քան եթէ զներհակն՝ յորոց ոչ ինչ է հրաժարելի արտաքոյ թշնամեաց 'ի ներքս անկանելով զօրութեամբ ումեմն աշխոյժ և բռնաւորագունի բարբարոսաց, և կամ ելլենացւոց, հարկ առատուեալ յա-

1 Ի բնագրին. Թոյլ տուեալ է նմա, և տացէ թոյլ:

ղագս նորին քաղաքի մարտ լինել, բաղում ինչ եպերէ քաղաքավարութիւն այսպէս չարաչար գոլով կանանցն մնուցեալ, իբրու ոչ որպէս հաւք յաղագս ծնընդոցն մարտնչելով առ որ և իցէ 'ի բռնաւորագոյն գազանացն, կամիլ մեռանիլ իսկ և ամենայն վշտօք վշտագնիլ. այլ վաղվաղակի առ տաճարս բերելով զամենայն բագինսն և զտաճարսն լցուցանել. և կարծիս հեղուլ առ մարդկան սեռիս՝ իբրու բնութեամբ զանգիտագոյն է ամենայն գազանաց։

Կղինիաս. Երդնում յԱրամազդ, ով սիրելի, իբրու ոչ իւիք բարեձև լինիցի արդեւք՝ առանց մախանաց ասեմ, զայս ինչ 'ի քաղաքի ուրուք լինելով։

Պղատոն. Ո՞չ ապաքէն դիցուք զօրէնս զայս՝ մինչև ցայսչափ ոչ ծուլանալ կանանցն պարտ գոլ այնմիկ՝ որ առ պատերազմունսն են իրաց, այլ փոյթ առնել սոցա ամենեցուն քաղաքացի արանցն և կանանցն։

Կղինիաս. Ես իսկ արդ ներող եմ այդմիկ։

Պղատոն. Զմերկամարտութեանն այսուհետև զօրէնս ասացաք. բայց զոր ինչ մեծագոյն է, իբրու ես ասացից թերևս՝ ոչ ասացաք. և ոչ է իսկ դիւրին՝ առանց մարմնով ցուցանելով համանգամայն, և բանիւ ցուցանել զայս ինչ։ Արդ յայնժամ ընտրեմք՝ յորժամ գործոյ բանք հետևելով ազդիցէ ինչ հաւաստիւ յաղագս այլոցն։ Իսկ որ ասաց՝ և որ ինչ առ պատերազմական մարտի ամենեցուն շարժութեանց՝ ճշմարտապէս են բաղաղան, յոյժ աւետագոյն մեզ այսպիսի մերկամարտութիւնս։ Եւ արդ զի և պարտ է առ սմա 'ի սակս այնմիկ ճահաւորել, և ոչ զայսոսիկ 'ի սակս այսորիկ ուսանել։

Կղինիաս. Բարւոք ասես զայս ինչ։

Պղատոն. Այժմ իսկ առ յաղագս մերկամարտութիւնն զօրութեան՝ մինչև ցայս վայր մեզ ասացաւ։ Բայց յաղագս այլոյ շարժութեան ամենայն մարմնոյն՝ զորոյ զյոլովագոյնն մասն կաքաւումն ինչ ոք առասելով ուղղապէս թերևս բարբառիցի. և երկու տեսակք սորա գոլ պարտ է կարծել, զայն իսկ որ գեղեցկագոյն մարմնոցն է՝ առ 'ի պարկեշ-

տըն նմանելով, և զայն որ վատթարագունիցն է՝ առ 'ի յոռին. և դարձեալ՝ վատթարագունին երկու, և արիագունին՝ այլ իսկ երկու: Արդ զարիագունին՝ ըստ պատերազմին բուռն աշխատանօք յանձնառութիւն առնելով մարմնոց: Իսկ գեղեցկագունից և հոգւոյ արիագունի՝ և զայն իսկ որ 'ի բարեբաստութիւնս գոլով՝ ողջախոհ հոգւոց չափաւոր հեշտութեամբք խաղաղական ասելով ոք թերևս՝ ըստ բնութեան զայսպիսի կաքաւանման ասիցէ: Արդ զպատերազմականն սոցունց այլ գոլով բայց 'ի խաղաղականէն սպառազինական՝ թերևս ուղղապէս ոք անուանիցէ: Իսկ զխորշմունքն ամենայն բանից, և նետաձգութեանց խոտորմամբ, և ամենայն հպատակութեամբ, և արտաքս վազիւք բարձրութեամբ և խոնարհութեամբ նմանելով. և զայսոսիկ ներհականք՝ զայնոսիկ որ առ ըմբռնականքն բերեալ լինին ձևութեամբ աղեղանց և նետաձգութեանց, և այլոցն որ սոցունց հետևին, և զամենայն գանիցն նմանութիւնսն ձեռնարկութիւն առնելով՝ նմանել զուղիղն իսկ: Առ այսոցիկ և տեսականն բարի մարմնոց և հոգւոց յորժամ լինիցի նմանութիւն ուղղաբեր, իբրու բազում անգամ մարմնոյն անդամոց լինելով ուղիղ իսկ՝ զայնպիսին և սոցունց ներհականն՝ ոչ ուղիղ ընդունելով. զխաղաղական կաքաւումն այսպէս պարս է տեսանել իւրաքանչիւրոց՝ թէ ուղղապէս և եթէ ոչ ըստ բնութեան ոք գեղեցիկ կաքաւմանն պաշտպան լինելով պարօք վայելչապէս՝ քաջօրէն արանց լինիցի գոլ: Զայս իսկ զերկբայեալ կաքաւումնս՝ պարտ է նախ որիշ 'ի յայնմանէ հատանել որ է աներկբայ:

Արդ ո՞վ ոք է այսոցիկ և ո՞րպէս պարտ է արտաքըս հատանել զիւրաքանչիւր: Քանզի ոմն մոլական իսկ է, և յայնցանէ որ սոցունց հետևին՝ զորս հարսունս[1] իսկ և յամենամասունս[2] և յիմարս[3] և սա-

1 Յոյնն, Νύνφας.

2 Յոյնն, ζαι Πάνας.

3 Յոյնն, ςειλενοις.

տիրականք[1] անուանելով, իբրու ասեն նմանեն զայլակերպս, առ մաքրութիւնս իսկ և ձօնմունս ոմանք 'ի բաց կատարելով, 'ի միասին զամենայն այսոքիկ կաքաւանացս սեռ՝ ոչ իբրու խաղաղական և ոչ իբրու պատերազմական, և ոչ իբրու զոր ինչ կամիցի երբեք դիւրաւ 'ի բաց որոշել և սահմանել զսա։ Այսպէս գրեթէ թուի ինձ գոլ սմա ուղղագոյն՝ որիշ իսկ պատերազմականի, և որիշ խաղաղականի դնելով ասել. իբրու ոչ է քաղաքական այսոքիկ կաքաւանացս սեռ։ Բայց աստանօր կալով թողեալք այժմիկ կալ, առ պատերազմականն համանգամայն և զխաղաղականն իբրու աներկբայաբար մեր գոլով վերստին հասանել։

Բայց անպատերազմ երաժշտին, կաքաւանօք իսկ զաստուածս և զաստուածոցն մանկունս պատուելով, մի իսկ 'ի միասին արդեւք լինիցի սեռ թըւելովք զգործսն բարեւք լինելով։ Եւ զայս իսկ երկակի բաժանեմք թերեւս, զոմն սորա յաշխատանաց ոմանց և 'ի վշտաց՝ առ բարութիւնս ապաւինելով մեծագոյնս ունիցին հեշտութիւնս. և միւսն[2] յառաջագոյն բարութեանցն փրկութիւն գոլով, և ամման հեզագոյն հեշտութիւնս ստանալով այնմիկ։ Արդ այսպիսեօքս իսկ երբեք ամենայն մարդ զշարժութիւնքն մարմնոյն մեծագոյն իսկ ՝հեշտութեանցն ելով մեծապէս, և նուազագունից՝ նուազապէս շարժեացին։ Եւ զարդարելագոյն գոլով և առ արիութիւն կրթեալ՝ մանաւանդ նուազագոյնք։ Իսկ անարի և անկիրթ լինելով առ ողջախոհիլն, մեծագոյնք և յուժգնագոյնք առաւել զփոփոխմունս շարժութեանն։ Եւ բնաւ՝ բարբառելով կամ երգօք իսկ և կամ բանիւք՝ հանդարտութիւն ոչ յոյժ կարող իցէ մարմնոցն պարգևել ամենայն ոք. վասն որոյ նմանութիւն ասացելոցս ձեւօք լինելով՝ զկաքաւանսն 'ի բաց գործեաց արհեստ։ Ամենայն ոմն արդ 'ի մէնջ ներդաշնակապէս, և ոմն օգտելով՝ առ այսոցիկ շարժիցի։

1 Յօրինակին՝ սոփիստականս ․ ուղղեցաք ըստ յունին Σατύρας.

2 Յօրինակին՝ միւոն , զոր ուղղեցաք ըստ բնագրին։

Բազում արդ այսուհետև՝ և այլ մեզ 'ի նախնի անուանցըն՝ իբրու բարեւք և ըստ բնութեան կալով՝ պարտ է տրամախոհելով գովել։ Եւ 'ի սոցունց մի զայն որ առ կաքաւանման է իբր՝ զբարեւք գործողացն՝ գոլով իսկ չափաւոր սոցունց առ հեշտութիւնն, իբրու ուղղապէս՝ համանգամայն և երաժշտաբար անուանեաց։ Որ և էրն իսկ երբեք և ըստ համեմատութեան եղեալ սոցա անուն ամենեցուն՝ ներդաշնակութիւնք անուանեաց. և երկու իսկ տեսակք գեղեցիկ կաքաւանացն կարգեալ՝ զպատերազմականն իսկ սպառազինականն և զխաղաղականն ներդաշնակութիւն. երկարանչիւրում զվայելուչսն և զպատշաճսն մակադրելով անուն։ Որոց պարտ է արդ օրինադրին պատմել գաղափարօք՝ և օրինապահին խնդրելով իսկ՝ և գտանելով վերստին հանդերձ այլ երաժշտականաւն զկաքաւանսն 'ի միասին դնելով՝ և հաստուցանելով առ ամենայն տօնս և զոհիցն իւրաքանչիւրում վայելչականն. այսպէս սրբազանելով զսոսա զամենայն դասութեամբ՝ այսուհետև շարժել և զոչինչ, ոչ կաքաւանաց հպելով և ոչ երգոյ. և այսոցիկ հեշտութեամբքս՝ սապէս զնոյն քաղաքք և զքաղաքացիսն կենցաղավարելով ըստ զօրութեան նման գոլով, բարեւք կալ սոցա և բարեբաստապէս։ Իսկ արդ գեղեցիկ մարմնոցն և ազնուական հոգւոցն առ պարսն՝ որպիսի՛ պարտ է գոլ սոցա, ասացաւ կատարելապէս։

Արդ յոռին մարմնոցն տրամախոհութեանցն՝ և այնոցիկ որ առ ծիծաղականսն են դարձեալ կատակերգութեանցն՝ ըստ բառի իսկ և երգոց և ըստ կաքաւանաց՝ և ըստ այսորիկ ամենեցուն նմանութեանցն կատակերգելով, հարկ է իսկ տեսանել և ճանաչել. քանզի գեղեցկագոյնքն առանց ծիծաղանաց են, և զամենայն ներհականացն զներհակսն[1] ուսանել իսկ ոչ է հնար, եթէ հանդերձեալ է ոք խոհեմական գոլ։ Բայց առնել զերկաքանչիւրսն ոչ է հնար, եթէ ոք իսկ հանդերձեալ է փոքր ինչ առա-

1 Յօրինակին վրիպակաւ՝ զներհակն։

քինութեան հաղորդել. այլ 'ի սակս նոցունց իսկ այսոցիկ և ուսանել զսոսա պարտ է՝ վասն ոչ երբեք 'ի ձեռն անգիտութեան առնել ինչ կամ ասել՝ որչափ ծիծաղելիսն են և ոչ ինչ պատշաճ։ Իսկ ծառայից զայսպիսիքս և վարձու՝ օտարաց հրամայել նմանիլ. բայց փոյթ առ այսոցիկ գոլ ոչ երբեք, ոչ զոր ինչ և իցէ իսկ՝ և ոչ ումեմն ուսանելով զսոսա լինել յայտնի՝ յայնցանէ որ ազատքն են, ոչ կնոջ և ոչ առն, այլ նոր ինչ միշտ առ այսոսիկ երևիլ նմանութեանց. որչափ արդ առ ծիծաղելիս խաղք են՝ զորս կատակերգութիւնք ասեմք ամենեքեան՝ այսպէս օրինիւս և բանիւս կացցէ։

Իսկ առաքինեացն իբրու ասեն այնոցիկ որ առ ողբերգութիւնսն են մեզ քերթողացն, եթէ երբեք ոմանք 'ի սոցանէ եկեալ հարցանիցեն զմեզ այսպէս. ով սիրելիք, որպէս երթիցուք[1] առ ձեզ 'ի քաղաքդ իսկ և 'ի գաւառդ, եթէ ոչ զքերթուածս բերեմք իսկ և ածեմք՝ եթէ որպէս ձեզ թուեցեալ է առ այսպիսիս առնել։ Զի՞նչ արդ թերևս առ այսոքիկ թերևս ուղղապէս տացուք պատասխանի աստուածային արանցն. քանզի ինձ իսկ թուի այսպէս ասել. ով արիագոյնդ օտարացն, մեք եմք ինքեանք ողբերգութեան քերթողք ըստ զօրութեան՝ իբրու գեղեցկագունի, համանգամայն և արիագունի. և ամենայն մեր քաղաքավարութիւնս բաղկացեալ է նմանութիւն գեղեցկագոյն և արիագոյն կենցաղի՝ զոր արդ ասեմք մեք իսկ գոլ ողբերգութիւն որ ճշմարտագոյն է։ Քերթողք իսկ արդ մեք, քերթողք իսկ և դուք. եմք ձի այդոցիկ և փոխանորդք արհեստի[2] և նահատակութեան գեղեցկագոյն իրիս։ Որ և օրէն իսկ ճշմարիտ, միայն 'ի բաց կատարել..... որեալ[3] իբրու առ 'ի մէնջ յոյս է։ Մի՛ արդ կարծիցէք զմեզ դիւրաւ իսկ այսպէս ըստ ձեզ երբեք առ մեզ

1 Յօրինակին՝ Երխիցուք. ուղղեցաք ըստ յունին։

2 Յոյնն ἀντίτεχνοι հակառակարուեստք կամ արուեստակիցք, որպէս գտանեմք թարգմանեալ 'ի նախնեաց։

3 Յոյնն, ἀποτελεῖν πέφυκεν։

թողուլ տաղաւարս կառուցանելով ըստ վաճառարանին, և գեղեցկաձայն նմանողք 'ի ներքս մուծանելով, մեծագոյն բարբառելով քան զմեզ՝ հրամայել ձեզ՝ հրապարակել առ մանկունս իսկ և կանայսն և՞ առ ամենայն ամբոխն՝ յաղագս այսորիկ ասելով խորհրդոց ոչ զնոյնս զոր մեք իսկ, այլ իբրու յոյժ և ներհակք յոլովագոյն։ Քանզի գրեթէ և մոլութիւն կատարելապէս հասեալ իցէ մեզ իսկ և ամենայն քաղաքին, ոչ ոք 'ի մէնջ յորդորէ զձեզ առնել զայժմիկ ասացեալքս, նախ քան զդատելն 'ի սկզբանն եթէ ասելիք և ճահաւորք քերթեցիք իսկ զի ասասցին իսկ 'ի միջի։ Եւ եթէ ոչ այժմ իսկ, ով մանկունք՝ կակղագոյն երաժշտից ծնունդք, ցուցանելով իշխանացն նախ զձերդ առ մերովս երգ.ք, և եթէ նոյն իսկ կամ լաւագոյն առ 'ի ձէնջ երևեսցին ասացեալքըն, տացուք ձեզ պար. ապ'եթէ ոչ, ով սիրելիք, ոչ երբեք կարասցուք։ Այսոքիկ արդ լիցի առ ամենայն պար և ուսումն. յաղագս այսոցիկ 'ի միասին կարգել օրինօք սովորութիւն՝ որիշ իսկ ծառայիցն և որիշ տերանցն, եթէ հանդերձ իմով և թուի ձեզ։

Կղինիաս. Ո՞րպէս ոչ հանդերձ քև թուի այժմիկ այսպէս։

Պղատոն. Առաջինն՝ համարք իսկ և որ ինչ առ թիւսն են ուսումն մի, և չափական երկայնութեան, և տափարակի և խորութեան, իբրու մի իսկ։ Երկրորդ և երրորդ՝ աստեղացն շրջաբերութեանն՝ իբրու առ միմեանս բնաւորեալ են գնալ. բայց զայսոսիկ ամենայն 'ի միասին ոչ իբրու ստուգութեան հպելով՝ պարտ է բազմաց ընդ աշխատանօք արկանել. այլ զոմանս սակաւագոյնս, և զայնոսիկ՝ զորս յառաջելով առ կատարածին ասասցուք, քանզի այսպէս թերևս վայելչական իցէ։ Իսկ բազմութեանն՝ որչափ 'ի սոցունց հարկաւոր են. և որպէս ուղղապէս ասի՝ ոչ գիտելն իսկ բազմաց ամօթալի է. և 'ի ձեռըն ստուգութեան խնդրել զամենայն՝ ոչ դիւրին իսկ՝ և ոչ ամենևին հնարաւոր։ Բայց զհարկաւորն սոցունց՝ իբրու ոչ է պատշաճ 'ի բաց ընկենուլ. այլ թուի իսկ աստուածոցն առաջինն առակելով և առ

այսոքիկ հայելով ասել՝ իբրու ոչ աստուած ընդ հարկի երբեք երեւեցի մարտուցեալ. և որչափ աստուածայինք են՝ իսկ թուի ինձ թէ է և 'ի հարկաւորացն։ Քանզի 'ի մարդկայնոցն իսկ՝ առ որս բազումք հայելով ասեն զայսպիսիս, սա ամենայն բանից երկարաւ է պարզագոյն։

Կղինիաս. Ո՞ոմանք արդ են, ով սիրելի, որք ոչ այսպէս 'ի յուսմանցն են հարկաւորագոյն, և մանաւանդ՝ յաստուածայնոյն։

Պղատոն. Կարծեմ իսկ այնոքիկ զորս ոչ ոք գործել և ոչ ուսեալ իսկ ամենևին՝ ոչ երբեք արդեւք լինիցի աստուած, և ոչ դև, և ոչ դիւցազին. իբրու անհնարաւ է 'ի մարդկանէ փոյթ հանդերձ ջանիւ առնել, բազմաւ արդեւք կարօտացի մարդ իսկ աստուածային լինել, ոչ զմի և ոչ զերկու և ոչ ամենևին զդար և զկոճատ հնարելով ճանաչել. և ոչ թուել ամենևին գիտելով, և ոչ զգիշեր և զտիւ ընդ թուով արկանել հնարաւոր գոլով, առ լուսնի իսկ և արեգական և այլոց աստեղաց շրջաբերութիւնքն անհմտաբար ունելով զայսոսիկ։ Արդ զամենայն իբրու ոչ հարկաւոր են ուսմունք հանդերձելոյն՝ գրեթէ զոր ինչ և իցէ՝ 'ի գեղեցկագոյն ուսմանց գիտել բազում և յիմարութիւն տրամախոհութեանն։ Իսկ արդ զորպիսմիս իւրաքանչիւրս 'ի սոցունց և որչափ և երբ ուսանել պարտ է. և զինչ հանդերձ այլով ուրուք, և զինչ առանց այլոցն, և զամենայն խառնումն սոցունց։ Այսոքիկ են զոր պարտ է նախ առնլով ուղղապէս՝ առ այլոցն հասանիլ՝ այսոցիկ առաջնորդելով ուսմանցս՝ ուսանել։ Քանզի այսպէս բնութեամբ հասեալ 'ի հարկն, ըստ որում ասեմք՝ ոչ զոք յաստուածոցն ոչ այժմիկ մարտնչել, և ոչ երբեք իցէ մարտնչելոյ։

Կղինիաս. Թուի իսկ, ով սիրելի, այժմ այսպէս ուսուցեալքդ ուղղապէս ասիլ, և ըստ բնութեան զոր ասեսդ։

Պղատոն. Չի ունի իսկ այսպէս, ով Կլինիա. բայց դժուարին է զայսոսիկ նախադասելով օրինադրել այսմիկ յեղանակաւ. այլ յայլում ժամանակի, եթէ

թուի ձեզ, ստուգագոյն թերևս օրինադրեցուք։

Կղինիաս. Թուիս ինձ, ով սիրելի, երկնչիլ 'ի մերոյ առ այդպիսիքդ յանհմուտ սովորութենէս. ոչ արդ ուղղապէս երկնչիս, այլ ջանա ասել՝ ոչ ինչ ծածկելով 'ի սակս այսոցիկ։

Պղատոն. Երկնչիմ իսկ և յայդցանէ զորս դու այժմիկ ասեսդ. բայց մանաւանդ զարհուրեալ եմ յայնցանէ որ հասու են այսպիսի ուսմանցս, սակայն չարապէս հասեալ. և քանզի ոչ ուրուք դժուարին և ոչ ուժգին անհմտութիւն, և բազմաուսումնութիւն՝ հանդերձ չարագոյն հրահանգօք լինի տուրժ 'ի յոյժ մեծագունիցն։

Կղինիաս. Ճշմարտապէս ասես։

Պղատոն. Այսչափ այսուհետև իւրաքանչիւրոց ասել պարտ է ուսանել պատշաճ գոլ ազատացն՝ որչափ և ամենևին յոյժ յԵգիպտոս մանկանց ամբոխ հանդերձ գրօք ուսանի։ Նա զի նախ իսկ անհամարս անարհեստաբար մանկանց գտեալ ուսմունք՝ հանդերձ խաղալեօք իսկ և հեշտութեամբ ուսանիլ, խնձորից իսկ ոմանք և պսակաց բաշխմունք, յոլովագունից համանգամայն և նուազագունից յարմարելով թուօքն նոքիմբ և մրցականաց, և մերկամարտուց 'ի վերայ հոտմանց իսկ, և ըմբռնել մասամբ և ըստ կարգի, և իբրու բնաւորեալ են լինել. և խաղալով բաժակք համանգամայն և ոսկեղէն և պղնձիս և արծաթեղէն, և այլոց ոմանց այսպիսեաց խառնելով՝ որք և զամենայն բաշխելով այսպէս ասացի 'ի խաղալիս յարմարելով զհարկաւոր թուոցն զվարս, օգտակար լինիցին այնոցիկ որ ուսանին առ բանակացն իսկ դասութիւնս և յածմունս, և զինուորութիւնս և 'ի տնօրէնութիւնսն իսկ։ Եւ ամենայնիւ պիտանացուք զսոսա այսոքիւք, և յետ այսոցիկ առ չափս՝ որչափ ունի երկայնութիւնք և լայնութիւնք և խորութիւնք, առ ամենայն այսոքիկ գոլով ումեմն բնութեամբ ծաղրական իսկ և գարշելի, անխոհեմութիւն ամենայն մարդկան յայսմանէ 'ի բաց փոխելով։

Կղինիաս. Զորպիսի՞ ինչ արդ, և զո՞ ոք ասես զայ-

սոսիկ։

Պղատոն. Ո՛վ սիրելի Կլինիա, ամենևին իսկ սակայն և ես լուեալ անագան երբեք զայն իսկ ախտ մեր որ առ այսոցիկ է՝ սքանչացայ, և թուեցաւ ինձ այս ինչ ոչ մարդկային՝ այլ վարազատեսակաց ոմանց մանաւանդ գոլ կենդանեաց, և ամաչեցի իսկ ոչ վասն անձին իմոյ միայն՝ այլ և վասն ամենեցուն ելլենացւոց։

Կղինիաս. Յաղագս որո՞յ ասես, ասա զոր ասեսդ, ո՛վ սիրելի։

Պղատոն. Ասացից արդ և մանաւանդ հարցանելով քեզ ցուցից, և փոքր ինչ տուր ինձ պատասխանի. Ճանաչե՞ս երբեք զերկայնութիւնն։

Կղինիաս. Զիա՞րդ։

Պղատոն. Եւ զլայնութիւն զի՞նչ։

Կղինիաս. Ամենևին։

Պղատոն. Եւ այդոքիկ երկու՝ իցեն և երրորդ սոցունց՝ զխորութիւնն։

Կղինիաս. Ո՞րպէս ոչ։

Պղատոն. Իսկ արդ ո՞չ թուին քեզ այսոքիկ ամենայն՝ գոլ չափելիս առ միմեանս։

Կղինիաս. Այո։

Պղատոն. Երկայնութիւն իսկ առ երկայնութեան, և լայնութիւն առ լայնութեան, և խորութիւն այսպէս հնար գոլ չափելն բնութեամբ։

Կղինիաս. Յոյժ իրաւացի։

Պղատոն. Ապա եթէ է՝ ոչ յոյժ իսկ և ոչ դիւրաւ կարող զոմանս, այլ զմիւս, և զմիւսս ոչ, բայց դու զամենա՞յն վարկանիս, թէ ո՞րպէս կարծես առ այսոցիկ տրամակայել։

Կղինիաս. [1]..... թէ վատթարապէս։

Պղատոն. Եւ զի՞նչ երկայնութիւն իսկ և լայնութիւն առ խորութեան, և կամ լայնութիւն իսկ և երկայնութիւն առ միմեանս. ո՞չ արդեւք տրամախոհիմք յաղագս այսոցիկ այսպէս ամենայն ելլենացիք, իբրու հնար է այս չափիլ առ միմեանց իբ-

[1] Յոյնն՝ քաջայայտ է թէ...

րու այսպէս։

Կղինիաս. Ամենեցուն իսկ։

Պղատոն. Ապա թէ ոչ միով իւիք ոչ երբեք հնար, բայց ամենեքեան որպէս ասացի՝ ելլենացիքս տրամախոհիմք իբրու զհնարաւորս՝ ո՞չ արդեւք արժան է վասն ամենայնի աւաղելով ասել առ սոցա. ով լաւագոյնդ ելլենացւոց, մի յայնցանէ յորոց ասացաք է այս ինչ գարշելի իսկ լինելն ոչ գիտելով՝ և գիտել զհարկաւորսն ոչ ինչ յոյժ բարի։

Կղինիաս. Ո՞րպէս ոչ։

Պղատոն. Եւ առ այսոցիկ իսկ՝ այլ են այսոց բաղազունք, որովք իսկ բազում սխալանք այնոցիկ՝ եղբարք լինիցին մեզ սղալանացն։

Կղինիաս. Ո՞րք արդ։

Պղատոն. Զափաւորացն իսկ և անչափիցն առ միմեանս՝ ըստ որում բնութեան լեալ են։ Քանզի զայսոսիկ գիտելով՝ գիտել հարկաւոր է կամ ամենեւին գոլ յուռին, և նախարկելով միշտ միմեանց, դեգերումն խաղալեացն քուէիցն յոյժ բերկրեալ, քան զծերագոյնքն դեգերելով ջանալ առ սոցունց արժանի պարապմամբն։

Կղինիաս. Թերեւս թուի նման գոլ քուէիցն խաղալիսն և այդ իսկ ուսմունքդ միմեանց, և ոչ ամենեւին յոյժ որոշեալ։

Պղատոն. Զայսոսիկ այժմիկ ես, ով Կլինիա, ասեմ համբակացն ուսանել. զի ոչ վնասակարք են և ոչ դժուարինք, այլ հանդերձ խաղալեւք ուսանելով օգտէ իսկ, վնաս ինչ ոչ է քաղաքին. ապ՚եթէ ոք այլաբար ասասցէ՝ լսել պարտ է։

Կղինիաս. Ո՞րպէս ոչ։

Պղատոն. Սակայն թէ այսպէս այսոքիկ ունելով երեւեսցին, յայտ է թէ նախապատուիցեմք զսոսա, և ոչ այսպէս ունել երեւելով տացի պատասխանի։

Կղինիաս. Յայտ է թէ սակայն զի՞նչ ոչ ապաքէն այժմիկ, ով սիրելի, կացցէ այսոքիկ, իբրու գոլով 'ի պատշաճաւոր ուսմանցն՝ զի ոչ իցէ մեզ թափուր օրինացն իրս։

Պղատոն. Կացցէ իսկ իբրու առհաւատչեայ լու-

ծանելի յայլ քաղաքավարութենէն, եթէ ոչ զմեզ՝ զգրողքս, և կամ զձեզ զերդեալքդ ոչ միով իւիք պատուասիրիցէ։

Կղինիաս. Արդար ասես։

Պղատոն. Զդրութիւնս երից աստեղացն զարդ յետ այսոցիկ տես զուսումն համբակացն, եթէ մեզ հաճոյ իցէ ասացեալն և կամ ներհակն։

Կղինիաս. Ասա միայն։

Պղատոն. Եւ աքանչումն մեծ իսկ առ այսոցիկ, և ոչ միով իւիք ոչ երբեք ներելի։

Կղինիաս. Որպիսի՞ է արդ։

Պղատոն. Զմեծագոյն աստուածն, և զբոլոր աշխարհ ճանաչեմք ոչ խնդրել պարտ գոլ, և ոչ գոյ արդարագոյն։

Կղինիաս. Բայց թուի ամենայն ինչ այսորիկ ներհական լինելով՝ ուղղապէս թերևս լինել, որպէս ասացեր։

Պղատոն. Հրաշափառ է իսկ ասացեալդ, և ոչ արդեւք ծերագունից ոք կարծիցէ վայելչական գոլ զայս ինչ՝ յորժ թերևս ոք գեղեցկագոյն ինչք կարծիցէ ճշմարիտ գոլ ուսումն և քաղաքի պատշաճ, և այն ամենեցուն սիրելի, միով արդ յեղանակաւ հնարաւոր իցէ տակաւին ոչ ասել։

Կղինիաս. Իրաւապէս ասես, այլ յաղագս աստեղաց ուսումն ինչ այսպիսի վերստին գտցուք։

Պղատոն. Ո՛վ արք բարիք, սուտք եմք այժմիկ իբրու տաղ ասել ամենեքեան ելլենացիքս, զմեծացն աստուածոցն՝ արեգակնէն իսկ միանգամայն և զլուսնէն։

Կղինիաս. Ո՞րպէս սուտք։

Պղատոն. Ասեմք զսոսա ոչ երբեք զնոյնն ճանապարհն ընթանալ, և այլ փաղփաղակի հանդերձ սոքօք՝ աստեղս մականուանելով մոլորականք զսոսա։

Կղինիաս. Այո, երդնուլով յԱրամազդ, ո՛վ սիրելի, ասեմ զի ճշմարիտ ասես զայս ինչ. քանզի 'ի կենցաղումս բազում անգամ տեսայ և ես զլուսաբերն և զգիշերավառն և զայլս ոմանս, ոչ երբեք գնալով առ նոյն ընթացս, այլ ամենևին մոլորելով.

բայց զարեգակն երբեք և զլուսինն, առնելով միշտ զայս ինչ զոր ինչ ամենեքեան 'ի միասին գիտեմք։

Պղատոն. Այսոքիկ է այսուհետև, Մեգիլէ իսկ և Կլինիա, այժմիկ զոր ինչ արդ ասեմ պարտ գոլ յաղագս աստուածոցն որ առ յերկինս են, զմերս իսկ քաղաքացիքս և զհամբակս մինչև ցայսվայր ուսանիլ յաղագս այսոցիկ ամենեցուն, մինչև ոչ լեզուագարել յաղագս սոցա. այլ միշտ բարեբանել զոհելով իսկ և ըղձիւք աղօթս առնելով բարեպաշտապէս։

Կղինիաս. Այս իսկ է ուղիղ, եթէ նախ հնար իցէ զոր ինչ ասեսդ ուսանել. առ՚եթէ՝ ոչ ասեմք ինչ յաղագս սոցա այժմիկ ուղղապէս, բայց ուսանելով իսկ աստացուք, ներեմ և ես զայս ինչ, այսչափ և այսպէս գոլով ուսանիլ պարտ գոլ զայսոքիկ։ Արդ իբրու ունելով՝ եղիցի այսպէս, փութա դու իսկ պատմել ամենեւին, և մեք 'ի միասին հետևիլ քեզ ուսանելով։

Պղատոն. Այլ է իսկ ոչ դիւրին ուսանելոյ զոր ինչ ասեմս, և ոչ ամենևին դժուարին, և ոչ բազում ժամանակի ուրուք կարօտանայ. և նշանք են այսոցիկ ոչ նոր և ոչ նախնի 'ի լուոյ երկաքանչիւրոցս՝ զոր այժմիկ ոչ բազում ժամանակաւ յայտնել ինձ հնար է, և մանաւանդ. դժուարինք գոլով, ոչ երբեք թերևս իբրու էր յայտնել այսչափ գոլով։

Կղինիաս. Ճշմարիտ ասես։ Այլ և զինչ ասես զուսումնս զայս ինչ, զոր և սքանչելի ասես և պատշաճաւոր ուսանիլ համբակաց, և մեզ ոչ գիտել։ Փորձ արա յաղագս որո՞ իսկ ասել այսչափ իբրու հաւաստագոյն։

Պղատոն. Պարտ է իսկ փորձ առնել. զի ոչ է այս իսկ, ով արիագոյնք, աւանդութիւնս ուղիղ յաղագս լուսնի և արեգական և այլոց աստեղաց, իբրու թերևս մոլորիցին երբեք, այլ ամենայն այսմիկ ներհական ունի։ Քանզի նոյն իսկ ճանապարհաւն և ոչ բազումք իւրաքանչիւր, այլ միով միշտ շրջանակի ընթանայ. բայց երևի բազում ճանապարհս բերեալ, և արագագոյն սոցունց գոլով, հեղգագոյն ոչ ուղղապէս իսկ կարծիցի, այլ ներհակն ներհակապէս։

Այսոքիկ արդ եթէ բնաւորեալ են այսպէս, և մեք ոչ այսպէս կարծեսցուք իսկ, եթէ 'ի ստադիոնի երիվարքն ընթանային այսպէս և երկարքն առ ընթացս, և յաղագս սոցա ես խորհէաք զայս ինչ և առաստէաք զարագագոյնն, և ներբողեամք իսկ առնելով երգէաք զպարտեալն՝ յաղթեալ, ոչ թերևս ուղղապէս և ոչ կարծեմ սիրելաբար մեր ընթացողացն արդեւք զներբողեանսն մատուցանել: Մարդկան գոլով, և այժմ արդ առ աստուածք զնոյնքն զայսոսիկ սխալելով մեր, ո՞չ արդեւք կարծիցեմք ծիծաղելի ինչ և ոչ ուղիղ անտանօր և առ այսոցիկ լինիցի:

Կղինիաս. Ծիծաղելի իսկ:

Պղատոն. Ոչ և միով իւիք սակայն, և ոչ իսկ աստուածասէր սուտ համբաւ մեր առ աստուածս երգելով:

Կղինիաս. Ճշմարտապէս են իսկ այդոքիկ:

Պղատոն. Ո՞չ ապաքէն թերևս իսկ ցուցանեմք այսպէս այսոցիկ ունելով ուսանել պարտ է մինչև ցայս վայր զայսոսիկ զամենայն, և ոչ ցուցանելով սոցա՝ թողուլ պարտ է, և այսոքիկ մեզ այսպէս 'ի միասին կացցէ:

Կղինիաս. Եւ այդ իրաւացի է ամենևին:

Պղատոն. Այսուհետև արդ պարտ է ասել՝ կատարած ունել որ ինչ յաղագս խրատու և ուսմանց են օրէնք: Իսկ յաղագս որսոյ այսպէս խորհիլ պարտ է, և յաղագս ամենեցուն որչափ այսպիսի են: Քանզի դժուարին օրինադրին կարգաւորելով և մեծ ինչ գոլ՝ զեդեալ օրէնսն 'ի բաց փոխել, և այլ ինչ ըստ օրինացն գոլ. 'ի մէջ խրատու իսկ և օրինացն համանգամայն բնաւորեալ, որ և բազում անգամ եհաս առ մերոց բանիցս՝ իբրու առ յոյժ մանկանցն նորագոյն սննդեան: Քանզի ոչ ասեմք գոլ ասելով իսկ սոքա՝ իբրու օրէնք եդեալ, կարծել գոլ զսոցա բազում անհմտութեամբ լինել գրոց: Իսկ այսպէս օրինաց և բոլոր քաղաքավարութեանն, ոչ կատարեալ լիցի առաքինութեամբ տարբերեալ քաղաքացւոյն գովասանութիւնն, յորժամ ոք ասիցէ զսա պաշտելով օրինացն արիապէս, հաւանելով մանաւանդ զսա

գոլ բարի և կատարելագոյն. այսպէս ասելով իբրու թէրևս որ օրինադրրէն՝ օրինադրելով իսկ և գովելով և պարսաւելով՝ հաւանելով գրոցն, ելցէ 'ի կենցաղոյս առանց սխալանաց: Այս իսկ բանս ուղղագոյն է առ գովասանութիւն քաղաքականի, և օրինադրին իսկ պարտ է ճշմարտապէս ոչ միայն գրել զօրէնսն, այլ ըստ օրինացն՝ որչափ թէրի սմա թըւիցի և ոչ բարի գոլ, առ օրէնսն շարամանելով գրել. բայց ծայրագոյն քաղաքացին՝ ոչ ինչ նուազէ զայսոսիկ հաստատել՝ քան եթէ զայնոքիւք որ տուրժիւք ընդ օրինօք ըմբռնեալ է:

Եւ այժմիկ իսկ առ հասեալ ժամս որպիսի վկայ 'ի վերայ ածեմք՝ յայտնեսցէ թէրևս այս ինչ զոր կամիմք ասել: Քանզի որս՝ ամենեւին յոյժ ինչ իսկ է իսկ իրողութիւն, պարառեալ անուամբ այժմ գրեթէ միով: Քանզի բազում է ջրայնուոցն, և բազում իսկ թռչնոցն. և ամենեւին բազում հետևակ որսորդութիւնքն առ ցամաքաւս՝ ոչ միայն երէոցն՝ այլ և մարդկան արժանի է զմտաւ ածել որս՝ զայն իսկ որ առ պատերազմաւն. բայց բազում է և ըստ սիրելութեան որսալն, բայց ոմն գովասանութիւն և ոմն պարսաւանք ունի: Եւ գողութիւնք իսկ և աւազակաց, և զօրաց առ զօրս հանդիպումն՝ որսք են. բայց յաղագս որսոյ դնելով օրինադրին զօրէնս՝ ոչ առանց յայտնելոյ զայսոսիկ թէ որպիսի՛ ինչ են, և ոչ 'ի վերայ ամենեցուն դասութիւնք, և կամ տուրժս մանկադրելով սպառնական օրէնս դնել: Զի՞նչ արդ պարտ է առնել առ այսոսիկ օրինադրին: Զոմն գովել, և զոմին պարսաւել պարտ է յաղագս որսոյ ըստ համբակացն աշխատանքն իսկ և ճահաւորութիւնքն. և համբակին լսելով հաւանիլ, և ոչ 'ի հեշտութենէ և ոչ յաշխատանացն խափանել սմա, և այնոցիկ որ առ իւրաքանչիւրս սպառնացեալ են հանդերձ տուրժիւ: Եւ օրինադրեալ զոմանս՝ որ հանդերձ գովասանութեան ասելով մանաւանդ պատուել, և զհրամայեալսըն կատարել. այսոցիկ արդ նախ ասելով ըստ կարգի՝ թէրևս լինիցի չափաւոր գովասանութիւն և պարսաւանք որսոյ, որ զանձինսն նորագունիցն վեհագոյ-

նըս իսկ կատարէ, գովելովն և պարսաւելով զներհակս ասեմք։

Արդ զոր ինչ յետ այսորիկ պարտ է ասել ըստ կարգի ողջունելով 'ի ձեռն ըղձից զհամբակքն, ով սիրելիք, և ապա զձեզ ոչ ինչ ցանկութիւն, և ոչ տրփումն առ ծովն որսոյն ընկալցի երբեք, և ոչ կարթարկութիւն, և ոչ ինչ ամենևին 'ի ջրային կենդանեաց՝ և ոչ յարթնութենէ և ոչ ննջելով գործեաց խափանեալ որսոյքն աշխատիլ։ Եւ ոչ որս մարդկան առ ծովուն, և ոչ աւազակութեան ցանկութիւն՝ հասանելով որսորդք անօրէնք և արիւնահեղք կատարեսցէ զձեզ 'ի գողութիւն իսկ, ոչ 'ի գաւառի և ոչ 'ի քաղաքի, և ոչ վերջինք սահմանք հասցէ 'ի միտք ձեր մերձենալ. և թռչնոց որսոյ օդային տրփումն, ոչ յոյժ ինչ ազատային գոլով հասցէ առ ոմն 'ի նորագունիցն։

Այլ ցամաքայնոց միայն որսորդութիւն, և այլ ինչ դիտողութիւն իցէ մերոց իսկ նահատակաց. յորոց ոմն 'ի քուն եղելոց ըստ մասանց գիշերայնոցն կոչելով որս հեղգ արանց, ոչ արժանի գովասանութեան. և ոչ այն իսկ որ դադարմունք աշխատանաց ունելով գործօք և որոգայթիւք, այլ ոչ աշխատասէր հոգւոյ յաղթութեամբ ըմբռնեն զվայրենի երէոց զօրութիւն։ Միայն ամենեցուն արիագոյն և լաւագոյն է չորքոտանեացն որս երիվարօք և շամբք՝ իւրոց մարմնօքն որսալով, որոց ամենեցուն յաղթեն ընթացիւք և գանիւք և նետաձգութեամբ, ինքնաձեռն որսալով այնոքիկ որոց աստուածային արութեանն փոյթ։ Արդ յաղագս այսորիկ ամենեցուն գովասանութիւն իսկ և պարսաւ իցէ արդեւք ասացեալ զբան. և օրէնք իսկ այսպէս։ Զայսոսիկ իսկ զորբաղան որսորդքս մի ոք խափանեսցէ, յոր ժամ և ուր իցէ թերեւս կամելով որսալ, այլ 'ի գիշերի շրջեալ զոք շամբք և հնարիւք հաւատացեալ. ոչ ոք ոչ երբեք թողուցու որսալ ոչ ուրուք՝ և զայն իսկ որ զհաւս որսոյ առ խափան լերունս՝ ոչ ոք արգելուցու։ Իսկ առ գործեալ տեղիս և տաճարք սուրբք խափանեսցէ որ հանդիպեսցի։ Եւ ջրային որսորդ բաց 'ի լճաց

նաւահանգստից, և որ առ տաճարս են ջուրք, գետք իսկ և շամբք և լիճք. այլ առ այս ունիցի համարձակութիւն որսալ, ոչ վարելով դեղիւք պղտորելով զջուրսն: Այժմ արդ աւասիկ ամենեցուն կատարած ունել ասել պարտ է՝ որ ինչ յաղագս խրատու են օրինակք:

Կղինիաս. Բարեւք ասես:

# ՊՂԱՏՈՆԻ

# ՕՐԷՆՔ ԿԱՄ ՕՐԻՆԱԴՐՈՒԹԻՒՆ

## ՈՒԹԵՐՈՐԴ



Պղատոն. Այսոցիկ մեզ հուպ է՝ կազմելն իսկ և օրինադրելն տօնք, յետ այնոցիկ որ 'ի Դեղփիս են դիւթութիւնք, զոր և ոմանք յայլոց աստուածոց վեհագոյն և լաւագոյն լինիցի քաղաքին զոհելով, թէ որք կամ որչափ իցեն թուով, գրեթէ հաւասարապէս թերևս մեր իցէ օրինադրելն զոմանս իսկ 'ի սոցանէ:

Կղինիաս. Թերևս զթիւն իսկ:

Պղատոն. Զթիւն արդ յառաջագոյն ասասցուք: Զի իցեն 'ի հնգէն իսկ և 'ի վաթսնէն և յերեք հարիւրոցն ոչ ինչ պակասեալք, իբրու զի մի ինչ իշխանութիւն թերևս զոհիցէ յաստուածոցն կամ 'ի դիցն միշտ վասն քաղաքին և նոցուն ստացուածոցն, և զայսոսիկ 'ի միասին գոլով պատմողք և քահանայք և քահանայուհիք և դիւթք՝ հանդերձ օրինապահօքն, կարգելով զոր ինչ պակասեցուցանել հարկ լինիցի օրինադրին: Եւ արդ սորա իսկ նորին բարեմտութեամբ ներող լինել պարտ է այսմիկ՝ որ պակասեցուսցէ սոցա զնոյնս. քանզի օրէնս ասէ՝ երկոտասան տօնք գոլ երկոտասանից աստուածոցն, այնոցիկ որոց իւրաքանչիւրն ազգ իցէ մականուն, զոհելով սոցունց իւրաքանչիւրոց ներամսեայ պատարագք, և պարս երաժշտական և նահատակութիւնք: Եւ վարժմանցն՝ ըստ որում վայել է հատուցանելով, նոցունց աստուածոցն համանգամայն և մասանցըն իւրաքանչիւրոց, և կանանց իսկ տօնք որչափ

տուանց արանց պատճառին, և որչափ ևս ոչ հատուցանելով տակաւին իսկ և սանդարամետականացն, և այնոցիկ որչափ երկնային աստուածք մականուանել պարտ է. և զայն որ սոցունց հետևին՝ ոչ է պարտ 'ի միասին խառնել, այլ յորոշել 'ի Պղատոնի ամենայնն՝ որ է տասներորդ՝ ըստ օրինացն բացատրելով. և ոչ է պարտ դժնի գոլով պատերազմական մարդկան աստուածոցս այս, այլ պատուել պարտ է իբրու միշտ գոլով սմա մարդկան սեռի քաջագոյն. քանզի հաղորդութիւն հոգւոյ և մարմնոյ ոչ իցէ վեհագոյն՝ լուծանելոյ, իբրու ես իսկ ասեմ, փութով:

Առ այսոցիկ տրամախոհութիւն պարտ է ունել այսպիսի՝ այնոցիկ որ բաժանելոցն են՝ բաւականապէս զայնոսիկ. իբրու զի իցէ մեզ քաղաքս որպէս ոչ ոք թերևս գտցէ զայլ ոք յայնցանէ որ այժմիկ յաղագս ժամանակի պարապման և հարկաւոր իշխանութեանց. և պարտ է սմա իբրու միոյ ումեմն մարդոյ կեալ բարեւք, և բարեպաշտութեամբ կեցելոցն՝ հարկ գոլ յառաջագոյն ոչ ինքեանց անիրաւել, և ոչ 'ի ձեռն այլոց ումանց անիրաւիլ: Ի սոցունց միոյն իսկ ոչ է յոյժ դժուարին. իսկ զօրութիւնս տալն զի 'ի ձեռն այլ ուրուք ոչ անիրաւի, ամենևին դժուարին է. և ոչ իցէ սմա այլաբար կատարելապէս ընկալուլ զայս ինչ, եթէ ոչ կատարեալ իցէ բարութեամբ: Եւ արդ նոյնպէս է և քաղաքի, գոլ՝ լինելով իսկ բարիկենցաղ՝ խաղաղական, և եթէ մարտիցէ ոք յարտաքուստ՝ կամ 'ի ներքուստ արդեւք չար: Այսոցիկ գրեթէ այսպէս ունելով՝ ոչ 'ի պատերազմի զպատերազմ ինչ իւրաքանչիւրոց նախ կրթել պարտ է, այլ 'ի խաղաղութեան ժամանակին: Պարտ է այսուհետև յիւրաքանչիւրում ամսեան զինուորիլ, ոչ նուազագոյն կամ 'ի միում աւուր, այլ յոլովագոյն իշխանաց 'ի միասին, և ոչ զանգիտիցեն 'ի ձմերայնոյ, կամ 'ի տապէ խորշակի, ոչ խորշելով սոցունց կանանց և մանկանց, յորժամ 'ի միասին զամբոխն հանդիսօրէն հանել այնպէս կարգիցեն իշխանքն. բայց յայնժամ և

ըստ մասանց զբարիս ինչ խաղալիս միշտ հնարել զոհիւք, իբրու զի լինիցին մարտք ինչ տօնականք նմանելով զպատերազմականն՝ իբրու յաւետագոյն և հաստատուն մարտք և յաղթութիւնք. և արիութեան պարգևք իւրաքանչիւրոց սոցունց բաշխել պարտ է, և ներբողեանս և պարսաւս առնել միմեանց՝ որպէս իւրաքանչիւրոց լինիցի առ նահատակութեանցն. և յամենայն կենցաղին զայն իսկ որ արիագոյն թըւիցի գոլ՝ զարդարելով զայն, որ ոչ իսկ պարսաւելով. բայց քերթող լինիցի այսպիսեացս ոչ ամենայն ոք, այլ եղեալ յառաջագոյն ոչ նուազագոյն յիսուն ամաց, և ոչ 'ի սոցունց որչափ քերթողութիւն իսկ և երաժիշտ բաւականապէս ստացեալ իցեն յանձինս իւրեանց։ Բայց բարի գործ և երևելի ոչ ինչ ոչ երբեք եւս արարեալք, և այլ որչափ բարիք ինքեանք և պատուականք՝ 'ի քաղաքի բարի գործոց գոլով գոյացուցիչք՝ այսպիսեացս երգիցեն քերթուածք, եթէ և ոչ երաժշտականաւ իցեն բնաւորեալ. և ընտրութիւն սոցա իցէ առ 'ի խրատողէն իսկ և յայլոց օրէնսպահացն. զայս ինչ բացատրելով սոցա պատիւ; զի համարձակութիւն առ երաժիշտքն սոցունց գոլ միայն։ Իսկ այլոցն ոչ և մի ինչ լինել իշխանութիւն, և ոչ համարձակիլ ումեմն երգել երաժիշտ ինչ առանց ընտրութեան՝, ոչ դատելով օրէնսպահացն, և ոչ թէ և հեշտագոյն իցէ Թամիւռոսի իսկ և որփիական օրհնութեանցն։ Այլ որչափ սրբազան իսկ քերթուածս յընտրելով աւանդիցեն աստուածոցն, և որչափ բարի արանց ելով պարսաւելով և կամ գովելով զոմանս, դատեցաւ զայսպիսի ինչ գործել չափաւորապէս։ Զնոյնս իսկ ասեմ յաղագս զինուորութեան, և այնմիկ որ առ քերդածն է համարձակութեան՝ կանանց իսկ և արանց լինել նմանապէս։ Բայց պատշաճ է վերստին բերել, և ցուցանել ինքեամբ զօրէնադիրն բանիւս. Բեր զո՛ ոք սնուցանեմք պատրաստեալ զբոլոր քաղաքս. ո՞չ արդեւք նահատակս մեծից աշխատանաց, որոց բիւրինք իցեն ընդդիմամարտք, և ամենեքին իսկ ասիցէ ոք թերևս ուղղապէս ասելով։ Զինչ արդ եթէ մրցիցի և կամ զայ-

լոց յաղթող խաղալեացն մնուցանէաք խաղացողք՝ և կամ այլ ինչ յայսպիսեացս աշխատանաց նահատակք, եթէ և ո՛չ 'ի նոյնդ իսկ արդեւք հասանէաք նահատակութիւն յառաջագոյն ժամանակին. ոչ ինչ որ ըստ օրէ առ միմեանս մարտնչէաք, և եթէ մըրցականք գոլով ամենեւին յոյժ իսկ աւուրք՝ նախ քան զնահատակութեան ուսանէաք մարտնչել. և աշխատէաք նմանելով յամենայնի զայնոսիկ՝ որչափ հանդերձեալ էաք յայնժամ 'ի պէտս բերել յաղագս յաղթութեանն մարտնչելով. և իբրու մերձաւոր նմանութեանն հասանելով՝ փոխանակ խրացիցն՝ գնդատեսակ այլ ինչ որ գանս առնէ՝ ըմբռնել կարգէաք, իբրու զի խորշմունքն գանիցն ըստ որում հնար էր թաւականապէս առնէին զխոկումն: Եւ կամ եթէ պատահէր մեզ կցորդ ոչ ունել կրթութեանց յոլովագոյն՝ ո՛չ արդեւք յանդգնէաք՝ եթէ ժպտելոյ ոչ խորշէաք, կախելով ինչ պատկեր՝ անշունչ կրթիլ առ սովաւ, և տակաւին յամենայն շնչաւորացն և յանշնչիցն տարակուսելով երբեք վասն ոչ գոլոյ մեզ կցորդ կրթութեան, ո՛չ արդեւք յանդգնէաք իսկ առանձին մեք ստուերամարտք լինել ճշմարտապէս, և կամ այլ զի՛նչ երբեք զձեռնաբաշխութեանն[2] խոկումն առացէ ոք լինել:

Կղինիաս. Ո՛վ սիրելի, գրեթէ այլ ոչ ինչ բաց յայսմանէ զոր ինչ դու այժմ բարբառեցար:

Պղատոն. Զի՞նչ արդ և քաղաքին պատերազմականն՝ եթէ վատթարագոյն ինչ պատրաստելով այսպիսի աշխատանաց՝ առ մեծագոյնն նահատակութեանց յիւրաքանչիւր ժամու համարձակիցի հասանել՝ մարտնչելով յաղագս անձին և մանկանց և ընչից և բոլոր քաղաքին, և յայսցանէ երկուցեալ օրինադրին 'ի սոցունց առ միմեանս կրթութեանց՝ զի մի՛ երեւեսցի ոմանց ծիծաղելի, ո՛չ արդեւք օրինադրիցէ զինուորիլ հրամայելով մանաւանդ յիւրաքանչիւրում ժամու զայն ինչ որ մանրագոյնքն են և ա-

1 Յօրինակին՝ պուրփ էր. ուղղեցաք ըստ բնագրին:

2 Յոյնն՝ Ψειρυνομίαν.

ւանց զինից պարք իսկ և կրթականք, առ այսոքիկ համանգամայն փոյթ տանելով։ Իսկ զայնոսիկ որ մեծագոյնք են կրթութիւնք՝ ոչ նուազագոյն քան եթէ ըստ իւրաքանչիւրում ամենեան հրամայիցէ տանել հանդէպք առ միմեանս՝ տանելով ըստ ամենայն դաւառի, զհասու լինելն վայրից ինչ պատճառ դնելով հանդիսին, դատութիւն ունելով և զամենայն ճշմարտապէս նմանութիւն պատերազմական. 'ի գունդս գունդս մարտընչելով, և նետաձգութիւնք իբրու հուպ ճշմարտագունիցն 'ի պէտս բերելով վնասարար նետիւք՝ իբրու զի ոչ ամենևին առանց երկիւղի առ միմեանս խաղալիքն լինիցի, այլ արհաւիրս ունիցի. և յայտ առնէ ումեմն յեղանակաւ զարին և զոչն. և ոմանց պատիւք, և ոմանց անարգանս ուղղապէս բաշխելով, զբոլոր քաղաքն առ ճշմարիտ նահատակութիւնն յամենայն կենցաղումն պատրաստ և պիտանացու։

Եւ արդ ումեմն այսպէս մեռանելով, իբրու ակամայ եղեալ սպանմանն դիցէ սպանողն, ըստ Օրինաց մաքրելով՝ մաքուր գոլով ձեռօք, վարկանելով մարդկան ոչ բազմաց վախճանելով, այլ դարձեալ չե վատթարագոյնս բուսանել։ Բայց երկիւղին՝ իբրու վախճանելով, առ ամենայն այսպիսիքս կրթութիւն ոչ գտանել ոչ 'ի լաւագունիցն քաղաքի, ոչ փոքր այլ մեծագոյն չար իցէ՝ քան զայն ինչ։

Կղինիաս. Ասեմք և մեք 'ի միասին, ով սիրելի, զայսպիսիս պարտ գոլ և օրինադրել և խորհել ամենայն քաղաքի։

Պղատոն. Գիտեմք ամենեքեան զպատճառն վասն որոյ և այժմ առ քաղաքս այսպիսի պարտ և աշխատութիւնք ոչ ինչ և ոչ միով իւիք գոլ, այլ ամենևին ինչ փոքումբք, եթէ ասասցուք՝ վասն անուսումնութեան բազմաց և դնողացն սոցունց զօրէնսն։

Կղինիաս. Է՞ իսկ։

Պղատոն. Ոչ իւիք, ով երանելի Կլինիա, այլ երկու պարտ է ասել գոլ սոցունց պատճառաց, և մանաւանդ բաւականապէս։

Կղինիաս. Որո՞ց։

Պղատոն. Մին՝ 'ի ձեռն տռփանաց փարթամու-

թեան յամենայն ժամանակի անպարապութիւն առնելով այլոցն փոյթ առնել՝ բայց յիւրոցն ստացուածոց. ընդ որոց կանխելով ամենայն հոգի քաղաքացւոյ՝ ամենայն և ոչ երբեք կարիցէ առ այլ ինչ փոյթ առնել՝ բաց 'ի շահելոյն ինչ զօրհանապազ. և զոր ինչ առ այսմիկ բերէ սովորութիւն կամ խորհուրդս առանձինն ամենայն ոք ուսանել իսկ և կրթիլ պատրաստագոյն է, և առ այլօքն ծաղր առնել: Այս ինչ մի իսկ, և զայս ինչ մի պատճառ պարտ է ասել. ոչ զայս ինչ, և ոչ զայլ ինչ ազնիւ և բարի կամել խորհուրդ փութալոյն քաղաքի, այլ վասն ոսկոյն և արծաթոյն անյագութեանն՝ զամենայն արհեստ և զհնար, գեղեցկագոյն իսկ և տարաձևագոյն, կամիլ հանդուրժել ամենայն առն եթէ հանդերձեալ իցէ փարթամ գոլ. և գործ գործել արդարագոյն իսկ և անարդարագոյն և ամենեւին գարշելի, ոչ ինչ դժնի գոլով, եթէ միայն ունիցի զօրութիւն գազանաբար ուտել պէսպէս և ըմպել. նոյնպէս և ափռոդիտականաց՝ ամենեւին զամենայն յագեցումն պարգևել:

Կղինիաս. Ուղղապէս իսկ:

Պղատոն. Այսուհետև այս իսկ զոր ասեմն կացցէ մի պատճառ՝ խափանելով և ոչ այլ ինչ բարի՝ և ոչ զոր ինչ առ պատերազմն են իրս՝ բաւականապէս թողլոյն կրթիլ քաղաքին, այլ վաճառականք իսկ և նաւավարք և պաշտօնեայք՝ ամենեւին զընութեամբ զարդարեալքն 'ի մարդկանէ գործելով, և զարիագոյնքն աւազակք և պարսպահատք և տաճարակապուտք՝ և թշնամիք և հարստահարականք առնելով, և մանաւանդ է յորժամ ոչ տարաբնակք գոլով՝ սակայն թշուառականք:

Կղինիաս. Ո՞րպէս ասես:

Պղատոն. Ո՞րպէս արդ զնոսա իսկ ոչ ասացից թերեւս ամենեւին թշուառականք՝ որոց հնար է 'ի ձեռն կենցաղոյս քաղցնուլով՝ միշտ ընդ անձինս իւրեանց մարտնչել:

Կղինիաս. Այս իսկ արդ մի. և զերկրորդ պատճառն զո՞ ոք ասես, ով սիրելի:

Պղատոն. Բարեւք յիշեցուցեր:

Կղինիաս. Զայս իսկ արդ ասես դու մի, 'ի ձեռն կենցաղոյս անյապ խնդրուածս առատուելով, իւրաքանչիւրում զանպարապութեան արգել լինիցի ոչ բարեւք կրթիլ առ պատերազմին իրս իւրաքանչիւրոց. սորա զերկրորդն իսկ ասա։

Պղատոն. Արդեւք ոչ ասել, այլ և դեգերել ինձ թուի վասն տարակուսանաց։

Կղինիաս. Ոչ. այլ իբրու ատելով թուիս մեզ խափանող լինել այսպիսի բարուցս, յաւետագոյն քան զոր կարօտանայ բանիւս որ 'ի վերայ է հասեալ։

Պղատոն. Բարեւք, ով սիրելիք, մակասատեցիք ինձ. և որ ինչ յետ այսորիկ է լուարուք, արդեւք իբրու նմանեալ է։

Կղինիաս. Ասա միայն։

Պղատոն. Քաղաքավարութեան իսկ պատճառս դոլ ասեմ, զոր բազում անգամ ասացի յառաջագոյն բանիւքն, հրապարակակալութիւն՝ սուղ իշխանութիւն և հարստահարութիւն։ Արդ զի յայսցանէ քաղաքավարութիւն իսկ ոչ և մի՝ այլ հակառակութիւնք ամենայն, ասացին արդեւք ուղղագոյն։ Քանզի առ կամաւորս կամաւոր ոչ և մի, այլ առ ակամայս կամաւոր իշխէ հանդերձ միշտ ումամբ բռնութեամբ. և երկնչելով իշխան՝ յայնմանէ որ ընդ իշխանութեամբն է, ոչ բարի և ոչ փարթամ և ոչ զօրաւոր և ոչ արիագոյն և ոչ ամենևին պատերազմական կամաւ թողուցու երբեք լինել։ Այսոքիկ արդ երկու՝ են ամենեցուն իսկ պակաս փոքում զանազանապէս պատճառք, և 'ի սոցանէ արդ ճշմարտապէս լինին տարբերութիւնք։ Բայց այժմ քաղաքավարութեան իրս, զոր օրինադրելով ասեմք, 'ի բաց ճողոպրեալ է յերկաքանչիւրոց. քանզի պարագրութիւն ունի մեծագոյն, և ազատեալք են 'ի միմեանց. և ընչասէրք՝ նուազ թերևս կարծեմ լինիցին յայսցանէ օրինացս, իբրու վայելչապէս համանգամայն ըստ համեմատութեան՝ այսպիսի կարգաւորութիւնս քաղաքավարութեանս միայն ընկալցի թերևս յայնցանէ որ այժմիկ են՝ զկատարեալս այժմիկ բանիւս, խրատ իսկ համանգամայն և զպատերազմական խաղալիս կատարեալ ուղղապէս։

Կղինիաս. Բարւոք է։

Պղատոն. Այսոցիկ 'ի կարգի յիշել յաղագս ամենայն կրթական նահատակութեանցն, իբրու որչափ 'ի սոցունց իսկ ըստ պատերազմի են աշխատանք, սոքօք ճահաւորիլ պարտ է, և դնել նահատակութեանց և յաղթութեանց պարգևս, և որչափ այնոցիկ բարեաւ մնալ ասելով՝ թողուլ պարտ է սոցա, և զոր ինչ էն ի սկզբանէ պարտ է ասել և օրինադրել. և յառաջագոյն՝ զոր ինչ առ ընթացս և երագութիւն բոլորովին՝ ոչ արդեւք դնել պարտ է։

Կղինիաս. Դնելի է այսպէս։

Պղատոն. Է արդ ամենեցուն պատերազմականագոյն՝ առանց ամենայն պատճառի մարմնոյ երագութիւն՝ ոմն առ 'ի յոտիցն և միւսն առ 'ի ձեռացն, փախչել իսկ և հասանել ոտիցն. և այն որ 'ի շարամանութիւնքն լինիցի մարտ և ըմբռնումն զօրութեանն և ուժգնութեան կարօտանալով ձեռաց։

Կղինիաս. Սակայն զինչ։

Պղատոն. Սակայն ոչ առանց զինուց ոչ ոք 'ի սոցանէ զմեծագոյնն պէտս ունիցի։

Կղինիաս. Ո՞րպէս արդեւք։

Պղատոն. Ցասպարիսի ընթացող յառաջագոյն քարոզն՝ մեզ որպէս այժմիկ բողոքէ առ նահատակութիւնս. բայց նա 'ի ներքս մտանէ՝ զէնս ունելով. քանզի նահատակի զպարգևս նահատակութեանն ոչ տացուք. նախ 'ի ներքս մտցէ որ հանդիսի ասպարիսին հանդերձ զինուք, և երկրորդ որ զընթացըս, և երրորդ՝ որ զմականձին, և չորրորդ՝ որ զերկայնագոյնն, և հինգերորդ զոր թողուցուք նախ ըսպառազինեալ վաթսուն ասպարիսի երկայնութիւն, առ տաճարն ինչ Արեսի, և դարձեալ ծանրագոյն սպառազէն մականուանելով՝ դիւրագոյն ճանապահի հանդիսանալ, և զմիւսն աղեղնաւոր՝ զամենայն զարդս աղեղնաւորի ունելով հարիւր ասպարիզօքն առ Ապողոնի և Արտեմիդեայ տաճարին, 'ի ձեռն լերանց և ամենայն վայրի հանդիսանալով։ և եդեալ զաշխատանսն՝ սպասեսցուք սոցունց մինչև եկեսցեն, և այնմ որ յաղթէ՝ զյաղթանակըն պարգևեսցուք իւրաքանչիւրոց։

Կղինիաս. Ուղղապէս ասես։

Պղատոն. Արդ երիս զայսոսիկ նահատակութիւնս տրամախոհեսցուք. մի իսկ մանկական, և մի երիտասարդաց և մի արանց. և այնոցիկ որ նախ քան զմօրուսն իցեն համբակք՝ զերկրորդն յերիցն երկարութեանն յընթացին դիցուք, և մանկանցն՝ զկէսն սոցունց աղեղնաւորաց և սպառազինաց՝ հանդիսանալով։ Իսկ այնոցիկ որ երեսնամեայ իցեն մինչև ցհարսանիս սպասելով հասորդութեան, ոչ քսանամեայ երկարագոյն՝ և ոչ նուազագոյն քան զութեւտասներորդամեայքն, վայելուչ պատմուճանով ամփոփելով սոցա իջանել պարտ է առ հանդէսն այնոցիկ ընթացիցս։ Եւ առ ընթացսն արանց և կանանց իրս՝ այսպէս իցէ։

Իսկ այն որ ըստ զօրութեանն է, փոխանակ մրցամարտութեանն և այլոց այսպիսեացն, որչափ ծանրագոյնք են այժմիկ, զմարտն որ զինօքն է՝ մի ընդ միոյ մարտնչելով, և երկու ընդ երկու՝ մինչև ցտասն, հանդիսանալով ընդ միմեանս, և զոր ինչ այնմ որ ոչ առնէ և ոչ կրէ պարտ է յաղթել, և ըստ որչափ այժմ՝ առ մրցամարտութեանս օրինադրեսցին այնոքիկ որ մրցամարտիկքն են, թէ զինչ է բարւոք մրցամարտուցելոցն գործն, և այնմ որ ոչ բարւոք. սապէս և զայնոսիկ որ առ սպառազինութիւնն է ծայրագոյն՝ աղաչել պարտ է և սոցա հրամայել օրինադրութեանն կցորդիլ, թէ ո՞ ոք արդեւք յաղթիցէ իրապէս։ Առ այսոսիկ մարտքս՝ ոչ ինչ կրեալ կամ արարեալ, և զպարտեալն իբրու այսպէս, նոյնս իսկ դատիցէ դաս։ Այսոքիկ և յաղագս աղջկանցն իցէ օրինադրել, այնոցիկ որ մինչև ցհարսանեացն սահմանեալ են, և զսպառազինականն բոլոր հանդէպ կացուցանելով՝ պարտ է ամենայաղթական մարտիւն, աղեղամբ և վահանօք և նիզակօք և քարամբք, 'ի ձեռանէ իսկ և պարսիւ հանդիսանալով՝ տրամադրել իսկ օրէնք յաղագս այնոցիկ՝ այն որ գեղեցկագոյն բացատրիցէ առ այսոցիկ զօրինականսն զպատիւս, և յաղթութիւնս բաշխել։

Յետ այսոցիկ յաղագս երիվարաց նահատակու-

թեան լինիցի ըստ կարգի թերևս օրինադրել։ Բայց ձիոց մեզ պէտս իսկ ոչ ինչ բազմաց, և ոչ յոյժ է իսկ առ 'ի Կրետէ, իբրու զի հարկաւոր իցէ և փոյթ ստցունց նուազագոյն լինել առ կերակուրքն և առ աշխատանքն ստցունց։ Իսկ կառաց և ոչ բնաւ ոչ այլ ոք կերակրող մեզ իցէ, և ոչ պատուասէր ինչ, առ այսոքիկ ոչ և միոյ լինիցի թերևս համեմատութիւն ունելով։ Իբրու զի՞ սորա իսկ նահատակութիւն ոչ իցէ զուամիկ ումն դնել միտս ոչ ունել, և ոչ ակն ունել բնաւ ստանալ, այլ միաձիօք առնել զնահատակութիւնսն երիվարօք և կատարելոցս և մատաղատունկ միջասահմանօք, և այնոքիւք որ կատարելութիւն ունին՝ ըստ բնութեան գաւառին թերեւս զերիվարական խաղալիսն բացատրեսցուք։

Լիցի արդ ստցունց ըստ օրինացն հանդէս իսկ և վիճաբանութիւն՝ ազգապետօքն և հեծելազօրօքն ուղղորդաբար աւանդեալ ընտրութեամբ, և ամենեցուն այնոցիկ որ յընթացսն իջանեն հանդերձ զինօք և թափուր 'ի զինից 'ի մերկսն. և ոչ աստանօր դնելով աշխատութիւնս՝ ուղղապէս թերևս օրինադրիցեմք։

Եւ աղեղնաւոր 'ի վերայ ուսոյ ձիոյ բերել կըրետացի՝ անպիտան ոչ է և ոչ նիզակաւոր. վասն որոյ իցէ և ստցունց 'ի սակս խաղալեացն....[1] հեռ իսկ և նահատակութիւն։ Իսկ զէգն՝ յաղագս այնոցիկ օրինօք և կարգաւորութեամբ ոչ է արժան բռնադատել հաղորդիլ ստցունց. ապ'եթէ 'ի ստցանէ յառաջագոյն 'ի սովորութիւնն հասանելով խորհրդոցս՝ բնութիւնն ընդունակ լինիցի, և ոչ դժուարանայ զաղջկունս և զկուսանս հաղորդիլ՝ թողուլ և ոչ բամբասել։

Արդ աւասիկ նահատակութիւն և ուսումն կըրթականի, և որչափ յաշխատանս և որչափ յամենայն օր ուսուցչօք աշխատիմք ամենևին արդեւք կատարած ունել երաժշտականի յոլովագոյնս՝ այսպէս կատարեցան։ Իսկ հագներգողացն իրս և ստցունց հե-

1 Յոյնն ունի աստէն նորգէսջուտ։

տեւողացն, և որչափ 'ի տօնսն հանդէսք պարուց հարկաւոր են լինել, և կարգելով աստուածոցն իսկ՝ և այնոցիկ որ յետ աստուծոցն են, ամսոցն և աւուրցն և տարեացն զարդարեցին յայնժամ, եթէ եռամեայք իսկ, և եթէ 'ի ձեռն հնգից ամաց և ապա ուր և որպէս մտածութիւն տալով աստուածոցն՝ յաղագս դասութեամբ իւրացն բաշխեցին։ Յայնժամ և երաժշտականին նահատակութեանցն պարտ է ակն ունել ըստ մասին աշխատից՝ կարգելով 'ի ձեռն նահատակութեանց պէտս. և խրատողին համբակացն և օրինադրացն առ հասարակ յաղագս սոցունց 'ի մտասին եկելոցս՝ և օրինադրաց սոցունց եղելոցս, Երբ իսկ և ո՞յք ոմանք ընդ որոց ոմանց արասցեն զնահատակութիւնք՝ յաղագս ամենայն պարուցն և պարտելեացն։ Բայց թէ որպիսի իւրաքանչիւրոյն 'ի սոցունց գոլ պարտ է ըստ բանի և երգոց և յօդաւորութեանց յարմարանօք խառնել և կաքաւանօք, բազում անգամ ասացաւ օրինադրողն առաջին, ըստ որում երկրորդիսս պարտ է զհետ երթալով օրինադրել, և զաշխատանսն վայելչապէս յիւրաքանչիւրոց զոհիցն պատշաճ ժամանակօք բաշխելով տօնք, բացատրեալ տօնել քաղաքին։

Արդ զայսոսիկ և այլք այսպիսիք ոչ է դժուարին ճանաչել, թէ զի՞նչ յեղանակաւ պարտ է օրինաւոր դասութիւն հասանել, և ոչ փոփոխելով յայսկոյս կամ յայնկոյս՝ քաղաքի շահ կամ տուրժ բերիցէ։ Բայց զայն ինչ որ ոչ փոքումբք տարբերի՝ հաւանեցուցանել դժուարին է. աստուծոյ իսկ մանաւանդ գործ, թէ որպէս է՝ կարգաւորութիւնք սոցա առ 'ի նմանէ լինիցի։ Բայց այժմ մարդոյ յանդգնողի ումեմն տագնապիմք կարօտանալ, որ զհամարձակութիւն զանազանապէս պատուելով՝ ասէ զոր ինչ թըւին արիագոյն գոլ քաղաքի և քաղաքացեաց անձամբ ապականելոց, զվայելուչն և զհետեւեալն ամենայն քաղաքավարութեանն կարգելով, ներհակս ասելով մեծագոյն ցանկութեան, և ոչ ունելով օգնական 'ի մարդկանէ ոչ զմի ոք՝ այլ բանիւ միայն հետեւելով միապէս։

**Կղինիաս.** Զի՞նչ այժմիկ ասեմք բան սովորելի, զի ոչ ես իմանամք։

**Պղատոն.** Վայելչապէս իսկ. այլ փորձ արարից ես ասել ձեզ՝ զինչ և է հաւաստի։ Իբրու զի 'ի խրատ եկի ես բանիւս՝ տեսայ զհամբակս և զերիտասարդաղջկունս կաճառելով ընդ միմեանս խոհեմասիրաբար, եկն եմուտ առ իս իբրու իրաւապէս երկիւղ ինչ 'ի միասին խորհելով, թէ ո՞վ վարի քաղաքաւս այսուիկ՝ յորոյ համբակք և երիտասարդուհիք բարեսնունդք են, և յաշխատանաց յուժգնագոյն և յանազատագոյն, որք մանաւանդ զամբարհաւաճութիւն շիջուցանել բնաւորեալ են, խափանեալք են զոհք և տօնք և պարք. ամենեցուն սոցա 'ի ձեռն կենցաղոյս փոյթ է։ Արդ զի՞նչ յեղանակաւ 'ի սմա յայսմ քաղաքի 'ի բաց կացցեն 'ի ցանկութեանցն յայնցանէ որ զբազումս իսկ բազում անգամ ընդ վերջինսն ընկալցին՝ յորոց բանն հրամայէ 'ի բաց կալ՝ օրէնք լինել ձեռնարկութիւն առնելով, և բազում ցանկութեանցն ոչ սքանչելի՝ եթէ յաղթիցեն յառաջագոյն օրէնքն կարգեալ։ Քանզի ոչ փարթամանալ պարտ է ըստ գերունակութեան, և բարի ոչ փոքր առ ողջախոհութիւն, և ամենայն խրատն առ այսուիկ զչափաւոր օրէնս ընկալաւ։ Եւ առ այսոցիկ՝ իշխանացն տեսանելիք հարկեալ է ոչ հայել այլ ուրուք, այլ պահել միշտ զհամբակսն։ Առ այսուքիկ՝ առ այլ ցանկութիւնս որչափ մարդկային են, չափ ունիցին։ Տռփանացն մանկանցն՝ արուացն և իգացն, և կանանցն առ արսն՝ արանցն առ կանայսն, ուստի բիւրինս եղեն մարդկան առանձին և բոլոր քաղաքացն, որպէս զայս ինչ ըմբռնիցէ արդեւք, կամ զի՞նչ թերեւս դեղ իցէ սոցունց իւրաքանչիւրոց։ Այսպիսի վշտի գտանելով փախուստ ամենևին՝ ոչ է դիւրին, ո՛վ Կլինիա. քանզի առ այլս՝ ոչ սակաւս մեզ Կրետէ բոլոր և Լակեդեմոն օգնականութիւն հեզաբար ոչ փոքր յարմարիցեն, դնելով զօրէնսն այլայլելիս բազում յեղանակօք։ Իսկ յաղագս տռփմանցն՝ քանզի ինքեանք ամենևին լինիցին ներհականք։ Զի թէ հետևելով ոք բնութեանն՝ դիցէ՛ զՊռոտալայիոսի զօ-

րէնան, ասելով իբրու ուղղապէս ունէր ընդ արուացըն և համբակացն ոչ հաղորդիլ որպէս ընդ իգէց խառնմամբ ափրոդիտականացն, վկայ բերելով զգազանայ բնութիւն, և ցուցանելով առ այսպիսիս ոչ մերձենալ արուի յարու վասն ոչ բնութեամբ այսմիկ, թերևս վարիցի հաւանական բանիւ, և ձերոց քաղաքացն ոչ ուիք ձայնակցի։ Առ այսոցիկ՝ այս ինչ զոր յամենայն ժամ ասեմք պահել օրինադրին՝ առ սոքօք ոչ խոստովանիցի. քանզի խնդրեմք միշտ յայտցանել որ եդեալ են՝ բերէ՞ ըստ առաքինութեանն, որպէս յայնմ որ հաւանի ձեր անձինն հասանելով բուսանի արիութեանն բարք, եթէ յայնմանէ՝ որ հաւանեցուցանէ ողջախոհութեանն տեսակին սեռ, կամ եթէ զայսոքիկ ոչ երբեք թերևս հաւանեսցի, այլ մանաւանդ զամենայն ներհակն այսորիկ։ Քանզի զայն իսկ՝ որ հեշտութեանն հպատակի և ժուժկալել ոչ կարէ, բամբասէ ամենայն ոք զխենեշութիւն, և զայն որ 'ի նմանութիւն իգին հասանի՝ զպատկերի նմանութիւնն ոչ արդեւք բամբասիցէ։ Ո՞վ ոք արդ 'ի մարդկանէ զայս ինչ գոլով՝ այսպիսի օրինադրիցէ։ Գրեթէ և ոչ ոք, ունելով առ միտս իւր օրէնք ճշմարիտ։ Ո՞րպէս արդ ասեմք ճշմարիտ զայս ինչ գոլ։ Սիրելութեանն իսկ, և ցանկութեան համանգամայն և զտռփմանցն բնութիւն տեսանել հարկաւոր է թէ հանդերձեալ ոք իցէ զայսոսիկ ուղղապէս տրամախոհել. քանզի երկու գոլով սոցա, և երկոցունց երրորդ այլ ինչ տեսակ միանուն պար առեալ, զամենայն տարակուսանս և զխաւար 'ի բաց գործիցէ։

Կղինիաս. Ո՞րպէս։

Պղատոն. Բարեկամ իսկ կոչեմք զնմանն նմանոյ ըստ առաքինութեանն, և զհաւասարն հաւասարի։ Սիրելի իսկ և զկարօտացեալն փարթամացելոյն՝ ներհակ գոլով սեռիւ. և յորժամ երկաքանչիւրն լինիցի յուժգնակի՝ տռփումն անուանեմք։

Կղինիաս. Ուղղապէս ասես։

Պղատոն. Բարեկամութիւն այսուհետև որ 'ի ներհակացն՝ չարաչար է և վայրենի, և զհաղորդն ոչ բազում անգամ ունելով առ մեզ։ Իսկ այն որ 'ի

նմանեացն է՝ ընտանի և հաղորդ 'ի ձեռն կենցաղոյս։ Եւ խառնեալ յերկոցունցս լինելով նախուսանելոյ ոչ դիւրին թէ զինչ երբեք կամիցի թերևս լինել սմա զերրորդս։ Այսմիկ ունելով ոք տուփումն՝ ապա 'ի ներհակն առ երկաքանչիւրսն ձգեալ տարակուսեսցի։ Միոյն հրամայելով մերձենալ առ գեղեցկութիւնն, և միոյն իսկ հրաժարելով։ Քանզի այն իսկ որ առ մարմինն տուփի, և գեղեցկութեանն իբրու պտղոյ ումեմն քաղցնու, յագենալ հրամայէ անձին իւր, պատիւ ոչ և մի հատուցանելով հոգւոյն բարուցըն այնմիկ որոյ տուփի։ Իսկ միւսն վարկպարազի զմարմնոյն ցանկութիւնն ունելով, հայելով մանաւանդ կամ տուփելով առ հոգին, վայելչապէս զնոյն իսկ զհոգւոյս ունելով ցանկութիւն՝ անարգանս վարկանի զմարմնոյն առ մարմնոյ ուրուք յագեցումն։ Այլ զողջախոհսն և զարիագոյնն և զմեծվայելուչն և զխոհեմականն՝ պատկառելի համանգամայն և պաշտելի վարկանելով, մաքուր միշտ հանդերձ մաքրագունով այնմ որ տուփի ախորժիցէ գոլ թերևս։ Այն իսկ որ խառնի յերկաքանչիւրոցն՝ երրորդ տուփումն, այս իսկ է զոր այժմիկ իբրու զերրորդ պատմեցաք։ Գոլով արդ սոցունց այսչափ, որպէս զամենեսեան պարտ է խափանել օրինացն՝ արգելուլով ոչ առ մեզ ոչ լինել։ Թէ յայտ է՝ զայն իսկ որ առաքինութեանն էր՝ և համբակին ցանկայ, իբրու արիագոյն լինել ախորժեմք թերևս 'ի մերում քաղաքին գոլ. իսկ զերկուսն՝ եթէ հնար իցէ՝ արգելումք թերևս, կամ որպէս ասեմք, ով սիրելի Մեգիլէ։

Մեգիլլոս. Ամենևին իսկ բարւոք, ով սիրելի, յաղագս նոցունց այսոցիկ ասացեր այժմիկ։

Պղատոն. Թուի ինձ իսկ, որպէս և ակն ունէի պատահիլ քեզ, ով սիրելի, զուգակցութեանդ։ Բայց զօրէնսն ձեր զոր ինչ խորհի առ այսոքիւք՝ ոչ է ինձ պարտ քննել, այլ ընկալուլ բանիւս զներողութիւն։ Բայց Կլինիայ՝ յետ այսոցիկ դարձեալ յաղագս սոցունց փորձ արարից, ողոքելով ասել և հաւանեցուցանել։ Եւ տուեալ ինձ առ 'ի ձէնջ այս ինչ լինիցի՝ զի պատմեսցուք ամենևին զօրէնսն։

Կղինիաս. Ուղղապէս ասես:

Պղատոն. Արհեստ ինչ այսմիկ օրինացս դրութեան, առ հասեալ ժամս, զոմն ինչ դիւրին ունիմ. և զմիւսն յեղանակաւ ինչ իբրու դժուարագոյն:

Կղինիաս. Ո՞րպէս արդ ասես:

Պղատոն. Գիտեմք իսկ և այժմիկ զյոլովագոյնս 'ի մարդկանէ, և մանաւանդ անօրէնք գոլով, իբրու բարեւք և ստուգապէս արգելեալք լինին 'ի գեղեցկագունից շարամերձութենէ, ոչ ակամայ՝ իբրու ոչ մանաւանդ կամաւ:

Կղինիաս. Յո՞րժամ ասես:

Պղատոն. Յորժամ եղբայր կամ քոյր սորա լինիցին գեղեցիկք: Յաղագս ուստեր և դստեր նոյնս է օրէն, տարագիր գոլով՝ իբրու բաւականագոյն իսկ պահիցէ ոչ յայտնապէս և ոչ լռելեայն 'ի միասին ննջելով, և կամ այլաբար սիրելով մերձենալ 'ի սոսա. այլ և ոչ ցանկութիւն այսմիկ շարամերձութեանս ամենեւին մտանէ առ բազումս:

Կղինիաս. Ճշմարտապէս ասես:

Պղատոն. Ո՞չ ապաքէն փոքր ինչ բան՝ շիջուցանէ զամենայն զայսպիսի հեշտութիւնքս:

Կղինիաս. Զորպիսի՞ արդ ասէ:

Պղատոն. Զայսպիսի ասելս՝ ոչ միով իւիք արդարագոյնք, այլ աստուածատեացք իսկ և յոռիցն Թշուառականագոյնք: Եւ պատճառն արդեւք ոչ այս ինչ է՝ ոչ ուրուք այսպէս ասել զսոսա, այլ փաղփաղակի լինելով 'ի մէնջ՝ իւրաքանչիւր ոք լսելով առ յասողացն միշտ յամենայնի զայսոքիկ, ծիծաղելեօք իսկ համանգամայն և ամենայն փութով ասացեալ ողբերգականաւն բազում անգամ, յորում կամ զԹիւեստեանքն և կամ զոմանս ոդիպոդեանք 'ի ներքս ածցեն և կամ զմակարեանք ոմանք՝ ընդ քեռսն խառնելով գաղտաբար, և յանդիմանելով պատրաստաբար զմահ անձանց իւրեանց 'ի վերայ հասուցանելով պատուհաս մեղաց:

Կղինիաս. Ուղղագոյն ասես զայս ինչ, այսչափ զի համբաւոյն իրս սքանչելի ինչ զօրութիւն ընկալեալ է, յորժամ ոչ ոք ոչ և միով իւիք վերստին շնչել ձեռն-

արկութիւն արասցէ երբեք հեռագոյն յօրինացն։

Պղատոն. Ո՞չ ապաքէն ուղղագոյն այժմիկ արդասացեալս. զի օրինադրին կամելով զցանկութիւն ինչ ծառայեցուցանել՝ յայնցանէ որ զանազանապէս զմարդիկ են ծառայեցուցեալ, դիւրաւ ճանաչել իսկ, որով յեղանակաւ ըմբռնիցես արդեւք. քանզի սրբազանելով զհամբաւս զայսոսիկ՝ առ ամենայն ծառայից իսկ և ազատաց, և մանկանց և կանանց և բոլոր քաղաքին. ըստ նոցունց այսոցիկ այսպէս ստուգագոյն 'ի բաց գործեալ իցէ առ այսմիկ օրինիս։

Կղինիաս. Եւ յոյժ իսկ իրաւացի. այլ ո՞րպէս զայսպիսիս կամելով ասել ամենեցուն՝ հնար իցէ երբեք աւանդել։

Պղատոն. Բարեւք խորհեցար. քանզի այս ինչ նոյնս էր առ յինէն ասացեալն, եթէ արհեստ եւս առ այսմիկ օրինիս ունիցիմ՝ ըստ բնութեան վարիլ մանկածնութեամբն շարամերձութեան, յարուէ իսկ 'ի բաց կալով, և ոչ սպանանելով նախախնամութեամբ զսեռ մարդկան, և ոչ առ վէմս ինչ և քարինս սերմանելով, յորում ոչ երբեք զիւրն բնութիւն արմատացեալ ընկալցէ ծննդական, 'ի բաց կալով յամենայն իգական արօրավարէ՝ յորում ոչ ախորժէ քեզ բուսանիլ սերմանիլ։ Այս իսկ օրէնս հանապազ լինելով համանգամայն և յաղթեալ, որպէս այժմիկ առ ծնողացն 'ի միասին խառնմունս ընկալեալ է, թէ և առ այլսն յաղթիցէ՝ իրաւապէս բիւրինս բարութիւնս ունիցի։ Քանզի ըստ բնութեան իսկ յառաջագոյն՝ կացցէ 'ի տռփական կատաղմանէ և 'ի մոլութենէ, և յամենայն շնութեանց. և յըմպելեաց և 'ի կերակրոց խափանեցուսցէ յամենեցուն յանչափութենէ, և կանանց իւրեանց ընտանիք գոլ, և այլ յոյժ իսկ բազում բարութիւնք լինիցին թերեւս, եթէ զօրինացս այս բուռն հարկանել հնարաւոր ոք լինիցի։ Բայց թերեւս մատուցեալ ոմն առ մեզ՝ այլ հզօր և համբակ բազում արութեամբ լի գոլով, լսելով զօրէնքս դնելով մեր՝ բամբասիցէ թերեւս իբրու անխոհեմ և անհնար դնելով օրէնս, և աղաղակաւ լցուցանէ զամենայն։ Առ

որս ես հայեցեալ՝ զայս բանս ասացից, իբրու զարուեստ ինչ ասացեալ՝ ումեմն խելք ամենեցուն դիւրագոյն, և ումեմն դժուարմնգոյն առ այսմիկ եդեալ օրինիս կալն և մնալն. իմանալն իսկ արդ դիւրագոյն է՝ իբրու հնար իսկ է։ Եւ որպէս ասեմք, զի սրբազանեալ բուականապէս օրէնս այս՝ զամենայն հոգի հնազանդեցուցանէ և ամենեւին հանդերձ երկիւղիւ հաւանական առնէ եդեալ օրինացս։ Այլ զի յայս ինչ այժմ վտարեցաւ իբրու ոչ երբեք թուի լեալ, որպէս զուգահաղորդութեանցն խորհուրդն անհաւատալի լինի ոչ հնար գոլ, զի կարիցեն [1] ամենեցուն կենցաղոյս բոլոր քաղաք կեալ՝ գործելով զայս ինչ. սակայն երևեցաւ գործով լեալ առ 'ի ձէնջ։ Բայց տակաւին կանանցն զուգահաղորդութիւն ոչ առ ձեր քաղաքաց թուի բնութիւն ունել լինելոյ. զայսոսիկ վասն անհաւատութեան բնութեանն՝ զերկաքանչիւրքս ասացի ամենևին դժուարին գոլ՝ կալ և մնալ ըստ օրինին։

Կղինիաս. Ուղղապէս իսկ ասես։

Պղատոն. Արդ իբրու ոչ է գերագոյն քան զմարդ՝ լինելն զոր ինչ և ախորժիցէ, փորձ արարից ասել ձեզ բան՝ հուպ ումեմն հաւանականութեամբ։

Կղինիաս. Եւ ո՛րպէս։

Պղատոն. Այսուհետև որպէս յափրոդիտականնաց դիւրին է 'ի բաց կալ, և զկարգեալն այսոսիկ չափաւորապէս առնել ուրուք բարեւք ըստ մարմնոյն ունելով, և ոչ ռամկապէս կամ յոռին։

Կղինիաս. Եւ յոյժ իսկ իրաւացի, մանաւանդ թէ ոչ ռամկապէս։

Պղատոն. Ո՞չ արդեւք գիտեմք՝ զտարամտացին Իկկոս, վասն որոյ լուր գոյ զի վասն ոլաւմպիադացն աշխատութեան և վասն այլոցն արհեստական միձաբանութեանցն՝ հանդերձ ողջախոհութեամբ, զարիւթիւնն ստացեալ էր յանձին իւրում, իբրու բան է

1 Յօրինակին կայր չէառն. ուղղեցաւ ըստ յունին։ Զուգահաղորդութիւն՝ որպէս յառաջին գիրսն տեսաք, հասարակաց ճաշք են առ սպարտացիս՝ առհմանեալք 'ի Լիկուրգեայ։

ասել՝ եթէ ոչ 'ի կին ամն երբեք մերձեցաւ, և ոչ այլ ինչ խայտառակութիւն գործեաց յափրոդիտականացն, 'ի բոլոր երկարութիւնն կրթութեանցն։ Եւ արդ զԿրիւստոս և զԱստեղոս և զԴիոպոմպոս և զայլս ամենևին բազում նոյն ընկալեալ է բանս. և մանաւանդ իմոցն իսկ և քոյոցն քաղաքացեաց, ով Կլինիա, յոյժ վատթարագոյն է ինձ խրատեալ անձինքն, և մարմինքն յոյժ էին զօրեղագոյն։

Կղինիաս. Ճշմարտապէս ասես զայսոսիկ. զի յոյժ առ 'ի նախնեացն ասացեալ են յաղագս այսոցիկ նահատակացս՝ իբրու ճշմարտապէս երբեք լինելով։

Պղատոն. Զիա՞րդ. նոքա իսկ թերևս 'ի սակս յաղթութեան մրկամարտութեան, և ընթացից՝ և այլոց այսպիսեաց համարձակեցան 'ի բաց կալ յասացեալ առ 'ի բազմաց բարեբաստ իրողութենէ։ Իսկ մերքն մանկունք ոչ կարասցեն հանդուրժել, 'ի սակս յոյժ գեղեցկագոյն յաղթութեան, զոր մեք յոյժ գեղեցկագոյն 'ի մանկութենէ առ սոսա ասել՝ առապելօք իսկ և բանիւք և արդեամբք երգելով իբրու վայելչապէս խանդաղատեցուցանեմք զսոսա։

Կղինիաս. Որո՞յ իսկ։

Պղատոն. Հեշտութեանցն զյաղթութեամբն բուռն հարկանելով՝ կեալ թերևս բարեբաստապէս. և պարտելով զներհակն ամենայն առ սոքօք իսկ տակաւին երկիւղն, ոչ միով իւիք ոչ երբեք արդարագոյն սմա գոլ զօրութիւն մեզ. ո՞չ արդեւք ունիցի յաղթել այնոցիկ՝ որոց այլք յաղթեցին սոցունց գոլով վատթարագոյն։

Կղինիաս. Վայելչապէս իսկ։

Պղատոն. Քանզի այժմ իսկ աստանօր եմք յաղագս այսմիկ օրինի, և վասն բազմաց չարութեան անկաք 'ի տարակուսանս, ասացից զմերս իսկօրէն անարհեստաբար՝ գոլ պարտ յաղագս սոցունց այսոցիկ գնալով ասել իբրու ոչ է պարտ վատթարագոյն մերոցն գոլ քաղաքացեացն՝ հաւուց և այլոց գազանաց բազմաց, որք առ մեծագոյն երամքն ծնանելով՝ մինչև ցմանկածնութեանն անփորձ յամուսնութենէ և մաքուրք կացցեն. և յորժամ յայս ինչ հասցեն հա-

սակի՝ զուգաւորելով ըստ շնորհի արու ընդ իգի և էգ ընդ արուի, զայլ ժամանակն իրաւապէս և արդարապէս կացցեն, կալով և մնալով ստուգաբար յառաջինումն սիրոյ խոստովանութիւնս։ Արդ պարտ է դաղանացն սոցա վեհագոյնք գոլ։ Ապ'եթէ 'ի ձեռըն այլոցն ելլենացւոց և բարբարոսաց յոլովագունիցն ապականիցին՝ զասացեալն անկարգ Ափրոդիտէս յանձինս իւրեանց տեսանելով իսկ և լսելով՝ մեծագոյն ինչ ունել կարողութիւն. և արդ այսպէս ոչ հնարաւորք լինիցին յաղթել, երկրորդ օրէն առ սոքօք հնարել պարտ է օրինապահացն և օրինադրացն։

Կղինիաս. Զի՞նչ արդ խորհիս սոցունց դնել օրէն, թէ այժմ եդեալս 'ի սոցանէ Ձողոպրիցի։

Պղատոն. Յայտ է թէ զհուպն սորա երկրորդ, ով Կլինիա։

Կղինիաս. Զի՞նչ ասես։

Պղատոն. Ցամքուշ առնել մանաւանդ զհեշտութեանցն զօրութիւն՝ 'ի վերայ հոսման և սնընդեան նորին, 'ի ձեռն աշխատանաց, այլ՚ւբար դարձուցանելով զմարմնոյն. եղիցի արդեւք այս ինչ՝ եթէ առանց պատկառանաց ոչ իցէ, ափրոդիտականացն պէտս նուազապէս, սովաւ 'ի ձեռն տօթոյ վարելով տկարագոյն ստասցին զսա, սուղ ինչ վարելով այնոքիւք. քանզի զանխլին սոցունց այնպիսի ինչ գործելով բարի առ սոքօք իցէ օրինակին սովորութեամբ, և անգիր օրինօք օրինեալ։ Իսկ ոչ զանխլին գարշելի է, և երկրորդաբար բարի ունելով օրէնս ձեզ լեալ կացցէ ուղղութիւն, երկրորդ ունելով և զայնոսիկ որ ըղձնութիւնքն ապականեալ են, զորս նուազագոյնք սոցունց առասեմք. մին սեռ գոլով՝ պար առեալ զերիս սեռն բռնադատիցէ թերևս ոչ անօրինիլ։

Կղինիաս. Զորպիսի՞ ինչ։

Պղատոն. Զաստուածապաշտ համանգամայն և զպատուասէրն. և զոչ մարմնոցն՝ այլ յեղանակացն հոգւոյն գոլով բարիս եղեալն՝ առ 'ի ցանկութիւն։ Արդ այսոքիւք որպէս առասպելաւ այժմիկ ասացեալքս են եղծք, սակայն արիագոյնք եթէ լինիցին ժամենայն քաղաքս, և լինիցին արդեւք թէ կամի-

ցի ստուած, զմինն յերկոցունց յաղագս տափանացն բռնադատեսցուք, և կամ ոչ միոյն յանդրգնեալ՝ ոչ ուրուք մերձենալ առ այնոսիկ որ շամբուշքըն են համանգամայն նաև ազատք. բայց յամուսնութենէ կնոջ իւրոյ։ Իսկ անզօր հօրձից զաւակք և խորթք բնաւ ոչ սերմանել, և ոչ անծին արուաց օտար 'ի բնութենէ և կամ զարուացն ամենևին 'ի բաց բարձցուք։ Իսկ կանայքն՝ եթէ ոք շարամերձի առ ումեմն՝ բաց յայնցանէ որ հանդերձ աստուածովքն և սրբազան հարսանեօքն եկեալ իցեն առ տունսն, կամ առ գնածոյ ումեմն կնոջ, և կամ առ այլոց ոմանց զինչ և իցէ յեղանակաւ ստացական կանանց, ոչ զանխլելով իսկ յարանց և 'ի կանանց ամենեցուն, անպատիւ զսա թերևս յամենայն գովասանութեանցն որ 'ի քաղաքին են օրինադրելով՝ ուղղապէս թուեսցուք օրինադրել, իբրու ճշմարտապէս գոլով օտարական։ Այս իսկ օրէն թէ մի իցէ և եթէ երկու, զսոսա պարտ է առասել. կացցեն յաղագս ափրոդիտականացն, և յամենայն տափականացն՝ որչափ առ միմեանց վասն այսպիսի ցանկութեանցս կաճառելով՝ ուղղապէս իսկ և ոչ ուղղապէս գործեմք։

Մեգիլոս. Եւ այժմիկ, ով սիրելի, ես իսկ 'ի քէն յոյժ ընդունեցայց զօրէնս զայս. բայց սա Կլինիաս ինքս ասաց՝ եթէ զինչ երբեք յաղագս այսոցիկ տրամախոհի։

Կղինիաս. Իցէ այդ, ով Մեգիլլէ, յորժամ ինձ թուիցի հասանել ժամանակ. սակայն այժմիկ թողուցուք զսիրելիս՝ տակաւին յառաջ հասանելով օրինացն։

Պղատոն. Այլ սակայն այժմիկ գրեթէ յառաջեմք հասեալք՝ կազմելով իսկ զուգահաղորդութիւն, զոր ասեմք այլ ուրուք թերևս դժուարին գոլ, բայց 'ի Կրետէ ոչ այլպէս թերևս կարծիցէ լինել։ Եւ զինչ յեղանակաւ ասիցես, կամ իբրու աստանօր և կամ իբրու 'ի Լակեդոմոն. և կամ եթէ յայսցանէ երրորդ ինչ տեսակ զուգահաղորդութեանց 'ի մէջ սոցունց ունելով ինչ վեհ։ Զայս ինչ ոչ ինչ

դժուարին գտանել գոլ Թուի, և մեծ բարի գըտեալ ոչ ինչ գործել. և զի այժմիկ բարեկարգապէս ունելով կազմ...

Եթէ զինչ սոցունց Թերևս յեղանակ կենցաղավարիլ: Այլոց քաղաքաց պէսպէս..... կողմանց իցէ, և մանաւանդ 'ի կրկնապատկացս՝ քան եթէ 'ի նոցունց: Զի յերկրէ և 'ի ծովէ յոլովագունիցն եղենացւոց են կազմեալ կերակրոց իւրն. իսկ սոցունց միայն 'ի յերկրէ: Իսկ արդ օրինադրին այս ինչ դիւրին է. քանզի ոչ միայն մինչև ցկէսս իսկ լինիցին չափաւորք՝ այլ յոյժ նուազագոյնք, և տակաւին ազատ մարդկան մանաւանդ վայելելով: Քանզի նաւավարաց իսկ և ճանապարհաց և վաճառականաց և պանտոկապետաց և մաքսաւորաց, և այնոցիկ որ զելս քարանցն ինչ յերկրէ ունիցին, և փոխատրութեանց տոկոսով, և այլոց յոքունց այսպիսեաց՝ բազում իրս 'ի բաց հեռացեալ բարեաւ կալ և թողուլ սոցունց: Որ առ քաղաքաւս է՝ օրինադիրս երկրագործաց իսկ և անդէորդաց և մեղուագործաց, և այնոցիկ որ առ այսպիսիսն պահապանք իսկ են և վերակացուք գործեաց, օրինադրիցէ զմեծագոյնսն՝ օրինադրեալ յաղագս ամուսնութեան համանգամայն և ծննդոց մանկանց և սնընդոց տակաւին, և խրատու իշխանաց: Իսկ հաստատութեան 'ի քաղաքին՝ այժմիկ առ այնոսիկ որք զկերակուրն, և որչափ առ սա իսկ նոյնս աշխատիմք՝ հարկաւոր է օրինադրելովս դառնալ:

Նախ արդ օրէնք իցեն ասացեալք, անուամբ երկրագործ Արամազդայ իսկ օրինի՝ առաջին օրէնք իցեն ասացեալք այս իսկ. մի՛ ոք շարժիցէ զերկրի սահմանս, և ոչ ոք ոչ զընտանի քաղաքացւոյ և դրացւոյ իւրոյ, և ոչ զհոմասահմանի առ վերջինս ստացեալ այլոյ օտարի գոլով դրացի՝ կարծելով զանշարժսըն շարժել ճշմարտապէս գոլ զայս ինչ. այլ կամեսցի ամենայն ոք զվէմս շարժել. զայլ ոմն մեծագոյն ձեռնարկութիւն առնել, բաց 'ի սահմանէ մանաւանդ կամ 'ի փոքու քարէ, որ սահմանէ բարեկամութիւն և զթշնամութիւն երդմամբ առ 'ի յաստուծոցն. քանզի ումեմն հոմազգին Արամազդ վկայ, և ումեմն օտա-

րակմանն Արամազդ, որք հանդերձ պատերազմօք խստագունիւք յարիցեն։ Եւ որ հաւանիցի իսկ օրինացն՝ անփորձ առ 'ի նոցունց չարեն լինիցի. իսկ արհամարհողն՝ կրկին պատուհասից պարտապան իցէ. միոյ իսկ առ 'ի յաստուածոցն և նախկոյ, և երկրորդումն 'ի ձեռն օրինաց։ Զի մի ոք կամաւ չարժիցէ զերկրի սահմանս մերձաւորացն. և թէ չարժիցէ ոք՝ ազդեցութիւն արասցէ որ կամիցին առ երկրագործսն՝ և սոքա 'ի դատարանն ածելով և. թէ պարտապան իցէ ոք այսպիսի պատուհասին՝ իբրու զբաժանեալ երկիր լուելեան և բռնութեամբ առնելով իւրն, որ պարտապանն է պատուհասիցէ զնա դատարան[1]... յայնմիկ խորուէն, ոչ իւիք հանդիպի 'ի ջուր, առ 'ի դրացեացն առցէ ջուր, մինչև ցայն որ բաւական իցէ հարկաւոր ըմպելոյն իւրաքանչիւրոց ծառից։ Ապ'եթէ ստուգութիւն ունիցին առ ինչ դրացիքն կարգաւ ջրառութեամբ՝ ասելով առ 'ի վայր բաշխացն, ըստ իւրաքանչիւրում նոյնաւոր պահանջելով՝ այսպէս հաղորդիցի ջրով դրացեացն։ Ապ'եթէ...[2] յԱրամազդայ ջուրք լինելով՝ վերագոյն երկրագործող և կամ հոմապարիսպ բնակեալն, այնմ որ 'ի ներքոյ իւր է՝ վնաս ինչ ոք գործիցէ ոչ տալով հոսումն ջրոյ. և կամ ներհակ սորին՝ որ վերագոյնն իցէ՝ փոխաբերելով զգնացս հոսմանց վնասէ ստորագոյն, և առ այսոքիկ ոչ կամիցին վասն այսոցիկ հաղորդիլ միմեանց՝ 'ի քաղաքի իսկ զքաղաքօրէնն և յագարակի զվայրին բաշխիչն 'ի վերայ հասուցանելով՝ կամողին կարգիցէ թէ զինչ պարտ է առնել երկաքանչիւրոցն։ Իսկ որ ոչ կայ և մնայ 'ի նոյն կարգաւորութեան՝ մախանաց համանգամայն և չար անձին պատուհաս կրիցէ, և պարտապան գոլ կրկնապատիկ. զվնասն հատուսցէ կրողին վնասու, ոչ կամեցեալ իշխանացն հաղորդել։

Եւ մրգաց հաղորդութիւն պարտ է առնել ամե֊

1 Աստէն պակասին ի մերում Թարգմանութեան կրկին էջք բանից, զոր ունի յոյն բնագիրն։

2 Նաեւ աստ տողք ինչ անկեալք ի մերումն։

նեցուն այսպիսի ինչ։ Կրկին մեզ պարգեւս աստուածուհիս այսմիկ ունի շնորհաց. զոմն իսկ խրատ դիոնեսեան[1] առանց պահեստի, և զմիւսն 'ի պահուստ լինելով ըստ բնութեան։ Արդ եղիցի յաղագս մըրգաց այս ինչ օրէն կարգեալ. իսկ որ վայրաբնակք ուրուք մրգաց հանդիպի ճաշակելով, կամ ողկուզից կամ թզից՝ նախ քան զպալն ժամուն առնելոյն զկութըս՝ Առքտուռոսի զուգընթաց, կամ առ իւրսն վայրըս և կամ առ այլոցն սրբազանս իսկ, յիսուն պարտեսցի Դիոնիսուսի դրամ, թէ յանցանէ որ սորա են իսկ կթիցէ. ապ'եթէ 'ի մերձաւորացն, մնաս մի. ապ'եթէ յայլոց՝ երկու մասունս մնասի։ Իսկ այն որ զազոխն այժմիկ ասացեալ խաղող, և կամ զխակ թուզսն անուանեալ՝ մրգաքաղել կամիցի, թէ յիւրոցն իսկ՝ առցէ որպէս և կամիցի, և յորժամ ախորժիցէ պտղաքաղեսցէ. ապ'եթէ յայլոցն հաւանեցուցեալ ոչ, հետևելով օրինին՝ ոչ շարժելոյն զոր ոչ իցէ եդեալ[2], այնպէս միշտ տուժիցի։ Ապ'եթէ ծառայ իսկ՝ ոչ հաւանեցուցեալ զտէրն վայրուցն՝ մերձեսցի առ ինչ 'ի սոցանէ, ըստ ճռացն ողկուզիցըն, և թուոյն թզիցն հաւասարաթիւ սոցունց ըղգանս ընկալցի։ Իսկ փոխաբնակ՝[3] գնելով անհաս միրգն՝ մրգաքաղիցէ եթէ կամիցի զմիրգն։ Ապ'եթէ օտար ոք եկեալ՝ ցանկայ միրգ ուտել, գնալով ընդ ճանապարհն յայնոսիկ որ անհաս իցեն՝ մերձեսցի եթէ կամեսցի՝ զմի ոմն առնելով հետևող, առանց գնոյ օտարութեամբ պատիւ ընկալեալ։ Իսկ յայնցանէ որ վայրաբնակ անուանին, և յայնպիսեացն օրէնքն խափանէր ոչ հաղորդիլ մեզ օտարացն. ապա եթէ ոք պահապան գոլով ինքն և կամ ծառայ մերձեսցի՝ զծառայն իսկ գանիւք տանջել, և զազատն 'ի բաց արձակել՝ խրատելով և ուսուցանելով յայլոց

1 Յոյնն՝ παιδείαν Διονυσίαδα, զոր այլք թարգմանեն պտուղ դիոնիսեան որ է խաղող։

2 Զայս այսպէս օրինադրեալ էր Սողոն։

3 Յոյնն μέτοικος, գերի կամ ստրուկ թափառական՝ որոյ չիք ուրեք հաստատուն բնակութիւն։

մրգիցն ճաշակել՝ յայնցանէ որ պահելոց իցէ իսկ գինոյ և չոր թզից՝ անպատեհ իրս ստանալով։ Իսկ յաղագս տանձից և խնձորոց և նռանց և ամենեցուն այսպիսեացս՝ գարշելի ինչ ոչ իցէ լռելեան առնուլ։ Բայց որ ըմբռնեսցի 'ի ներքոյ եռասուն ամաց լինելով՝ հարցցի և սպառնասցի առանց գանից, և պատուհաս գոլ ազատի ոչ միոյ յայսպիսի գանիցս։ Իսկ օտարի՝ որպէս և մրգոցն, պարտ է այսոցիկ գոլ հաղորդ։ Ապ'եթէ ծեր գոլով մերձեսցի առ այսոսիկ ճաշակեալ 'ի սմանէ՝ և 'ի բաց տարեալ ոչ ինչ, որպէս օտարն այսպէս հաղորդեսցի։ Ամենայնի այսպիսեացն և ոչ հաւանեալն օրինացըն՝ վիճաք ընկալցի առանց նախհատակութեան լինել յաղագս առաքինութեանց, եթէ յայնժամ յաղագս սորա զայնժամ դատեալըն վերստին յիշեցուցանել։

Իսկ ջուր ամենայնի սննդական է, և այնոցիկ մանաւանդ որ առ պարտէզսն են, բայց յապականութիւն դիւրին է։ Զի ոչ զերկիր և ոչ զարեգակն, և ոչ զհողմս՝ ջուրցն խնընդակից են, այնոցիկ որ յերկրէ բխեն՝ դիւրին է ապականել դեղօք կամ դիւթութեամբք և կամ գողութեամբ. և առ ջրոյն բնութեան՝ են այսոքիկ ամենայն հնարաւոր լինել, վասն որոյ կարօտանայ օգնական օրինաց։ Եւ իցէ այժմիկ այս ինչ յաղագս սորա։ Եթէ ոք ապականիցէ կամ զջուր օտար գոլով, կամ աղբեր, և կամ 'ի միասին ժողովեալ կամ դիւթութեամբ կամ այլ ինչ հնարիւ, վնասեալն դատեսցի առ 'ի քաղաքաբաշխացն՝ զարժանսն վնասուն բացատրելով։ Ապ'եթէ պարտապան ոք իցէ դեղիւք ինչ վնաս արարեալ, առ պատուհասաւն մաքրեսցէ և զաղբեւրն կամ զամանն ջրոյն, որպէս և պատմողացն օրէնքն պատմեսցին պարտ գոլ լինել մաքրութեանն՝ յիւրաքանչիւր ժամու և յիւրաքանչիւրոց։

Իսկ յաղագս 'ի միասին հաւաքմանն ամենայն գեղեցկագոյն իրողութեանց, պարտ է ամենայնի որ կամի զիւրսն յամենայն ժամ հաւաքել՝ ուր և կամիցի, եթէ ոչ ինչ զոք տուգանիցէ, և կամ եռա-

պատիկ ինքն շահ մերձաւորին տուգանին շահեսցի։ Եւ այսոցիկ գիտողք զիշխանսն լինել, և այլոցն ամենայնի՝ որչափ կամաւ ակամայ 'ի վնաս արասցէ բռնութեամբ կամ լռելեան նորին իսկ՝ և կամ այնոցիկ որ նորայն են, 'ի ձեռն իւր կամ իւրոցն ստացուածոցն՝ զամենայն այսպիսիքս իշխանացն ցուցանելով՝ պատուհասեսցի մինչև ցերից մնասից գոլով վնասուն։ Ապ'եթէ ամբաստանութիւն մեծագոյն այլ՝ առ այլ ոք լինիցի, առ հասարակաց դատարանսն բերելով զհանդէս՝ պատուհասիցէ զանիրաւութիւն։ Ապ'եթէ ոք յիշխանացն կարծիցէ անիրաւ բնութեամբ դատել՝ զտուրժսն կրկնապատկացն պարտապան իցէ կրող ինքն։ Իսկ և զսոցունց իշխանացըն զանիրաւութիւնսն՝ առ հասարակաց դատարանսըն վերստին ածել կամողին զիւրաքանչիւրսն յամբաստանութեանց։

Եւ թիւրինս եղեալ սոցա և փոքունս օրինականս՝ ըստ որոյ պարտ է պատուհասիցն լինել, յաղագս գանից հանդիսաց. և առ կոչմանց և կոչարանաց, եթէ առ երկու և եթէ առ որչափ պարտ է կոչել, և զամենայն որչափ այսպիսի են՝ ոչ առանց օրինադրութեան պարտ է գոլ, և ոչ ծեր ումեմն օրինադրի արժանիս։ Այլ օրինադրելով սոցա համբակսն՝ ըստ յառաջագուրիցն օրինադրութեանցն 'ի բացնմանելով, փոքունս առ մեծս, և հարկաւոր պիտոյիցն անհմտաբար ունելով մինչև ցամենայն թերևս բաւականապէս ունիցին։ Եւ յայնժամ անշարժ առնելով՝ կենդանի ելով սոցունց, և չափաւոր ունելով՝ սոքօք վարելով զայլոցն։

Իսկ գոյացուցչացն իր՝ առնել պարտ է ըստ այսոցիկ. նախ իսկ գեղջուկ ոչ մի ոք իցէ յայնցանէ որ առ շինողական արհեստքն աշխատին և ոչ ծառայ տմարդի ուրուք. զի արհեստ բաւական բազում կըրթութեան համանգամայն և ուսմանց բազմաց կարօտացեալ է քաղաքացի այր՝ զհասարակաց զարդն քաղաքին շինելով իսկ և մնացուցանելով՝ ոչ առ վարկպարազի պատշաճ է խորհիլ։ Այլ երկու արհեստքըն կամ ձահաւորութիւնք երկու ստուգապէս գոր-

ծել՝ գրեթէ ոչ մի բնութիւն բաւական է 'ի մարդկայնոցս. և ոչ իսկ զմինն ինքն գործել, և զմիւսն այլոյ ուրուք յորդորեցուցանելով զնա գործել տալ զայս ինչ։ Արդ 'ի քաղաքի գոլով նախ առնել պարտ է՝ ոչ ոք դարբին գոլով հիւսն մականուանեսցի, և ոչ հիւսն գոլով՝ անուանեսցի դարբին, այլ իւրոյն փոյթ արասցէ՝ քան եթէ իւր արհեստին պատճառ ունելով՝ իբրու բազում ծառայից փոյթ առնելով անձին իւրոյ գոլով շինողաց՝ վայելչապէս մանաւանդ դարմանէ 'ի ձեռն նոցունց, վասն շահուն անդուստ սմա յոլովագոյն լինել քան եթէ իւրոյ արհեստին։ Այլ մի իւրաքանչիւր ոք մի արհեստ 'ի քաղաքի ստանալով՝ 'ի սմանէ համանգամայն և զկեանս ստասցի։ Զայս իսկ արդ զօրէնս քաղաքաբաշխք առ աշխատանըս ունելով՝ 'ի ձեռն սորա կելով և կեցուցանելով. և զոչ քաղաքացին՝ եթէ արհեստ ինչ խոտորի մանաւանդ քան եթէ յառաքինութեանն փոյթն, տանջելով իսկ նախատանօք և անարգանօք, մինչև ուղղիցեն զսա թերևս յընթացսն իւր։ Եւ յօտարացն իսկ եթէ ոք խորհեսցի առ երկուս արհեստս՝ կապանօք և ընչիւք տուգանօք և արտաքսելով 'ի քաղաքէն տանջեն և հարկեն զսա՝ մի միայն գոլ և ոչ բազում։ Եւ յաղագս վարձուց սոցա և հաճութեանց գործոցն՝ եթէ այլ ոք զսոսա, և կամ սոքա զայլ ոք անիրաւեսցեն՝ մինչև ցդրամ յիսուն քաղաքաբաշխն դատիցին, և զյոլովագոյնն այսոցիկ՝ հասարակաց դատարանքն ընտրութիւն արասցեն ըստ օրինացն։

Եւ հարկ ինչ 'ի քաղաքին ոչ ուրուք ոչ ինչ տալ՝ ոչ եկանելով ընչից, և ոչ 'ի ներքս մուծանելով։ Իսկ կնդրուկք և որչափ առ աստուածսն այսպիսի իցեն օտարական խունկք, և ծիրանիս, և որչափ զանազան գոյնք են առ գաւառսն՝ ոչ բերելով, և կամ առ այլ ինչ արհեստ՝ յարմարեալ օտարականաց ումանց ընչից՝ որ 'ի ներքս մուծանելի են, 'ի սակս ոչ ուրուք հարկաւորի, ոչ ոք իցէ իսկ. և ոչ յայնցանէ որ 'ի գաւառին կալ մնալ հարկաւոր են՝ արտաքս հանցէ։ Այսոցիկ իսկ ամենեցուն գիտողք գոլ և

դարմանողք հնգից օրինապահացն, 'ի բաց բառնալով երիցանցն զերկոտասանսն որ 'ի կարգին են։

Իսկ յաղագս զինից և ոչ որ առ պատերազմունսն են ամենայն գործոց՝ թէ ուրուք և կամ արհեստի կարօտանայ՝ զի 'ի ներքս մուծեալ լինիցի, և կամ անկոյ և կամ այլոյ ուրուք բրողական, և կամ շաղկապեալ ստացուածոյ, և կամ կենդանեաց ոմանց, 'ի սակս այսպիսի պիտոյիցս՝ հեծելազօրուք և զօրավարք իցեն տեարք սոցունց՝ 'ի ներքս մուծանելոյն և արտաքս հանելոյն, տալով իսկ համանգամայն և ընդունելով քաղաքին. և օրէնք յաղագս այսոցիկ օրինապահքն՝ զվայելուչսն իսկ և զբաւականսն դիցեն։

Եւ ընչավաճառութիւն 'ի սակս շահուց՝ ոչ այսուիկ և ոչ այլոյ ուրուք 'ի բոլոր գաւառին և 'ի բոլոր քաղաքին լինիցի մեզ։ Իսկ յաղագս կերակրոյ և բաշխման այնոցիկ որ 'ի գաւառէն՝ կրետացի օրինացն հուպ և նման ուղղութեան ուրուք լինելով՝ ըստ յեղանակի լինիցի։ Քանզի երկոտասան մասունս ամենայն ինչ 'ի գաւառէն լինելով՝ բաշխել պարտ է զամենայն ըստ որում և պարտ իսկ է ծախել զերկոտասաներորդ մասն իւրաքանչիւր իբրու ցորենոյ և գարւոյ՝ որոց և ամենայն հետևիցի այլ գեղեցիկքն՝ բաշխելով. և որչափ կենդանիք 'ի միասին ամենայն առ իւրաքանչիւրս իցէ վաճառի եռակի՝ բաժանիցէ ըստ համեմատութեանն. մի իսկ մասն ազատացն, և մի սոցունց ծառայից, և երրորդն շինողացն և ամենայն օտարաց։ Եթէ ոմանք ինչ 'ի սոցանէ առ բնակելոց իցեն բնակակիցք՝ հարկաւոր կերակրոյն կարօտանալով, և որչափ պէտք են ուրուք քաղաքի կամ ումեմն 'ի յռամկաց՝ 'ի ներքս հասցեն յիւրաքանչիւր ժամու՝ ամենայն հարկաւորացն բաշխելով առ երրորդ մասն, և վաճառեալ լինիցի 'ի հարկէ այս միայն։ Իսկ երկուց մասանցն ոչ մի իցէ հարկ վաճառել։ Եւ ո՞րպէս այսոքիկ ուղղապէս բաշխիցեն. յառաջագոյն իսկ յայտ է, զի զոմանս հաւասար՝ և զոմանս ոչ հաւասար բաշխեմք։

Կղինիաս. Ո՞րպէս ասես։

Պղատոն. Վատթարագոյն իսկ և լաւագոյն սոքա





իւրաքանչիւրք հարկ է բուսուցանել և սնուցանել երկրի։

Կղինիաս. Եւ որպէս։

Պղատոն. Իսկ այնմիկ՝ որ այժմ այսպիսի է մասանց երից գոլով, մի ինչ առաւել ունիցի, ոչ այն որ տերանցն կամ ծառայիցն իցէ բաշխեալ, և ոչ այն իսկ որ օտարացն. այլ զնմանութեանն հաւատարմութիւն բաշխումն զնոյնն բացատրիցէ՝ առեալ իւրաքանչիւր ոք 'ի քաղաքացեացն զերկուս մասունս, տէր իցէ բաշխմանն ծառայիցն. իսկ և ազատացն՝ որչափ և որպէս կամեսցի բաշխել. և զյոլովագոյնն այսոցիկ չափով իսկ և թուով. այսպէս պարտ է բաժանել առնլով զթիւն ամենայն կենդանեացն, որոց պարտ է յերկրէ սնընդեան լինիլ բաշխիչ։

Եւ յետ այսորիկ՝ սոցունց բնակութիւնք պարտ է որիշ գոլ կարգաւորութեամբ, և դասութիւն այսպէս վայել է այսպիսեացս։ Երկոտասան գեւղք գոլ պարտ է, և ըստ միջոցացս երկոտասաներորդ մասն մի մի իւրաքանչիւր. և յիւրաքանչիւրում գեւղս յառաջագոյն իսկ տաճարք առ վաճառարանն սրբազանել աստուածոցն իսկ, և հետևողացն աստուածոցն դիցն։ Ապ'եթէ ոմանք ներ տեղւոյն մագնետիցն[1] և կամ այլոցն շինուածոց նախնեացն նշխարք մնացելոցն իցեն սոցունց՝ բացատրելով զպատիւն նախնեացն մարդկան, և տունք իսկ Արամազդայ և Աթենայ, և որ առաջնորդիցէ թերևս այլոցն երկոտասանիցն իւրաքանչիւրում մասին, տաճարք յամենայն տեղիս շինել. և յառաջագոյն շինութիւնք գոլ առ տաճարացս այսոցիկ, ուր և բարձրագոյն տեղի իցէ պահանորդացն ընդունող՝ իբրու մանաւանդ ամրագոյն և յայտնի։ Եւ զայլ ամենայն գաւառն իսկ շինել շինողաց՝ երեքտասան մասունս բաժանելով, և զմիւսն 'ի քաղաքի բնակեցուցանել, բաժանելով զսա երկոտասան մասունս ամենայն քաղաքին, արտաքոյ

1 Ցայս անուն կոչեցան ոմանք 'ի բնակչացն կրետացւոց և գաղթականին, որոց օրէնս սահմանէ Պղատոն։ Տես 'ի սկիզբն չորրորդի գրոց օրինադրութեանս։

իսկ և շուրջանակի բաշխելով յիւրաքանչիւրում գեւղս՝ զպատշաճաւոր մասունս շինողացն՝ ընդ երկրագործացն բնակեցուցանել: Եւ դարմանողք գոլ այսոցիկ ամենեցուն ագարակաբաշխացն իշխանացն՝ որչափ և որոց ոմանց իւրաքանչիւր տեղին կարօտանայ, և ուր բնակելոցն՝ անտրտմագոյնք և օգտակարք իցեն երկրագործացն. և այնոցիկ որ 'ի քաղաքին են՝ ըստ այսոցիկ փոյթ առնել, և առ 'ի սոցանէ դարմանիլ քաղաքաբաշխացն իշխանութիւն:

Իսկ այնոցիկ որ վաճառացն պետք իցեն զիրս որ առ վաճառարանն են, պարտ է զիւրաքանչիւրս դարմանել, և փոյթ առնել հանդերձ տաճարօքն այց առնելով այնոցիկ որ առ վաճառարանն իցեն, զի ոչ ոք անիրաւէ ինչ 'ի մարդկային պիտոյից: Իսկ երկրորդն թերևս իցէ ողջախոհութեան իսկ և անարգանաց վերադիտողք գոլով տանջիլ զկարօտացեալն այսպիսոյ ուրուք: Իսկ յայնցանէ որ վաճառոյ իցեն՝ նախ իսկ զիրսն որ առ օտարսն կարգեալ են՝ վաճառել քաղաքացեացն, դիտել եթէ լինիցի ըստ օրինացն իւրաքանչիւր. և օրէն իցէ յամսեանն 'ի նորում աւուրն որոց պարտ է վաճառել օտարաց՝ զմանըն արտաքս հանելով վերադիտողացն, որչափ քաղաքացեացն օտարք և կամ ծառայք իցեն յորդորեցուցիչք երկոտասաներորդ մասն յառաջագոյն իսկ ցորենոյն և օտարին զամենայն ամսեանն գնել ցորեան, և որչափ առ ցորենոյն հետևին վաճառք յառաջնումն. և 'ի տասներորդումն ամսեանն զդալարագունիցն՝ ոմանք զվաճառումն, և ոմանք զգնելն արասցեն 'ի ձեռն բոլոր ամսեանն զբաւականն: Եւ 'ի քսաներորդին երրորդումն կենդանեացն իցէ վաճառումն, որչափ վաճառելի են իւրաքանչիւրոց, և կամ՝ գնելի այնոցիկ որ կարօտանան: Եւ որչափ անօթից և ընչից յերկրագործացն վաճառումն՝ իբրու մաշկեղինից և ամենայն օթոցաց կամ մանուածոյ և կամ թաղկելոյ և կամ այլոց ոմանց այսպիսեաց, օտարաց իսկ հարկաւոր՝ գնել առ 'ի յայլոց ստանալով: Իսկ զխոհակերութեանց վաճառ կամ գարոյ և կամ ցորենոյ յալիւր հատանելով. և կամ

զայլ ամենայն կերակուր՝ քաղաքացեացն իսկ և սո-
ցունց ծառայիցն, մի՛ ոք վաճառիցէ և մի՛ ոք գնեսցէ
առ 'ի յայսպիսոյ՝ յոչ և միոյ ուրուք՝ և ոչ ինչ։
Այլ յօտարացն վաճառս օտար գոլ վաճառեսցէ չի-
նողացն իսկ և սոցունց ծառայիցն. և զամենայն նիւթ-
այրելի զօրհանապազ՝ օտար որ և կամեսցի գնեսցէ
յանկարծակի առ 'ի յայնցանէ որ առ գեւղսն են
վերադիտողք, և վաճառեսցէ ինքն օտարացն՝ ըստ
որում և կամիցի, և յորժամ ախորժիցէ։ Իսկ այլո-
ցըն ընչից ամենայնի և անօթից՝ որչափ իւրաքան-
չիւրոց պէտք իցէ վաճառել, լինիցին առ հասարա-
կաց վաճառին բերելով զիւրաքանչիւր 'ի տեղին, յո-
րում օրինապահքն և ագարակաբաշխքն և քաղաք-
օրէնքն արուեստով հիմունս վայելուչք և սահմանք
դիցեն վաճառու տեսակացն։ Առ սոքօք փոխիլ դա-
հեկանք ընչից և ինչք դահեկանաց՝ ոչ յառաջելով
այլում զմիւսն 'ի վաճառ։ Իսկ որ յառաջէ հաւա-
տալով եթէ պահանջիցէ և եթէ ոչ՝ կրիցէ իբրու
ոչ ևս իրաւանց գոլով այնպիսեացն յաղագս փոխ-
մանցն, և գնեալն կամ վաճառեալն՝ որչափ և յո-
լովագոյն իցէ, և յոլովագոյն գնոց վաճառել, քան
եթէ ըստ օրինացն որ ասացեալն է, թէ որչափ
աճմամբ և կամ պակասութեամբ պարտ է ոչ զոք
'ի սոցանէ առնել վերստին, գրեսցի յայնժամ առ
'ի յօրինապահացն առաւելագոյն և գրեսցի ներ-
հակք։ Նոյնս իսկ և յաղագս փոխաբնակացն լիցի՝
յաղագս գրոյն գոյիցն հասանել այնմ որ կամեսցի
'ի փոխաբնակութիւն յայտնի բանիւք, իբրու բնա-
կութեան գոլով օտարացն՝ այնմիկ որ ախորժիցէ, և
կամիցէ բնակել արհեստ ստանալով, և գոլով ոչ
յոլովագոյն ամաց քան եթէ քսանից, յորմէ հետէ
թերևս գրիցի։ Բայց փոխաբնակելոյն ընծայ ինչ
հատուցանել ոչ է պարտ՝ բայց յողջախոհելոյն, և
ոչ այլ ինչ հատուցումն 'ի սակս ումեմն գնոյ կամ
վաճառելոյ. և յորժամ հասցեն ամքն՝ զիւրն առնը-
լով գոյս 'ի բաց գնասցէ։ Ապ'եթէ ներքոյ ամացս
այսոցիկ պատահեսցի սմա բանի արժանի ելով առ
'ի յերախտիս քաղաքին լինել ինչ բաւական, և վըս-

տաց իցէ հաւանեցուցանել զխորհուրդ և զժողովուրդ, եթէ ներութիւն ինչ արտաբնակութեանն աղաչիցէ լինել իւր տիրապէս և կամ առ ամենայն կենցաղին ամենևին կալ և մնալ, 'ի վերայ հասեալ և հաւանեցուցեալ զքաղաքն յոր ինչ հաւանեցուսցէ իսկ՝ այնոքիկ սմա կատարեալ լինիցի։ Իսկ մանկանցն փոխաբնակացն շինողք ելով՝ և լինելով ամաց հնգետասանից փոխաբնակութեանն իսկ, սկսանի այն որ յետ հնգետասաներորդ ամին է. և յետ այսորիկ կացցէ ամս քսան, ուր և սիրելի իցէ սմա և հաճոյ, և մնալ թէ ախորժիցէ ըստ այսոցիկ՝ մնասցէ, և տացէ զգիրս զորս առ իշխանացն սորա յառաջագոյն։

# ՊՂԱՏՈՆԻ

## ՕՐԷՆՔ ԿԱՄ ՕՐԷՆՍԴՐՈՒԹԻՒՆ

### ԻՆՆԵՐՈՐԴ



Պղատոն. Դատաստանք արդ յետ այսորիկ լինելով հետեւողք յառաջագոյն ամենայն գործոցն գոլով, ըստ իւրին լինիցին գեղեցկայարմարութեանն օրինացն։ Յաղագս որոց լինիցին դատաստանք ինչ, քանզի յառաջագոյն ասացաւ երկրագործական օրէնքն, և որչափ սոցունց հետեւիւր։ Իսկ մեծագոյնքն ոչ եւս են ասացեալ. բայց մի ըստ միոջէ իւրաքանչիւր ոք 'ի սոցանէ հայելով զոր ինչ պարտ է ընկալող սոցա պատուհաս, և որոց այլ ումեմն դատաւորաց հանդիպիլ, յետ այնոցիկ զայսոսիկ ըստ կարգի ասել պարտ է։

Կղինիաս. Ուղղապէս այդպէս է։

Պղատոն. Ամօթալի է արդ այլ ինչ յեղանակաւ օրինադրել զամենայն՝ որչափ այժմիկ ինչ հանդերձեալ եմք զայս ինչ գործել յայսպիսի քաղաքիս՝ զորմէ ասեմք առաքինութեան խորհրդոց, և 'ի սմա զայն ինչ՝ որ արժանի լինիցի այլոցն անկարգութեանցն մեծագունիցն բնաւորիլ ումեմն հաղորդ գոլով. իբրու զի պարտ իցէ օրինադրել աձապարելով սպառնալով՝ եթէ ոք այսպիսի լինիցի. և 'ի սակս սոցունց ուղղութեան և եղելոցն սխալանաց՝ պատուհաս դնել 'ի վերայ նոցա ըստ օրինացն, եթէ այնպէս լինիցին, որպէս ասացաք, գարշելի իսկ յեղանակաւ։ Քանզի ոչ իբրու նախնու օրինադիրքն՝ աստուածոցն մանկանց օրինադրելով դիւցազանցն, իբրու այժմիկ բանըս ինքն յաստուածոցն գոլով, և այլոց յայսպի-

սեաց եղելոց օրինադրէին. այլ մարդկաց իսկ և նոցունց ծննդոց օրինադրեմք առանց մախանաց. Երկրնչել պարտ է, զուցէ լինիցի ոք մեզ 'ի քաղաքացեաց՝ կարծր և անանցանելի առ այսպիսիքս բնութեամբ լինելով, իբրու զի ոչ հալեսցին՝ որպէս այն իսկ սերմանքն զորս եղջերահանդեալքն[1] անուանեն, հրով ոչ եփին. և ոչ սոքա օրինօք, և մանաւանդ այսպիսի խստագոյնք գոլով անմաշք իցեն։ Ի սակս որոց վայրապարք ոչ իցեմք զառաջին օրէնս յաղագս տաճարաց կապտելոյ դնել, եթէ ոք յայս ինչ յանդգնի, քաղաքի իսկ 'ի սնուցելոցն ուղղապէս՝ ոչ արդեւք կամեսցուք, և ոչ յուսամք ամենեւին ախտանալ ինչ երբեք զայսպիսի խօթութիւնս։ Ծառայք սոցունց թերևս՝ օտարք և օտարաց ծառայք, բազում անգամ առ այսպիսիս առնեն ձեռնարկութիւն. 'ի սակս որոց մանաւանդ 'ի միասին յամենայն մարդկային բնութեանս տկարութենէն խորշելով՝ ասեմ զյաղագս տաճարակապտաց օրէնսն, և այլոցն ամենեցուն այսպիսեացս՝ որչափ դժուարաբոյժ իսկ են և անբոյժք։

Բայց նախերգան սոցունց ըստ յառաջագոյն խոստովանեալ բանին նախասելի է ամենեցուն, իբրու դուզնաքեայ ասիցէ արդեւք առ այնմիկ տրամաբանելով համանգամայն և մխիթարելով՝ զոր չար ցանկութիւն գրգռելով 'ի տուընջեան իսկ և 'ի գիշերի զարթուցանելով ածէ առ տաճարացն կողոպուտն՝ զայս ինչ. Ո՛վ սքանչելի, ոչ մարդկայինս քեզ չար և ոչ աստուածային զքեզ այժմիկ շարժէ առ տաճարակապտութիւնդ դարձուցանելով հասանել. այլ մոլորութիւն ինչ բնաւորեալ 'ի նախնի և անմաքուր մարդկան ապիրատութենէ շրջաբերեալ այլազգանցական, յորմէ խորշել պարտ է ամենայն զօրութեամբն։ Եւ եթէ զինչ է խորշումն՝ ուսի՛ր։ Յորժամ հասցէ առ քեզ ինչ յայնպիսի ւանդութեանցն, հասիր առ Արամազդայ մաղթութիւնսն՝ որ են դիոմպոմպեանքն. հասիր առ աստուածոցն այնոցիկ որ

[1] Յոյնն՝ κεράςβολος եղջիւրաբոյսք։

դարձուցանողքն են առ տաճարքն մաղթանօք. հասիր առ ասացելոցն 'ի ձէնջ բարի արանցն զուգաւորութիւն, և զոմանս լուր և զոմանս ասել փորձեա դու, որպէս պարտ է զբարիսն և զիրաւացիսն ամենայն առպատուել։ Իսկ 'ի չարեացն զուգաւորութենէ անդառնալի իսկ փախիր. և եթէ զայսոքիկ գործելով ոք՝ դադարեսցէ իսկ ախտն. ապա եթէ ոչ՝ դեղեցկագոյն մահ խորհելով 'ի բաց հրաժարելոյ 'ի կենցաղէս։

Զայսոսիկ մեր երգելով նախերգան այնոցիկ որ զամենայն այսպիսիքս խորհին, որչափ անարդարագոյն գործք են և ապականիչք քաղաքի, զայն իսկ որ հաւանին օրինացն լռելեայն՝ թողուլ պարտ է, և առ այնն իսկ որ անհաւանն իցէ՝ յետ նախերգանին երգել մեծաձայնապէս։ Եւ որ ըմբռնիցի զտաճարս կողոպտելով, եթէ ծառայ իցէ և կամ օտար, յերեսս և 'ի ձեռսն գրելով զվնասն՝ առցէ գանս որչափ և թուիցի դատաւորացն, և արտաքոյ սահմանացն գաւառին մերկ ելցէ։ Զի թերևս հատուցանելով զայս ինչ պատուհաս՝ ողջախոհ լինիցի լաւագոյն. զի ոչ վասն չարի լինիցի պատուհաս ոչ և միոյ՝ ըստ օրինացն պատուհաս լինելով, այլ երկոցունցն գրեթէ զմինն 'ի բաց գործիցէ. զի կամ լաւագոյն, և կամ՝ նուազ չարագոյն գործիցէ զայն որ հատուցանէ զպատուհասն։

Իսկ քաղաքացի եթէ ոք այսպիսի ինչ գործելով՝ երևեսցի առ աստուածսն կամ առ ծնողս կամ առ քաղաքն անիրաւեալ 'ի մեծագունիցն ինչ և յանճառելեացն ապիրատութեանց, իբրու անբոյժ իսկ զայնպիսին գոլով համարիցի դատաւորն, խորհելով թէ որպիսի՛ խրատու իսկ և սնընդեան 'ի մանկութենէ հանդիպեալ՝ ոչ 'ի բաց եկաց 'ի մեծագոյն չարեացն. պատուհաս արդ սմա մահ՝ դուզնաքեայն 'ի չարեացն։ Իսկ զայլոցն շահեցուցանէ այս ինչ, լինելով առանց գովասանութեան, 'ի հեռագոյն սահմանացն գաւառին աներևան լեալ։ Իսկ մանկանց և ազգին՝ եթէ ճողոպրիցին 'ի հայրենի բարուցն, իցէ գով և բան պատուական ասելով, իբրու բարեւք ասելով և արիապէս 'ի բարութիւն 'ի չարէ ճողոպրելոց։

Եւ ասին ինչք ոչ միոյ այսպիսեացս քաղաքավարութեան՝ վայելուչ իցէ թերեւս լինել, յորում պարտ է զնոյնս միշտ և հաւասար գոլով՝ կեալ վիճակացն և տուժից հատուցմունք, յորժամ անիրաւել արժանի թուիցի որ ընչից հատուցանել. եթէ իցէ ինչ վիճակին կազմութեանն՝ առաւելագոյն մինչև ցայսչափ տուրժելով, իսկ առաւելագոյն ոչ: Եւ զայսոքիկ ստուգութիւնն յօրինատպացն գրոցն դիտելով՝ զհաւաստին միշտ պատմելով դատաւորաց. իբրու զի այսպիսի վիճակացն՝ խափանեալ ոչ ոք ոչ երբեք լինիցի վասն անկարողութեան ընչից: Բայց տուգանաց եթէ առաւելագոյն ոք արժանի գոլ թուիցի, եթէ ոչ արդեւք ոմանք կամիցին զսա 'ի բարեկամացն երաշխաւորել իսկ, և 'ի միասին հատուցանելով ազատելոյ երկարժամանակեայ, և յանդիման կապանօք և սպառնալեւք ինչ տանջել:

Բայց անպատիժ ամենեւին ոչ ուրուք ոչ երբեք գոլ առ ոչ միոյ սխալանացն, և ոչ հեռագոյն 'ի սահմանացն փախստական: Իսկ զմահ կամ զկապանս, կամ զգան կամ զայլ ինչ՝ առանց գեղեցկութեան աթոռս, կամ որ'ի կանգուն իցեն կամ յարակցութիւնք ներքոյ տաճարաց առ վերջինման վայրին, և կամ ընչից՝ որպէս յառաջագոյն ասացաք, հատուցմունք լինել պատուհասիս այսմիկ լինիցի. և դատաւորք իցեն յաղագս մահու՝ օրինապահքն իսկ և նախնի իշխանացն ընտրեալքն, բաժանելով 'ի մի դատարան: Իսկ ներքսածութիւնք սոցունց և կոչմունք և որչափ այսպիսիք պարտ է լինել՝ կրսերագոյն օրինապահացն պարտ է այսոցիկ փոյթ առնել: Բայց զքննութիւն և զդատակնիքն՝ մեր գործ է օրինադրել: Եղիցի արդ յայտնապէս եդեալ դատակնիքն, և նախ քան զայս իսկ ըստ բերանոյն հալածողին. և յայնմ որ փախչի՝ դատաւորն 'ի կարգի մեզ մերձաւորագոյն ըստ աւագութեան նստիցի. և ամենայն քաղաքացիքն որչափ թերեւս պարապումն ունիցին՝ լսողք իցեն փութով այնպիսի հանդիսիցն: Եւ ասել միաբան յառաջագոյն իսկ հետեւողին, և այնմ որ փախչի՝ երկրորդ: Եւ յետ բանիցս այսոցիկ՝ սկսանել ծերա-

գունին վերստին ընտրելով և հաստանելով յաստացելոցն բաւական խնդութիւն. և յերիցագունին ՚ի կարգի ամենեցուն՝ պարտ է պատմել զոր ինչ առ յերկաքանչիւրոցն ոք հանդիսակցաց ասացեալ մակագրիցէ ումեմն յեղանակաւ, իսկ որ ոչ փափաքի՝ այլում զվերստին ընտրութիւնն բացատրիցէ։ Եւ զասացեալն կնքելով գրոք՝ որչափ զօրաւոր գոլով թուիցի, և նշանս ՚ի վերայ արկանելով ամենայն դատաւորացն՝ դնել առ տունն[1]։ Եւ դարձեալ ՚ի վաղիւն ՚ի միասին հաւաքելով, և այսպէս իսկ վերըստին դատելով պատմելով զիրաւունսն, և նշանս ՚ի վերայ արկանելով ասացելոցս սոցունց, և երից անգամ առնելով զայս ինչ, և նշանս իսկ և վկայք բաւականապէս ըմբռնելով՝ համար սրբազանն իւրաքանչիւրում բերելով, և խոստանալով առ տունն ըստ զօրութեանն զարդարն և զճշմարիտն դատել, այսպէս ՚ի կատարած հաստուցանել զայսպիսի հանդէսս։

Իսկ յետ այնոցիկ՝ որ առ աստուածոցն են իրս, զայնոսիկ որ առ լուծումն են քաղաքավարութեանն՝ որ հաստուցանէ արգելք յիշխանութիւն զմարդն, և ընդ ծառայութեամբ զօրէնսն առնէ, և ընկերութեան զքաղաքն հպատակ գործէ, և բռնաբար իսկ զայս ամենայն գործելով և հակառակութիւն յարուցանելով անօրինի, զսա իսկ զմտաւ ածել պարտ է ամենեցուն՝ հակառակ գոլ բոլոր քաղաքին։ Իսկ զայնոսիկ որ հաղորդ այսպիսեացս ոչ միոյ իցէ՝ այլ մեծագոյն իշխանութեանցն ՚ի քաղաքին հաղորդիցէ, և զանխլելով այսոցիկ ՚ի սմանէ կամ ոչ զանխլելով՝ զանգիտմամբ իսկ վասն հայրենի քաղաքին ոչ պատուհասելով, պարտ է երկրորդ վարկանիլ զայնպիսին քաղաքացին չարութեամբ։ Բայց ամենայն այր որոյ և փոքր ինչ շահ իցէ՝ ցուցցէ իշխանութեանց՝ ՚ի դատաստան ածելով զխորհողն առ քաղաքավարութեանն, հանդերձ հակառակութեամբ համանգամայն և անօրինեալ. և դատաւորք իսկ իցեն

1 Յոյնն՝ ՚ի պատճառն Եսթերայ։

այնոցիկ այսոքիկ որ տաճարակապտիցն. և զամենայն դատ այսպէս սոցունց լինել՝ որպէս և նոցունց, զդատակնիքն մահ բերել բազմութեամբ յաղթելով: Եւ միով բանիւ, հօր նախատանաց և պատուհասի մանկանց՝ ոչ ուրուք 'ի միասին հետևիլ: Սակայն եթէ հայր ուրուք և կամ հաւ և կամ հաւու հայր 'ի կարգի կրիցեն զմահուան պատուհասն, և զսոսա քաղաքն՝ ունելով զիւրեանց գոյսն, սակայն որչափ կազմելով վիճակին ամենևին յիւրեանցն նախնի առաքեսցի գաւառն և քաղաքն, և որոց արդեւք 'ի քաղաքացեացն ուստեք գոլով հանդիպիցին յոլովագոյնք միոյ և ոչ նուազս քան եթէ տասնամեայք եղեալ վիճակի սոցունց տան, զորս բացասիցեն հայր և կամ հաւ՝ առ 'ի հօրէ կամ 'ի մօրէ, և զհասելոցն վիճակաանուանս՝ առ եղբարսն առաքելով. զոր և ընտրիցէ աստուած ժառանգորդ հաստատել 'ի տունն պակասելոցն լաւագոյն հանդիպմամբ: Եւ տակաւին երրորդ հասարակաց իցէ մի օրէն յաղագս դատաւորաց իսկ՝ որոց իցէ դատել զսոսա. և յեղանակն դատաստանացն՝ որոց մատնութեան պատճառ 'ի վերայ բերելով 'ի դատարան ածցէ, և մնալոյ նոյնպէս և ելանելոյ ծննդոցն 'ի գաւառէն մի իցէ, առ այսոցիկ օրէն այս իսկ՝ երիցս մատնչի և տաճարակապտի՝ և զտաճարին օրէնսն բռնութեամբ կորուսանողի: Իսկ աւազակաց՝ եթէ զմեծ ինչ և եթէ զփոքր գողանայ ոք՝ մի իսկ օրէն 'ի վերայ կացցէ, և միոյ դատաստանի ամենեցուն պատուհաս: Զի զգողացեալն պարտ է կրկնապատիկ յառաջագոյն հատուցանել, եթէ պարտապան իցէ ոք այսպիսի պատուհասի, և կարող իցէ զայլգոյնսն հատուցանել վասն վիճակին. ապ' եթէ ոչ՝ կապեսցի մինչև հատուսցէ, և կամ հաւանեցուսցէ զդատապարտողն: Ապ'եթէ ոք պարտապան իցէ գողութեան, հրապարակաւ պատուհասի հաւանեցուցեալ զքաղաքն, և զգողացեալն հատուցանել կրկին, 'ի բաց ելցէ 'ի կապանացն:

Կղինիաս. Որպէս ասեմ, ով սիրելի, ոչ ինչ զանազանիլ գողանալոյն մեծ ինչ կամ փոքր առնլով, կամ 'ի տաճարաց կամ յայլոց ապախտ տեղաց, և

որչափ այլ են ըստ գողութեանն՝ զամենայն անընմանութիւն ունելով, որոց պարտ է պէսպէս գոլով հետեւիլ օրինադրին, ոչ նմանապէս տուժիւք տուժել։

Պղատոն. Արիապէս, ո՛վ Կլինիա, գրե իսկ թէ զիս իբր ունջամբ բերեալ հանդէպ բախելով զարթուցեր, և զմտաւ ածելով և այլ ինչ յիշեցուցեր. զի որ առ օրինացն դրութիւնն են, ոչ իւիք յեղանակաւ երբեք ևս եղեն ուղղապէս աշխատեալ. իբրու զի այժմիկ առ հասեալ բանիս ասելի է, որպէս և զայս ինչ ասեմ, ոչ չարաբար նմանեցուցաք յորժամ ծառայից իբրու բժշկելով ՚ի ձեռն ծառայից նմանեցուցանեմք զամենեսեան զայսոսիկ որ այժմիկ ընդ օրինադրութեամբ են. զի քաջ գիտել պարտ է զայսպիսի ինչ, իբրու թէ հասցէ ոք երբեք բժիշկ յայնցանէ որ հմտութեամբ առանց բանի զբժշկականն ընձեռեալ են. և ազատք ընդ ազատք հիւանդի տրամաբանելով բժիշկ՝ իմաստասիրելոյ հուպ վարելով իսկ բանիւք, բուռն հարեալ զցաւոցն յաղագս բնութեան վերստին պատմելով զմարմնոյն, վաղվաղակի ծիծաղեսցի թերևս, և ոչ արդեւք զայլս ասիցէ բանս, այնոքիկ որ առ այսպիսիքս միշտ առձեռն պատրաստեալ են յոլովագունից ասացելոյ բժշկաց՝ զի ասիցէ.... տուն ոչ բժշկես զհիւանդացեալդ, այլ գրեթէ խրատես իբրու զբժիշկ այլ ոչ ողջ կարօտացեալ լինել, ո՛չ ապաքէն ասելով զայսուիկ.ուղղապէս թերևս ասիցէ։

Կղինիաս. Թերևս իսկ, եթէ միտս ածցէ զայս ինչ, իբրու զի որ յաղագս օրինաց այսպէս պատմէ՝ որպէս մեք այժմիկ, խրատէ զքաղաքաց, այլ ոչ օրինադրէ։

Պղատոն. Ո՞չ արդեւք զայս ինչ ըստ յեղանակի ասելով երևեսցի։

Կղինիաս. Թերևս։

Պղատոն. Բարձրաւանդակի հանդիպմամբ... եալ իրս եղև։

Կղինիաս. Որպիսի՞ լինի։

Պղատոն. Եւ ոչ... մի գոլս մեր օրինադրել, այլ ինքեանց առ խնդ... լինելով յաղագս ամենայն

քաղաքավարութեան, ջանալ զարիագոյնն իսկ և զհարկաւորագոյնն, թէ եւ յեղանակաւ լինելով լինիցի։ Եւ արդ այժմ իսկ այս ինչ պատշաճել է, իբրու թուի թէ ախորժիցեմք զլաւագոյնն դիտել, և կամիցիք զհարկաւորագոյնն յաղագս օրինացն ընտրել թէ որ թուի։

Կղինիաս. Կարծրական իսկ, ով սիրելի, նախադրելով զընտրութիւնք և անարհեստաբար, իբրու ընկալեալ օրինադրացն նմանս լինիմք արդեւք 'ի ձեռն մեծի ուրուք հարկի աւասիկ օրինադրել իբրու տակաւին պատշաճ ոչ գոլ 'ի վաղիւն։ Այլ մեզ ասել պարտ է հանդերձ աստուծով իբրու շինողաց ոմանց, և կամ այլ ումեմն բաղկացութեան սկսելոց... բերել ծաւալմամբ առ մեզ, յորոց ընտրեսցուք վայելչականք լինել հանդերձեալ բաղկացութեանս։ Եւ արդ ըստ պարապման ընտրել դիցուք զմեզ այժմիկ գոլ՝ ոչ զայնոքիկ որ 'ի հարկի շինէն, այլ զայնոսիկ որ պարապմամբ տակաւին.... զոմանս յարադնելով, և զոմանս բաղկացուցանելով. իբրու զի ուղղապէս ունիցի զոմանս յօրինացն՝ ասել իբրու եդեալք, և զոմանս իբրու յարադնելով։

Պղատոն. Եղիցի արդ, ով Կլինիա, ըստ բնութեան մեզ մանաւանդ 'ի միասին տեսութիւնս օրինացն. զի տեսցուք առ 'ի յաստուծոյ այսպիսի ինչ յաղագս օրինացն։

Կղինիաս. Զորպիսի՞ ինչ։

Պղատոն. Գիրք իսկ և ներգիր բանք, և այլոց բազմաց առ քաղաքսն գրեալք գիրք իսկ. և այնոքիկ որ օրինադրին են բանք։

Կղինիաս. Ո՞րպէս։

Պղատոն. Ո՞րպէս. արդ այլ շարադրութեանցն քերթողացն, և որչափ առանց չափուց և չափօք զնոյն խորհուրդն յաղագս կենցաղի շարագրելով նայիմք մտօք, և օրինադրացն ո՞չ ամենեցուն մանաւանդ։

Կղինիաս. Յոյժ իսկ։

Պղատոն. Այլ աւ... պարտ օրինադրին միայն 'ի գրողացն յաղագս.... բարեաց և արդարոց 'ի միա-

սին խորհիլ ուսուցանել որպէս էն իսկ, և իբրու պարտ է խորհիլ առ սոսա՝ հանդերձեալ են գոլ բարեբաստք։

Կղինիաս. Եւ ո՞րպէս։

Պղատոն. Այլ գարշելի՞ է մանաւանդ զՀոմերոս և զՏիւրտէոս և զայլոն քերթողք յաղագս կենցաղի իսկ համարել գրեալ, և Լիւկորգոսի և Սողոնի օրինադիրք եղեալք գիրք գրեցին նուազ։ Ո՞չ մանաւանդ ուղղապէս ամենեցուն պարտ է գրոցն որ առ քաղաքն են զոր առ օրէնսն գրեալ իրս, երևիլ արտաքս ձգեալ, երկար և գեղեցկագոյն է և արիագոյն այլոցն իրս, քան եթէ ըստ այնոցիկ 'ի միասին հետևելով 'ի սոյանէ երկբայիլ գոլով ծիծաղական։ Այսպէս տրամախոհեսցուք յաղագս օրինացն գրոյ. պարտ գոլ լինել քաղաքացն՝ հօր իսկ և մօր ձևով սիրելով և միտս ունելով երևիլ գրելոցս, քան եթէ ըստ գոռոզի և տեառն կարգելով և սպառնալով գրել 'ի պարիսպս։ Եւ այսպէս 'ի բաց կալ դիտեսցուք արդ և այժմիկ մեք, որպէս ջանասցուք ասել տրամախոհելով յաղագս օրինացն, եթէ հնարաւորիմք արդ և եթէ ոչ. այլ սակայն յօժարութիւն առտուեսցուք, և ըստ այսմիկ ճանապարհի գնալով, եթէ պարտ իցէ ինչ թերևս կրել՝ կրեսցուք. բայց բարի իցէ, և եթէ աստուած կամի, լինիցի արդեւք այսպէս։

Կղինիաս. Բարեւք ասացեր, արասցուք իբրև ասեսդ։

Պղատոն. Խորհիլ պարտ է նախ իսկ թերևս, որպէս ձեռնարկութիւն արարաք, ստուգապէս զայն իսկ որ յաղագս տաճարակապտացն և ամենայն աւազակութեան, և 'ի սակս անիրաւութեանց ամենեցուն, և ոչ է պարտ դժուարանալ եթէ համանգամայն օրինադրելով զոմանս եդաք, և յաղագս ոմանց տակաւին դիտեմք զի օրինադիրք լինիմք, այլ ոչ եւս եմք, բայց թերևս արդեւք լինիցիմք. եթէ թուի ձեզ, յաղագս որոյ ասացի՝ դիտեսցուք։

Կղինիաս. Ամենեցուն իսկ արդ։

Պղատոն. Արդ 'ի սակս բարեաց և ամենայն իրաւանց ջանասցուք տեսանել զայսպիսի ինչ՝ թէ ուր

երբեք 'ի միասին խոստովանիմք այժմիկ, և ո՛ւր զանազանիմք մեք 'ի մէջ իսկ ինքեան, որք այժմ ասեմք թերևս յօժարիլ իսկ. և կամ այլ ոչ ինչ զանազանիլ յոլովից, և բազում իսկ նոյնք առ ինքեանք։

Կղինիաս. Զորպիսի՛ արդ տարբերութիւնք մեր զմտաւ ածել ասես։

Պղատոն. Եւ փորձեցից ասել յաղագս արդարութեան բոլորովին, և արդար մարդկանն իսկ և իրողութեանցն և գործոյն, որպէս ամենեքեան 'ի միասին խոստովանիմք զայս յամենեսեան գոլ բարի. իբրու զի ոչ ոք հակառակելով ընդդիմասցի գոլ զարս արդարս՝ եթէ և հանդիպիցին գարշելիք գոլ մարմնով, սակայն ըստ արդարագոյն բարուցն՝ այսպէս գոլ ամենագեղեցիկ։

Կղինիաս. Գրե եթէ ոչ ոք թերևս ասելով այդպէս՝ անյարմար թուիցի ասել։

Պղատոն. Ո՛չ ապաքէն ուղղապէս թերևս։ Այլ տեսցուք իբրու թէ ամենայն բարի է, որչափ հուպ է յարդարութիւն, ամենեցուն իսկ և կիրքն են մեզ գործոցն հաւասար։

Կղինիաս. Զի՞նչ արդ։

Պղատոն. Գործ իսկ որ և իցէ արդար՝ գրեթէ որչափ իրաւանց հաղորդի՝ ըստ այսչափ լինիցի բարի խոստովանեալ և ոչ երկբայեալ առ... զբանն։

Կղինիաս. Ճշմարիտ իսկ։

Պղատոն. Ապ՛եթէ արդար իսկ խոստովանիմք և գարշելի գոլ կիր, երկբայիցին յայնժամ արդարն և բարին, ասելով զարդարն գոլ գարշելիք։

Կղինիաս. Ո՞րպէս զայս ասացեր։

Պղատոն. Ոչ ինչ է դժուարին իմանալ, զի յառաջագոյն եդեալ մեզ օրէնք՝ ամենեցուն ներհակագոյն պատուիրել այժմիկ ասացելոցս ասացին թերևս։

Կղինիաս. Որո՞ց։

Պղատոն. Զտաճարակողոպուտքն երբեք եդաք իրաւապէս զի մեռցի, և զայն՝ որ եդեալ օրինացն թշնամի իցէ։ Եւ հանդերձեալք արդ օրէնք այսպիսիք դնել՝ ամենևին բազում ներեցաք, տեսանելով իբրու այս ոք իսկ են անեզր կիրք բազմութեամբ

իսկ և մեծութեամբ արդարագոյնք իսկ ամենայն ախտից, և 'ի միասին ամենեցուն գարշելիք: Արդ ո՞չ այսպէս մեզ իրաւացիքն իսկ և գեղեցիկքն երբեմն իսկ իբրու այսոքիկ ամենայն 'ի միասին, և երբեմն իբրու ներհակագոյնք երևեցին:

Կղինիաս. Տագնապի իսկ:

Պղատոն. Այժմիկ այսուհետև բազմաց այսպէս յաղագս այսոցիկ առանց միաբանութեան բարիքն և արդարագոյնքն 'ի միասին գլորեալք առասին:

Կղինիաս. Երևի արդ, ով սիրելի:

Պղատոն. Այժմիկ զձերդ իր, ով Կլինիա, դարձեալ տեսցուք, որպէս առ այսոսիկ նոյնս ունի յաղագս միաբանութեան:

Կղինիաս. Որո՞յ արդ, առ ո՞:

Պղատոն. Յառաջագոյնսն կարծեմ թէ յայտնապէս ասացի:

Կղինիաս. Ո՞րպէս:

Պղատոն. Եթէ ոչ իսկ յառաջագոյն՝ այլ այժմիկ իբրու ասացեալ դնի:

Կղինիաս. Որպիսի՞ ինչ:

Պղատոն. Իբրու չարք ամենեքեան՝ առ ամենայն են ակամայ չարք. և այսորիկ այսպէս ունելով հարկ է սմա հետևիլ որ 'ի կարգին է բանն:

Կղինիաս. Զո՞ ոք ասես:

Պղատոն. Որպէս որ անիրաւն է իսկ և չար, և չարն ակամայ, այսպիսի և ակամայաբար՝ կամաւ գործիլ ոչ ունի բան ակամայ, արդ նմա երևեսցի արդեւք և անիրաւել՝ որ անիրաւողն է այնմիկ որ զանիրաւութիւնն ակամայ դնէ. և այժմիկ արդ խոստովանելի ինձ: Քանզի ասեմ ակամայ ամենեցուն անիրաւել, թէ որպէս և 'ի սակս վիճաբանութեան կամ պատուասիրութեան ակամայ իսկ անիրաւք գոլ՝ ասէ անիրաւել կամաւ բազմաց: Իմն իսկ բան այն իցէ, և ոչ այս: Զի՞նչ արդ յեղանակաւ ես իսկ միաբանիցեմ ընդ իմոց բանիցս, եթէ հարցանիցէք զիս, ով Կլինիա և Մեգիլէ. եթէ այսոքիկ արդ այսպէս ունին, ով սիրելի, զի՞նչ լինիս մեզ խորհրդակից՝ յաղագս օրինադրութեան մագնետացւոց քաղաքին, ո՞ր-

պէս օրինադրեալ........ պէս ոչ ասացից։ Սահմանիցե՞ս արդ սոյունց ակամայ իսկ և կամաւ անիրաւութիւնք. և այնոցիկ որ կամաւն են՝ մեղացն և անիրաւութեանցն մեծագոյն զտուժքն դիցուք, և այնոցիկ որ ակամայ են՝ նուազագոյնք. և կամ ամենևին հաւասարք՝ իբրու ոչ գոլով անիրաւութեանցն ամենևին կամաւ։

Կղինիաս. Ուղղապէս իսկ ասելով, սիրելի, և սոքօք վարեսցուք այժմիկ ասացելովքս։

Պղատոն. Բարւոք հարցեր յառաջագոյն. այժմիկ սոքօք առ այս ինչ վարեսցուք։

Կղինիաս. Առ որպիսի՞ ինչ։

Պղատոն. Վերստին յիշեսցուք, որպէս յառաջագոյն բարւոք ասէաք, եթէ առ արդարութիւնսն իցէ ամենևին բազում ինչ մեզ խռովութիւն և անմիաբանութիւն. և զայս առնելով դարձեալ հարցցուք զձեզ զնոյնքդ արդ այսոցիկ տարակուսանս, ոչ կարացեալք սահմանելով թէ ի՞ւ երբեք այսոքիկ զանազանին 'ի միմեանց. որք արդ առ ամենայն քաղաքն 'ի ձեռն օրինադրացն ամենեցուն իբրև իցէ եղելոցն՝ իբրու երկու տեսակք անիրաւութեանց գոլով, ոմանք կամաւ և ոմանք ակամայ 'ի սմա օրինադրիցին. բայց այժմիկ առ 'ի մէնջ ասացեալ բանս՝ որպէս առ 'ի յաստուծոյ ասացեալ. այսչափ միայն ասելով 'ի բաց երևեցուցանէ, և տուեալ ոչ ինչ բան իբրու ուղղապէս ասացեալ՝ եթէ զի՞նչ յեղանակաւ օրինադրեսցէ։ Ոչ գոյ այլ, որպէս հարկ է զայսոսիկ յառաջ քան զօրինադրելն յայտնել երկու իսկ գոլով, և տարբերութեամբն այլ. զի յորժամ զերկոքանչիւրոյ ոք զիրաւունսն մակադրիցէ՝ ամենայն ոք հետևեսցի ասացելոցն, և կարող իցէ զվայելչապէս եդեալն իսկ իբրու այսպէս ընտրել և զոչն։

Կղինիաս. Բարւոք մեզ երևի ասելով, ո՛վ սիրելի. քանզի յերկոցունց մինն մեզ պարտ է, կամ ոչ ասել՝ իբրու ամենայն ակամայ են անիրաւութիւնքն. և կամ եթէ այս ինչ ուղղապէս ասացաւ յառաջագոյն՝ սահմանելով յայտնել։

Պղատոն. Յայտնանէ իսկ երկոցունցս ոմն իսկ ոչ

է ինձ ներելի ամենեւին լինել ուրուք, և այսպէս արդ ոչ իսկ ասելն թուեցեալ է ունել զճշմարտութիւնն։ Քանզի ոչ թերեւս օրինական և ոչ արդարադոյն իցէ ըստ որում՝ յեղանակի իցեն երկու, եթէ ոչ կամաւ գոլովն և ակամայ՝ երկաքանչիւրքն զանազանին. բայց այլով ոմամբ երբեք պարտ է ջանալ իբրու այսպէս յայտնել։

Կղինիաս. Ամենեւին իսկ, ով սիրելի, այս ոչ ինչ իբրու թէ այլպէս առ 'ի մէնջ տրամախոհի։

Պղատոն. Այսպէս իցէ։ Բեր արդ, վնաս իսկ, որպէս թուի ինձ, միմեանց առ 'ի քաղաքացեացն 'ի հաղորդութիւնքն իսկ և 'ի կաճառմունքն բազումք լինին, և կամայն իսկ և ակամայն առ ոցունց անսպառ իցէ։

Կղինիաս. Ո՞րպէս ոչ։

Պղատոն. Արդ մի՛ ոք զամենայն վնասն անիրաւութիւնս դնելով, այսպէս կարծիցէ և զանիրաւսն սոքօք այսպէս լինել կրկին, զոմանս կամաւ՝ զոմանս ակամայ։ Զի վնաս ամենեցուն ոչ թուօք և ոչ մեծութեամբք ասեմ ինչ ասելով, զոր հանդերձեալս եմ ասել՝ եթէ ոչ ինչ ամենեւին։ Զի ոչ ասեմ ես իսկ, ով Կլինիա և Մեգիլէ, եթէ ո՞ւր ուրուք վնաս ինչ գործէ, ոչ կամելով այլ ակամայ անիրաւել իսկ։ Սակայն ակամայ և այսպէս օրինադրեցից զայս ինչ, իբրու ակամայ անիրաւութիւն օրինադրելով. այլ և ոչ անիրաւութիւն ամենեւին եդից զայսպիսի վնաս, ոչ եթէ մեծագոյն թերեւս, և ոչ եթէ նուազագոյն լինիցի. և բազում անգամ ինչ ուղղապէս ոչ լինելով զպատճառն շահու՝ անիրաւող ասասցուք, եթէ ոչ իսկ յաղթիցէ։ Զի գրեթէ, ով սիրելիք, ոչ եթէ ոք այսուիկ տացէ ինչ յէակացն, և ոչ եթէ ներհակապէս 'ի բաց բարձցէ՝ արդար պարզաբար և կամ անիրաւ պարտ է զայնպիսին այսպէս ասել. այլ եթէ սովորութեամբ և իրաւացի յեղանակաւ վարելով ոք շահ ինչ գործիցէ ուրուք և կամ վնաս՝ զայս ինչ պարտ է օրինադրին տեսանել. և առ երկու այսոքիկ հայելով առ անիրաւութիւնս իսկ և վնաս՝ և զվնասեալն իսկ ողջ օրինօքն՝ ըստ որում հնար է

պարտ է առնել, և զկորուսեալն կեցեալ, և զգլորեալն
'ի ձեռն ուրուք դարձ ուղղելով, և զմեռեալն կամ
զխողեալն ողջ. և զայն իսկ որ առանց տուրժից հաշ-
տելի իցեն արարողացն զիւրաքանչիւրսն 'ի վնասիցն
'ի խռովութենէ, առ բարեկամութիւն ջանալ միշտ
պարտ է հաստատել օրինօք։

Կղինիաս. Բարւոք են այսոքիկ։

Պղատոն. Արդ զանիրաւ վնասքն և զշահքն եթէ
ոք անիրաւելով զոք սմա շահ գործիցէ՝ յայտցանէ
որչափ բժշկելի են իսկ, որպէս գոլով ներանձին խօ-
թութիւնք՝ բժշկել, և զբժշկութեանն մեզ անիրա-
ւութիւնս ատանօր հայել պարտ է։

Կղինիաս. Ո՞ւր։

Պղատոն. Իբրու զի զոր ինչ անիրաւեսցէ ոք
մեծ կամ փոքր՝ օրէնք զսա ուսուցանէ, և հարկ է
ամենևին դարձեալ զայսպիսի ինչ ոչ երբեք կամաւ
յանդգնել առնել, և կամ զանազանապէս յոժ նուա-
զագոյն առ վնասուն հատուցմամբն։ Զայսոսիկ եթէ
գործօք և կամ բանիւք, կամ հեշտութեամբ, կամ
տրտմութեամբ, կամ պատուօք, կամ անարգանօք,
կամ ընչից տուրժիւք և կամ ձրիւք և կամ ամենե-
ւին զինչ և իցէ յեղանակաւ գործիցէ ոք, ատել զան-
իրաւութիւն և սիրել, կամ ոչ ատել զիրաւանցն
բնութիւն. այս ինչ է գործ գեղեցկագունիցն օրի-
նացն, և զոր անբուժաբար այսոցիկ ունելով՝ իմաս-
ցի օրինադիրն իրաւունս այսոցիկ պատուհասի, և
օրէն զոմն դից՝ գիտելով երբեք զի սոքօք ամենե-
ցուն՝ զի ոչ սոցունց՝ տակաւին կեալն բարի են. զի
այլոց կրկնապատիկ շահ իցեն փոխելով սոցա 'ի կեն-
ցաղէս՝ յարացոյց իսկ ոչ անիրաւելոյն այլոց լինե-
լով, և առնելով 'ի չարեաց արանց թափուր զքա-
ղաքն. այսպէս արդ յաղագս այսոցիկ օրինադրի խա-
փանող մեղացն՝ հարկ է զմահն հատուցանել, և այ-
լաբար ոչ և միով իւիք։

Կղինիաս. Որպէս նման է ասել առ 'ի քէն, և
յոյժ չափաւորապէս։ Բայց հեշտագոյն թերևս իցէ,
եթէ տակաւին հաւաստի լսիցեմք զասացեալքդ՝ զան-
իրաւութեանն իսկ և զվնասուն զանազանութիւնն.

և զայնոցիկ որ կամաւ են, և զայնոցիկ որ ակամայ իբրու առ այսոցիկ պաճուճեալ են։

Պղատոն. Ջանալ մեզ պարտ է այսուհետև որպէս հրամայէք առնել և ասել։ Չի յայտ է որ այսչափ իսկ յաղագս հոգւոյ և ասէք առ միմեանց և լուէք, իբրու զի մի իսկ 'ի նորում բնութեանդ՝ եթէ կիր, և եթէ մասն գոլով ցասումն դժուարահեռ, և դժուարամարտ ստացուած բնաւորեալ յանբանագոյն կենցաղումն բազում ինչ դղրդեցուցանէ։

Կղինիաս. Եւ ո՞րպէս ոչ։

Պղատոն. Սակայն և զհեշտութիւն իսկ ոչ նմանագոյն ցասմանն առասեմք, այլ հակակայեալ սմա ասեմք զօրութեան յաղթելով հաւանականութեամբ հանդերձ, բուռն պատրանօք գործել զամենայն զոր ինչ թերևս ախորժել կամիցի։

Կղինիաս. Եւ յոյժ արդար։

Պղատոն. Սակայն զանգիտութիւն ասելով որք երրորդ պատճառ սխալանացս դիցէ ոչ արդեւք, այլ երկակի բաժանելով զսա օրինադիրն՝ թերևս վեհագոյն իցէ զպարզն իսկ սորա՝ թեթևագոյն մեղաց պատճառ վարկանելով, և զկրկինն՝ յորժամ անուսումնանայ որք ոչ միայն անգիտութեամբ ըմբռնեալ, այլ և կարծեօք իմաստութեամբ իբրու գիտելով ամենեւին զայնոսիկ, առ որս ոչ և միով իւիք գիտացեալ է հանդերձ զօրութեամբ և ուժգնութեամբ հետևելով, մեծաց և աներաժիշտ սխալանաց դնելով պատճառս զայսպիսիքս. իսկ տկարութեան հետևելով մանն.... անի սխալանք, և ծերոց լինելով դիցէ իսկ մեղս՝ իբրու մեղուցելոց օրէնս կարգիցէ. սակայն հեզագոյնք ամենեցուն և յոլովագոյն ներութեան հուպք։

Կղինիաս. Վայելչապէս։

Պղատոն. Յաղագս հեշտութեան իսկ և տրտմութեան գրեթէ ասեմք իսկ ամենեքեան իբրու 'ի սոցանէ... ներքեան զմեզ, և ոմն նուազագոյն. և ունի այսպէս։

Կղինիաս. Եւ ամենևին իսկ ճշմարիտ։

Պղատոն. Իսկ յաղագս անգիտութեան իբրու

ոմն վեհագոյն, և ոմն նուազագոյն, ոչ ... ևս ոչ երբեք:

Կղինիաս. Ճշմարտապէս:

Պղատոն. Եւ զայսոսիկ ամենայն յօրդորեցուցանել ասեմք առ ախորժմն իւր՝ ըստանձնելով իւրաքանչիւր ուրուք առ ներհակմն բազում անգամ և միանգամայն:

Կղինիաս. Արդ իսկ բազում անգամ:

Պղատոն. Այժմիկ արդ քեզ զարդարն և զանիրաւն՝ զոր ես իսկ ասեմս, հաւաստի թերևս սահմանեցից, ոչ ինչ պաճուճելով. քանզի տրտմութեանն և զերկիւղին, և զհեշտութեան և զտրտմութեան և զմախանաց, և զցանկութեանց ներհօգւոյն հարստահարութիւն, եթէ վնասիցէ ինչ և եթէ ոչ, ամենևին անիրաւութիւն անուանեմ: Իսկ զարիագունին զկարծիսն՝ ուր և լինելոց զսա վարկանիցին քաղաքք և կամ ռամիկք ոմանք, եթէ սա յաղթիցէ առ հոգւոյն, և զարդարիցէ զամենայն այր. և եթէ սխալիցէ ինչ, իրաւացի իսկ գոլ պարտ է ասել զայն ինչ որ այսպէս գործին, և զիւրաքանչիւրոցն որ այսպիսի իշխանութեանս լինին հնազանդեալ, և առ ամենայն մարդկան կենցաղին արիագոյն, կարծել առ 'ի բազմաց ակամայ անիրաւութիւն գոլ զայնպիսի զվնասն: Բայց մեզ ոչ է այժմիկ յաղագս անուանց բան դժուարահետ: Քանզի մեղուցելոցն երեք տեսակք յայտնեցաւ, լինելով զայսոսիկ առ յիշելութիւն յառաջագոյն ևս, մանաւանդ վերըստին առնուլ պարտ է: Տրտմութեան արդ՝ զոր զասումն և երկիւղ մականուանեմք՝ մի է մեզ տեսակ հեշտութեանց. իսկ և ցանկութեանց՝ երկ իր, և յուսոյ իսկ և ճշմարիտ կարծեաց առ արիագոյնն ըղձից՝ միւս երկ իր. արդ յայսմիկ եռակիս երկակի հատանելով՝ հինգ տեսակք եղեն, իբրու այժմիկ ասեմք, որոց օրէնք զանազանեալք 'ի միմեանց՝ հինգ տեսակօք դնել պարտ է ներ երկու սեռիւք:

Կղինիաս. Որովք այսոքիւք:

Պղատոն. Մինն իսկ 'ի ձեռն բուռն և 'ի միաբան գործօք գործելով յիւրաքանչիւր ժամու, և

միում հանդերձ խաւարաւ և պատրանօք գաղտաբար լինելով։ Է իսկ յորժամ և 'ի ձեռն երկոցունց այսոցիկ գործեալ, որով արդ և օրէնք դժուարագոյնք լինիցին թերևս՝ եթէ զպատշաճեալ մասն ունիցին։

Կղինիաս. Վայելչապէս արդ։

Պղատոն. Եկեսցուք արդ յետ այսոցիկ աստանուր՝ ուստի և եկեալք հասաք, աստանուր կատարելով զդրութիւն օրինացն։ Եւ էր մեզ յառաջիկայն՝ յաղագս այնոցիկ որ կողոպտեն կարծեմ թէ զաստուածսն, և յաղագս մատնողացն տակաւին, և այնոցիկ որ զօրէնսն ապականեն, վասն քակման հասեալ քաղաքավարութեանս։ Յայսցանէ արդ եթէ գործիցէ ոք՝ թերևս մոլեալ կամ հիւանդութեամբ և կամ գերաչափ ժրութեամբ ըմբռնեալ, և կամ խրատով վարելով այնպիսեաւ որ ոչ երբեք այսոցիկ է զփորձ ընկալեալ։ Յորոց եթէ լինիցի ինչ յայտնի՝ ընտրելոցն յիւրաքանչիւր ժամու դատաւորացն վերաբերելով գործողին. և կամ այնմիկ՝ որ խորհի ինչ վասն գործողին և դատ լինիցի, այսպէս տրամակայելով տնօրինել զվնասն իսկ. զոր ինչ և վնասիցէ՝ ամենևին պարզ հատուսցէ, և այլոցն պատուհասից թողցի։ Սակայն եթէ սպանեալ զոք արդեւք՝ ոչ մաքրիցէ զձեռսն 'ի սպանմանէն, այսպէս յայլ գաւառ գնացեալ բնակեսցէ 'ի նմա՝ զամ մի արտաքս գոլով 'ի հրապարակէն։ Իսկ նախ գոլով քան զժամանակն զոր սահմանեաց օրէնքն, և կամ յամենայն գաւառն իւր կոխելով, յատենական թանտի կապեալ 'ի ձեռն օրինապահացն ամք երկու՝ 'ի բաց ելցէ 'ի կապանացն։ Իսկ յաղագս սպանման՝ որպէս սկսաք, փորձեսցուք իսպառ զամենայն տեսակի զօրէնս դնել, և նախ զաշխոյժսն և զակամայսն ասասցուք։ Եթէ ոք 'ի տեսարանի և յատենական նահատակութեանց ակամայ կամ վաղվաղակի, և կամ 'ի վերջինս ժամանակաց գանիւքն եսպան զոք սիրելի, և կամ 'ի պատերազմի այսպէս և կամ ըստ խոկմանն[1] որ առ պատերազմունսն են առնելով զկըր-

1 Ըստ յունին՝ առանց խոկման կամ խորհուրդ 'ի սրտին ունելով։

ոմն վեհագոյն, և ոմն նուազագոյն, ոչ ... ևս ոչ երբեք։

Կղինիաս. Ճշմարտապէս։

Պղատոն. Եւ զայսոսիկ ամենայն յօրդորեցուցանել ասեմք առ ախորժմն իւր՝ ըստանձնելով իւրաքանչիւր ուրուք առ ներհակսն բազում անգամ և միանգամայն։

Կղինիաս. Արդ իսկ բազում անգամ։

Պղատոն. Այժմիկ արդ քեզ զարդարն և զանիրաւն՝ զոր ես իսկ ասեմս, հաւաստի թերևս սահմանեցից, ոչ ինչ պաճուճելով. քանզի տրտմութեանն և զերկիւղին, և զհեշտութեան և զտրտմութեան և զմախանաց, և զցանկութեանց ներհոգւոջն հարստահարութիւն, եթէ վնասիցէ ինչ և եթէ ոչ, ամենևին անիրաւութիւն անուանեմ։ Իսկ զարիագունին զկարծիսն՝ ուր և լինելոց զսա վարկանիցին քաղաքք և կամ ռամիկք ոմանք, եթէ սա յաղթիցէ առ հոգւոյն, և զարդարիցէ զամենայն այր. և եթէ սխալիցէ ինչ, իրաւացի իսկ գոլ պարտ է ասել զայն ինչ որ այսպէս գործին, և զիւրաքանչիւրոցն որ այսպիսի իշխանութեանս լինին հնազանդեալ, և առ ամենայն մարդկան կենցաղին արիագոյն, կարծել առ 'ի բազմաց ակամայ անիրաւութիւն գոլ զայնպիսի զվնասն։ Բայց մեզ ոչ է այժմիկ յաղագս անուանց բան դժուարահետ։ Քանզի մեղուցելոցն երեք տեսակք յայտնեցաւ, լինելով զայսոսիկ առ յիշելութիւն յառաջագոյն ևս, մանաւանդ վերըստին առնուլ պարտ է։ Տրտմութեան արդ՝ զոր ցասումն և երկիւղ մականուանեմք՝ մի է մեզ տեսակ հեշտութեանց. իսկ և ցանկութեանց՝ երկ իր, և յուսոյ իսկ և ճշմարիտ կարծեաց առ արիագոյնն ըղձից՝ միւս երկ իր. արդ յայսմիկ եռակիս երկակի հատանելով՝ հինգ տեսակք եղեն, իբրու այժմիկ ասեմք, որոց օրէնք զանազանեալք 'ի միմեանց՝ հինգ տեսակօք դնել պարտ է ներ երկու սեռիւք։

Կղինիաս. Որովք այսոքիւք։

Պղատոն. Մինն իսկ 'ի ձեռն բուռն և 'ի միաբան գործօք գործելով յիւրաքանչիւր ժամու, և

միւսն հանդերձ խաւարաւ և պատրանօք գաղտաւ բար լինելով։ Է իսկ յորժամ և 'ի ձեռն երկոցունց այսոցիկ գործեալ, որով արդ և օրէնք դժուարագոյնք լինիցին թերևս ՝ եթէ զպատշաճեալ միսն ունիցին։

Կղինիաս. Վայելչապէս արդ։

Պղատոն. Եկեսցուք արդ յետ այսոցիկ աստանօր՝ ուստի և եկեալք հասաք, աստանօր կատարելով զդրութիւն օրինացն։ Եւ էր մեզ յառաջինկայն՝ յաղագս այնոցիկ որ կողոպտեն կարծեմ թէ զաստուածսն, և յաղագս մատնողացն տակաւին, և այնոցիկ որ զօրէնսն ապականեն, վասն քակման հասեալ քաղաքավարութեանս։ Յայտնանէ արդ եթէ գործիցէ ոք՝ թերևս մոլեալ կամ հիւանդութեամբ և կամ գերաչափ ծրութեամբ ըմբռնեալ, և կամ խրատով վարելով այնպիսեաւ որ ոչ երբեք այսոցիկ է զփորձ ընկալեալ։ Յորոց եթէ լինիցի ինչ յայտնի՝ ընտրելոցն յիւրաքանչիւր ժամու դատաւորացն վերաբերելով գործողին. և կամ այնմիկ՝ որ խորհի ինչ վասն գործողին և դատ լինիցի, այսպէս տրամակայելով տնօրինել զվնասն իսկ. զոր ինչ և վնասիցէ՝ ամենևին պարզ հատուսցէ, և այլոցն պատուհասից թողցի։ Սակայն եթէ սպանեալ զոք արդեւք՝ ոչ մաքրիցէ զձեռսն 'ի սպանմանէն, այսպէս յայլ գաւառ գնացեալ բնակեսցէ 'ի նմա՝ զամ մի արտաքս գոլով 'ի հրապարակէն։ Իսկ նախ գոլով քան զժամանակն զոր սահմանեաց օրէնքն, և կամ յամենայն գաւառն իւր կոխելով, յաւէնական բանտի կապեալ 'ի ձեռն օրինապահացն ամք երկու՝ 'ի բաց ելցէ 'ի կապանացն։ Իսկ յաղագս սպանմանն՝ որպէս սկսաք, փորձեսցուք իսպառ զամենայն տեսակի զօրէնս դնել, և նախ զաշխոյժքն և զակամայքն ասասցուք։ Եթէ ոք 'ի տեսարանի և յաւէնական նահատակութեանց ակամայ կամ վաղվաղակի, և կամ 'ի վերջինս ժամանակաց գանիւքն եսպան զոք սիրելի, և կամ 'ի պատերազմի այսպէս և կամ ըստ խոկմանն[1] որ առ պատերազմունսն են առնելով զկըր-

1 Ըստ յունին՝ առանց խոկման կամ խորհրդոց 'ի սրտին ունելով։

թութիւնսն իշխանացն՝ սուսկ մարմնօք և կամ հանդերձ ոմանց զինուց 'ի բաց նմանելով զպատերազմական գործն, մաքրեալ ըստ օրինին որ գրեալ է 'ի դելփիցն[1] յաղագս այսոցիկ, իցէ մաքուր: Եւ յաղագս բժշկաց ամենայն՝ եթէ բժշկեալն առ 'ի սոցանէ ակամայ վախճանեսցի, մաքուր իցէ ըստ օրինաց:

Եւ եթէ ինքնաձեռն իսկ՝ սակայն ակամայ այլ ոք զայլ ոք սպանցէ, կամ իւրով սուսկ մարմնով և կամ գործարանաւ կամ նետիւ, կամ ըմպելոյ կամ կերակրոյ ճաշակմամբ, կամ հրոյ և կամ ձմերայնոյ հանդիպման կամ զրկման շնչոյ, ինքն իւրով մարմնովն և կամ 'ի ձեռն այլոց ամենեւին, իցէ իբրու ինքնաձեռն՝ և պատուհաս կրիցէ զայսպիսիքս: Եթէ զծառայ իսկ սպանցէ՝ կարծելով իւրոյն ինչ չար գործել[2], զվախճանեալ ծառային տեառն անվնաս և անտուրժ շնորհիցէ ծառայ, և կամ պատուհաս՝ ըստ արժանեացն վախճանելոյն կրիցէ կրկին: Եւ արժանեացն դատաւորքն գիտութիւն արասցեն, և մաքրութեամբ վարել մեծագունիւք իսկ և յոլովագունիւք՝ քան զայնոսիկ որ առ նահատակութիւնքն սպանանիցեն, և սոցունց պատմողք գոլ իսկապէս այնոքիկ զորս աստուած ընտրիցէ. ապ'եթէ զիւր ծառայ, մաքրելով 'ի բաց ելցէ 'ի սպանմանէն ըստ օրինացն:

Ապ'եթէ զազատ ոք ակամայ սպանանիցէ, զմաքրութիւնսն իսկ զնոյնսն մաքրեսցի այնմիկ որ զծառայն սպանանէ: Բայց զհին ոմն 'ի նախնի առասպելացն ասացեալ մի անարգիցէ: Զի ասի՝ իբրու սպանեալն թերեւս քնութեամբ, ազատ մարմնով կենցաղավարեալ սրտմտի առ այնմիկ որ գործողն իցէ նորա մահ գոլով, և ահիւ և արհաւրօք համանգամայն լցեալ վասն բուռն կրիցն, և տեսանելով զիւրն սպանող՝ սովորութեամբքն իւրոց քարու-

1 Այս է՝ 'ի դելփեան պատգամաց:

2 Այս ինքն՝ համարելով թէ իւր իցէ ծառայն որում զչարն գործէ:

ցըն շրջելով զարհուրեցուցանէ, և խռովելով ինքն՝ խռովեցուցանէ ըստ ամենայն զօրութեան զգործողն, զկիշելութիւն մարտակից ունելով զինքն իսկ և զգործքըն իւր. վասն որոյ պարտ է թերևս 'ի բաց փախչել 'ի կրողէն գործողին զամենայն ժամանակըն տարոյն, և անապատացուցանել զամենայն տեղիսն իւր հանդերձ ամենայն գաւառաւն: Ապ'եթէ օտար իցէ վաղճանեալըն և յօտարին գաւառին, 'ի բաց կացցէ զնոյն ամքդ: Այսմիկ արդ օրինիս եթէ կամաւ հաւանիցի ոք, վախճանելոյն ազգաւ հպագոյնն վերադիտող գոլով այսոքիկ ամենայն եղելոցս, ունիցի ներութիւն. և բերելով ընդ սմա խաղաղութիւն՝ չափաւոր թերևս իցէ ամենևին: Ապ'եթէ ոք անհաւան իցէ, և յառաջագոյն մաքուր գոլով 'ի տաճարսն գնալ յանդըգնի, և զոհել ևս իսկ, զժամանակն ոչ կամիցի լնուլ զօտարանալոյն, ազգաւ մերձ՝ հասցէ 'ի վերայ սպանողին՝ սպանմանն պատուհասիւ, և կրկին լիցի ամենայն պատուհասքն պարտապանին: Ապ'եթէ որ պատշաճին հպագոյն՝ ոչ հասցէ 'ի վերայ սորա, և հինգամ' 'ի բաց կալ սմա յիւրում գաւառէն հարկեսցէ զսա ըստ օրինին:

Ապ'եթէ օտար ակամայ սպանցէ որ 'ի քաղաքին են, հասցէ իսկ որ կամիցի 'ի վերայ սորա նոյն օրինօքդ՝ և փոխաբնակք գոլով 'ի բաց կացցէ ամ մի: Եւ օտար եթէ իցէ ամենևին՝ յետ մաքրութեանն, եթէ զօտար, և եթէ զփոխաբնակ, և եթէ զքաղաքացի սպանանիցէ՝ զամենայն կենցաղն իւր 'ի գաւառէն որ օրինացս այսոցիկ տիրուհի իցէ՝ խափանիցի: Ապ'եթէ իցէ անօրինաբար, օրինապահք մահուամբք տուժիցեն զսա. և եթէ ունիցի գոյս ինչ՝ 'ի կրողին հպագոյն ազգաւ աւանդիցեն: Ապա եթէ ակամայ եկեսցեն, եթէ ծովն իսկ արտաքս անկցի, առաջի կոյս նաւուն տաղաւարելով 'ի ծովին լուանալով զոտսն՝[1] նաւուն իցէ պահապան: Եւ ըստ երկրի եթէ 'ի ձեռն ոմանց ածցի, առաջին հանդիպելով իշխանութիւն յայնցանէ որ 'ի քաղաքին են,

1 Այս է՝ իբրու լուանալով զոտսն:

լուծանել զսա՝ արձակեսցէ յարտալուծումն, առանց կողոպտելոյ։

Ապ՚ եթէ ինքնաձեռն ոք թերևս սպանանիցէ զազատ ոք, սակայն իցէ ցասմամբ՝ զգործեալն պահանջելով՝ երկակի պարտ է յառաջագոյն զսա ընկալուլ։ Քանզի ցասմամբ գործեցաւ, և այնոցիկ որչափ յանկարծակի իսկ և առանց յառաջագոյն խորհելոյ զսպանանելն գանիւք, և կամ ոմամբ այսպիսեաւ ապականիցեն զոք վաղվաղակի՝ բարկութեանն լինելով և զզջումն իսկ։ Նոյնպէս գործելոյն լինիցի սրտմտութեամբ իսկ, և որչափ սպառնական բանք իցեն կամ անպատիւ գործք, զհետ երթալով պատուհասին՝ յետոյ սպանանիցեն զոք, կամելով սպանանել. և գործեալն առ ՚ի սոցանէ առանց զզջութեան լինիցի, երկակի իսկ սպանմունքն իբրու թուի ինձ դնել պարտ է. և գրեթէ զերկաքանչիւրսն ցասմամբ լինելով, և ՚ի մէջ ուրուք այնմ որ կամաւ է և ակամայ իրաւապէս թերևս ասելով, սակայն ոչ այլ պատկեր իցէ երկաքանչիւրոց՝ այն իսկ որ զցասումն պահէ, և ոչ վաղվաղակի և յանկարծակի՝ այլ համդերձ խորհրդով ՚ի վերջին ժամանակին. պատուհասելով՝ այնմիկ է նման որ կամաւ է։ Իսկ որ առանց շտեմարանելոյ զբարկութիւնքն՝ յանկարծակի և վաղվաղակի վարելով առանց նախ խորհելոյ, նման իսկ է ակամայութեամբ։ Սակայն է և ոչ այս իսկ ամենևին կամաւորապէս, այլ պատկեր ակամային. վասն որոյ դժուարինք են սահմանելոյ այնոքիկ որ ցասմամբ գործին սպանութիւնքն. թէ որպէս կամաւ զսոսա՝ եթէ ոմանք իբրու ակամայք պարտ է օրինադրել, սակայն վեհագոյն է և ճշմարտագոյն առ պատկերի իսկ երկաքանչիւրոցն դնել։ Բայց որիշ հատանել զսա յառաջագոյն խորհրդովն՝ և ոչ խորհելովն յառաջագոյն, և այնոցիկ իսկ որ համդերձ խորհրդովն և բարկութեամբ սպանանիցեն՝ զպատուհասքն դժուարագոյնք։ Իսկ այնոցիկ որ համդերձ խորհրդով իսկ և բարկութեամբ և յանկարծակի, հեզագոյնք օրինադրել. քանզի նմանեալն մեծագոյն չարին՝ մեծապէս, և նուազագոյն չարին նմանեալն՝ պատուհա-

սել պարտ է նուագապէս. առնելի է արդ և մերոց օրինաց այսպէս։

Կղինիաս. Ամենևին ամենեցուն արդ։

Պղատոն. Դարձեալ վերստին այժմիկ 'ի վեր ելանելով ասասցուք. եթէ ոք իսկ ինքնաձեռն սպանանիցէ զազատն, բայց գործելն առանց կանխաւ խորհելոյ բարկութեամբ ինչ գործեալ լինիցի, զայլսն իսկ որպէս առանց ցասման սպանողին պատշաճին՝ կրել կրիցէ։ Բայց երկու 'ի հարկէ ամք արտահալածեալ լինիցի՝ տանջելով զիւրն ցասումն։ Եւ այն որ յասմամբ իսկ՝ սակայն փութով սպանանիցէ զայլսն իսկ, ըստ յառաջագունին. սակայն որպէս այն իսկ փախչէր երկու՝ սա փախիցէ զերիս ամս, մեծութեամբ ցասմանն առաւել տանջելով ամ մի։ Եւ յաղագս գալստեան սոցունց իցէ այսպէս։ Դժուարին իսկ է ստուգապէս օրինադրել՝ զի իցէ յորժամ 'ի սոցունց որ օրինօքն դժուարագոյն կարգի՝ հանդարտագոյն իցէ թերևս. և որ հանդարտագոյն իցէ՝ թերևս դժուարագոյն, և զառ սպանութեան իրս վայրենաբար թերևս գործիցէ, և միւսն հանդարտաբար։ Բայց իբրու բազում անգամ և այժմիկ ասացեալքս պատահին լինելով սոցունց։ Արդ ամենեցուն գիտողք գոլ պարտ է օրինապահացն։ Քանզի յորժամ հասցէ ժամանակն փախստեան երկաքանչիւրոցն՝ առաքիցեն դատաւորք երկոտասան առ սահմանսն գաւառին, խնդրելով ժամանակաւն այնմիկ զփախուցելոցն գործք՝ տակաւին հաւաստագոյն, և յաղագս պատկառելոյ և յանձնառութեան սոցունց լինել դատաւորք, և զայսոսիկ դատելեօքն 'ի ձեռն այսպիսի իշխանացս կալ և մնալ։ Ապ'եթէ դարձեալ իսկ երբեք 'ի վայր իջանելով, մինն 'ի սոցունց պատեալ բարկութեամբ զնոյնս գործիցէ, այս ինչ փախուցեալ՝ ոչ ևս դարձցի, 'ի վայր իջանելով ըստ ստորին գալստեանն։ Զնոյն կրիցէ ծառայ որ սպանանիցէ. զի որ մաքրիցի իսկ զօտար բարկութեամբ՝ կրկին զմնասն հատուսցէ ստացողին. և եթէ ոչ ոք 'ի սպանողացն ամենեցուն ոչ հաւանեսցի օրինացն, այլ անմաքուր գոլով՝ զվաճառարան իսկ և զնահատա-

կութիւնք և զայլսն տաճարք պղծէ, որ ախորժիցէ 'ի պատշաճաւորացն վախճանելոյն՝ զյորդորեցուցիչն իսկ և զսպանողն 'ի դատաստան կացուցանելով, զկրկնապատիկն ընչիցն և զայլոցն գործոց հերկեսցէ, գործել իսկ և 'ի բաց հատուցանել, և զհատուցումն ինքն ինքենէ ըստ օրինացն պահանջեսցէ: Ապ' եթէ ոք ծառայ՝ սրտմտութեամբ զտէր իւր սպանանիցէ, պատշաճաւորացն վախճանելոյն՝ ըստ կամաց իւրոց ըմբռնեալ զսպանողն՝ արասցեն զինչ և կամեսցին: Սակայն ոչ ուրուք ոչ և միով իւիք որսալով զնա՝ մաքուր գոլ նոցա: Ապ'եթէ այլ ոք ծառայ՝ զազատն ցասմամբ սպանանիցէ, աւանդիցեն տեարք զծառայն պատշաճաւորացն վախճանելոյն, և նոքա 'ի հարկէ իսկ սպանանելով զգործողն՝ յեղանակաւ որով և կամեսցին:

Եւ որ լինիցին իսկ սակաւ անգամ՝ 'ի ձեռն ցասման, հայր կամ մայր՝ զուստր կամ զդուստր գանիւք կամ այլով կամ իւիք թուռն յեղանակաւ եթէ սպանանիցէ, մաքրութիւնք իսկ զնոյնքն մաքրեսցին. և սմա ամ երիս արտալածիլ: Եւ գալով սպանողացն հաշտութիւն լինիցի. իսկ կին յառնէ, կամ այր 'ի կնոջէ՝ ոչ ինչ երբեք հաղորդելով մանկարարութեանն, և ոչ կցորդ տան գոլով զաւակ, կամ զեղբայր 'ի բաց զրկեաց՝ լինել ոչ հաղորդ տաճարացն: Իսկ որ ամբարշտին առ սոքօք և անհաւանին՝ պարտապան ամբարշտութեան լինիցին այնմ որ կարողն իցէ:

Իսկ զկին ամուսին՝ եթէ այր 'ի ձեռն բարկութեան սպանանիցէ, և կամ կին զիւր այրն՝ զնոյնս այս ինչ իբրու այսպէս գործիցէ, մաքրել զնոյն մաքրութիւնս. և եռամեայ արտալածութիւն կատարեալ 'ի ստորինս եկեալ՝ այն որ զայսպիսի ինչ արարեալ է՝ մանկանց 'ի տաճարն ոչ հաղորդիցի, և ոչ սեղանակից երբեք լինիցի: Իսկ ոչ երբեք հաւանելով ծնողն և կամ ծնեալն՝ ամբարշտութեան իսկ պարտապան լինիցի այնմ որ կարող իցէ:

Եւ եթէ զեղբայր կամ զքոյր ցասմամբ սպանանիցէ, մաքրութեանցն իւր և արտալածմանցն՝ իբրու այսպէս որպէս ասացաւ ծնողացն և ծնընդոցն, ըստ-

րեսցի պարտ գոլ, և լինել սոցունց՝ յորոց եղբարց զեղբարս իսկ և զծնողս զրկեաց 'ի մանկանց, սոցունց բնակակից ոչ երբեք լինիցի, և ոչ հաղորդտաճարաց։ Ապ'եթէ անհաւան լիցի՝ այնմիկ որ յաղագս այսոցիկ ամբարշտութեանն ասացեալ է օրինաւն՝ պարտապան ուղղապէս լինիցի հանդերձ պատուհասիւ։

Ապ'եթէ ոք այսչափ անհանդուրժող տրտմութեան լինիցի առ ծնողսն՝ իբրու զի մոլութեամբ 'ի ծնողացն յանդգնել սպանանել զոք, եթէ վախճանեալն՝ նախ քան զվախճանն զարարողն սպանմանն կամաւ 'ի բաց թողուցու, որպէս այնոքիկ որ զկամաւ սպանումն գործիցեն, մաքրել զայլն՝ որչափ և նոքա գործեալ, մաքուր իցէ։ Ապ'եթէ ոչ 'ի բաց թողուցու՝ բազում օրինաց պարտապան իցէ այն որ առնէն այսպիսի ինչ. քանզի և հարուածոց վերջին պատուհասից պարտապան լինիցի և ամբարշտութեան, նոյնպէս և տաճարակապտութեան՝ զծնողին հոգին կողոպտեալ. իբրու զի թէ բազում անգամ մեռանել ուրուք հնար էր՝ և այնմ որ զհայրասպանութիւն կամ զմայրասպանութիւնն 'ի բաց գործիցէ սրտմտութեամբ՝ սմա արդարագոյն էր մահուանց բազմաց հանդիպել։ Քանզի որո՞ւմ միայն ոչ սպառնալով զմահ հանդերձելում 'ի ձեռն ծնողացն վաղճանի շնորհիցէ օրէնք, ոչ ինչ սպանանել զհայր կամ զմայր, զայնոսիկ որ առ լոյսն զնորա բնութիւնն են ածեալ, այլ համբերելով..... Նախ քան զառնելն այսպիսի ինչ օրինադրեսցէ, որպէս այսմիկ այլ իսկ պատուհասի պատշաճ հանդիպիլ թերևս լինիցի։ Արդ օրինօք կացցէ, այնմ որ զհայր կամ զմայր սպանանիցէ ցասմամբ՝ մահուամբ լիցի տուրժն։

Իսկ եթէ եղբայր զեղբայր սպանանիցէ՝ հակառակութեամբ մարտի լինելով, կամ ումեմն յեղանակաւ այսպիսի սպառնալեօք՝ ընդ ձեռամբք իշխանացն իբրու զպատերազմակիցս սպանեալ՝ մաքուր իցէ. և եթէ քաղաքայի զքաղաքացի՝ նոյնպէս, կամ օտար զօտար։ Ապ'եթէ քաղաքացի զօտար, և կամ օտար զքաղաքացի վանելով սպանանիցէ, ըստ այսոցիկ

իցէ մաքուր գոլ, և եթէ ծառայ այսպէս։ Ապ՛եթէ ծառայ՝ զազատ վանելով սպանանիցէ, որպէս այն որ սպանեալ իցէ զհայր նոցունց, պարտապան է օրինաց. և որ ինչ յաղագս թողութեան ասացաւ սպանման հօր, նոյն այն ինչ լիցի յաղագս ամենայն այնպիսեացն թողութեան, եթէ որ և իցէ իսկ որում իցէ թողուցու զայս ինչ կամաւ իբրև ակամայ լինելով սպանման։ Սակայն մաքրութիւնքն լինիցին գործողին, և ամ մի իցէ արտալածման նորա օրինաւ։ Եւ արդ բռնադատութեամբ իսկ և ակամայ զցասման լինելով առ սպանմունսն՝ չափաւորապէս ասացաւ։ Իսկ առ այնոցիկ որ կամաւ և ըստ ամենայն անիրաւութեան լինելով, յաղագս այսոցիկ և խորհրդոց 'ի ձեռն պարտելոյ հեշտութեանց իսկ և ցանկութեանց և մախանաց, զայսոսիկ յետ այսոցիկ ասել մեզ պարտ է։

Կղինիաս. Ուղղապէս ասես։

Պղատոն. Դարձեալ նախ յաղագս այսպիսեացս ըստ զօրութեան ասասցուք որչափ և իցէ։ Իսկ մեծագոյնն՝ ցանկութիւն յաղթելով հոգւոյ 'ի բաց վայրենանալով 'ի ձեռն փափագանաց։ Եւ այս ինչ է մանաւանդ աստանօր՝ որոյ յոլովագոյն իսկ և զօրեղ ցանկութիւն գոլով հանդիպի բազմաց՝ ընչից անյագ և անեզր ստացուածոյ տռփութիւնք, բիւրինք ծնանելով զօրութիւն վասն բնութեան իսկ և չար անհրահանգութեան։ Իսկ անհրահանգութիւնն՝ չարաբար գովելոյն զփարթամութիւն պատճառ և համբաւ առ 'ի յելլենացւոցն իսկ և բարբարոսացն. զի առաջին զսա բարութեանցն նախադասելով, որ է երրորդ, զգիտողսն վնասեն և զանձինս իւրեանց։ Զի ճշմարտապէս ասիլն յաղագս փարթամութեանն առ ամենայն քաղաքս՝ ամենայնի գեղեցկագոյն է և արիագոյն, որպէս 'ի սակս մարմնոյ է, և մարմին վասն հոգւոյ. արդ բռնութեանցն իսկ գոլով՝ 'ի սակս որոց փարթամութիւնն գոլ բնաւորեալ է, երրորդ իցէ արդեւք յետ մարմնոյ առաքինութեան և հոգւոյ վարդապետ՝ բան այսմիկ լինիցի. իբրու ոչ է պարտ փարթամութիւն խնդրել այնր բարե-

բաստ իցէ լինելոց, այլ իրաւապէս ճոխմանալով և ողջախոհաբար։ Եւ սպանմունք այսպէս ոչ արդեւք լինիցին առ քաղաքս՝ սպանութեամբ կարօտանալ մաքրիլ։ Այժմ իսկ՝ զոր ինչ սկսանելով սոցունց ասացաք, մի իսկ այս ինչ է և մեծագոյն որ առնէ զկամաւոր սպանութեան զմեծագոյն հանդէսք։ Եւ երկրորդ՝ պատուասէր հոգւոյ ունակութիւնս տանելով, դժուարինք բնակակիցք իսկ մանաւանդ այնմիկ՝ որ զմախանք ստացեալ իցէ։ Բայց երկրորդիւք՝ արիագունիցն այնոցիկ որ 'ի քաղաքին են. և երրորդ՝ զանգիտել և անիրաւ երկիւղք բազում. արդ՝ սպանութիւնք են 'ի բաց գործեալ յորժամ իցէ սմա գործով, և կամ գործեալ՝ յորոց և մի՛ ախորժիցեն նոցունց գիտելի լինել, և կամ գիտողք եղեալք սոցա՝ զայսոսիկ զազդողքն սպանանեն մահուամբ, յորժամ այլ իւիք ոչ միով յեղանակաւ։

Յաղագս այսոցիկ ամենայնի նախերգան իսկ ասացեալ իցեն այսոքիկ. և առ սոցունց բանն՝ զոր և բազումք առ խորհուրդքն՝ առ 'ի յայնցանէ որ այսպիսեւքս փութով լսելով՝ յոյժ հաւանին յայսպիսեացս ինչ ոմանց առ դժոխմն լինել. և դարձեալ հաստանելով աստանօր հարկ գոլ զըստ բնութեամբ պատուհասն հատուցանել զկրողին, զոր ինչ ինքն արարեալ իցէ 'ի ձեռն այլոյ ուրուք։

Այսպիսի մասամբ կատարել զկենցաղն յայնժամ հաւանելով ամենեւին, երկնչելով նոյն իսկ նախերգան գովս յայսպիսի պատուհասէս՝ ոչ ինչ պարտ է զայն որ այսու... օրէնն թամբասել։ Բայց անհաւանելով ուրուք՝ այս ինչ օրէն ասասցի։ Եթէ ոք նախախնամութեամբ արիաբար զոր իցէ յազգականաց իւրոց ինքնաձեռն սպանանիցէ, յառաջագոյն իսկ յօրինականացն խափանեսցի, ոչ զտաճար, ոչ զվաճառարան, ոչ զնաւահանգիստք և ոչ զայլ ինչ հասարակաց ժողովուրդք ոչ զմի ինչ պղծելով. եթէ հրաժարեցուցանէ ոք 'ի մարդկանէ զայլ ինչ գործողն, և եթէ ոչ. քանզի օրէնքն հրաժարեցուցացանէ, և հրաժարեցուցանելով յաղագս քաղաքին երեւի իսկ և երեւեսցի. և որ ոչ հասցէ 'ի վե-

քայ, և կամ ոչ նախատիցէ 'ի բանդ.... մինչև ցծնընդոցն որդւոց եղբօր իսկ և կամ քեռ... արելով վախճանելոյն. և յառաջագոյն զպղծութիւնն յանձին իւրում և զաստուածոյն զթշնամութիւնն ընկալնուլ՝ որպէս օրինացն անէծքն զհամբաւն յորդորեցուցանէ։ Եւ երկրորդ իսկ՝ պարտապան այնմիկ որ կամիցի պատուհասել զնա վասն վախճանելոյն լինիցի, և որ կամ... պատուհասել յաղագս առ այսոցիկ փրկանացն պահպանութեամբ, և որչափ այլ աստուած առ այսոցիկ օրէնս պարգևիցէ՝ զամենայն 'ի բաց կատարելով, և զնախախնամութիւնն յառաջ ասելով՝ հասցէ հարկանելով սպանողն.... պատուհասին ըստ օրինացն, և այսոցիկ, զի պարտ է լինել.... ըղձից և զոհից աստուծոյ ումանց՝ որոց յաղագս.... Թէ սպանութիւնք ոչ լինել առ քաղաքացն դիւրա.... րին բացասել։ Եւ եթէ ոյք ումանք են աստուածքն, և զինչ է յեղանակն այսպիսի դատաստանացս 'ի ներքսածութեանն՝ ուղղապէս առ աստուածայինն թերևս իցէ լինելով, օրինապահք հանդերձ պատմողօքն և դիւթիւքն և աստուծով օրինադրելով՝ զդատաստանքս զայսոսիկ 'ի ներքս մուծանեն։ Եւ դատաւորք սոցունց գոլ այնոցիկ՝ որոց զայնոսիկ որ զտաճարսն կողոպտեն դատել ասացաւ տիրապէս. և որ պարտապան իցէ՝ մահուամբ տուժեսցի, և ոչ 'ի կրողին գաւառին թաղեսցի 'ի սակս անպատկառանաց ըստ ամբարշտելոյն, և փախուցեալ իսկ և ոչ կամեցեալ դատի հանդուրժել՝ փախիցէ զմիշտ փախուստն։ Ապ'եթէ ոք կոխիցէ երբեք 'ի գաւառ սպանելոյն, որ հանդիպեսցի նախ ընտանեացն մեռելոյն կամ 'ի քաղաքացեացն՝ առանց վնասու և տուժի սպանցէ զնա, և կապեալ՝ յիշխանսն կամ 'ի դատողքն դատաստանին աւանդիցէ 'ի սպանդ։

Եւ որ նախավկայութիւն արասցէ համանգամայն և երաշխաւորեսցէ, զայն իսկ վասն որոյ զնախավկայութիւն արասցէ՝ տացէ զերաշխաւորքն արժանիք պարտին՝ զորս այնոցիկ որ առ այսոքիկ են դատաւորացն իշխանութիւնն ընտրեսցէ. եւրս երաշ-

խաւոլս արժանապարտս շնորհել՝ երաշխաւորելով 'ի դատաստանի։ Ապ'եթէ ոչ կամիցի, և կամ անկարող իցէ..... զայս ինչ հաստատել, արքունիսն առեալ՝ և կապելով պահել և առուեալ 'ի դատն հանդիսին։ Ապ'եթէ ինքնաձեռն իսկ ոչ այլ խորհիցի այլ ոք այլում մահ, և կամաւն իսկ և խորհրդոմն սպանեալ պատճառ գոլով՝ և ոչ մաքուր 'ի սպանութենէն 'ի քաղաքի ներքնակիցի, լինիցին և այսուիկ ըստ նոցունց ընտրութիւնքն յաղագս սոցա՝ բայց յերաշխաւորութենէ, և պարտապանին ընտանի շիրմին հանդիպիլ։ Իսկ այլք ըստ այսոցիկ իբրու այսպէս որ յառաջագոյն ասացաւ... սմա լինիցի. նոյնս իսկ այսոքիկ իցէ օտարաց իսկ առ օտարս, և քաղաքացեաց և օտարաց առ միմեանս, ծառայից առ ծառայս յաղագս ինքնաձեռն խորհելոյն, բայց յերաշխաւորութենէն, իցէ սպանութիւն համանգամայն։

Ապ'եթէ ծառայ ազատ խորհրդով սպանանիցէ, և պարտապան իցէ պատուհասին, քաղաքին հասարակաց դահիճն՝ ածելով զսա առ գերեզմանն մեռելոյն առ որ հայի շիրիմն, գանս հարկանելով սմա՝ որչափ և այն որ կալեալն իցէ զսա հրամայիցէ, եթէ կենդանի իցէ, հարկանելով սպանողն սպանցի։

Ապ'եթէ ումն զծառայ սպանանիցէ՝ ոչ ինչ անիրաւեալ երկիւղիւ 'ի սակս՝ զի մի ազդեցուցիչ լինիցի գարշելի և չար գործոց, և կամ այլոյ ուրուք այսպիսոյ, որպէս թէ զքաղաքացի էր սպանեալ՝ հանդուրժէր պատուհասից, որպէս՝ այսպէս և այսպիսի ծառայիս այսպէս մեռանելով զնոյնս կրիցէ։

Ապ'եթէ լինիցին առ որս և օրինադրելն չարաչար է, և ոչ ինչ սիրելոյ արժանի և ոչ օրինադրելըն անհնար, ազգականաց ինքնաձեռն սպանմունք, և կամ 'ի ձեռն խորհրդոյ լինելով կամաւ և ա՛իրաւագոյնք ամենեւին, որոց բազումքն իսկ առ չարաչար բնակեալ և սնուցեալ քաղաքն լինիցին թերեւս երբեք, և յորում ոչ ակն ունիցի գաւառի. աւել արդպարտ է դարձեալ զփոքր յառաջագոյն ասացեալ բանն, եթէ ոք լսելով առ 'ի մէնջ՝ որպէս 'ի բաց

կալ լինիցի մանաւանդ կամաւ վասն այսոցիկ ամենեւին յանարդարագոյն սպանմանցն. քանզի առասպելս և կամ բանս և կամ զոր ինչ և պարտ է առասնել զսա՝ 'ի Նախնի քահանայից ասացաւ հաւաստի։ Իբրու ազգական արեանցն՝ պատուհասիչն հանդէս վերադիտելով օրինօք բարի այժմիկ ասացելովս, և կարգեալ է թերևս զի արարողն այսպիսի իրի կրեսցէ հաւասարապէս զայն ինչ զոր գործեաց։ Եւ եթէ զհայրասպան ոք երբեք զնոյն ինչ 'ի զաւակացն յանդգնելով բռնութեամբ կրիցէ 'ի ժամանակի ուրուք. և եթէ զմայր լինել սմա հարկ է՝ իգական բնութեան հաղորդ, և լինել 'ի ձեռն ծնիցելոցն պակասեցուցանել զկեանսն առ վերջին ժամանակօքն. քանզի հասարակաց արեանն պղծելով՝ ոչ գոլ այլ մաքրութիւն և ոչ լուացումն կամիցի, չինէ պղծեալն առ սպանումն. սպանմամբն նմանեաւն նման արարող հոգին հատուսցէ, և յամենայն ազգականութենէն զցասումն հաշտեցուցանելով դադարեցուսցէ զայսոսիկ,

Արդ առ 'ի յաստուծոյն ումեմն երկնչելով՝ զպատուհասք խափանել պարտ է զայսպիսիքս։ Այլ եթէ՝ զոմանս յայսպիսի եղկելի դիպուած ըմբռնիցէ, իբրու հօր կամ մօր կամ եղբարց կամ զաւակաց, նախախնամութեամբ կամաւ զհոգի յանդգնիլ 'ի բաց զրկել 'ի մարմնոյն, այն որ առ 'ի մահկանացու օրինադրէն է օրէնքն՝ այսպէս յաղագս այսպիսեացս օրինադրէ. նախաստացութիւնք զայնոսիկ որ յաղագս օրինացն են խափանել, և երաշխաւորութեանց նոցունց գոլ որպէս ասացաւ յառաջագոյնսն։

Այլ եթէ ոք պարտապան լինիցի սպանման այսպիսւոյ յայսցանէ սպանեալ զոք, դատաւորացն իսկ պաշտօնեայքն և իշխանքն՝ սպանանելով 'ի կարգեալ խառնումն ճանապարհացն, արտաքոյ քաղաքին հանելով մերկ, և իշխանութիւնքն յամենայն յաղագս բոլոր քաղաքին քարինս իւրաքանչիւր ոք բերելով, և 'ի վերայ գլխոյ մեռելոյն՝ մաքրիցէ զբոլոր քաղաքն։ Իսկ յետ այսորիկ առ սահմանսն գաւառին բերելով արտաքսելով զսա օրինօքն՝ առանց թաղման։

Արդ զայն որ ամենեցուն ընտանեգոյն է և զասացեալն սիրելագոյն՝ որ սպանանիցէ, զի՞նչ պարտ է սմա կրել. բայց ասեմ, որ զսա արդեւք սպանանիցէ՝ 'ի բախտի մասնէն բռնութեամբ զրկելով, ոչ քաղաքի կարգելով դատաստան՝ և ոչ առ վշտագնութիւն անձողոպրելի 'ի վերայ հասեալ պատահմամբ հարկեալ, և ոչ ամօթոյ ուրուք տարակուսելի առանց բռնութեան և մնասու հասեալ, այլ խափանմամբ և անարիութեան՝ զանգիտութեամբ պատուհաս անձին իւրոյ հասուցանէ սմա: Արդ զայլսն իսկ աստուած գիտէ զոր ինչ պարտ է օրէնք լինել առ մաքրութիւնսն իսկ և թաղմունսն, որոց պատմողք իսկ համանգամայն և առ այսոցիկ օրինացն վերստին հարցողք, պարտ էր զմերձաւորագոյնքն ազգաւ առնել սոցունց ըստ կարգեցելոցն. և շիրիմք գոլ այսպէս ապականելոցն՝ նախ իսկ ըստ միայնութեան՝ հանդերձ ոչ միոյ ուրուք շիրմակցի, ապա առ երկոտասանիցն սահմանացն մասունքն այնոքիկ որչափ խափանեն՝ և յանուն թաղել զսոսա առանց բարեբանութեան, ոչ արձանօք և ոչ անուամբք յայտնելով զշիրիմս:

Ապ'եթէ յովանակ, և կամ այլ ինչ կենդանի սպանանիցէ զոմն յայնցանէ որ 'ի նահատակութիւնքն հրապարակաւ եղեալ են, և նահատակելոյն այսպիսի ինչ գործիցէ, 'ի վերայ հասցեն պատշաճաւորքն մեռելոյն յայնմիկ որ սպանանիցէ՝ դատելով ագարակաբաշխացն՝ որովք իսկ և որչափօք հրամայիցէ այն իսկ որ պատշաճաւորն է, և զայն իսկ որ պարտապանն է՝ արտաքոյ գաւառին սպանանելով սահմանել:

Ապ'եթէ անշունչ զմարդ 'ի հոգւոյ զրկիցէ, բայց յայնցանէ որչափ որոտմունք, և կամ առ 'ի յաստուծոյ այսպիսի նետ ինչ հասանելով յայլոցն ինչ որչափ 'ի վերայ այլոց ուրուք արկանելով, և կամ ուրուք 'ի վերայ սորա հանդիպելով սպանանիցէ, զոմն դատաւոր նմա նստցի 'ի դրացեացն որ մերձաւորագոյնն է և պատշաճաւորագոյնն սեռիւ, մաքրելով յաղագս սորա իսկ և յաղագս բոլոր ազգա-

կցութեանն, և զպարտապանն արտալածել՝ որպէս ասացաւ յաղագս կենդանեացն սեռի։

Ապ'եթէ մեռեալ ոք՛ երևեսցի, և սպանողն անյայտ իցէ, և ոչ ծուլաբարն խնդրելով անգիւտ լինիցի, նախաասացութեանցն իսկ նոցունց լինելով որպէս և այլոցն, բացասել յառաջ զսպանումն՝ գործողին դատելով, առ վաճառարանաւն քարոզել սպանողին զայսոսիկ և զայս. և պարտապան լինելով սպանմանն՝ ոչ մտանել 'ի տաճարսն՝ և ոչ 'ի բոլոր գաւառն կրօղին, իբրու զի երևեսցի և ծանիցի մեռանելովն՝ և արտաքոյ կրողին գաւառին ելանելովն առանց թաղման։ Այս արդ օրէն մի իցէ մեզ յաղագս սպանմանս կալով։ Եւ արդ որ ինչ յաղագս այսոցիկ են՝ մինչև ցայսվայր այսպէս։

Բայց գոլով սպանողն առ որս ուղղապէս թերևս մաքուր իցէ, լինիցի այսպէս։ Ի գիշերի յանդիման մտանելով վասն գողութեան ընչից՝ եթէ կալեալ սպանանիցէ ոք, մաքուր իցէ։ Եւ եթէ զազատ կին բռնադատիցէ ոք, և կամ զհամբակ յաղագս ափռոդիտականացն՝ առանց տուրժի մեռցի 'ի ձեռն այնմ որ անարգեալ իցէ բռնութեամբ, և 'ի ձեռն հօր կամ եղբարց կամ ուստերաց, Եւ եթէ այր 'ի վերայ հանդիպեսցի ամուսին կնոջ բռնադատելով, սպանեալ զբռնադատողն՝ մաքուր իցէ օրինօքն։ Եւ եթէ ոք հօր օգնական լինելով մահ ո՛չ ինչ անարդարագոյն գործելով սպանանիցէ զոք, և կամ մօր կամ զաւակաց կամ եղբարց կամ ծնողակցի զաւակաց, ամենևին մաքուր իցէ։

Իսկ այսուհետև յաղագս սննդեան և խրատու հոգւոյ կենդանւոյ՝ որոց այսպէս հանդիպելով իսկ կենցաղավարի, և թշուառական՝ գոլով զներհակըն, և յաղագս բուռն մահուան՝ զոր ինչ պարտ է պատուհաս լինել օրինադրեցաւ։ Եւ որ ինչ առ մարմնոցն սնունդ իսկ էր ասացաւ։ Իսկ որ սոցունց հուպն են աշխոյժ գործք՝ 'ի ձեռն միմեանց կամաւ իսկ և ակամայ լինելով, սահմանել պարտ է զսոսա ըստ զօրութեան, թէ ով ոք են, և կամ որչափ, կամ որոց վթերևս հանդիպելով պատուհասից

չափ, կամ որոց թերեւս հանդիպելով պատուհասից՝ զվայելչականն ընկալցին իւրաքանչիւր ոք։ Զայսոսիկ յետ այնոցիկ, իբրու թուի, ուղղապէս թերեւս ոք օրինադրեսցէ։

Արդ զվէրք եւ զկուրութիւնք 'ի գանից՝ յետ մահուանն երկրորդք իսկ եւ վատթարագոյնն, թերեւս կարգէ յայնցանէ որ օրէնսն յորդորեալ են։ Եւ զվէրք՝ որպէս սպանութիւնք բաժանեցան՝ բաժանել պարտ է. զոմանս կամաւ, զոմանս ուսմամբ, զոմանս երկիւղիւ, եւ զոմանս որչափ 'ի նախախնամութենէ կամաւ պատահին լինելով։ Եւ նախ ասելի է իսկ յաղագս ամենեցուն այսպիսեացս՝ այսպիսի ինչ։ Իբրու թերեւս օրինացն մարդկան հարկաւոր է դնել, եւ կեալ ըստ օրինացն. եւ կամ ոչ ինչ զանազանիլ յամենեւին վայրենագոյն գազանացն։ Եւ պատճառն սոցունց է այս ինչ. զի բնութիւն մարդկան ոչ եւ միոյ բաւական բնաւորի, իբրու գիտել իսկ զոր ինչ պատշաճէն մարդկան առ քաղաքավարութիւն, եւ ճանաչելով զվեհագոյնն միշտ կարել իսկ եւ կամել՝ գործել զայսոսիկ։ Քանզի իմանալ իսկ յառաջագոյն դժուարին է, զի քաղաքական առ քաղաքավարութիւն՝ եւ ճշմարիտ արուեստիւ ոչ զյատուկն՝ այլ զհասարակացն դարմանել հարկ է. զի հասարակացն իսկ շաղկապէ՝ եւ յատուկն օձտէ զքաղաքն. եւ զոր ինչ 'ի միասին պատշաճ իցէ՝ այնմ որ հասարակաց է իսկ եւ յատուկ երկոցունց, եթէ զհասարակացն դիցէ բարեւք՝ մանաւանդ քան եթէ զյատուկն։ Իսկ երկրորդն՝ եթէ արդեւք եւ զգիտելն ոք եթէ այսոքիւք այսպէս են բնաւորեալ ընկալցի բաւականապէս արհեստիւ. եւ յետ այսորիկ առանց պարտապանութեան իսկ եւ ինքնակալութեան իշխեսցէ քաղաքին, ոչ երբեք կարասցէ կալ եւ մնալ այսմիկ աւանդութեամբս կենցաղավարիլ՝ զհասարակացն յառաջագոյն սնուցանիլ 'ի քաղաքին եւ զյատուկն, հետեւելով այնմիկ որ հասարակացն. այլ առ ագահութիւն եւ յատուկ գործք՝ մահկանացու բնութիւնս դիտէ միշտ փախչելով։ Իսկ անբանաբար 'ի տրտմութեանն եւ զհետ գնալով հեշտութեանն, եւ արդարագունին

*իսկ և վեհագունին առաջի զերկաքանչիւրքս դնելով և խաւարի բաց գործելով, սակաւ ոչ չարեւք լցուցանէ առ կատարածումն զինքն իսկ և զբոլոր քաղաքն։ Քանզի զայսոսիկ եթէ երբեք ոք 'ի մարդկանէ՝ բնութեամբ բաւական աստուածային մասամբն լինելով ընկալուլ՝ կարող իցէ օրինաց ոչ թերեւս կարօտանալ զի իշխեսցեն սմա. քանզի և մակացութեան ոչ օրէնք՝ ոչ կարգք՝ ոչ և մի իցէ վեհագոյն. և ոչ բարի է առնել.... և միոյ ուրուք հնազանդ՝ և ոչ ծառայ, այլ պարտ է ամենեցուն իշխան գոլ եթէ ճշմարտապէս իսկ ազատ իցէ ըստ բնութեան։ Բայց այժմիկ, զի ոչ է..... այլ եթէ առ դուզնաքեայ, վասն որոյ...... եւ պարտ է զօրէն իսկ և զդասութիւն...... բազում ինչ տեսանի և հայի, և միւսն ամենեւին տկարանայ։ Բայց այսոքիկ 'ի սակս այսոցիկ ասացաւ. այժմ մեք կարգեսցուք զինչ պարտ է խոցողին և կամ այլում վնաս գործողին՝ այլոյ ուրուք կրել կամ հատուցանել։ Առաջեան է արդ ամենայնի յաղագս ամենայնի հասու լինել ուղղապէս որ զինչ խոցէ, կամ զո՛ ոք կամ որպէս, կամ երբ։ Ասես. քանզի բազումք են իւրաքանչիւրք 'ի սոցունց, և ամենեւին յոյժ զանազանին 'ի միմեանց. զայսոսիկ արդ զդատարանացս յորդորեցուցանել դատել զամենայն կամ ոչ մի իցէ հնար. քանզի մի առ ամենայն 'ի հարկէ հրամայել դատիլ թէ որպէս եղև, թէ ոչ եղև իւրաքանչիւր 'ի սոցունց. իսկ ոչ ինչ հրամայել՝ յաղագս որ ինչ պարտ է տուգանիլ կամ կրել այնմ՝ որ անիրաւ ինչ 'ի յայսցանէ՝ այլ իւրն. յաղագս ամենայնի օրինագրելն փոքունց և մեծաց՝ գրեթէ անհնար է։*

**Կղինիաս.** *Զինչ արդ բանն որ յետ այսորիկ։*

**Պղատոն.** *Այս ինչ՝ զի առ ոմանս պարտ է յորդորել զդատարանսն՝ և առ ոմանս ոչ յորդորել, այլ պարտ է իւրն օրինադրել։*

**Կղինիաս.** *Զո՞ր արդ պարտ է օրինադրել, և զո՞ր բացատրել դատարանացն՝ զի դատիցեն։*

**Պղատոն.** *Իսկ յետ այսոցիկ ուղղագունից արդեւք իցէ ասելն՝ իբրու 'ի քաղաքի յորում իցեն դատա-*

ըանք անձայնք և յուլինք, գողանալով զկարծիս իւրեանց՝ գաղտաբար զդատն դտանիցեն, և դատեսցին. և որ ինչ այսօրիկ չարագոյն է յորժամ ոչ լռելով, այլ ի վրդովմամբ իցեն որպէս տեսարանք՝ գովելով. իսկ աղաղակաւ և պարսաւելով 'ի ձարտասանացն՝ զերկաքանչիւր մասնէ դատիցէ, դժուարին ախտն սիրէ լինել բոլոր քաղաքին։ Այսպիսի արդ դատարանացս օրինադրել ընդ ումեմն հարկաւ ըմբռնելով բարի պատահմամբ. իսկ ոչ սակայն իբրու 'ի հարկէ ըմբռնեալ՝ առ փոքրագոյնսն պարտ է յորդորել զսոսա կարգել զտուրժսն, և զյոլովագոյնսն իւրն օրինադրել յայտնապէս, եթէ ոք արդեւք այսպիսի քաղաքավարութեան օրինադրեսցէ երբեք։ Իսկ յորում քաղաքի դատարանք ըստ զօրութեան ուղղապէս հաստատեալ իցեն՝ մնանել բարեւք հանդերձելոցն դատել, և ընտրելով 'ի ձեռն ամենայն ստուգութեան, աստանօր ուղիղ և բարեւք ունելով և գեղեցկապէս՝ զբազում ինչ յորդորել. այլ դատել այսպիսի դատաւորացս՝ յաղագս պարտապանացն թէ զինչ պարտ է սոցա կրել կամ հատուցանել։ Արդ մեզ այժմիկ առանց մախանաց ոչ օրինադրել սոցունց զմեծագոյնսն և զյոլովագոյնսն, զորս և վատթարապէս թերեւս խրատեալ դատաւորք կարեն տեսանել, և շարամերձեալ իւրաքանչիւր սխալանացն զարժանսն կրին իսկ և գործողացն. քանզի ա՛յլ՝ որոց մեք օրինադրեմք՝ ոչ նուազապէս քաջայարմար զսոսա կարծեմք թերեւս այսպիսեացս լինել դատաւորք յորդորելի, այլ զյոլովագոյնսն։ Սակայն ոչ ա՛յլ՝ որպէս բազում անգամ ասացաք և արարաք, առ օրինադրութիւնսն յառաջագոյն օրինացն՝ յաղագս գրոյ իսկ և գաղափարաց պատուհասիցն ասելով՝ զիւր տալ զյարացոյցն դատաւորացն, կի ոչ երբեք ելցեն արտաքոյ դատաստանին յայնժամ, էր իսկ ուղղապէս ունելով։ Եւ արդ այժմիկ զնոյնս ինչ առնել պարտ է վերստին ելանելով։

Դարձեալ առ օրէնսն՝ արդ գիրն յաղագս վիրացըն մեզ այսպէս կացցէ։ Եթէ ոք տրամախոհելով՝ զքարեկամ ոմն, բաց յայնցանէ որ օրէնքն թողա-

ցուցեալ է, խոցէ իսկ և սպանանել ոչ կարէ, տրամախոհողին և խոցողին այսպէս՝ ոչ է արժանի ողորմել, և ոչ է պարտ կելով այլաբար քան եթէ իբրու սպանողի՝ կրել զպատուհաս սպանմանն հարկելով։ Բայց զոչ ամենևին չար պատահումն սորա պատուելով, և զդիմն զայն՝ որ սմա, և այն որ խոցեցաւ ողորմեալ՝ եղև սոցա դարձուցիչ. ոչ միումն անբուժ վէր լինել, և միւսումն եղկելի և թշուառական դիպուած։ Սմա արդ՝ դիւրս շնորհս հատուցանելով և ոչ հակակայելով, զմահն իսկ 'ի խոցողէն 'ի բաց բառնալ։ Սակայն փոխումն 'ի մերձաւորն քաղաք լինել սմա յամենայն կենցաղումն, առնլով զամենայն պտուղըն իւրոց ստացուածոցն. բայց վնաս զոր ինչ վնասեալ իցէ զխոցեալ՝ հատուցանել կրողին զպատուհասն. և պատուհասելով դատարանին այնմիկ որ զդատն դատիցէ, և դատել այնոցիկ որք սպանմամբըն դատելոց էին՝ եթէ վախճանեալ էր 'ի խոցոյն վիրէն։

Եւ զծնողք իսկ մանուկ՝ կամ ծառայ զտէր, որպէս այսպէս թէ նախախնամութեամբ խոցէ, մահ իցէ դատ վնասուն. և եթէ եղբայր զեղբայր կամ զքոյր, կամ քոյր զեղբայր կամ զքոյր իբրու այսպէս խոցէ, և պարտապան իցէ խոցոյ 'ի նախախնամութենէ, մահ իցէ տուրժն. և կին՝ զայր իւր խորհրդով սպանանելոյ խոցեալ, և կամ այր զկին իւր, փախիցէ զմիշտ փախուստն, և ստացուածն՝ եթէ ուստերք կամ դստերք սոցունց իցեն մանկունք, [illegible]ւին վերադիտողացն սոցունց վերադիտել, և իբրու զորբս զմանկունսն դարմանել. ապ'եթէ արք իցեն՝ ոչ ընդ հարկաւ գոլ կերակրել փախուցելոյն 'ի ձեռըն ծննդոցն, զգոյսն թողուլ սոցա՝ զի ստասցին։ Իսկ անզաւակ ոք եթէ ընդ այսպիսի դիպուածովք անկցի՝ ազգակիցքն 'ի միասին գոլով՝ մինչև ցեղբօրորդեաց մանկունս 'ի փախուցելոյն յերկաքանչիւր մասանցն, առ 'ի յարանց իսկ և 'ի կանանց, ժառանգորդ զսա 'ի տունն քաղաքաւն քառասներորդ և հինգ հազարերորդ հաստատել, խորհելով հանդերձ օրինապահօքն և քահանայօքն, տրամախոհելով յե-

ղանակաւ և բանիւ այսպիսեաւ, իբրու ոչ և մի տուն 'ի քառասնից և 'ի հինգ հազարացն ներքնակելոյն, և ոչ 'ի միասին ամենայն ազգին այսպէս՝ իբր քաղաքին: Ատենական իսկ և յատուկ պարտ է արդ քաղաքին զտունս իւր իբրու արդարագոյնս իսկ բարեբախտագոյնս ստանալ ըստ որում հնար է: Արդ յորժամ ոմն համանգամայն թշուառական լինիցի և ամբարշտիցի 'ի տանցն, իբրու ստացողին մանկունք 'ի սմա ոչ մնացուցանել այլ, անփորձ 'ի հարսանեաց, և կամ ամուսնանալով վախճանել՝ առանց զաւակի, սպանմանն պարտապան գոլ կամաւ, և այլոյ ուրուք սխալանաց՝ յայնցանէ որ առ աստուածս կամ քաղաքացիս, որոց թերևս մահ օրինօքն՝ տուրժըն յայտնապէս եղեալ իցէ. և կամ միշտ փախըստեամբ ոմն փախիցի յարանց՝ առանց զաւակի, զայս իսկ նախ մաքրել և սրբել մաղթիւք զտունս պարտ իցէ ըստ օրինացն. և ապա 'ի միասին գոլով, որպէս ասացաք այժմիկ, ընտանեացն՝ հանդերձ օրինապահօքըն գիտել սեռ որ և իցէ այնոցիկ որ 'ի քաղաքին են՝ քաջ յընդրուանէ ըստ առաքինութեան և համանգամայն բարեբախտ, յորում և մանկունք լինելով իցեն յոլովագոյնք. յորոց մի՝ վախճանելոյն հօր և վերնագունից ազգին որդի իբրու նոցունց 'ի ներքըս կարգելով, 'ի սակս համբաւի մականունելով ծնող իսկ սոցունց և կալող տան, և հաճեցուցիչ արիագոյն արանց իսկ և տաճարաց առ լաւագոյն հանդիպմունքն հօրն լինել այժմիկ յեղանակաւ ուխտ առնել, ժառանգորդ զսա ըստ օրինացն հաստատել. իսկ զ'ի բաց մեղուցեալն յանուն թողուլ, և յանզաւակ և յանմասն կալ, յորժամ հասցեն սմա այսպիսի դիպուածք:

Է իսկ ոչ ամենեցուն, որպէս թուի, յէակացն սահման առ սահման խառնելով. այլ որոց է ընդսահմանաւ՝ այս ինչ 'ի միջի սահմանաց յառաջագոյն երկրաքանչիւրոց բախելով լինիցի արդեւք 'ի մէջ երկոցունցն: Արդ և այնոցիկ որ կամաւ իսկ են և ակամայ ցասմամբ լինելով, ասաց գոլ արդ այսպիսի վերաց: Արդ իցէ այնոցիկ որ լինիցին թէ պարտա-

պան իցէ ոք՝ յառաջագոյն իսկ հատուցանել զկրկնապատիկն վնասուն, եթէ վէրն հանդիպեսցին բուժելի. և եթէ յանբուժից՝ զքառապատիկն: Եթէ բժշկելի իսկ իցէ, սակայն ամօթ ինչ մեծ հասուցանէ խոցելոյն և նախատելի, զքառապատիկն հատուսցէ. և որչափ խոցեալ զօմն՝ ոչ միայն զկրողն վնասիցէ՝ այլ և զքաղաք, տարարեալ զայրն անկարող հայրենի գաւառին, և կամ առ թշնամիսն լինել օգնական, սմա հետ այլոցն տուժից՝ հատուցանել և քաղաքին զվնասն. զի առ իւրոց զինուորութեանցն, և յաղագս այնմիկ որ անկարողն իցէ՝ զինուորեսցի, և փոխանակ նորա զպատերազմական դասութիւնքն դատեսցի. և կամ ոչ առնելով զայսոսիկ՝ դատապարտեալ վասն ոչ զինուորելոյն ըստ օրինացն լինիցի այժմիկ որ կամիցի, և զարժանսն իսկ վնասուն՝ եթէ կրկնապատիկ և եթէ եռապատիկ և եթէ քառապատիկ, որ համարողք իցեն դատաւորքն կարգիցեն:

Ապ'եթէ հոմածին զհոմածին իւր այսպէս յեղանակաւ խոցիցէ, ազգականք համասեռքն մինչև ցմանկանցն եղբօրորդեաց ըստ կանանց և արանց, կանայք իսկ և արք 'ի միասին եդեալ՝ դատելով աւանդել ծնողացն, զի պատուհասեսցեն ըստ բնութեան: Ապ' եթէ երկբայելի պատուհասն լինիցի, զայնոցիկ որ ըստ արանցն են գոլ պատուհասելոյն իշխագոյնք: Ապ' եթէ սոքա ոչ կարիցեն զօրինապահսն 'ի կատարածին յորդորել իսկ՝ ծննդոց առ ծնողսն գոլ այսպիսի վիրաց դատաւորք, այնոցիկ որ առաւել քան զվաթսուն ամի լեալք իցեն հարկաւորք, որոց և մանկունք ոչ իցեն դրութեամբ՝ այլ ճշմարտութեամբ: Ապ'եթէ ոք պարտապան իցէ պատուհասիլ կամ մեռանիլ, այնպիսոյն պարտ է և կամ այլ ինչ մեծագոյն այսորիկ կրիլ, և կամ ոչ բազմաւ փոքրագոյն, և յազգակցաց գործողին ոչ զոք դատել, ոչ թէ և լեալ իցէ ժամանակին՝ որչափ օրէն ասաց:

Ծառայ ոք եթէ զազատ բարկութեամբ խոցիցէ՝ աւանդիցէ զծառայն ստացողին 'ի խոցողն՝ զի վարեսցի սովաւ որպէս և կամեսցի. ապ'եթէ ոչ աւան-

դիցէ՝ ինքն զվնասն բժշկիցէ։ Ապ'եթէ 'ի միասին խորհրդոյ ծառային իսկ և խոցելոյն պատճառիցէ զեղեալն՝ հնար ինչ գոլ խնդրիցէ զերկբայութիւն. և եթէ ոչ հասցէ, եռապատիկ հատուսցէ զվնասն։ Ապ'եթէ հասցէ, այրագողութեան պարտապան ունիցի զհնարեալն ընդ ծառային սորա։ Եւ եթէ այլ ոք ակամայ զայլ ոք խոցիցէ, զվնասն պարզ հատուսցէ. քանզի բախտի օրինադիր ոչ ոք բաւական իշխել, և դատաւորք գոլով՝ որպէս ասացան ծննդոց առ ծնողս պատուհասելով զարժանսն վնասուն։

Քանզի բուռն են իսկ և հարուածոցն ամենայն սեռիցն, այսպէս պարտ է յաղագս այսոցիկ ամենայն առն և մանկան և կնոջ տրամախոհիլ։ Երիցագոյնն ոչ փոքումբ կրսերագունին է՝ յառաջանալով առ աստուածոց իսկ և մարդկան որ հանդերձեալ են կեալ և բարեբաստիլ. հարուածս առ երիցագունին 'ի քաղաքի լինելով՝ 'ի ձեռն կրսերագունի տեսանել, գարշելի և աստուածատեաց թուի՝ ամենայն համբակի 'ի ձեռն ծերի գանս առնլով, ծուլութեամբ բարկութեան հանդուրժել, որ պատիւ սմա 'ի ծերութեանն դիցէ։ Իցէ արդ այսպէս։ Ամենայն ոք 'ի մէնջ պատկառիցէ յիւրում յերիցագունեէն գործով իսկ և ասացուածով՝ զայն իսկ որ յառաջագոյն իցէ ամօք քսանիւք արու կամ էգ, համարելով իբրու զհայր կամ զմայր՝ խորշեսցի 'ի սմանէ. և զամենայն զօրաւոր հասակին զսա համարելով տնկել և ծնանել, միշտ 'ի բաց կացցէ 'ի սակս աստուածոցն ծննդեանն։ Այսպէս և յօտարէ խափանեսցի. եթէ նախ բնակեալ իցէ՝ և եթէ եկ իցէ նորահաս քաղաքի, ոչ իշխելով և ոչ վանելով ամենեւին համարձակեսցի զանիւք խրատել զայնպիսին։ Իսկ զօտար ումն պակշոտելով և յանդգնելով զանձն իւր հարկանելով՝ եթէ կարծիցէ պարտք գոլ տանջիլ, առեալ առ իշխանն քաղաքաբաշխացն տարցի. իսկ 'ի հարկանելոյն խափանեսցի, զի հեռի լինիցի զսա գաւառաց՝ ոչ թերեւս յանդգնիլ երբեք հարկանելով։ Իսկ քաղաքաբաշխիւքն առեալ զսա և վերստին դատելով՝ յօտարականնէն իսկ աստուածոյն խուշելով, թէ ար-

դեւք անիրաւապէս թուի օտարն զգեղջուկն հարեալ գան, զօտարածն՝ որչափ ինքն հարեալ իցէ, այնչափ հարեալ իցէ յանդուգն օտարութենէն դադարեցուսցեն։ Ապ՛ եթէ ոչ անիրաւէ, սպառնալով իսկ և նախատելով թողցի հանդերձ տարօղաւն իւրով։

Համակակից զհասակակից իւր և զանզաւակն, եթէ հասակաւ յառաջագոյն իցէ քան զինքն՝ եթէ հարկանիցէ, եթէ և ծեր զծեր իսկ, և եթէ համբակ զհամբակ՝ վանեսցի ըստ բնութեան, առանց կահի սուսկ և ձեռօք. գերագոյն քառասուն ամաց լինելով եթէ համարձակեսցի մարտնչիլ կամ իշխելով իսկ և կամ վանելով՝ վայրաբնակ և զանազան թերեւս ասելով և անասնատեսակ իսկ աննախատելի պատուհասի հանդիպելով վայելչապէս ունիցի։

Եթէ ոք այսպիսի մխիթարութեամբ քաջահաւան լինիցի՝ իցէ թերեւս դիւրալուր. իսկ որ դժուարահաւանն է, և ոչ ինչ նախերգանի փոյթ արարողն՝ ընկալցի արդեւք զայսպիսեացն օրէնքն պատրաստաբար։ Եթէ ոք հարկանիցէ զերիցագոյնն իւր քսանիւք ամօք կամ յոլովագունիւք, նախ որ հանդիպին՝ եթէ հասակաւ իցէ և եթէ կրսերագոյն 'ի մարտուցանողացն խափանեսցի, և կամ չար իցէ՝ վասն օրինին։ Ապ՛եթէ գանելոյն հասակաւն՝ և տակաւին կրսերագոյն վանեսցէ, իբրու զեղբայր կամ զհայր, և կամ տակաւին վերագոյն զայն իսկ որ անիրաւէն՝ առ այսօրիկ եւս զպատուհաս կրիցէ հարուածոցն։ Զերիցագոյնն՝ իբրու ասացաւ, յանդգնիլ հարկանել՝ և եթէ պարտապան իցէ դատաստանին՝ կապեսցի ոչ ինչ քան զամ մի փոքրագոյն. և եթէ դատաւորքն յոլովագունիւ պատուհասիցեն՝ իցէ տէր առ 'ի սոցունց համարեալն սմա ժամանակ։

Ապ՛եթէ օտար կամ 'ի փոխաբնակացն ոք հարկանիցէ զերիցագոյնն իւր, քսան ամօք կամ յոլովագունիւք, յաղագս եկելոցն յօգնականութիւն՝ նոյն օրէնքս ունիցի զնոյն զօրութիւն, և պարտէն՝ զնոյն պատուհասն։ Իսկ որ փոխան գոլով անհաւանիցի օրինացն՝ երիս ամս կապեսցի, թէ ոչ դատաքանն

յոլովագոյն ժամանակ համարիցէ սմա պատուհասն. տուրժեսցի իսկ և եկեալն առ իւր և իցէ 'ի սոցունց ոչ օգնելով ըստ օրինին, այն իսկ որ մեծագոյն գնոյն է՝ մնասով մի, և երկրորդին գոլով՝ կիսուն դրամոք, և երրորդին՝ երեսուն, և քսան՝ չորրորդին. և գատաստան լինիցի այսպիսեացս՝ զօրավարք և դասապետք և ազգագլուխք և հեծելապետք։

Օրէնք իսկ որպէս թուին 'ի սակս քաղցր մարդկան լինին յաղագս ուսման, թէ զինչ յեղանակաւ կաճառելով ընդ միմեանս խոհեմասիրապէս բնակեսցեն. և սմանք այնոցիկ որ 'ի խրատէն փախչին, խստագոյն բնութեամբ վարելով, և ոչ իւիք կակղելով. իբրու զի ոչ առ ամենայն չար հասցեն սոքա։ Զհանդերձեալ ասիլ բանքս՝ իցեն թերևս արարեալք որոց արդ օրէնքս 'ի հարկէ օրինադիրն թերևս օրինադրեսցէ, կամեցեալ սոցունց ոչ երբեք պէտս լինել։

Զի հօր կամ մօր, կամ սոցունց ևս նախնեաց, որ համարձակիցէ բռնադատելով հարուածս մերձեցուցանել, ոչ 'ի վերնոցն երկուցեալ աստուածոցն բարկութենէն, և ոչ ընդ երկրաւ ասացելոցն պատուհասից, այլ իբրու գիտելով զայն որ ոչ և միով իւիք գիտէր, արհամարհելով զնախնիսն, և առ յամենեցունց ասացեալսն անօրինի, սմա արդ պարտ է պատուհաս ինչ վերջին մահ։ Արդ ոչ է վերջին, բայց այն որ 'ի դժոխսն՝ այսոցիկ ասացեալ են ցաւք, տակաւին իսկ սոցունց են՝ մանաւանդ առ վերջինսն. և ճշմարտագոյն ասելով՝ ոչ ինչ ներգործեն այսպիսի անձանց զղջութիւնք. զի ոչ երբեք լինէին անարգողք հօր իսկ և այլոց ծնողաց անարգարագոյն գանիւք յանդգնութիւնք։ Արդ պարտ է զատտանօր տանջանս առ այսպիսիքս սոցունց՝ մինչև 'ի կենդանութեանն են, ոչ նուազագոյն այնոցիկ որ 'ի դժոխսըն են գոլ, ըստ որում հնար իցէ արդ ասացեալ յետ այսորիկ այսպէս։ Եթէ ոք յանդգնիցի զհայր կամ զմայր, կամ զսոցունց զհայր կամ զմայր հարկանել՝ ոչ ըմբռնելով 'ի ձեռն մոլութեան, յառա-

Ջագոյն իսկ որ պատահին օգնական լինիցի՝ որպէս յառաջագոյնսն, և փոխաբնակն իսկ կամ օտարն 'ի նախագահութիւն աշխատանացն կոչեսցի օգնելով և ոչ օգնելով, միշտ փախստեամբ 'ի գաւառէն փախիցէ. իսկ և ոչ փոխաբանակն օգնելովն իսկ՝ գովասանութիւն ունիցի, և ոչ օգնելովն՝ պարսաւ։ Իսկ ծառայ օգնեալ՝ ազատ լինիցի, և ոչ օգնեալ՝ հարիւր գանս հարուածոց ընկալցի 'ի վաճառի իսկ, եթէ լինիցի լեալն 'ի ձեռն վաճառօրինացն։ Ապ'եթէ արտաքոյ վաճառուն 'ի քաղաքի՝ քաղաքօրինացն տանջել զհասեալն. և եթէ առ ագարակօքն գաւառին ուրուք, ագարակաբաշխաց իշխանաց՝ եթէ ներաբնակ ոք իցէ հանդիպեալն։ Եւ եթէ մանուկ, և եթէ այր, և եթէ կին իսկ՝ վանիցէ զսա ամենայն ոք զանարդարագոյնն մականունելով, և որ ոչ զանէծըս ընկալցի զԱրամազդայ հարազատին և հայրենոյն իսկ ըստ օրինացն։

Եւ եթէ պարտապան ոք իցէ պատուհասի հարուածոց ծնողացն, նախ իսկ փախիցի միշտ փախուստ 'ի քաղաքէն յայլ գաւառն, և յամենայն տաճարացըն խափանիցի. իսկ ոչ խափանելով՝ տանջիցեն զսա յագարակաբաշխքն գանիւք ամենեքին իբրու կամեցին. և 'ի ներքս եկեալ՝ մահուամբ տուժեսցի։ Եւ եթէ ոք ընդ սմա՝ որչափ ազատք են, 'ի միասին կերիցէ կամ ըմպիցէ, և կամ այլ ինչ այսպիսի հաղորդութեան հաղորդեսցի, և կամ միայն հաղորդելով ուրուք կամաւ հպիցի, ոչ 'ի տաճար եկիցէ, և ոչ ինչ և ոչ 'ի վաճառ՝ և ոչ 'ի քաղաք, բոլորովին նախ քան եթէ մաքրիցի՝ կարծելով հաղորդել այլազանցատեսակ հանդիպմամբ։ Ապ'եթէ անհաւանելով օրինացն զտաճարս և զքաղաքս պղծէ անօրինաբար, որ և յիշխանաց իմացեալ ոչ ածցէ պատուհաս յայնմիկ որ այսպիսի իցէ, ընդ պարտեօք իցէ մեծագոյն ջատագովութեանցս սոցունց այսոցիկ։

Եւ եթէ ծառայ հարկանիցէ զազատն՝ եթէ օտար իցէ և եթէ քաղաքացի, օգնական լինիցի սմա որ առ այս ինչ պատահիցէ. և կամ ըստ գնոյն՝ զասացեալ զտուժն հատուսցէ։ Եւ կապակցելով՝ որ հանդիպլինն հանդերձ

այնմիկ որ գանեալ իցէ աւանդելով յանիրաւելն. և սա առեալ կապեալ կապանօք, և գան հարեալ սորա՝ որչափ և կամեսցի, ոչ ինչ տեառն վնաս առնելով ՚ի նա իսկ աւանդիցէ ՚ըստ օրինացն ստանալ: Նոյն օրէնս իցէ եթէ զազատ ոք ծառայ գոլով հարկանիցէ՝ իշխանացն ոչ հրամայելով: առեալ ստացողն զսա առ՚ի յայնմանէ, որ զգանս իցէ ընկալեալ, ոչ լուծցէ նուազ քան եթէ հաւանեցուցանելն ծառային՝ զգանեալն արժանի գոլ արձակեալ կենցաղավարիլ: Նոյնս իսկ և կանանց ևս է առ միմեանս օրէնք՝ յաղագս այսոցիկ ամենեցուն, և առ արս կանանց՝ և արանց առ կանայս:

# ՊՂԱՏՈՆԻ

## ՕՐԷՆՔ ԿԱՄ ՕՐԷՆՍԴՐՈՒԹԻՒՆ

### ՏԱՍՆԵՐՈՐԴ



*Յետ հարուածոցն յաղագս ամենայնի, առասցի այսպիսի ինչ օրինակաւ 'ի սակս հարստահարութեանցն, յօտարացն ոչ ուրուք ոչ ինչ բերելով ածել, և ոչ վանել ոչ ինչ յայնցանէ որ ընկերացն են, եթէ ոչ հաւանեցուսցէ զստացողն. քանզի զայսմանէ ամենայն կախեալ են ասացեալ չարիքս՝ որ եղեն իսկ, և որ լինելոցն են։*

*Արդ մեծագոյն են քան զայլսն համբակացն զեղխութիւնքն իսկ, և անարգանքն առ մեծագոյնսն, յորժամ 'ի տաճարս լինիցին, և զանազանապէս մեծագոյնք յորժամ հանդիսական իրս կամ 'ի սուրբս, կամ ըստ մասանց հասարակաբար ազգաց, և կամ ոմանց այլոց այսպիսեաց հաղորդելոց իսկ առ տաճարս յատկապէս։ Եւ չիրիմք երկրորդք և երկրորդաբար, և 'ի ծնողք երրորդ՝ որիշ յառաջագոյն ասացելոցն՝ յորժամ անարգիցէ ոք. և չորրորդ տեսակ անարգանաց՝ յորժամ իշխանացն ոք փոյթ առնելով ածէ կամ բերէ կամ վարի ինչ յայնցանէ որ նոքօք՝ ոչ հաւատուցանելով զնոսա։ Եւ հինգերորդ՝ քաղաքականն թերևս իցէ և քաղաքացեացն անարգեալ դատաստան կոչելով, որոց արդ պարտ է հաւատուցանել առ հասարակաց օրէնն իւրաքանչիւրոց։*

*Քանզի տաճարակապտութիւն ասացաւ 'ի միասին ըմբռնեալ բուռն և լսելեացն եթէ լինիցի, զի՞նչ պարտ է կրել իսկ. որչափ բանիւ, և որչափ գործով առ աստուածսն անարգէ ոք, ասելով ոք կամ*

գործելով, զառաասպէն ենթադրելով ասելի է զոր ինչ պարտ է կրել:

Իսկ արդ այս ինչ. աստուածք վարկանելով գոլ ըստ օրինացն, որք ևս երբեք գործ ամբարշտութեան գործեաց կամաւ, և ոչ բան անօրէնութեան խօսեցաւ: Այլ արդ մի ինչ յերկուց կրելով. կամ զայս՝ որպէս ասացի, ոչ վարկանելով, կամ զերկրորդն՝ գոլով իսկ, ոչ փոյթ առնելով մարդկան, կամ զերրորդն՝ դիւրահաշտք գոլ զոհիւք և ուխտիւք և ածանցելով:

Կղինիաս. Զի՞նչ արդ արասցուք կամ ասասցուք առ սոսա:

Պղատոն. Ո՛վ այր բարի, լուիցուք սոցա յառաջագոյն, զոր ինչ արհամարհելով զմեզ և խաղալիք առնելով՝ ասել նոցա առ մեզ դիւթութիւն:

Կղինիաս. Զորպիսի՞ ինչ:

Պղատոն. Զայսոսիկ թերևս լեզուագարելով ասիցեն. Ո՛վ օտար աթենացի և լակեդմոնացիդ և դու կնոսացիդ ճշմարիտ ասէք: Զի 'ի մէնջ ոմանք ամենևին աստուածք ոչ և միով իւիք գոլ կարծեմք, և միւսք՝ իբրու դուքդ ասէք աղաչեմք: Արդ որպէս դուք աղաչեցիք յաղագս օրինաց՝ նախ քան զխրստագոյն սպառնալն ձեր, յառաջագոյն ձեռնարկութիւն՝ հաւանեցուցանել և ուսուցանել իբրու են աստուածք, սակայն նշանք ասելով բաւականք և վեհագոյնք քան զիրաւունս 'ի ձեռն ոմանց պարգևաց յեղափոխել փութալով: Զի այժմիկ զայսոսիկ լսելով, և այս[illegible] յասացելոցն արիագոյնք գոլ քերթողացն իսկ և ճարտասանացն և [illegible]ացն և քահանայիցն և այլոցն, բազում անգամ բազմաց ոչ գործել [illegible]ութիւնն դառնագոյնս, և գործելով բժշկել ջանամք: Արդ առ 'ի յօրինադիր ասողաց գոլ՝ և ոչ վայրենեաց այլ ընտանեգունից, աղաչեմք հաւանականութեամբ նախ վարիլ առ մեզ. թէ ոչ լաւագոյն բազմաւ քան զայլսն ասելով յաղագս աստուածոցն իբրու են: Այլ սակայն լաւագոյնք առ ճշմարտութիւն. և թերևս հաւանեսցուք ձեզ՝ այլ ձեռնարկեցէք դուք. թէ չափաւոր ինչ ասեմք՝ ասելով զոր ինչ նախ կոչեալ եմք:

Կղինիաս. Ո՞չ ապաքէն, ով սիրելի, թուի դիւրին գոլ ճշմարիտ գոլով ասել իբրու են աստուածք:

Պղատոն. Ո՞րպէս:

Կղինիաս. Առաջին իսկ՝ երկիր և արեգակն, աստեղք իսկ. և ամենայն 'ի միասին և իրք ժամանակաց՝ զարդարելով բարեւք այսպէս ամօք իսկ և ամսօք յարմարեալ. և զի ամենեքեան ելլենացիք իսկ և բարբարոսք՝ կարծեն գոլ աստուածք:

Պղատոն. Երկնչիմ, ով երանելի, 'ի չար մարդկանէ. զի ոչ ասեմ իսկ երբեք, ասացից թերևս, իբրու պատկառիմ իսկ, գուցէ արհամարհիցեն զձեզ. զի դուք ոչ իսկ գիտէք յաղագս դոցա զտարբերութեանն պատճառ. այլ վարկանիք 'ի ձեռն անժուժկալութեան հեշտութեանց իսկ և ցանկութեանց առ ամբարիշտ կենցաղն դիմել անձանց նոցա:

Կղինիաս. Բայց զի՞նչ առ այսոսիկ իցէ պատճառըն թերևս, ով սիրելի:

Պղատոն. Գրէ թէ այն ամենևիմբ. դուք արտաքոյ կելով ոչ գիտիցէք, այլ 'ի ձէնջ թերևս զանխլիցի:

Կղինիաս. Զի՞նչ արդ զայս ինչ ասես այժմիկ:

Պղատոն. Անուսումնութիւն ինչ, յաւէտ և դըժուարին թուելով գոլ մեծագոյն խոհեմութիւն:

Կղինիաս. Ո՞րպէս ասես:

Պղատոն. Են մեզ մակադրեալ բանք կալով, որք առ ձեզ ոչ են, վասն առաքինութեան քաղաքավարութեան իբրու ես ուսանիմ, ոմանք առ չափս ինչ՝ և ոմանք առանց չափուց ասելով յաղագս աստուածոցն. ոմանք հնագոյնք՝[1] իբրու եղև առաջին բնութիւնն յերկնից, և այլոց՝ և յառաջ հասանելով, 'ի սկզբանէն ոչ բազում աստուածածնութիւնն պատմեն լինելով իսկ՝ իբրու առ միմեանս կաճառեսցին. զորս լռողացն՝ եթէ առ այլ ինչ բարեւք կամ ոչ բարեւք ունի, ոչ դիւրին է սաստելն, նախմնիս գոլով առ ծնողաց իսկ ծառայութիւնք և պատիւք: Ոչ թերևս ես գովելով ասացից, և ոչ իբրու օգտակար, և ոչ որպէս ամե-

1 Օրինակին հնարագոյնք. ուղղեցաք ըստ բնագրին:

նելին ուղղապէս ասացաւ։ Իսկ արդ յաղագս նախնեաց թողցի և բարեւք մնասցէ, և որպէս աստուածոցն սիրելի։ Ասացից այնպէս իսկ՝ նորագունիցն մեր և իմաստնոցն պատճառեսցէ որ ինչ չարեաց գոյ պատճառ։ Զայս ինչ արդ՝ այսպիսեացն ՚ի բաց գործեն բանքն։ Քանզի իմ և քո՝ յորժամ ասիցեմք իբրու են աստուածք, զայսոքիկ զնոյնս մատուցանելով՝ զարեգակն իսկ և զլուսին և զաստեղք և զերկիր իբրու աստուածք և աստուածայինք ելով, ՚ի ձեռն իմաստնոց այնոցիկ հաւանել թերևս ասիցեն, իբրու հող և քարինք գոլով զսոսա, և ոչ ինչ մարդկային իրողութեանս փոյթ առնել. և բանիւք զայսոսիկ դիւրապէս առ հաւանականն շրջաբերելով։

Կղինիաս. Դժուարին բան, ով սիրելի, ասացեալ հանդիպիս, թէ մի իսկ միայն էր. բայց այժմիկ յորժամ ամենևին բազումք հանդիպին՝ տակաւին թերևս իցէ դժուարագոյն։

Պղատոն. Արդ զի՞նչ ասեմք. զի՞նչ պարտ է առնել մեզ, ո՞րպէս տացուք պատասխանի. իբրու ջատագով լինելով ուրուք, որպէս ամբարիշտ մարդկան մեզ ոչ գոլով համեմատ յօրինադրութենէն, ասել որպէս չար գործեմք օրինադրելով իբրու գոլով աստուածոցն, և կամ բարեւք մնալ ասացեալք առ օրէնս՝ միւսանգամ դարձցուք։ Գուցէ նախերգանս մեր երկայնագոյն լինիցի քան զօրէնս. զի ոչ դուզնաքեայ ինչ բանս տարածեալ թերևս լինիցի, եթէ այնոցիկ որ ցանկան ամբարշտիլ՝ զոմանս բանիւքս ՚ի բաց ցուցցուք չափաւորապէս յաղագս որոց՝ ասէին պարտ գոլ ասել, և զոմանս յերկիւղ դարձուսցուք. և միւսոյ տացուք ինչ դժուարանալ որչափ վայել է. յետ այսոցիկ աւասիկ օրինադրեսցուք։

Կղինիաս. Այո, ով սիրելի, բազում անգամ իբրու սակաւ ժամանակաւ զայսոսիկ զնոյնս ասացաք, իբրու ոչ ինչ առ հասեալ ժամն պարտ է նախապատուել զնուազ բանս քան զերկայնս, զի ոչ մեզ, որպէս ասացեալ է, ստիպելով հալածէ ոք։ Ծաղրական արդ է և յոռին՝ նախ վեհագունիցն զվատթա-

րագոյնքն ընտրելով երեւելին, և զանազանի՝ ոչ փոքր իբրու այսպէս հաւանականութիւն զոմն ունել բանիցս մեր, իբրու աստուածք իսկ են բարիք՝ զիրաւունս պատուելով զանազանապէս զմարդկան. զի գրեթէ այս մեզ յաղագս ամենայն օրինացն գեղեցկագոյն և արիագոյն իցէ։ Թերևս ոչ ինչ արդ դժուարասցուք, և ոչ փութասցուք զոր ինչ ունիք երբեք զօրութիւն առ հաւանականութիւն այսպիսի բանիցս, ոչ ինչ շտեմարանելով պատմեսցուք՝ ըստ որում հնար է բաւականապէս։

Պղատոն. Աղօթական ինձ թուի առնել մխիթարելով՝ ասացեալդ առ 'ի քէն այժմիկ բան. քանզի յօժարապէս փութաս. ծուղալ ոչ ևս վայել է, այլ ասել։ Բեր, որպէս արդ ցասմամբ ասիցէ յաղագս աստուածոցն որպէս են. քանզի հարկ է դժուարապէս բերել և ատել զնոսա՝ որք այսոցիկ մեզ պատճառք բանից եղեն, և լինին այժմիկ արդ՝ հաւանելով առասպելացն զորս 'ի մանկութենէ մինչդեռ տղայք էին կաթամբ սնեալ՝ լսէին 'ի տիտանեաց[1] և 'ի մարց իբրու երգօք հանդերձ խաղալեաց, և փութով ասելով զոհիւքդ և պատարագօք. 'ի սոցանէ լսելով իսկ, և դէմս տեսանելով, հետևեալ սոցունց զորս հեշտագոյնս համբաւքն իսկ տեսանի և լսէ գործելով առ զոհն փութով, մեծագունիցն իւրոցն ծնողացն՝ վասն անձանց իւրեանց և վասն սոցունց փութով, իբրու յայտնապէս գոլով աստուածոցն աղօթիւք տրամաբանել ընդ սոցա և մաղթանօք, ծագելով իսկ արեգականն և լուսնին և առ մուտս հասանելով, առաջի անկանելով միանգամայն և երկրպագելով զսոսա, լսելով իսկ և տեսանելով ելլենացւոց իսկ և բարբարոսաց, ամենեցուն ամենայն դիպուածօք և բարեգործութեամբ ըմբռնելով՝ ոչ իբրու ոչ եղող, այլ իբրու մանաւանդ եղող. և ոչ միով իւիք կասկածանս առնուելով՝ իբրու ոչ են աստուածք։

Այսոցիկ արդ ամենեցուն՝ որչափ արհամարհեալք, ոչ և միոյ բանի բաւական են, իբրու ասեն թե-

1 Յոյն՝ τροφός, որ է դայեակ կամ սնուցիչ։

րեւս որչափ և փոքր մասն մտաց ստացեալ են այժմիկ, հարկեն զմեզ ասել զոր ինչ ասեմքս։ Ո՞րպէս արդեւք զողքա հեզագոյն բանիւք կարասցէ ոք խրատելով ուսուցանել յաղագս աստուածոց, նախ իբրու են համանգամայն. և համարձակել պարտ է, զի ոչ համանգամայն իսկ մոլիլ պատշաճ է, ոմանց 'ի ձեռըն որկորամոլութեանց հեշտութեան, մերոյ և ոմանց 'ի ձեռն տրտմելոյն՝ այսպիսեացս հասցէ։

Արդ յառաջաբան ինչ այսպիսի առանց սրտմտութեան՝ այնոցիկ որ այսպէս մտօք ապականեալ են, և ասասցուք հեզաբար շիջուցանելով զցասումն, իբրու ընդ միոյ տրամաբանելով ընդ սոցունց. Ո՞վ մանուկ, համբակ ես. յառաջելով ժամանակս՝ արասցէ զքեզ բազում ինչ այժմիկ թուեցելոցդ քեզ փոփոխեալ՝ և առ ներհականսն դարձեալ. սպասեա արդ յայնժամ յաղագս մեծագունիցն լինել դատաւոր. և մեծագոյն է զոր ինչ այժմիկ դու ոչինչ վարկանիս, առ աստուածսն ուղղապէս խորհելով՝ կեալ բարեւք կամ ոչ։ Նախ իսկ յաղագս այսոցիկ մեծ ինչ քեզ ազդելով ոչ երբեք երևեցայց սուտ. և զայսպիսի ինչ ոչ դու միայն, և ոչ քոյն բարեկամք նախ առաջին զայս ինչ կարծիս ունիք յաղագս աստուածոցն. այլ լինին միշտ բազումք կամ նուազք զայսպիսի խօթութիւնս ունելով։ Զայս ինչ արդ հասեալ քեզ 'ի նոցունց բազմաց ասացից. թերևս ոչ երբեք զոչ ոք առեալ 'ի տղայութենէ զայսպիսի կարծիս յաղագս աստուածոցն՝ իբրու ոչ են, կատարեալ մինչև ցծերութիւն մնալով այսպիսի տրամախոհութեամբս։ Այսուհետև զերկու կիրսն յաղագս աստուծոցն՝ առ բազմաց իսկ մնալ, և ոչ առ ոմանց մնալ զայս ինչ. զաստուածսն իսկ գոլ, բայց փոյթ ոչ առնել մարդկայնոցս, և որ ինչ յետ այսորիկ՝ իբրու դարմանեն, սակայն են դիւրահաշտք պատարագօք՛ և ուխտիւք։ Արդ զհաւաստին թերևս եղեալն քեզ յաղագս այսոցիկ ըստ զօրութեան աւանդութիւն, եթէ ինձ հաւանիս, սպասիցես վերըստին դիտելով եթէ այսպէս և եթէ այլպէս ունի. հարցանելով իսկ առ 'ի յայլոց, և մանաւանդ առ 'ի

յօրինադրէն։ Արդ առ այսմիկ ամանակիս մի յանդըգնիցիս առ աստուածսն ոչ ինչ ապիրատել. քանզի ջանալ պարտ օրինացն դնողին այժմիկ և դարձեալ ուսուցանել յաղագս նոցունց այսոցիկ։

Կղինիաս. Գեղեցիկ մեզ, ով սիրելի, մինչև ցայժմ ասացաւ։

Պղատոն. Ամենևին արդ, ով Մեգիլէ և Կլինիա, զանխլեցաք 'ի միմեանց առ սքանչելի բանի ինչ անկեալք։

Կղինիաս. Զորպիսի՞ ինչ ասես։

Պղատոն. Այն ինչ առ 'ի բազմաց թուեցեալ է գոլ իմաստագոյն յամենայն բանից։

Կղինիաս. Ասա ևս հաւաստի։

Պղատոն. Ասեն ոմանք, իբրու են ամենայն իրողութիւնք լեալք և լինելով և լինելոց, ոմանք բնութեամբ և ոմանք արուեստիւ և ոմանք պատահմամբ։

Կղինիաս. Բարեւք է։

Պղատոն. Վայել է իսկ իմաստուն արանց ուղղապէս ասել. հետևելով արդ սոցունց՝ խնդրեսցուք յետ այսոցիկ թէ զի՞նչ երբեք հանդիպիցին խորհելով։

Կղինիաս. Ճշմարտապէս իսկ։

Պղատոն. Ասեն եթէ թուին մեծագոյնքն սոցունց և գեղեցկագոյնքն գործել զբնութիւն և զհանդիպումն, և փոքրագոյնքն զարհեստքն. արդ զո՞ր 'ի բնութենէն առնլով՝ զմեծագունիցն և զնախկնեացըն լինելութեան գործն, ստեղծնուլ և նիւթել զմանրագոյնսն՝ զորս արհեստականք ամենեքեան առասեն։

Կղինիաս. Ո՞րպէս ասես։

Պղատոն. Այսպէս տակաւին հաւաստի ասացից. զհուր և զջուր և զերկիր և զօդ բնութեամբ զամենայն ինչ գոլ և պատահմամբ ասեն։ Իսկ մարմինք յաղագս երկրի և արեգական և լուսնի և աստեղաց, 'ի ձեռն այսոցիկ լինել ամենևին գոլ անշնչից։ Իսկ հանդիպմամբ բերելով զօրութեամբ իւրաքանչիւր իւրաքանչիւրոց՝ ըստ որում առ միմեանս անկեալք են յարմարելով, իբրու ընդանեբար ջերմք ընդ ցուրտս, և չորք առ գիջինս, և կակուղք առ

կարծս, և ամենայն որչափ ներհակացն խառնմամբ ըստ հանդիպման 'ի հարկէ 'ի միասին խառնեցաւ։ Այսպէս և ըստ այսոցիկ լինել զբոլոր յերկինս, և զամենայն որչափ որ ընդ երկնաւ են կենդանիք և տունկք ամենայն ժամանակաց 'ի սոցունց լինելով. ոչ վասն մտաց ասեն, ոչ վասն ումեմն աստուծոյ, և ոչ վասն արհեստի. այլ որպէս ասեմք՝ բնութեամբ և հանդիպմամբ։ Իսկ զարհեստ յետոյ առ 'ի սոցունց վերջին ինչ լինելով՝ զսա մահկանացու, առ 'ի մահկանացուաց վերջնագոյն ծնանիլ զխրատիչս ճշմարտութեան, ոչ ինչ յոյժ հաղորդելով սոցա. այլ պատկերք իբրու բաղաղանք իւրեանց, որպէս կենդանագրական ծնանի երաժշտական՝ և որչափ այսոցիկ են գործակիցք արհեստք, և որ ինչ փութով թերևս ծնանին, արհեստիցն գոլ զայսոցիկ որչափ բնութեամբ հաղորդեցան նոցունց զօրութեանն, որպէս բժշկականն և երկրագործականն և պատերազմականն։ Արդ և զքաղաքականն փոքր ինչ մասն գոլ ասեն հաղորդեալ բնութեամբ և արուեստիւ յոյժ. այսպէս իսկ և զօրինադրութիւնն ամենայն՝ ոչ բնութեամբ, այլ արհեստիւ, որ ոչ ճշմարիտք գոլ զդրութիւնքն։

Կղինիաս. Ո՞րպէս ասես։

Պղատոն. Աստուածք, ով երանելի, գոլ ասեն նախ զսոք ոչ արհեստիւ բնութեամբ, այլք՝ այլ ինչ օրինօք, և զսոսա զայլս այլոց՝ որպէս իւրաքանչիւրք ինքեանց 'ի միասին խոստովանեցան օրինադրել, և զբարեքըն իսկ բնութեամբ այլ գոլ և օրինօք այլ. իսկ զարդարքն՝ ոչ գոլ ամենևին բնութեամբ, այլ երկբայելով ընդ միմեանս գոլ և փոփոխելով միշտ սոքա զոր ինչ փոփոխին. և յորժամ յայն իսկապէս գոլ իւրաքանչիւրոց՝ լինելով արհեստիւ և օրինօք, այլ ոչ ամենևին ըստ բնութեան։ Այսոքիկ են, ով սիրելի, արանց իմաստնոց առ նորագոյն մարդկան ռամկաց իսկ և քերթողաց՝ ասելով գոլ զարդարագոյնն, զոր ինչ ոք բռնադատելով։ Ուստի և ամբարշտութիւնք հասանին առ նորոց մարդկան՝ իբրու ոչ գոլով աստուածոցն, որպէս օրէնքն հրամայէ պարտ գոլ տրա-

մախոհիլ. և հակառակութիւնք վասն այսոցիկ ձգելով առ ըստ բնութեան, ուղիղ կենցաղոյն յաղթելով. այլոցն կեալ՝ և ոչ ծառայելով այլոցն ըստ օրինի։

Կղինիաս. Որպիսի՞ պատմեցեր բան, - ով սիրելի, և որչափ վնաս նորոց մարդկան, 'ի միասին քաղաքի իսկ և յատուկ տանց։

Պղատոն. Ճշմարիտ իսկ ասես, ով Կլինիա։ Զինչ արդ կարծես գոլ օրինադրին այսպէս ստացւոց պատրաստելով 'ի նախուստ, քան եթէ միայն սպառնալ՝ կալով առ քաղաքաւն հանդերձ մարդկամբք. իբրու թէ ոչ ասիցեն գոլ աստուածք, և տրամախոհիցեն կարծելով այսպիսիք որպէս յօրէնսն ասէ, և յաղագս բարեաց և յիրաւանց, և յաղագս ամենայն մեծագունից նոյն բանս. և որչափ յառաքինութիւնըս փութացուցանէ և 'ի չարութիւն, իբրու պարտ է զայսօքիկ այսպէս գործել խորհելով, որպէս և օրինադիրն պատմիցէ գրելով. և որ ոչ առատուցէ զանձն իւր օրինացն դիւրահաւան՝ ումեմն պարտ գոլ մեռանիլ, և ումեմն զանիւք և կապանօք, և ումեմն անարգութեամբ, և այլոց տնանկութեամբ և փախստեամբ տանջիլ. իսկ հաւանութեամբ մարդկան համանգամայն դնելով ստացւոց զօրէնսն՝ ոչ և մի ունել առ բանսն հաստուցանելով ըստ զօրութեան փոքր հանդարտել։

Կղինիաս. Ոչ և միով իւիք, ով սիրելի։ Այլ եթէ ինչ հանդիպի իսկ, գոլով փոքր ինչ հաւանականութիւն առ այսպիսիս, պարտ է ոչ իւիք աշխատիլ՝ այնմիկ որ փոքումբ արժանի է իսկ օրինադրին. այլ զամենայն ձայն թողլով, որպէս ասացեալ է նախնի օրինացն, բանիւ օգնական լինել՝ իբրու են աստուածք. և որչափ այժմիկ և դու պատմեցեր, և օրինօք օգնեն սմա և արհեստիւ իբրու են բնութեամբ ո՛չ ինչ նուազագոյն եթէ մտաց են ծնունդք. ըստ ուղիղ բանի որ դու իսկ ինձ ասելով երևիս, և ես քեզ հաւատամ այժմիկ։

Պղատոն. Ո՛վ յօժարագոյն Կլինիա, զի՞նչ արդ ոչ է դժուարին իսկ 'ի միասին հետևիլ բանիցս, այնպէս ըստ յոլովութեան ասելով և երկարութիւն ստացեալ իսկ յերկայնաձիգ։

Կղինիաս. Եւ զի, ով սիրելի, յաղագս արբեցութեան և երաժշտականի այնպէս յերկար ասելով մեր ինքեանց սպասեցաք, և յաղագս աստուածոցն և այսպիսեաց ոմանց ոչ համբերեցաք: Սակայն և օրինադրութիւն իսկ՝ հանդերձ խոհեմութեամբ, մեծագոյն օգնական է. վասն զի առ օրէնսն կարգաւորութիւնք գրոց դնելով որպէս պարգևք՝ առ ամենայն ժամանակի յանդիմանելով ամենեւին հանդարտեցուցանէ. որպէս զի ոչ եթէ դժուարինք առ սկզբանն լուիցէ՝ երկնչել պարտ է. և զոր ինչ իցէ իսկ և այնմիկ որ դժուարիմացն իցէ՝ բազում անգամ վերստին հասանելով գիտել. և ոչ եթէ երկար՝ սակայն օգտակար, վասն այսորիկ բան ոչ ուրուք ունիցի: Եւ ոչ արդարագոյն իսկ ինձ երևի գոլ, ոչ օգնելն բանիցս այսոցիկ՝ ամենայն առն ըստ զօրութեան:

Մեգիլլոս. Արիապէս, ով սիրելի, թուի ինձ ասել և Կլինիասայ:

Պղատոն. Եւ մանաւանդ, ով Մեգիլլէ, պարտ է առնել՝ որպէս ասէ: Քանզի եթէ ոչ էին սերմանեալ այսպիսի բանք առ ամենայն մարդկան, զինչ և մանաւանդ պատշաճ է օգնել կամ օրինադրել:

Կղինիաս. Ոչ գոյ:

Պղատոն. Այլ արդ ասա ինձ դարձեալ և դու Կլինիա, քանզի հաղորդ գոլով քեզ պարտ է բանիցըս. քանզի հարկի ասացեալն, զայսոսիկ՝ զհուր և զջուր, զերկիր և զօդ՝ նախկին վարկանել ամենեցուն գոլ. և բնութիւնք անուանել զնոյնս զայսոսիկ. իսկ զհոգի 'ի սոցունց վերջագոյնս: Բայց թուի ոչ հարկիլ՝ այլ ճշմարտապէս նշանակիլ մեզ բանիւք զայսոսիկ:

Կղինիաս. Եւ յոյժ իրաւացի:

Պղատոն. Արդ առ 'ի յԱրամազդայ, իբրու աղբիւր ինչ անիմայ կարծեաց վերստին գտեալ մարդկան՝ որչափ ոմանք յաղագս բնութեան 'ի խնդրուածս մերձեցան: Դիտեա զամենայն բան քննելով, զի ոչ փոքր ինչ է զանազանեալս՝ եթէ երևեսցին զբանից բուռն հարողքն յամպարշտաց այլոց

իսկ յառաջելով, ոչ բարեւք բանիւքն՝ այլ 'ի բաց սխալականօք վարելով։ Թուի ինձ այժմիկ այսոցիկ այսպէս ունել։

Կղինիաս. Բարւոք ասես, այլ որպէս կամիս՝ փութա ասել։

Պղատոն. Թուի այժմիկ զանսովորական բանիւք պարտ գոլ բուռն հարկանել։

Կղինիաս. Ոչ դանդաղելի է, ով սիրելի. քանզի իմանամ, զի արտաքոյ օրինադրութեան թուիցիս ելանել եթէ առ այսպիսի բանք արասցուք ձեռնարկութիւն։ Եւ եթէ կ՛ ոչ իւիք այլում ձայնակցիլ այսոցիկ որ այժմիկ ըստ օրինի ասացեալ են, իբրու ուղղապէս ունին. և կամ այսպէս ասել պարտ է, ով սքանչելի, և զայս ինչ։

Պղատոն. Ասացից արդեւք, որպէս թուի աւասիկ գրեթէ զբան ինչ ոչ սովորական. զայս ինչ՝ որ է նախծննդեանն և ապականութեանն պատճառ ամենեցուն, զայս ինչ ոչ նախ՝ այլ յետոյ բաց ասացին եղեալ գոլ. այնոքիկ բանք՝ որ զամբարշտացն զհոգիքն 'ի բաց գործեցին, և որ ինչ յետոյ էր՝ յառաջագոյն. վասն որոյ և սխալեցան յաղագս աստուածոցն ճշմարտապէս գոյութեանն։

Կղինիաս. Ոչ ես իմանամ։

Պղատոն. Զհոգի, ով ընկերակից սիրելի, ոչ գիտել հարկին իսկ փոքումբք 'ի միասին ամենեքեան, որպէս գոլ հանդիպիցի, և զոր ինչ ունի զօրութիւն, և յաղագս այլոց իրաց սորա և լինելութեան։ Արդ իբրու յառաջագոյն է՝ մարմնոց յառաջ ամենեցուն լինելով՝ և փոփոխման սոցունց, և ամենայն փոխման կերպից իշխէ ամենայնի յաւէտագոյն։ Եւ եթէ են այսոքիկ այսպէս, ո՞չ արդեւք 'ի հարկէ հոգւոյ բաղազանքն յառաջագոյն թերեւս իցեն լինելով այնոցիկ՝ որ առ մարմին յարմարին, գոլով սորա երիցագոյն քան զմարմին։

Կղինիաս. Հարկ է։

Պղատոն. Կարծիս արդ և փոյթ և միտք և արհեստ և օրէն կարծրագունից և կակղագունից, և ծանրագունից և թեթեւագունից նախկին թերեւս

իցեն. և արդ և մեծագոյն և յառաջին արարածք և գործք արհեստի թերևս լինիցի, գոլով յառաջագոյն իսկ այնոքիկ որ բնութեամբ, և բնութիւն՝ զոր ոչ ուղղապէս մականուանեն զսա զայս ինչ, վերջինք և իշխեցեալք իցեն թերևս յարհեստէ և 'ի մտաց։

Կղինիաս. Ո՞րպէս։

Պղատոն. Ոչ ուղղապէս բնութիւն ասել թուին լինելութիւն առաջնոցն՝ ապ'եթէ երևեսցի հոգի առաջին ոչ հուր և ոչ յօդ, այլ հոգի յառաջագոյն լինելով, գրեթէ ուղղապէս արդեւք ասիցէ գոլ զանազան, որպէս որ ինչ բնութեամբ այսոքիկ են։ Այսպէս ունելով՝ եթէ զհոգի ոք ցուցցէ երիցագոյն գոլ մարմնոյ, և այլաբար ոչ և միով իւիք։

Կղինիաս. Ճշմարտապէս ասես։

Պղատոն. Ո՞չ ապաքէն զոր ինչ յետ այսոցիկ են առ այսուիկ եմք պատմելոց։

Կղինիաս. Սակայն զի՞նչ։

Պղատոն. Պահեսցուք արդ ամենևին, գուցէ խաբեբայ բան՝ ծերս զմեզ գոլով՝ նա համբակաց գոլով վայելուչ՝ հաւանեսցուսցէ, և ձողոպրելով ծաղրականս արասցէ. և թուիցուք զմեծագոյնս ըմբռնելով և ոչ փոքրագունին հանդիպելով։ Քանզի զձեզ, և բազում ջուրց հմտագոյն, եթէ յառաջագոյն ինձ պարտ է փորձ առնուլ ըստ ինքեան, մնացուցանել զձեզ զգուշութեան խնդիր առնել եթէ անանց է, երիցագունից ձեզ գոլով, կամ եթէ որպէս ունի. և թուելով ինձ պատշաճ՝ կոչել և զձեզ յայնժամ, և անցուցանել հմտութեամբ. ապ'եթէ ձեզ իբրու անցուցանելի ոչ էր, առ ինձ լինել վերստագնելոյն, չափաւորապէս թերևս կարծէի ասել։ Եւ արդ այժմիկ և հանդերձեալ բանս յուժգնագոյն է, և գրէ թէ անանցանելի՝ իբրու երկաքանչիւրոց զօրութեանց։ Մի՛ արդ խաւարչտին մեզ զանգիտութեան արասցէ առ ձեզ հալածելով և հարցանելով, անսովորք գոլով ձեր պատասխանեաց. ապա տարաձևութիւն և թախանձեցուցիչ անվայելչութիւն ծնանի։ Արդ թուի ինձ պարտ գոլ առնել այժմիկ ինձ այսպէս. վերստին հարցանել նախ

զանձն իմ՝ լսելով ձեր զգուշութեամբ. և դարձեալ յետ այսորիկ տալ ինձ պատասխանի. և զբանս ամենայն այսպէս պատմել, մինչև յաղագս հոգւոյ իմասցի և ցուցցի՝ նախկի գոլ հոգի քան զմարմին։

Կղինիաս. Արիագոյն, ով սիրելի, թուիս մեզ ասացեալ, արա իսկ իբրու ասեսդ[1]։

Պղատոն. Բեր արդ զատուած եթէ աղաչել մեզ պարտ է այժմ։ Իցէ այս ինչ այսպէս լինելով արդ ապացոյց իսկ իւրոց, իբրու փութով ամենայնիւ աղաչեսցուք, և հուպ գոլով սորա՝ իբրու ումեմն զգուշագոյն հաստատութեան 'ի վերայ հասանելով մըտցուք առ հասեալ բանիս։ Եւ ինձ իսկ յանդիմանելով առ այսպիսիքս՝ հարցուածօք այսպիսեօք զգուշագոյն պատասխանի տալ երևի. Արդեւք, ով սիրելի, յորժամ ասիցէ ոք թէ թերևս կացեալ է իսկ ամենայն և շարժի ոչ ինչ, և կամ զայս ամենայն ներհակն. և կամ ոմանք 'ի սոցանէ շարժին և ոմանք մնան արդեւք. ոչ 'ի վայրի ուրուք կացեալքն կան՝ և շարժեալքն շարժին. զի որպէս ոչ և ոմանք առ միում հաստատութեան ուրուք զայս ինչ առնէ, և ոմանք յոլովագունիւք. զայնոքիկ՝ որ զկացելոցն 'ի միջի առնուն զզօրութիւնն ասես՝ ասասցուք 'ի միում կալ, որպէս դադարել ասացելոցն շրջանակաւ շրջի շրջաբերութիւն։

Կղինիաս. Այո։

Պղատոն. Բայց իմանամք իսկ իբրու նոյն շրջաբերութեամբս զմեծագոյնն և զփոքրագոյն՝. բոլորն համանգամայն բերելով այսպիսի շարժութիւնս, համեմատութեամբ զինքն բաշխէ, փոքունց և մեծագունից նուազ գոլով և յոլովագոյն ըստ բանի. վասն որոյ աքանչելեացն ամենեցուն աղբիւր եղև համանգամայն՝ մեծիւք և փոքումբք բոլորիւք՝ հեղգութեամբ իսկ և երագութեամբ խոստովանեալ գնալով, անհնարին իբրու թերևս ոք յուսասցի լինիլ կիր։

Կղինիաս. Ճշմարտագոյն ասեն։

Պղատոն. Եւ շարժեալքն բազմօք՝ երևիս ինձ

1 Յօրինակին արհէսդ. ուղղեցաք ըստ յունին։

ասել՝ որչափ թերմամբ շարժի փոխելով միշտ 'ի յայլ տեղի, և յայնժամ իսկ է՝ յորժամ հաստատութիւն միոյ ստացեալ ումեմն կիտի. և երբեմն յոլովագոյն շուրջ թաւալագունիւքն. և հանդիպելով իւրաքանչիւր ժամու՝ իւրաքանչիւրոցն այնոցիկ որ կայուն են, և այլոցն ներհակապէս հանդիպելով, և թերելով 'ի մի լինելով 'ի մէջ իսկ և առ սոցունց այսպիսեացս բաղդատիցի։ Զի ասէ մարդ. զայսոսիկ այսպէս՝ ունելով իբրու դուդ ասես։ Սակայն բաղդատելով իսկ աճէ, և անջատելով նուազի յայնժամ՝ յորժամ հաստատուն իւրաքանչիւրոցն ունակութիւնն մնասցէ, և ոչ մնալով սորա վասն իւրաքանչիւրոցն կորընչել։ Զիարդ լինի արդ ամենեցուն լինելութիւն՝ յորժամ կորնչիցէ։ Յայտ է թէ իբրու յորժամ սկիզբըն առեալ աճման առ երկրորդն՝ երկ իցէ փոխաբերութիւն, և յայսմանէ առ այնմ որ մերձ է և մինչև ցերիմն գոլով, զգայութիւն ունիցի զգալեացն փոխաբերելով։ Արդ այսպէս և շարժեալ փոխմամբ լինի ամենայն, և է ճշմարտապէս գոլով յորժամ մնասցէ իսկ. փոխելով 'ի յայլ ունակութիւն՝ բոլորովին ապականեցաւ։ Արդեւք զշարժութիւնս ամենայն ասացաք իբրու տեսակօք առնուլ իբրու թուով. բաց, ո՛վ սիրելիք, յերկուցունց։

Կղինիաս. Յորո՞ց իսկ։

Պղատոն. Գրե՛ թէ, ո՛վ բարի, այնոցիկ 'ի սակս որոց ամենայն խնդրուած է մեզ այժմիկ։

Կղինիաս. Ասա հաւաստագոյն։

Պղատոն. Ի սակս հոգւոյ։

Կղինիաս. Յոյժ իսկ իբրաւացի։

Պղատոն. Իցէ այժմ այն որ զայլ ինչ կարէ շարժել զշարժութիւնն, և զինքն ոչ կարէ միշտ. մի ոմն այն՝ որ զինքն միշտ և զայլս կարէ ըստ բաղդատութեանց իսկ և անջատմամբ իսկ, և ներհական լինելութեամբք և ապականութեամբք. այլ մի ոմն՝ 'ի սոցունց ամենեցունց շարժութեանց։

Կղինիաս. Իցէ արդ։

Պղատոն. Ո՞չ ապաքէն զայն իսկ որ զայլ ինչ միշտ շարժէ, և փոխաբերի յայլմէ ումեքէ, դիցուք ին-

ներորդ իսկ. և զայն որ զինքն շարժէ և զայլս, յարմարելով ամենայն արարածօք և ամենայն կրիւք, կոչելով իսկ ճշմարտապէս էակացն ամենայն փոխաբերութիւն և շարժութիւն. սա իսկ գրէ թէ տասներորդ ասասցուք։

Կղինիաս. Այժ։

Պղատոն. Արդ 'ի տասանցն յաւէտագոյն մեծ շարժութեանց, զո՞ր նախ դիտեսցուք ուղղագոյն ամենեցուն, ողջագոյն իսկ գոլով և գործական զանազանապէս յոքումբք։

Կղինիաս. Հարկ է ասել զայն՝ որ զնոյն ինքն կարողասցէ շարժել, և զայլսն ամենայն՝ վերջագոյնք։

Պղատոն. Բարիոք ասես։ Արդ ո՞չ ուղղապէս այժմիկ առ 'ի մէնջ յասացելոցս փոխադրելի է զմի կամ զերկու։

Կղինիաս. Զորպիսի՞ ասես։

Պղատոն. Տասներորդին իրի ասացեալ գրեթէ ոչ ուղղապէս ասացաւ։

Կղինիաս. Ո՞րպէս։

Պղատոն. Նախկի լինելութեամբ և զօրութեամբ ըստ բանի, և զայն իսկ որ յետ այսորիկ՝ ունիմք այսուիկ երկրորդ, ասացեալ անտեղաբար իններորդ։

Կղինիաս. Ո՞րպէս ասես։

Պղատոն. Այսպէս. յորժամ զա՛յլ ինչ մեզ փոխաբերէ, և այս զա՛յլ ինչ, զո՞ր ինչ իցէ երբեք առաջին որ փոխաբերէ. և ո՞րպէս յորժամ յայլմէ շարժի՝ ասիցէ երբեք այլայլելոցն նախկի. քանզի անհնար է։ Այլ յորժամ ինքն յինքենէ շարժեալ՝ զա՛յլ ինչ այլայլիցէ, և միւսն զայլ ինչ. և այսպէս հազարս առ բիւրից լինիցին շարժեալք, թերևս սկիզբն ինչ իցէ սոցունց ամենայն շարժութեանն. բաց յայնմանէ՝ որ զինքն շարժեաց 'ի փոխաբերութենէն։

Կղինիաս. Գեղեցկագոյն ասացեր, և ներել պարտ է սոցունց։

Պղատոն. Տակաւին իսկ աստանօր ասասցուք, և պատասխանի տացուք դարձեալ մեզ ինքեանց, որպէս թէ հնար իցէ ամենեցուն 'ի միասին լինելով, որպէս յոլովագոյնքն այսպիսեացն յանդգնին

ասել. ո՞ր ուրուք արդեւք 'ի սոցունց հարկ է առաջին շարժութիւն լինել ասացելոցս այնմիկ ուրեմն որ զինքն շարժեցուցանէ. զի յայլմէ ոչ երբեք յառաջագոյն փոխաբերիցի՝ ոչ և միոյ իսկ սոցունց գոլով յառաջագոյն փոխադրութեանց։

Կղինիաս. Ապա ուրեմն սկիզբն ամենայն շարժութեանց, և նախկին 'ի ներկայումն լինելով և 'ի ներշարժեալքն գոլով, զայն իսկ որ զինքն շարժէ ասասցուք գոլ հարկաւորապէս երիցագոյն, և յաղթող յամենայն փոփոխմանց, իսկ զայլայլեալն յայլմէ և շարժողն յայլոց՝ երկրորդ։

Կղինիաս. Ճշմարտապէս ասես։

Պղատոն. Արդ յորժամ այժմիկ աստանօր եմք բանիս, զայս ինչ տացուք պատասխանի։

Կղինիաս. Զորպիսի՞ ինչ։

Պղատոն. Եթէ տեսանեմք երբեք զայս ինչ լինելով՝ առ երկրայնումն կամ 'ի ջրայնում կամ 'ի հրատեսակում, անջատելով և կամ 'ի միասին խառնելով, զի՞նչ ասասցուք ներայսպիսումն կիր գոլ։

Կղինիաս. Ուրեմն թերևս հարցանես զիս եթէ կեա՞լ ասասցուք զսա յորժամ ինքն զինքն շարժէ։

Պղատոն. Այո, կեալ։

Կղինիաս. Զի՞ որպէս ոչ։

Պղատոն. Եւ զի՞նչ. յորժամ զհոգի ոմանց տեսանեմք՝ ո՞չ արդեւք այլ ինչ քան եթէ զնոյնս այսուիկ կեալ խոստովանել պարտ է։

Կղինիաս. Ոչ այլ ինչ։

Պղատոն. Նայեա արդ, առ Արամազդ երդուեալ, ո՞չ արդեւք կամիցիս առ իւրաքանչիւրում զերիս ոմանս իմանալ։

Կղինիաս. Ո՞րպէս ասես։

Պղատոն. Մի ինչ իսկ զգոյացութիւն, և զմի զգոյացութեանն բան, և միւս ինչ զանուն. և արդ հարցմունս գոլ առ ամենայն՝ որ գոյ է՝ երկուս։

Կղինիաս. Ո՞րպէս երկու։

Պղատոն. Երբեմն իսկ 'ի մէնջ իւրաքանչիւր նախատարածելով զսա զբանն հայցել, երբեմն զբանն նախատարածելով հարցանել զանունն., արդեւք զայսպիսի՞ ինչ կամիմք այժմիկ ասել։

Կղինիաս. Զորպիսի՞ ինչ։

Պղատոն. Է ուրուք երկակի բաժանել՝ առ այլս իսկ և առ թիւս. այս որ ըստ թուոյ անուն. իսկ դարն և բան թիւն բաժանեալ յերկու հաւասար մասունս։

Կղինիաս. Այո՛։

Պղատոն. Զայսպիսի ինչ ասեմ. ո՞չ արդեւք նոյնպէս զերկաքանչիւրս առասեմք, թէ զբանն հարցանելով՝ զանունն բացատրիցեմք, և եթէ զանունն՝ զբանն աւարտել. անուամբ և բանիւ երկակի բաժանելով՝ թիւ անուանեմք զնոյն ինչ գոլով։

Կղինիաս. Ճշմարիտ։

Պղատոն. Որում արդ հոգի անուանէ, զի՞նչ է բան։ Զսորա ունիմք ա՛յլ ինչ՝ բայց այժմ ասացելոցս, որ կարէ զինքն շարժելովն։

Կղինիաս. Ասես բա՞ն ունել նորին գոյացութեան անուն. ամենեքեան հոգի առասեմք։

Պղատոն. Ասացից իսկ։ Ապ՚ եթէ այս ինչ այսպէս ունելով՝ տակաւին թերևս փափաքիմք ոչ բաւականապէս ցուցեալ՝ հոգի զնոյն ինչ կրեալ, և զառաջին լինելութիւնն և զշարժութիւնն զէակացն իսկ և զեղելոցն և զայնոցիկ որ լինելոցն են, և ամենեցուն իսկ ներհակացն սոցունց, քանզի երևեցաւ իսկ փոփոխման և շարժութեան պատճառ ամենեցուն։

Կղինիաս. Ոչ. այլ բաւականագոյն ցուցաւ հոգի ամենեցուն երիցագոյն՝ լինելով իսկ սկիզբն շարժութեան։

Պղատոն. Արդ ո՞չ 'ի ձեռն այլոյ ուրուք ներայլում լինելով առ ինքն, իսկ ինքեամբ ոչ երբեք տալով զշարժիլն, ոչ և միոյ երկրորդ իսկ. այլ և որչափ թուոց կամիցի ոք թուել զսա բազմաւ, այսչափ մարմնոյ գոլով ճշմարտապէս անշունչ փոփոխմամբ։

Կղինիաս. Ուղղապէս ասես։

Պղատոն. Ուղղապէս ուրեմն և իսկապէս ճշմարտագոյն իսկ և կատարելագոյն ասացեալք թերևս իցեմք զհոգի իսկ յառաջագոյն լեալ մարմնոյ մեզ, և մարմին երկրորդ և վերջին հոգւոյն իշխելով իշխեցեալ ըստ բնութեան։

Կղինիաս. Ճշմարտագոյն իսկ։

Պղատոն. Ցիշեմք իսկ սակայն խոստովանելով մեր յառաջագոյն, իբրու եթէ հոգի երեւեսցի երիցագոյն գոլ մարմնոյ, եւ հոգւոյն իրք՝ քան զայն որ մարմնոյն են երիցագոյնք։

Կղինիաս. Ճշմարտապէս ասես։

Պղատոն. Յեղանակք իսկ եւ բարք եւ խորհուրդք եւ կարծիք ճշմարիտք. մատակարարութիւնք իսկ եւ յիշելութիւնք նախկիք երկայնութեան մարմնոյ եւ լայն եւ խորութեան եւ զօրութեան թերեւս իցեն լեալ, եթէ հոգի քան զմարմին։

Կղինիաս. Հարկ է։

Պղատոն. Արդ յետ այսոցիկ խոստովանեալ հարկաւոր է՝ բարեացն պատճառ գոլ զհոգին եւ չարեացն եւ գեղեցկագունիցն եւ գարշելեացն, յիրաւանցն իսկ եւ յանիրաւութեանցն, եւ ամենայն ներհակացն եթէ ամենեցուն իսկ զսա դիցուք պատճառ։

Կղինիաս. Ո՞րպէս։

Պղատոն. Զհոգի արդ ամենեցուն մատակարարելով եւ բնակելով յամենայնի, որք ամենեւին շարժունք են, ո՞չ արդեւք եւ զերկինս հարկ է ասել մատակարարել։

Կղինիաս. Վասն է՞ր ոչ է հարկ։

Պղատոն. Զմի՞ կամ զյոլովագոյնս։ Ես յաղագս երկաքանչիւրոցն տացից պատասխանի. զի երկուց իսկ երբեք նուազագոյնք ոչ ինչ դիցուք. այն իսկ՝ որ բարերարագոյն է, եւ այնմ որ զներհակսն կարող է գործել։

Կղինիաս. Յոյժ իրաւապէս ասացեր։

Պղատոն. Բեր արդ, ածէ արդ զամենայն որ առ յերկինս են եւ երկիր եւ ծով, իւրօք շարժութեամբք, որոց անուանք են՝ կամել, դիտել, դարմանել, ախորժել ուղղապէս ստաբար. ցնծալով, տրտմելով, վստահանալով, երկնչելով, ատելով, գորովալով, եւ ամենայնիւ որչափ սոցունց բաղազանք, կամ նախկի գործք են շարժութիւնք, զերկրորդ գործքն իսկ ըմբռնելով. շարժութիւնք մարմնոց ածեն զամենայն առաճումն եւ նուազումն եւ անջատումն եւ բաղդատութիւն. եւ սոցունց հետեւողս՝ ջերմութիւնք, ցրտու-

թիւնք, ծանրութիւնք, թեթեւութիւնք, կարծր և կակուղ, սպիտակ և սեաւ, թթուագոյն և քաղցր և դառն, և ամենեցուն որովք հոգի վարելով զմիտսն կալեալ միշտ աստուածային ուղղապէս աստուած գոլով, ուղիղ և բարեբաստ դաստիարակէ աստուած: Իսկ ընդ անխոհեմութիւն բաղադանելով 'ի բաց գործէ զամենայն ներհակսն սոցունց: Դիցո՞ւք այսոցիկ այսպէս ունել, եթէ ևս ընդերկուեալ եմք թէ իբրու այլաբար ունիմ:

Կղինիաս. Ոչ միով իւիք:

Պղատոն. Ո՞րպէս զհոգիս կարծես ըմբռնական, մէ, այլ երկնի և երկրի և ամենայն շրջաբերութեան վերագոյն լեալ ասասցուք զխոհեմականն և զարիութեանն լութիւն, և կամ զմիջասահմանն ստացեալ. կամի՞ք զի առ այսոցիկ տացուք այսպէս պատասխանի:

Կղինիաս. Ո՞րպէս:

Պղատոն. Իսկ եթէ ասասցուք, ով սքանչելի, 'ի միասին ամենայն երկրի ճանապարհ համանգամայն և թերումն, և այնոցիկ որ 'ի սմա են ամենեցուն՝ տաց շարժութիւն, և շրջաբերութեան և խորհրդոց նման բնութիւն ունի, և գայ բաղադանապէս, յայտ է իբրու զարիագոյն՝ հոգւոյն ասել պարտ է մատակարարել զաշխարհս ամենայն, և ածել զնա նորին ընդ այնմիկ ճանապարհ:

Կղինիաս. Ուղղապէս ասես:

Պղատոն. Ապ'եթէ մոլորութեամբ իսկ, գայ և անկարգաբար չար հոգւոյն:

Կղինիաս. Եւ այդոքիկ ուղղապէս է:

Պղատոն. Զի՞նչ արդ բնաւին ունի մտաց շարժութիւն: Այս ինչ արդեւք դժուարին հարցումն է, ով սիրելիք, պատասխանի տալով ասել ձեր խոհեմապէս. վասն որոյ և զիս առ պատասխանիս այժմիկ իրաւագոյն է ձեր ընկալուլ:

Կղինիաս. Բարեւք ասես:

Պղատոն. Այժմիկ մի՛ յանդիմաննապէս իբրու առ արեգակն 'ի բաց հայելով, զգիշեր 'ի մէջօրէի 'ի վերայ ածելով տացուք զպատասխանին. իբրու երբե-

մըն մանկանացու աչօք տեսանելով և ճանաչելով բա-
ւականապէս, և առ պատկերն հայցելոյն հայելով
անսխալագոյն տեսանել։

Կղինիաս. Ո՞րպէս ասես։

Պղատոն. Ըստ որում՝ նմանեալ է շարժութեան՝
միշտ զտասանցն այնոցիկ շարժութեանց զպատկերն
տացուք, եթէ հանդերձ ձեւք յիշեմք այսչափ զայ-
նոսիկ որ յայնժամ, տակաւին և զայս իսկ՝ զի ամե-
նեցուն զոմանս շարժել և զոմանս մնալ։

Կղինիաս. Այո՛։

Պղատոն. Իսկ 'ի շարժելոցն զոմանս առ միում
տեղւոջ շարժել, և զոմանս առ յոլովագոյնս բերել։

Կղինիաս. Են այդոքիկ։

Պղատոն. Սոցունց երկու շարժութեանց, այնմիկ՝
որ 'ի միում բերելով միշտ առ մէջն ինչ՝ հարկ է շար-
ժել ճախարականն գոլով նմանութեամբ բոլորից...
զսա մտացն... թեանն ամենեւին իբրու հնարէ.....
նոցն և այժմու բան և դասութիւն.. մի երկաքանչիւրն
շարժութիւնն... ելով արդ, զայն իսկ որ 'ի միում
բերէ շարժութիւնն գնդլին էր ճախարակի նմանելով
բեր... ոչ երբեք երևեսցուք յուռին գոյացուցիչք բա-
նիւ գեղեցիկ պատկերաց։

Կղինիաս. Ուղղապէս ասես։

Պղատոն. Ո՞չ ապաքէն եթէ ոչ երբեք իբրու այս-
պէս կամ ըստ նոցունց այսոցիկ, և ոչ նովիմք և ոչ
առ այսոցիկ և ոչ նման սոցունց, և ոչ 'ի միում բե-
րելով և ոչ յաշխարհի և ոչ 'ի դասութեանն, և ոչ
ներուրեմն բանիւ շարժութեան ամենայն անխոհե-
մութեան թերևս իցէ բաղաձան։

Կղինիաս. Իցէ արդ ճշմարտապէս։

Պղատոն. Այժմ արդ դժուարին ինչ ոչ է տա-
կաւին յայտնապէս ասել. իբրու քանզի հոգի իսկ
է որ շուրջ ածէ զմեւք զամենայն և զերկնի շրջա-
բերութիւնն, 'ի հարկէ շրջաբերել ասել պարտ է
մատակարարելով զարդարել արիագոյն իսկ հոգւոյն,
և կամ հոգւոյ ներհականին։

Կղինիաս. Ո՛վ սիրելի, այժմիկ ասացելոցդ ոչ
արդարագոյն այլաբար ասել, քան զամենայն առա-

քինութիւնն ունել հոգւոյ իմոյ, կամ յոլովագունից շրջաբերել զսոսա։

Պղատոն. Գեղեցկագոյն, ով Կղինիա, հպատակեցար բանիցս. բայց առ այսոքիկ և այսմիկ ունկնդիր լինել տակաւին պարտ է։ Զարեգակն և զլուսին և զաստեղս, եթէ հոգի՞ շրջաբերէ զամենայնն արդեւք և զիւրաքանչիւր ոք 'ի նոցանէ։

Կղինիաս. Սակայն զի՞նչ։

Պղատոն. Ցաղագս միոյ արդ արասցուք պատասխանի՝ որք առ ամենայն մեզ աստեղք յարմարեալ երևին։

Կղինիաս. Ցաղագս ո՞յր ուրուք։

Պղատոն. Զարեգական մարմին ամենայն մարդ տեսանէ. բայց զհոգի ոչ ոք, և ոչ զայլ մարմնոյ ոչ մի ուրուք, ոչ կենդանի գոլով, և ոչ մեռանելով կենդանեացն։ Այլ յոյս բազում սեռիս այսմիկ անսգալի առ ամենայն մարմնոյն սգաստութեանցն բնաւորիլ և իմանալի գոլ։ Ցաղագս սորա մտածութեամբ միայն և զգաստութեամբ ընկալցուք զայսպիսի ինչ։ Զարեգակն եթէ շրջաբերէ հոգի, յերից մի ասելով սմա գործել գրեթէ ոչ անհանդէպ լիցուք։

Կղինիաս. Ո՞յց ոմանց։

Պղատոն. Որպէս զի՛ ներքոյ գոլով շրջաբերական այսմիկ և երևելի մարմնոյս՝ ամենևին կրէ զսա, որպէս և զմեզ որ առ մեզ է հոգի ամենայնիւ շրջաբերէ. և կամ յարտաքուստ մարմին իւր հնարեալ հրոյ և կամ օդոյ ուրուք իբրու ... ոմանց մերժէ բռնութեամբ մարմնով զմարմինն, և կամ երրորդ իսկ գոլով սա 'ի մարմնոյ և ունելով զօրութիւնս զայլս ինչ գերազանցեալս հրաշիւք առաջնորդէ։

Կղինիաս. Այո։

Պղատոն. Զայս ինչ հարկ է յայսցանէ մի ինչ առնելով հոգւոյ զամենայն բերել։ Եւ այսորիկ լաւագոյն նորին իսկ հոգւոյ կարի փառօք ունելով զարեգակն՝ բերէ մեզ լոյս ամենեցուն, և կամ իսկ արտաքուստ և կամ այլաբար և կամ այլ ուրուք. աստուած վարկանիլ պարտ է զամենայն այր, թէ ո՞րպէս։

Կղինիաս. Այո՛. ոչ 'ի վերջինն հասեալ խոհեմութեամբ:

Պղատոն. Արդ յաղագս ամենայն աստեղաց և լուսնի, ամաց իսկ և ամսոց, և յաղագս ամենայն ժամուց, զի՞նչ այլ բան ասասցուք քան եթէ զնոյնս զայս. քանզի հոգի և կամ հոգիք ամենեցուն սոցունց՝ պատճառք երևեցան բարիք՝ ամենայն առաքինութեամբ, աստուա՛ծք զսոսա գոլ ասասցուք, եթէ մարմնով գոլով կենդանիք զարդարեն զամենայն երկինս և ուր և իցէ: Արդ ո՞րպէս ո ոք զայսոքիկ խոստովանի, համբերէ ոչ գոլ աստուածք:

Կղինիաս. Ոչ գոյ այսպէս սովորելի օտարացեալ 'ի խոհեմութենէ և ո՛չ ոք:

Պղատոն. Այնմիկ արդ որոյ ոչ թուի աստուածս գոլ յառաջագոյն ժամանակի, ո՛վ Մեգիլէ և Կլինիա, ասելով սահմանք 'ի բա՞ց կացցուք:

Կղինիաս. Զո՞ ինչ:

Պղատոն. Կա՛մ ուսուցանել զմեզ՝ որպէս ոչ ուղղապէս ասեմք դնելով զհոգի լինելութիւն գոլ ամենեցուն առաջին, և զայլսն որչափ սոցա 'ի միասին հետևելով ասացաք, և կա՛մ ոչ կարելով լաւագոյն ասել մեզ, հաւանիլ և կեալ՝ աստուածք վարկանելով առ այլ ամենայն կենցաղաւ: Տեսցուք արդ եթէ բաւականապէս արդեւք այնոցիկ՝ որ ոչ վարկանին աստուած գոլ՝ ասացաք իբրու են աստուածք, եթէ նուազապէս:

Կղինիաս. Ոչ իսկ, ո՛վ սիրելի, ամենայն իւիք:

Պղատոն. Այսոքիկ այժմիկ բանիցս կատարածս ունիցի. իսկ զայնոսիկ՝ աստուածք գոլ վարկանի, սակայն մարդկային իրողութեանց փոյթ ոչ առնել, մխիթարել պարտ է. Ո՛վ արիագոյնդ, ասասցուք, զի եթէ վարկանիմք աստուածք՝ բաղազանութիւն ինչ թերևս զքեզ առ բնակակիցն ածցէ պատուել և հզօրագոյն գոլ: Իսկ չար մարդկան և անիրաւացն անձինք՝ յատկապէս և հրապարակաւ, ճշմարտութեամբ իսկ ոչ բարեբաստք, բայց կարծեօք բարեբաստելով, յոլովագոյն՝ այլ ոչ բարեյարմարապէս ածցեն զքեզ առ ամբարշտութիւն երաժշտիւք ոչ ուղ-

զաքար երգելով համանգամայն ամենայն բանիւք։ Եւ կամ առ կատարած թերեւս անարգագոյն զմարդիկ տեսանելով հասեալք ծերութեամբ՝ զմանկունըս որդւոց մնացուցեալք պատուօք մեծագունիւք՝ զարհուրիցիս.... այժմիկ առ այսոսիկ ամենայն նշաւակ..... և կամ 'ի ձե.... իմացեալ. և կամ դու ինքնին ականատես բազում ամբարշտութեանցս և չարեաց ինչ լինել...... փոքրագունիցն 'ի գոռոզութիւնս իսկ և առ մեծագոյնսն հասանելով, յայնժամ վասն այսորիկ ամենեցուն յայտնեսցես՝ բամբասելով իսկ զաստուածսն, իբրու պատճառք գոլով զսոսա այսպիսեացս վասն բաղազանութեան, ոչ իսկ կամելով՝ բայց ածեալ անբանութեամբ ուրուք, և ոչ կարելով դժուարինս ասել զաստուածսն առ այս ինչ, այժմիկ հաւասար որպէս գիտելով կարծել զսոսա, բայց զմարդկային իրողութիւնս արհամարհել և փոյթ սոցունց ոչ առնել։ Արդ զի մի մեծագոյն լինիցի քեզ ախտ ամբարշտութիւն հասեալ աւանդութիւն, այլ իբրու մաղթանօք բանիցս հասու զձեզ կարասցուք առնել, 'ի միասին խառնելով զոր ինչ 'ի կարգին է բանին, ընդ այսմիկ՝ զոր առ այնոսիկ որ ամենեւին աստուածք ոչ վարկանին 'ի սկզբանէ պատմեցաք այսուիկ այժմիկ վարիլ. բայց դու, ով Կղինիա և Մեգիլէ, վասն որոյ որպէս յառաջագունիւքն պատասխանի տալով ընդունեսցուք. և եթէ դժուարին ինչ պատահիցի առ բանքս՝ ես զձեզ որպէս այժմիկ՝ ընկալեալ անցուցից ընդ գետս։

Կղինիաս. Ուղղապէս ասես, և դու այդպէս արա. արասցուք և մեք ըստ որում հնար է զոր ինչ ասեսդ։

Պղատոն. Այլ ոչ իցէ դժուարագոյն ցուցանել զայս ինչ. իբրու մատակարարողք են փոքունցն աստուածքն՝ ոչ նուազագոյն քան եթէ մեծութեամբ իսկ զանազանին։ Քանզի լուաք երբէք, և հուպ պատահեցաւ այժմիկ ասացելոցս, իբրու բարիք իսկ գոլով զամենայն առաքինութիւն, և զամենեցուն մատակարարութիւնն ընտանեգոյն սոցունց գոլով ասացեալ են։

Կղինիաս. Յաճախ իսկ լսէի։

Պղատոն. Յետ այսորիկ զայս ինչ համառակաբար քննելով, զի՞նչ ասել առաքինութիւն սոցունց, խոստովանիմք զսոսա բարիք գոլ։ Բեր զողջախոհ միտք. պա՞րտ է ստանալ ասեմք առաքինութեանն, և զներհակքն չարութեանն։

Կղինիաս. Ասեմք։

Պղատոն. Եւ զի՞նչ առաքինութեան իսկ զարիութիւնն գոլ, և զանգիտութեան չարութեան։

Կղինիաս. Յոյժ իրաւացի։

Պղատոն. Եւ զոմանս 'ի սոցունց գարշելիս, և զոմանս 'ի բարիս ասեմք։

Կղինիաս. Ի հարկէ։

Պղատոն. Եւ ոմանց պատշաճիլ մեզ՝ որչափ վատթարագոյնք են. իսկ աստուածոց՝ ոչ մեծ ինչ և ոչ փոքր յայսպիսեացս ասեմք պատշաճաւոր։

Կղինիաս. Եւ զայսոսիկ այսպէս խոստովանիցի ամենայն ոք։

Պղատոն. Եւ զի՞նչ. և զծուլութիւն և զխափանումն և զփափկութիւն, առաքինութի՞ւն հոգւոյ դիցուք, կամ որպէս ասես։

Կղինիաս. Ո՞րպէս։

Պղատոն. Այլ 'ի ներհակն։

Կղինիաս. Այո։

Պղատոն. ... հակակայեալ և թերևս 'ի սոցունց ներհակն։

Կղինիաս. Զի՞նչ։

Պղատոն. Փափկացեալ ծուլացեալ և խափանեալ իսկ գոլով..... ան՝ աշխատասիրաց մանաւանդ նման ասաց գոլ, լինիցի՞ արդեւք ամենայն այսպիսին մեզ։

Կղինիաս. Ուղղապէս ասացեր։

Պղատոն. Ո՞չ ապաքէն զաստուածսն ոչ է պարտ ասել այսպիսի ունել բարք, զոր ինքն իսկ ասէ. այնմիկ՝ որ այսպիսի ինչ բարբառել կամեսցի, ոչ է պարտ յորդորեցուցիչ լինել։

Կղինիաս. Արդ ոչ իսկ։

Պղատոն. Քանզի որպէս թերևս որոյ արդ պատ-

ճառն պատշաճ լիցէ գործել և մատակարարել զանազանապէս զոմն. բայց սորա իսկ միջէն զմեծամեծսն արդեւք դարմանէ, և առ փոքրագոյնսն ծուլանայ, ըստ որոյ ուրուք գովելով զայնպիսի բանն ոչ ամենեւին յածիմք։ Գիտեսցո՞ւք արդ այսպէս արդեւք ոչ ըստ երկու տեսակաց զայսպիսի ինչ գործէ գործողն՝ եթէ աստուած և եթէ մարդ։

Կղինիաս. Որպիսեա՞ւ արդ։

Պղատոն. Ասեմ՝ ոչ ինչ զանազանեալ ծուլութեանն որ առ մանրագոյն է, քան եթէ բոլորին լինիցի, կամ դանդաղկոտութեամբ կամ փափկութեամբ՝ եթէ զանազանին՝ և ոմն ծուլանայ, կամ եթէ իբրու այլաբար լինելով ծուլութիւն։

Կղինիաս. Ոչ երբեք։

Պղատոն. Չի յորժամ անհնար լիցէ ամենեցուն լինել մատակարարող, յայնժամ ծուլութիւն լիցէ փոքրագունիցն կամ մեծագունիցն՝ ոչ մատակարարելով, զորս ոչ կարելով մատակարարել՝ աստուած յուլին իմն կամ պակասեալ լինիցի։

Կղինիաս. Ո՞րպէս։

Պղատոն. Այժմիկ արդ երկու ելով՝ երից մեզ գոլով, տացեն մեզ պատասխանի՝ որք աստուածք երկաքանչիւրք խոստովանին գոլ՝ այլ ներողք, իսկ մինն և զմիւսն առ մանրագոյնսն ծուլացեալ։ Նախ իսկ, աստուածք երկաքանչիւրք ասէք ճանաչել և տեսանել և լսել զամենայն. և զանխլել՝ի սոցունց ոչ ուրեք հնար գոլ յայնցանէ որոց են զգայութիւնք իսկ և մակացութիւնք. ո՞յսպէս ասէ՞ք ունել այսոցիկ, թէ ո՞րպէս։

Կղինիաս. Այդպէս։

Պղատոն. Եւ զի՞նչ կայ կարող գոլ ամենեցուն, որոց զօրութիւն ինչ իցէ մահկանացուաց կամ անմահից։

Կղինիաս. Եւ ո՞րպէս ոչ ներեմք այդոցիկ այդպէս ունել։

Պղատոն. Սակայն բարեւք իսկ և արիագոյնք խոստովանիմք գոլ զսոսա՝ հինգ մեք գոլով։

Կղինիաս. Յոյժ իրաւացի։

Պղատոն. Ո՛չ արդեւք ծուլութեամբ և փափկութեամբ անհնար է զսոսա խոստովանելով գործել զի՛նչ և իցէ, ամենեւին գոլով. այլ զսոսա որպէս խոստովանիմք. զի զանգիտութեան ծնունդ է իսկ առ մեզ խափանումն, և ծուլութիւն խափանման իսկ և փափկութեան ծնունդ:

Կղինիաս. Ճշմարտապէս ասես:

Պղատոն. Խափանմամբ արդ և ծուլութեամբ, ոչ ոք ծուլանայ աստուածոցն. քանզի ոչ գոյ նմա հաղորդութիւն առ զանգիտումն:

Կղինիաս. Ուղղագոյն ասես:

Պղատոն. Ո՛չ ապաքէն այսուհետև եթէ ծուլանայ առ փոքրագոյնսն և սակաւագոյնսն, այնոցիկ որ առ ամենայնի են, և կամ գիտելով իբրու ամենեւին զոչ և մի 'ի սոցանէ մատակարարել պարտ է՝ առնենն թերևս զայս ինչ. և կամ զի՞նչ այսուհետև՝ բայց միայն 'ի գիտելոյն զհակառակն:

Կղինիաս. Ոչ ինչ:

Պղատոն. Զի՞նչ արդ, ո՛վ արիագոյն և վեհագոյն. դիցո՞ւք զքեզ ասելով իբրու անգէտք իսկ գոլ և պարտ գոլով մատակարարել 'ի ձեռն անգիտութեան ծուլանալ, եթէ գիտելով իբրու վատթարագոյնքն 'ի մարդկանէ ասին առնել, գիտելով այլ ինչ գոլ վեհագոյն գործել քան զայնսիկ որ գործեն, վասն ոմանց պարտութեանց հեշտութիւն կամ տրտմութիւն ոչ առնել:

Կղինիաս. Ո՞րպէս արդ:

Պղատոն. Ո՛չ ապաքէն մարդկայինն իրողութիւնս շնչաւոր բնութեանս հաղորդէ, համանգամայն և բարեպաշտագոյն և աստուածասէր քան զամենայն կենդանիս մարդն:

Կղինիաս. Է իսկ այդպէս:

Պղատոն. Աստուածո՛ցն իսկ ստացուածք ասեմք գոլ զամենայն, որչափ մահկանացու կենդանիք են, այնոցիկ որոց որ զբոլոր երկինսն:

Կղինիաս. Եւ ո՞րպէս ոչ:

Պղատոն. Աւասիկ այժմիկ փոքունս և կամ մեծագոյնս ասասցէ ոք զսոսա աստուածոցն գոլ. քանզի ոչ և միոյ յայնցանէ որ ստացեալ իցեմք՝ իցէ

ճառն պատշաճ իցէ գործել և մատակարարել զանազանապէս զոմն. բայց սորա իսկ միայն զմեծամեծսն արդեւք դարմանէ, և առ փոքրագոյնսն ծուլանայ, ըստ որոյ ուրուք գովելով զայնպիսի բանն ոչ ամենեւին յածիմք։ Դիտեսցուք արդ այսպէս արդեւք ոչ ըստ երկու տեսակաց զայսպիսի ինչ գործէ գործողն՝ եթէ աստուած և եթէ մարդ։

Կղինիաս. Որպիսեա՞ւ արդ։

Պղատոն. Ասեմ՝ ոչ ինչ զանազանեալ ծուլութեանն որ առ մանրագոյն է, քան եթէ բոլորին լինիցի, կամ դանդաղկոտութեամբ կամ փափկութեամբ՝ եթէ զանազանին՝ և ոմն ծուլանայ, կամ եթէ իբրու այլաբար լինելով ծուլութիւն։

Կղինիաս. Ոչ երբեք։

Պղատոն. Զի յորժամ անհնար իցէ ամենեցուն լինել մատակարարող, յայնժամ ծուլութիւն իցէ փոքրագունիցն կամ մեծագունիցն՝ ոչ մատակարարելով, զորս ոչ կարելով մատակարարել՝ աստուած յուրին իմն կամ պակասեալ լինիցի։

Կղինիաս. Ո՞րպէս։

Պղատոն. Այժմիկ արդ երկու ելով՝ երից մեզ գոլով, տացեն մեզ պատասխանի՝ որք աստուածք երկաքանչիւրք խոստովանին գոլ՝ այլ ներողք, իսկ միմն և զմիւսն առ մանրագոյնսն ծուլացեալ։ Նախ իսկ, աստուածք երկաքանչիւրք ասէք ճանաչել և տեսանել և լսել զամենայն. և զանխլել՝ի սոցունց ոչ ուիք հնար գոլ յայնցանէ որոց են զգայութիւնք իսկ և մակացութիւնք. ա՞յսպէս ասէք ունել այսոցիկ, թէ ո՞րպէս։

Կղինիաս. Այդպէս։

Պղատոն. Եւ զի՞նչ կայ կարող գոլ ամենեցուն, որոց զօրութիւն ինչ իցէ մահկանացուացս կամ անմահիցս։

Կղինիաս. Եւ ո՞րպէս ոչ ներեմք այդոցիկ այդպէս ունել։

Պղատոն. Սակայն բարեւք իսկ և արիագոյնք խոստովանիմք գոլ զսոսա՝ հինգ մեք գոլով։

Կղինիաս. Յոյժ իրաւացի։

Պղատոն. Ո՞չ արդեւք ծուլութեամբ և փափկութեամբ անհնար է զոսա խոստովանելով գործել զինչ և իցէ, ամենևին գոլով. այլ զոսա որպէս խոստովանիմք. զի զանգիտութեան ծնունդ է իսկ առ մեզ խափանումն, և ծուլութիւն խափանման իսկ և փափկութեան ծնունդ:

Կղինիաս. Ճշմարտապէս ասես:

Պղատոն. Խափանմամբ արդ և ծուլութեամբ, ոչ ոք ծուլանայ աստուածոցն. քանզի ոչ գոյ սմա հաղորդութիւն առ զանգիտութիւն:

Կղինիաս. Ուղղագոյն ասես:

Պղատոն. Ո՞չ ապաքէն այսուհետև եթէ ծուլանայ առ փոքրագոյնսն և սակաւագոյնսն, այնոցիկ որ առ ամենայնի են, և կամ գիտելով իբրու ամենևին զոչ և մի 'ի սոցանէ մատակարարել պարտ է՝ առնեն թերևս զայս ինչ. և կամ զի՞նչ այսուհետև՝ բայց միայն 'ի գիտելոյն զհակառակն:

Կղինիաս. Ոչ ինչ:

Պղատոն. Զի՞նչ արդ, ո՞վ արիագոյն և վեհագոյն. դիցո՞ւք զքեզ ասելով իբրու անգէտք իսկ գոլ և պարտ գոլով մատակարարել 'ի ձեռն անգիտութեան ծուլանալ, եթէ գիտելով իբրու վատթարագոյնքն 'ի մարդկանէ ասին առնել, գիտելով այլ ինչ գոլ վեհագոյն գործել քան զայնոսիկ որ գործեն, վասն ամանց պարտութեանց հեշտութիւն կամ տրտմութիւն ոչ առնել:

Կղինիաս. Ո՞րպէս արդ:

Պղատոն. Ո՞չ ապաքէն մարդկային իրողութիւնս ընչաւոր բնութեանս հաղորդէ, համանգամայն և բարեպաշտագոյն և աստուածասէր քան զամենայն կենդանիս մարդն:

Կղինիաս. Է իսկ այդպէս:

Պղատոն. Աստուածո՛ցն իսկ ստացուածք ասեմք գոլ զամենայն, որչափ մահկանացու կենդանիք են, այնոցիկ որոց որ զբոլոր երկինսն:

Կղինիաս. Եւ ո՞րպէս ոչ:

Պղատոն. Աւասիկ այժմիկ փոքունս և կամ մեծագոյնս ասասցէ ոք զոսա աստուածոցն գոլ. քանզի ոչ և միոյ յայնցանէ որ ստացեալ իցեմք՝ իցէ

մեզ պատշաճ, ոչ առնել մատակարարութիւն, փութագոյն գոլով մեր և արիագոյնք. դիցուք արդ և զայս՛ ինչ առ սոքօք։

Կղինիաս. Զորպիսի՞ ինչ։

Պղատոն. Որ ինչ յաղագս զգայութեան և զօրութեանն՝ ո՞չ արդեւք ներհակապէս միմեանց առ 'ի հաշտութիւն և 'ի դժուարութիւն իցեն բնաւորեալ։

Կղինիաս. Ո՞րպէս ասես։

Պղատոն. Տեսանել իսկ և լսել զփոքրագոյնսն և դժուարագոյն քան եթէ զմեծագոյնսն՝ և բերել և յաղթել և դարմանել զփոքրագոյնսն և զսակաւսն՝ ամենայնի դիւրին է, քան եթէ զներհակսն։

Կղինիաս. Յոյժ իրաւացի։

Պղատոն. Բայց բժշկի կարգելով զբոլոր ինչ բժշկել կամաւ և կարողութեամբ, և մեծագունիցն փոյթ առնել, և առ մանր մասնկունսն և առ փոքրագոյնս ծուլալով սորա, ունիցի՞ երբեք բոլորն բարիոք։

Կղինիաս. Ոչ և միով իւիք։

Պղատոն. Սակայն և ոչ նաւավարք, և ոչ նաւավարաց և ոչ զօրավարաց է և ոչ տնտեսից, և ոչ քաղաքականաց և ոչ այլոյ յայսպիսեացս, և ոչ միոյ ուրուք առանց սակաւուցն և փոքրագունիցն յարմարին բազումքն իսկ և մեծագոյնքն. քանզի և ոչ առանց փոքունցն՝ զմեծագոյնսն ասեն քարինս շարայարմարողքն սոցունց կալ բարեւք։

Կղինիաս. Եւ ո՞րպէս։

Պղատոն. Ո՞չ արդ այսուհետև արժանի համարեսցուք զաստուած՝ այնոցիկ որ մահկանացու են շինողացն գոլ վատթարագոյն, որք զպատշաճեալն սոցունց գործք որչափ և լաւագոյն իցեն՝ այնչափ և ստուգագոյն իսկ և կատարելագոյնք՝ միով արհեստիւ զփոքունսն և զմեծագոյնսն 'ի բաց գործեն. և զաստուած իմաստ ունելով և կամելով մատակարարել զամենայն, և կարող գոլով այնոցիկ՝ որոց դիւրին էր փոյթ առնել փոքրագոյնս ելով, ոչ և միով իւիք մատակարարել զսոսա, իբրու անաշխատ ասէ և կամ անարի ոմն, վասն վաստակոյ ծուլալով, և զմեծագոյնսն միայն դարմանել։

Կղինիաս. Ոչ և միով իւիք այսպիսի կարծիս յաղագս աստուածոցն ընդունիմք, ով սիրելի. քանզի ոչ իւիք ոչ արդարագոյն և ճշմարիտ իմանամք զտրամախոհութիւնն զայս։

Պղատոն. Թուի ինձ այժմիկ բաւական գոլ զաստացեալքս՝ պատճառ ասին ծուլութեանն աստուածոցն։

Կղինիաս. Այո։

Պղատոն. Որովք բանիւք և բռնադատիցի խոստովանիլ ոչ ևս ասել։

Կղինիաս. Ուղղապէս։

Պղատոն. Սակայն ողոքանաց կարօտանալ թուի ինձ առասպելաց ինչ տակաւին։

Կղինիաս. Որոց, ով այր բարի։

Պղատոն. Հաւանեցուսցուք զհամբակն բանիւքս՝ իբրու այնմիկ որ ամենեցուն փոյթ առնէ առ 'ի կեանըս, և յառաքինութիւն բոլորին՝ ամենայն 'ի միասին կարգեալ են, որոց և մասն իւրաքանչիւր ըստ զօրութեան զպատճառն պատշաճին կրէ և առնէ. և սոցունց են իշխանք կարգեալք իւրաքանչիւրոց միշտ առ փոքրագոյնն կրից և գործոց, և բաժանումն վերջին գործելով զկատարածն. յորոց մի և քոյդ մանրամասն, ով եղկելի, 'ի բոլորն տարածի միշտ հայելով, և մանաւանդ յոյժ գոլով փոքրագոյն։ Բայց 'ի քէն զանխլեալ է առ նոյն այսուիկ՝ իբրու լինելութիւնն ամենայն 'ի սակս նորա լինի։ Իբրու զի այն որ առ ամենայն կենցաղաւս գոյ բարեբաստ գոյացութիւնն, ոչ 'ի սակս քո լինելով, այլ դու 'ի սակս նորա. քանզի ամենայն բժիշկ և ամենայն ներարհեստ շինող՝ 'ի սակս ամենայն զամենայն գործէ առ հասարակաց տարածելով վեհագոյն մասն իսկ 'ի սակս բոլորի, և ոչ բոլոր գործէ 'ի սակս մասին։ Այլ դու հեծելով հանդուրժես, ոչ գիտելով թէ որպէս առ քեզ ամենայնի արիագոյնն պատահի և քեզ ըստ զօրութեան հասարակաց լինելութեան։ Քանզի միշտ հոգի շարադասելով ընդ մարմնոյ, երբեմն այլ ուրուք, և երբեմն այլ փոփոխէ զամենայն փոփոխմունս 'ի ձեռն իւր, և կամ 'ի

ձեռն այլում հոգւոյ. այլ ոչ ինչ գործ այնմիկ՝ որ քուէիւքն խաղալ մնացուցանելով՝ բայց միայն փոխադրելով զլաւագոյնն լեալ սովորութիւն 'ի լաւագոյն տեղի՝ և զվատթարն 'ի վատթարագոյն, ըստ որում վայել է իւրաքանչիւրոց. զի պատշաճաւոր բախտին հասանիցն:

Կղինիաս. Ո՞րպէս ասես:

Պղատոն. Ըստ որում ունիցի դիւրութիւն զամենայն մատակարարեըն աստուածոցն՝ այսպէս թուիմ ինձ ասել: Քանզի եթէ առ բոլորն միշտ հայելով ստեղծանէ ոք զամենայն, փոխելով 'ի ձև սոցա՝ իբրու 'ի հրոյ ջուր շնչաւոր, և ոչ 'ի միասին զբազումըս 'ի միոյ կամ 'ի բազմաց, զմի առաջնում կամ երկրորդ և կամ երրորդ լինելութեան հաղորդելով բազմութեամբ՝ անեզր թերևս իցէ տրամադրեալ զարդարմանն. բայց այժմիկ է սքանչելի դիւրութիւն ամենեցուն մատակարարութեան:

Կղինիաս. Ո՞րպէս ասես:

Պղատոն. Այսպէս. քանզի տեսաւ թագաւորն՝ շնչաւոր գոլով զամենայն գործ մեր, և բազում առաքինութիւն ելով առ սոցունց, և բազում չարութիւն անխլելի էակ լինելով. այլ ոչ յաւիտենական զհոգի և զմարմին, որպէս այնոքիկ որ ըստ օրինի են աստուածք. քանզի լինելութիւն ոչ իցէ երբեք կենդանեաց՝ կորնչելով 'ի սոցունց միոյն. և զօգտելն միշտ բնաւորեալ՝ այն որչափ բարութիւնն է հոգւոյն իմանի, և չարն է վնասել: Զայսոսիկ 'ի միասին ամենայն տեսեալ, հնարաւորեաց երբեք կալով զիւրաքանչիւր 'ի մասանցն յաղթող զառաքինութիւնն, և պարտեալ զչարութիւնն առ ամենայնի առտուիցէ: Մանաւանդ յաւէտապէս արդեւք և դիւրագոյն և արիագոյնն հնարաւորեցաւ առ այսորիկ՝ թէ որպիսա՛ ինչ միշտ լինելով զորպիսա՛ հաստատութիւն պարտ է ըմբռնելով բնակիլ, և զո՞ ոք երբեք տեղիք. և լինելութեանն թէ որպիսա՛ ուրուք թողացոյց զպատճառն իւրաքանչիւրոց մերոց կամաց. քանզի որպէս ցանկայ թերևս և որպիսի ոք գոլով հոգւոյն՝ սովաւ գրէ թէ յիւրաքանչիւրում

ժամու, և այսպիսի լինի ամենայն ոք 'ի մէնջ իբրու բազում անգամ։

Կղինիաս. Այս ինչ արդ վայելչագոյն է։

Պղատոն. Փոխաբերի իսկ այսուհետև ամենայն որչափ հաղորդին հոգւոյն յինքեանս ստանալով զփոփոխմանն պատճառ, և փոփոխելով բերի ըստ պատահման օրինին։ Եւ կարգաւորութեանն՝ փոքունս ինչ 'ի սովորութեանցն փոփոխելով, և նուազագոյն ըստ վայրին տափարակութեանն գնայցէ, և յոլովագոյն իսկ և անիրաւագոյն անկանելով 'ի խորութիւն զայնոսիկ՝ որ ստորինս ասին 'ի տեղեաց, որչափ դժոխք իսկ, և ըստ սոցունց մերձաւորագոյնքն յանուանց մականուանելով յոյժ երկնչին. և երազք տեսանին՝ կենդանիք ելով, և լուծեալ 'ի մարմնոյ՝ և մեծագոյն իսկ հոգի՝ չարութեան կամ առաքինութեան, յորժամ ընկալցի վասն իւրոց կամաց և վարժման լինելով զօրաւոր, և յորժամ ընդ աստուածային առաքինութիւնն խառնեալ լինիցի զանազանապէս այսպէս տարբերելով, և փոխէ զտեղի բոլորին՝ փոխաբերելով 'ի միումն լաւագոյն տեղի. և յորժամ զներհակսն՝ առ ներհականսն փոխաբերիցէ զկենցաղն իւր։ Այսոքիկ իսկ իրաւունս է աստուածոցն որ ունին զՈլիմպոս, ով մանուկ դու և երիտասարդ, անփոյթ գոլ թուեցեալ առ 'ի յաստուածոցն։ Չարագոյնք իսկ լինելով՝ առ չարագոյնսն հոգիս. լաւագոյն՝ առ վեհագոյնսն գնալով, 'ի կենդանութեան և ամենայն մահուամբ, և կրել զոր ինչ պատշաճ է առնել մատուցելոցն առ որս մարտընչին, և գործել այնոքիկ իրաւանցն։ Ոչ դու երբեք և ոչ այլ ոք թշուառական լինելով ըղձասցի յաղթել աստուածոցն, զոր ամենայն իրաւանց վեհագոյն կարգեցին կարգողքն. յորոց պարտ է ամենևին երկնչել՝ զի ոչ երբեք առ 'ի սմանէ ծուլասցիս, և ոչ այսչափ փոքրագոյն գոլով՝ ընկղմիցիս 'ի խորս երկրի, և ոչ բարձրագոյն լինելով՝ յերկինս 'ի վեր ամբառնաս. այլ հատուցանես սոցունց զպատշաճաւոր պատուհասն, կամ մնալով աստանօր, և կամ 'ի դժոխսն գնացեալ, և կամ

*սոցունց հեռագոյն տակաւին տարեալ տեղի։ Եւ նոյնս քեզ յաղագս բանից, և յաղագս այնոցիկ զորըս դու տեսեալ 'ի փոքրագունից մեծագոյնս եղեալք՝ զանարդարագոյնսն գործելով, և կամ այսպիսի ինչ առնելով՝ կարծեցեր թշուառականացս լինել բարեբաստք, իբրու հայելով արդեւք 'ի գործս իւրեանց վարկար տեսանել զամենեցուն աստուածոցըն ծուլութիւն, ոչ գիտելով զկատարածն սոցունց թէ որպէս երբեք ամենեցուն յարմարի։ Այլ գիտելով զայս ինչ, ով ամենեցուն արիագոյն, որչափ պարտ թուի քեզ գոլ, զոր ոչ ոք գիտելով և ոչ զգաղափար թերևս տեսցէ երբեք, և ոչ բան յաղագս կենցաղոյ 'ի խնդրուածս արկանել՝ թերևս լինիցի կարող, առ բարեբաստ իսկ և դժուարաբախտ հանդիպումն։ Զայսոսիկ եթէ հաւանեցուսցէ զքեզ, սա Կլինիաս, և 'ի միասին ամենայն ծերակոյտս մեր յաղագս աստուածոց՝ իբրու թէ զինչ ասես ոչ գիտես բարեւք, թերևս աստուած քեզ նոյն լինիցի պաշտպան։ Ապ'եթէ տակաւին ումեմն բանի կարօտանաս արդեւք՝ ասելով մեր ցերրորդն լեր ունկնդիր, եթէ միտք որչափ և ունիս։*

*Զի իբրու աստուածք են և մարդկան փոյթ առնեն՝ ես իսկ ամենեւին ոչ ասացից վատթարագոյն առ 'ի մէնջ ցուցեալ։ Իսկ յաղագս հրաժարող գոլ սոցունց այնոցիկ որ անիրաւ են, ընդունելով զկաշառս, ոչ ուրեք ներելի է, այլ ամենայնի իսկ ըստ զօրութեան յեղանակաւ յանդիմանելի է։*

Կղինիաս. *Գեղեցկագոյն ասացեր, արասցուք իսկ իբրու ասեսդ։*

Պղատոն. *Բեր արդ առ 'ի սոցունց աստուածոցն, զինչ յեղանակաւ հրաժարեալք լինիցին արդեւք մեզ՝ եթէ լինիցին իսկ. և ո՞յք ոմանք և կամ որպիսի՞ ոմանք գոլով իշխանք հարկ է ուրուք լինել մատակարարողք ամենայն երկնի։*

Կղինիաս. *Ա՞յդպէս։*

Պղատոն. *Որո՞ց արդեւք մատուցանես յիշխանայն, և կամ ո՞յք ոմանք սոցունց՝ որոց հնար է մեզ նմանեցուցանելով հանդիպիլ մեծագունից փոքրագոյնս,*

որպէս եթէ կառավարք ոմանք իցեն այսպիսիք լծօք հանդիսանալով, և կամ վարիչք նաւաց, և եթէ նմանիցեն զօրաց իշխանաց ոմանց իցէ արդեւք և 'ի պատերազմէ՝ հիւանդութեանց խորշելով բժըշկացն նման գոլ առ մարմինսն, և կամ երկրագործաց առ բուսոց լինելութիւն սովորելով՝ զժամանակս դժուարինս վասն աճի կալով և մնալով, և կամ հօտից վերադիտողաց, քանզի ներեցաք սոցունց գոլ իսկ զերկինս լի բազում բարութեամբք գոլ, իսկ և ներհականօքն և յոլովագունիցն՝ որ ոչ մարտ իսկ ասեմք. զի անմահ է այսպիսիս և սքանչելի պահպանութեան կարօտացեալ, և մարտակիցք մեր աստուածք՝ համանգամայն և դիք, և մեք իսկ ստացուած աստուածոց և դից: Եւ ապականէ զմեզ անիրաւութիւն և ամբարտաւանութիւն հանդերձ անխոհեմութեամբ. և կեցուցանէ արդարութիւն և ողջախոհութիւն հանդերձ խոհեմութեամբ, յաստուածոցն բնակելով ներհոգի զօրութիւնսն: Բայց սուղ ինչ և այս իսկ:

Եթէ ոք յայսպիսեացս բնակեալ առ մեզ հաւաստի տեսանիցի, և հոգիք ոմանք յերկրի բնակեալք, և անիրաւ խոհեմութիւն ստացեալք, յայտ եթէ գազանատեսակք առ պահպանողացն անձինս նըշան թերևս և կամ անդիորդացն, և կամ առ ամենևին ծայրագոյն տերանցն հասանելով՝ հաւանեցուցանեն ստութեամբ ողոքական բանից և ըղձականօք ոմամբք մակերգելով, իբրու համբաւքն ասեն՝ չարեացն պատշաճ գոլ ագահելով առ ինքեանս մարդիկ կրելով ոչ ինչ դժուարին: Եւ ասեմք գոլ զայժմիկ անուանեալ մեղքս, զագահութիւն առ մսեղէն մարմինս ցաւս կոչել, և առ ժամանակսն ամաց և տարեաց ժանտութիւն և առ քաղաքս և քաղաքավարութիւնք զնոյնս իսկ բան յեղափոխելով յանիրաւութիւն:

Կղինիաս. Այո, ամենեցուն արդար:

Պղատոն. Զայսոսիկ արդ զբանս հարկաւոր է ասել, որպէս են ներողք միշտ աստուածքն 'ի մարդկանէ ապիրատացն, և անմեղացն դատքն որոշին, և անիրաւացն՝ եթէ յանիրաւութեանցն ոք ինչ հա-

տուցանէ, որպէս և շանց գայլք յափշտակելոցն զփոքունս բաշխեն. և սոքա ընտանեցեալք ձրիւքն ներեցին զհաւատքն յափշտակելով։ Ո՞չ արդեւք այսուիկ բանս է ասացողացն՝ հրաժարողք գոլ զաստուածսն։

Կղինիաս. Այսոքիկ այս այսպէս։

Պղատոն. Որո՞ց արդեւք յառաջագոյն ասացելոցըն նմանեցուցանելով պահապանս գոլ զաստուածսըն՝ ոչ արդեւք ծիծաղելի լինիցի մարդկան որ և իցէ. որպէս նաւավարք արբեցութեամբ իսկ գինւոյ և ճաշակելով ճենճերից հաշտեալ՝ մատնիցէ զնաւն և զնաւավարքն 'ի կործանումն։

Կղինիաս. Ոչ ուրեք այդպէս։

Պղատոն. Այլ սակայն և կառավարք իսկ 'ի հանդիսի կարգաւորելոցն առ ինքեանս հաւանելով 'ի ձեռն կաշառաց՝ այլոց կառաց մատնեն զյաղթութիւնն։

Կղինիաս. Դժուարին պատկերատես ասելով իսկ զայս բանս։

Պղատոն. Սակայն և ոչ զօրավարաց իսկ բանս, և ոչ բժշկաց, և ոչ երկրագործաց, և ոչ անդիորդաց, և ոչ շանց կոչեցելոց 'ի գայլոց։

Կղինիաս. Լռեա, և մի՛ ասեր զանպատկանսն։

Պղատոն. Այլ ո՞չ ամենեցուն պահապանաց մեծագոյնք են և առ մեծագոյնս մեզ՝ աստուածքն ամենեքեան։

Կղինիաս. Յոյժ իրաւացի։

Պղատոն. Արդ այնոցիկ որ գեղեցկագոյն իրս պահելով, և պահպանութեամբ զանազանելով ըստ առաքինութեան շա՛նց վատթարագոյնք և մարդկան գոլ ասասցուք. քանզի սոքա ոչ երբեք մատնեն 'ի սակս կաշառոց, առ 'ի ապիրատ արանց անարդարապէս տալով սոցունց։

Կղինիաս. Ոչ և միով ուրեք ներելի է բանս։ Յայնցանէ որ ըստ ամենայն ամբարշտութեան են, և տագնապի կարծեացս այսմիկ հաւանողքն՝ քան զամենայն ամբարիշտս դատելով իրաւապէս չարաչար գոլ և ամպարշտագոյն։

Պղատոն. Իսկ արդ առաջի եդեալ զերեսս, իբրու զի են աստուածք, և իբրու մատակարարողք ըստ արդարութեան, և իբրու զի ամենևին անհրաժարողք, ասասցուք բաւականապէս ցուցեալ առ 'ի մէնջ։

Կղինիաս. Ո՞րպէս ոչ։

Պղատոն. Եւ դատողակիցք եմք բանիցս այսոցիկ, և ասացան սակայն իբրու ուժգնագոյն՝ վասն վիճաբանութեան չարին մարդկան։ Արդ 'ի սակս այսորիկ, ով Կլինիա, վիճաբանութեամբ ասացան. գուցէ բանիւք յաղթել վարկանելով իշխանութիւն գոլ ինքեանց, զոր ինչ կամեցան գործել չարքն. զորս է և ժրչափ և որպիսիս առ աստուածսն տրամախոհին յօժարութիւն։ Արդ վասն այսորիկ մեզ եղև անել տղայաբար. ապա եթէ տակաւին և սուղ ինչ առաւելագոյն արարաք՝ վասն հաւանեցուցանելոյ զարսն ատել զանձինս իւրեանց, և 'ի ներհական բարս իբրու փափագել՝ բարեւք առ 'ի մէնջ իցէ թերևս նախերգանս ասացեալ՝ յաղագս օրինաց ամբարշտութեան։

Կղինիաս. Այլ յոյս գոյ, եթէ ոչ բանիցս իսկ սուտ ոչ պատճառիցէ զօրինադիրն։

Պղատոն. Յետ նախերգանին այսուհետև բանս որպէս մեկնիչ օրինացն թերևս ուղղապէս լինիցի մեզ, նախասելով ամենեցուն 'ի բաց կալ ամպարշտաց յեղանակաց իւրոց 'ի բարեպաշտութիւնս։ Եւ այնոցիկ որ ոչ հաւանին՝ այս ինչ իցէ օրէն յաղագս ամբարշտութեան։ Եթէ ոք ամբարշտիցի բանիւք կամ գործօք, հանդիպողն վասն զսա նշանակելով առ իշխանս, և յիշխանաց յառաջագոյն հարցողքն առ դատարանսն որ առ դատել զայսոքիկ ցուցեալ է, 'ի ներքս մուծցեն ըստ օրինացն։ Ապա եթէ իշխանութիւն ոք լուեալ՝ ոչ արասցէ զայսոսիկ, ինքն ամպարշտութեան պարտապան լինիցի կամողին պատուհասել յաղագս օրինացն։ Եւ եթէ ոք պարտապան իցէ՝ հատուսցէ զգինն դատարանն յիւրաքանչիւրում զայնոցիկ՝ որ միանգամայն ամպարշտիցեն զտուրսն։ Կապանս արդ իցէ ամենեցուն. բայց կապարանաց եղով

'ի քաղաքի երից, միոյ իսկ հասարակաց յոլովից առ վաճառարանն 'ի սակս փրկութեան բազմաց մարմնոց, և միոյ իսկ առ այնմիկ՝ որ 'ի գիշերի ժողովին՝ ժողովն ողջախոհ արանց մականունելով. և միւսոյ իսկ ըստ միջագոյն վայրին, ուր և անապատ իսկ և իբրու յաւէտ վայրենագոյն իցէ՝ տեղ պատուհասի ունելով մականունութիւն։ Զհամբաւ ինչ, և առ ամպարշտութիւն ինչ ելով՝ երիս պատճառս զորըս և պատմեցաք, և երկու յիւրաքանչիւրումն այսպիսի պատճառացս լինելով՝ վեց թերևս լինիցին. որ և ընտրութեան արժանի սեռք՝ այնոցիկ որ առ աստուածայիննն սխալին, ոչ հաւասար և ոչ նմանապէս պատուհասի կարօտանալով։

Քանզի այնմիկ թերևս որ ոչ կարծէ գոլ աստուածս, ամենևին սովորութիւն առ բնութիւն լինիցի իրաւապէս. և ատելով իսկ զչարս լինիցին և դժուարանալով ընդ անիրաւութիւն, ոչ ընդունիցին զայսպիսիս գործել գործս, և յոչ արդարագունիցն 'ի մարդկանէ փախչին և արիագոյնսն փափագին։ Եւ այսոցիկ որ առ կարծիսն յաստուծոց թափուր գոլոյն՝ ամենեցուն յաղթութեամբ հեշտութեանց և տրտմութեանց գլորիցին, և յիշելութիւնք զօրաւոր և ուսմունք երագունք իցեն, առ սոքօք աստուածք ոչ իսկ կարծել երկոցունց մի իցէ թերևս հասարակաց. բայց այլոց մարդկան վնասակարութեամբըն՝ մինն նուազ և միւսն յոլովագոյն արդեւք գործիցէ չարիս։ Քանզի այն իսկ որ բանիւ թերևս առ աստուածսն լի իցէ համարձակութեամբ, առ զոհսն և երդմունսն, և իբրև այլքն ծիծաղելով՝ թերևս և զայլս այսպիսիս 'ի բաց գործիցէ՝ պատուհասի ոչ հանդիպելով։ Իսկ այն որ կարծէ զմինն քաջաբնակ անուանելով, բայց նենգութեամբ և խորամանկութեամբ լցեալ։ Յորոց դիւթք իսկ կազմին բազումք, և առ ամենայն կախարդութիւնքն շարժեալք. է յորժամ և լինիցի 'ի սոցունց և գսռողք և հրապարակողք և զօրավարք և առանձին ձօնելոյ խորհրդածուք, և հնարք անուանելոցն ճարտասանաց, սոցունց բազում տեսակք լինիցին թերևս. բայց որի-

նաց դրութեան արժանի երկու են. յորոց հեգնականն իսկ՝ ոչ միոյ և ոչ երկուց արժանի մահուան իցէ մեղուցեալն, և միւսն խրատու համանգամայն և կապանաց կարօտացեալ։

Այսպէս իսկ և աստուած կարծեն ծուլացողք՝ միւս երկու ծնանի, և հրաժարողքն կարծեն՝ այլ երկու։ Սոցունց արդ այսպէս բաժանելով 'ի միմեանց, զայնոքիկ որ յանխոհեմութենէ առանց չարաչար բարկութեան իսկ և սովորութեան լինիցին, յողջախոհարանն դնելով դատաւորն օրինօք՝ դիցէ ոչ նուազ հնկից ամաց. և առ այսմիկ ժամանակի ոչ և մի այլ ոք 'ի քաղաքացեացն պատահեսցի սմա. բայց յայնցանէ որ 'ի գիշերային ժողովոյն հաղորդքըն են յաղագս խրատու իսկ և հոգւոյ փրկութեան պատճառելով։ Եւ յորժամ անցցէ սոցունց կապանացն ժամանակն, եթէ թուիցի ոք 'ի սոցունց յողջախոհ գոլ, բնակեսցէ հանդերձ յողջախոհօքն. ապ'եթէ ոչ, այլ պարտապան իցէ դարձեալ այսպիսի դատաստանի, մահուամբ տուժեսցի։

Եւ որչափ գազանատեսակք լինիցին՝ առ աստուածըս ոչ կարծելովն կամ ծուլացողք, և կամ հրաժարողք գոլ, այլ արհամարհելով զմարդիկ՝ մխիթարիցեն զբազումս 'ի կենդանեացն, և զմեռեալսն՝ ասելով մխիթարել, խոստանալով հաւանեցուցանել զաստուածս իբրու զոհիւք իսկ և ըղձիւք և ողոքանօք, պարտելով զռամիկսն իսկ և զտունս բոլոր և զքաղաքս իսկ ընչից ձեռնարկեն 'ի բաց խլել։ Արդ 'ի սոցունց՝ զոր և թուիցի պարտապան գոլ, պատուհասեսցէ դատարանն ըստ օրինացն։ Կապել իսկ զսա 'ի մէջ երկրայիցն կապարանին, գալով առ սոսա ոչ ուրուք ազատի ոչ երբեք, ևս կերակուր 'ի ձեռն ծառայիցն ընկալուլ որչափ օրինապահքն հրամայիցեն։ Յորժամ մեռանիցի՝ արտաքոյ սահմանացն հանել առանց թաղման. և եթէ ազատ ոք թաղիցէ զնա՝ պատուհաս ամբարշտութեան պարտեսցի կամողին։ Քննել զսա սակայն՝ եթէ մանկունք մնացուցանէ առ քաղաքաւն, այնոքիկ որ դարմանողք են որբոց՝ և սոցունց որբք ելով փոյթ արասցեն, ոչ ինչ

նուազագոյն քան զայլոցն, յօրէն յայնմանէ յորում հայրն զպատուհասն կրիցէ հասարակաց։

Ի վերայ այսոցիկ ամենեցուն հասարակաց օրինին կեալ պարտ է, և որ նուազ իսկ՝ աստուածս բանիւ և գործով տացէ մեղանչել բազմաց 'ի մարդկանէ, և աննախհեմք իսկ նուազագոյնք լինել. վասն ոչ գոլոյ պարտապան օրինին աստուածաբանել։ Զի իցէ օրէն այս ինչ։ Ամենեցուն 'ի միասին պարզաբար եդեալ՝ տաճարս ոչ և մի ոք իւրեանց շինիցեն 'ի տունս, այլ զոհել յորժամ առ միտս ուրուք հասանիցի՝ առ հրապարակն հասցէ զոհելով. և քահանայից և քահանայուհեաց ընծեռեսցէ զզոհսն՝ յորոց մաքրութիւնք սոցունց փոյթ է. և 'ի միասին արասցեն զուխտսն, սա իսկ՝ և այն զոր կամիցի հանդերձ սովաւ ուխտել։ Արդ այսոքիկ լինելով իցեն 'ի սակս այսոցիկ. տաճարս և աստուածս ոչ դիւրին է հաստատել. մեծագունի ուրուք խորհրդոյ է ուղղապէս հաստատել զայսպիսիսն։ Եւ սովորութիւն է կանանց ամենեցուն՝ և այնոցիկ որ տկարութեամբ տագնապեալ է և տարակուսեալ. յորժամ և տարակուսեսցի, և կամ ներհակապէս բարեբաստութեան հանդիպողք լինիցին՝ սրբազանել տաճարս միշտ և զոհիւք ուխտ դնել և զտաճարս հաստատել՝ խոստանալով աստուածոց և դից և մանկանց աստուածոց։ Ի յարթնութեան երևմամբ՝ 'ի ձեռն երկիւղի և երազոց, իբրու այսպէս յիշեցուցանելով սոցունց իւրաքանչիւրոց, բժշկութիւնս առնելով, բագինս և տաճարս զամենայն իսկ տունս և յամենայն գեւղ՝ ուր մաքուրս իցեն՝ հաստատելով, իբրու թէ լցուցանելով զսոսա։

Եւ ուր հանդիպիցի ոք այսպիսեացս 'ի սակս որոց պարտ է ամենեցուն առնել ըստ այժմիկ առացեալ օրինիս 'ի սակս ամբարշտելոցն. զի մի և զայսոսիկ գողանալով գործօք տաճարք և բագինք առանձին տունս շինելով, լռելեայն զաստուածսն հաշտեցուցանելով, առնել զոհիւք և ուխտօք անեզր զանիրաւութիւնն՝ աճեցուցանելով անձանց իւրեանց ամբաստանութիւն առ աստուածսն առնել, և այնոցիկ զորս

յորդորեն՝ գոլով սոցունց լաւագոյն. և ամենայն քաղաքն այսպէս վայելէ ամբարշտութեամբ՝ իբրու իրաւագոյն ինչ յեղանակաւ։ Իսկ արդ զօրինադիրն՝ աստուած ոչ ամբաստանէ. այլ կայցէ օրէն այս, ոչ ստանալով աստուածոցն 'ի տունս իւրեանց տաճարս։ Իսկ որ յայտնի՝ ստանալով զայս և ձօնելով, բայց 'ի հասարակացն, եթէ անիրաւ ոչ ինչ 'ի մեծագունիցըն և անարդարագոյն գործեալ այր և կամ կին ոք ստացեալ իցէ, այն իսկ որ 'ի մարմնոյն պատմիցէ օրինապահացն, և սոքա հրամայիցեն առ հասարակաց տաճարսն կրել զյատուկսն, և ոչ հաւանեցուցանելով՝ տուժին, մինչև տարցի թերևս. ապա եթէ ոք ամբարշտեալ ոչ մանկանց՝ այլ արանց ամբարըշտութիւն անարդարագոյն, և լինիցի յանդիման կամ յատկապէս շինեալ յիւր տաճարումն, և կամ 'ի հասարակաց տաճարսն աստուածոցն զոհելով՝ որոց և իցէ՝ իբրու ոչ մաքուր գոլով առ զոհելն, մահուամբ տանջեսցի։ Ապ'եթէ մանուկ իցէ՝ օրինապահքն 'ի դատարանն այսպէս ածել զսոսա, ըստ որում պարտ է՝ զամբարշտութեանն պատուհասն կատարեսցեն։

# ՊՂԱՏՈՆԻ

# ՕՐԷՆՔ ԿԱՄ ՕՐԷՆՍԴՐՈՒԹԻՒՆՔ

## ՄԵՏԱՍԱՆԵՐՈՐԴ



Պղատոն. Եւ զոր ինչ յետ այսորիկ իցէ վաճառուաց և այլոց ոմանց առ միմեանս ենթադրութեանց, որ կարօտանան պատշաճաւոր դասութեանց։ Եւ պարզ իսկ է այս ինչ։ Արդ մի՛ ոք մերձեսցի 'ի յինչս իմ, և մի՛ շարժեսցէ դուզնաքեայ ինչ զիս, ոչ և միով իւիք հաւանեցուցեալ զիս։ Եւ ըստ այսոցիկ՝ յաղագս այլոց ընչից արարից և ես, միտք ունելով խոհեմական։

Արդ զկարասիս ասեմք այսպիսեացս առաջին՝ զոր անձին ոք և յիւրոց եդեալ է պահուստ, ոչ նախնեացն իմոց գոլով՝ գտանել, ոչ երբեք յաստուածոցն ոչ ըղձալ, և ոչ գտեալ՝ շարժեցից։ Եւ ոչ ասացելոցըն դիւթից հաղորդեցայց, այնոցիկ որ այսպէս խորհին ընդ իս, 'ի բաց առնուլ զպահուստն. քանզի ոչ երբեք այսչափ շահեցայց յընչից ստանալոյն՝ 'ի բաց առնելով զօտարն, որչափ մեծութիւն առաքինութիւն հոգւոյ և արդարութիւն հոգւոյ աճիցէ առ իս. եթէ ոչ առնուցում ստացուած՝ փոխանակ ստացուածի լաւագունիւ ստանալով, զիրաւունս ներանձին նախապատուելով քան զփարթամութիւնն ստանալ 'ի գոյս յառաջագոյն։ Քանզի առ բազումս է բարեւք ասացեալն՝ ոչ շարժել զանշարժելիքն, և յաղագս այսորիկ ասասցի թերևս իբրև մի յայնցանէ գոլով։ Բայց հաւանել պարտ է յաղագս այսորիկ ասացելոց առասպելաց, իբրու յաղագս որդւոց ոչ են պատշաճաւոր այսպիսիքս։

Digitized by Google

Եւ այն իսկ որ մանկունք ոչ ունիցին, և առ եդեալ օրէնսն ծուլացեալ՝ զոր ինքն ոչ է եդեալ, և ոչ 'ի հարցն հաւքն, ոչ հաւանեալ զայն որ եդեալ է 'ի բաց առնուցու՝ զգեղեցկագոյն օրէնսն ապականելով պարզագոյն, և ոչ միով իւիք անարիագոյն արհամարհող լինելով, և առեալ ոչ ինչ փոքր զոր ինչ ինքըն ոչ է եդեալ, և կամ բազմութիւն կարաստյ. եթէ 'ի քաղաքի լինիցի այսպիսի ինչ՝ քաղաքայօրինացն. ապ'եթէ 'ի մէջ քաղաքին առ վաճառս ուրուք՝ վաճառայօրինացն. ապ' եթէ այլում վայրի՝ յագարակաբաշխացն և սոցունց իշխանացն յայտնի իցէ։ Եւ յայտնելով 'ի քաղաքն՝ 'ի Դելփիս առաքիցէ. և զոր ինչ աստուած յայտնէ յաղագս ընչիցն և շարժողին՝ զայս ինչ քաղաքն հետևելով դիւթութեանց աստուծոյն արասցէ։ Եւ եթէ ազատ իցէ ազդեցուցիչըն՝ զկարծիս առաքինութեան ստասցի, և ոչ՝ զուշակել զչարութեանն. և ծառայ թէ իցէ՝ զզուշակեալ ազատ 'ի ձեռն քաղաքին ուղղապէս լինիցի, հատուցանելով սորա տեառն զգինսն նորա. և եթէ ոչ ազդիցէ՝ մահուամբ կատարեսցի։

Եւ այսուիկ հետևեալ զկարգի լինիցի առ փոքունսըն և առ մեծագոյնսն, նոյնպէս նորին օրինացս զհետ երթեալ։ Եթէ ոք յիւրոցն ինչ մնացուցանէ ուրուք՝ կամաւ և կամ ակամայ, որ հանդիպլին՝ թողցին զի կացցէ նա, կարծիս ունելով պահել զսա ճանապարհորդի ումեմն յաստուծոյ 'ի ձեռն օրինացն աստուածուհոյն սրբազանելով։ Ապ'եթէ անհաւանելով ոք՝ առցէ և 'ի տուն իւր տարցի, եթէ փոքու գնոյ է՝ ծառայ գոլ այրն ոչ նուազ ամաց երեսնից, 'ի ձեռն հանդիպեալ իշխանին բազում գանս առցէ։ Ապ'եթէ յազատ ոմն՝ յետ առանց ազատութեան գոլ թուելոյն և անհաղորդ օրինացն, տասնապատիկ զգինսն զշարժեալ իրին հատուսցէ մնացուցողին սորա։

Ապ'եթէ պատճառանս դիցէ ոք՝ յիւրոց ընչիցն ունել զոմանս յոլովագոյնս և կամ փոքունս, և նա խոստովանի իսկ ունել՝ բայց ոչ նորա ինչ, եթէ գրեալ իսկ իցէ առ իշխանացն ստացուածն այն՝ ըստ

օրինացն զայն որ ունի զստացուածն՝ կոչեսցեն առ իշխանսն, և նա ըստ օրինին դատեսցէ. և յայտնի լինելով եթէ ՚ի գիրսն գրեալ երևեսցի միոյ յերկբայելոցն՝ սա ունելով գնասցէ: Ապա եթէ այլոյ ուրուք յայնցանէ որ մերձ ոչ պատահին, որոց տացէ միջնորդ մեծապատիւ վասն այնորիկ՝ որ ոչ մերձ պատահեցաւ զի աւանդիցեն զինչսն առ նա, ըստ նորին պահանջմանն պահանջեսցի: Ապ՚ եթէ առ իշխանացն իւրն երկբայեալ ոչ իցէ՝ գրեալ կացցէ մինչև ցհանդէս առ երից իշխանաց՝ յերիցագունիցն: Ապ՚ եթէ ընդ երաշխեօք անկեալ իւրն կենդանի իցէ՝ յաղթեալն յաղագս սորա հատուսցէ զկերակուրն սորա, իրաւամբք իշխանացն. և զհանդէսն դատիցեն ՚ներքոյ երից աւուրց իշխանքն:

Ածցէ զծառայն իւր՝ որ կամիցի թէ ներխոհեմ իցէ, վարելով սովաւ յոր ինչ և կամիցի, յայնցանէ որչափ արդարագոյնք իցեն ածցէ. իսկ և յաղագս այլոց յընտանեաց իւրոց կամ ՚ի բարեկամաց զհեռացեալն, սակայն առ ՚ի փրկութիւն: Ապա եթէ ոք ՚ի բաց բարձցէ զոմն յազատութենէ, իբրև ծառայ ածելով զնա, ՚ի բաց երթիցէ բռնադատողըն. և ՚ի բաց բարձեալն երաշխաւորս երիս արժանապատիւս կացուցանելով՝ այսպէս յազատեսցի ըստ այնորիկ և այլաբար ոչ: Ապա եթէ առանց այսոցիկ ՚ի բաց բարձցէ՝ բռնութեանցն պարտապան իցէ, և կալեալ՝ զկրկնապատիկն մակագրեալ վնասուն հատուսցէ յայնմ յորմէ ՚ի բաց բարձեալ իցէ: Ածցէ իսկ և զազատեալ ծառայն, եթէ ոչ աճեցուսցէ զազատողքն իւր, և կամ ոչ բաւականապէս հպատակէ սմա: Եւ հաճեցուցանելն՝ այս ինչ. գալ երից անգամ յամսեանն ազատելոյն առ տունն ազատողին, խոստանալով զոր պարտ է առնել յիրաւագունիցն միանգամայն եթէ հնար իցէ. և յաղագս ամուսնութեան առնել զոր ինչ և թուիցի եղեալ տեառն իւրոյ, և փարթամանալ առաւել քան զազատողն մանաւանդ ոչ է պարտ սմա, այլ յոլովագոյնն տեառն լինիցի: Եւ ոչ մնալ ՚ի քաղաքին յայնմիկ որ ազատի՝ առաւել ամաց քսանից. այլ գնալ՝ որպէս

և օտարքն, առեալ զամենայն գոյս, թէ ոչ հաւանեցուսցէ զամենայն իշխանսն և զազատողն։ Ապա եթէ այն որ ազատի, և կամ այլոյ օտարաց, յերրորդ գնոցն յոլովագոյն գոյս լինիցի. յորում աւուր այս ինչ լինիցի. յետ աւուրցն երեսնից՝ յայսմիկ աւուրս առեալ զիւրսն գնասցէ, ոչ և մի հրաժարումն լինիցի սմա զի մնացէ 'ի քաղաքին առ իշխանի ումեմն։ Ապա եթէ ոք անհաւան լինիցի այսոցիկ, ածեալ 'ի հանդիսարանն պարտապան իցէ՝ մահուամբ կատարեսցի, և ինչս նորա լինիցի հանդիսին։ Այլ իրաւունքն սոցունց լինիցին առ ազգական հանդեսքըն՝ եթէ ոչ յառաջագոյն առ դրացիս, և կամ առ ընտրեալ դատաւորս հաշտիցին ընդ միմեանս յամբաստանութենէն ուրացեալք։

Ապա եթէ իբրև յիւր մերձեսցի ոք և առցէ կենդանի ինչ զոր և իցէ և կամ այլ ինչ յընչից նորա, վերստին ածցէ զոր ունիցի զիւրն զվաճառողն սորա, և կամ զտուողն արժանապէս և իրաւացի, և կամ այլ ինչ յեղանակաւ աւանդելով տիրապէս եթէ քաղաքացի իցէ և կամ 'ի փոխաբնակացն որ 'ի քաղաքին՝ ներքոյ աւուրց եռամնից։ Ապ'եթէ օտարական իցէ՝ աւանդութիւնն ներքոյ ամաց հնգից, յորոյ սահման է ամիսն յորում դառնայ ամառնային յեղանակն արեգական 'ի ձմեռնային։ Բայց որչափ 'ի ձեռն ումեմն վաճառի, և կամ ներգիր վճռի յաղագս վաճառի փոխիցէ ոք ինչ այլոյ ուրուք տալով 'ի կարգեալ վայրին իւրաքանչիւրոց ըստ վաճառի՝ տալով և առնլով, զգինսն վաղվաղակի այսպէս վաճառեսցի։ Իսկ այլ ուրուք ոչ, և ոչ դարձմամբ վաճառ առնել ոչ և միոյ իրի։ Ապա եթէ այլաբար և կամ առ այլս տեղիս՝ զոր ինչ և իցէ, փոխանակ որպէս և իցէ իրի փոխիցէ այլ ոք յայլոյ ուրուք, հաւատալով առ այնմիկ որ հաւատացէ զվաճառն, լինիցի յայտնի յեղանակ գործոյն՝ իբրու ոչ գոլով հանդիսից ըստ օրինաց յաղագս այնոցիկ որ ոչ են վաճառեալ։ Ըստ ասացելոցս այժմիկ և յաղագս ըստ համեմատութեան հաւաքմանց իրի՝ եթէ կամիցին հաւաքել սիրելիք առ միմեանս։ Ապ'եթէ տարբե-

րութիւն ինչ լինիցի վասն այսպիսի հաւաքման՝ այսպէս գործել, իբրու զի հանդէսք ոչ ուրուք յաղագս այսոցիկ ոչ և միոյ ուրուք լինիցին։

Եւ որ տալով զգինս՝ առցէ ոչ ինչ նուազագոյն քան զգրամս յիսուն, մնասցէ 'ի քաղաքին 'ի հարկէ աւուրս տասն։ Եւ գնողն գիտիցէ զտուննն վաճառողին, 'ի սակս ամբաստանութեանցն որ սովորեալ են առ այսպիսիս լինել 'ի սակս դատաստանաց՝ որ օրինացն են, և ըստ օրինաց դարձուցանել զվաճառսըն և ոչ այսպէս իցեն։ Ապա եթէ ոք ծառայ վաճառիցէ հիւանդ և ապականիցի, կամ քար և կամ միզագրաւութիւն ունիցի, և կամ զասացեալսն սրբազան ցաւն, և կամ այլ ինչ անյայտ 'ի բազմաց հիւանդութեանց երկարաձիգ և դժուարաքոյժ իցէ ըստ մարմնոյն կամ ըստ խոհեմութեան, եթէ բժշկի ոք և կամ հրահանգողի ոչ իցէ դարձուցանել զայնպիսին։ Ապա եթէ ճշմարտապէս յառաջագոյն ստացեալ իցէ՝ հընար է դարձուցանել։ Ապ'եթէ ռամիկ ոք այսպիսեացս վաճառեսցի չինող իսկ, որ գնէ՝ ներքոյ ամսոյ մի դարձուսցէ, բաց 'ի սրբազան ցաւոցն. քանզի զայնպիսիսն որ զցաւս զայս ախտանան՝ ներքոյ ամի միոյ դարձուցանել պարտ է։ Բայց դատեսցին առ ոմանց 'ի բժշկաց, զորս և հաղորդաբար երկաքանչիւր ընտրելով հաճեսցին. և որ պարտապան իցէ դատաստանին՝ կրկնապատիկ հատուսցէ զգինսն, զոր և դարձուցանէ։ Ապա եթէ ռամկի ռամիկ ոք վաճառիցէ, դարձուցանել և ոչ՝ գոյ որպէս և յառաջագոյնն ասացաւ. և որ պարտապան լինիցի 'ի հանդիսին՝ զգինն պարզ հատուսցէ։ Ապա եթէ զայրասպան վաճառիցէ ոք ումեմն գիտելութեամբ իւրն և գնողին իսկ, ոչ դարձցի զայնպիսի վաճառն։ Ապա եթէ ոչ գիտիցէ գնողըն, դարձն լինիցի յայնժամ յորժամ ազդիցէ ոք 'ի գնողացն։ Բայց առ հնդիցն յօրինապահացն՝ որք համբակագոյնք են, լինիցի դատն. և գիտելով՝ եթէ դատիցի զտունսն զգնողին՝ մաքրիցէ ըստ օրինին պատմողացն, և զգնոյն յեռապատիկն հատուսցէ։

Եւ որ փոխող իցէ կամ դահեկանի ընդ դահեկանի, կամ յայլոց կենդանեաց զինչ և իցէ, և կամ

յոչ կենդանեացն, անխարդախ զամենայն տացէ և առցէ հետևելով յօրինացն։ Բայց Նախակիրզքն՝ որպէս և այլոց օրինացն, ընդունեսցուք և յաղագս յայսմիկ բոլոր չարութեանս. այլ զխարդախութիւն պարտ է առն ստութիւնք և պատրանք համարիլ՝ իբրու մի սեռ գոլով սորա, որ ոչ զհամբաւն սովորեալ է բերել բազմօք չարաչար ասելով՝ իբրու 'ի ժամու լինելով իւրաքանչիւր այսպիսիս, բազում անգամ թերևս ուղղապէս ունիցի. բայց զժամանակն թէ ձւր և եթէ երբ անկարգաբար և անսահմանապէս թողլով բազումս՝ այսմիկ բազումս տուգանին, և զայլս տուգանեն։

Բայց օրինադրի ոչ պարտ է զայս ինչ առանց սահմանի թողուլ, այլ կամ մեծագոյն և կամ փոքրագոյն սահմանք միշտ պարտ է հաստատի առնել։ Եւ արդ այժմիկ սահմանեսցի։ Սուտ ոչ մի ոք և ոչ ինչ, և ոչ պատրանք և ոչ զնեռ ինչ խարդախութեան՝ կարդալով զաստուածքն, ոչ բանիւ և ոչ գործով գործիցէ որ ոչ աստուածատեաց գոլ համդերձեալ իցէ. և սուտ՝ որ երդմունք սուտ երդնուցու ոչ ինչ փոյթ ունելով աստուածոցն. և երկրորդ՝ յանդիման լաւագունիցն իւր ստիցէ։ Եւ լաւագոյնք են վեհագոյնքն և վատթարագունիցն, ծերքըն իսկ միանգամ ասելի է, քան զհամբակս. վասըն որոյ և ծնողք վեհագոյնք են ծննդոցն, և արք իսկ քան զկանայս և զմանկունս, իշխանք քան զայն որ ընդ իշխանութեամբ են. յորոց պատկառիլ ամենեցուն յամենայնէ վայելչագոյն իցէ թերևս առ այլոյ ամենայն իշխանութեան, և առ քաղաքական իշխանութեանցն մանաւանդ՝ ուստի որ այժմիկ է բանս առ 'ի մէնջ ասացաւ։ Քանզի ամենայն ոք որ 'ի վաճառի խարդաւանող իցէ՝ ստէ և պատրէ, և զաստուածսն կարդալով երդնու առ օրէնս վաճառարանին և առ պահապանսն, ոչ 'ի մարդկանէ պատկառելով և ոչ յաստուածոցն խորշելով։ Արդ բարի խորհուրդ է՝ զաստուածոցն անուանս ոչ յիշել առ բանս արատաւորս դիւրաւ ունելով՝ իբրու ունին 'ի մէնջ բազում անգամ յոլովագոյնքն. այլ

սրբութիւն իսկ և մաքրութիւն առ աստուածն փոյթ առնել։

Ապ'եթէ ոչ հաւանեսցին՝ իցէ օրէնս այս ինչ։ Որ վաճառէ զոր զինչ և իցէ 'ի վաճառարանին, մի՛ երբէք առիցէ բանս երկուս կամ գինս այնոցիկ որ և վաճառէ. այլ յստակ ասացեալ՝ եթէ ոչ հանդիպիցի այսմիկ, դարձեալ և յայնմիկ աւուր ոչ ևս դիցէ գին սմա յոլովագոյն. և զոլով՝ երդումն յաղագս ամենայն վաճառեալ իրի 'ի բաց լիցի։ Ապ'եթէ անհաւան ոք իցէ այսոցիկ, որ հանդիպին սմա 'ի քաղաքացեացն՝ ոչ նուազ զոլով քան եթէ ամաց երեմնից, տանջելով զերդմնահարն անմխասելով հարցէ. այլ փոյթ ոչ արասցէ անհաւանելով՝ պարտապան իցէ բամբասանաց մատնելութեան օրինացն։ Արդ զայն իսկ որ խարդախութեամբ ինչ վաճառէ՝ և ոչ կարէ հաւանել այժմիկ ասացեալ բանիցս, որ հանդիպիցի առ սմա 'ի գիտողացս՝ կարող զոլով յանդիմանել առաջի իշխանացն կշտամբելով զսա, եթէ ծառայ իցէ կամ փոխաբնակ, առցէ զդաւաճանութեամբ իրսն։ Եւ եթէ քաղաքացի է՝ ոչ յանդիմանելով իսկ իբրու նորաձևող աստուածոցն, չար առասութիւն տարցի, և յանդիմանել իսկ՝ առաջի այնոցիկ որ զվաճառարանն ունին՝ զաստուածոցն։ Եւ որ յանդիման ունիցի՝ այսպիսի ինչ վաճառելով առ զրկելովն, 'ի խարդախեալ իրէն որչափ և գնոյ արժանացուցանէ զվաճառեալն, ըստ դրամ իւրաքանչիւր գանիւք հարցի, 'ի ձեռն քարոզի քարոզելով առ վաճառարանն՝ 'ի սակս որոց ընկալեալ զհարուածսն. և զխարդախութիւնսն իսկ և զչարագործութիւնսն զվաճառողացն՝ վաճառօրէնքն իսկ և օրինապահքն հարցանելով զհմտագոյնսն յաղագս իւրաքանչիւրոյ. և գրելով զոր ինչ պարտ է առնել զվաճառողացն և ոչ առնել, և առաջի վաճառապետացըն դնելով յարձանի. և զգրեալսն օրէնս համարիցին այնոցիկ՝ որ առ վաճառարանին պէտսն ազդողք են հաւաստիք։

Եւ յաղագս օրինաքաղաքացն՝ յառաջագոյնսն բաւականապէս ասացաւ։ Ապ'եթէ տակաւին կարօտա-

նաւ ինչ թուի, օրինապահացն հաղորդելով՝ և գրելով զթուեցեալն, թողուլ առ քաղաքօրէնսն՝ դնելով յարձանի զառաջինսն։ Իսկ զերկրորդսն եդեալ սոցունց իշխանութեան օրէնս, արդ խարդախութեանց խոկմանց հետևեին խոհավաճառութեան խոկմունք, և յաղագս այսորիկ ամենայնի խորհուրդ և բան յառաջագոյն աւանդելով՝ օրէնս յետ այսորիկ դիցուք 'ի վերայ սորա։ Քանզի խոհավաճառութիւն առ ամենայն քաղաքի եղև՝ և որ ըստ բնութեան է, ոչ 'ի սակս վնասու, այլ ամենևին ներհակապէս։ Զի որպէս ոչ երախտաւոր է ամենայն ոք որ զգոյս ընչից որոց և իցեն՝ անչափաւոր գոլով և անյարմար՝ չափաւոր իսկ և պատշաճաւոր գործիցէ, զայս ինչ մեզ պարտ է ասել՝ զի և դինարին գործէ զօրութիւն. և զվաճառականսն առ այս ինչ գործեալ ասել պարտ է, և վարձաւոր և պանդոկապան և այլք ոմանք բարեձևագոյնք և ոմանք տարաձև լինելով՝ այս ինչ զամենայն կարասցէ ամենեցուն օգնականութիւն պիտոյիցն առնուել և պատշաճաւոր գոյիցն. զինչ արդ ոչ գեղեցիկն սորա և ոչ բարեձևութեցեալն գոլ, և զինչ դաւաճանեալն հանդիպիցի տեսցուք, զի թէ և զբոլորն ոչ՝ այլ սակայն մասամբ՝ օրինաց արժանի արասցուք։

Կղինիաս. Իր իցէ՝ իբրու թուի ինձ՝ ոչ յոլովին և ոչ փոքումբ պատճառ առաքինութեան։

Պղատոն. Ո՞րպէս ասես, ով սիրելի Կլինիա։ Փոքըր սեռ մարդկան, և բնութեամբ սակաւ և ծնընդեամբ ծայրագունիւ սնուցեալ՝ յորժամ 'ի պէտս և 'ի ցանկութիւնս ոմանց անկցի՝ ժուժկալել առ չափաւորն կարող է. և յորժամ ունիցի բազում ինչս առնուլ՝ հսկիցէ, և յառաջագոյն ընտրիցէ քան եթէ զբազում՝ զայն ինչ որ չափաւորն իցէ։ Բայց բազմութիւն մարդկան՝ զներհակն ամենայնի ունի այսոցիկ։ Կարօտանալով անչափաբար կարօտանայ՝ և պատշաճ գոլով շահի՝ զչափաւորսն անհոգաբար յօժարի զշահիլն. վասն որոյ ամենայն որ առ խոհավաճառութիւնն և վաճառականութիւնն և պանդոկապանութիւնն սեռք են, ըստ դաւաճանութեամբ և ըստ

գարշելեօք եղեն նախատանօք։ Քանզի եթէ ոք, զոր մի երբեք լինիցի և ոչ իցէ, ընդ հարկաւ արկցէ, — ծիծաղելի իսկ ասելն, սակայն ասացից, — պանդոկապետ լինել արանցն որ յամենայնի արիագոյնք են 'ի ժամանակի ուրուք և կամ խոհավաճառել, և կամ այլ ինչ այսպիսեացս գործել, և կամ կանայք 'ի հարկէ իմեքէ և կամ 'ի պատահմանէ հաղորդիլ յայսպիսի յեղանակիս, ծանիցուք թերևս իբրու բարի է և սիրելի իւրաքանչիւր 'ի սոցունց. և եթէ ըստ բանի և առանց ապականութեանց լինիցի մօր և վարժողի ձևով՝ այսպիսիքս ամենայն պատուեսցին։ Բայց այժմիկ՝ յորժամ յանապատ տեղիս ոք սակս խոհավաճառութեան՝ յամենայն կողմանց յերկարութիւն ունելով ճանապարհաց՝ բնակութիւն շինելով, զայնոսիկ որ 'ի տարակուսանս լինիցին սիրելիք՝ յիջավանօք ընդունելով, կամ 'ի ձեռն ձմերայնի անհանդուրժելի բռնութեամբ վարեալս՝ զխաղաղական ջեռումն շնորհիցէ, և կամ 'ի տապի զովացումըն, յետ այսորիկ ոչ իբրու զընկերս ընդունել բարեկամապէս՝ շնորհեսցէ զպարգևս որ հետևին ընդունելութեան, այլ իբրու զթշնամիս 'ի գերութիւն անկեալս ըմբռնելով՝ ազատիցէ երկայնագոյն անիրաւ և անմաքուր փրկանօք. այսոքիկ են և այսպիսիքս առ ամենեցուն այսոքիկ ամօթալի սխալեալսն զդաւաճանութիւնսն տարակուսանաց օգնականութեամբն պատրաստելով սոցունց։

Արդ պարտ է դեղ միշտ հատանել օրինադրին՝ ուղիղ և նախնի ասացեալ, իբրու ընդ երկու ներհակսն մարտնչել դժուարին է, որպէս առ հիւանդութեանցն և այլոց բազմաց։ Եւ արդ այժմիկ սոցունց և առ այսոքիկ՝ երկու մարտն է, առ տնանկութիւն և փարթամութիւն. ոմն զհոգիս մարդկան ապականելով փափկութեամբ, և միւսն տրտմութեամբ դարձուցանելով զսա յանամօթ բարս։ Զի՞նչ արդ խօթութեան իսկ այսմիկ օգնական լինիցի թերևս առ միտս ունող քաղաքին։ Եւ նախ՝ զի խորագունիւ վարի ըստ զօրութեան խոհավաճառիցըն սեռիւ. և ապա այնոցիկ 'ի մարդկանէն հրա-

մայեալ՝ ուրոց ապականելով ոչ լինիցի մեծ վնաս քաղաքին. և երկրորդ՝ սոցունց որ հաղորդին այսոցիկ խոկմանցս, գտանել հնար՝ իբրու զի սովորութիւնք ոչ անվեհեր անամօթութեամբ իսկ և անազատութեան հոգւոյ հաղորդք պատահի լինել դիւրապէս։

Արդ այսմիկ յետ ասացելոցս առ այսոցիկ օրէնքըս, բարի պատահմամբ այսպիսի մեզ լինիցի մագնետացւոցն, զորս աստուած վերստին ուղղելով՝ դարձեալ բնակեցուսցէ երկրագործք՝ որչափ 'ի քառասնից և հինգ հազարացն տանցն իցեն. մի խոհավաճառ կամաւ և մի ակամայ մի ոք լինիցի, և ոչ վաճառական, և ոչ պաշտօն զինչ և իցէ ստացեալ ռամկաց՝ յայնցանէ որ ոչ են հանգոյն անձանց իւրեանց, բայց միայն հօր և մօր, և ևս սոցունց վերագոյն տոհմիցն, և ամենեցուն իւրոց երիցագունիցն՝ որչափ ազատք են ազատաբար։ Բայց զազատականն և զանազատն ոչ դիւրին է օրինադրել. սակայն ընտրեսցին 'ի ձեռն այնոցիկ որ զքաջութիւնն իցեն ըմբռնեալ՝ սոցունց ատելութեամբն և սիրելութեամբն։ Արդ որ խոհավաճառութեանն անազատութեանն արհեստիւ ինչ հաղորդեսցի՝ գրիցէ զնա որ կամիցի՝ նախատինք ազգի, առ այնոսիկ որ առաքինութեամբ առաջինք են ընտրեալք։ Ապա եթէ թուիցի սմա անարժան խոկմամբ շաղախել զհայրենի տունն իւր, կապեալ ամ մի՝ 'ի բաց կացցէ յայնմանէ. և եթէ դարձեալ՝ ամս երկուս, և առ իւրաքանչիւր այսպէս գտանելով սորա՝ զկապանսն ոչ դադարել կրկնապատկելով քան զառաջին ամին։

Սակայն երկրորդ օրէնք, փոխաբնակ գոլ պարտ է և կամ օտար՝ որ հանդերձեալ է խոհավաճառել և երկիրն։ Իսկ և երրորդն, որպէս զի արիագոյն և կամ չար իբրու նուազագոյն՝ այսպիսիս մեզ իցէ բնակակից, 'ի քաղաքին օրինապահացն պարտ է իմանալ և պահապանք գոլ, ոչ միայն սոցունց զորս պահել դիւրին է՝ ոչ անօրէնս և չարս լինել, որչափ ծննդեամբ և սննդեամբ բարեւք են խրատեալս. բայց զոր ոչ են այսպիսիք, խոկումն խոկալով որ ինչ յորդորումն է՝ ունի զինչ զօրաւոր առ 'ի յոր-

դորել չարս լինել մանաւանդ, պարտ է պահել այսպէս։ Արդ զոր ինչ առ խոհավաճառութենէ իր բազում գոլով, և բազում խոկմունս այսպիսիս ստացեալ, որչափ սոցունց մնացէ թուելով յամենայնի՝ հարկ է 'ի քաղաքին 'ի միասին իսկ գոլ, պատշաճ է առ այսոցիկ օրինադրացն՝ հանդերձ հմտագունիւքն իւրաքանչիւր խոհավաճառութեան, որպէս յառաջագոյնսն կարգաւորեցաք յաղագս դաւաճանութեանց բաղաղանի, այսու իրողութեամբ և 'ի միասին գոլով տեսանել իսկ զշահն, եթէ զինչ երբեք խոհավաճառին զչափաւորն առն շահ. և գրելով դնել զեղեալն ծախս և զշահ, և պահել զոմանս վաճառապետացն և զմիւսս օրինաքաղաքացն, և զոմանս ագարակաբաշխացն։ Եւ գրէ թէ այսպէս խոհավաճառութիւն՝ զոմանս շահ գործիցէ, և զոմանրս փոքրագոյն թերևս վնասիցէ զոր առ քաղաքն պէտսն ունիցին։ Սոցա որչափ խոստովանի յանձն առնուլ՝ և ոչ առնէ ըստ խոստովանութեան, բաց յայնցանէ զորս օրէնքն խափանեն և կամ դատաստանք, և կամ 'ի ձեռն ումեմն անիրաւ հարկի բռնադատեալ խոստովանեսցի. և եթէ 'ի ձեռն հանդիպման որ ակն ոչ ունիցի՝ ակամայ արգելցի, հանդէս գոլ այնմ որ այլոցն անկատար խոստովանութեանցն է՝ առ ազգական հանդիսիցն, և եթէ առ ողոքողացն և կամ դրացեացն յառաջագոյն ոչ կարեսցեն հաշտել։

Հեփեստոսի և Աթենայ տաճար շինողացն սեռ՝ որ զկենցաղս մեզ 'ի միասին կազմեցին արհեստիւք, իսկ Արեսի և Աթենայ՝ որք զշինողացն գործք կեցուցանեն՝ այլօքն սպառնական արհեստիւք։ Յիրաւի արդ և սոցունց սեռ տաճար է այսոցիկ աստուածոց. քանզի սոքա ամենեքեան հաճեցուցողք են վայրի իսկ և հանդիսի, ոմանք իշխելով նահատակութեանցն որ 'ի պատերազմին, և միւսք գործարանաց իսկ և գործոց կատարելով զներվարձ լինելութիւնն, որոց առ այսորիկ ոչ վայելուչ իցէ թերևս ստել, պատկառելով սոցա յաստուածոց նախածնաց իւրեանց։ Արդ եթէ 'ի շինողաց ոք՝ յասա-

ցեալ ժամանակին զգործ ոչ կատարիցէ վասն չարութեան, ոչ ինչ 'ի կենաց տուողէ աստուծոյ ամաչելով, վարկանելով իբրու զընդանի ներող գոլ սմա զաստուածն՝ ոչ ինչ տեսանելով մտօք, նախ իսկ պատասխանի աստուծոյն տացէ. և երկրորդ հետևելով սմա օրէնք՝ տացէ զգինս գործոցն այնոցիկ՝ վասն որոյ և զտուողն ստիպէ և պարտիցի, և դարձեալ 'ի սկզբանէ առ սահմանեալ ժամանակաւն անգին գործիցէ, և գործոցն պայմանի որ հաճոյութեամբ իցէ.

Խորհրդակից օրէնք՝ զոր ինչ ընդ վաճառողին 'ի միասին խորհեցաւ, ոչ յոլովագոյն գին հատանել ջանասցի. այլ իբրու պարզագոյն 'ի նոյնարժանսն հրամայիցէ տալ այնմ՝ որ պայմանեալ իցէ. քանզի գիտէ իսկ շինողն զարժանն: Պայազատացն քաղաքի՝ ոչ երբեք պարտ է արհեստիւ որ հաւաստի իցէ՝ և անսուտ բնութեամբ իրողութեան զղջանալ զռամիկսն խառնել շինողին. և սոցունց լինել դատաստանք՝ անիրաւելոյն առ անիրաւողն:

Ապա եթէ գործ առաւելով ոք շինողի իսկ, ոչ հատուսցէ զվարձսն ուղղապէս՝ ըստ եղելոյն ներօրէն խոստովանութեանն, անարգելով զքաղաքական զԱրամազդ և զԱթենաս զհաղորդքն քաղաքավարութեան, դուզնաքեայ շահ սիրելով, և լուծանելով զմեծագոյն հաղորդութիւնսն, այս ինչ իցէ օրէն քաղաքին զուգաւորութեանն հանդերձ աստուածօքն: Զի որ յառաջագոյն ընկալեալ զգործ՝ զվարձսն ոչ հատուսցէ առ խոստովանեալ ժամանակացն, պահանջեսցի կրկին. ապ'եթէ ամ մի անցցէ այլոցն ընչիցն՝ որչափ փոխատուութեամբ տացէ կամ առցէ առանց վաշխի ելոյ, սա իւրաքանչիւրոյ դրամի յամսեանն լումայ մի յաւելուցու, դատաստանաց գոլով սոցունց առ այնոցիկ՝ որ ըստ ազգաց են դատաւորք:

Իբրու վարկպարազի ինչ յաղագս այնոցիկ որ առ պատերազմունսն են շինողացն՝ փրկողաց գոլով զօրավարաց իսկ և որչափ այսոքիկ են արհեստաւորք իրաւացի է ասել. զի ամենևին յիշեցաք զշինողքն, որպէս սոցունց իսկ որպէս այնոցիկ որպէս այլոց գոլով

շինողաց. Եթէ ոք 'ի սոցանէ կամեցեալ հանդիսական գործ կամաւ և կամ ակամայ բարեւք գործիցէ, և զպատիւսն որք են վարձ պատերազմական արանց առատուիցէ՝ իրաւապէս օրէնք զնա գովելով ոչ երբեք աշխատիցի. Ապա եթէ յառաջագոյն ընձեռեալ գործ ինչ յայնցանէ որ ըստ պատերազմին են բարեգործացն՝ ոչ բացատրիցէ, այլ բամբասանս ընկալցի: Օրէն արդ այս ինչ գովասանութեամբ խառնեալ յաղագս այսոցիկ կացցէ մեզ կացրդական, ոչ բռնադատութեամբ բազմութեանս քաղաքացեաց պատուել զարս բարիոք՝ որչափ փրկողք քաղաքիս են 'ի միասին կամ արութեամբ և կամ պատերազմական հնարիւք երկրորդք. քանզի յառաջագոյն պատիւն տացի այնոցիկ որ զբարի օրինադրացըն գիրս պատուել զանազանապէս կարասցեն:

Արդ զմեծագոյնսն ենթադրութեանց՝ որչափ առ միմեանս մարդիկ ենթադրիցեն, բայց միայն 'ի յորբոցն, և որ ինչ որբոցն են՝ և 'ի գաւառապետացն մատակարարութեան են առ որբոցն, գրէ թէ կարգեցաւ առ 'ի մէնջ: Արդ զայսոսիկ յետ այժմիկ ասացելոցս՝ հարկ է իբրու այսպէս կարգաւորել: Եւ սոցունց սկզբմունք ամենայնի՝ վախճանել հանդերձելոցն տրամադրութեանցն ցանկութիւնքն են, և այնոցիկ որ ամենևին ոչ ինչ կտակք հաստատեն հանդ ...: Բայց հարկաւոր ասացի, ով Կլինիա, յաղագս սոցա ...ելով՝ առ չարն իսկ և դժուարինն: Քանզի ոչ առանց կարգաւորութեան հարկ է զնա թողուլ. զի բազում անգամ իւրաքանչիւրք և զանազանք 'ի միմեանց և ներհականք թերևս դիցեն օրինացն իսկ և կենդանեացն սովորութեանց, և սոցունց իսկ իւրեանց յառաջագունիցն՝ նախ քան զգրելն կտակին, որ իշխանութիւն տայ պարզաբար տիրուհի գոլ զկտակըն՝ զորս թերևս դիցէ որպէս և թուիցի՝ գոլով առ կենցաղոյն վախճանն. քանզի անհմտաբար և չփոթաբար իմն իրիւ յոլովագոյնքս՝ յորժամ հանդերձեալ իցեմք հասանել առ վախճանն:

Կղինիաս. Ո՞րպէս զայս ինչ ասես, ով սիրելի:

Պղատոն. Դժուարին է, ով Կլինիա, մարդ հան-

դերձեալ վախճանել, և լի բանիւ՝ որ օրինադրացն է քաջ մանաւանդ ահագին իսկ և դժուարին։

Կղինիաս. Ո՞րպէս։

Պղատոն. Խնդրելով տէր ամենայնի, սովորեալ է հանդերձ բարկութեամբ ասել։

Կղինիաս. Զորպիսի՞ ինչ։

Պղատոն. Զարաչար է, ով աստուածք, ասէ, եթէ զիմն ինձ՝ ոչ և միով իւիք պարտ իցէ տալ որոյ կամիմ թերևս և ոչ կամիմ. և ումեմն յոլովագոյն և ումեմն նուազ, այնոցիկ՝ որչափ առ իս յոռինք, և որչափ բարիք են եղեալ, յայտնապէս տանջեալք բաւականապէս հիւանդութեամբ, և այլք ծերութեամբ և այլովք պէսպէս հանդիպմամբ։

Կղինիաս. Ո՞չ ապաքէն, ով սիրելի, բարեւք թուիցին քեզ ասել։

Պղատոն. Կակղագոյնք ինձ, ով Կլինիա, թուին երբեմն օրինադրողքն լեալ, և առ փոքր ինչ մարդկային իրողութեանց հայելով իսկ և խորհելով օրինադրել։

Կղինիաս. Ո՞րպէս ասես։

Պղատոն. Ի բանէս յայսմիկ, ով այր բարի, երկընչելով՝ եդին զօրէնսն զայն որ ասէ պարտ գոլ զիւրսն 'ի կտակ դնել պարզաբար՝ որպէս և կամիցի ոք ամենևին։ Բայց ես և դու՝ այնոցիկ որ 'ի քում քաղաքին հանդերձեալ են վաղճանել՝ պատասխանի տացուք ներդաշնակապէս։

Կղինիաս. Ո՞րպէս։

Պղատոն. Ո՛վ սիրելի, ասասցուք, և պարզաբար վարժակիցք, դժուարին է ձեզ ճանաչել զձեր ինքեանց ինչս. և առ այսուիկ զձեզ իսկ ինքեանց, որպէս և Պիւթայ գիրն[1] այժմիկ ասէ։ Ես արդ օրինադիր գոլով՝ ոչ զձեզ ձեր ինքեանց գոլով դնեմ, և ոչ զգոյսս զայս. այլ ամենայն սեռի ձերոյ՝ որ յառաջագոյն էր, և այնմիկ որ յետոյ լինելոց է. և տակաւին մանաւանդ քաղաքիս գոլ զսեռս ամենայն և զգոյսս։ Եւ այսպէս այսոցիկ ունելով, ոչ եթէ ոք

1 Այս է՝ Ապողոնն Պիւթեայ, որպէս ունի յոյն բնագիրն։

զձեզ ողոքանօք գողացեալ՝ 'ի հիւանդութեան կամ 'ի ծերութեան սասանելով՝ հեռացուցանել 'ի լաւագունէն, և կտակ դնել հաւանեցուցանել. Ներեցից կամաւ զոր ինչ ամենայն քաղաքն արհագոյն է սեռի. առ այս ամենայն հայելով օրինադրեցից՝ զիւրաքանչիւրում միոյ իրաւունս դնելով սուղ մասամբք։ Այլ դուք մեզ հաշտք և բարեմիտք ելով՝ գնացէք ըստ որում այժմիկ գնայք՝ ըստ բնութեան մարդկայնւոյ. բայց մեզ յաղագս այլոցն փոյթ է զձեզ մատակարարելով մանաւանդ ըստ զօրութեան, ոչ զոմանս միայն և զոմանս ոչ։

Այսոքիկ արդ բանք իսկ և Նախերգանք կենդանեացն իցէ, ով Կլինիա, և վախճանելոցն։ Եւ օրէնքըս այսպէս իսկ. որ կտակադրէ զիւրոյն տրամադրելով՝ մանկանց գոլով հայր՝ նախ իսկ յուստերացն, զոր արժանեցուցանէ լինել ժառանգորդ՝ գրեսցէ. և այլոց մանկանց զոր այլում իսկ տացէ յորդեգրութիւն՝ գրեսցէ զայն ինչ։ Ապա եթէ յաղթիցէ սմա ումն յուստերացն, ոչ ումեմն 'ի վերայ վիճակի յորդեգրեալ, զոր ըստ օրինացն յոյս ունիցի 'ի բացաբնակութիւն առաքել, սմա յայլ ընչից պարտ է տալ հօրն՝ որչափ և կամիցի, բաց 'ի հայրենի վիճակէն, և որ ինչ ըստ վիճակին ամենայն կազմութիւնն է։ Եւ եթէ յոլովագոյնք իցեն, ըստ մասին՝ հայրն որպէս և կամեսցի, բաշխիցէ զառ գոյսն վիճակին։ Եւ որում արդ յուստերացն գոլով տուն, ոչ բաշխել սմա 'ի ընչիցն, նոյնպէս և դստեր՝ որում իցէ արդեւք խօսեցեալ ումն իբրու այր լինելոյ սմա՝ ոչ բաշխել. և որում ոչ իցէ՝ այնմիկ բաշխել։ Ապա եթէ յուստերացն և կամ 'ի դստերացն ումեմն՝ վիճակիցէ ներտեղոջն, կտակին յետոյ լինելով, ժառանգորդին այնմիկ թողցէ որ զկտակն գրեալ իցէ։ Ապա եթէ ուրուք մնացորդք ոչ ունիցի, այլ դուստր, որ եդեալ իցէ զկտակն՝ զայր իսկ 'ի դստերացն որոյ և կամեսցի թողցէ՝ գրելով ժառանգորդ։ Ապա եթէ որդի սորա վախճանեսցի մանուկ գոլով՝ նախ քան զկարող գոլն այր անուանիլ, կամ 'ի ծննդենէ գոլով կամ յորդեգրութենէ, գրեսցէ և յաղագս այսպիսի

հանդիպմանս գծագիրն կտակին՝ զի ոք պարտ է մանուկ սորա երկրորդ առ հանդիպմունս վաղագոյնս լինել։ Ապա եթէ ոք անզաւակ գոլ ամենեւին՝ կտակ գրիցէ, զմակստացականին զտասներորդ մասն բաժանելով թէ կամիցի ուրուք պարգեւել՝ պարգեւեսցէ. և այլ զամենայն աւանդելով յորդեգրութիւն եկեղեցն, անվթար և հաղորդ իւր արասցէ զսա հանդերձ օրինօքն։

Եւ որոյ մանկունք դաւառապետաց կարօտանան, եթէ կտակ գրեալ վախճանեսցի, և գրեալ դաւառապետք մանկանցն կամաւ իսկ և խոստացեալս դաւառապետել, զորս ինչ է և որչափ կամեսցի, ըստ այսոցիկ գրելոցս դաւառապետացն հաճութիւնն լինի հաստատուն։ Ապա եթէ ամենեւին ոչ կտակ եդեալ վախճանեսցի ոք, 'ի դաւառապետացն հաճութեան պակասումն իցէ, և լինիցի դաւառապետըս զմերձաւորսն ազգաւ 'ի կողմանէ հօր իսկ և մօր. երկու 'ի հայրենի կողմանէ և երկու 'ի մայրենի, և մի 'ի բարեկամացն վախճանելոյն։ Զսոսա օրինապահացն հաստատելով, այնմիկ որ կարօտանայ որբոյն, և ամենայն դաւառապետութեանն. և որբոցն հնդետասանք յօրինապահացն երիցագոյնքն՝ ամենեցուն փոյթ արասցեն միշտ ըստ կարգի ծերութեան իւրեանց։ Եւ ըստ երից բաժանելով զինքեանս, ըստ ամին երիս՝ և երիս այլ 'ի միւսում ամի, մինչև ցհինգ շրջաբերութիւնքն լինիցին բոլորի, և այս ինչ ոչ երբեք ոչ պակասեսցէ ըստ զօրութեան։ Եւ որ ամենեւին ոչ ինչ կտակ գրելով մեռանի մանկունք իսկ թողեալ կարօտացեալք դաւառապետի, այսոցիկ նոցունց օրինացս պիտոյից մանկունք նորա հաղորդիցին։

Ապա եթէ մանկունք մնացուցանէ ոք՝ յանկարծակի հանդիպման պատահելով, ներողութիւն ունիցի դնողին օրինացն եթէ զերիսն իւրից առ երկու դիտելով՝ զաւանդումն դստերացն արասցէ ըստ ազգին մերձաւորութեան և ըստ վիճակին փրկութեան։ Եւ զերրորդն՝ որպէս և հայրն խորհեսցի, յամենայն քաղաքացեացն հայելով սովորութեամբ իսկ և յե-

ղանակօք զպատշաճաւորն 'ի սոցանէ իսկ որդի և այր գոլ դստերն, և զայս Թողուցու վասն անհնարին զգուշութեան։ Օրէն այսուհետև զօրաւոր այս ինչ կացցէ յաղագս այսոցիկ։

Ապա եթէ որ ոչ դնէ կտակ՝ դստերս մնացուցանէ, և մեռելոյն եղբայր հոմահայր, և կամ առանց վիճակի հոմամարք՝ ունիցի զդուստրն և զվիճակն՝ վախճանելով։ Ապա եթէ ոչ՝ այլ եղբօր որդի այսպէս, եթէ հասակաւ ըստ միմեանց իցեն։ Ապա եթէ ոչ և մի 'ի սոցունց, այլ քեռորդի իցէ ըստ այսոցիկ, և չորրորդ հօրեղբայր, և հինգերորդ սորա մանուկ, և վեցերորդ հօրքեռ ծնունդ. նոյնպէս ազգըն միշտ գնասցէ ըստ մերձաւորութեան։ Ապա եթէ մանկունս աղջկունս մնացուցանէ 'ի ձեռն եղբարց իսկ եղբօրորդեաց 'ի վեր ելանելով, յառաջագոյն զարուացն՝ և յետոյ զիգիցն միով սեռիւ, և զհարսանեացն ժամանակին չափաւորութիւնն իսկ և անչափութիւնն դատաւորն իսկ դիտելով դատեսցէ՝ մերկ իսկ զարուքն և մերկ մինչև ցպորտս զէգն։ Ապա եթէ ընտանեացն պակասութիւն ազգակցաց իցէ՝ մինչև ցեղբօրորդեաց իսկ, այսպէս մինչև ցմանկունս հաւուց, յայլոցն զօր և աղջիկն հանդերձ գաւառապետօքն հաճեսցի 'ի քաղաքացեացն՝ կամաւոր և ինքն կամաւ իւրով, ժառանգորդ լինիցի վախճանելոյն, և այր դստեր սորա։ Ապա եթէ բազում անգամ բազմաց յոլովից տարակուսանս լինիցի այսպիսեացս, արդեւք իցէ յորժամ 'ի նոյն քաղաքի տարակուսելով։ Արդ աղջիկն աստուստ տեսանի զօմըն 'ի բացաքննակութիւն արձակեալ, և իցէ ըստ հաճոյից սորա, ժառանգորդ այնոքիկ լինիջի ընչից հօր սորա, եթէ ազգական իսկ իցէ ըստ կարի՝ ըստ կարգի օրինացն առ վիճակն հասցէ, Ապա եթէ յարտաքոյ 'ի սեռէն յայնմանէ որ 'ի քաղաքին իցեն, արտաքոյ ազգակցացն իշխան իցէ ըստ գաւառապետացն և աղջկանն կատարելոյն հաճոյութեանն ամուսնանալ, և զվիճակն վերստին 'ի տուն եկեալ առցէ։

Զայն զոր կտակ ոչ իցէ գրեալ, և առանց զաւակաց արուաց իսկ և իգաց ամենևին, որ և կտակ

ոչ գրեալ վախճանիցի. իսկ յաղագս այսորիկ իրս ըստ յառաջագունին ունիցի օրինի. և էգ իսկ և արու իբրու արենակիցք եկեսցեն յազգէն յանապատացեալ յիւրաքանչիւրում ժամու տունն՝ յորոց վիճակըն էր: Լինիցի տիրապէս նախ քոյր, իսկ երկրորդ՝ դուստր եղբօր, և երրորդ՝ դուստր քեռ. չորրորդ՝ հօր քոյր, և հինգերորդ՝ հօր եղբօր դուստր. և վեցերորդ՝ հօր քեռ. դեռ ևւս իցէ աղջիկ՝ բնակեցուցանել զսոսա հանդերձ այնոցիկ որ ըստ մերձաւորութեան և ըստ իրաւանց, որպէս յառաջագոյն օրինադրեցաք:

Մի արդ զանխլեսցի այսպիսի օրինացս 'ի մէնջ ծանրութիւնս. իբրու զի դժուարին է՝ յորժամ հրամայէ այնմիկ որ վախճանեալ իցէ՝ ըստ ազգի ընտանոյն առնուլ կին զմնացեալ դուստր սորա, և նմա ոչ թուի պատշաճ՝ դիտելով զոր ինչ մարդկան բիւրինք արգելք լինիցին այսպիսի հրամանացս, ոչ կամելով ուրուք սոցա հետևել, նախյօժարելով բազում կիրս կրեալ՝ քան եթէ զայս ինչ առնել, յորժամ իցեն կամ մարմնոց հիւանդութիւնք և կորութիւնք և կամ մտաց՝ առ ոմանս յայնցանէ որ հրամայեն կինս առնուլ կամ արանց լինել: Բայց այսոցիկ ոչ ինչ փոյթ առնել թուիցի թերևս օրինադրին զոմանս՝ ոչ ուղղապէս կարծելով: Իցէ այսուհետև ասացեալ վասըն օրինադրին գրէ թէ վասն օրինադրելոյն՝ իբրու հասարակաց նախերգան ներութիւն իսկ առ օրինադրին ունել, որպէս պատշաճն էր հրամայելոյն: Զի հասարակաց իրողութեանց փոյթ առնել՝ ոչ երբեք կարասցէ մատակարարել համանգամայն և զառանձին յիւրաքանչիւրում պատահեալ հանդիպմունքն: Ներութիւն իցէ իսկ և օրինադրելոյն՝ իբրու զօրինադրողին է, յորժամ իրաւապէս ոչ կարեն զհրամանս կատարել, զոր ինչ ոչ ճանաչելով հրամայէ:

Կղինիաս. Եւ զի՞նչ ոք արդ, ով սիրելի, առնելով առ այսպիսիս արդեւք չափաւոր իցէ:

Պղատոն. Ողջողք, ով Կլինիա, այսպիսի օրինացըս և օրինագրելոցս ընտրել հարկ է:

Կղինիաս. Ո՞րպէս ասես:

Պղատոն. Է յորժամ փարթամ հօր որդիք պատահելով՝ զքեռ իւրոյ կամ հօր եղբօր դուստր առնուլ ոչ կամիցի՝ փափկացեալ և առ մեծագոյն ամուսնութիւն ունելով զմիտսն։ Է յորժամ և մեծագոյն վիշտս օրինադրին գործելով՝ անհաւանել թերևս հարկեսցի օրինադրին, մոլական ամուսնութիւնս հարկելով առնել, և կամ չարաչար մարմնոց կամ անձանց այլ հանդիպմունս՝ զոր ստանալով անկենդան կացցէ կեանս։ Արդ այժմիկ բանս մեզ յաղագս այսոցիկ այս ինչ օրէնք կացցեն։ Եթէ ոմանք արդեւք յաղագս կտակի ամբաստանիք լինիցին հաստատեալ օրինաց, յաղագս այլոց ոմանց որ և իցեն, և յաղագս ամուսնութեանց, և կամ սակայն ես կենդանի գոլով օրինադրին և ոչ երբեք հարկել այսպէս գործել, ոչ կին առնուլ և ոչ առն լինել, զայժմիկ հարկեալքս զերկաքանչիւրքս գործել։ Բայց այն որ 'ի յընտանեացն՝ եթէ այր և եթէ կին, դատաւապետ գոլով ոչ ողջօղջ իսկ և հարք, զհնգետասանքն յօրինապահացն թողուլ յորբ մանկանցն կամ յորբ աղջկանցն առ 'ի յօրինադրէն առ սոցա հասանելով հանդիպեցին, այնոքիկ որ յաղագս ումեմըն այսպիսեացս յերկբայութիւն ունիցին տիրապէս կատարելով զսոցունց աւանդութիւն։ Ապ'եթէ ումեմն մեծագոյն զօրութիւն իցէ, վերադրիցեն օրինապահքն՝ ընտրեալ դատաւորացն հանդիսարանն 'ի ներքս ածել զսոսա, և հանդէս դնել յաղագս երկբայութեանցն. և այնմ որ պարտի առ 'ի յօրինադրէն՝ պարսաւ և նախատինս կացցէ բազում ընչից, այնմ որ միտք ստացեալ իցէ՝ տուրժ ծանրագոյն։

Այժմ արդ որբ մանկանցն իբրու երկրորդ ծնունդ լինիցի յետ առաջնոյն։ Իսկ իւրաքանչիւրոց ասացան մնունդք և խրատք. յետ երկրորդին՝ թափուր 'ի հարցն լինելով սոցա, հնարիլ պարտ է թէ զինչ յեղանակաւ որբութեանն հանդիպումն որբք եղելոյն նուազագոյն լինիցի, ողորմութիւն ունելով սոցա առ այնպիսի հանդիպումն։ Նախ իսկ ասասցուք՝ սոցա զօրինապահսն փոխանակ ծնողացն հարք ոչ վատթարագոյնք. քանզի և յիւրաքանչիւրում ամի՝ իբ-

րու իւրոցն փոյթ առնել հրամայեմք բարեկարգութեամբ։ Այսոքիկ յաղագս նոցունց սննդեան որբոցն նախերգելով և գաւառապետացն։

Քանզի 'ի ժամանակի ուրուք երևիմք զառաջինսըն պատմելով բանս, իբրու զի վախճանելոյն հոգիք զօրութիւն ինչ ունին. վախճանեալք՝ ըստ որում մարդկան իրողութեանցս փոյթ առնեն։ Եւ այսոքիկ ճշմարիտ են. սակայն յերկայնիւ պարունակեալ են բանիւք։ Բայց հաւատալ յայլոց համբաւոց պարտ է առ այսոքիկ այսպէս, բազմաց յոյժ և նախնեաց գոլով. և հաւատալ իսկ օրինադրացըն՝ այսոցիկ ունել այսպէս, եթէ ոչ ամենևին անզգամք երևեսցին։ Եւ այսոքիկ այսպէս են ըստ բնութեան, նախ իսկ 'ի վերայ նոցա աստուածոցն երկիցեն, յայնցանէ որ որբոցն աւերածոյն ունին զգայութիւն. և ապա 'ի ննջեցելոցն հոգւոյն, առ որոց բնութեան գոյ՝ զծնունդս իւրեանց մատակարարել զանազանապէս, և այնոցիկ որ անարգեն՝ դըժուարինք. և տակաւին և պատուօք մեծագունիւք։ Ուր քաղաք իսկ իցէ քաջօրէն և բարեբաստք սոքա մանկունք՝ նման կանանցն պատուասիրելով կեցցեն հեշտութեամբ. զոր ինչ առ այսոքիկ են՝ երագ իսկ տեսանիցեն և լուիցեն երագ, և այնոցիկ որ արդարագոյնք են առ այսոցիկ դաւանողք իցեն. և ատեսցեն մանաւանդ զայնոքիկ որ յորբս և յանպաշտօնս ամբարհաւաճութեամբ զանարգանս առնեն. պահուստ մեծագոյն վարկանելով և սրբազանագոյն։ Որոց գաւառապետք և իշխան ամենեցուն պարտ է որ միտք սուղ ինչ ստացեալ իցեն, նայել և զգուշանալ յաղագս սննդեան խրատու որբոց, իբրու մասունս ինչ հաւաքելով բերել ինքեամբ իսկ, և այնոքիւք որ ինչ իւրն են. ըստ ամենայն զօրութեան ամենևին սոցունց առնել երախտիս։

Արդ որ հաւանեսցի բանիւս որ նախ քան զօրէնըս, և ոչ ինչ առ որբս ամբարհաւաճի, ոչ փորձս առցէ հաստատապէս առ այնոցիկ օրինադրըն բարկութեանն։ Իսկ որ անհաւանն իցէ և զոմն 'ի հօրէ և 'ի մօրէ միայնացեալ անիրաւէ, կրկին հա-

տուսցէ զամենայն մնաս։ Նոյնպէս և այն որ անիրաւէ զայնոքիկ որ մի ոք ունի 'ի ծնողացն, չար կոչեսցի։ Եւ զայլ օրինադրութիւն գաւառապետացն իսկ՝ որ առ որբսն, և իշխանացն առ փոյթն գաւառապետացն. եթէ յարացոյց իսկ սննդեան մանկանց յաղատաց ինքեանք ստացեալ են սնուցանելով զիւրեանցն, և զընչից իւրոց փոյթ առնելով և տակաւին յօրէնս յաղագս սոցունց չափաւորս բաժանեալս ունին, ունէր ինչ թերևս համեմատութիւն զգաստապետականս յինչ օրէնս յատկապէս գոլով զանազանելով դնել, յոյժ պաճուճելով յատուկ խոկմամբք զորբոցն կենցաղն, քան եթէ զայնոսիկ որ որբք ոչ են։ Բայց այժմ առ ամենայն այսպիսիս ոչ յոյժ տարբերութիւն առ մեզ՝ որբութիւն ստացեալ հայր օրինականին. այլ պատուօք և անարգանօք համանգամայն փութով ինչ ոչ և միով Դուիք հաւասարիլ սիրէ։ Վասն որոյ առ այսոքիկ զօրինադրութիւնն որ յաղագս որբոց, մխիթարելով իսկ և սպառնալով օրէնքն փութայ։ Եւ տակաւին սպառնալիս ինչ այսպիսի մանաւանդ 'ի ժամու իցէ։ Որ արուի և կամ իգի թերևս գաւառապետ լիցի, և յօրինադրացն որ գաւառապետի պահապան կարգի, փոյթ արասցէ զի ոչ վատթարագոյն սիրիցէ քան զիւր մանկունս զայն իսկ որ որբութեան բախտի հանդիպեալ իցէ, և ոչ քան զիւրսն զսոցունց ելոյն ինչ անվթարագոյն մատակարարիցէ, այլ լաւագոյն քան զիւրսն ըստ յօժարութեան։ Արդ զայս ինչ զօրէնս ունելով, յաղագս որբոցն ամենայն ոք լիցի գաւառապետ։ Ապ'եթէ այլաբար ոք առ այսոցիկ գործիցէ քան զայսմիկ օրէնս, իշխանն իսկ տուժիցէ զգաւառապետն, և գաւառապետն՝ զիշխանն, ընտրեալ դատաւորացն հանդիսարանն՝ տուրժս կըրկնապատիկս։ Ապա եթէ գաւառապետ ծուղալ և կամ չար ինչ գործել թուիցի ընտանեացն, և կամ այլոյ ուրուք 'ի քաղաքացեացն, 'ի նոյն հանդիսարանս ածցի, և զոր ինչ պարտական իցէ՝ չորեքկին հատուսցէ, և լինիցի կէսն իսկ մանկանն, և կէսն դատողին հանդիսին։ Եւ համանգամայն 'ի հասակ հա-

սանելոյն ուրուք որբոցն, եթէ վարկանի ոչ բարեւք գաւառապետիլ, մինչեւ ցհնգից ամաց հասանելով գաւառապետութեանն՝ հանդիպեսցի դադարման, եւ դատի յաղագս այսորիկ։ Ապա եթէ պարտապան ոք իցէ 'ի գաւառապետացն՝ հանդիսարանն առնէ զընտրութիւնն, զոր ինչ պարտ է սորա կրել կամ հատուցանել։ Եւ եթէ ոք յիշխանացն ծուլութեամբ թուեցեալ չար ինչ առնել որբոցն երեւեսցի, զոր ինչ պարտ է սորա կրել կամ հատուցանել մանկանն, որպէս դատարանն արասցէ զընտրութիւնն։ Ապա եթէ անիրաւութեամբ առ պատուհասաւն՝ յիշխանութենէն օրինապահացն 'ի բաց կացցէ, եւ առ հասարակ քաղաքն այլ օրինապահ փոխանակ սորա հաստատեսցէ գաւառին եւ քաղաքին։

Եւ տարբերութիւնք իսկ հարց առ մանկունս իւրեանց լինիցին, եւ մանկանցն առ ծնողս իւրեանց մեծագոյնս քան զորս պարտն է ուրուք. հարքն իսկ վարկանին որդեւք պարտ գոլ օրինադրին օրինադրել՝ որդի ըստ օրինացն ոչ եւս գոլ, եւ որդիք իսկ զհարս իւրեանց 'ի ձեռն հիւանդութեան կամ ծերութեան չարաչար տրամադրեալս՝ պատշաճ գոլ իբրու զանխոհեմս գրել։ Բայց այսոքիկ ճշմարտապէս առ ամենեւին չարեաց մարդկան վարս սովորեալ են լինել. քանզի կիսոցն չարք ելով՝ իբրու հօրն ոչ գոլով չար, եւ որդոյն հակառակ գոլ, ոչ լինիցին հանդիպմունք՝ ծնունդք այսչափ թշնամութեան։ Արդ այլում իսկ քաղաքավարութեան, մանուկ առ 'ի հօրէ բացասացեալ՝ 'ի հարկէ ոչ իցէ անքաղաք. բայց այսմիկ որոյ այս ինչ իցեն օրինադրութիւնք՝ հարկաւորապէս ունի յայլում վայրի անհօր մանկանն արտաքնակիլն. քանզի առ քառասնիցն եւ հինգ հազարաց տանցն ոչ գոյ մի յաւելուլ։ Վասն որոյ պարտ է այնմ որ այսոցիկ հաւանեսցի իրաւամբ՝ ոչ 'ի ձեռըն հօր միայն, այլ 'ի ձեռն ամենայն ազգի հրաժարիլ, եւ պարտ է առնել յաղագս այսոցիկ ըստ օրինի ումեմն այսպէս՝ ըստ որում եւ հասցէ ցասումն՝ ոչ ամն բարեբախտ, եթէ իրաւամբք, եւ եթէ ոչ իրա-

ւամբք, զոր ծնեալ իսկ է և սնուցեալ զսա ցանկալի՝ բացափոխեալ յիւրոց ազգակցութենէ, ոչ վայրապար այսպէս և ոչ վաղվաղակի պարտ իցէ զայս գործել. այլ պարտ է ժողովել զազգականսն իւր մինչև ցհօր եղբօր որդւոց՝ և մօր եղբօր որդւոց և ծննդոցն սոցունց, և առ սոքօք ջատագով լինիցի զայնմանէ, ուսուցանելով իբրու արժանի է ամենեցուն յազգէն 'ի բաց քարոզել։ Տացէ և որդւոյն նոյնպէս բանս՝ իբրու ոչ է արժանի յայսցանէ ոչինչ կրել. և եթէ հաւանեցուսցէ հայրն և կամակիցս գտցէ յամենայն ազգակցացն զյոլովագոյնսն քան եթէ զկէսն, բաց 'ի հօրէն և 'ի մօրէն որ աղաղակեն, և որդւոյն որ հալածի, այլոցն որչափ և իցեն կանանց կամ արանցն կատարելագոյնքն. այսպէս և ըստ այնոցիկ պարտ է հօրն զորդին ապուսել և 'ի բաց քարոզել՝ և այլաբար ոչ միով իւիք, այլ զոր ինչ են։ Եւ զարտաքսեալն իսկ զորդին՝ եթէ կամեսցի ոք 'ի քաղաքացեացն ժառանգ առնել՝ ոչ իցէ օրէն որ խափանիցի զայս ինչ. քանզի համբակացն բարք՝ բազում փոփոխմունս փոփոխէ, նա և ըստ ժամանակի այնպէս բնաւորեալ. և զ'ի բաց հալածեալն՝ որ իցէ 'ի ներքոյ տասն ամաց, զայն կալցին յորդէգրութիւն աճեցելոցն դարմանողքն. այնոցիկ որ 'ի բացաբնակութիւն գնալոց են՝ փոյթ արասցեն սոցունց, իբրու զի հաղորդ իցեն նոյն բացաբնակութեանդ ըստ պատշաճի։

Եթէ ցաւս ինչ կամ ծերութիւն, և կամ յեղանակաց դժուարութիւն և կամ ամենայն 'ի միասին առանց խոհեմութեան զոք գործիցէ առաւելապէս քան զբազումս և յայլոցն զանխլի, բաց յայնցանէ որ կենցաղակիցք են սորա, և ապականող լինիցի այնպիսին տանն՝ գոլով իւրոցն ընչից, և որդին տարակուսի և դանդաղի զանխոհեմութենէն հօրն ամբաստանել հանդէս, օրէնք սմա այս ինչ իցէ։ Նախ առ երիցագոյնսն օրինապահացն հասանելով՝ պատմել զհօրն պատահումն. և սոքա տեսանելով բաւականապէս և 'ի միասին խորհեսցին, լինիցին գրեցելումն վկայք համանգամայն և հանդիսակիցք. և որ պարտա-

պան իցէ այնպիսի պատճառին՝ յայնմ հետէ յամենայն ժամանակի ապախտ իցէ. և յիւրոցն ընչից ոչ փոքր ինչ կարասցէ տրամադրել, այլ իբրու մանուկ բնակեսցէ առ մնացեալ կենցաղումն։

Եւ եթէ այր կամ կին ոչ 'ի միասին պատշաճին՝ յեղանակաց թշուառականութեամբ վարելով, տասն արանց յօրինապահացն պարտ է միշտ դարմանել ըզսոսա, յայնցանէ որ 'ի միջակացն են. Նոյնպէս և տասըն կանանց՝ յայնցանէ որ 'ի վերայ ամուսնութեանցն են. և եթէ կարասցեն 'ի միասին հաշտեցուցանել, այս ինչ իցէ հաստատուն։ Ապա եթէ հոգիքն սոցա յուժգնապէս ալէկոծիցին ցասմամբ, խնդրելով ըստ զօրութեան՝ որք իւրաքանչիւրոց սոցունց յարմարին. և վայելչագոյն է զայսպիսիս ոչ հեզագունիւք բարեօք վարելով, խորագոյնք իսկ սոցունց՝ և հեզագոյնք յեղանակաց սովորութիւնք և օրինակիցք, և ջանալ սոցունց յարմարել։ Եւ որչափ թերևս անզաւակ 'ի սոցանէ և սակաւազաւակ գոլով տարբերին՝ 'ի սակս մանկանց զուգաբնակութիւն առնել. իսկ որչափ բազում մանկանց ելով, 'ի սակս շարամերձութեանն և մատակարարութեանն միմեանց՝ զբաժանումն իսկ և զմիասին լծակցութեանն առնել պարտ է։

Եւ եթէ վախճանեսցի կին ոք մնացուցանելով մանկունք եգք և արուք, բաղախոհական թերևս իցէ եղեալ օրէն և ոչ հարկիւ՝ սնուցանել զմանկունսն որ իցեն՝ մօրու սորա ածելով։ Եւ ոչ ելով մանկանց՝ 'ի հարկէ ամուսնանալ մինչև ծնցի մանկունս բաւականս տանն իսկ և քաղաքին. ապա եթէ այրըն մեռանիցի մանկունս թողեալ, մայրըն մանկանցըն սորա մնալով սնուցանէ։ Ապ'եթէ երիտասարդթուիցի գոլ քան զոր պատշաճն է առ կենդանութեանն՝ և ողջ գոլով առանց առն, որ պատշաճաւորքըն են սորա՝ խորհելով որ 'ի վերայ ամուսնութեանցն են, զթուեցեալըն սոցունց և ասացեալըն կանանց յաղագս այսորիկ արասցեն։ Ապա եթէ մանկանց կարօտացեալք իցեն, և 'ի սակս մանկանց

բաւականութիւն[1] մանկանց ստուգագոյն՝ արու և էգ իցէ օրինօք։

Բայց յորժամ խոստովանեսցի լեալն արարելոցն ծնունդ գոլ, կարօտանայ և ընտրութեամբ թէ ո՞ ուրուք ծնիցելոյն գոլ պարտ է։ Աղախին իսկ եթէ ընդ ծառայի խառնեալ, և կամ ընդ ազատի կամ ընդ ազատելոյ 'ի ծառայութենէ, առանց ամենայն պատճառի՝ աղախնին տեառն իցէ ծնեալն։ Ապա եթէ ազատ կին ընդ ծառայի խառնեսցի՝ տեառն իցէ ծնեալն։ Ապա եթէ այր յաղախնէ իւրմէ կամ կին 'ի ծառայէ իւրմէ, և իցէ այս ինչ երևելի, զկնոջն իսկ զաղախնայսն յայլում գաւառի արտալածին հանդերձ հարբն, և զառն՝ օրինապահքն հանդերձ ծնեալ կնոջն։

Եւ առ ծնողս ծուլալ ոչ աստուած և ոչ մարդ միտս ունելով՝ խորհրդակից արդեւք լինիցի երբեք։ Ոչ և մի՛ ոք և ոչ միոյ ուրուք խորհել պարտ է յաղագս հաճութեան աստուածոցն. և այսպիսի նախերգան լինելով առ ծնողացն պատիւսն և անարգութիւնսն շարադասել ուղղապէս։ Օրէնք առ աստուածսն նախնիք կան առ ամենեցուն երկակի։ Զի զոմանս յաստուածոցն հաւաստի տեսանելով՝ հաւաստի պատուեմք. և զոմանց պատկերս առնելով ցնծամք առ սոքօք. և մանաւանդ անշունչս գոլով զայսոսիկ՝ զայնոքիկ վարկանիմք զներանձինսն աստուածսն, բազում վասն այսորիկ բարեմտութիւն և շնորհ ունել։ Արդ որում հայր և մայր, և կամ սոցունց հարք և մարք 'ի տուն կան անկեալք տարակուսելով ծերութեամբ, մի՛ ոք ոչ և մի՛ տրամախոհիցի երբեք՝ պատկեր սմա այսպիսին վերակացու տան հաստատեալ առ բնակութիւն ունելով մանաւանդ տիրապէս իցէ,՛ եթէ ըստ յեղանակ իսկ և ուղղապէս զսա ստացողն հաճեսցուսցէ։

Կղինիաս. Զ՞ինչ արդ վուղղութիւնն գոլ ասես։

1 Ցոյնն ունի, Իսկ եթէ չգուցէ նորա որդի 'ի վախճանել առնէն՝ ամուսնացի միւսանգամ։

Պղատոն. Ես իսկ ասեմ. զի և արժանի է արդ, ով սիրելիք, լսել զայսպիսիս։

Կղինիաս. Ասա միայն։

Պղատոն. Զէդիպոս[1] ասեմք եթէ անարգեալ մաղթեաց բարկութեամբ վասն զաւակաց իւրոց, զոր և ամենայն ոք երգէ, և կատարելապէս լսելի եղև առ 'ի յաստուածոցն։ Եւ վասն Թագաւորութեանն Թեբայեցոց՝ որդիքն որ անարգեցին զնա անօրէնութեամբն առ կնոջ նորա, զմիմեանս սպանանեն. և Մինատոռոս զԱրմաւ որդին իւր անիծեալ ցասմամբ և զԻպպոլիդոս[2]. Թերևս և միւս զայլս բիւրինս բազումս՝ որոց եղև հաւաստի լսողք գոլ ծնողաց վասն զաւակաց զաստուածսն. քանզի վնասակար է հեծութիւն ծնողացն որդւոց՝ իբրու ոչ այլ և մի ինչ այլոց իրաւագոյն։ Արդ մի ոք անարգելով զանազանապէս հօր և մօր առ 'ի մանկանց՝ լսող լինել ըղձից նոցա զաստուած վարկանիցի ըստ բնութեան, այլ պատուելով արդեւք և բերկրելով յոյժ. և վասն այսորիկ մաղթանօք պաղատանս մատուցանելով յաղագս մանկանց՝ աղաչելով զաստուածսն լուիցեն նմա, ո՞չ արդեւք զայսպիսիս լսել և անհաւասիկ հաւասարապէս մեզ հատուցանել զնոսա վարկցուք։ Այլ ոչ երբեք արդարք կարծիցես գոլ և բարիք զոր ասեմք, ոչ գոլ վայելուչ զայսոսիկ աստուածոցն։

Կղինիաս. Յոյժ իրաւացի։

Պղատոն. Ո՞չ ապաքէն խորհեսցուք, որպէս փոքրր մի յառաջագոյն ասացաք, իբրու ոչ ինչ առ աստուածսն պատուականագոյն պատկերս տացուք Թերևս՝ քան զհայր և զնախահայր և զմարս տարակուսեալս ծերութեամբ, զնոյն զօրութիւնն ունելով՝ զոր յորժամ ուրախացուսցէ ոք պատուօք՝ ախրասցի աստուած։ Քանզի սքանչելի ինչ ստացուած է մեզ նախածնացն զանազանապէս քան զան֊

1 Յօրինակին՝ Զ՞ դիպաստ, ուղղեցաք ըստ բնագրին։

2 Յոյնն. Αμυντορά τε φοινιχί, τῶν εαυτε̃υ ε'παρᾶντι παιδιθυμωθέντα, και Γ'ππολύτω Θηςε'α.

շունչս։ Քանզի այսոքիկ առ 'ի մէնջ զպատիւ գտա-
նելով իբրու հոգւոյս՝ յիւրաքանչիւրում ժամու
հանդերձ մեւք մաղթէ, և անպատուելով՝ զներհակ-
սըն առնէ. իսկ այն ոչ և զմի։ Վասն որոյ եթէ
ուղղապէս ոք հօր և նախահօր և ամենեցուն այս-
պիսեացս պատուելով փոյթ արասցէ, ամենեցուն
առ աստուածային սիրելութեան մասն տիրապէս պա-
տուականագոյն պատկեր ստացեալ։

Կղինիաս. Գեղեցկապէս ասացեր։

Պղատոն. Արդ ամենայն որ միտս ունիցի՝ երկնչի
և պատուէ, զմաղթանս ծնողացն գիտելով առ բազ-
մաց բազում անգամ կատարեալս։ Այսոցիկ արդ
այսպէս կարգեցելոց, բարեաց իբրու առ ձեռն շահ
ինչ՝ և կամ պտուղ քաղցրաճաշակ առ գնացս ճա-
նապարհի են նախածինք ծերացեալք կելով մինչև
ցվերջին կենցաղն. և եթէ ներագոյն գնասցեն տա-
կաւին փափաքելիք են, այլ չարեացն մանաւանդ յոյժ
ահագինք են։ Արդ ամենայն ոք ամենայն պատուօք
պատուիցէ այսուիկ որ առ օրէնսն են զծնողսն՝ այժ-
միկ ասացեալ բանիցս հաւանելով։

Ապա եթէ ոք ըմբռնեալ է 'ի ձեռն անբարբառ
համբաւի, և անլուր լինիցի այսպիսի յառաջաբա-
նիցս, օրէն այս ինչ 'ի վերայ սոցա ուղղապէս կալով
թերևս իցէ։ Եթէ ոք յայսմիկ քաղաքի առ ծնողս
ծուլութիւն ունիցի յոր ինչ պատշաճն է, և ոչ քան
զուստերայն և ամենայն ծննդոց իւրոց և անձին
իւրոյ մեծապէս առ ամենայն ինչ յորդորեալ իցէ
առ 'ի լնուլ զկամս սոցա, պատմիցէ իսկ որ կրէն
այսպիսի ինչ կամ ինքն, և կամ զոմն առաքելով առ
յերիս օրինապահացն՝ այնոքիկ որ են երիցագոյնք,
և առ երիս իսկ 'ի կանանցն՝ որ զամուսնութիւնսն
մատակարարեն։ Եւ սոքա փոյթ արասցեն տանջե-
լով զանիրաւսն գանիւք և կապանօք, մինչև ցամաց
երեսնից՝ եթէ արք հանդիպին, և եթէ կանայք՝
քառասուն ամաց, յոլովագոյն տանջեսցին նոյն տան-
ջանօք։ Ապա եթէ երկարաձգի ժամանակն՝ և ոչ
փոխեն սոքա զսրամադրութիւնն ծուլութեանն 'ի
լաւագոյնսն յաղագս ծնողացն, և չարս ինչ գործի-

ցեն ոմանք ոմանց, 'ի հանդիսարան մուծանելով զսոսա՝ 'ի մի յիւրաքանչիւր քաղաքացեացն՝ այնոցիկ որ ամենեցուն ծերագոյնքն իցեն. և թէ պարտապան իցէ՝ պատուհասիցէ զնա հանդիսարանն, զոր ինչ պարտ է հատուցանել կամ կրել՝ ոչ ինչ առանց սասցուածի թողլով որչափ հնար է մարդոյ կրել կամ հատուցանել: Եւ եթէ անկարող իցէ ոք՝ ծուլացեալ 'ի զաւակացն պատմել, որ վերահասու լինիցի յազատացն՝ պատմիցէ յիշխանացն, և չար իցէ կամ վնասու պարտական ամենայն ոք որ կամիցի և ոչ գուշակիցէ: Եւ եթէ ծառայ ոք որ զայսպիսի ինչ ազդիցէ՝ ազատ իցէ. և եթէ այնոցիկ որ զծուլութիւնն առնեն, և կամ այնոցիկ որ կրեն ծառայիցէ՝ 'ի ձեռն իշխանութեանն ազատ իցէ. ապա եթէ այլ ուրուք 'ի քաղաքացեացն՝ ատեանն զգին սորա հատուսցէ ստացողի սորա. և իշխանացն փոյթ իցէ՝ գուցէ անիրաւէ ոք զայնպիսին 'ի սակս լուր առնելոյն զայս ինչ:

Իսկ որչափ ա՛յլ ոք այլում դեղիւք վնաս գործիցէ մահաբերքն 'ի սոցունց՝ յառաջագոյն ասացաւ: Իսկ յաղագս այլ վնասուցն, եթէ ոք ըմբելեօք կամ կերակրօք կամ օծանելով կամաւ նախախնամութեամբ վնասիցէ զոք՝ սոցունց ոչ ևս է ասացեալ: Քանզի երկակի գոլով այսպիսի չարաչար դեղատուութեանս ըստ մարդկան սեռի, զյայտնապէս պատմեցն թաքուցանեն: Զմի զոր այժմիկ ասացաք՝ յայտնապէս մարմնոք մարմնոյ չար գործելն ըստ բնութեան է. բայց է որ կախարդութեամբք և թովչութեամբք և ասացեալ կապանօքն հաւանեցուցանէ զայսոսիկ որ համարձակին սոցունց զնոսա գործել ոլպէս և կարեն. և զոմանս՝ զի 'ի ձեռն այսոցիկ համարձակագոյն գործիցեն՝ կախարդութեամբն վնաս ինչ արասցեն սոցունց: Արդ այսոքիկ և որ ինչ առ սոքօք են ամենայն, ոչ դիւրին եթէ որպէս երբէք բնաւորեալ է գիտել. և ոչ եթէ ծանիցէ՝ հաւանեցուցանելն զայնոսիկ: Հնար է և անձանց մարդկան կասկածանս ունելով առ միմեանս յաղագըս այնպիսեացն՝ ոչ է արժան ձեռնարկութիւնս

տանել առ 'ի հաւանեցուցանել եթէ երբեք տես-ցեն ուրուք նմանութիւնք ինչ ստեղծեալ կամ առ-դուրս և կամ առ ճանապարհս կամ առ գերեզմա-նըս ծնողացն իւրեանց, դժուարանալ յաղագս այ-նոցիկ սովորեալ են, քանզի ոչ ունին հաւաստի աւան-դութիւն յաղագս սոցա։

Այլ ըմբռնելով երկակի զօրէնսն որ յաղագս դե-ղատուութեանն, որպէս և ձեռնարկիցէ ոք դեղ ինչ գործել, նախ պարտ իսկ գոլ աղաչել և ողոքել և խորհրդակից լինել զի մի՛ գործիցէ զայս ինչ. և ոչ իբրու զմանկունս՝ զբազումն 'ի մարդկանէ արհաւիրս տանելով երկեցուցանէ. և ոչ զօրինադիրն և զդատաւո-րըն հարկել զի բժշկիցէ զայնպիսի երկիւղս մարդկան. իբրու նախ զայն իսկ որ դեղ ինչ գործել ձեռնար-կութիւնս առնէ՝ ոչ գիտելով եթէ զի՛նչ գործէ զայ-նոքիկ որ ըստ մարմնոյ են, եթէ ոչ հանդիպի մա-կացող գոլով բժշկականի. և զայն իսկ որ առ կախար-դութիւնսն՝ եթէ ոչ դիւթ կամ նշանադիտող գոլ հանդիպի։ Ասացի արդ բան այս ինչ օրէն յաղագս այսպիսի դեղատուութեանս։ Եթէ ոք աղանդիցէ զոք առ վնաս որ ոչ է մահաբեր՝ ոչ իւրն և ոչ մարդ-կան նորին, այլ չորքոտանեաց, և կամ հոյլից մե-ղուաց և կամ այլ ինչ վնասիւ և կամ մահաբերաւ, եթէ բժիշկ հանդիպիցի և պարտապան լիցի այս-պիսի իրի՝ մահուամբ տուժեսցի։ Ապա եթէ ռամիկ, զոր ինչ պարտ է սմա կրել կամ հատուցանել՝ հան-դիսարանն հրամայիցէ։ Ապա եթէ կապանօք և կամ թովչութեամբ և կամ այլովք այսպիսեօք աղանդիւ վնասակար լինիցի, եթէ դիւթ իցէ և կամ նշա-նադիտող՝ մեռցի. ապա եթէ առանց դիւթու-թեան ելով՝ այլոյ աղանդոյն պարտապան իցէ, որ-պէս վերագոյն ասացաւ՝ լինիցի և սմա. քանզի յա-ղագս սորա հանդիսարանն հրամայիցէ զոր ինչ և թուիցի սմա պարտ գոլ սմա կրել կամ հատու-ցանել։

Որչափ այլ ոք այլոյ ուրուք վնաս արասցէ գողա-նալով և կամ բռնադատելով, եթէ մեծ ինչ առցէ՝ մեծագոյն զտուրժն կրօղին վնասուն հատուսցէ.

եթէ փոքր՝ տուրժեսցի փոքրագոյն. և առ ամենայն ինչ այսչափ թերևս յիւրաքանչիւրում ժամու տուրժիցէ ոք զայլ ոք՝ մինչև բժշկեսցէ զվնասեալն, և պատուհաս իւրաքանչիւր ոք առ իւրաքանչիւրում չար գործոցն հետեւելով ի սակս ողջախոհութեան ընկալեալ: Այն իսկ որ անհմտաբար չար ինչ գործիցէ, այլ ուրուք հաւանելով վասն մանկութեան, և կամ այլ իւիք այսպիսեաւ վարելով՝ թեթևագոյն կրիցէ: Իսկ այն որ 'ի ձեռն իւրոյ անխոհեմութեան, կամ վասն ոչ հանդուրժելոյ հեշտութեանց, և կամ 'ի տրտմութեան երկիւղից զանգիտման, և կամ ցանկութեամբ ինչ կամ մախանօք կամ ցասմամբ, դժուարաբոյժ լինելով կրիցն՝ ծանրագոյն. ոչ 'ի սակս չարագործութեան հատուցանելով զպատուհասն, քանզի եղեալն՝ անեղ երբեք ոչ իցէ. այլ 'ի սակս յապառնի ժամանակի, կամ ատելոյ ամենեւին զանիրաւութիւն սմա իսկ և տեսողացըն զսա արդարացեալ, և կամ վասն դադարեցուցանելոյ բազում մասունս այսպիսի դիպուածոյս:

Արդ վասն որոյ ամենայնի պարտ է և առ այսպիսիքս ամենայն հայելով օրինացն՝ նմանութեամբ աղեղնաւորի ոչ վատթարագունի՝ 'ի սակս մեծութեան տանջանացն իւրաքանչիւրոց և ամենեւին արժանեացն. զնոյն ինչ գործելով պաշտօն տալ պարտ է դատաւորին այնմիկ՝ որ օրինադիրն է, յորժամ օրէնքն ինչ յորդորեն զսա՝ հրամայել զոր պարտ է կրել կամ հատուցանել այնմիկ որ դատեալ իցէ, և օրինադրին պարտ իցէ որպէս կենդանագրի ենթագրել գործ՝ գրոյ հետեւողք: Զոր ինչ և այժմիկ, ով Մեգիլէ և Կլինիա, պարտ է մեզ առնել իբրու գեղեցկագոյն և արիագոյն. զգողացելոցն իսկ և զբռնութեանց ամենեցուն զասացեալ տուրժն որպէս պարտ է լինել մեզ, ասելի է, որպէս և թողացուցանեն մեզ օրինադրեալ աստուածքն՝ և աստուածոցն մանկունքն:

Եթէ ոք խելագարութեամբ մոլորեալ իցէ, ոչ շրջի յայտնապէս 'ի քաղաքին, այլ ընտանիքն իւրաքանչիւրոցն առ տունս պահիցեն զսոսա որով և

դիտացեն յեղանակաւ, և կամ տուրժս հատուսցեն: Իսկ որ 'ի մեծագունէ գնոյ՝ դրամս հարկիր, թէ զծառայ իսկ և կամ զաղատ անտես արասցէ. և որ յերկրորդ գնոյն է՝ 'ի հնգիցն զչորս մասունսն մնասին, և զերիսն՝ երրորդն, և զերկուսն՝ չորրորդն: Արդ մոլին իսկ բազումք՝ բազում յեղանակաւ, զոր այժմիկ իսկ ասացաք, 'ի ձեռն հիւանդութեանց: Բայց են և որք 'ի ձեռն ցասման չար բնութեամբ միանգամայն և սնոտեամբ լինելով, որք և փոքու թշնամութեանն լինելով բազում ձայնս արձակեն չարաչար զմիմեանս հայհոյելով, ասեն բանս՝ զոր ոչ վայել է քաղօրինաց քաղաքի լինել ոչ երբեք ոչ և միով իւիք մի: Արդ յաղագս ոգելոյ զչար՝ այս իցէ օրէն առ ամենեսեան: Մի ոք ասասցէ չար, ոչ և միոյ ուրուք. և որ երկբայութիւն ունիցի՝ բանիւք ինչ այլ ոք այլոյ ուրուք ուսուսցէ, և նախ ինքն իմասցի զայնոսիկ որ երկբայողն իցէ, և զպատահեալսն 'ի բաց կալով յամենայն ոգելոյ զչարն, քանզի 'ի հայհոյելոյն զմիմեանս անիծիւք, և 'ի ձեռն գարշելի անուանց հասուցանելոյն յիգական համբաւս միմեանց, նախ իսկ 'ի բանից թեթևագոյն իրի՝ գործով ատելութիւնք իսկ և թշնամութիւնք ծանրագոյնք լինիցի: Քանզի ապաշնորհ իրի ցասմամբ շնորհելով ասացողն՝ լցուցանէ բարկութեամբ և չարութեամբ յագեցուցանէ, որչափ 'ի ձեռն խրատու երբեմն հանդարտեալն էր՝ դարձեալ վայրենի բարոք հոգւոյն առ այսպիսի ինչ՝ գազանացեալ դժոխակենդան լինիցի՝ զգառն շնորհսն ցասմամբն ընդունելով:

Այսպէս արդ սովորեալ են ամենեքեան յետ վիճաբանութեանն ստէպ ելանել առ այսպիսիս վասըն ծիծաղելի ինչ բարբառոյ յաղագս ներհակին. զոր սովորեալ ոք՝ ոչ ևս երբեք առաքինի յեղանակին, ամենևին սխալեալ խոտորի՝ քան եթէ զմեծախոհեմութեան զբազում մասունսն կորուսանէ: Արդ 'ի սակս այսորիկ 'ի տաճարի իսկ ամենևիմբք մի ոք այսպիսի ինչ բարբառիցի ոչ երբեք ոչ մի ինչ. և ոչ առ ոմանըս հանդիսակատար զոհիւք, և ոչ առ նահատա-

կութեանց և ոչ 'ի վաճառի և ոչ 'ի հանդիսարանի, և ոչ առ հասարակաց ժողով և ոչ միոյ իսկ. այլ տանջեսցէ որ սոցունց իշխանն է՝ զիւրաքանչիւր ոք 'ի սոցանէ առանց բամբասանաց. և կամ ոչ երբեք յաղագս արիութեանց վիճաբանեսցի՝ իբրու օրինաց ոչ մատակարարող, և ոչ արարող հրամայելոցն 'ի ձեռն օրինացն։ Ապա եթէ ոք առ այլ տեղիս անարգանս սկսանելով և կամ վանելով զայլ ոք զոր և իցէ՝ ոչ 'ի բաց կացցէ յայնպիսի բանիցն, որ հանդիպեսցի երիցագոյն գոլով՝ օրինօքն բանիւք զսա վանիցէ խափանելով, և զայնոսիկ ոըք զայլում չարիս պատուասիրեալք լինին և կամ պարտապան՝ լինիցի 'ի կարգեալ տուրժն։

Ասասցուք արդ այժմիկ իբրու որ ընդ անարգանս շարամանիցեն՝ առանց ծիծաղելի ինչ խնդրելոյ ասել՝ ոչ կարողն է վարել բանիւքն, և զայս ինչ բամբալ՝ ասեմք՝ յորժամ և ցասմամբ լինիցի։ Բայց զի՞նչ. արդ զկատակերգողացն յօժարութիւնն ծիծաղելի ինչ առ մարդիկ ասելոյն, զոր և ընդունիմք թերևս եթէ առանց ցասման զայսպիսիս մեզ զքաղաքացիսն կատակերգելով ձեռնարկութիւն առնել ասելոյն, և կամ երկակի կարծեսցուք զխաղալն և զոչ խաղալն. և խաղալով իսկ ներեսցո՞ւք յաղագս ասելոյ ինչ ծաղրական առանց ցասման. իսկ շարադասելով հանդերձ ցասմամբ, որպէս ասացաք՝ ոչ իցէ պարտ և ոչ միոյ ուրուք. զայս ինչ արդ ոչ և միով իւիք վերադրելի է որում պարտ իցէ, և ոչ զայս ինչ, արդ օրինադրեսցուք։ Արդ քերթողի կատակերգութեան, և կամ ոմանց մեծավերջ տաղից, և կամ երաժշտից երգոյ՝ ոչ իցէ պարտ ոչ բանիւ և ոչ պատկերաւ և ոչ ցասմամբ ինչ և առանց ցասման ոչ և միով իւիք զոչ և մի ոք 'ի քաղաքացեացն կատակերգել։ Ապա եթէ ոք անհաւան լինիցի, զառաջնորդքն սոցա արտալածել 'ի գաւառէն յաւուրն յայնմիկ, և կամ տուրժել երեք մնասիւք առ տաճարաւն աստուծոյն որոյ և նահատակութիւնն իցէ։ Եւ այնոցիկ ոըք ասացան յառաջագոյն իշխանութիւն գոլ յաղագս առնելոյն առ միմեանս սոցունց առանց ցասման իսկ հանդերձ

խաղալեօք պարտ իցէ. իսկ փութով համանգամայն արտամտելոց՝ պարտ ոչ իցէ այսուիկ։ Արդ քննութիւն հրամայիցի բոլոր խրատուն փոյթ արարողին համբակացն. և զոր ինչ ևս դատ արասցէ, բերեալ յանդիմանն՝ պարտ է այնմիկ որ արարեալ իցէ, և որոյ պատասխանի տացէ, ոչ ինքն ցուցցէ ոչ և միոյ ուրուք և ոչ զայլ ոք ծառայ և կամ զազատ երևեսցի երբեք ուսուցեալ, և կամ չար գոլով կարծեսցի և անհաւան օրինացն։

Եղկելի արդ է ոչ որ քաղցնու, և կամ այսպիսի այլ ինչ կրէ, այլ որ ողջախոհ գոլով, և կամ այլ ինչ առաքինութիւն և կամ զմասն սորա ունելով, եթէ դիպուած ինչ անըղձալի առ այսօքիւք ստասցի։ Վասըն որոյ սքանչելի արդեւք լինիցի՝ եթէ այսպիսի գոլով ամենևին ծուլասցի իբրու վերջին հասանել աղքատութիւն, եթէ ծառայ իցէ և եթէ ազատ, 'ի բնակեալ իսկ և 'ի չափաւոր քաղաքավարութեան և 'ի քաղաքի։ Վասն որոյ օրինադրին պարտ է դնել օրէն զգուշագոյն այսպիսեացս զայսպիսի ինչ. Աղքատ մի՛ ոք 'ի քաղաքիս մերում լինիցի։ Այսպիսի ինչ եթէ ոք ձեռնարկութիւն առնել իբրու աններգործող աղօթիւք ինչ հաւաքիցէ՝ 'ի վաճառէն իսկ վաճառօրէնքն արտալածեն զսա, և 'ի քաղաքէն իշխանն քաղաքօրինացն, և ագարակաբաշխքն յայլոյ գաւառէն, առաքելով զսա արտաքս յայլ գաւառ. զի այս վայրն այսպիսի կենդանոյ ամենևին մաքուր լինիցի։

Եւ եթէ ծառայ կամ ազախին մնաս արասցէ օտարացն ծառայից զինչ և իցէ, որ պատճառակից լինելով սմա տեառն մնասուն ըստ անհմտութեան ողջախոհ պիտոյից, մնասողին տէրն՝ կամ զվնասն բժշկիցէ աննուազապէս, կամ զվնասողն աւանդիցէ 'ի տէրն վնասելոյն։ Ապա եթէ պատճառաւոր լինիցի տէր վնասելոյն հաղորդելով արուեստիւ վնասողին, և զվնասն ասիցէ լինել՝ վասն պատճառի զըրկելոյ զտէրն 'ի ծառայէ իւրմէ, դատ ընկալցի զչար արհեստիցն այնմիկ որ ասէ վնասիլ. և եթէ ընկալցի՝ իբրու պարտապան կրկնապատիկ զգինսն ծա-

ռային պահանջեսցի՝ զոր ինչ և հանդիսարանն գին դիցէ։ Ապա եթէ պարտ իցէ՝ զվնասն ողջացուսցէ, և զծառայն աւանդիցէ։ Եւ եթէ էշ կամ շուն, կամ այլ ինչ յայլոց կենդանեաց վնասիցէ ինչ զմերձաւորացն՝ ըստ այսոցիկ հատուսցէ զվնասն։

Եթէ ոք ոչ կամեսցի՝ կոչեսցէ զնա որ զպէտսն ունիցի, և սա կոչեալ հանդիպիցի 'ի հանդիսարանն. և եթէ գիտիցէ և ոչ կամիցի վկայեալ՝ վնասեսցէ. և եթէ ասիցէ ոչ գիտել՝ յերդիս աստուածոյն 'ի Ձեւս և յԱպողոն և 'ի Թեմէս երդուեալ ճշմարտապէս ոչ գիտել, ազատիցի 'ի հանդիսէն. որ 'ի վկայութիւն կոչեալ՝ ոչ հանդիպեսցի կոչողին զնա, վնասուն պարտապան իցէ ըստ օրինացն։ Ապ'եթէ ոք զոմըն դատաւոր յարուսցէ վկայ՝ վկայեալ ոչ դատիցէ առ այնմիկ հանդիսին, և որ 'ի վկայութիւն կոչեալ և կնոջ ազատի՝ պարտ է վկայել և հանդիսակից լինել ում և կամեսցի, եթէ վերագոյն ամաց քառասնից լեալ իցէ, և 'ի հանդէս հասանել եթէ առանց առն իցէ. իսկ 'ի կենդանութեան առն՝ պարտ իցէ վկայել միայն։ Իսկ աղախնի և ծառայի և մանկանն՝ վասն սպանման միայն պարտ իցէ վկայել և հանդիսակից լինել, եթէ երաշխաւոր արժանապարտն ճշմարտապէս կալ սմա հաստատիցէ մինչև ցհանդիսին։ Ապ'եթէ յանդիմանեսցի սուտ վկայել՝ քննել պարտ է այնոցիկ որ 'ի հանդիսին երկաքանչիւրոյն զբոլոր վկայութիւնն և զմասն սորա, եթէ ասիցէ սուտ ինչ վկայել նախ քան զընտրութեանն դատաստանին։ Եւ զկասկածանացն խնդրուածս՝ իշխանութեանցն պահել նշանագրեալս զերկաքանչիւրոցն և առաուեալ 'ի սուտ վկայութեանցն ընտրութիւն. և եթէ կալցի ոք երկիցս սուտ վկայեալ, զնա ոչ և մի ոք օրէն հարկիցէ գալ 'ի վկայութիւն։ Ապ'եթէ երիցս՝ ոչ ևս պարտ է սմա վկայել. և եթէ յանդըգնիցի ոք վկայել յերիցս՝ ըմբռնեալ ցուցցէ իսկ առ իշխանութիւնն սա որ և կամեսցի. և իշխանութիւն աւանդիցէ 'ի հանդիսարանն, և եթէ պարտապան իցէ՝ մահուամբ տուրժեսցի։

Եւ որչափ վկայից վկայութիւնք ընկալցին իրա-

ւամբք սուտ թուեցեալք վկայել, և զյաղթութիւնն յարմարել յաղթողին, այսպիսեացս՝ եթէ քան զկէսն առաւելագոյնք՝ դատապարտիցին։ Այսպէս վկայեալք ոմանք զհանդէսն, այն որ ըստ սոցունց վկայութեանց յաղթեալ իցէ՝ վերստին դատելով և երկբայութիւն գոլով, և կրկնակի հանդէս, եթէ ըստ այսոցիկ և եթէ ոչ՝ հանդէսն դատեցաւ, և որպէս դատիցի արդեւք՝ այնպէս լինիցի կատարածն յառաջագոյն հանդիսիցն։

Բայց բազում գոլով բարութեանց առ մարդկային կենցաղումս՝ յոլովագունիցս սոցունց իբր ապականութիւնք ինչ բնաւորեցան, որք պղծեն իսկ և շաղախեն զնոսա։ Եւ արդ իրաւունք առ մարդկան որպէս ոչ է բարի, որ զամենայն մարդկայինս հանդարտեցուցանէ։ Եւ բարի ելով սորա, ո՞րպէս և հանդիսակցելն բարի է մեզ։ Զայսոսիկ արդ այսպիսի ելով, դաւաճանութիւն ինչ չար բարիանուն առաջի գնելով արհեստ, որ նախ իսկ ասէ գոլ ինչ հանդիսից հնար, և գոլ զսա հանդիսանալն, և զհանդիսակցիլն այլում՝ յաղթիլ, թէ իրաւի իսկ է և եթէ ոչ, առ իւրաքանչիւրում հանդիսի գործել իրն, և ձրի գոլ սորա արհեստիս և քանիցն որ 'ի արհեստէս, եթէ փոխանակ ոք ինչ տացէ։ Եւ զայսոքիկ արդ առ մերում քաղաքիս, եթէ արհեստ և եթէ անարհեստ իցէ ինչ հմտութիւն և կրթութիւն, մանաւանդ պարտ իսկ է ոչ բուսանիլ. և կարօտանալով օրինադրին հարցանել, զի մի ինչ ներհական հանդիսին բարբառի, և յայլում վայրի փոխեսցի։ Արդ հաւանելոցս այսոցիկ՝ լռութիւնք. և ոչ հաւանելոցն՝ ձայն այս ինչ օրինի, թէ թուիցի ուրուք ջանալ զիրաւանցն զօրութիւն առ անձանցն դատաւորացն 'ի ներհակսն դարձուցանել և առանց ժամու բազմահանդիսել այսպիսեօքս, և կամ հանդիսակցել գրիցէ ընդ սմա ոք և կամիցի չարահանդիսութիւն և կամ չարի հանդիսակցութիւն. և դատեսցի յընտրելոցն դատարանին, և պարտապան ելով սորա՝ դիցէ հանդիսարանին եթէ ընչասիրութեամբ թուիցի զայս ինչ առնելով, և եթէ վիճաբանութեամբ է, գին հատցէ սմա դատարանն՝ որ-

չափ պարտ է ժամանակաւ այսպիսոյս, ոչ ուրուք հասանել 'ի հանդիսի, և ոչ հանդիսակից լինել: Ապա եթէ ընչասիրութիւն՝ օտարին գնալով 'ի գաւառէն, և ոչ երբեք դարձեալ գալ, և կամ տուրժել մանաւանդ մահուամբ. իսկ քաղաքացւոցն մեռանել 'ի սակս ընչասիրութեան՝ առ 'ի սմանէ ամենայն յեղանակաւ պատուեալ էր: Աpʼեթէ վիճաբանութեամբ ոք ընտրիցէ երկիցս զայս ինչ առնելով՝ մեռցի:

# ՊՂԱՏՈՆԻ

## ՕՐԷՆՔ ԿԱՄ ՕՐԷՆՍԴՐՈՒԹԻՒՆ

### ԵՐԿՈՏԱՍԱՆԵՐՈՐԴ



*Պղատոն.* Եթէ բարեխօս ոք կամ քարոզ՝ ստելով զքաղաքէն զօտարոտիս ինչ մաղթէ առ քաղաքի ուրեմն, և կամ առաքեալ՝ ոչ զնոյն մաղթութիւնս՝ ըստ որում առաքիցի, պատմիցէ. և կամ առ 'ի թշնամեացն դարձեալ կամ 'ի բարեկամացն՝ ոչ զառ 'ի սոցունց ասացեալսն տացէ ուղղապէս պատասխանի մաղթութեանցն. և կամ քարոզ ինչ արարեալ այսպիսի յանդիման լինիցի, հանդէսք ընդդէմ սորա իցեն՝ իբրու Հերմեսի և Ջեւսայ 'ի պատուէրս և 'ի կարգաւորութիւնս անօրէնութեամբ ամբարշտելոց. և պատուհաս զոր ինչ պարտ է կրել և կամ հատուցանել, եթէ պարտապան իցէ։

*Կղինիաս.* Գողութիւն իսկ ընչից՝ առանց ազատութեան, և յափշտակութիւն առանց յամօթոյ։

*Պղատոն.* Բայց յԱրամազդայ ուստերացն ոչ ոք՝ ոչ ընդ նենգութիւն և ոչ ընդ բռնութիւն խնդալով խոկացեալ է 'ի սոցունց ոչ և մի ինչ։ Արդ մի ոք 'ի ձեռն քերթողաց, և մի այլաբար 'ի ձեռն ոմանց առասպելաբանից յածեալ, և առ այսպիսի 'ի բաց պատրելով՝ հաւանեսցի, և գողացեալ կամ բռնադատեալ՝ կարծիցէ ոչ ինչ առնել գարշելի, այլ զոր ինչ ինքեանք աստուածքն՝ գործել. քանզի ոչ ճշմարիտ է, և ոչ իրաւապէս. այլ գործէ այսպիսի ինչ անօրինաբար՝ ոչ աստուածք և ոչ որդիք աստուածոց. և զայսոսիկ օրինադրեալ մանաւանդ պարտ է գիտել կամ 'ի միասին ամենեցուն քերթողացն։

Արդ ով հաւանեսցի մերում բանիս, բարեբախտեսցի իսկ, և առ ամենայն ժամանակի բարեբախտ իցէ։ Եւ որ թերահաւատէ, յետ այսոցիկ այսպիսի ումեմն օրինով մարտիցի։ Եթէ ոք գողանայ հրապարակական՝ մեծ ինչ կամ փոքր, զնոյն պատուհաս կրիցէ. քանզի փոքր ինչ գողացեալն նորին իսկ փափաքանօք՝ ըստ զօրութեան փոքրագոյն գողացաւ. և որ զմեծագոյնն շարժէ բոլորովին զոր ոչ է եդեալ՝ ապիրատ իցէ[1]։ Պատուհաս արդ ոչ և մի ոք 'ի սոցունց նուազագոյն կրիցէ քան զմիւսն՝ 'ի սակս մեծութեանն գողացեալ իրին. և ոչ այսպէս արժանի համարի օրէնսն տուժել. այլ միոյն թերևս տակաւին դիւրաբոյժ գոլովն, և միւսն անբոյժ։ Օտար արդ 'ի հանդիսականացն կամ 'ի ծառայիցն՝ եթէ ոք զոմն գողացեալ, 'ի հանդիսարանի ընկալցի իբրու դիւրաբոյժ 'ի պատշաճաւորացն գոլով՝ զինչ պարտ է կրել և կամ զինչ տուժ հատուցանել սմա, ընտրութիւն 'ի դատաւորացն լինիցի։ Իսկ զքաղաքացին և զսնուցեալն որ իցէ 'ի քաղաքի սընեալ՝ եթէ զհայրենի գաւառն կողոպտելով և կամ բռնադատելով կալցի, եթէ յանդիմանապէս առձեռն և եթէ ոչ, գրեթէ իբրու անբոյժ ելով՝ մահուամբ տուժելով։

Եւ 'ի սակս զինուորութեանն՝ բազում իսկ խորհուրդ և բազում օրէնք լինիցին ըստ յեղանակին. բայց մեծագոյն է՝ ոչ երբէք անիշխան ոչ և միոյ ուրուք գոլն՝ ոչ արուի և ոչ իգի, և ոչ սովորութեամբ ուրուք զհոգի սովորեցուցանել ոչ առ փոյթս և ոչ առ խաղալիս՝ ինքն յանձնէ իւրմէ առնել ինչ միայն. այլ առ ամենայն պատերազմի և 'ի խաղաղութեան՝ առ իշխանն միշտ հայելով հետևելով կեալ, և առ դուզնաքեայ իսկ իրողութիւնս առ 'ի սմանէ առնուլ զուղղութիւնսն. իբրև դադարել՝ յորժամ հրամայիցէ ոք, և գնալ և աշխատել և լուանիլ և յառնել 'ի գիշերի առ պահպանութիւնսն և պատուիրանսն. և նոցունց իսկ վշտացն պատերազմացն՝ ոչ

1 Յօրինակին աստ աղաւաղ է. ուղղեցաք ըստ բնագրին։

շունչս։ Քանզի այսօրիկ առ 'ի մէնջ զպատիւ գտանելով իբրու հոգւոյս՝ յիւրաքանչիւրում ժամու հանդերձ մեւք մաղթէ, և անպատուելով՝ զներհակսըն առնէ. իսկ այն ոչ և զմի։ Վասն որոյ եթէ ուղղապէս ոք հօր և նախահօր և ամենեցուն այսպիսեացս պատուելով փոյթ արասցէ, ամենեցուն առ աստուածային սիրելութեան մասն տիրապէս պատուականագոյն պատկեր ստացեալ։

Կղինիաս. Գեղեցկապէս ասացեր։

Պղատոն. Արդ ամենայն ոյ միտս ունիցի՝ երկնչի և պատուէ, զմաղթանս ծնողացն գիտելով առ բազմաց բազում անգամ կատարեալս։ Այսոցիկ արդ այսպէս կարգեցելոց, բարեաց իբրու առ ձեռն շահ ինչ՝ և կամ պտուղ քաղցրաճաշակ առ գնացս ճանապարհի են նախածինք ծերացեալք կելով մինչև ցվերջին կենցաղն. և եթէ ներագոյն գնասցեն տակաւին փափաքելիք են, այլ չարեացն մանաւանդ յոյժ ահագինք են։ Արդ ամենայն ոք ամենայն պատուօք պատուեսցէ այսուիկ որ առ օրէնսն են զծնողսն՝ այժմիկ ասացեալ բանիցս հաւանելով։

Ապա եթէ ոք ըմբռնեալ է 'ի ձեռն անբարբառ համբաւի, և անլուր լինիցի այսպիսի յառաջաբանիցս, օրէն այս ինչ 'ի վերայ սոցա ուղղապէս կալով թերևս իցէ։ Եթէ ոք յայսմիկ քաղաքի առ ծնողս ծուլութիւն ունիցի յոր ինչ պատշաճն է, և ոչ քան զուստերայն և ամենայն ծննդոց իւրոց և անձին իւրոյ մեծապէս առ ամենայն ինչ յորդորեալ իցէ առ 'ի լսուլ զկամս սոցա, պատմեսցէ իսկ որ կրէն այսպիսի ինչ կամ ինքն, և կամ զոմն առաքելով առ յերիս օրինապահացն՝ այնոքիկ որ են երիցագոյնք, և առ երիս իսկ 'ի կանանցն՝ որ զամուսնութիւնսն մատակարարեն։ Եւ սոքա փոյթ արասցեն տանջելով զանիրաւսն գանիւք և կապանօք, մինչև ցամաց երեսնից՝ եթէ արք հանդիպին, և եթէ կանայք՝ քառասուն ամաց, յոլովագոյն տանջեսցին նոյն տանջանօք։ Ապա եթէ երկարաձգի ժամանակն՝ և ոչ փոխեն սոքա զտրամադրութիւնն ծուլութեանն 'ի լաւագոյնսն յաղագս ծնողացն, և չար ինչ գործի-

ցեն ումանք ումանց, 'ի հանդիսարան մուծանելով զոռ֊
սա՝ 'ի մի յիւրաքանչիւր քաղաքացեացն՝ այնոցիկ որ
ամենեցուն ծերագոյնքն իցեն. և թէ պարտապան
իցէ՝ պատուհասիցէ զնա հանդիսարանն, զոր ինչ
պարտ է հատուցանել կամ կրել՝ ոչ ինչ առանց ասա֊
ցուածի թողլով որչափ հնար է մարդոյ կրել կամ
հատուցանել: Եւ եթէ անկարող իցէ ոք՝ ծուլացեալ
'ի զաւակացն պատմել, որ վերահասու լինիցի յա֊
զատացն՝ պատմիցէ յիշխանացն, և չար իցէ կամ
վնասու պարտական ամենայն ոք որ կամիցի և ոչ
գուշակիցէ: Եւ եթէ ծառայ ոք որ զայսպիսի ինչ
ազդիցէ՝ ազատ իցէ. և եթէ այնոցիկ որ զծուլու֊
թիւնն առնեն, և կամ այնոցիկ որ կրեն ծառայի֊
ցէ՝ 'ի ձեռն իշխանութեանն ազատ իցէ. ապա եթէ
այլ ուրուք 'ի քաղաքացեացն՝ ատեանն զգին սորա
հատուսցէ ստացողի սորա. և իշխանացն փոյթ իցէ՝
գուցէ անիրաւէ ոք զայնպիսին 'ի սակս լուր առնե֊
լոյն զայս ինչ:

Իսկ որչափ այլ ոք այլում դեղիւք վնաս գործի֊
ցէ մահաբերքն 'ի սոցունց՝ յառաջագոյն ասացաւ:
Իսկ յաղագս այլ վնասուցն, եթէ ոք ըմպելեօք կամ
կերակրօք կամ օծանելով կամաւ նախախնամու֊
թեամբ վնասիցէ զոք՝ սոցունց ոչ ևս է ասացեալ:
Քանզի երկակի գոլով այսպիսի չարաչար դեղա֊
տուութեանս ըստ մարդկան սեռի, զյայտնապէս
պատմելն թաքուցանեն: Զմի զոր այժմիկ ասացաք՝
յայտնապէս մարմնօք մարմնոյ չար գործելն ըստ բնու֊
թեան է. բայց է որ կախարդութեամբք և թով֊
չութեամբք և ասացեալ կապանօքն հաւանեցուցա֊
նէ զայսոսիկ որ համարձակին սոցունց զնոսա գոր֊
ծել որպէս և կարեն. և զոմանս՝ զի 'ի ձեռն այսո֊
ցիկ համարձակագոյն գործիցեն՝ կախարդութեամբն
վնաս ինչ արասցեն սոցունց: Արդ այսոքիկ և որ ինչ
առ սոքօք են ամենայն, ոչ դիւրին եթէ որպէս եր֊
բեք բնաւորեալ է գիտել. և ոչ եթէ ծանիցէ՝
հաւանեցուցանելն զայնոսիկ: Հնար է և անձանց
մարդկան կասկածանս ունելով առ միմեանս յաղա֊
գըս այնպիսեացն՝ ոչ է արժան ձեռնարկութիւնս

առնել առ 'ի հաւանեցուցանել եթէ երբեք տեսցեն ուրուք նմանութիւնք ինչ ստեղծեալ կամ առ դուրս և կամ առ ճանապարհս կամ առ գերեզմանըս ծնողացն իւրեանց, դժուարանալ յաղագս այնոցիկ սովորեալ են, քանզի ոչ ունին հաւաստի աւանդութիւն յաղագս սոցա։

Այլ ըմբռնելով երկակի զօրէնսն որ յաղագս դեղատուութեանն, որպէս և ձեռնարկիցէ ոք դեղ ինչ գործել, նախ պարտ իսկ գոլ աղաչել և ողոքել և խորհրդակից լինել զի մի՛ գործիցէ զայս ինչ. և ոչ իբրու զմանկունս՝ զքազուամս 'ի մարդկանէ արհաւիրս առնելով երկեցուցանէ. և ոչ զօրինադիրն և զդատաւորըն հարկել զի բժշկիցէ զայնպիսի երկիւղս մարդկան. իբրու նախ զայն իսկ որ դեղ ինչ գործել ձեռնարկութիւնս առնէ՝ ոչ գիտելով եթէ զինչ գործէ զայնոքիկ որ ըստ մարմնոյ են, եթէ ոչ հանդիպի մակացող գոլով բժշկականի. և զայն իսկ որ առ կախարդութիւնսն՝ եթէ ոչ դիւթ կամ նշանադիտող գոլ հանդիպի։ Ասացի արդ բան այս ինչ օրէն յաղագս այսպիսի դեղատուութեանս։ Եթէ ոք աղանդիցէ զոք առ վնաս որ ոչ է մահաբեր՝ ոչ իւրն և ոչ մարդկան նորին, այլ չորքոտանեաց, և կամ հօյլից մեղուաց և կամ այլ ինչ վնասիւ և կամ մահաբերաւ, եթէ բժիշկ հանդիպիցի և պարտապան լիցի այսպիսի իրի՝ մահուամբ տուժեսցի։ Ապա եթէ ռամիկ, զոր ինչ պարտ է սմա կրել կամ հատուցանել՝ հանդիսարանն հրամայիցէ։ Ապա եթէ կապանօք և կամ թովչութեամբ և կամ այլովք այսպիսեօք աղանդիւ վնասակար լինիցի, եթէ դիւթ իցէ և կամ նշանադիտող՝ մեռցի. ապա եթէ առանց դիւթութեան ելով՝ այլոյ աղանդոյն պարտապան իցէ, որպէս վերագոյն ասացաւ՝ լինիցի և սմա. քանզի յաղագս սորա հանդիսարանն հրամայիցէ զոր ինչ և թուիցի սմա պարտ գոլ սմա կրել կամ հատուցանել։

Որչափ այլ ոք այլոյ ուրուք վնաս արասցէ գողանալով և կամ բռնադատելով, եթէ մեծ ինչ առցէ՝ մեծագոյն զտուրժն կրողին վնասուն հատուսցէ.

եթէ փոքր՝ տուրժեսցի փոքրագոյն. և առ ամենայն ինչ այսչափ թերևս յիւրաքանչիւրում ժամու տուրժիցէ ոք զայլ ոք՝ մինչև բժշկեսցէ զվնասեալն, և պատուհաս իւրաքանչիւր ոք առ իւրաքանչիւրում չար գործոյն հետևելով ի սակս ողջախոհութեան ընկալեալ։ Այն իսկ որ անհմտաբար չար ինչ գործիցէ, այլ ուրուք հաւանելով վասն մանկութեան, և կամ այլ իւիք այսպիսեաւ վարելով՝ թեթևագոյն կրիցէ։ Իսկ այն որ 'ի ձեռն իւրոյ անխոհեմութեան, կամ վասն ոչ հանդուրժելոյ հեշտութեանց, և կամ 'ի տրտմութեան երկիւղից զանգիտման, և կամ ցանկութեամբ ինչ կամ մախանօք կամ ցասմամբ, դժուարաբոյժ լինելով կրիցն՝ ծանրագոյն. ոչ 'ի սակս չարագործութեան հատուցանելով զպատուհասն, քանզի եղեալն՝ անեղ երբեք ոչ իցէ. այլ 'ի սակս յապառնի ժամանակի, կամ ատելոյ ամենևին զանիրաւութիւն սմա իսկ և տեսողացըն զսա արդարացեալ, և կամ վասն դադարեցուցանելոյ բազում մասունս այսպիսի դիպուածոյս։

Արդ վասն որոյ ամենայնի պարտ է և առ այսպիսիքս ամենայն հայելով օրինացն՝ նմանութեամբ աղեղնաւորի ոչ վատթարագունի՝ 'ի սակս մեծութեան տանջանացն իւրաքանչիւրոց և ամենևին արժանեացն. զնոյն ինչ գործելով պաշտօն տալ պարտ է դատաւորին այնմիկ՝ որ օրինադիրն է, յորժամ օրէնքն ինչ յորդորեն զսա՝ հրամայէ զոր պարտ է կրել կամ հատուցանել այնմիկ որ դատեալ իցէ, և օրինադրին պարտ իցէ որպէս կենդանագրի ենթագրել գործ՝ գրոյ հետևողք։ Զոր ինչ և այժմիկ, ով Մեգիլէ և Կլինիա, պարտ է մեզ առնել իբրու գեղեցկագոյն և արիագոյն. զգողացելոցն իսկ և զբըռնութեանց ամենեցուն զասացեալ տուժն որպէս պարտ է լինել մեզ, ասելի է, որպէս և թողացուցանեն մեզ օրինադրեալ աստուածքն՝ և աստուածոցն մանկունքն։

Եթէ ոք խելագարութեամբ մոլորեալ իցէ, ոչ շրջի յայտնապէս 'ի քաղաքին, այլ ընտանիքն իւրաքանչիւրոցն առ տունսն պահիցեն զսոսա որով և

գիտասցեն յեղանակաւ, և կամ տուրժս հատու-
ցեն: Իսկ որ 'ի մեծագունէ գնոյ՝ դրամս հարիւր,
թէ զծառայ իսկ և կամ զազատ անտես արասցէ.
և որ յերկրորդ գնոյն է՝ 'ի հնգիցն զչորս մասունսն
մնասին, և զերիսն՝ երրորդն, և զերկուսն՝ չորրորդն:
Արդ մոլին իսկ բազումք՝ բազում յեղանակաւ, զոր
այժմիկ իսկ ասասցաք, 'ի ձեռն հիւանդութեանց:
Բայց են և որք 'ի ձեռն ցասմանն չար բնութեամբ
միանգամայն և ոխնդրեամբ լինելով, որք և փոքու
թշնամութեանն լինելով բազում ձայնս արձակեն
չարաչար զմիմեանս հայհոյելով, ասեն բանս՝ զոր
ոչ վայել է քաջօրինաց քաղաքի լինել ոչ երբեք ոչ
և միով իւիք մի: Արդ յաղագս ոգելոյ զչար՝ այս
իցէ օրէն առ ամենեսեան: Մի ոք ասասցէ չար, ոչ և
միոյ ուրուք. և որ երկբայութիւն ունիցի՝ բանիւք
ինչ այլ ոք այլոյ ուրուք ուսուսցէ, և նախ ինքն
իմասցի զայնոսիկ որ երկբայողն իցէ, և զպատա-
հեալսն 'ի բաց կալով յամենայն ոգելոյ զչարն, քան-
զի 'ի հայհոյելոյն զմիմեանս անիծիւք, և 'ի ձեռն
գարշելի անուանց հասուցանելոյն յիգական համբաւս
միմեանց, նախ իսկ 'ի բանից թեթևագոյն իւր՝
գործով ատելութիւնք իսկ և թշնամութիւնք ծան-
րագոյնք լինիցի: Քանզի ապաշնորհ իրի ցասմամբ
շնորհելով ասացողն՝ լցուցանէ բարկութեամբ և չա-
րութեամբ յագեցուցանէ, որչափ 'ի ձեռն խրատու
երբեմն հանդարտեալն էր՝ դարձեալ վայրենի բա-
րոք հոգւոյն առ այսպիսի ինչ՝ գազանացեալ դժ-
խակենդան լինիցի՝ զդառն շնորհսն ցասմանն ընդու-
նելով:

Այսպէս արդ սովորեալ են ամենեքեան յետ վի-
ճաբանութեանն ստէպ եղանել առ այսպիսիս վա-
սըն ծիծաղելի ինչ բարբառոյ յաղագս ներհակին.
զոր սովորեալ ոք՝ ոչ ևս երբեք առաքինի յեղանա-
կին, ամենևին սխալեալ խոտորի՝ քան եթէ զմեծա-
խոհեմութեան զբազում մասունսն կորուսանէ: Արդ
'ի սակս այսորիկ 'ի տաճարի իսկ ամենևիմբք մի ոք այս-
պիսի ինչ բարբառիցի ոչ երբեք ոչ մի ինչ. և ոչ առ ոմա-
նըս հանդիսակատար զօհիւք, և ոչ առ նահատա-

կութեանց և ոչ 'ի վաճառի և ոչ 'ի հանդիսարանի, և ոչ առ հասարակաց ժողով և ոչ միոյ իսկ. այլ տանջեսցէ որ սոցունց իշխանն է՝ զիւրաքանչիւր ոք 'ի սոցանէ առանց բամբասանաց. և կամ ոչ երբեք յաղագս աբխութեանց վիճաբանեսցի՝ իբրու օրի-նաց ոչ մատակարարող, և ոչ արարող հրամայելոցն 'ի ձեռն օրինացն։ Ապա եթէ ոք առ այլ տեղիս անարգանս սկսանելով և կամ վանելով զայլ ոք զօր և իցէ՝ ոչ 'ի բաց կացցէ յայնպիսի բանիցն, որ հան-դիպեսցի երիցագոյն գոլով՝ օրինօքն բանիւք զսա վանիցէ խափանելով, և զայնոսիկ որք զայլում չա-րիս պատուասիրեալք լինին և կամ պարտապան՝ լի-նիցի 'ի կարգեալ տուրժն։

Աստացուք արդ այժմիկ իբրու որ ըստ անարգանս շարամանիցեն՝ առանց ծիծաղելի ինչ խնդրելոյ ասել՝ ոչ կարողն է վարիլ բանիւքն, և զայս ինչ բամբալ՝ սեմք՝ յորժամ և ցասմամբ լինիցի։ Բայց զի՞նչ. արդ զկատակերգողացն յօժարութիւնն ծիծաղելի ինչ առ մարդիկ ասելոյն, զոր և ընդունիմք թերևս եթէ առանց ցասման զայսպիսիս մեզ զքաղաքացիսն կա-տակերգելով ձեռնարկութիւն առնել ասելոյն, և կամ երկակի կարծեսցուք զխաղալն և զոչ խաղալն. և խաղալով իսկ ներեսցուք յաղագս ասելոյ ինչ ծաղրական առանց ցասման. իսկ շաբադասելով հան-դերձ ցասմամբ, որպէս ասացաք՝ ոչ իցէ պարտ և ոչ միոյ ուրուք. զայս ինչ արդ ոչ և միով իւիք վերադրելի է որում պարտ իցէ, և ոչ զայս ինչ, արդ օրինադրեսցուք։ Արդ քերթողի կատակերգու-թեան, և կամ ոմանց մեծավերջ տաղից, և կամ երաժշտից երգոյ՝ ոչ իցէ պարտ ոչ բանիւ և ոչ պատ-կերաւ և ոչ ցասմամբ ինչ և առանց ցասման ոչ և միով իւիք զոչ և մի ոք 'ի քաղաքացեացն կատակերգել։ Ապա եթէ ոք անհաւան լինիցի, զառաջնորդքն սոցա արտալածել 'ի գաւառէն յաւուրն յայնմիկ, և կամ տուրժել երեք մնասիւք առ տաճարաւն աստուծոյն ո-րոյ և նահատակութիւնն իցէ։ Եւ այնոցիկ որք ասացան յառաջագոյն իշխանութիւն գոլ յաղագս առնլոյն առ միմեանս սոցունց առանց ցասման իսկ հանդերձ

խաղալեօք պարտ իցէ. իսկ փութով համանգամայն արտամտելոց՝ պարտ ոչ իցէ այսուիկ։ Արդ քննութիւն հրամայիցի բոլոր խրատուն փոյթ աքարողին համբակացն. և զոր ինչ ևս դատ արասցէ, բերեալ յանդիման՝ պարտ է այնմիկ որ արարեալ իցէ, և որոյ պատասխանի տացէ, ոչ ինքն ցուցցէ ոչ և միոյ ուրուք և ոչ զայլ ոք ծառայ և կամ զազատ երևեսցի երբեք ուսուցեալ, և կամ չար գոլով կարծեսցի և անհաւան օրինացն։

Եղկելի արդ է ոչ ոք քաղցնու, և կամ այսպիսի այլ ինչ կրէ, այլ որ ողջախոհ գոլով, և կամ այլ ինչ առաքինութիւն և կամ զմասն սորա ունելով, եթէ գիպուած ինչ անըղձալի առ այսօքիւք ստասցի։ Վասըն որոյ սքանչելի արդեւք լինիցի՝ եթէ այսպիսի գոլով ամենևին ծուլասցի իբրու վերջին հասանել աղքատութիւն, եթէ ծառայ իցէ և եթէ ազատ, 'ի բնակեալ իսկ և 'ի չափաւոր քաղաքավարութեան և 'ի քաղաքի։ Վասն որոյ օրինադրին պարտ է դնել օրէն զգուշագոյն այսպիսեացս զայսպիսի ինչ. Աղքատ մի ոք 'ի քաղաքիս մերում լինիցի։ Այսպիսի ինչ եթէ ոք ձեռնարկութիւն առնել իբրու աններգործող աղօթիւք ինչ հաւաքիցէ՝ 'ի վաճառէն իսկ վաճառօրէնքն արտալածեն զսա, և 'ի քաղաքէն իշխանն քաղաքօրինացն, և ագարակաբաշխքն յայլոյ գաւառէն, առաքելով զսա արտաքս յայլ գաւառ. զի այս վայրն այսպիսի կենդանոյ ամենևին մաքուր լինիցի։

Եւ եթէ ծառայ կամ աղախին վնաս արասցէ օտարացն ծառայից զինչ և իցէ, ոչ պատճառակից լինելով սմա տեառն վնասուն ըստ անհմտութեան ողջախոհ պիտոյից, վնասողին տէրն՝ կամ զվնասն բժշկիցէ աննուազապէս, կամ զվնասողն աւանդիցէ 'ի տէրն վնասելոյն։ Ապա եթէ պատճառաւոր լինիցի տէր վնասելոյն հաղորդելով արուեստիւ վնասողին, և զվնասն ասիցէ լինել՝ վասն պատճառի զըրկելոյ զտէրն 'ի ծառայէ իւրմէ, դատ ընկալցի զչար արհեստիցն այնմիկ որ ասէ վնասիլ. և եթէ ընկալցի՝ իբրու պարտապան կրկնապատիկ զգինսն ծա-

ռային պահանջեսցի՝ զոր ինչ և հանդիսարանն գին դիցէ։ Ապա եթէ պարտ իցէ՝ զվնասն ողջացուսցէ, և զծառային աւանդիցէ։ Եւ եթէ էշ կամ շուն, կամ այլ ինչ յայլոց կենդանեաց վնասիցէ ինչ զմերձաւորացն՝ ըստ այսօրինակ հատուսցէ զվնասն։

Եթէ ոք ոչ կամեսցի՝ կոչեսցէ զնա որ զպէտսն ունիցի, և սա կոչեալ հանդիպիցի 'ի հանդիսարանն. և եթէ գիտիցէ և ոչ կամիցի վկայեալ՝ վնասեսցէ. և եթէ ասիցէ ոչ գիտել՝ յերկս աստուածսն 'ի Ջեւս և յԱպողոն և 'ի Թեմիս երդուեալ ճշմարտապէս ոչ գիտել, ազատիցի 'ի հանդիսէն. որ 'ի վկայութիւն կոչեալ՝ ոչ հանդիպեսցի կոչողին զսա, վնասուն պարտապան իցէ ըստ օրինացն։ Ապ'եթէ ոք զոմըն դատաւոր յարուսցէ վկայ՝ վկայեալ ոչ դատիցէ առ այնմիկ հանդիսին, և որ 'ի վկայութիւն կոչեալ և կնոջ ազատի՝ պարտ է վկայել և հանդիսակից լինել ում և կամեսցի, եթէ վերագոյն ամաց քառասունից լեալ իցէ, և 'ի հանդէս հասանել եթէ առանց առն իցէ. իսկ 'ի կենդանութեան առն՝ պարտ իցէ վկայել միայն։ Իսկ աղախնի և ծառայի և մանկան՝ վասն սպանման միայն պարտ իցէ վկայել և հանդիսակից լինել, եթէ երաշխաւոր արժանապարտն ճշմարտապէս կալ սմա հաստատիցէ մինչև ցհանդիսին։ Ապ'եթէ յանդիմանեսցի սուտ վկայել՝ քննել պարտ է այնօրիկ որ 'ի հանդիսին երկաքանչիւրոյն զբոլոր վկայութիւնն և զմասն սորա, եթէ ասիցէ սուտ ինչ վկայել նախ քան զընտրութեանն դատաստանին։ Եւ զկասկածանացն խնդրուածս՝ իշխանութեանցն պահել նշանագրեալս զերկաքանչիւրոցն և առտուեալ 'ի սուտ վկայութեանցն ընտրութիւն. և եթէ կալցի ոք երկիցս սուտ վկայեալ, զսա ոչ և մի ոք օրէն հարկիցէ գալ 'ի վկայութիւն։ Ապ'եթէ երիցս՝ ոչ ևս պարտ է սմա վկայել. և եթէ յանդըգնիցի ոք վկայել յերիցս՝ ըմբռնեալ ցուցցէ իսկ առ իշխանութիւնն սա որ և կամեսցի. և իշխանութիւն աւանդիցէ 'ի հանդիսարանն, և եթէ պարտապան իցէ՝ մահուամբ տուժեսցի։

Եւ որչափ վկայից վկայութիւնք ընկալցին իրա-

ւամբք սուտ թուեցեալք վկայել, և զյաղթութիւնն յարմարել յաղթողին, այսպիսեացս՝ եթէ քան զկէսն առաւելագոյնք՝ դատապարտիցին։ Այսպէս վկայեալք ոմանք զհանդէսն, այն որ ըստ սոցունց վկայութեանց յաղթեալ իցէ՝ վերստին դատելով և երկբայութիւն գոլով, և կրկնակի հանդէս, եթէ ըստ այսոցիկ և եթէ ոչ՝ հանդէսն դատեցաւ, և որպէս դատիցի արդեւք՝ այնպէս լինիցի կատարածն յառաջագոյն հանդիսիցն։

Բայց բազում գոլով բարութեանց առ մարդկային կենցաղումս՝ յոլովագունիցս սոցունց իբր ապականութիւնք ինչ բնաւորեցան, որք պղծեն իսկ և շաղախեն զնոսա։ Եւ արդ իրաւունք առ մարդկան որպէս ոչ է բարի, որ զամենայն մարդկայինս հանդարտեցուցանէ։ Եւ բարի ելով սորա, որպէս և հանդիսակցելն բարի է մեզ։ Զայսոսիկ արդ այսպիսի ելով, դաւաճանութիւն ինչ չար բարիանուն առաջի գնելով արհեստ, որ նախ իսկ ասէ գոլ ինչ հանդիսից հնար, և գոլ զսա հանդիսանալն, և զհանդիսակցիլն այլում՝ յաղթիլ, թէ իրաւի իսկ է և եթէ ոչ, առ իւրաքանչիւրում հանդիսի գործել իրն, և ձրի գոլ սորա արհեստիս և բանիցն որ 'ի արհեստէս, եթէ փոխանակ ոք ինչ տացէ։ Եւ զայսոսիկ արդ առ մերում քաղաքիս, եթէ արհեստ և եթէ անարհեստ իցէ ինչ հմտութիւն և կրթութիւն, մանաւանդ պարտ իսկ է ոչ բուսանիլ. և կարօտանալով օրինադրին հարցանել, զի մի ինչ ներհական հանդիսին բարբառի, և յայլում վայրի փոխեսցի։ Արդ հաւանելոցս այսոցիկ՝ լռութիւնք. և ոչ հաւանելոցն՝ ձայն այս ինչ օրինիւ, թէ թուիցի ուրուք ջանալ զիրաւանցն զօրութիւն առ անձանցն դատաւորացն 'ի ներհակսն դարձուցանել և առանց ժամու բազմահանդիսել այսպիսեօքս, և կամ հանդիսակցել գրիցէ ընդ սմա ով և կամիցի չարահանդիսութիւն և կամ չարի հանդիսակցութիւն. և դատեսցի յընտրելոցն դատարանին, և պարտապան ելով սորա՝ դիցէ հանդիսարանն եթէ ընչասիրութեամբ թուիցի զայս ինչ առնելով, և եթէ վիճաբանութեամբ է, գին հատցէ սմա դատարանն՝ որ-

չափ պարտ է ժամանակաւ այսպիսոյս, ոչ ուրուք հասանել 'ի հանդիսի, և ոչ հանդիսակից լինել: Ապա եթէ ընչասիրութիւն՝ օտարին գնալով 'ի գաւառէն, և ոչ երբեք դարձեալ գալ, և կամ տուրժել մանաւանդ մահուամբ. իսկ քաղաքացւոցն մեռանել 'ի սակս ընչասիրութեան՝ առ 'ի սմանէ ամենայն յեղանակաւ պատուեալ էր: Ապ'եթէ վիճաբանութեամբ ոք ընտրիցէ երկիցս զայս ինչ առնելով՝ մեռցի:

# ՊՂԱՏՈՆԻ

## ՕՐԷՆՔ ԿԱՄ ՕՐԷՆՍԴՐՈՒԹԻՒՆ

### ԵՐԿՈՏԱՍԱՆԵՐՈՐԴ



Պղատոն. Եթէ բարեխօս ոք կամ քարոզ՝ ստելով զքաղաքէն զօտարոտիս ինչ մաղթէ առ քաղաքի ուրեմն, և կամ առաքեալ՝ ոչ զնոյն մաղթութիւնս՝ ըստ որում առաքիցի, պատմիցէ. և կամ առ 'ի թշնամեացն դարձեալ կամ 'ի բարեկամացն՝ ոչ զառ 'ի սոցունց ասացեալսն տացէ ուղղապէս պատասխանի մաղթութեանցն. և կամ քարոզ ինչ արարեալ այսպիսի յանդիման լինիցի, հանդէպք ընդդէմ սորա իցեն՝ իբրու Հերմեսի և Ջեւսայ 'ի պատուէրս և 'ի կարգաւորութիւնս անօրէնութեամբ ամբարշտելոց. և պատուհաս զոր ինչ պարտ է կրել և կամ հատուցանել, եթէ պարտապան իցէ։

Կղինիաս. Գողութիւն իսկ ընչից՝ առանց ազատութեան, և յափշտակութիւն առանց յամօթոյ։

Պղատոն. Բայց յԱրամազդայ ուստերայսն ոչ ոք՝ ոչ ընդ նենգութիւն և ոչ ընդ բռնութիւն խնդալով խոկացեալ է 'ի սոցունց ոչ և մի ինչ։ Արդ մի ոք 'ի ձեռն քերթողաց, և մի այլաբար 'ի ձեռն ոմանց առասպելաբանից յածեալ, և առ այսպիսի 'ի բաց պատրելով՝ հաւանեսցի, և գողացեալ կամ բռնադատեալ՝ կարծիցէ ոչ ինչ առնել գարշելի, այլ զոր ինչ ինքեանք աստուածքն՝ գործել. քանզի ոչ ճշմարիտ է, և ոչ իրաւապէս. այլ գործէ այսպիսի ինչ անօրինաբար՝ ոչ աստուածք և ոչ որդիք աստուածոց. և զայսոսիկ օրինադրեալ մանաւանդ պարտ է գիտել կամ 'ի միասին ամենեցուն քերթողացն։

Արդ որ հաւանեսցի մերում բանիս, բարեբախտեսցի իսկ, և առ ամենայն ժամանակի բարեբախտ իցէ։ Եւ որ թերահաւատէ, յետ այսոցիկ այսպիսի ումեմն օրինով մարտիցի։ Եթէ ոք գողանայ հրապարակական՝ մեծ ինչ կամ փոքր, զնոյն պատուհաս կրիցէ. քանզի փոքր ինչ գողացեալն նորին իսկ փափաքանօք՝ ըստ զօրութեան փոքրագոյն գողացաւ. և որ զմեծագոյնն շարժէ բոլորովին զոր ոչ է եդեալ՝ ապիրատ իցէ[1]։ Պատուհաս արդ ոչ և մի ոք 'ի սոցունց նուազագոյն կրիցէ քան զմիւսն՝ 'ի սակս մեծութեանն գողացելոյ իրին. և ոչ այսպէս արժանի համարի օրէնսն տուրժել. այլ մինն թերևս տակաւին դիւրաբոյժ գոլովն, և միւսն անբոյժ։ Օտար արդ 'ի հանդիսականացն կամ 'ի ծառայիցն՝ եթէ ոք զոմն գողացեալ, 'ի հանդիսարանի ընկալցի իբրու դիւրաբոյժ 'ի պատշաճաւորացն գոլով՝ զինչ պարտ է կրել և կամ զինչ տուրժ հատուցանել սմա, ընտրութիւն 'ի դատաւորացն լինիցի։ Իսկ զքաղաքացին և զսնուցեալն որ իցէ 'ի քաղաքի սնեալ՝ եթէ զհայրենի գաւառն կողոպտելով և կամ բռնադատելով կալցի, եթէ յանդիմանապէս առձեռն և եթէ ոչ, գրեթէ իբրու անբոյժ ելով՝ մահուամբ տուրժելով։

Եւ 'ի սակս զինուորութեանն՝ բազում իսկ խորհուրդ և բազում օրէնք լինիցին ըստ յեղանակին. բայց մեծագոյն է՝ ոչ երբէք անիշխան ոչ և միոյ ուրուք գոլն՝ ոչ արուի և ոչ իգի, և ոչ սովորութեամբ ուրուք զհոգի սովորեցուցանել ոչ առ փոյթս և ոչ առ խաղալիս՝ ինքն յանձնէ իւրմէ առնել ինչ միայն. այլ առ ամենայն պատերազմի և 'ի խաղաղութեան՝ առ իշխանն միշտ հայելով հետևելով կեալ, և առ դուզնաքեայ իսկ իրողութիւնս առ 'ի սմանէ առնուլ զուղղութիւնսն. իբրև դադարել՝ յորժամ հրամայիցէ ոք, և գնալ և աշխատել և լուանիլ և յառնել 'ի գիշերի առ պահպանութիւնսն և պատուիրանսն. և նոցունց իսկ վշտացն պատերազմացն՝ ոչ

1 Յօրինակին ապա աբաւիշ է. ուղղեցաք ըստ բնագրին։

զոք հալածել, և ոչ տեղի տալ այլոյ ուրուք՝ առանց յայտնելոյ իշխանացն և մի իսկ բանիւ՝ զառանցելոցն գործել ինչ սովորութիւնքն, ուսուցանել հոգւոյն ոչ իսկ ճանաչել և ոչ գոլ ամենևին մակացող, այլ յանկարծակի միշտ և միանգամայն հասարակաց զկենցաղն իբրու մանաւանդ ամենևին ամենեցուն լինել։ Քանզի այսորիկ ոչ է և ոչ երբեք լինիցի լաւագոյն ինչ և ոչ վեհագոյն և ոչ արհեստականագոյն առ 'ի փրկութիւն, և յաղթութիւն որ ըստ պատերազմին է, զայս ինչ 'ի խաղաղութեան խոկալ պարտ է, և վաղվաղակի 'ի մանկութենէ իշխել իսկ այլոյին, և միւսոյ՝ ընդ իշխանութեամբ լինել։ Իսկ զանիշխանութիւնն 'ի բաց բառնալ պարտ է յամենայն կենցաղոյս յամենայն մարդկանէ իսկ 'ի գազանաց որ են 'ի ձեռն մարդկան։

Եւ զամենայն պարս իսկ արիութիւնսն որ առ պատերազմունսն են հայելով պարել. և զամենայն դիւրութիւն իսկ և զառձեռն իրս խոկալ 'ի սակս սոցունց. և ժուժկալութիւնք իսկ կերակրոց և ըմպելեաց և ձմերանի ժամանակաց և հակառակացն սոցունց և կարծր անկողնի, և զմեծագոյնն իսկ՝ 'ի գլխոյն և զոտիցն զօրութիւն ոչ ապականել օտարոտի ծածկոյթիցն զգեցմամբ զնմանեացն կորուսանելով թաղկեալ կօշկացն լինելութիւնն, և զամենայն բնութիւնն։ Քանզի այսոքիկ ծայրք գոլով՝ կացեալք 'ի մեծագոյն զօրութիւնն քան զամենայն մարմինն, և զներհակապէս և զպաշտօնականն իսկ ամենայն մարմնոյն, և զ..... կանն ունելով տիրապէս ամենայն զգայութեանց նորա բնու...... սանութիւն։

Արդ զայս ինչ լսել համբակին պարտ յաղագս պատերազմական կենցաղի, և օրէնք իսկ զայս զինուորիլ այնմիկ որ ընտրեալ է և կամ 'ի մասին ուրուք կարգեալ։ Ապա եթէ պակասիցի ոք չարութեամբ ուրուք զօրավարացն՝ ոչ թողլով դատաստան զինուորութեան գոլ, պատերազմական իշխանքն յորժամ եկեսցեն 'ի բանակէ անտի և դատել զզինուորսն իւրաքանչիւր՝ որոշելով զսպառազէնսն իսկ զմականձիսն, և զայլս որ ինչ 'ի պատերազմին են իրս

զիւրաքանչիւրս, այնպէս և մուծանել զսպառազէնն իսկ առ սպառազինացն, և զմակաձիսն առ հեծեալսն, և զայլն իսկ առ իւրեանցն օրինակիցսն: Նւ եթէ ուք պարտապան իցէ գոլ սմա՝ ոչ երբէք բոլոր քաջութեանն լինել նահատակող, և ոչ անզինուորութեան մանաւանդ ընդդէմ երբէք հանդիսանալ, և ոչ ջատագով 'ի սոցունց յաղթել, առ այսոքիւք տակաւին դատ արասցէ դատարանն, զինչ պարտ է կրել կամ հատուցանել:

Իսկ յետ այսորիկ վրէժխնդրութեանցն լինելով անզինուորութեանն հանդիսիցն՝ դարձեալ իւրաքանչիւրոց սոցունց իշխանաց առնել ժողով ընտրութեամբ. և վասն արիութեան դատել այնմ որ կամեսցի ըստ իւրեանցն սովորութեան: Ոչ յաղագս յառաջագոյն պատերազմի առնելով և ոչ ինչ՝ ոչ նշան իսկ և ոչ վկայից բանի հաւատարմութիւն և յաղագս նորին զինուորութեանն որ յայնժամ լինիցի: Սոցունց պսակ սաղարթի 'ի սակս յաղթութեան գոլ իւրաքանչիւրոց. և զայս ինչ առ պատերազմական աստուածոցն տաճարսն՝ ուր և կամեսցի ոք, գրելով վերադրել առ 'ի վկայութիւն, առ 'ի դատ արիութեանց ամենայն կենցաղոյն, և երկրորդացն իսկ և երրորդացն:

Ապ'եթէ զինուորութիւն արասցէ՝ սակայն ոչ եւս գոլով իշխանացն՝ 'ի տուն նախ քան զժամանակին՝ գնասցէ. պակասելոյն սորա 'ի դասէ անտի սոցունց գոլ իրս առ նոյն տաճարսն՝ առ որս և յաղագս անզինուորութեանն, և պարտապան ելով սոցա՝ իցեն պատուհասքն եդեալ յառաջագոյն:

Պարտ է արդ ամենայն առն յառնէ յայնմանէ որ զամենայն դատ 'ի վերայ հատուցանել կարող իցէ երկնչիլ, նոյնպէս և այնմ որ զդատն առնէ 'ի կրողէն, զի ոչ ածցէ 'ի տարապարտուց պատուհաս ուրուք ոչ կամաւ և ոչ յակամայ իսկ, ըստ որում հնար իցէ. քանզի Կոյս պատկառանաց դատաստան ասի իսկ և ճշմարտապէս ասացեալ է. իսկ սուտն պատկառանք իսկ և դատաստան՝ ատելի է ըստ բնութեան: Արդ յաղագս այլոցն՝ խորշիլ պարտ է սխալել յիրաւունս, և զանազանապէս յաղագս այնոցիկ որ առ

պատերազմունս 'ի բաց ձգեն զէնսն, զի մի՛ սխալեսցի ոք հարկաւոր առ հարկաւոր ձգելովն զսոսա՝ իբրու գարշելիս առ Նախատանս դնելով, և առանց արժանեաց հաստուցանելով տարաժամ պատուհաս։ Արդ զոչ և մի 'ի սոցանէ, ոչ և միով իւիք տարորոշել դիւրին է. սակայն և պարտ է օրինացն իբրու այսպէս ջանս տանել, զի 'ի մասանէ սահմանիցէ։ Առասպելաւ արդ վարելով համանգամայն, ասասցուք եթէ եկեալ առ տաղաւարն առանց զինիցն Պատրոկլոս ներշունչն եղև, որպէս զի 'ի միասին թիւրինս շնչեաց, և զյառաջագոյն զէնսն այնոցիկ՝ զորս ասէ քերթողն առ 'ի յաստուածոցն ձիր տուեալ 'ի հարսանիսն Պեղեւսի և Թետեայ. և զսոսա ունէր առ Ենտորոս՝ հնարէր առ այնոցիկ որ յայնժամ չարք էին Նախատել՝ զինիցն 'ի բաց ձգել զՄենիտիոսի։ Եւ տակաւին որչափ 'ի վիհս անկեալս կորուսին զզէնսն, կամ առ ձմեռնային տեղիս՝ ընկալեալ զսոսա յանկարծակի թաղում հոսմունս ջրոյ, և կամ թիւրինս Թերևս ունիցի ոք այսպիսի առասպելաբանելով մակերգել գեղեցկացուցանելով զչար՝ որ դիւրին է դաւաճանութիւնսն 'ի բաց հատանել։

Արդ պարտ է ըստ զօրութեան զմեծագոյնն և զդժուարին չարն 'ի ներհակէն՝ և գրեթէ առ Նախատանսն ունի որոշումն ինչ սոցունց անուանցն մակաբերութիւն։ Քանզի վահանընկէց ոչ յամենայնի անուանեսցի արդեւք իրաւապէս, այլ 'ի բաց եդող զինից. զի ոչ նմանապէս այն իսկ որ 'ի բաց լքեալ լինի վայելչական բռնութեամբ՝ անուանեսցի թերեւս ասպարընկէց, այլ որ կամաւ թողուցու. և զանազանի երբեք ամենայնն և բոլորն։ Այսուիկ արդ ասասցի օրինովս. «եթէ հասեալ ոք լինիցի առ 'ի թշնամեացն, և զէնս ունելով ոչ դարձցի և վանեսցէ զսոսա. այլ կամաւ թողուցու կամ խոնարհեցուցանէ, 'ի գարշելի կենացս ընտրելով հաղորդել մանաւանդ, քան եթէ արիութեամբ գեղեցիկ և բարեբաստ մահուանն հաղորդիլ, այսպիսւոյ արդ զինից փոփոխման իցէ պատուհաս ընկեցելոյն իսկ զառաջագոյն ասացեալն՝ դատաւորն մի՛ ծուլասցի դի-

տել․ քանզի զչարն միշտ պարտ է տանջել՝ զի լաւագոյն լինիցի, և ոչ զթշուառականն՝ առաւել քան զոր հանդիպեալն իցէ տուրժ։

Արդ այնմիկ որ զզօրութիւնն սպառնական զինուցըն 'ի ներհականն դարձուցանէ զինչ արդեւք պատշաճաւոր լինիցի․ քանզի ոչ է հնար մարդոյ այսուիկ զներհականն գործել իբրու երբեմն ասեն զաստուածն արարեալ, և զկենեւս զթասաղացին 'ի կնոջէ յառն փոփոխեր բնութիւն։ Քանզի էր յառն՝ որ ասպարընկէց իցէ, յեղանակաւ ումեմն վայելչագոյն մանաւանդ 'ի լինելութեանն ներհական ծնընդեամբ 'ի յառնէ 'ի կնութիւն փոխիլ պատուհասսմա լինելով։ Բայց այժմիկ այսոցիկ հպագոյն 'ի սակս անձնասիրութեան, զի զմնացեալ կենցաղն ոչ տուրժիցի․ այլ կեցցէ իբրու յոլովագոյն ժամանակ՝ չարգոլով և նախատանօք ըմբռնեալ․ առ այսոցիկ իցէ օրէն այս ինչ։ Այր որ դատի պարտապան իցէ՝ իբրու գարշելի 'ի բաց ձգել զօրէնս պատերազմականս, սովաւ ոչ ոք 'ի զօրավարացն՝ և ոչ այլ ոք որ առ պատերազմունս իշխանքն են, իբրու արամբ զինաւորաւ վարեսցի, և ոչ առ զինչ և է դասութիւն կարգեսցէ զսա։ Ապ՝ եթէ ոչ, տուրժեսցի այնպիսին որ խնդրող է սորա տուրժին․ եթէ իցէ իսկ 'ի մեծագոյն որ կարգեալ իցէ զայնպիսի չար այրն՝ դրամս հազարս․ ապա եթէ յերկրորդոյն՝ հինգ մնաս, և եթէ յերրորդոյն՝ մնասս երիս, և եթէ 'ի չորրորդոյն՝ մնաս մի։ Եւ որ պարտապան իցէ պատուհասին՝ առթողլովն յարիական տագնապմանցն՝ ըստ իւրում բնութեանն, հատուսցէ վարձս դրամս հազարս։ Իսկ եթէ 'ի մեծագոյն գնոյն իցէ և եթէ յերկրորդոյն՝ հինգ մնաս, և երիս՝ թէ երրորդոյն, և մնաս մի այսպէս՝ որպէս և յառաջագոյնսն՝ մասինն չորրորդին։

Իսկ յաղագս պատուհասչաց զինչ իցէ մեզ արդեւք բան վայելուչ, իշխանաց եղելոց ոմանց ըստ հանդիպման վիճակին, և ըստ ամի ամի՝ և ոմանց առ ամս յոլովագոյնս․ և 'ի նախապատուելոցս արդ յայդպիսեացս՝ պատուհասիչ ոմն բաւական։ Եթէ ասիցէ ինչ ոք դժուարին 'ի սոցունց խոնարհեալ 'ի

ձեռն ծանրութեան իսկ զիշխանութիւնն վարէ, և նուազութեամբ իւրոյ զօրութեանն ըստ իշխանութեանն արժանեացն, դիւրին իսկ ոչ և միով իւիք գտանել իշխանացն և միով իշխան գերազանցեալ ըստ առաքինութեանն. սակայն ջանալ պարտ է զպատուհասիչս ոմանս վերստին գտանել աստուածայինս:

Զի է արդ այսպէս. բազում ժամանակք են լուծման քաղաքավարութեան, որպէս տաճարի[1] և կամ կենդանւոյ ուրուք, զորս ներաձիգ իսկ և ստորագօտիք և ջիլք մականատարածք[2] մի գոլով բնութիւն սերմանեալ առ բազում տեղիս բազումք առասեմք. և մի՛ իսկ այսչափ փոքրագոյն ժամանակ կելոյ, և քակելով անցանել քաղաքավարութեանն: Զի եթէ որք զիշխանքն պատուհասեն՝ իցեն լաւագոյն սոցունց, և այս ինչ ամբիծ իրաւամբք և ամբծաբար իցէ, այսպէս ամենայն վայրն և քաղաքն սաղարթանայ իսկ բարեբաստի: Ապա եթէ այլաբար՝ որ առ պարտսն է իշխանաց իր լինիցի, յայնժամ լուծանելով իրաւանցն այնմիկ՝ որ զամենայն քաղաքավարութիւնսն 'ի նմին շարունակէ, այսպէս ամենայն 'ի բաց որոշելով մինն 'ի միւսոյն, և ոչ 'ի նոյնն տակաւին հայելով, բազումս 'ի միոյ զքաղաքն արարեալք և հակառակութեամբ լցեալք վաղվաղակի կորուսին. վասն որոյ պարտ է ամենայն պատուհասչաց սքանչելիս ըստ ամենայն առաքինութեան գոլ:

Նիւթեսցուք արդ ումեմն յեղանակաւ սոցունց լինելութիւն այսպիսի: Ըստ իւրաքանչիւր ամի յետ դառնալոյն արեգականն ամառնային յեղանակացն 'ի ձմերայինն՝ 'ի միասին գալ պարտ է ամենայն քաղաքին առ հասարակաց տաճարին Արեգական իսկ և Ապողոնի աստուծոյն, և բացերևեցուցանելով արս 'ի սոցունց զոր և իւրաքանչիւր ոք 'ի նոցանէ վարկանի ամենեւին արիագոյն գոլ, բայց յանձնէ իւր-

1 Յոյնն նաոս:

2 Յոյնն Ὑπυζώσαμα. կոտորք փայտից որ շուրջանակի 'ի նեցուկ և 'ի հաստատութիւն եդեալ են տախտակաց նաւուն:

մէ, ոչ նուազագոյն քան եթէ յիսնից լեալ ամաց։ Եւ նախընտրելոցն՝ զորս յոլովագոյնսն բերեն ողքա՝ ընտրեն մինչև ցկէս՝ եթէ դարք լինիցին։ Ապա եթէ կոճատք իցեն՝ զմինն 'ի բաց բառնալ՝ որոյ և նուազագոյնք լինիցին. և թողուլ զկէսն սոցունց՝ բազմութեամբ տալով զդատակնեացն պատասխանի։ Ապա եթէ ոմանց հաւասարք լինիցին՝ և զկէսն թուոյն յոլովագոյնք առնեն, 'ի բաց բառնալ զյոլովսն՝ ընտրելով համակութեամբն. և զայլսն դատելով դարձեալ բերել՝ մինչև ցերիս մնասցեն անհաւասարք։ Ապա եթէ ամենեցուն՝ կամ երկուցն հաւասարք լինիցին բարի մասամբք և պատահմամբ յորդորելով, վիճակաւ բաժանել. և զյաղթողն երկից և երից՝ պսակել սաղարթաւ, և զարիութիւնսն բացատրելով ամենեցուն վերասել՝ զի մագնեսացւոցն քաղաք՝ փրկութեան ըստ աստուծոյն դարձեալ հանդիպելով, բացերևեցուցեալ Արեգական՝ զարեգակն իւր, երիս ծայրագոյն աւանդութիւն Ապողոնի ըստ նախնի օրինին վերադրէ հասարակաց և արեգական որչափ ժամանակ հետևեսցին ընտրութեանս։ Եւ սոցա իսկ յառաջնումն ամի երկոտասան վրիժախնդիրքն 'ի բաց ցուցանել՝ մինչև յիւրաքանչիւրում եւթանասուն և հինգամ պատահին լինելով. և այսուհետև յերիս միշտ յաւելուցուն ըստ իւրաքանչիւր ամի։

Զսոսա զամենայն իշխանութիւնսն ըստ երկոտասան մասանց բաժանելով, և ամենայն ազատ տանջանօք վարելով և յանդիմանելով։ Բնակիցեն՝ որչափ և ժամանակ պատուհասիչք և վրէժխնդիրք իցեն, յԱպողոնի իսկ և յԱրեգական 'ի տաճարն, յորում և ընտրեցան իսկ։ Եւ զոմանս առանձին յիւրաքանչիւր ոք, և զոմանս հասարակաբար առ միմեանս դատելով՝ զիշխեցեալսն քաղաքին բացերևեցուցանելով, գիրս եդեալք առ վաճառին յաղագս իւրաքանչիւրոյ իշխանութեան՝ զոր ինչ պարտ է կրել կամ հատուցանել ըստ կամացն պատուհասչաց։ Եւ եթէ ոք յիշխանացն ոչ խոստովանեսցի դատիլ իրաւապէս, առ ընտրեալ դատաւորս մուծցէ զպատուհասիչն. և եթէ 'ի բաց փախչի ոք 'ի պարտուցն՝ սոցունց

պատուհասչացս ջատագով լինիցի եթէ կամեսցի։ Ապա եթէ կալեալ լինիցի պարտօքն, եթէ իցէ մահու դատակնիք հատեալ 'ի մահու պատուհասչացն, որպէս և հարկ է՝ պարզաբար մեռցի, և զայլ տուրժսըն եթէ կարող իցէ կրկնապատիկ հատուցանել՝ հատուսցէ։

Եւ զպատուհասն սոցունց լսել պարտ է եթէ ոյք ոմանք իցեն կամ զինչ յեղանակաւ։ Կենդանի արգելով սոցունց այսոցիկ՝ որ առ յամենայն քաղաքէն յառաքինութեամբ պատուոյն արժանացեալ են, նախագահութիւնք իսկ առ ամենայն կացուրդքն իցեն։ Եւ տակաւին այնոցիկ որ առ ելլենացիսն հասարակաց զոհքն և տեսութիւնքն՝ որչափ և այլոց հաղորդիցին տաճարաց՝ սոցունց զիշխանսն յիւրաքանչիւրում տեսութենէն արտաքս հանել. և զսոսա միայն սարդենի պսակելով յայնցանէ որ 'ի քաղաքին իցեն զարդարելով։ Գոլ և զամենայն քահանայսն իսկ Ապողոնի և զԱրեգական, և 'ի սակս քահանայիցն՝ յառաջնում ամին զընտրեալն, յեղելոցն առ ամին յայնմիկ քահանայիցն. և զանունն սորա վերստին գրել, որպէս և լինիցի չափ թուոյ ժամանակի, մինչև քաղաքն բնակեալ է։ Եւ վախճանելոց սոցա՝ նախադրութիւն և արտաքերութիւնք և գիրք իսկ զանազանք գոլ քան եթէ այլոց քաղաքացեացն, սպիտակ իսկ զամենայն հանդերձն ունելով, և լինել առանց ողբոց և հառաչելոյ հնգետասան աղջկանց պարու և արուաց միւսոյ մահճին շուրջ կալ. ոչ յերկաքանչիւր կողմանս՝ իբրու օրհնութիւն քերթեալ գովասանական առ քահանայսըն 'ի մասնէ երկաքանչիւրոցն երգելով բարեբաստելով օրհնութեամբ 'ի ձեռն ամենայն տուրնջեանն. և ընդ երեկսն 'ի դիրսն դնելով զնոյն մահիճս, հարիւր 'ի համբակացն՝ յայնցանէ որ առ կրթութիւնսըն են, զորս և ընտրիցեն ընտանիքն. և նախ առաջին գնալ մանկանց որ ամենեւին հարսանեաց անհմուտ են, զպատերազմական կազմութիւնն զգենլով իւրաքանչիւրոց հանդերձ երիվարօք. իսկ մականձիքն հանդերձ զինուքն. իսկ սպառազէնքն և այլքն նոյնպէս, և ման-

կունքն շուրջ զմահճաւն առաջի զհայրենի երգն օրհնելով, և աղջկունս հեռևեալ յետոյ. և որչափ կանայք 'ի մանկարարութենէ 'ի բաց դադարեալք հանդիպիցին։ Եւ յետ այսորիկ քահանայք իսկ և քահանայուհիք՝ իբրու մաքուր ելով, չիրմին հեռևին՝ թէպէտ և յայլոցն արգելեալ են չիրմիցն, եթէ և Պիւթիայ այսպէս իսկ և ըստ այսուիկ իցէ դատակից։ Եւ դիրք ընդ երկրաւս սոցունց գործեալ գոլ կամարատեսակ քար երկարաձիգ 'ի նախապատուելոցն և 'ի սխրալեացն ըստ զօրութեան, ունելով մահիճս առ միմեանց քարեղէնս եդեալս։ Ուր և զերանելի եղեալն դնելով և պատեալք հողով, շուրջանակի ծառից բազմութիւն բուսուցանեն՝ բայց 'ի միում տեղւոյ. իբրու զի աճումն թերևս չիրիմն ունիցի զայս ինչ՝ զի առ ամենայն ժամանակն անկարօտ իցէ հողոյ որ դնիին անդանօր։ Եւ ըստ իւրաքանչիւրում ամի ագոն երաժշտականի սոցունց՝ և մրցական երիվարացըն դիցեն արդ զպատիւս զայսոսիկ այնոցիկ՝ որ 'ի պատուհասիցն ճողոպրիցեն։

Ապա եթէ ոք 'ի սոցունց՝ վստահացեալ դատեըն ըստ մարդկային բնութիւնս, երևեսցի չար եղեալ յետոյ դատաստանին, դատաստան յարուցանել 'ի 'ի վերայ սորա կամողին՝ օրէնքն հրամայիցէ, և նահատակութիւնն 'ի հանդիսարանի լինիցի այսպիսի ումեմըն յեղանակաւ։ Նախ իսկ օրինապահքն լինիցին այսմիկ հանդիսարանի, և ապա նոյնք 'ի սոցունց որ կենդանիք են, և առ սոքօք ընտրելոցն հանդիսարան։ Եւ որ գրեսցէ որ գրելոց՝ վասն որոյ և գրեսցէ ասելով գրոյն՝ տարժան գոլ այսուիկ և այս առաքինութեանց և իշխանութեանն պատուոյն[1]։ Եւ եթէ փախչելով իսկ կալցի, զրկեսցի յիշխանութենէն և 'ի չիրմէն և յայլոցն տուելոց սմա պատուոց։ Ապա եթէ որ հալածէն՝ ոչ հաղորդեսցի հինգերորդ մասին դատաստանաց, այլ հատուսցէ որ

1 Յոյնն. Եւ մուրհակ ամբաստանութեանն ըստ այսմ օրինակի գրեսցի, զի այս ոք կամ այն՝ անարժան է պատուոյ առաքինութեան և իշխանութեան։

'ի մեծագունէն իսկ է գնոյն՝ մնաս երկոտասան, և ութ՝ որ երկրորդոյն է, և որ երրորդոյն՝ վեց, և որ չորրորդին՝ երկու։

Բայց զՌադամանթիւս ստացեալ զընտրութիւնսըն դատաստանացն՝ սխրանալ արժան է։ Վասն զի տեսաւ զմարդիկն որ յայնժամ էին, զի վարկանէին հաստատապէս աստուածք գոլ վայելչաբար իբրու ըստ այնմիկ ժամանակին բազմաց յաստուածոցն գոլով՝ յորոց մի էր և ինքն, որպէս բանն է, նմանեալ է. արդ սա ոչ և միոյ 'ի մարդկանէ դատաւորի յորդորեցուցանելով, ոչ այսպէս տրամախոհիլ յաստուածոց նմանէր։ Վասն որոյ պարզք և երագունք դատաստանք առ 'ի սմանէ լինէին. քանզի տալով յաղագս երկբայութեանց իւրաքանչիւրոց երդմունս այնոցիկ որ ընդերկուեալ լինին, 'ի բաց հատանէր զդատն վաղվաղակի և հաստատուն։ Իսկ այժմիկ՝ յորժամ մասն ինչ 'ի մարդկանէ ասեմք ամենևին աստուած ոչ վարկանիլ, և ոմանք տրամախոհիլ իբրու մեզ փոյթ ոչ առնեն, և յոլովագունիցն և չարագունիցն կարծիս է՝ իբրու զի փոքունս ընդունելով զոհս և զպաշտօն բազումս, բազում անգամ 'ի միասին զըկեն յընչից. և 'ի մեծագունից լքեալք լինելով զբազումս տուրժեն , ոչ ևս այժմիկ մարդկան Ռադամանթիւսի թերևս իցէ արհեստն վայելուչ 'ի դատաստանի փոփոխելով։ Արդ յաղագս աստուածոցն կարծեացն առ մարդկան՝ պարտ է և զօրէնսն փոփոխել։ Քանզի 'ի կատարածի դատաստանացն հանճարաւ եդեալ օրինացն 'ի բաց բառնալ պարտ է զերդմունսն զերկաքանչիւրոցն, այնոցիկ որ հանդիսանան՝ և զայն իսկ որում հասանին հանդէս ինչ զամբաստանութիւնսն գրել։ Իսկ երդմունս ոչ երդնուլ. և այնմ որ փախչի՝ ըստ այսոցիկ զուրացութիւնն գրելով առանց երդման, աւանդել յիշխանսն։ Քանզի դժուարին է երբեք դատաստանաց իսկ 'ի քաղաքի բազմաց լինելով՝ բարեւք գիտելն, զի փոքր ինչ կարօտանայ կիսոց 'ի սոցանէ երդմնահար լինել՝ առ զուգահաղորդութիւնսն դիւրաւ առ միմեանս պատահելով, և առ զուգաւորութիւնսն և ռամկա-

կան պատահմունս։ Իւրաքանչիւրոց օրէն արդ կացցէ՝ դատաւորի իսկ երդնուլ՝ հանդերձելով դատել. և այնմիկ որ հասարակաց իշխանութիւնս հաստատէ 'ի ձեռն երդմանց, և կամ տարբերութեանց դատակնիք զ'ի տաճարաց բերելով։ Առնել պարտ է զայսպիսի ինչ և դատաւորի իսկ, պարուց և ամենայն երաժշտականի և մրցանաց, և հեծելոց նահատակութեանց վերակացուաց իսկ և պսակաւորուաց, և ամենեցուն՝ որչափ շահ ոչ բերէ ըստ մարդկային կարծեաց երդմունս, այնմիկ՝ որ երդնու։ Իսկ այնոցիկ՝ որչափ ուրանալով և երդնլով շահ մեծ յայտնի գոլ թուիցի զայսոսիկ 'ի ձեռն անիրաւ երդմանց, որիշ դատել 'ի միասին զամենայն ամբաստանելոյն զմիմեանց, և ամենեւին 'ի դատաստանի նախագահելիցն ոչ հրամայել. ոչ երդմամբ ասել ինչ 'ի սակս հաւանութեամբ, և ոչ անիծելով անձին իւրոյ և ազգի, և ոչ ծառայութեամբ վարիլ տարաձև, և ոչ հիքական խանդաղատանօք, այլ զիրաւունսն բարեբանելով ուսուցանելով և ուսանել միշտ գոլ։ Ապ'եթէ ոչ, իբր արտաքոյ բանին ասելով սորա՝ իշխանացն դարձեալ վերստին ածել համապազ յաղագս իրողութեանն բանի։

Եւ օտարի գոլ առ օտարս որպէս այժմիկ՝ ընդունել երդմունս առ 'ի միմեանց, եթէ կամիցին և հատուցանել տիրապէս. քանզի ոչ ծերասցին, և ոչ համբականալով 'ի քաղաքի իբրու բազում անգամ, զայլ տէրս գաւառին առտուիցեն մնընդակիցս։ Արդ յաղագս կատարածի դատաստանացն՝ յեղանակաւս գոլ առ միմեանս ամենեցուն ընտրութեանց. որչափ ազատ ոք անհաւան լիցի քաղաքի, ոչ գտանիցի իսկ արժանի և ոչ կապանաց և ոչ մահուան։ Եւ յաղագս պարուց ոմանց աշակերտութեանց և կամ մաղթանաց և կամ այսպիսեաց ոմանց այլոց հասարակաց զարդարմանց և կամ պաշտմանց, որչափ յաղագս զոհի խաղաղականի, և կամ 'ի սակս պատերազմական շահուց, ամենեցուն այսպիսեացս առաջնոյ հարկին բուժել 'ի գոլ տուրժին։ Իսկ այնոցիկ որ ոչ հաւանին՝ գրաւահարկութիւն այնոցիկ որոց քա

ղաքն համանգամայն և օրէնքն պահանջել հրամայէ. և այնոցիկ որոց անհաւանին վասն գրաւականից՝ վաճառումն գոլ սոցունց, և դահեկանաց լինել քաղաքին։ Ապա եթէ յոլովագոյն տուրժի կարօտանայ, իշխանութեանցն իւրաքանչիւրոց՝ այնոցիկ որ անհաւանին զվայելչական տուրժսն հատուցանելով մուծանել 'ի հանդիսարանն, մինչև կամեսցին առնել զհրամայեալսն։

Եւ քաղաքի իսկ որ ոչ իրաւօքն՝ բայց առ 'ի յերկրէ պտղոցն թերմանէ, և ոչ վաճառի գնալով արտաքոյ գաւառին, և վասն օտարաց ընդունելութեան այլուստ եկելոց, հարկ է խորհիլ թէ զինչ պարտ է առնել. և խորհրդոց զօրինադիրն յաղագս այսոցիկ ընկալուլ՝ յառաջագոյն հաւանեցուցանելով ըստ զօրութեան։ Այլ բնաւորեալ է քաղաքացն խառնումն առ այլոց քաղաքաց՝ պէսպէս սովորութիւնք ծնանիլ, նորաձևութիւնք միմեանց առնելով օտարացն առ օտարն, և բարեւք իսկ քաղաքավարելոցն 'ի ձեռն ուղղագոյն օրինացն՝ վնաս մեծագոյն ամենեցուն բերիցէ։ Իսկ այլոց քաղաքաց ոչ և միով իւիք քաջօրինելոց՝ ոչ ինչ տարբերութիւն առնէ չփոթանաց, ընդունելով իսկ զօտարսն. և ստացունց առ այլոցն հասանել, յորժամ ցանկասցի ոք բացագնացութեամբ՝ ուր և իցէ կամ յորժամ, եթէ համբակ և եթէ ծեր գոլով։

Բայց ոչ զայլսն ընդունելն իսկ, և ոչ ստացունց այլ ուրուք 'ի բաց գնալ համանգամայն ամենևին ոչ յարմարի, և տակաւին վայրենագոյն և անամօք երևեացի այլոց մարդկան, դժուարին անուամբ ասացելովքն օտարահալածութեամբն վարելով և յեղանակօք որ են յանդգունք և դժուարինք իբրու թուիցի արդեւք։ Այլ պարտ է ոչ երբեք փոքր ինչ փոյթ առնել՝ բարիք գոլ այլոցն թուելոյ և կամ ոչ թուելոյ. քանզի ոչ որչափ 'ի գոյացութենէ առաքինութեան սխալեալք հանդիպիցին բազումք, այնչափ և առ դատելն զայլս՝ որչափ չարք են և քաղցունք, այլ աստուածային ինչ և բարեհանդէպ է այս չարեացն. վասն որոյ և բազումք յայնցանէ որ յոյժ չարք

են՝ բարեւք բանիւք և կարծեօք բաժանեն զլաւագոյնսն մարդկան և զվատթարագոյնսն. վասն որոյ բարի բազում քաղաքաց և հրամանքս այս՝ զի նախապատուիցեն զառ 'ի բազմաց բարեփառութիւն. քանզի ուղղագոյն և մեծագոյնն գոլով բարի ճշմարտապէս՝ այսպէս և զբարեփառ կենցաղն որսալ. զի առանց այսուիկ ոչ և միով իւիք հնար է գոլ այնմիկ՝ որ լինելոց է այր կատարելագոյն։ Եւ արդ որ առ Կրետէ բնակեալ են քաղաքիս, վայելուչ իցէ թերևս կարծիս առ 'ի յայլոց մարդկանէ որ ինչ գեղեցկագոյն է և արիագոյնն՝ պատրաստել ըստ առաքինութեան. և ամենայն յոյս սորա 'ի վայելչագունիցն՝ եթէ ըստ համեմատութեան իսկ լինիցի՝ յետ փոքունց զԱրեգակն տեսցէ. և այլ աստուածք առ քաջօրէն քաղաքացն և գաւառացն։

Այսպէս արդ պարտ է առնել յաղագս բացագնացութեան առ այլոց գաւառաց և տեղեաց, և յաղագս ընդունելութեան օտարաց։ Նախ իսկ համբակագունի՝ քան եթէ ամաց քառասնից ոչ իցէ պարտ 'ի բաց գնալ ոչ ուրուք և առանձին ոչ և միոյ ուրուք. այլ ատեննաբար պարտ է 'ի քարոզս և 'ի մաղթանս, և կամ 'ի տեսութիւնս ինչ. բայց 'ի պատերազմունս, 'ի զինուորութիւնս և 'ի բացագնացութիւնս՝ ոչ է պարտ բացագնացութեամբ քաղաքականօք առասելի գոլ 'ի սոցանէ։ Արդ 'ի Պիւթիա առ Ապողոնի, և յԱւլոմպիա՝ յԱրամազդեայ, և 'ի Նեմեայ և յիսթմոս պարտ է առաքել՝ հաղորդելով զոհից իսկ և նահատակութեանց սոցունց աստուածոց, և առաքել ըստ զօրութեան իբրու յոլովագոյնս միանգամայն և գեղեցկագոյն և արիագոյնս, որք բարեւք զքաղաքն արասցեն՝ 'ի յայլոց թուեցեալ սրբազան և խաղաղական հանդիպմամբ, և կաճառմամբ այնոցիկ որ առ պատերազմունս են հակադարձեալ բացատրելով զպատրաստութիւն կարծեաց, և գոլով 'ի տունսն՝ ուսուցանեն զհամբակքն զոր ինչ այլոց իրաց են օրինականք։

Զայնոսիկ որ յաղագս քաղաքավարութեան են և տեսուչք՝ և զայլս առաքել պարտ է զայսպիսի

ամանք յօրինապահացն, թողայուցանելով եթէ ոմանք ցանկան 'ի քաղաքացեացն զայլոց մարդկան իրողութիւնս տեսանել ըստ ուժոյն յոլովագոյն պարապման, ոչ ոք խափանեսցէ զսոսա օրէնքս. քանզի անհմուտ գոլով քաղաքն մարդկան չարեաց և բարեաց, ոչ կարասցէ արդեւք անհաղորդ գոլով՝ հանդարտ գոլ բաւականապէս և կատարեալ, և ոչ զօրէնս պահել առանց կամաւ ըմբռնելոյ զսոսա, և ոչ միայն սովորութեամբ և դրութեամբ: Քանզի են առ բազումս 'ի մարդկանէ հանապազ աստուածայինք ոմանք՝ ոչ բազումք, սակայն արժանիք ամենայնի հպել և կաճառել, բուսանելով ոչ առ քաջօրէն քաղաքաց և կամ ոչ. որոց հետևելով միշտ պարտ է այնմիկ որ բնակեալ է առ քաջօրէն քաղաքաց, ելանելով ընդ ծով և ընդ ցամաք, խնդրելով զայնոսիկ որ իցէ առանց ապականութեան, զոմանս հաստատելով յօրինացն որչափ բարեւք եդեալ են սոցունց, և ըզմիւսս վերստին ուղղելով թէ ինչ պակասեալ իցէ. քանզի առանց այսուիկ տեսութեանս և խնդրուածոյս՝ ոչ մնասցէ երբեք քաղաք կատարելապէս, ոչ՝ թէ չար բարօք զսա տեսցեն:

Կղինիաս. Ո՞րպէս արդ լինիցին երկաքանչիւրքս:

Պղատոն. Այսպէս. Նախ իսկ տեսուչս այսպիսիս լեալ առ մեզ՝ իցէ ամաց յոլովագունից քան եթէ յիսնից. և ևս 'ի բարեւք ընտրելոց՝ առ այլմն իսկ, և առ պատերազմունսն իցէ եղեալ, թէ հանդերձեալ իցէ զօրինապահացն ցոյց առ այլոցն կրել քաղաքայ: Եւ յոլովագոյն քան եթէ ամաց վաթսնից, ոչ ևս տեսցէ. այլ տեսեալ՝ որչափ և ախորժիցէ ամս ներքոյ տասանցն, և դարձեալ 'ի տուն՝ առ ժողովն հասցէ այնմիկ որ զիրս օրինացն քննեն: Եւ ժողով այս իցէ խառնեալ 'ի համբակաց իսկ և յերիցագունից, իւրաքանչիւրում աւուր ժողովելով հարկաւ՝ յառաւօտէն մինչև 'ի բարձունս հասանելոյն արեգականն. նախ իսկ քահանայիցն՝ այնոքիկ որ ընկալեալ իցեն զընտրութիւնսն. և ապա յօրինապահացն տասանց հանապազ մաղթողացն, և տակաւին այնոքիկ ոք յիշխանութենէն յայսմիկ 'ի բաց փոխեալք

իցեն։ Եւ իւրաքանչիւր ոք 'ի սոցանէ ոչ միայն հաւացէ, այլ համբակաւն յերեսուն ամէն գոլով մինչև ցքառասուն՝ որ հաճոյ իցէ սմա առնելով։ Եւ բանք և հանդիպմունք սոցունց և 'ի միասին գոլ՝ յաղագս օրինաց միշտ 'ի սակս իւրեանց քաղաքին. և եթէ այլ ուրուք իմանան ինչ յաղագս այսոցիկ նորագոյն։ Եւ յաղագս ուսմանց արդ որպէս առ այնմիկ խնդրրուածոյն պատշաճ գոլ թուիցի, զորս ուսանելով պանծալի լինել, և ոչ ուսանելով՝ աղջամղջին այնոցիկ որ առ օրէնսն են իրս երևիլ և անհաւատի։ Եւ զորս 'ի սոցանէ ընտրիցեն ծերագոյնք, համբակագունիցն որպէս փութով ուսանել։ Եւ եթէ անարժան ոք թուիցի յայնցանէ որ կոչեալ իցեն գոլ, զայն որ կոչեալ իցէ՝ բամբասել բոլոր ժողովքն. և որք ընտրեալք երևեսցին քաջութեամբ՝ այսոցիկ համբակացն պահել այլոց քաղաքին հայելով առ սոսա, և զանազանապէս զգուշանալով և պատուելով զսոսա զուղղութիւնս արարեալս, և անարգել մանաւանդ քան զայլս՝ և եթէ վատթարագոյնք քան զբազումս երևեսցին։

Արդ առ այսմիկ ժողովս՝ տեսեալ զոր ինչ առ այլոց մարդկան օրէնսն են 'ի վերայ հասանելով, վաղվաղակի գնասցէ. և եթէ համբաւ ինչ յաղագս ոմանց օրինադրութեանց կամ խրատու կամ սնընդեան՝ և եգիտ զոմանս ունելով, ասասցէ թէ և ինքն իմացեալ իցէ 'ի միտս իւր, վաղվաղակի առ հասարակ ասասցէ ամենայն ժողովոյն. և եթէ ոչ ինչ 'ի վատթարագունիցն և կամ 'ի լաւագունիցն եկեալ թուիցի՝ սակս յոյժ յօժարութեանն գովեսցի. և եթէ յոյժ լաւագոյն իցէ՝ յոյժ գովեսցի, մանաւանդ 'ի կենդանութեան. և վախճանեալ իսկ՝ պատուօք զնա պատուիցէ զօրութիւն պատշաճաւոր ժողովելոցն։ Եւ եթէ ապականեալ 'ի բաց դարձեալ թուիցի՝ ոչ և միոյ ուրուք պատահեսցի. ոչ ընդ համբակի և ոչ ընդ ծերի, ձևացուցանելով զանձն իւր գոլ իմաստուն։ Արդ եթէ հաւանեսցի իշխանացն՝ այնպիսին կեցցէ, ապա եթէ ոչ՝ մեռցի։ Եթէ 'ի հանդիսարանի իսկ կալցի՝ քննութիւն առնելով ինչ յա-

ղագս օրինաց և խրատու. ապ՚եթէ արժանի գոլով
զնա 'ի հանդիսարան մուծանել՝ ոչ ոք յիշխանացն
մուծցէ, նախատինս կացցէ յիշխանացն առ ընտրու-
թեան պատուոյն հանդէսքն։ Արդ 'ի բաց գնաջեալն
այսպէս՝ և այսպիսի գնասցէ 'ի բացագնացութիւն։

Իսկ զոր ինչ առ այնմիկ որ եկ իցէ, յետ այսորիկ
պարտ է խոհեմութեամբ կալ։ Զորս են յօտարս՝
յաղագս որոց բան ինչ առասելի է։ Արդ որ առա-
ջին է՝ և 'ի ձեռն ամառնային դեգերման իբրու
բազում անգամ դեգերելով առ ուսմունսն որպէս 'ի
հաւսն գնացեալս, և 'ի սոցանէ բազումս անարհես-
տաբար իբրու ընդ ժողովս սլացեալք, և այլոց քա-
ղաքաց՝ զոր վաճառարանօք և նաւահանգստօք և
ատենական շինուածօք արտաքոյ քաղաքին առ քա-
ղաքաւն, ընդունել պարտ է իշխանացն որ կարգեալ
են առ այսոքիւք, զգուշանալով զի մի ինչ յանդրդ-
նութիւն արասցէ առ ոմանս այսպիսի օտարացս ոք,
և զդատաստանս ուղղապէս հատուցանելով սոցա
հարկաւորապէս իսկ իբրու սակաւուք վարելով։

Եւ երկրորդն աչօք ճշմարտապէս տեսուչ՝ որչափ
առ երաժշտից ականջսն հուպ են տեսութիւնքն։
Արդ այսպիսոյ ամենայնի պարտ է յիջաւանք առ
տաճարսն գոլ, օտարասիրութեամբ մարդկան պատ-
րաստեալք. բայց պարտ է սոցունց՝ քահանայիցն
իսկ և տաճարապետացն փոյթ առնել և դարմանել
զսոսա. իբրու զի զչափաւորն արդեւք ագանելով
ժամանակ՝ տեսանելով իսկ և լսելով 'ի սակս որոց
հասեալ իցեն, առանց վնասու յառնելոյն իսկ և 'ի կրե-
լոյն 'ի բաց փոխիցի։ Եւ դատաւորք սոցունց գոլ
քահանայիցն. եթէ անիրաւէ ոք 'ի սոցանէ զոմն,
և կամ զայլ ոք անիրաւէ ոք 'ի սոցանէ՝ որչափ սա-
կաւագոյն է քան զդրամս յիսունս. ապա եթէ մե-
ծագոյն ամբաստանութիւն լիցի՝ առ վաճառօրի-
նացն պարտ է գոլ հանդիսից սոցունց։

Իսկ զերրորդ՝ օտար ընդունել պարտ է յատենի
որ վասն ատենականի ուրուք այլմէ գաւառէ ե-
կեալ իցէ, զոր զօրավարաց իսկ և հեծելապետաց և
դասապետաց միայնոյ ընդունել պարտ է, և զմատակա-

րարութիւն սոցունց համդերձապահապանօքն առնել պարտ է այնմիկ առ որում և 'ի սոցանէ ոք իջաւանեալ զհանգիստն արասցէ։

Իսկ զչորրորդն՝ եթէ ոք հասանիցէ, նուազապէս իսկ, այլ սակայն թէ եկեսցէ երբեք ոք տեսուչ յայնցանէ որ առ 'ի մէնջ առաքեալ իցեն անդրադարձեալ յայլմէ գաւառէ, նախ իսկ ոչ ինչ նուազագոյնք լեալք քան եթէ ամաց յիսնից. և առ այսուիկ արժանացեալ բարի ինչ տեսանել առ այլոց քաղաքաց գեղեցկութեամբ զանազանեալ և թուեցեալ ինչ ըստ այսոցիկ այլում քաղաքի հասցէ։ Իսկ այժմիկ ամենայն ոք այսպիսի՝ առանց հրամանի առ դուրսն փարթամացն և իմաստնագունիցն՝ այսպիսի ոք գոլով և ինքն։ Քանզի առ այնմիկ որ ամենայն խրատու մատակարարողն է բնութիւնն՝ հասցէ հաւատալով բաւական գոլ այսպիսի հիւրընկալութեանս, և կամ առ տունսն՝ որ յաղթազգածս են արիութեամբ։ Եւ 'ի միասին գոլով առ ումն 'ի սոցանէ, զամըն ուսուցանելով՝ և զումն ուսանելով, 'ի բաց գնասցէ. բարեկամ առ 'ի բարեկամաց՝ ձրիւք և պատուօք վայելչականօք պատուեալ։

Այսոքիւք արդ օրինօքս ընդունել իսկ պարտ է զամենեսեան հիւրս՝ արք իսկ և կանայք, յայլմէ եկեալ գաւառէ, և զայնոսիկ՝ որ իւրեանցն են առաքեալ. պատուելով զհիւրընկալն Զեւս, ոչ կերակրօք և զենլեօք զօտարահալածութիւնսն առնելով՝ որպէս առնեն այժմիկ ծնունդք Նիղոսի, և ոչ քարոզութեամբք վայրենագունիւք։

Երաշխիս՝ զոր ինչ և երաշխնէ ոք, յայտնապէս երաշխաւորիցէ՝ զվարսն ամենայն խոստովանելով շարագրութեամբ, և առաջի վկայից ոչ նուազագունից քան եթէ երից, որչափ ներքոյ դրամոց հազարաց։ Իսկ վերագոյն իցէ քան զհազարն՝ ոչ նուազ քան եթէ հնգից։ Երաշխաւոր արդ է և նախավաճառողն որ և իցէ իրի, այնմիկ՝ որ ոչ իրաւապէս վաճառել և կամ ոչ արժանապատուաբար, և պարտապան իցէ դատապարտութեանն նախավաճառողըն որպէս և բացատրողն։

Իսկ եթէ քննութիւն խուզմամբ կորուսեալ իրի կամեսցի առնել առ որում և իցէ, մերկ և կամ 'ի ձորձոյ ինչ զգենլով առանց գօտւոյ, նախ երդուեալ յաստուածոյն՝ յօրինացն ճշմարտապէս յոյս ունել գտանելոյ այսպէս խնդրել. և նա իսկ առ որում խնդրէն՝ տալ զտունն՝ զնշանեալ իրսն և զոր ինչ առանց նշանի իցեն՝ 'ի քննութիւն: Ապ'եթէ քննել կամողի ուրուք ոչ տացէ որ իշխանութիւն կամ քննութիւն հանդիսի, կացցէ քննողն ընդ խափանողին իւրոյ. և եթէ պարտապան իցէ՝ զկրկնապատիկ գինոյն վնասուն հատուսցէ: Ապ'եթէ գնացեալ տէր տանն հանդիպեսցի՝ զանխիշ իրսն իսկ առաւելեսցեն բնակիչքն 'ի քննութիւն, և զնշանեալն կնքեսցէ. և զոր և կամեսցի պահապան դիցէ աւուրց հնգից՝ որ զքննութիւն առնէ: Ապա եթէ յոլովագոյն ժամանակ մնացի հեռացելոյն յամելն՝ զքաղաքօրէնքն առնլով այսպէս քննիցէ, լուծանելով և զկնքեալսն, և դարձեալ հանդերձ ընտանօքն և քաղաքօրինօքն այնպէս կնքեսցէ:

Յերկբայելոյն ժամանակի սահման, զոր և ստացեալ որ իցէ՝ ոչ ևս յերկբայիլ պարտ գոլ, վայրի իսկ և տանց այսպէս ոչ իցէ յերկբայութիւն: Իսկ այլոց՝ զոր և ինչ և իցէ վաճառեալ, եթէ առ քաղաքաւ և 'ի վաճառի և առ տաճարս երևեսցի վարեալ՝ և ոչ որ 'ի վերայ հասանիցէ, և ասիցէ խնդրել ըստ այնմիկ ժամանակի, և նախ իսկ ոչ յայտնապէս թաքուցեալ իցէ. եթէ այսպէս ամն առ մի մի զինչ և իցէ վաճառեալ իցէ, և սա խնդրելով գտանիցէ, ոչ է պարտ այնպիսի ստացուածոյն հասու լինել և ոչ ինչ առ մի մի անցանելով: Ապա եթէ 'ի քաղաքի իսկ ոչ, և ոչ առ վաճառարանի վկայեսցի, այլ յագարակի յայտնապէս, և ոչ հանդիպող առ հնգից ամաց լինիցի, հնգից անցանելով ամացն՝ ոչ ևս առ այլում ժամանակի պարտ իցէ սմա այնպիսի իրին հասանել: Եւ եթէ առ տունս 'ի քաղաքի որ վարեսցի՝ եռամեայ գոլ պայմանին. և եթէ առ ագարակօքն գաղտապէս ստացեալ իցէ՝ տասն ամաց: Ապա եթէ այլ ուրուք գնացեալ իցէ յամենայն ժամա-

նակի երբեք գտանիցի՝ պայման ոչ իցէ 'ի վերայ հասանելոյն իւրին։

Եթէ ոչ ոք թողուցու զայլ ումն 'ի դատաստան հասանել՝ այլ արգելլիցէ զնա բռնութեամբ՝ կամ զկինքն, և կամ զկոյսն[1] իւր, եթէ զծառայ իւր և կամ զօտար ծառայ, անկատար և ապախտ իցէ դատաստան նորա։ Ապա եթէ ազատ իցէ, յետ անկատար գոլոյն դատաստանին՝ կապեսցի բռնադատողն ամ մի, և պարտապան այրագողութեան կամողին լինիցի։

Ապա եթէ զնահատակող 'ի կրթարանէ և կամ յերաժշտականէ և կամ յայլոյ ուրուք նահատակութենէ արգելլիցէ ոք բռնութեամբ ոչ հասանել, տացէ որ և կամեսցի 'ի նահատակապետացն. և սոքա ազատելով զխափանեալն, զի հասցէ 'ի նահատակութիւն իւր։ Ապա եթէ ոչ կարասցեն՝ եթէ արգելողն իսկ նահատակեալ յաղթիցէ, յաղթութիւն այնմիկ տուիցէ՝ որ առ 'ի սմանէ խափանեալն իցէ և յաղթեալ, գրել առ տաճարսն որք և կամեսցին զնա յաղթող. և այնմ որ խափանեցն՝ ոչ է պարտ և ոչ ինչ վերադրութիւն կամ մակագրութիւն այսպիսի նահատակութեանս լինել երբեք. այլ մնասու պարտապան իցէ թէ պարտեալ իցէ նահատակելով և եթէ յաղթեալ։

Եթէ գողութիւն զոր ինչ և իցէ ընդունիցի ոք գիտելով՝ զնոյն պատուհասն կրիցէ զայնմիկ որ գողացեալ իցէ. և փախուցելոյն ընդունելութեան տուրժն՝ մահ իցէ. զնոյնն բարեկամ իսկ և թշնամի համարեսցի ամենայն ոք քաղաքին։ Եթէ ոք առանձին արասցէ առ ումանս խաղաղութիւն և կամ պատերազմ առանց ատենին, և մահ իցէ և սորա տուրժն։ Եւ եթէ մասն ինչ քաղաքի՝ խաղաղութիւն և կամ պատերազմ առ ոմանս ինքեամբ առնիցէ, զպատճառսն այսպիսի գործոյս մուծցեն զօրավարքն 'ի հանդիսարանն. և եթէ պարտապան իցէ՝ մահուամբ պատուհասեսցի։

Այնոցիկ որ հայրենի գաւառին և կամ քաղաքին պաշտօն ինչ առնեն՝ առանց կաշառաց բարե-

1 Յոյնն՝ զկեայսն իւր։

պաշտել, և պատճառի ոչ և միոյ գոլ՝ ոչ և բանի գովասանութեան, իբրու վասն բարի գործոյ իսկ պարտ է ընկալուլ զձիրս, և 'ի վերայ չարի ոչ։ Քանզի ոչ գիտելն՝ և գիտելով հանդուրժելն այսմիկ դիւրին ոչ է. այլ լսելով զօրէն՝ հաստատուն է հաւանիլ սմա՝, և ոչ ինչ պարգևօք պաշտել. իսկ որ ոչ հաւանեսցի՝ պարզաբար պարտեալ 'ի հանդիսի մեռցի։

Յաղագս ընչից 'ի միասին հասարակաց հաւաքման՝ գին հատանել իւրաքանչիւր գոյից իւրոց, 'ի սակս բազում պարտուց. և զպտուղս ամէն՝ գրով կրել ագարակաբաշխացն առ ազգականն դատաւորսն. իբրու զի երկու գոլով տրոց[1] սոցա, որով և կամեսցի ատեանն վարեսցի, եթէ կամեսցի զնոյն բոլոր մասամբն, և եթէ կամեսցի իւրաքանչիւրում ամի լեալ ամօքն, բաց յայնցանէ որ 'ի զուգահազորդութիւնս սովորեալ են տալ։

Եւ աստուածոցն վերադրութիւնքն պարտ է համեմատ առն չափաւորի վերադրել իսկ, և պարգևել իսկ 'ի սակս բնակութեան տաճարս ամենեցուն աստուածոցն. բայց մի ոք երկրորդաբար տաճարս սըրբազանիցէ աստուածոցն. իսկ ոսկի և արծաթ՝ առ այլոց քաղաքաց առանձին իսկ և տաճարս՝ մախանաց ստացուած է. և տեղիք[2] 'ի բաց թողեալք զհոգի 'ի մարմնոյ՝ ոչ են առձեռն վերադրութիւնք. և երկաթ և պղինձ՝ պատերազմացն են գործիք։ Փայտի իսկ միայնափայտ՝ զոր ինչ և կամիցի ոք, վերադրեսցէ և քարի, իբրու այսպէս առ հասարակաց տաճարսն իսկ ոստայնսն ոչ յոլովագոյնս՝ քան եթէ ներամսեայ գործ միոյ սատարի։ Եւ գոյնք վայելչականք աստուածոցն՝ թերևս իցեն սպիտակագոյնք ոստայնէ, և այլ ուր և իցէ իսկ ներկեալք գոյնք ոչ մատուցանել՝ այլ միայն առ պատերազմական զարդարմունս։ Եւ պարգևք են աստուածայինք, հաւք իսկ՝ և պատկերք որչափ 'ի միում աւուր մի կեն-

1 Յօրինակին՝ տրոցս, ուղղեցաք ըստ բնագրին։

2 Ի բնագրին՝ ոսկերք փղոյ կամ ոսկերօրի։

դատագիր կատարիցէ։ Եւ այլքն ըստ այսոցիկ իցեն վերադրութիւնքն նմանութեամբ։

Եւ յորժամ մասունք բաժանեսցին յամենայն քաղաքին, որչափ իսկ և զոր ինչ պարտ է լինել՝ և օրէնք յաղագս դատաստանաց և այլոց մեծագունից պատահմանց 'ի սակս ամենեցուն տացան. այսուհետև և դատաստանաց լինել պարտ է։ Եւ հանդիսարանք նախ իսկ հաճոյական դատաւորք թերևս լինիցի, յորս և հաճեսցին փախուցեալն իսկ և հետևեալն հասարակաբար, ողջոյն անուն դատաւորացն վայելչապէս կոչելով։ Եւ երկրորդք՝ գեղջուկք իսկ և ազգացիք՝ ըստ երկոտասաներորդ մասինն բաժանեալք. առ որս եթէ ոչ ընտրեսցին՝ առաջնոցն յաղագս տուրժի մեծագունի հասանելով 'ի հանդէսս. և որչափ փախչին՝ եթէ պարտեսցի, երկրորդ անգամ զհինգերորդ գնոյն հատուսցէ գրեալ դատաստանին։ Եւ եթէ ամբաստանելով որք զդատաւորացն՝ երրորդ անգամ կամեսցի 'ի դատաստանի աշխատել, ածցէ առ ընտրեալ դատաւորսն զհանդէսն. և եթէ դարձեալ պարտեսցի, զկիսաբոլորն գնոյն բացատրիցէ։ Ապ'եթէ հալածողն յաղթեալ յառաջինսն՝ ոչ հանդարտիցէ, յաղթեալ իսկ՝ զհինգերորդ մասն ընկալցի. և ընդ յաղթութեամբ լեալ՝ հատուսցէ զնոյն մասն դատաստանին։ Ապ'եթէ երկրորդն հասանիցեն հանդիսարան՝ ոչ հաւանելով յառաջագոյն հանդիսիցն, որ փախչին իսկ պարտեալ՝ որպէս ասացաք՝ զկիսաբոլորն, և որ հալածէն՝ զկէսն գնոյն հատուսցէ։

Եւ վիճակս հանդիսարանաց, և լռութիւնք և պաշտամանց իւրաքանչիւրոց իշխանութեանց հաստատութիւնք, և ժամանակաց՝ առ որս իւրաքանչիւրոց լինել պարտ է, և յաղագս քննութեանց և դարձմանց դատաստանաց, և ամենայն որչափ այսպիսիք հարկաւոր են առ հանդէսս լինել՝ յառաջինս և վերջինս դադարմունս և կարեաց պատասխանատուութեան, և 'ի ստորնագոյնս իջանելոյ և ամենեցուն եղբարք են, ասացաք իսկ և յառաջագոյն. բայց բարի իսկ է ուղղագունին՝ երկից ասել և ե-

բից։ Արդ որչափ փոքունս և դիւրինս օրինակա֊
նըս գտանել զմնացեալսն յերիցագոյն օրինադրէն՝
նորոյն ընուլ վերստին օրինադրին պարտ է։

Իսկ յատուկ հանդիսարանքն այսպէս լինելով՝
բարեւք ունիցի Թերևս. իսկ ատենականսն և հա֊
սարակացն, և որչափ իշխանութեամբ պարտ է վա֊
րիլ՝ զպատշաճաւորսն իւրաքանչիւրում իշխանութեան֊
ցըն մատակարարել. իցէ արդ առ բազում քաղաքս
ոչ տարաձև հեզագոյն արանց ոչ սակաւ օրինադրու֊
Թիւնք։ Վասն որոյ օրինապահաց պարտ է զվայել֊
չականսն այժմիկ ծնեալ քաղաքավարութեանս կազ֊
մել բաղխոհելով, և վերստին ուղղելով հրահանգա֊
հմտութեանց՝ մինչև ցբաւականապէս Թերևս իւ֊
րաքանչիւր 'ի սոցունց կալ Թուեսցի, և յայնժամ
կատարած մակադրելով՝ և անշարժ այսպէս կնքե֊
լով վարիլ առ ամենայն կենցաղաւն։

Եւ որչափ յաղագս լաւութեան դատաւորացն և
ներհակին, և որչափ փոփոխի 'ի բազմաց առ այ֊
լոց քաղաքաց իրաւանց և բարութեանց և գեղեց֊
կութեանց՝ ոմանք ասացան իսկ, և ոմանք ևս առ
կատարածն ասասցէ։ Առ որս ամենայն պարտ է՝
այնմիկ որ հանդերձեալ է դատաւոր գոլ, հանգոյն
ըստ իրաւանց հայել իսկ, և ստանալով գիրս յա֊
ղագս սոցունց ուսանել. քանզի ամենայն ուսմանց
իսկագոյն է՝ ուսանելովն լաւագոյն լինելն իրացն որ
կան առ օրէնս։ Որք եԹէ ուղղապէս իցեն եդեալ՝
լինիցին արդեւք կամ անուն ունայն մտօք պատշա֊
ճաւոր աստուածայինն մեզ և սքանչելի օրէնքն
ստացեալ։ Եւ արդ այլոցն բանիցն որչափ քեր֊
Թուածօք գովասանուԹիւնք և պարսաւք յաղագս
ոմանց ասին, և որչափ լոկ բանիւք և կամ գրօք, և
կամ օր ըստ օրէ առ այլս զուգաւորութիւնս 'ի ձե֊
ւըն վիճաբանութեան երկբայեալք են 'ի ձեռն
ներութեանց։ Եւ յորժամ մանաւանդ սնոտեաց այ֊
սոցիկ ամենեցուն Թերևս հրահանգիցէ հաւատի
գիրս օրինադրին, զորս ստանալով սովաւ իբրու բժըշ֊
կական դեղ այլոց բանից, բ՚՚րի դատաւորն զանձն
իւր ուղղեսցէ և զքաղաքն իսկ՝ հաստատութիւնն

իրաւանցն և անձանց կամելով։ Իսկ չարեացն՝ յանուսումնութենէ և 'ի զանգիտմանէ, և 'ի միասին յամենայն անիրաւութենէ, ըստ որում հնար է փոփոխումն՝ որչափ բժշկելի թուեսցին չարեացն։ Եւ որոց ճշմարտապէս չարժեցելոց՝ մահուամբ բժշկութիւն այսպէս տրամակայելոց անձանց բաշխելով, որ և իրաւապէս իցէ բազում անգամ թերևս ասացեալ, արժանի գովասանութեան լինիցին արդեւք ամենայն քաղաքին այսպիսի դատաւորք և դատաւորաց առաջնորդք։

Քանզի յորժամ ըստ իւրաքանչիւր ամի դատաստանքն դատել զկատարածն ընկալցի՝ օրէնք պարտ է լինել այսպիսիք։ Նախ իսկ դատող իշխանութիւնն զպարտապանին զինչսն յաղթողին բացատրիցէ, բաց 'ի հարկաւոր ստացուածոցն՝ յետ իւրաքանչիւրում դատաստանի հատուցուածոյ վաղվաղակի 'ի ձեռն քարոզի լսելով դատաւորացն։ Եւ յորժամ վրիժախնդրական ամսոցն հուպ լինիցի ամիս՝ եթէ ոչ ոք 'ի բաց փոխիցէ զյաղթողն իւրով կամաւ և նորա, դատող իշխանութիւնն հետեւելով յաղթողին բացատրիցէ զինչսն պարտապանին։ Ապ'եթէ ուստեք ոչ ունիցին, այլ պակասեսցի՝ ոչ նուազագոյն քան եթէ միոյ դրամի, ոչ յառաջագոյն սմա հանդէս գոյ առ այլում՝ ոչ և միոյ ուրուք նախ լրմանն ամենայն պարտուցն հատուցանելով յաղթողին. բայց այլոցն առ սմա իցեն հանդէսքն տիրապէս։ Ապ'եթէ ոք ոչ հաճեսցի յիշխանութիւնն յայնմիկ որ դատապարտեսցէ, զսա մուծանել յօրինապահացն հանդիսարանն՝ անիրաւութեամբ 'ի բաց բարձեալքն. և եթէ պարտապան լինիցի այսպիսի հանդիսին՝ իբրու զբոլորն քաղաքն և զօրէնսն ապականելով, մահուամբ տուժեսցի։ Եւ առն իսկ որ յետ այսորիկ ծնեալ իցէ և սնեալ, և ինքն զաւակ ծնեալ և սնուցեալ, և 'ի միասին խառնեալ զենթադրութիւնս չափաւորապէս, և հատուցեալ իսկ պատուհաս՝ եթէ անիրաւեալ իցէ զոք և յայլմէ ընկալեալ, հանդերձ օրինօքն և բախտով ծերացեալ՝ վախճան թերևս լինիցի ըստ բնութեան։

Եւ առ վախճանեալսն՝ եթէ արու և եթէ էգ ոք իցէ, զիրսն որ առ աստուածային օրէնսն են՝ այնոցիկ որ ընդ երկրաւ են աստուածոցն, և այնոցիկ որ աստանօր որչափ ձօնել պարտ է, զպատմողսն լինել իշխանս յաղագս այսոցիկ աստուածոյն. և դիրըս առ վայրսն որչափ գործական իցէ՝ ոչ ուրուք ոչ մեծ և ոչ փոքր ինչ առնել գերեզման. այլ ուր վայրն առ այս ինչ միայն ունիցի բնութիւն՝ զվախճանելոցն մարմինքն՝ առանց տրտմութեան կենդանեացն, ընդունելով թաքուցանել և զայսոսիկ ընու. և մարդկան մայր գոլով երկիր՝ որչափ սնունդ սոցա բնաւորեալ է՝ առ այսոսիկ ախորժողին բերել, ոչ կենդանի գոլով ոք և ոչ մեռանելով զրկեսցէ զոք 'ի կենդանեաց 'ի մէնջ։ Եւ հող ոչ բարձրագոյն հատանել 'ի սակս թաղման՝ քան եթէ 'ի հինգ արանց գործ հնգից աւուրց կատարելով. և քարեղէն մակագրութիւնք ոչ մեծագոյնս առնել՝ քան եթէ որչափ բաւական իցէ զվախճանելոյն կենցաղավարութիւն զներբողեանսն ընդունել՝ ոչ յոլովագոյն չորից դիւցազնական տաղից։ Եւ զնախադրութիւնքն յառաջագոյն իսկ ոչ երկարագոյն, ներքոյ ամի ամի լինել յայտնելով զմեռեալսն. իսկ և զճշմարտապէս մեռեալն իցէ արդեւք գրեթէ իբրու մարդկայինս չափ ունելով երեքօրեայ՝ կրելով առ գերեզմանսն։

Այլ հաւանել օրինադրին պարտ է առ այլսն իսկ, և առասելով զայս ինչ՝ զի հոգին քան զմարմինն ամենևին տարբերեալ է առ նոյն իսկ կենցաղումս առտուելով մեզ իւրաքանչիւր զգոլն, և ոչ ինչ բաց 'ի հոգւոյն։ Իսկ զմարմինն կերպաւորելով իւրաքանչիւրոց հետևել, և վախճանելոյն բարեւք՝ ասել պատկերս գոլ զմեռելոցն մարմինս. և զոր են 'ի մէնջ իւրաքանչիւրում ճշմարտապէս անմահ գոլ հոգի մականունելով առ աստուածսն գնալ՝ տալով պատասխանի, որպէս ասէ հայրենի օրէնքն, որ բարին իսկ է՝ համարձակելով, և որ չարն՝ յոյժ ահագին. և օգնականութիւն սմա վախճանելով ոչ ինչ գոլ մեծագոյն. քանզի կենդանութեամբ պարտ էր օգ-

նել՝ ամենայն պատշաճաւորացն սորա. իբրու զի իրաւագոյն գոլ և արդարագոյն կեցեալ էր կենդանութեամբ, և վախճանեալ՝ առանց պատուհասի թերևս չարեաց 'ի սխալանաց այնոցիկ որ յետ այսմիկ են կենցաղոյս: Եւ սոցունց այսպէս ունելով՝ ոչ երբեք պարտ է լինել ապականիչ տան, զանազանապէս կործելով իւր զայս ինչ գոլ՝ զթաղելն մարմնոյ թանձրութեամբ: Այլ զայն իսկ զդուստրն և կամ զեղբայրն կամ զոր և իցէ փափաքելի իւր թուեցեալն թաղելով գնացեալ՝ կատարելով և ընլով զիւր պատահումն մասին և առ հասեալ ժամն, պարտ է գործել զբարին՝ զչափաւորսն ծախելով իբրու յանշունչս բազինս սանդարամետականաց. և զչափաւորսն՝ օրինադիրն թերևս դիւթեսցէ՝ ոչ տարաձևագոյն իցէ: Արդ օրէն այս ինչ. յայնմիկ իսկ որ մեծագոյն են՝ առ ամենայն թաղումն ծախելով ոչ յոլովագոյն հինգ մնասից. և որ երկրորդոյն է՝ մնասս երիս. և երկու այնմիկ՝ որ երրորդոյն է. և մնաս մի՝ որ չորրորդոյն չափ թերևս ունիցին ծախուցն: Եւ օրինապահացն՝ զայլ բազում ինչս գործել պարտ է, և բազմաց փոյթ առնել. և այսոցիկ ոչ իսկ նուազապէս. իբրու զի մանկանց և արանց և ամենայն հասակի փոյթ առնելով հսկեսցեն: Եւ արդ առ կատարածին ամենեցուն՝ օրինապահ մի իսկ վերակացու իցէ, զոր և վախճանելոյն ընտանիքն վերադիտող ընկալցին. որում բարի լիցի՝ բարեւք և չափաւորապէս առ վախճանելոյն իրացն լինելով. և ոչ բարեւք՝ գարշելի իցէ իսկ: Նախադրութիւնք և այլ իրս լինիցին ըստ օրինին՝ որ առ այսպիսիսն է: Եւ այնմիկ որ քաղաքական օրինաւն օրինադրեսցէ՝ ներել պարտ է այսպիսի ինչ. արտաասուել իսկ յաղագըս վախճանելոյն հրամայելն կամ ոչ տեղ է. բայց զողբալն և արտաքոյ տանն զձայն արձակելն հրաժարել, և զմեռեալն արտաքս բերել առ ճանապարհն արգելլով, և ընդ ճանապարհսն գնալով զաղաղակելն, և նախ քան զտիւն արտաքոյ քաղաքին: Այսոքիկ արդ կացցեն այսպէս առ այսպիսի օրէնս. և որ հաւանիցի՝ տուժի արտաքոյ իցէ, և որ ոչ

հաւանիցի միով օրինապահացն՝ ամենեցուն 'ի միասին թուեցեալ տուրժիւն տուրժեսցէ։ Եւ որչափ այլք լինիցին առ վախճանեալս թաղմունս, և կամ առանց թաղման գործք՝ յաղագս հայրապետաց և տաճարականաց և ամենեցուն այսպիսեաց, ասացեալք կան յառաջագոյն յօրէնսն. իբրու գրեթէ օրինադրութիւնս կատարած թերևս առ 'ի մէնջ ունիցի։

Եւ ամենեցուն իսկ յիւրաքանչիւրում ժամու կատարած ոչ առնելն ինչ և ոչ ստանալն կամ բնակեցուցանելն, այլ ծնելոյն փրկութիւն գտանելով կատարելապէս հանապազ. և յայնժամ իսկ կարծիլ զամենայն որչափ պարտ է գործել հաստուցանել 'ի գործ կատարեալ։ Իսկ յառաջագոյն քան զայս անկատար գոլ զբոլորն։

Կղինիաս. Բարւոք ասես, ով սիրելի. բայց թէ առ ինչ այժմ ասացեալդ ասացաւ, ասա ևս հաւաստի։

Պղատոն. Ո՛վ Կլինիա, բազում ինչ յառաջագունիցն բարւոք ասացաւ, և գրեթէ ոչ նուազապէս առասացութիւնք մասանցն[1]։

Կղինիաս. Որպիսի՞ իսկ։

Պղատոն. Զլակիսն զառաջինն գոլ, և Կլոթովիցըն զերկրորդն գոլ. և զերրորդն Ատրոպեանց՝ փրկութիւն ասացելոցն, նմանելով այնոցիկ որ նմանեալ են հրով զանդառնալին գործելով զօրութիւն։ Որոց արդ և քաղաքի և քաղաքավարութեան պարտ է ոչ միայն ողջութիւն և փրկութիւն մարմնոցն պատրաստել, այլ և քաջօրէնութիւն առ անձինս, և մանաւանդ փրկութիւն օրինացն, Բայց ինձ տակաւին երևեալ թուի այս ինչ պակասեալ գոլ յօրէնսն, թէ որպէս պարտ է յանդառնալի զօրութեանն յաւելուլ սոցունց ըստ բնութեանն։

Կղինիաս. Ո՞չ փոքր ինչ ասես, եթէ հնար է գտանել որպէս լինիցի յամենայն ստացուածոյ այդպիսիդ։

1 Յայնն՝ Պարկայցն։

Պղատոն. Այլ հնար է սակայն՝ որպէս իսկ ինձ ամենեւին երեւի։

Կղինիաս. Արդ ոչ 'ի բաց կացցուք ոչ և միով յեղանակաւ՝ նախ քան զայս ինչ շահեսցուք տասացեալ օրինօքս. քանզի ծիծաղելի է 'ի սնոտի իսկ զինչ և իցէ աշխատիլն՝ առ ոչինչ հասանելով հաստատուն։

Մեգիլլոս. Ուղղապէս հրամայես. և զիս զայլ ոք գտցես այսպիսիս։

Կղինիաս. Բարեւք ասես. արդ զի՞նչ ասես փրկութիւն լինել արդեւք, և զի՞նչ յեղանակաւ մեզ քաղաքավարութեան իսկ և օրինաց։

Պղատոն. Ո՞չ արդեւք ասացաք՝ թէ պարտ է մեզ ժողով լինել 'ի քաղաքին այսպիսի ինչ, տասանց յօրինապահացն յերիցագունիցն միշտ՝ և այնոցիկ որ զարիութեան պատիւսն ընկալեալ են. ամենեցուն պարտ է 'ի միասին ժողովել առ սոսա, և տակաւին այնոցիկ որ գնացեալ իցեն՝ խնդրուածս եթէ երբեք առ օրինապահութիւնն լինիցին 'ի ժամու ինչ լուծեալք, և 'ի տունս հասեալք՝ նոցունց իսկ թուեցեալ հրահանգաւ ժողովոյն արժանի գոլ. և այսոցիկ միոյ իւրաքանչիւր ուրուք պարտ գոլ առնուլ 'ի համբակացն ոչ նուազագոյն եղեալ քան եթէ երեսնամեայ, և յառաջագոյն իսկ զսա դատելով արժանի գոլ բնութեամբ և սննդեամբ, զհամբակըս իսկ այսպէս առ այլսն բերել, և եթէ այլոցն թուեսցի՝ ընկալցին զսա։ Ապա եթէ ոչ անձառելի գոլ եղեալ ընտրութեանն՝ այլոցն իսկ և սմա իսկ և մանաւանդ՝ որ յընտրութենէն 'ի բաց անկցի։ Բայց պարտ է կանխական գոլ ժողովրդեանն՝ յօրժամ և յայլոց գործոց յառանձնականաց իսկ և հասարակականաց մանաւանդ պարապումն ինչ իցէ. այսպիսի ինչ երբեք ասացեալ էր մեզ յառաջագոյն բանիւքն։

Կղինիաս. Ես իսկ ասացի։

Պղատոն. Արդ յաղագս այսպիսի ժողովոյս դարձեալ վերստին առնլով զբանս ասացից. զայսպիսի ինչ ասեմ, զի եթէ զսա արկցէ ոք որպէս խարիսխ

ամենայն քաղաքին՝ զամենայն պատշաճս ունելով յինքեան, կեցուցանել 'ի միասին զամենայն զոր ինչ և կամիմք։

Կղինիաս. Ո՞րպէս արդ։

Պղատոն. Ցետ այսորիկ մեր արդեւք ժամանակ լինիցի ուղղապէս ասելով՝ որ ինչ պակասեցուցանել 'ի յօժարութենէն։

Կղինիաս. Եւ մանաւանդ ասացեր բարեւք. արա արդ որպէս և տրամախոհիսդ։

Պղատոն. Պարտ է այսուհետև, ով Կլինիա, յաղագս ամենայնի իմանալ փրկիչ՝ զպատշաճաւորս առ իւրաքանչիւրս 'ի գործոց, իբրու 'ի կենդանւոջ հոգի և գլուխ զմեծագոյնն են բնաւորեալ։

Կղինիաս. Ո՞րպէս ասես։

Պղատոն. Սոցունց արդ առաքինութիւն՝ ամենայն կենդանւոյ առաւել զկեանս։

Կղինիաս. Ո՞րպէս։

Պղատոն. Ի հոգւոջ իսկ առ այլսն և միտսն. և երեսս և լսելիսս յաւելուլով՝ և 'ի գլուխսն. իսկ և առ այլսն և 'ի միասին միտք ընդ գեղեցկագոյն սգայութիւնսն խառնելով և մի իսկ լինելով, փրըկութիւն իւրաքանչիւրոց արդարապէս Թերևս իցէ կոչեցեալ։

Կղինիաս. Թուեցեալ է իսկ։

Պղատոն. Քանզի նման է՝ այլ միտս առ իրի ումեմն ընդ սգայութեանցն խառնելով, փրկութիւն նաւաց 'ի ձմերանի և յամարանի լինիցի արդեւք։ Ո՞չ ապաքէն 'ի նաւապետ համանգամայն և նաւավարք սգայութիւնքն վարչական մտօք 'ի միասին խառնելով կեցուցանել զինքեանս իսկ և զոր ինչ 'ի նաւսն է։

Կղինիաս. Զիա՞րդ։

Պղատոն. Ոչ ինչ արդ բազմաց կարօտանայ այնոցիկ որ այսպիսիս են յարացոյցք. այլ որպէս առ զինուորութիւնն է իմասցուք Թէ զո՞ ոք եդեալք զօրավարք գետք, և բժշկական պաշտօն ամենայն դիտիցէ արդեւք զփրկութիւն ուղղապէս. ո՞չ արդեւք ոմն զյաղթութիւնն և զզօրութիւն պատերազմաց,

և միւսն բժշկաց իսկ և պաշտօնայից՝ զողջութեանս մարմնոյ պատրաստութիւն։

Կղինիաս. Եւ ո՞րպէս ոչ։

Պղատոն. Բժիշկ՝ այնմ որ առ մարմնոյ է իրի տգէտ գոլով, զոր այժմիկ առասացաք ողջութիւն, և կամ զօրավար յաղթութեան, և կամ այլոցն որչափ և ասացաք, իցէ՞ իբրու զի թերևս միտս յաղագս այսոցիկ երևեսցի ունելով։

Կղինիաս. Եւ ո՞րպէս։

Պղատոն. Եւ զի՞նչ. յաղագս քաղաքի՝ եթէ ոք զգիտողութիւն ուր հայել պարտ է քաղաքականին՝ երևեսցի ոչ գիտելով, իշխանն արդեւք իսկ յառաջագոյն իրաւապէս թերևս առասասցի. և ապա կեցուցանել կարո՞ղ իցէ թերևս զայս ինչ զորոյ զգիտողութիւնն ամենևին ոչ գիտասցէ։

Կղինիաս. Եւ ո՞րպէս։

Պղատոն. Պարտ է արդ այժմիկ, որպէս թուի, թէ հանդերձեալ է բնակութիւնս գաւառիս մերոյ զկատարած ընկալուլ, զինչ որ գիտեն իսկ 'ի սմա նախ զայս ինչ զոր ասեմք զգիտողութիւն՝ ո՞ ոք երբեք քաղաքական գոլով մեզ հանդիպի. և ապա թէ զինչ յեղանակաւ պարտ է հաղորդիլ սմա, և ո՞ ոք բարեւք և կամ ոչ՝ խորհի ընդ սմա, նախ իսկ 'ի սոցունց յօրինաց, և ապա 'ի մարդկանէ։ Ապա եթէ իցէ յայսմանէ թափուր ինչ քաղաք, ոչ ինչ սքանչելի՝ առանց խոհեմութեան գոլ սմա և առանց զգայութեան, եթէ գործիցէ զոր ինչ և հանդիպեսցի յիւրաքանչիւրում ժամու առ իւրաքանչիւրմն 'ի գործոց։

Կղինիաս. Ճշմարտապէս իսկ ասես։

Պղատոն. Այժմիկ արդ մեզ յորո՞ւմ երբեք 'ի քաղաքին մասանցն կամ 'ի խորհրդոցն իցէ բաւական պատրաստեալ զինչ և իցէ այսպիսի պահարան՝ ունիմք ասել։

Կղինիաս. Ոչ և միով իւիք, ո՛վ սիրելի, հաւաստի իսկ. եթէ զմտաւ ածել պարտ է, թուի ինձ, տարածիլ բանիս այսմիկ 'ի ժողովն՝ զոր ասացեր այժմիկ պարտ գոլ 'ի գիշերի 'ի միասին հաւաքիլ։

Պղատոն. Գեղեցկագոյն խորհեցար, ո՛վ Կլինիա,

և պարտ է արդ սմա, իբրու այժմիկ յարակայ մեզ բանս յազդէ, ունել զամենայն առաքինութիւն. որոյ իշխէ ոչ մոլորիլն՝ առ բազումս դիտելով, այլ մի հայելով՝ ըստ այսորիկ հանապազ զամենայն իբրու նետս թողացուցանել:

Կղինիաս. Ամենևին ամենեցուն արդ:

Պղատոն. Այժմիկ իսկ ուսուացուք. զի ոչ ինչ է սքանչելի մոլորիլ քաղաքացն օրինականացն, զի առ այլ ինչ այսպէս հայի: Յօրինադրութեանցն՝ իւրաքանչիւր ոք 'ի քաղաքի և զբազումսն իսկ ոչ ինչ սքանչելի, ոմանց սահմանին գոլով՝ արդարութեանցն որպէս իշխեսցեն ոմանք 'ի քաղաքի, եթէ լաւագոյնք և եթէ փարթարագոյնք հանդիպեսցին գոլով. և ոմանց զի փարթամասցին, եթէ ծառայք ոմանց իցեն և եթէ ոչ. սոցունց արդ յօժարութիւնն առ ազատ կենցաղն իսկ դիմեալ, և միւս՝ 'ի միասին երկակի օրինադրին առ իւրաքանչիւրսն հայելով, իբրու զի ազատք գոլով՝ այլոց քաղաքաց տէր իցեն, որք իբրու իմաստնագոյնք առ այսոքիկ իսկ և այսպիսիքս ամենայն 'ի միասին և առ մի ինչ ոչ զանազանապէս պատուեալ ունելով ասել առ որ ինչ այլս սոցա պարտ է հայել:

Կղինիաս. Ո՞չ ապաքէն մերս իսկ, ով սիրելի, ուղղապէս թերևս իցէ երբեք եդեալ. քանզի առ մի ինչ ասացաք պարտ գոլ հանապազ ամենայն օրինացն իրի գոլ մեզ հայելով, և զայս ինչ զառաքինութիւն ասել ներէաք իսկ գոլ ուղղապէս:

Պղատոն. Այո:

Կղինիաս. Եւ զառաքինութիւնն՝ չորս եդաք ուրուք:

Պղատոն. Յոյժ իսկ:

Կղինիաս. Եւ զմիտս իսկ այսոցիկ ամենեցուն առաջնորդ, առ որում այլոց ամենայնի և սոցունց երից պարտ է հայիլ:

Պղատոն. Գեղեցկապէս հետևի, ով Կլինիա. բայց հանդերձ այսոցիկ և այլոց զկնի եկից: Քանզի զմիտս վարչական իսկ և բժշկական և զօրավարական ասասցուք առ մի իսկ. այն ինչ որ պարտ է հայիլ

և զքաղաքականն յանդիմանելով աստանօր եմք այժմիկ. և որպէս զմարդ վերստին հարցանել ասասցուք Թերևս, ով սքանչելի. դուք իսկ առ զի՞նչ դիտես, զի՞նչ երբեք այն ինչ է մինն զոր հաւաստի բժշկական միտքն ունի իսկ ասել. և դուք գովելի տարբերեալ որպէս ասես արդեւք ամենեցուն ներխոհեմացն ասել ոչ ունիցիս: Եւ կամ դու իսկ, Մեգիլէ և Կլինիա, հուպ լերուք համարելով յաղագս սորա ասելցիս, զի՞նչ երբեք ասէք գոլ զսա, որպէս և ես յաղագս այլոց բազմաց առ ձեզ սահմանեցի:

Կղինիաս. Ոչ և միով իւիք, ով սիրելի:

Պղատոն. Եւ զի՞նչ զի պարտ է յօժարիլ իսկ իմանալ զսա, և որո՞վք:

Կղինիաս. Ո՞րպէս. առ ո՞րս ոմանս ասես:

Պղատոն. Որպէս յորժամ չորս ասացաք առաքինութեան տեսակս լինել, յայտ է իբրու զմի իւրաքանչիւրոց պարտ է ասել չորից իսկ գոլով:

Կղինիաս. Սակայն զի՞նչ:

Պղատոն. Եւ սակայն մի իսկ զայսոսիկ զամենայն ասեմք. քանզի զարիութիւն՝ առաքինութիւն գոլ ասեմք, և զխոհեմութիւն՝ առաքինութիւն, և զայլ երկուսն իբր գոլով էակք ոչ բազումք՝ այլ մի, զայս ինչ միայն առաքինութիւն:

Կղինիաս. Ամենեւին իսկ:

Պղատոն. Ըստ որում այժմիկ զանազանին այսոքիկ երկուս, և երկու անուն ընկալան, և զայլսն ոչ ինչ է ասել դժուարին. բայց ըստ որում մի զերկուսս մականուանեցաք զառաքինութիւն, և այլոց ոչ ևս է դիւրահաս:

Կղինիաս. Ո՞րպէս ասես:

Պղատոն. Ոչ ինչ է դժուարին յայտնել զոր ասեմս. քանզի բաշխեսցուք միմեանց զհարց և զպատասխանի:

Կղինիաս. Ո՞րպէս ասես իսկ:

Պղատոն. Հարց զիս, զի՞նչ երբեք մի առասելով զառաքինութիւն զերկաքանչիւրս՝ զերկու դարձեալ զսոսա առասասցուք, զմին արիութիւն և զմիւսն խոհեմութիւն: Զի ասացից քեզ զպատճառն. զի

միոյն իսկ է ըստ երկիւղի. որոյ և գաղանքն հաղորդք են արիութեանն, և բարքն մանկանցն յոյժ նորագունիցն. քանզի առանց բանի և բնութեամբ՝ լինի հոգի արիագոյն. բայց առանց բանի իսկ՝ խոհեմական և մտաց ունող ոչ եղև՝ ևս երբեք և ոչ է, և ոչ յապառնի ժամանակի լինիցի, իբրու գոլով և այլոյ ուրուք։

Կղինիաս. Ճշմարտապէս ասես։

Պղատոն. Իսկ այժմիկ ըստ որում են տարբերեալս և երկու՝ դու առ 'ի յինէն բանիւս ընկալար։ Արդ ըստ որում մի է և նոյն՝ դու դարձեալ ինձ բացատրեա. սակայն խորհեա իբրու առասելոց գոլով՝ թէ որպէս չորս եղեալ մի է, և զիս աղաչեա ցուցանելով քո իբրու զմիոյն դարձեալ թէ որպէս չորս։ Եւ արդ զոր ինչ յետ այսորիկ է դիտեցուք՝ զդիտողն բաւականապէս, յաղագս որոց և իցէ. ոմանց՝ որոց է իսկ անուն՝ է իսկ և բան, որպէս միայն զանունն գիտել պարտ է և զբանն ոչ գիտել. և կամ զայն իսկ որ է ինչ, և յաղագս տարբերելոցն մեծութեամբ իսկ և գեղեցկութեամբ, զամենայն այսպիսիս ոչ գիտել՝ գարշելի է։

Կղինիաս. Թուի ինձ այդպէս։

Պղատոն. Մեծագոյն ինչ օրինադրի և օրինապահի, և այնմիկ որ առաքինութեամբ ամենեցուն տարբերիլ կարծի. և յաղթութիւն այսոցիկ սոցունց ընկալեալ է, և կամ զայսոսիկ զնոյնս յաղագս որոյ այժմիկ ասեմք արիութիւն, ողջախոհութիւն, խոհեմութիւն, արդարութիւն։

Կղինիաս. Եւ ո՞րպէս։

Պղատոն. Իսկ յաղագս այսոցիկ զպատմողսն և զվարդապետսն և զօրինադիրսն և զայլոց զպահապանսն կարօտացելոցն ճանաչել իսկ և գիտել, և կամ կարօտացելոցն տանջել իսկ և գանս առնուլ՝ սխալելով զոր ոչ պարտ է ուսուցանելով զոր ինչ զօրութիւն ունի չարութիւն և առաքինութիւն, և ամենևին յայտնելով զանազանիլ այլոցն։ Այլ զքերթող զոմն եկեալ 'ի քաղաքն, կամ զխրատողն որ ասելով լաւագո՞յն գոլ երևիլ այնմիկ որ ամենայն

առաքինութեամբ յաղթեալ է։ Ապա յայսպիսի քաղաքիս՝ յորում ոչ բանիւ, այլ գործով բաւական պաշտպանք իցեն յաղագս առաքինութեան, գիտելով բաւականապէս սքանչելի ինչ քաղաքիս այս առանց պաշտպանի գոլով, կրե՞լ զոր ինչ բազում քաղաքք կրեն այժմիկ քաղաքացս։

Կղինիաս. Ոչ ինչ իրաւապէս։

Պղատոն. Զիա՞րդ զոր ասեմք այժմիկ առնել մեզ պարտ է. կամ որպէս զպաշտպանքն ստուգագոյնք բազմաց յաղագս առաքինութեան՝ գործով և բանիւ պատրաստելի է. կամ զի՞նչ յեղանակաւ ներխոհեմացն գլխոյն իսկ և զգայութեանցն նմանեցի մեզ քաղաքս, իբրու այսպիսի պաշտպանութիւնս ստացեալ յինքեան։

Կղինիաս. Ո՞րպէս արդ և զի՞նչ յեղանակաւ, ով սիրելի, նմանեցուցանելով զսա այսպիսոյ ումեմն ասասցուք։

Պղատոն. Յայտ է՝ իբրու նորին իսկ քաղաքին ելով բոլոր հաստատութիւնն գլխոյն. և 'ի պահապանացն համբակագոյնքն իսկ իբրու առ ծայր գագաթանն հասեալս՝ զքաջամիտսն զամենայն արագութիւն առ հոգին ունելով առ բոլոր քաղաքն շուրջանակի.... ելով, և զպահապանսն՝ աւանդիչք զգայութեանցն առ յիշելութիւնսն, և յերիցանցն իսկ՝ պատմողք լինել ամենեցուն որ առ քաղաքաւն են. և զսոսա մտաց նմանեալք զբազումս և զբանից արժանիս զզանազանապէս խորհելովն և ծերոցն խոկալովն և պաշտօնայիւքն համբակօքն հանդերձ խորհրդով վարելով, այսպէս արդ հասարակաբար կեցուցանել երկաքանչիւրոցս ճշմարտապէս զբոլոր քաղաքն, զիա՞րդ այսպէս ասեմք՝ եթէ այլաբար պարտ գոլ կազմել համգոյնս արդեւք զամենեսեան ստանալով և ոչ ստուգեալս զայնոսիկ որ ուսուցեալ են իսկ և խրատեալ։

Կղինիաս. Այլ, ով սքանչելի, անհնար է։

Պղատոն. Հասանելի՞ է մեզ արդեւք առ ստուգագոյն խրատ ինչ յառաջագունելին։

Կղինիաս. Թերևս արդեւք։

րից։ Արդ որչափ փոքունս և դիւրինս օրինականըս գտանել զմնացեալսն յերիցագոյն օրինադրէն՝ նորոյն լինել վերստին օրինադրին պարտ է։

Իսկ յատուկ հանդիսարանքն այսպէս լինելով՝ բարեւք ունիցի թերեւս. իսկ ատենականսն և հասարակացն, և որչափ իշխանութեամբ պարտ է վարիլ՝ զպատշաճաւորսն իւրաքանչիւրում իշխանութեանցն մատակարարել. իցէ արդ առ բազում քաղաքս ոչ տարաձև հեզագոյն արանց ոչ սակաւ օրինադրութիւնք։ Վասն որոյ օրինապահաց պարտ է զվայելչականսն այժմիկ ծնեալ քաղաքավարութեանս կազմել բաղխոհելով, և վերստին ուղղելով հրահանգաւ հմտութեանց՝ մինչև ցբաւականապէս թերեւս իւրաքանչիւր 'ի սոցունց կալ թուեցի, և յայնժամ կատարած մակադրելով՝ և անշարժ այսպէս կնքելով վարիլ առ ամենայն կենցաղաւն։

Եւ որչափ յաղագս լռութեան դատաւորացն և ներհակին, և որչափ փոփոխի 'ի բազմաց առ այլոց քաղաքաց իրաւանց և բարութեանց և գեղեցկութեանց՝ ոմանք ասացան իսկ, և ոմանք ևս առ կատարածն ասասցէ։ Առ որս ամենայն պարտ է՝ այնմիկ որ հանդերձեալ է դատաւոր գոլ, հանգոյն ըստ իրաւանց հայել իսկ, և ստանալով գիրս յաղագս սոցունց ուսանել. քանզի ամենայն ուսմանց իսկագոյն է՝ ուսանելովն լաւագոյն լինելն իրացն որ կան առ օրէնս։ Որք եթէ ուղղապէս իցեն եդեալ՝ լինիցին արդեւք կամ անուն ունայն մտօք պատշաճաւոր աստուածայինն մեզ և սքանչելի օրէնքն ստացեալ։ Եւ արդ այլոցն բանիցն որչափ քերթուածօք գովասանութիւնք և պարսաւք յաղագս ոմանց ասին, և որչափ լոկ բանիւք և կամ գրօք, և կամ որ ըստ օրէ առ այլս զուգաւորութիւնս 'ի ձեռն վիճաբանութեան երկբայեալք են 'ի ձեռն ներութեանց։ Եւ յորժամ մանաւանդ մնոտեաց այսոցիկ ամենեցուն թերեւս հրահանգիցէ հաւաստի գիրս օրինադրին, զորս ստանալով սովաւ իբրու բժշկական դեղ այլոց բանից, բ՚՚րի դատաւորն զանձն իւր ուղղեսցէ և զքաղաքն իսկ՝ հաստատութիւնն

իրաւանցն և աճումն կամելով։ Իսկ չարեացն՝ յանուսումնութենէ և 'ի զանգիտմանէ, և 'ի միասին յամենայն անիրաւութենէ, ըստ որում հնար է փոփոխումն՝ որչափ բժշկելի թուեսցին չարեացն։ Եւ որոց ճշմարտապէս չարժեցելոց՝ մահուամբ բժշկութիւն այսպէս տրամակայելոց անձանց բաշխելով, որ և իրաւապէս իցէ բազում անգամ թերևս ասացեալ, արժանի գովասանութեան լինիցին արդեւք ամենայն քաղաքին այսպիսի դատաւորք և դատաւորաց առաջնորդք։

Քանզի յորժամ ըստ իւրաքանչիւր ամի դատաստանքն դատել զկատարածն ընկալցի՝ օրէնք պարտ է լինել այսպիսիք։ Նախ իսկ դատող իշխանութիւնն զպարտապանին զինչսն յաղթողին բացատրիցէ, բաց 'ի հարկաւոր ստացուածոցն՝ յետ իւրաքանչիւրում դատաստանի հատուցուածոյ վայրվաղակի 'ի ձեռն քարոզի լսելով դատաւորացն։ Եւ յորժամ վրիժախնդրական ամսոցն հուպ լինիցի ամիս՝ եթէ ոչ ոք 'ի բաց փոխիցէ զյաղթողն իւրով կամաւ և նորա, դատող իշխանութիւնն հետեւելով յաղթողին բացատրիցէ զինչսն պարտապանին։ Ապ'եթէ ուստեք ոչ ունիցին, այլ պակասեսցի՝ ոչ նուազագոյն քան եթէ միոյ դրամի, ոչ յառաջագոյն սմա հանդէս գոյ առ այլում՝ ոչ և միոյ ուրուք նախ լրմանն ամենայն պարտուցն հատուցանելով յաղթողին. բայց այլոցն առ սմա իցեն հանդէսքն տիրապէս։ Ապ'եթէ ոք ոչ հաճեսցի յիշխանութիւնն յայնմիկ որ դատապարտեսցէ, զսա մուծանել յօրինապահացն հանդիսարանն՝ անիրաւութեամբ 'ի բաց բարձեալքն. և եթէ պարտապան լինիցի այսպիսի հանդիսին՝ իբրու զբոլորն քաղաքն և զօրէնսն ապականելով, մահուամբ տուժեսցի։ Եւ առն իսկ որ յետ այսորիկ ծնեալ իցէ և սնեալ, և ինքն զաւակ ծնեալ և սնուցեալ, և 'ի միասին խառնեալ զենթադրութիւնս չափաւորապէս, և հատուցեալ իսկ պատուհաս՝ եթէ անիրաւեալ իցէ զոք և յայլմէ ընկալեալ, հանդերձ օրինօքն և բախտով ծերացեալ՝ վախճան թերևս լինիցի ըստ բնութեան։

Եւ առ վախճանեալսն՝ եթէ արու և եթէ էգ ոք իցէ, զիրսն որ առ աստուածային օրէնսն են՝ այնոցիկ որ ընդ երկրաւ են աստուածոցն, և այնոցիկ որ աստանօր որչափ ձօնել պարտ է, զպատմօղսն լինել իշխանս յաղագս այսոցիկ աստուածոյն. և դիլըս առ վայրսն որչափ գործական իցէ՝ ոչ ուրուք ոչ մեծ և ոչ փոքր ինչ առնել գերեզման. այլ ուր վայրն առ այս ինչ միայն ունիցի բնութիւն՝ զվախճանելոցն մարմինքն՝ առանց տրտմութեան կենդանեացն, ընդունելով թաքուցանել և զայսուիկ լնուլ. և մարդկան մայր գոլով երկիր՝ որչափ մնունդ սոցա բնաւորեալ է՝ առ այսոսիկ ախորժողին բերել, ոչ կենդանի գոլով ոք և ոչ մեռանելով զրկեսցէ զոք 'ի կենդանեաց 'ի մէնջ: Եւ հող ոչ բարձրագոյն հատանել 'ի սակս թաղման՝ քան եթէ 'ի հինգ արանց գործ հնգից աւուրց կատարելով. և քարեղէն մակագրութիւնք ոչ մեծագոյնս առնել՝ քան եթէ որչափ բաւական իցէ զվախճանելոյն կենցաղավարութիւն զներբողեանսն ընդունել՝ ոչ յոլովագոյն չորից դիւցազնական տաղից: Եւ զնախադրութիւնքն յառաջագոյն իսկ ոչ երկարագոյն, ներքոյ ամի ամի լինել յայտնելով զմեռեալսն. իսկ և զճշմարտապէս մեռեալն իցէ արդեւք գրեթէ իբրու մարդկայինս չափ ունելով երեքօրեայ՝ կրելով առ գերեզմանսն:

Այլ հաւանել օրինադրին պարտ է առ այլսն իսկ, և առասելով զայս ինչ՝ զի հոգին քան զմարմինն ամենևին տարբերեալ է առ նոյն իսկ կենցաղումս առտուելով մեզ իւրաքանչիւր զգոյն, և ոչ ինչ բաց 'ի հոգւոյն: Իսկ զմարմինն կերպաւորելով իւրաքանչիւրոց հետևել, և վախճանելոյն բարեւք՝ ասել պատկերս գոլ զմեռելոցն մարմինս. և զոր են 'ի մէնջ իւրաքանչիւրում ճշմարտապէս անմահ գոլ հոգի մականուանելով առ աստուածսն գնալ՝ տալով պատասխանի, որպէս ասէ հայրենի օրէնքն, որ բարւոյն իսկ է՝ համարձակելով, և որ չարին՝ յոյժ ահագին. և օգնականութիւն սմա վախճանելով ոչ ինչ գոլ մեծագոյն. քանզի կենդանութեամբ պարտ էր օգ-

նել՝ ամենայն պատշաճաւորացն սորա. իբրու զի իրաւագոյն գոլ և արդարագոյն կեցեալ էր կենդանութեամբ, և վախճանեալ՝ առանց պատուհասի թերևս չարեաց 'ի սխալանաց այնոցիկ որ յետ այսմիկ են կենցաղոյս։ Եւ սոցունց այսպէս ունելով՝ ոչ երբեք պարտ է լինել ապականիչ տան, զանազանապէս կարծելով իւր զայս ինչ գոլ՝ զխաղին մարմնոյ թանձրութեամբ։ Այլ զայն իսկ զդուստրն և կամ զեղբայրն կամ զոր և իցէ փափաքելի իւր թուեցեալն թաղելով գնացեալ՝ կատարելով և ընլով զիւր պատահումն մասին և առ հասեալ ժամն, պարտ է գործել զբարին՝ զչափաւորսն ծախելով իբրու յանշունչս բազինս սանդարամետականաց. և զչափաւորն՝ օրինադիրն թերևս դիւթեսցէ՝ ոչ տարաձևագոյն իցէ։ Արդ օրէն այս ինչ. յայնմիկ իսկ որ մեծագոյն են՝ առ ամենայն թաղումն ծախելով ոչ յոլովագոյն հինգ մնասից. և որ երկրորդոյն է՝ մնաս երիս. և երկու այնմիկ՝ որ երրորդոյն է. և մնաս մի՝ որ չորրորդոյն չափ թերևս ունիցին ծախուցն։ Եւ օրինապահացն՝ զայլ բազում ինչս գործել պարտ է, և բազմաց փոյթ առնել. և այսոցիկ ոչ իսկ նուազապէս. իբրու զի մանկանց և արանց և ամենայն հասակի փոյթ առնելով հսկեսցեն։ Եւ արդ առ կատարածին ամենեցուն՝ օրինապահ մի իսկ վերակացու իցէ, զոր և վախճանելոյն ընտանիքն վերադիտող ընկալցին. որում բարի լիցի՝ բարեւք և չափաւորապէս առ վախճանելոյն իրացն լինելով. և ոչ բարեւք՝ գարշելի իցէ իսկ։ Նախադրութիւնք և այլ իրս լինիցին ըստ օրինին՝ որ առ այսպիսիսն է։ Եւ այնմիկ որ քաղաքական օրինաւն օրինադրեսցէ՝ ներել պարտ է այսպիսի ինչ. արտասուել իսկ յաղագըս վախճանելոյն հրամայելն կամ ոչ՝ տգեղ է. բայց զողբալն և արտաքոյ տանն զձայն արձակելն հրաժարել, և զմեռեալն արտաքս բերել առ ճանապարհն արգելլով, և ընդ ճանապարհսն գնալով զաղաղակելն, և նախ քան զտիւն արտաքոյ քաղաքին։ Այսոքիկ արդ կացցեն այսպէս առ այսպիսի օրէնս. և որ հաւանիցի՝ տուժի արտաքոյ իցէ, և որ ոչ

հաւանիցի մտօք օրինապահացն՝ ամենեցուն 'ի միասին թուեցեալ տուրժիւն տուրժեսցէ։ Եւ որչափ այլք լինիցին առ վախճանեալս թաղմունս, և կամ առանց թաղման գործք՝ յաղագս հայրասպանաց և տաճարակապտաց և ամենեցուն այսպիսեաց, ասացեալք կան յառաջագոյն յօրէնսն. իբրու գրեթէ օրինադրութիւնս կատարած թերևս առ 'ի մէնջ ունիցի։

Եւ ամենեցուն իսկ յիւրաքանչիւրում ժամու կատարած ոչ առնելն ինչ և ոչ ստանալն կամ բնակեցուցանելն, այլ ծնելոյն փրկութիւն գտանելով կատարելապէս հանապազ. և յայնժամ իսկ կարծել զամենայն որչափ պարտ է գործել հաստուցանել 'ի գործ կատարեալ։ Իսկ յառաջագոյն քան զայս անկատար գոլ զբոլորն։

Կղինիաս. Բարեւք ասես, ով սիրելի. բայց թէ առ ինչ այժմ ասացեալդ ասացաւ, ասա ևս հաւաստի։

Պղատոն. Ո՛վ Կլինիա, բազում ինչ յառաջագունիցն բարեւք ասացաւ, և գրեթէ ոչ նուազապէս առասացութիւնք մասանցն[1]։

Կղինիաս. Որպիսի իսկ։

Պղատոն. Զլակիսն զառաջինն գոլ, և Կլոթովիցն զերկրորդն գոլ. և զերրորդն Ատրոպեանց՝ փրկութիւն ասացելոցն, նմանելով այնոցիկ որ նմանեալ են հրով զանդառնալին գործելով զօրութիւն։ Որոց արդ և քաղաքի և քաղաքավարութեան պարտ է ոչ միայն ողջութիւն և փրկութիւն մարմնոցն պատրաստել, այլ և քաջօրէնութիւն առ անձինս, և մանաւանդ փրկութիւն օրինացն, Բայց ինձ տակաւին երևեալ թուի այս ինչ պակասեալ գոլ յօրէնսն, թէ որպէս պարտ է յանդառնալի զօրութեանն յաւելուլ սոցունց ըստ բնութեանն։

Կղինիաս. Ո՞չ փոքր ինչ ասես, եթէ հնար է գտանել որպէս լինիցի յամենայն ստացուածոյ այդպիսիդ։

1 Յոյնն՝ Պարկայցն։

Պղատոն. Այլ հնար է սակայն՝ որպէս իսկ ինձ ամենեւին երեւիլ։

Կղինիաս. Արդ ոչ 'ի բաց կացցուք ոչ և միով յեղանակաւ՝ նախ քան զայս ինչ շահեսցուք տեսացեալ օրինօքս. քանզի ծիծաղելի է 'ի մնոտի իսկ զինչ և իցէ աշխատիլն՝ առ ոչինչ հասանելով հաստատուն։

Մեգիլլոս. Ուղղապէս հրամայես. և զիս զայլ ոք գտցես այսպիսիս։

Կղինիաս. Բարեւք ասես. արդ զինչ ասես փրկութիւն լինել արդեւք, և զինչ յեղանակաւ մեզ քաղաքավարութեան իսկ և օրինաց։

Պղատոն. Ո՞չ արդեւք ասացաք՝ թէ պարտ է մեզ ժողովել լինել 'ի քաղաքին այսպիսի ինչ, տասանց յօրինապահացն յերիցագունիցն միշտ՝ և այնոցիկ որ զարիութեան պատիւսն ընկալեալ են. ամենեցուն պարտ է 'ի միասին ժողովել առ սոսա, և տակաւին այնոցիկ որ գնացեալ իցեն՝ խնդրուածս եթէ երբեք առ օրինապահութիւնն լինիցին 'ի ժամու ինչ լուծեալք, և 'ի տունս հասեալք՝ նոցունց իսկ թուեցեալ հրահանգաւ ժողովոյն արժանի գոլ. և այսոցիկ միոյ իւրաքանչիւր ուրուք պարտ գոլ առնուլ 'ի համբակացն ոչ նուազագոյն եղեալ քան եթէ երեսնամեայ, և յառաջագոյն իսկ զսա դատելով արժանի գոլ բնութեամբ և սննդեամբ, զհամբակըս իսկ այսպէս առ այլսն բերել, և եթէ այլոցն թուեսցի՝ ընկալցին զսա։ Ապա եթէ ոչ անձառելի գոլ եղեալ ընտրութեանն՝ այլոցն իսկ և սմա իսկ և մանաւանդ՝ որ յընտրութենէն 'ի բաց անկցի։ Բայց պարտ է կանխական գոլ ժողովրդեանն՝ յորժամ և յայլոց գործոց յառանձնականաց իսկ և հասարակականաց մանաւանդ պարապումն ինչ իցէ. այսպիսի ինչ երբեք ասացեալ էր մեզ յառաջագոյն բանիւքն։

Կղինիաս. Ես իսկ ասացի։

Պղատոն. Արդ յաղագս այսպիսի ժողովոյս դարձեալ վերստին առնլով զբանս ասասցից. զայսպիսի ինչ ասեմ, զի եթէ զսա արկցէ ոք որպէս խարիսխ

ամենայն քաղաքին՝ զամենայն պատշաճս ունելով յինքեան, կեցուցանել 'ի միասին զամենայն զոր ինչ և կամիմք։

Կղինիաս. Ո՞րպէս արդ։

Պղատոն. Յետ այսորիկ մեր արդեւք ժամանակ լինիցի ուղղապէս ասելով՝ որ ինչ պակասեցուցանել 'ի յօժարութենէն։

Կղինիաս. Եւ մանաւանդ ասացեր բարեւք. արա արդ որպէս և տրամախոհիսդ։

Պղատոն. Պարտ է այսուհետև, ով Կլինիա, յաղագս ամենայնի իմանալ փրկիչ զպատշաճաւորս առ իւրաքանչիւրս 'ի գործոց, իբրու 'ի կենդանւոջ հոգի և գլուխ զմեծագոյնն են բնաւորեալ։

Կղինիաս. Ո՞րպէս ասես։

Պղատոն. Սոցունց արդ առաքինութիւն՝ ամենայն կենդանւոյ առաւել զկեանս։

Կղինիաս. Ո՞րպէս։

Պղատոն. Ի հոգւոջ իսկ առ այլսն և միտսն. և երեսս և լսելիսս յաւելուլով՝ և 'ի գլուխսն. իսկ և առ այլսն և 'ի միասին միտք ընդ գեղեցկագոյն զգայութիւնսն խառնելով և մի իսկ լինելով, փրկութիւն իւրաքանչիւրոց արդարապէս թերևս իցէ կոչեցեալ։

Կղինիաս. Թուեցեալ է իսկ։

Պղատոն. Քանզի նման է՝ այլ միտս առ իրի ումեմն ընդ զգայութեանցն խառնելով, փրկութիւն նաւաց 'ի ձմերանի և յամարանի լինիցի արդեւք՝ Ո՞չ ապաքէն 'ի նաւապետ համանգամայն և նաւավարք զգայութիւնքն վարչական մտօք 'ի միասին խառնելով կեցուցանել զինքեանս իսկ և զոր ինչ 'ի նաւսն է։

Կղինիաս. Զիա՞րդ։

Պղատոն. Ոչ ինչ արդ բազմաց կարօտանայ այնոցիկ որ այսպիսիս են յարացոյցք. այլ որպէս առ զինուորութիւնն է իմասցուք թէ զո՞ ոք եդեալք զօրավարք դէտք, և բժշկական պաշտօն ամենայն դիտիցէ արդեւք զփրկութիւն ուղղապէս. ո՞չ արդեւք ումն զյաղթութիւնն և զզօրութիւն պատերազմաց,

և միւսն բժշկաց իսկ և պաշտօնայաց՝ զողջութեանս մարմնոյ պատրաստութիւն։

Կղինիաս. Եւ որպէս ոչ։

Պղատոն. Բժիշկ՝ այնմ որ առ մարմնոյ է իւրի տգէտ գոլով, զոր այժմիկ առասացաք ողջութիւն, և կամ զօրավար յաղթութեան, և կամ այլոցն որչափ և ասացաք, իցէ՞ իբրու զի թերևս միտս յաղագս այսոցիկ երևեսցի ունելով։

Կղինիաս. Եւ որպէս։

Պղատոն. Եւ զի՞նչ. յաղագս քաղաքի՝ եթէ ոք զդիտողութիւն ուր հայել պարտ է քաղաքականին՝ երևեսցի ոչ գիտելով, իշխան արդեւք իսկ յառաջագոյն իրաւապէս թերևս առասասցի. և ապա կեցուցանել կարող իցէ թերևս զայս ինչ զորոյ զդիտողութիւնն ամենևին ոչ գիտասցէ։

Կղինիաս. Եւ որպէս։

Պղատոն. Պարտ է արդ այժմիկ, որպէս թուի, թէ հանդերձեալ է բնակութիւնս գաւառիս մերոյ զկատարած ընկալուլ, զինչ որ գիտեն իսկ 'ի սմա նախ զայս ինչ զոր ասեմք զդիտողութիւն՝ ո՞ ոք երբեք քաղաքական գոլով մեզ հանդիպի. և ապա թէ զինչ յեղանակաւ պարտ է հաղորդիլ սմա, և ո՞ ոք բարեւք և կամ ոչ՝ խորհի ընդ սմա, նախ իսկ 'ի սոցունց յօրինաց, և ապա 'ի մարդկանէ։ Ապա եթէ իցէ յայսմանէ թափուր ինչ քաղաք, ոչ ինչ սքանչելի՝ առանց խոհեմութեան գոլ սմա և առանց զգայութեան, եթէ գործիցէ զոր ինչ և հանդիպեսցի յիւրաքանչիւրում ժամու առ իւրաքանչիւրսն 'ի գործոց։

Կղինիաս. Ճշմարտապէս իսկ ասես։

Պղատոն. Այժմիկ արդ մեզ յորո՞ւմ երբեք 'ի քաղաքին մասանցն կամ 'ի խորհրդոցն իցէ բաւական պատրաստեալ զինչ և իցէ այսպիսի պահարան՝ ունիմք ասել։

Կղինիաս. Ոչ և միով իւիք, ով սիրելի, հաւաստի իսկ. եթէ զմտաւ ածել պարտ է, թուի ինձ, տարածիլ բանիս այսմիկ 'ի ժողովն՝ զոր ասացեր այժմիկ պարտ գոլ 'ի գիշերի 'ի միասին հաւաքիլ։

Պղատոն. Գեղեցկագոյն խորհեցար, ով Կլինիա,

և պարտ է արդ սմա, իբրու այժմիկ յարակայ մեզ բանս յաղդէ, ունել զամենայն առաքինութիւն. որոյ իշխէ ոչ մոլորիլն՝ առ բազումս դիտելով, այլ մի հայելով՝ ըստ այսորիկ հանապա՛զ զամենայն իբրու նետս թողացուցանել։

Կղինիաս. Ամենևին ամենեցուն արդ։

Պղատոն. Այժմիկ իսկ ուսուսցուք. զի ոչ ինչ է սքանչելի մոլորիլ քաղաքայն օրինականացն, զի առ այլ ինչ այսպէս հայի։ Ցօրինադրութեանցն՝ իւրաքանչիւր ոք 'ի քաղաքի և զբազումսն իսկ ոչ ինչ սքանչելի, ոմանց սահմանին գոլով՝ արդարութեանցն որպէս իշխեսցեն ոմանք 'ի քաղաքի, եթէ լաւագոյնք և եթէ վատթարագոյնք հանդիպեսցին գոլով. և ոմանց զի փարթամասցին, եթէ ծառայք ոմանց իցեն և եթէ ոչ. սոցունց արդ յօժարութիւնն առ ազատ կենցաղն իսկ դիմեալ, և միւս՝ 'ի միասին երկակի օրինադրին առ իւրաքանչիւրսն հայելով, իբրու զի ազատք գոլով՝ այլոց քաղաքաց տէր իցեն, որք իբրու իմաստնագոյնք առ այսոքիկ իսկ և այսպիսիքս ամենայն 'ի միասին և առ մի ինչ ոչ զանազանապէս պատուեալ ունելով ասել առ որ ինչ այլս սոցա պարտ է հայել։

Կղինիաս. Ո՛չ ապաքէն մեր իսկ, ո՛վ սիրելի, ուղղապէս թերևս իցէ երբեք եդեալ. քանզի առ մի ինչ ասացաք պարտ գոլ հանապազ ամենայն օրինացն իրի գոլ մեզ հայելով, և զայս ինչ զառաքինութիւն ասել ներէաք իսկ գոլ ուղղապէս։

Պղատոն. Այո։

Կղինիաս. Եւ զառաքինութիւնն՝ չորս եդաք ուրուք։

Պղատոն. Ցոյժ իսկ։

Կղինիաս. Եւ զմիտս իսկ այսոցիկ ամենեցուն առաջնորդ, առ որում այլոց ամենայնի և սոցունց երից պարտ է հայիլ։

Պղատոն. Գեղեցկապէս հետևիս, ո՛վ Կլինիա. բայց հանդերձ այսոցիկ և այլոց զկնի եկից։ Քանզի զմիտս վարչական իսկ և բժշկական և զօրավարական ասասցուք առ մի իսկ. այն ինչ որ պարտ է հայիլ

և զքաղաքականն յանդիմանելով աստանօր եմք այժմիկ. և որպէս զմարդ վերստին հարցանել ասասցուք թերևս, ով սքանչելի. դուդ իսկ առ զի՞նչ դիտես, զի՞նչ երբեք այն ինչ է մինն զոր հաւաստի բժշկական միտքն ունի իսկ ասել. և դուդ կովելլի տարբերեալ որպէս ասես արդեւք ամենեցուն ներխոհեմացն ասել ոչ ունիցիս։ Եւ կամ դու իսկ, Մեգիլէ և Կլինիա, հուպ լերուք համարելով յաղագս սորա ասել ցիս, զի՞նչ երբեք ասէք գոլ զսա, որպէս և ես յաղագս այլոց բազմաց առ ձեզ սահմանեցի։

Կղինիաս. Ոչ և միով իւիք, ով սիրելի։

Պղատոն. Եւ զի՞նչ զի պարտ է յօժարել իսկ իմանալ զսա, և որո՞վք։

Կղինիաս. Ո՞րպէս. առ ո՞րս ումանս ասես։

Պղատոն. Որպէս յորժամ չորս ասացաք առաքինութեան տեսակս լինել, յայտ է իբրու զմի իւրաքանչիւրոց պարտ է ասել չորից իսկ գոլով։

Կղինիաս. Սակայն զի՞նչ։

Պղատոն. Եւ սակայն մի իսկ զայսոսիկ զամենայն ասեմք. քանզի զարիութիւն՝ առաքինութիւն գոլ ասեմք, և զխոհեմութիւն՝ առաքինութիւն, և զայլ երկուսն իբր գոլով էակք ոչ բազումք՝ այլ մի, զայս ինչ միայն առաքինութիւն։

Կղինիաս. Ամենևին իսկ։

Պղատոն. Ըստ որում այժմիկ զանազանին այսոքիկ երկուս, և երկու անուն ընկալան, և զայլսն ոչ ինչ է ասել դժուարին. բայց ըստ որում մի զերկուսս մականուանեցաք զառաքինութիւն, և այլոց ոչ ևս է դիւրահաս։

Կղինիաս. Ո՞րպէս ասես։

Պղատոն. Ոչ ինչ է դժուարին յայտնել զոր ասեմս. քանզի բաշխեսցուք միմեանց զհարց և զպատասխանի։

Կղինիաս. Ո՞րպէս ասես իսկ։

Պղատոն. Հարց զիս, զի՞նչ երբեք մի առասելով զառաքինութիւն զերկաքանչիւրս՝ զերկու դարձեալ զսոսա առասասցուք, զմին արիութիւն և զմիւսն խոհեմութիւն։ Զի ասացից քեզ զպատճառն. զի

մինն իսկ է ըստ երկիւղի. որոյ և գազանքն հաղորդք են արիութեանն, և բարքն մանկանցն յոյժ նորագունիցն. քանզի առանց բանի և բնութեամբ՝ լինի հոգի արիագոյն. բայց առանց բանի իսկ՝ խոհեմական և միտս ունող ոչ եղև՝ ևս երբեք և ոչ է, և ոչ յապառնի ժամանակի լինիցի, իբրու գոլով և այլոյ ուրուք։

Կղինիաս. Ճշմարտապէս ասես։

Պղատոն. Իսկ այժմիկ ըստ որում են տարբերեալս և երկու՝ դու առ՚ի յինէն բանիւս ընկալար։ Արդ ըստ որում մի է և նոյն՝ դու դարձեալ ինձ բացատրեա. սակայն խորհեա իբրու առասելոց գոլով՝ թէ ո՛րպէս չորս ելով մի է, և զիս աղաչեա ցուցանելով քո իբրու զմինն դարձեալ թէ ո՛րպէս չորս։ Եւ արդ զոր ինչ յետ այսորիկ է դիտեսցուք՝ զդիտողն բաւականապէս, յաղագս որոց և իցէ. ոմանց՝ որոց է իսկ անունն՝ է իսկ և բան, որպէս միայն զանունն գիտել պարտ է և զբանն ոչ գիտել. և կամ զայն իսկ որ է ինչ, և յաղագս տարբերելոցն մեծութեամբ իսկ և գեղեցկութեամբ, զամենայն այսպիսիս ոչ գիտել՝ գարշելի է։

Կղինիաս. Թուի ինձ այդպէս։

Պղատոն. Մեծագոյն ինչ օրինադրի և օրինապահի, և այնմիկ որ առաքինութեամբ ամենեցուն տարբերիլ կարծի. և յաղթութիւն այսոցիկ սոցունց ընկալեալ է, և կամ զայսոսիկ զնոյնս յաղագս որոյ այժմիկ ասեմք արիութիւն, ողջախոհութիւն, խոհեմութիւն, արդարութիւն։

Կղինիաս. Եւ ո՞րպէս։

Պղատոն. Իսկ յաղագս այսոցիկ զպատմողսն և զվարդապետսն և զօրինադիրսն և զայլոց զպահապանսն կարօտացելոցն ճանաչել իսկ և գիտել, և կամ կարօտայելոցն տանջել իսկ և գանս առնուլ՝ սխալելով զոր ոչ պարտ է ուսուցանելով զոր ինչ զօրութիւն ունի չարութիւն և առաքինութիւն, և ամենևին յայտնելով զանազանիլ այլոցն։ Այլ զքերթող զոմն եկեալ՚ի քաղաքն, կամ զխրատողն որ ասելով լաւագո՞յն գոլ երևիլ այնմիկ որ ամենայն

առաքինութեամբ յաղթեալ է։ Ապա յայսպիսի քաղաքին՝ յորում ոչ բանիւ, այլ գործով բաւական պահպանք իցեն յաղագս առաքինութեան, գիտելով բաւականապէս սքանչելի ինչ քաղաքիս այս առանց պահապանի գոլով, կրե՞լ զոր ինչ բաղում քաղաքք կրեն այժմիկ քաղաքացս։

Կղինիաս. Ոչ ինչ իրաւապէս։

Պղատոն. Զիա՞րդ զոր ասեմք այժմիկ առնել մեզ պարտ է. կամ ո՞րպէս զպահապանքն ստուգագոյնք բազմաց յաղագս առաքինութեան՝ գործով և բանիւ պատրաստելի է. կամ զի՞նչ յեղանակաւ ներխոհեմացն գլխոյն իսկ և զգայութեանցն նմանեսցի մեզ քաղաքս, իբրու այսպիսի պահպանութիւնս ստացեալ յինքեան։

Կղինիաս. Ո՞րպէս արդ և զի՞նչ յեղանակաւ, ո՛վ սիրելի, նմանեցուցանելով զսա այսպիսոյ ումեմն ասասցուք։

Պղատոն. Յայտ է՝ իբրու նորին իսկ քաղաքին ելով բոլոր հաստատութիւնն գլխոյն. և 'ի պահապանացն համբակագոյնքն իսկ իբրու առ ծայր գագաթանն հասեալս՝ զքաջամիտսն զամենայն արագութիւն առ հոգին ունելով առ բոլոր քաղաքն շուրջանակի.... ելով, և զպահապանսն՝ աւանդիչք զգայութեանց առ յիշելութիւնսն, և յերիցանցն իսկ՝ պատմողք լինել ամենեցուն որ առ քաղաքաւն են. և զսոսա մտաց նմանեալք զբազումս և զբանից արժանիս զզանազանապէս խորհելոցն և ծերոցն խոկալոցն և պաշտօնայիւքն համբակօքն հանդերձ խորհրրդով վարելով, այսպէս արդ հասարակաբար կեցուցանել երկաքանչիւրոցս ճշմարտապէս զբոլոր քաղաքն, զիա՞րդ այսպէս ասեմք՝ եթէ այլաբար պարտ գոլ կազմել հանգոյնս արդեւք զամենեսեան ստանալով և ոչ ստուգեալս զայնոսիկ որ ուսուցեալ են իսկ և խրատեալ։

Կղինիաս. Այլ, ո՛վ սքանչելի, անհնար է։

Պղատոն. Հասանելի՞ է մեզ արդեւք առ ստուգագոյն խրատ ինչ յառաջագունին։

Կղինիաս. Թերեւս արդեւք։

Պղատոն. Որոյ այժմիկ գրէ Թէ 'ի վերայ հասու հանդիպի Թերևս գոլով՝ սա այն իսկ որում պէտս ունիմք։

Կղինիաս. Ճշմարիտ իսկ։

Պղատոն. Ո՞չ ապաքէն ասէաք զայն իսկ որ առ իւրաքանչիւր իր ծայրագոյն չինող էր և պահապան՝ ոչ միայն պարտ գոլ սմա առ բազումն հայել կարող գոլ, այլ և առ մինն փութալ, գիտելով իսկ և գիտացեալ առ այնմիկ շարադասել զամենայն 'ի միասին տեսանելով։

Կղինիաս. Ուղղապէս։

Պղատոն. Յաղագս որոյ և իցէ արդ որ և իցէ լինիցի, կամ առ մի տեսակն 'ի բազմաց և յաննմանից՝ հնար գոլ հայիլն։

Կղինիաս. Թերևս։

Պղատոն. Ոչ Թերևս, այլ Ճշմարտապէս, ով դիւցազինս. այսմիկ ոչ գոյ հաւաստագոյն հնար 'ի մարդկանէ ոչ և միոյ ուրուք։

Կղինիաս. Քեզ հաւատալով, ով սիրելի, ներէ մարդ, և այսպէս գնասցուք ասելով։

Պղատոն. Հարկել պարտ է արդեւք, որպէս Թուի, և զաստուածային քաղաքավարութեանն պահապանքն ստուգապէս տեսանել. նախ Թէ զի՞նչ երբեք 'ի ձեռն ամենայն չորից նոյն հանդիպի զոր ասեմք արդ արիութեամբ և ողջախոհութեամբ և արդարութեամբ և խոհեմութեամբ մի ելով առաքինութիւն, միով իրաւապէս անուամբ առասել զայս ինչ, ով սիրելիք, եԹէ ախորժեսցուք յայսմիկ որպէս յուժգնաբար ըմբռնեալք, ոչ Թողացուսցուք՝ նախքան եԹէ բաւականապէս ասասցուք եԹէ զի՞նչ երբեք է առ որոյ հայել պարտ է, կամ իբրու զմի կամ իբրու զբոլոր, և կամ զերկաքանչիւրս. և կամ որպէս երբեք բնաւորեալ և կամ այսօրիկ Ճողոպրելով 'ի մէնջ կարծիցուք երբեք ունելով բաւականապէս ըստ առաքինութեան իրի, յաղագս որոյ ոչ եԹէ բազում է, և ոչ եԹէ չորս՝ իբրու մի, կարողք իցեմք ասել այսուհետև։ Եւ եԹէ մերոյ իսկ խորհրդակցութեան հաւանեսցուք՝ իբրու այսպէս հնարեսցուք 'ի քաղաքիս լինել

մեզ այս ինչ՝ ապա եթէ ամենևին արդեւք թուիցի թոյլ տալ արդ պարտ է։

Կղինիաս. Ոչ իսկ, երդնլով ասեմ 'ի հիւրընկալ աստուածն, ով սիրելի, թողուլ մեզ պարտ է ուրուք զայսպիսի ինչ։ Քանզի թուի մեզ ուղղապէս ասել. այլ արդ որպէս և հնար իցէ՝ հնարիցի ոք արդեւք։

Պղատոն. Ոչ ես թէ որպէս թերևս հնարեսցուք ասեմք, բայց եթէ պա՞րտ է կամ ոչ՝ նախ հաստատեսցուք, 'ի միասին խոստովանելով ըստ նոցունց ինքեանց։

Կղինիաս. Այլ սակայն իսկ պարտ է թէ հընար է։

Պղատոն. Եւ զի՞նչ արդ. յաղագս ազնուագունի իսկ և բարւոյ՝ զնոյնս զայս ինչ տրամախոհիմք, իբրու բազում են. միայն զիւրաքանչիւր ոք 'ի սոցանէ զպահապանսն գիտել մեզ պարտ է, և կամ թէ ո՞րպէս մի իսկ է և կամ ո՞ւր։

Կղինիաս. Գրեթէ թուի 'ի հարկէ գոլ պարտ, թէ ո՞րպէս և մի տրամախոհեսցուք։

Պղատոն. Եւ զի՞նչ է տրամախոհիլն իսկ, և զցոյցն բանիւ ցուցանել անկարող գոլ։

Կղինիաս. Եւ ո՞րպէս. զի չորքոտանոյ ումեմն ունակութիւն դու ասես։

Պղատոն. Եւ զի՞նչ. յաղագս ամենայն առաքինութեանցն արդեւք նո՞յնս է մեզ բան. զի պարտ է այնոցիկ որ ճշմարտապէս պահապանք իցեն օրինացն, ճշմարտապէս գիտել զառ ճշմարտութիւնն սոցունց իրս, և բանիւ իսկ բաւական է գոլ մեկնել, և գործոք 'ի միասին հետևիլ՝ դատելով զբարեւք եղեալսն, և զայն որ ոչ՝ ըստ բնութեան։

Կղինիաս. Ո՞րպէս ոչ։

Պղատոն. Ո՞չ արդեւք մի 'ի գեղեցկագունիցն է՝ որ ինչ առ աստուածսն է իր. զոր փութով իսկ կատարեցաք, իբրու են իսկ, և որչափ զօրութեան տեարք երևին. գիտելով իսկ՝ ըստ որում հնար է զայսոսիկ գիտել մարդոյ, և յոլովագունիցն իսկ որ 'ի քաղաքին են ներել, համբաւին միայն օրինացն հե-

տեւելով. իսկ այնոցիկ որ պահպանութեանն հաղորդք են, ոչ ներել այնմիկ՝ որ ոչ աշխատիցի, ամենայն հաւաստի հասանել յայնցանէ որ առ աստուածսն են, այլ յորդորման գոլով ոչ երբեք յօրինապահացն յօժարիլ առ այն ինչ որ ոչ է աստուածային և առ այսոսիկ աշխատելով, և ոչ այնոցիկ որ ըստ առաքինութեանն են թուիլ անձին իւր ընտրելագոյն։

Կղինիաս. Իրաւացի է արդ որպէս ասեսդ, այնմիկ որ առ այսպիսիս ծուլացեալ են, և կամ անկարող հեռագոյն գեղեցկագունիցն տալ պատասխանի։

Պղատոն. Արդ գիտեմք ուրեմն զի երկու են այնոքիկ որ առ աստուած 'ի հաւատարմութիւն ածեն, որպէս պատմեցաք յառաջագունիւքն։

Կղինիաս. Որպիսի՞ք ոմանք։

Պղատոն. Մի իսկ զհոգւոյն ասէաք՝ իբրու երիցագոյն իսկ է և աստուածային քան զամենայն՝ որոց շարժութիւնն լինելութիւն ընկալեալ մշտաբուղխ գոյացութիւն հնարեաց. և մի իսկ՝ որ ինչ առ բերմանն է, իբրու հուպ է դասութեան աստեղաց. իսկ և այլոց՝ որչափ միտք հասու է զամենայն 'ի միասին զարդարելով։ Քանզի որ տեսանի զայսոսիկ ոչ վատթարագոյն և ոչ ռամկապէս, ոչ ոք այսպէս անաստուած 'ի մարդկանէ բնաւորեալ է, որ ոչ զներհակն է կրեալ քան եթէ զկարծեցեալն 'ի ձեռըն բազմաց։ Քանզի ոմանք տրամախոհին զայնոքիկ՝ որ զայսպիսիս ընձեռեալ են, աստեղաբաշխութեամբ իսկ և հանդերձ սոքօք այլօք հոգևոր արուհեստիւք անաստուածք լինել տեսանելով՝ իբրու հարկաւ լինելով իրողութիւնս, այլ ոչ խորհրդով կամաց յաղագս բարութեանց կատարելոց։

Կղինիաս. Եւ ո՞րպէս։

Պղատոն. Ունելով թերևս իսկ ամենայն զոր ասացին այժմիկ՝ զներհակն ունել, և յորժամ անշունչք զսոսա տրամախոհեալսն կարծէին։ Աքանչանս իսկ և յայնժամ սոքօք յարմար իր և կասկածանս ունէր՝ այժմիկ ճշմարտապէս թուեցեալս, այնոցիկ որ 'ի ստուգութիւնս սոցա մերձենային. իբրու զի ոչ երբեք թերևս անշունչ գոլով այսպիսի ստուգու-

թիւնս՝ սքանչելի խորհրդօք վարիլ արդեւք միտք
ոչ ստանալով։ Եւ ոմանք յանդգնէին զայս ինչ ըղ-
նոյնս առ այսուիկ տագնապել, և յայնժամ ասե-
լով իբրու միտք իցէ որ զարդարեացն որչափ ընդ
երկնաւ են։ Եւ սոքա դարձեալ՝ սխալելով հոգւոյ
բնութեան՝ զի երիցագոյն իցէ քան զմարմինս, այլ
խորհելով զսա իբրու կրսերագոյն, զամենայն որպէս
ասելի է տաղս, վերստին յետս դարձուցին, և մա-
նաւանդ զանձինս իւրեանց յոյժ։ Քանզի որ ինչ
առաջի աչաց են ընդ երկնաւ բերեալք՝ ամենայն
երևեցաւ սոցա լի գոլ քարամբք և հողով և այ-
լովք բազմօք, անշունչ մարմնօք բաշխելով զպատճառ-
սըն ամենայն աշխարհի։ Այսոքիկ էր որ ինչ յայն-
ժամ գործեցան բազում անաստուածութիւնք, և
դժուարութիւնք մերձենալով յայսպիսիս. և արդ
բամբասել 'ի վերայ եհաս քերթողացն՝ զիմաստա-
սիրողսն, մնոտի շանց նմանեցուցանելով վարելոց
հաչմամբ. և զայլս իսկ անհմտագոյնս ասել. բայց
այժմիկ, որպէս ասացաւ, զամենայն ներհակն ունի։

Կղինիաս. Ո՞րպէս։

Պղատոն. Ոչ երբեք հաստատապէս աստուածա-
պաշտ 'ի մահկանացու 'ի մարդկանէ ոչ և միոյ ու-
րուք, որ ոչ զասացեալս այժմիկ զայսոսիկ երկուս
ընկալցի. հոգի իսկ իբրու է ամենեցուն երիցագոյն՝
որչափ լինելութեան հաղորդեալ են, և անմահ իսկ
և իշխան ամենայն մարմնոյ. և 'ի վերայ այսոցիկ՝
զայժմիկ ասացեալս բազում անգամ զառ աստեղա-
ցըն էակացն, և զայնոքիկ որ նախ սոցունց հարկա-
ւոր ուսմունքն են հասցէ, զայնոքիկ որ ըստ Երա-
ժըշտականին են սոցունց հաղորդութիւն տեսանե-
լով, 'ի միասին վարեսցի առ սովորութեանց խոհ-
մունսն, և յօրինականս շարայարմարելով. և որչափ
բան ունիցի սոցունց հնարաւոր իցէ հատուցանել
զբանն։ Եւ որչափ ոչ իսկ՝ այնոքիկ որ զսոսա իբ-
րու են իսկ առ ատենական առաքինութիւնս գրե-
թէ ստանալով, իշխան իսկ ոչ երբեք լինիցի բաւա-
կան բոլոր քաղաքին, այլ պաշտօնեայ արդեւք այլոց
իշխանաց։ Տեսանել արդ պարտ է, ով Կլինիա և

Մեգիլէ, ըստ ամենայն ասացեալ օրինացս՝ որչափ
և պատմեցաք, թէ և զայս ինչ բերիցուք իբրու
պահապան լինելով ըստ օրինացն 'ի սակս փրկու-
թեան՝ զիշխանացն 'ի գիշերի ժողովն խորատու, որ-
չափ պատմեցաք թէ և հաղորդ եղեալ կամ որպէս
ունիմք:

Կղինիաս. Այլ, ով եղբայր և սիրելի և ընկեր,
որպէս ոչ բերիցուք, թէ և սուղ ինչ երբեք կա-
րասցուք:

Պղատոն. Եւ սակայն առ այսպիսի ինչ ամենե-
քեան հանդիսասցուք: Քանզի պաշտպան ձեզ և ես
իսկ թերևս յօժարութեամբ լինիցիմ, և առ ինև
զայլս գտից արդեւք վասն առ այսպիսիս փութա-
պէս մանաւանդ եղեալ ինձ հմտութեանս և խոր-
հրդուածոցս:

Կղինիաս. Այլ, ով սիրելի, քան զամենայն իւիք մա-
նաւանդ այսուիկ գնալ մեզ պարտ է՝ ըստ որում և աս-
տուած գրեթէ ածէ զմեզ. բայց զի՞նչ մեզ յեղա-
նակս լինելով լինիցի արդեւք, զայս ինչ արդ այժ-
միկ ասասցուք և քննեսցուք:

Պղատոն. Ոչ ևս օրէնս, ով Մեգիլէ և Կլինիա,
յաղագս այսպիսեացս հնար է օրինադրել՝ նախ
քան եթէ զարդարեսցի. և յայնժամ՝ որոց տէարք
սոցա պարտ է լինել, յաղագս այնոցիկ օրինադրել
արժան է: Արդ այն ինչ որ զայսպիսիս կազմէ ու-
սումն՝ հանդերձ 'ի միասին բազում հաւաքմամբ
լինիցի, թերևս թէ ուղղապէս լինիցի:

Կղինիաս. Ո՞րպէս, և զի՞ զայս ինչ ասել ասաս-
ցուք:

Պղատոն. Նախ իսկ ընտրել մեզ պարտ է զժո-
ղովն յայնցանէ՝ որչափ պատշաճաւորք ըստ պահ-
պանութեանն բնութիւնն իցեն հասակօք իսկ և ուս-
մանց զօրութեամբք և յեղանակաց բարուք և սովո-
րութեամբք: Եւ յետ այսորիկ՝ զոր և ինչ պարտ է
ուսանել, ոչ գտանել դիւրին է, և ոչ այլոյ ուրուք
գտողի լինելակերտ: Եւ առ այսոցիկ ժամանակս
առ որս և որովք պարտ է զիւրաքանչիւրս ընկալուլ,
զայսոսիկ գրովք ասել սնոտի է. քանզի ոչ այնոցիկ որ

ուսանին յայտնի լինիցին արդեւք, զի առժամայն ուսանին՝ նախ քան զներքոյ հոգւոյն իւրաքանչիւրում ուսմանն մակացութիւն լինել։ Այսպէս արդ զայսոսիկ ամենայն անձառելիս, վասն ոչ ինչ յառաջագոյն ասացեալ յայտնել ինչ ասացելոցս։

Կղինիաս. Զի՞նչ արդ պարտ է առնել՝ ունելով այսոցիկ այսպէս, ով սիրելի։

Պղատոն. Ասացեալն, ով սիրելիք, հասարակաբար 'ի միջի մերում թուի կալ։ Եւ եթէ յաղագս քաղաքավարութեան ամենայնի տագնապել կամիմք, կամ երից վեց ասեն և կամ երիս քուէս արկանելով, զայսոսիկ առնելի է մեզ։ Բայց ես հանդերձ ձեւք տագնապեցայց՝ ասել իսկ և պատմել զթուեցեալսն ինձ յաղագս խրատու և սննդեան՝ այժմիկ բանիւքս շարժեցելոյն։ Արդ տագնապ իսկ ոչ փոքր և ոչ առ 'ի յայլոց ոմանց բերելի իցէ արդեւք։ Այլ քեզ, ով Կլինիա, փոյթ առնել հրամայեմ, զի դու զմագնետացւոց քաղաքն, և կամ որում աստուած՝ մականուն զսա արասցէ՝ կազմելով զսա ուղղապէս, առցես զմեծ գովասանութիւնն կամ արիագոյն գոլ թուելոյն այնոցիկ որ յետոյ լինելոցն են՝ ոչ երբեք ձողոպրիցիս։ Եթէ մեզ սակայն այսպիսի աստուածային ժողովն լինիցի, ով սիրելի ընկերք, աւանդել պարտ է սմա զքաղաքն. և երկբայութիւն ոչ գոյ ոչ և միոյ ուրուք յայնցանէ՝ որ այժմիկ օտարագոյն[1] յայսցանէ՝ իբրու ասելի տաղս, օրինադրելոց են։ Բայց գրէ թէ իցէ ճշմարտապէս՝ զարթնութեան անուրջ զկատարեալ ոչ փոքումք յառաջագոյն երազի իբրու բանիւս 'ի վերայ հասաք, գլխոյ և մտաց հաղորդութեան պատկեր ինչ 'ի միասին խառնելով. եթէ արքն մեզ ստուգապէս 'ի միասին խառնեսցին և պատշաճաբար խրատեսցեն, և խրատեալք իսկ 'ի ծայրաքաղաքին վայրին բնակելով պահապանք կատարեսցեն, որպիսի մեք ոչ եմք տեսեալ՝ յառաջագոյն կենցաղումն, ըստ առաքինութեան փրկութիւն լինելով։

1 Յօրինակին՝ տարփագոյն. ուղղեցաք ըստ բնագրին։

Մեգիլլոս. Ո՛վ սիրելի Կլինիա, յամենայնի այժմիկ առ 'ի մէնջ ասացելոցդ կամ զքաղաքն թողացուցանել պարտ է 'ի բնակութենէ, և կամ զօտարըս[1] ոչ պարտ է թողուլ. այլ ամենայն աղաչանօք և հնարօք հաղորդ առնել պարտ է առ 'ի քաղաքիս բնակութիւն։

Կղինիաս. Ճշմարտապէս ասես, ո՛վ Մեգիլլէ. և ես իսկ արարից զայսոսիկ այսպէս, և առցես զդա հանդերձ քև։

Մեգիլլոս. Հանդերձ ինև իսկ առից։

1 Այսինքն՝ զաթենացին զՊղատոն։

## ՊԼԱՏՈՆԻ

# Ի ՄԻՆՈՎՍ ԵՒ ՅԱՂԱԳՍ ՕՐԻՆԻ



ՏՐԱՄԱԲԱՆՈՒԹԵԱՆՍ ԴԷՄՔՆ՝ ՍՈԿՐԱՏԷՍ Է ԵՒ ԱՅԼ ՈՄՆ ԱՆԱՆՈՒՆ

Հարցումն. Օրէն մեզ զի՞նչ է։

Պատասխանի. Զորպիսի՞ և հարցցես զօրինացն։

Հ. Եւ զի՞նչ է որով զանազանի օրէն յօրինէ, ըստ այսուիկ ըստ որում օրէն գոյ։ Եւ դիտեա որով հանդիպիմ քեզ հարցանելով։ Զի այսպէս հարցանեմ. իբրու թէ հարցանեմ թէ զի՞նչ է ոսկի։ Եւ դարձեալ նոյնպէս վերստին հարցանէիր թէ զորպիսի՞ ոսկոյ ասեմ. թուի ինձ, ոչ եթէ ուղղապէս հարցանէիր. քանզի ոչ երբեք զանազանի ոսկի յոսկոյ, ոչ քար 'ի քարէ՝ ըստ քար իսկ գոլոյն և ըստ ոսկի. այսպէս և ոչ օրէն յօրինէ ոչ ուրուք ինչ տարբերի, այլ ամենեքեան նոյնպէս են. քանզի օրէն իւրաքանչիւր՝ 'ի սոցանէ է նմանապէս. ոչ ոմն յաւէտ և ոմն նուազ։ Եւ ամենայն որ հարցանեմս իսկ այս է՝ եթէ զի՞նչ է օրէն։ Արդ եթէ հուպ է 'ի քեզ՝ ասա։

Պ. Եւ այլ զի՞նչ օրէն արդեւք իցէ, ո՛վ Սոկրատէս, թէ ոչ օրինեալքն։

Հ. Թէ և ասացուած թուի քեզ գոլ ասացեալքն, և տեսութիւն՝ տեսեալքն, և լուր՝ լուեալքն. կամ այլ ասացուածն, և այլ ասացեալքն, և այլ ինչ լուրն և այլ ինչ լուեալքն, և այլ ինչ արդեւք օրէնն, և այլ ինչ օրինեալն. այսպէս, թէ որպէս քեզ թուի։

Պ. Ա՛յլ ինչ այժմ՝ ինձ երևեցաւ։

Հ. Ո՞չ արդեւք օրէն է օրինեալն։

Պ. Ոչ ինձ թուի։

Հ. Զի՞նչ արդեւք իցէ օրէնն. խնդրեցաք զայս այսպէս. եթէ ոք զմեզ զայժմ արդ ասացեալքս հարցանէր։ Քանզի տեսութեամբ ասէք զտեսանելիսն տեսանել, որպիսի ինչ ելով տեսութեանն՝ տեսանի. տայա՞ք արդեւք պատասխանի սմա թէ զգայութեամբս 'ի ձեռն ունկանց յայտնէ մեզ զձայնքն։ Այսպէս այսուհետև եթէ հարցցէ զմեզ, քանզի օրէն օրինեալքն թուեցան որպիսի ելով օրինիւն, սա օրինի որպէս զգայութեամբ ոմամբ և եթէ յայտարարութեամբ, որպէս և ուսեալքն ուսանին յայտարարութեամբ մակացութեանն, և կամ գիւտիւ ոմամբ որպէս և գտեալքն գտանին, որպէս այն իսկ որ ողջութեանն են պատճառ և կամ հիւանդութեան՝ բժշկականաւն, և զոր աստուածքն տրամախոհին՝ իբրու ասեն դիւթքն, դիւթականաւ. զի արհեստքն մեզ՝ գիւտ է իրողութեանց։ Արդ է՞ այսպէս։

Պ. Յոյժ իսկ։

Հ. Եւ զի՞նչ արդեւք կարծեմք սոցունց յաւէտագոյն գոլ զօրէնն. աւանդութի՞ւնքս այսք և վճիռքս։

Պ. Ինձ իսկ թուի. քանզի այլ զի՞նչ արդեւք ասիցէ ոք զօրէնն գոլ, վասն որոյ տագնապի, զոր դուդ հարցանես՝ ամենայն օրէնդ աւանդութիւն գոլ քաղաքի։

Հ. Որպէս թուի ինձ, քաղաքական կարծիս ասել զօրէնն։

Պ. Ես իսկ։

Հ. Եւ թերևս բարւոք ասես. բայց սակայն այսպէս վեհագոյն գիտասցուք։ Ասե՞ս զոմանք իմաստունք։

Պ. Այո։

Հ. Զի և արդարքն արդարութեամբ արդարք։

Պ. Յոյժ իսկ։

Հ. Ո՞չ ապաքէն և օրինագէտքն՝ օրինիւն օրինագէտք։

Պ. Այո։

Հ. Եւ անօրէնքն՝ անօրէնութեամբ անօրէնք։

Պ. Այո։

Հ. Եւ օրինաւորքն արդար։

Պ. Այո։

Հ. Եւ անօրէնքն ապիրատք։

Պ. Այո, ապիրատք։

Հ. Ո՞չ ապաքէն գեղեցկագոյն է արդարութիւնն։

Պ. Այդպէս։

Հ. Եւ գարշելի իսկ ապիրատութիւնն և անիրաւութիւնն։

Պ. Այո։

Հ. Եւ ոմն կեցուցանէ զքաղաք, և զայլս ամենայն. և միւսն կորուսանէ և դրդուէ։

Պ. Այո։

Հ. Իբրու յաղագս ումեմն գեղեցկագունի ելոյ՝ պարտ է յաղագս օրինի տրամաբանել, և իբրու զբարի ինչ խնդրել զսա։

Պ. Ո՞րպէս ոչ։

Հ. Ո՞չ ապաքէն աւանդութիւն ասացաք գոլ քաղաքի զօրէնն։

Պ. Ասացաք իսկ։

Հ. Եւ զի՞ արդեւք. ո՞չ են ոմանք քաղցր աւանդութիւնք, և ոմանք չարք։

Պ. Են իսկ արդ։

Հ. Եւ օրէն իսկ չար ո՞չ գոյր։

Պ. Ոչ իսկ։

Հ. Ո՞չ ապաքէն ուղղապէս ասի տալ պատասխանի այսպէս պարզաբար թէ օրէնք՝ է աւանդութիւն քաղաքի։

Պ. Ոչ ինձ իսկ թուի։

Հ. Ո՞չ արդեւք յարմարի չար աւանդութիւնն օրէն գոլ։

Պ. Ոչ իսկ։

Հ. Այլ սակայն թուեցեալ ումն և ինձ ինքեան երևի գոլ օրէն. բայց քանզի ոչ չար թուեցեալն՝ իցէ օրէն։

Պ. Այո։

Հ. Եւ քաղցր կարծիս զի՞նչ է. ո՞չ ճշմարիտ։

Պ. Այո։

Հ. Ո՞չ ապաքէն ճշմարիտ կարծիսն է էակին գիւտ։

Պ. Է իսկ։

Հ. Ապա օրէնքն ուրեմն կամի էակին գոլ գտող։

Պ. Ո՞րպէս արդեւք, ով Սոկրատէս, եթէ օրէնն՝ էակին գտող է, ոչ միշտ նոքումք օրինօքն վարիմք, յաղագս նոցունց եթէ էակքն մեզ գտեալ են։

Հ. Ախորժէ իսկ օրէնն ոչ գոլ նուազ էակին գիւտ. իսկ այնոքիկ որ ոչ նոքօք միշտ օրինօքն վարին մարդիկ, որպէս թուի մեզ, ոչ կարեն միշտ գտանել զոր կամի օրէնն՝ այսինքն զէակն։ Քանզի բեր տեսցուք, եթէ ապաքէն աստուստ մեզ լինիցի յայտ. նոքօ՞ք օրինօք հանապազ վարէաք մեք, եթէ այլովք այլ երբեք։ Եւ եթէ ամենեքեան նոքօ՞ք եթէ այլովք այլ ոմամբ։

Պ. Այլ այս, ով Սոկրատէս, ոչ է դիւրածան, զի ոչ նոյնք իսկ միշտ նոյն օրինօքն վարէին. այլ այլք՝ այլովք։ Քանզի աւասիկ մեզ իսկ ոչ է օրէն զմարդիկ զոհել, այլ ամենեւին անսուրբ. բայց կարքեդոնացիք զոհեն իբրու սուրբ իւրեանց և օրինաւոր և զայսոսիկ, ոմանք 'ի նոցանէ և զորդիքն իւրեանց Կռոնոսի, իբրու թերեւս և դու լուեալ իսկ ես։ Եւ ոչ եթէ միայն բարբարոս արք, քան զմերս այլօք օրինօք վարին, այլ այնոքիկ որ 'ի Լիկիա են, և ծննունդքն Աթամանտոսի առաքինոյն այնմիկ առն՝ որպիսի՛ զոհք զոհեն ելլենացիք գոլով։ Որպէս և զմեզ ինքեանս գիտես և դու ուրուք լսելով, որո՛վք օրինօք վարէաք քան զայժմ, առ մեռեալս զոհք զենլով՝ յառաջ քան զարտաքս կրելն զմեռեալս. և զայլս ոմանս որով սովորութիւն է կանանց 'ի պէսպէսս առնել ընթադրութիւնս ձայնիւք, եռացմամբ անօթից. և որ հեռագոյնքն էին տակաւին և յառաջագոյնքն՝ անդ իսկ 'ի ներքոյ տանն թաղէին զմեռեալսն։ Բայց մեք յայսցանէ ոչ ինչ գործեմք. իբրու ոչ մեք մեզ ինքեանց միշտ նոքօք օրինօքն օրինիմք, և ոչ միմեանց այլ մարդիկ։

Հ. Ո՞չ ապա այսուհետեւ սքանչելի է, ով վեհագոյնդ, եթէ դու իսկ ուղղապէս ասես. սակայն այս յինէն զանխլեալ էր։ Այլ մինչեւ արդեւք դու ըստ ինքեան ասես երկար բանիւ. զթուեցեալդ քեզ եւ դարձեալ ես, գուցէ ոչ 'ի միասին անկեալ պատահիմք ոչ եւ միով իւիք. բայց եթէ հաղորդաբար դիցի առաջի խորհուրդն՝ թերեւս խոստասցուք եւ մեք համդերձ ձեւք։ Արդ եթէ ախորժիցես իսկ, հարցանելով ինչ առ յինէն, հաղորդաբար ինեւ դիտեա, եւ եթէ ախորժես՝ պատասխանի տալով։

Պ. Բայց կամիմ, ով Սոկրատէս, տալ քեզ պատասխանի, զոր ինչ եւ հարցցես արդեւք։

Հ. Բեր արդ, դու ո՞րպէս օրինես. զարդարն իրաւ գոլ, եւ զանիրաւն արդար, եթէ զարդարն արդար, եւ զանիրաւն անիրաւ[1]։

Հ. Ո՞չ ապաքէն եւ 'ի Պարսք։

Պ. Այդպէս է։

Հ. Մի՞շտ ուրուք արդեւք։

Պ. Միշտ։

Հ. Նու ո՞րպէս. յոլովն ձգեալ ծանրագո՞յն օրինի աստանօր եւ սակաւն թեթեւագոյն, եթէ ներհակապէս։

Պ. Ոչ. այլ որ յաձախէ ձգմամբն, ծանր թուի աստանօր, եւ սակաւն թեթեւագոյն։

Հ. Ո՞չ ապաքէն եւ 'ի Կարքեդոն եւ 'ի Լիւկիա։

Պ. Այո։

Հ. Իսկ արդ բարիքն, որպէս թուի ինձ, բարիք են թուեցեալ՝ յամենայն տեղ, եւ գարշելիքն գարշելիք, եւ ոչ գարշելիքն՝ բարիք, եւ ոչ բարիքն՝ գարշելիք։

Պ. Այդպէս։

Հ. Ապաքէն իբրու ընդհանրապէս ասելի է, էակքըն օրէն գոլ, եւ ոչ՝ ոչէակքն, եւ առ մեզ եւ առ այլոց ամենեցուն։

1 Տող մի պակասէ աստէն 'ի մերում օրինակի, պատասխանին Մինովայ՝ այսպէս. Ես զարդարն՝ արդար համարիմ, եւ զանիրաւն անիրաւ

Պ. Թուի ինձ իսկ:

Հ. Ապա ուրեմն որ 'ի յէակն մեղանչէ՝ յօրինաւորն մեղանչէ:

Պ. Այսպէս, ով Սոկրատէս, որպէս դուդ ասես, և երևին այդպիսիք օրինաւոր մեզ միշտ և այլոց: Այլ յորժամ զմտաւ ածեմ եթէ ոչ դադարեմք 'ի վեր և 'ի խոնարհ փոխելով զօրէնսն, ոչ կարեմ հաւանել:

Հ. Զի թերևս ոչ իմանաս զայսոսիկ փոխաբերելով եթէ նոյնք են. այլ աստանօր առ իս նայեաց 'ի սոսա. արդեւք հանդիպեա՞լ ես շարագրութեան յաղագս ողջութեան վաստակելոց:

Պ. Ես իսկ:

Հ. Գիտե՞ս արդ թէ որո՞յ արհեստի է այնմիկ շարագրութիւն:

Պ. Գիտեմ զի բժշկականի է:

Հ. Ո՞չ ապաքէն բժիշկք կոչես զայնոսիկ որ մակացողքն են յաղագս այսորիկ:

Պ. Ասեմ:

Հ. Ո՞րպէս արդ. մակացո՞ղքն զնոյնսն յաղագս նոցունց օրինեն, եթէ այլք ա՞յլ ինչ:

Պ. Թուի ինձ եթէ զնոյնսն:

Հ. Ո՞րպէս. եղլենացի՞քն միայն եղլենացւոցն, թէ և բարբարոսք ինքեանց և եղլենացւոց, յաղագս որոց արդեւք գիտիցեն զնոյնն և օրինիցեն:

Պ. Այսոքիկ արդեւք բազում հարկ է զի գիտողքըն իւրեանց, սոցունց օրինակից լինիցին, և եղլենացւոց և բարբարոսաց:

Հ. Բարեւք ետուր պատասխանի. ո՞չ ապաքէն և միշտ:

Պ. Այո և միշտ:

Հ. Ո՞չ ապաքէն և բժիշկք շարագրեն յաղագս ողջութեան՝ զոր ինչ թուի նոցա գոլ:

Պ. Այո:

Հ. Ապա ուրեմն բժշկական իրք և բժշկական օրէնք՝ այսպիսի շարագրութիւնս է բժշկացն:

Պ. Բժշկականք իսկ։

Հ. Երկրագործական[1] արդեւք շարագրութիւնքն օրէ՞նք են։

Պ. Այո։

Հ. Որո՞ց են արդ յաղագս պարտիզագործութեան շարադրութիւնքն և օրինակքն։

Պ. Պարտիզապանաց։

Հ. Ապա ուրեմն պարտիզակա՞ն օրէնք են այսպիսիքս։

Պ. Այո։

Հ. Այնոցիկ որ մակացողք են՝ պարտիզա՞ց իշխեն։

Պ. Եւ ո՞րպէս ոչ։

Հ. Եւ մակացո՞ղք են պարտիզականքն։

Պ. Այո։

Հ. Իսկ որո՞ց են յաղագս թոշակի կազմութեանցն շարագրութիւնք և օրինականքն։

Պ. Խոհակերացն։

Հ. Խոհակերակա՞ն արդեւք օրէնք են։

Պ. Խոհակերականք։

Հ. Այնոցիկ, որպէս թուի, մակացո՞ղքն են թոշակի կազմութեան իշխել։

Պ. Այո։

Հ. Եւ մակացո՞ղք են[2]։

Հ. Իցեն արդ. և որոց իսկ ոյն որ յաղագս քաղաքի մատակարարութեանն շարադրութիւնքն և օրինականքն, ո՞չ արդեւք այնոցիկ որ մակացողքն են քաղաքի իշխել։

Պ. Թուի ինձ իսկ։

Հ. Եւ գիտե՞ն այլ ոմանք զայս ինչ, եթէ միայն քաղաքականքն և թագաւորականքն։

Պ. Սոքա իսկ արդ։

Հ. Ապա ուրեմն այսոքիկ շարագրութիւնքն են՝ զոր մարդիկք օրէնք կոչեն՝ 'ի թագաւորաց և 'ի բարի արանց շարագրեալք։

1 Յոյնն՝ γεωμετρικοί, որ է երկրաչափական. զի երկրագործականն γεωργικοί ասի 'ի հելլենացին։

2 Եւ աստէն պակասի 'ի Թրուամ օրինակի պատասխանին Մինովայ՝ այսպէս. Այո, մակացողք։

Պ. Ճշմարտապէս ասես։

Հ. Արդ մակացողքն այլ ինչ իսկ այլ երբեք շարագրիցեն յաղագս նոցունց։

Պ. Ոչ։

Հ. Եւ ո՛չ փոխադրիցեն երբեք յաղագս նոցունց այլ և այլ օրինական բանք։

Պ. Ոչ իսկ։

Հ. Ապա եթէ տեսանեմք զոմանս ուրուք զայս ինչ առնելով, ո՞րպէս ասիցեմք. մակացո՞ղք գոլ եթէ անմակացողք զայնոսիկ որ զայս ինչ գործեն։

Պ. Անմակացողք։

Հ. Ո՞չ ապաքէն զայն իսկ որ ուղիղն իցէ՝ օրինական զսա ասասցուք իւրաքանչիւր ոք գոլ, կամ զբժշկական կամ զխոհակերական, կամ զպարտիզապանականն։

Պ. Այո։

Հ. Եւ զայն արդեւք որ ոչն է ուղիղ, ասե՞մք տակաւին ոչ գոլ օրէն։

Պ. Ոչ ևս։

Հ. Առա՞նց օրինի ապա ուրեմն լինի։

Պ. Հարկ է։

Հ. Ո՞չ ապաքէն և 'ի շարագրութիւնքն որ յաղագս արդարոցն և ապիրատացն, և ամենևին յաղագս զարդարման քաղաքի և յաղագս թէ որպէս պարտ է մատակարարել զքաղաք, այն իսկ որ ուղիղն է, օրէն է թագաւորական. և որ ոչն է ուղիղ՝ ոչ. որ և թուի օրէն գոլ՝ այնոցիկ որ ոչ գիտեն, քանզի է անօրէն։

Պ. Այո։

Հ. Ուղղապէս ապա ուրեմն խոստովանեցաք՝ օրէն գոլ զգիւտն էակին։

Պ. Երևի։

Հ. Տակաւին և զայս ինչ 'ի սմա տրամադրեսցուք։ Ո՞վ է մակացող առ երկրաւ՝ բաշխել զսերմանիսն։

Պ. Երկրագործն։

Հ. Եւ սա իսկ զարժանի սերմանիսն բաշխէ իւրաքանչիւրում երկրի։

Պ. Այո։

Հ. Ապա ուրեմն երկրագործն՝ որ սոցունց բաշխէ

բարի, և սորա օրէնքն և բաշխմունքն առ սոքօք՝ ուղիղք են։

Պ. Այո։

Հ. Եւ ո՞վ է տրոհիցն առ երգքն բարի բաշխողն, զարժանիսն բաշխելով, և որոյ են օրէնք ուղիղք։

Պ. Փողահարին և փանտեռնահարին։

Հ. Ուրեմն ապա օրինականագոյն 'ի սոցունց այն է՝ որ փողահարագոյն է։

Պ Այո։

Հ. Եւ ո՞վ զկերակուրքն առ մարդկան մարմինքն բաշխել արիագոյն է. ո՞չ այն իսկ որ ըստ որում արժանին է բաշխէ։

Պ. Այո։

Հ. Սորա արդ բաշխմունքն և օրէնքն վեհագոյն, և այն որ յաղագս այսոցիկ օրինականագոյնն է, և արիագոյն բաշխող։

Պ. Յոյժ իսկ։

Հ. Ո՞վ է սա։

Պ. Դաստիարակ։

Հ. Սա իսկ զմարդկային երամն մարմնոյն բաշխել՝ քաջագոյն էր։

Պ. Այո։

Հ. Եւ ո՞վ զոչխարացն երամն արածել կարող է, և զի՞նչ է անուն սորա։

Պ. Հովիւ։

Հ. Ապա ուրեմն հովուին օրէնքն ոչխարացն՝ արիագոյնք են։

Պ. Այո։

Հ. Եւ անդիորդուոցն՝ արջառոցն։

Պ. Այո։

Հ. Եւ որո՞յ արդ օրէնքն արիագոյնք են անձանց մարդկան. ո՞չ թագաւորին, արդ ասա։

Պ. Ասեմ զնոյնդ։

Հ. Բարիոք այսուհետև ասես։ Ունիցի՞ս իսկ արդեւք ասել թէ ո՞վ 'ի նախնեացն եղև օրինադիր փողահարականացն. թերևս ոչ իմանաս, այլ թէ ախորժես՝ յիշեցուցից ես։

Պ. Յոյժ իսկ։

Հ. Մարսիաս արդեւք ասի, և 'ի մանկականսն իւր Ողիմպոս փռիւգացին։

Պ. Ճշմարտապէս ասես։

Հ. Սոցունց արդեւք և հարուածքն փողոյն աստուածայինք են, և միայն շարժեն. և երևեցուցանեն զայնոքիկ որ պիտանացուքն են յաստուածոցն, և տակաւին և այժմ սոքա են իբրու աստուածայինք։

Պ. Են այդոքիկ։

Հ. Եւ ո՛վ ասի 'ի նախնի թագաւորացն եղեալ բարի օրէնսդիր, որոյ տակաւին և այժմ օրինադրութիւնքն կան և մնան՝ իբրու աստուածային գոլով։

Պ. Ոչ զմտաւ ածեմ։

Հ. Ո՞չ գիտես թէ ո՛յք ոմանք հնագոյն օրինօք վարին 'ի հելլենացւոցն։

Պ. Ուրեմն զլակեդմոնացիքն ասես, և զԼիւկիւրգոս զօրինադիրն։

Հ. Բայց այսոցիկ թերևս ոչ են տակաւին ամ երեքհարիւրս, և կամ սոցունց սակաւ ինչ յոլովագոյն։ Այլ այսոցիկ օրինացս վեհագոյնքն՝ թէ ուստի եկին նախ գիտե՞ս։

Պ. Ասեն իսկ թէ նախ 'ի Կրետէոյ։

Հ. Ո՞չ ապաքէն սոքա նախնեօք օրինօք վարին հելլենացւոցն։

Պ. Այո։

Հ. Գիտե՞ս արդ թէ ո՛վ ոմանք սոցունց բանի թագաւորք էին, Մինովս և Ռադամանթիւս՝ Արամազդայ և Եւրոպէ մանկունքն, որոց այս իսկ օրէնքս են։

Պ. ԶՌադամանթիւսէ իսկ ասեն, ո՛վ Սոկրատէս, թէ այր արդար էր. և զՄինովսէ թէ վայրենի ոմն և դժուարին և ապիրատ։

Հ. Ատտիկեցի և ողբերգական առասպել ասես, ո՛վ վեհագոյն։

Պ. Եւ զիա՞րդ. ո՞չ այսոքիկ ասին յաղագս Մինովսի։

Հ. Ո՞չ ապաքէն 'ի Հոմերոսէ և յԵսիոդոսէ, որք մանաւանդ. հաւանականագոյնք են ամենեցուն ողբարարացն, զորոց դու լսելով՝ զայս ասես։

Պ. Սակայն և զինչ սոքա յաղագս Մինովսի ասեն։

Հ. Ես արդեւք քեզ ասացից, զի ոչ արդեւք և դու ամբարշտիցիս, որպէս և բազումք. քանզի ոչ գոյ որ ինչ սոցունց ամբարշտագոյն է, և ոչ գոյ իր յորմէ պարտ է յաւէտագոյն խորշիլ, եթէ յաստուածքն բանիւ և գործել մեղանչել: Եւ երկրորդ՝ աստուածային մարդիկ, այլ յոյժ բազում պարտ է միշտ առնել նախախնամութիւն, յորժամ հանդերձեալ իցես զայն ումն պարսաւել կամ գովել, գուցէ ոչ ասիցես ուղղապէս: Ի սակս այսորիկ պարտ է իմանալ և ճանաչել զարք բարիք և զչարք. քանզի ատէ աստուած զայնոսիկ որ պարսաւիցեն զնմանին նորա, և կամ գովիցեն զհակառակեալն ընդ նմա, և է նա այն որ բարին է. զի մի կարծիցես զքարինս իսկ սրբբազան գոլոյ, և զծառս և զհաւս և զօձս, և ըզմարդիկ ոչ: Այլ ամենեցուն այսոցիկ սրբազանագոյն է մարդ՝ որ բարին է, և անմաքրագոյն՝ որ չարն է: Իսկ արդ և յաղագս Մինոսի՝ իբրու զսա Հոմերոս և Եսիոդոս ներբողեն 'ի սակս այնմիկ ասա, զի մի մարդ գոլով 'ի մարդոյ՝ 'ի դիւցազին որդի Արամազդայ բանիւ մեղանչես: Զի Հոմերոս՝ յաղագըս Կրետացի ասելով թէ բազում մարդիկ են նմա և իննսուն քաղաք, « աստանօր, ասէ, Կնոսոս՝ մեծ քաղաք, յորում Մինովս իննամեայ թագաւորէր Արամազդայ մեծին ոմ Արիստէէ [1] »: Արդ այս Հոմերոսին ներբողեան 'ի Մինովս՝ սղիւք ասացեալ, որպիսի յոչ և մի 'ի դիւցազինման է արարեալ Հոմերոս. քանզի թէ Արամազդ ճարտասան է, և արհեստս այս է ամենագեղեցիկ, բազում և այլ ուրուք յայտնի: Սակայն աստանօր ասէ զՄինովս զուգաւորիլ իննամեայ ժամանակաւ ընդ Արամազդայ բանիւք, և ուսանիլ խրատելով իբրու ճարտասանի եղյր՝ Արամազդայ: Եւ արդ զի որում զայս պատիւս ետ Հոմերոս 'ի դիւցազանցն, իբրու առ 'ի յԱրամազդայ խրատիլ, ոչ գոյ այլ՝ բաց 'ի Մինովսայ, այս է գովասանութիւն սքանչելի: Եւ Ոդիսեւս 'ի Նեկուայ-

1 Այսպէս 'ի մերում թարգմանութեան, որպէս և 'ի ստորև, վրիպական իմացուածով յոյն բառին ὀαριστής: ՅՈդիսական քերթուածոց Հոմերի են տողքս:

քըն[1] ասէ՝ դատելով, ոսկի նշանակ ունել, քերդելով զՄինովս, և ոչ զՌադամանթիւս։ Բայց զՌադամանթիւս ոչ աստանօր դատելով քերդեաց, և ոչ միաբանեալ ընդ Արամազդայ ոչ ուրուք. վասն այսորիկ ասեմ և զՄինովս ամենեցուն յաւէտագոյն առ 'ի Հոմերոսէ ներբողիլ. քանզի Արամազդայ մանուկ գոլ, և 'ի ձեռն սորա խրատիլն, ոչ ունի գերազանցութիւն գովասանութեան։ Զի զայս իսկ տաղս նշանակէ, թէ իննամեայ թագաւորէր Արամազդայ մեծին Արիստէս զուգակից Արամազդայ գոլ զՄինովս։ Քանզի ժմ արքն բանք են և ժմ Արիստէս, զուգակից է բանիւք, ուսանէր արդ 'ի ձեռն իննամաց յԱրամազդայ յայրն Մինովս, զոմանս ուսանելով, և զոմանս ապացուցանելով, զայն իսկ որ յառաջին իննամեայ ժամանակին ուսեալ էր առ 'ի յԱրամազդայ։ Եւ են ոմանք՝ որոց թուի թէ ժմ Արիստէսն ըմպակից և խաղակից նշանակի գոլ Արամազդայ։

Այլ այսուիկ արդեւք արուեստիւ վարիցի ոք, զի ոչ ինչ ասեն՝ այն որ այսպէս կարծեն. քանզի բազում մարդկան գոլով ելլենացւոց և բարբարոսաց ողջոյն[2] այլ ոմանք՝ 'ի միասին յըմպելոյ 'ի բաց կացեալք, և յայսպիսի խաղալեացս՝ առ որոց գինին է։ Այլ կրետացիքն, և երկրորդ լակեդոմոնացիքն առ 'ի կրետացւոցն ուսեալք. և 'ի Կրիտէ[3] մին սա է յայլոց օրինացն զորս եդ Մինովս, ոչ ըմպակից լինելըն միմեանց 'ի հարբեցութեանն։ Եւ յայտ է թէ զոր կարծէր բարի գոլ, զայնոքիկ եդ օրինական իւրոց քաղաքացւոցն. քանզի ոչ ուրուք, իբրու այր ոմն յոռին՝ Մինովս, զայլ ինչ կարծէր, և գործէր զայլ ինչ քան զայն որ կարծէր։ Վասն որոյ իսկ և զօրէնս զայսոսիկ եդ իւրոց քաղաքացւոցն. 'ի ձեռն որոց Կրետէ զամենայն ժամանակս իւր բարեբաստի, և Լակեդոմոն՝ յորում հետէ սկսաւ այսոքիւք

1 Յոյնն՝ ἐν νεχεια

2 Յօրինակին ոչ գոյն. ուղղեցաք ըստ յունին։

3 Յօրինակին՝ ոփէ.. ուղղեցաք ըստ բնագրին։

աստուածայնովքս վարիլ: Իսկ Ռադամանթիւս, բարի այր, իսկ քանզի խրատեալ էր առ 'ի Մինովսայ, և խրատեալ էր իսկ՝ ոչ զբոլոր զթագաւորական արհեստն, այլ զայն որ պաշտօն տայր թագաւորականին՝ որչափ վերակացու լինել 'ի դատաւորականն, ուստի և դատաւոր բարի ասացաւ գոլ: Քանզի օրինապահով սովաւ վարէր Մինովս ըստ քաղաքին այնմիկ որ էր Կնոսոս. իսկ 'ի միւսում քաղաքին՝ որ էր Կրետէ, Տալոսիւ. քանզի Տալովս երից անգամ յամին շրջէր ընդ գեւղսն՝ պահելով զօրէնսն 'ի սոսա, 'ի պղնձի վճիռսն ունելով գրեալ զօրէնս, ուստի և պղնձի կոչեցաւ: Ասէ իսկ Եսիոդոս՝ եղբայրատեսակս սոցունց Մինովս. քանզի յիշեալ զանուն սորա ասէ, « որ թագաւորականագոյն եղև մահկանացու թագաւորաց, և զյոլովից զվերին զդասն ընկալաւ արանց գավելեաց, կենդանի[1] ունելով նշանակ, որով և քաղաքաց թագաւորէր ». և սա ասէ զԱրամազդայ նշանակն ոչ այլ ինչ, քան եթէ զխրատն զԱրամազդայ, ըստ որում ուղղէր զԿրետէ:

Պ. Վասն էր արդ երբեք, ով Սոկրատէս, այսպիսի համբաւս իմանիր զՄինովսէ, իբրու անխրատի ուրուք և չարի գոլով:

Հ. Վասն որոյ և դու, ով լաւագոյն, եթէ ողջախոհ իցես՝ խորշիցիս, և այլ ամենայն այր՝ որոյ հանդերձեալ է ընտրեալ գոլ, ոչ երբեք թշնամանեալ ընդ առն քերթողականի ոչ և միոյ. քանզի քերթողքըն՝ մեծ զօրութիւն ունին առ կարծիսն առ որպիսի արդեւք ինչ արասցեն 'ի մարդիկ, կամ բարեբանելով կամ ստորոգելով: Որով արդեւք և սխալեցաւ Մինովս, պատերազմել ընդ այսմիկ քաղաքիս, յորում և այլ բազում իմաստութիւն գոյ. և քերթողք պէսպէսք այս իսկ քերթուածոյ և ողբերգութեան: Եւ ողբերգութիւն է նախնի աստանօր, ոչ իբրու կարծեն 'ի Թեսպիդոսէ 'ի բաց սկսեալ և ոչ 'ի Փռիւնիքոսէ: Այլ եթէ կամիցիս զմտաւ ածել՝ յոյժ նախնի զսա գտցես, գոլով գիւտ այս-

1 Յոյնն՝ զԱրամազդայ:

միկ քաղաքի։ Եւ է իսկ քե՛րթուածոյս հրապարակի հրճուականագոյն և սփոփականագոյն ինչ՝ ողբերգութիւնս. յորում արդեւք և երկար անկեալ առ մեզ զՄինովս պատուհասեմք, փոխանակ այնոցիկ՝ հարկեաց զմեզ վճարել զմաքսն զայնոսիկ։ Զայս ինչ արդ մեղաւ Մինովս թշնամացեալ ընդ մեզ, ուստի է արդ իրս՝ զոր դուդ հարցանես. վասն որոյ և եղև թուեցեալ չարագոյն։ Ապ'եթէ ոչ էր այս, յոյժ իսկ բարի էր և օրինական, զոր և յառաջագոյն ասէաք օրինադիր գոլ բարի. և մեծագոյն նշան այս է, զի անշարժք են սորա օրէնքն, իբրու յաղագս քաղաքի բնակութեան էապէս գտեալ և քաջ զճշմարտութիւնն։

Պ. Թուիս ինձ, ով Սոկրատէս, վայելչագոյն ասացեալ զբանդ։

Հ. Ո՞չ ապաքէն, եթէ զճշմարտապէս ասեմ, թըւին քեզ նախնագունիւք՝ կրետացիքն Մինովայ և Ռադամանթիւսի քաղաքացիքն օրինիւք վարեալք։

Պ. Երևի։

Հ. Սոքա ուրեմն նախնեացն արիագոյն օրինադիրք եղեն՝ արածողք և հովիւք արանց. որպէս և Հոմերոս ասէ, հովիւ ժողովրդոց գոլ զբարի զօրավարն։

Պ. Յոյժ իսկ։

Հ. Բե՛ր արդեւք՝ առ 'ի սիրելոյն Արամազդայ՝ եթէ ոք հարցցէ զմեզ որ մարմնոյ բարի օրինադիրն է և բաշխողն, զի՞նչ են այսոքիկ զոր բաշխելով առ մարմինն վեհագոյն զսա գործիցեն, ասասցո՞ւք արդ բարեւք և ողիւք տալով պատասխանի, եթէ սնունդ և վաստակք՝ ոմամբքն աճեցուցանելով, և միւսիւք կրթելով, և բաղկացուցանելով զնոյն մարմինս։

Պ. Այսպէս իսկ։

Հ. Ապ'եթէ յետ այսորիկ հարցցէ զմեզ թէ զի՞նչ երբեք իցեն այն իսկ, զոր բարի օրինադիրն և բաշխողն՝ բաշխելով առ հոգին, վեհագոյն զսա գործիցէ, զի՞նչ արդեւք պատասխանի տալով ոչ ամաչիցեմք՝ վասն մեր նոցունց և վասն հասակաց մերոց։

Պ. Ոչ ունիմ տակաւին զայս ասել։

Հ. Իսկ արդ գարշելի զհոգւոյ մերոյ յորում եր-կաքանչիւրքն երևին սովաւ՝ ոչ գիտել, այսինքն է յորժամ են բարիքն և յոռիքն, և զմարմնոյ իսկ և զայլոցն քննել։

Հ. Եւ քաղցր կարծիս զի՞նչ է. ո՛չ ճշմարիտ:

Պ. Այո:

Հ. Ո՞չ ապաքէն ճշմարիտ կարծիսն է էակին գիւտ:

Պ. Է իսկ:

Հ. Ապա օրէնքն ուրեմն կամի էակին գոլ գտող:

Պ. Ո՞րպէս արդեւք, ով Սոկրատէս, եթէ օրէնն՝ էակին գտող է, ոչ միշտ նոքումք օրինօքն վարիմք, յաղագս նոցունց եթէ էակքն մեզ գտեալ են:

Հ. Ախորժէ իսկ օրէնն ոչ գոլ նուազ էակին գիւտ. իսկ այնոքիկ որ ոչ նոքօք միշտ օրինօքն վարին մարդիկ, որպէս թուի մեզ, ոչ կարեն միշտ գտանել զոր կամի օրէնն՝ այսինքն զէակն: Քանզի բեր տեսցուք, եթէ ապաքէն աստուստ մեզ լինիցի յայտ. նոքօ՞ք օրինօք հանապազ վարէաք մեք, եթէ այլովք այլ երբեք: Եւ եթէ ամենեքեան նոքօ՞ք եթէ այլովք այլ ոմամբք:

Պ. Այլ այս, ով Սոկրատէս, ոչ է դիւրածան, զի ոչ նոյնք իսկ միշտ նոյն օրինօքն վարէին. այլ այլք՝ այլովք: Քանզի աւասիկ մեզ իսկ ոչ է օրէն զմարդիկ զոհել, այլ ամենևին անսուրբ. բայց կարքեդոնացիք զոհեն իբրու սուրբ իւրեանց և օրինաւոր և զայսոսիկ, ոմանք ՚ի նոցանէ և զորդիքն իւրեանց Կռոնոսի, իբրու թերևս և դու լուեալ իսկ ես: Եւ ոչ եթէ միայն բարբարոս արք, քան զմերս այլօք օրինօք վարին, այլ այնոքիկ որ ՚ի Լիկիա են, և ծննունդքն Աթամանտոսի առաքինոյն այնմիկ առն՝ որպիսի՛ զոհք զոհեն ելլենացիք գոլով: Որպէս և զմեզ ինքեանս գիտես և դու ուրուք լսելով, որովք օրինօք վարէաք քան զայժմս, առ մեռեալս զոհք զենլով՝ յառաջ քան զարտաքս կրելն զմեռեալս. և զայլս ոմանս որով սովորութիւն է կանանց ՚ի պէսպէսս առնել ենթադրութիւնս ձայնիւք, եռացմամբ անօթից. և որ հեռագոյնքն էին տակաւին և յառաջագոյնքն՝ անդ իսկ ՚ի ներքոյ տանն թաղէին զմեռեալսն: Բայց մեք յայսցանէ ոչ ինչ գործեմք. իբրու ոչ մեք մեզ ինքեանց միշտ նոքօք օրինօքն օրինիմք, և ոչ միմեանց այլ մարդիկ:

Հ. Ո՞չ ապա այսուհետև սքանչելի է, ով վեհագոյնդ, եթէ դու իսկ ուղղապէս ասես. սակայն այս լինէին զանխլեալ էր։ Այլ մինչև արդեւք դու ըստ ինքեան ասես երկար բանիւ. զԹուեցեալդ քեզ և դարձեալ ես, գուցէ ոչ 'ի միասին անկեալ պատահիմք ոչ և միով իւիք. բայց եթէ հաղորդաբար դիցի առաջի խորհուրդն՝ Թերևս խոստացուք և մեք համդերձ ձեւք։ Արդ եթէ ախորժիցես իսկ, հարցանելով ինչ առ յինէն, հաղորդաբար ինև դիտեա, և եթէ ախորժես՝ պատասխանի տալով։

Պ. Բայց կամիմ, ով Սոկրատէս, տալ քեզ պատասխանի, զոր ինչ և հարցցես արդեւք։

Հ. Բեր արդ, դու ո՞րպէս օրինես. զարդարն իրա՞ւ գոլ, և զանիրաւն արդար, եթէ զարդարն արդար, և զանիրաւն անիրաւ[1]։

Հ. Ո՞չ ապաքէն և 'ի Պարսք։

Պ. Այդպէս է։

Հ. Մի՞շտ ուրուք արդեւք։

Պ. Միշտ։

Հ. Եւ ո՞րպէս. յոլովն ձգեալ ծանրագո՞յն օրինի աստանօր և սակաւն ԹեԹևագոյն, եթէ ներհակապէս։

Պ. Ոչ. այլ որ յաճախէ ձգմամբն, ծանր Թուի աստանօր, և սակաւն ԹեԹևագոյն։

Հ. Ո՞չ ապաքէն և 'ի Կարքեդոն և 'ի Լիւկիա։

Պ. Այո։

Հ. Իսկ արդ բարիքն, որպէս Թուի ինձ, բարիք են Թուեցեալ՝ յամենայն տեղ, և գարշելիքն գարշելիք, և ոչ գարշելիքն՝ բարիք, և ոչ բարիքն՝ գարշելիք։

Պ. Այդպէս։

Հ. Ապաքէն իբրու ընդհանրապէս ասելի է, էակքըն օրէն գոլ, և ոչ՝ ոչէակքն, և առ մեզ և առ այլոց ամենեցուն։

1 Տող մի պակասէ աստէն 'ի մերում օրինակի, պատասխանին Մինովայ՝ այսպէս. Ես զարդարն՝ արդար համարիմ, և զանիրաւն անիրաւ

Պ. Թուի ինձ իսկ։

Հ. Ապա ուրեմն որ 'ի յէակն մեղանչի՝ յօրինաւորն մեղանչի։

Պ. Այսպէս, ով Սոկրատէս, որպէս դուդ ասես, և երևին այդոքիկ օրինաւոր մեզ միշտ և այլոց։ Այլ յորժամ զմտաւ ածեմ եթէ ոչ դադարեմք 'ի վեր և 'ի խոնարհ փոխելով զօրէնքն, ոչ կարեմ հաւանել։

Հ. Չի թերևս ոչ իմանաս զայսոքիկ փոխաբերելով եթէ նոյնք են. այլ աստանօր առ իս նայեաց 'ի սոսա. արդեւք հանդիպեա՞լ ես շարագրութեան յաղագս ողջութեան վաստակելոց։

Պ. Ես իսկ։

Հ. Գիտե՞ս արդ թէ որո՞յ արհեստի է այնմիկ շարագրութիւն։

Պ. Գիտեմ զի բժշկականի է։

Հ. Ո՞չ ապաքէն բժիշկք կոչես զայնոքիկ որ մակացողքն են յաղագս այսորիկ։

Պ. Ասեմ։

Հ. Ո՞րպէս արդ. մակացո՞ղքն զնոյնսն յաղագս նոցունց օրինեն, եթէ այլք ա՞յլ ինչ։

Պ. Թուի ինձ եթէ զնոյնքն։

Հ. Ո՞րպէս. ելլենացի՞քն միայն ելլենացւոցն, թէ և բարբարոսք ինքեանց և ելլենացւոց, յաղագս որոց արդեւք գիտիցեն զնոյնն և օրինիցեն։

Պ. Այսոքիկ արդեւք բազում հարկ է զի գիտողքըն իւրեանց, սոցունց օրինակից լինիցին, և ելլենացւոց և բարբարոսաց։

Հ. Բարեւք ետուր պատասխանի. ո՞չ ապաքէն և միշտ։

Պ. Այո և միշտ։

Հ. Ո՞չ ապաքէն և բժիշկք շարագրեն յաղագս ողջութեան՝ զոր ինչ թուի նոցա գոլ։

Պ. Այո։

Հ. Ապա ուրեմն բժշկական իրք և բժշկական օրէնք՝ այսպիսի շարագրութիւնս է բժշկացն։

Պ. Բժշկականք իսկ:

Հ. Երկրագործական[1] արդեւք շարագրութիւնքն օրէ՞նք են:

Պ. Այո:

Հ. Որո՞ց են արդ յաղագս պարտիզագործութեան շարադրութիւնքն և օրինակքն:

Պ. Պարտիզապանաց:

Հ. Ապա ուրեմն պարտիզակա՞ն օրէնք են այսպիսիքս:

Պ. Այո:

Հ. Այնոցիկ որ մակացողք են՝ պարտիզա՞ց իշխեն:

Պ. Եւ ո՞րպէս ոչ:

Հ. Եւ մակացո՞ղք են պարտիզականքն:

Պ. Այո:

Հ. Իսկ որո՞ց են յաղագս Թոշակի կազմութեանցն շարագրութիւնք և օրինականքն:

Պ. Խոհակերացն:

Հ. Խոհակերակա՞ն արդեւք օրէնք են:

Պ. Խոհակերականք:

Հ. Այնոցիկ, որպէս Թուի, մակացո՞ղքն են Թոշակի կազմութեան իշխել:

Պ. Այո:

Հ. Եւ մակացո՞ղք են[2]:

Հ. Իցէն արդ. և որոց իսկ այն որ յաղագս քաղաքի մատակարարութեանն շարադրութիւնքն և օրինականքն, ո՞չ արդեւք այնոցիկ որ մակացողքն են քաղաքի իշխել:

Պ. Թուի ինձ իսկ:

Հ. Եւ գիտէ՞ն այլ ոմանք զայս ինչ, եթէ միայն քաղաքականքն և Թագաւորականքն:

Պ. Սոքա իսկ արդ:

Հ. Ապա ուրեմն այսոքիկ շարագրութիւնքն են՝ զոր մարդիկք օրէնք կոչեն՝ 'ի Թագաւորաց և 'ի բարի արանց շարագրեալք:

1 Յոյնն՝ γεωμετρικοί, որ է երկրաչափական. զի երկրագործականն γεωργικοί ասի 'ի հելլենացին:

2 Եւ աստէն պակասի 'ի մերում օրինակի պատասխանին Մինովայ՝ այսպէս. Այո, մակացողք:

Պ. Ճշմարտապէս ասես։

Հ. Արդ մակացողքն այլ ինչ իսկ այլ երբեք շարադրիցեն յաղագս նոցունց։

Պ. Ոչ։

Հ. Եւ ոչ փոխադրիցեն երբեք յաղագս նոցունց այլ և այլ օրինական բանք։

Պ. Ոչ իսկ։

Հ. Ապա եթէ տեսանեմք զոմանս ուրուք զայս ինչ առնելով, որպէս ասիցեմք. մակացո՞ղք գոլ եթէ անմակացողք զայնոսիկ որ զայս ինչ գործեն։

Պ. Անմակացողք։

Հ. Ո՞չ ապաքէն զայն իսկ որ ուղիղն իցէ՝ օրինական զսա ասասցուք իւրաքանչիւր ոք գոլ, կամ զբժշկական կամ զխոհակերական, կամ զպարտիզապանական։

Պ. Այո։

Հ. Եւ զայն արդեւք որ ոչն է ուղիղ, ասե՞մք տակաւին ոչ գոլ օրէն։

Պ. Ոչ ևս։

Հ. Առանց օրինի ապա ուրեմն լինի։

Պ. Հարկ է։

Հ. Ո՞չ ապաքէն և 'ի շարագրութիւնքն որ յաղագս արդարոցն և ապիրատացն, և ամենևին յաղագս զարդարման քաղաքի և յաղագս թէ որպէս պարտ է մատակարարել զքաղաք, այն իսկ որ ուղիղն է, օրէն է թագաւորական. և որ ոչն է ուղիղ՝ ոչ. որ և թուի օրէն գոլ այնոցիկ որ ոչ գիտեն, քանզի է անօրէն։

Պ. Այո։

Հ. Ուղղապէս ապա ուրեմն խոստովանեցաք՝ օրէն գոլ զգիւտն էակին։

Պ. Երևի։

Հ. Տակաւին և զայս ինչ 'ի սմա տրամադրեսցուք։ Ո՞վ է մակացող առ երկրաւ՝ բաշխել զսերմանիսն։

Պ. Երկրագործն։

Հ. Եւ սա իսկ զարժանի սերմանիսն բաշխէ իւրաքանչիւրում երկրի։

Պ. Այո։

Հ. Ապա ուրեմն երկրագործն՝ որ սոցունց բաշխէ

բարի, և սորա օրէնքն և բաշխմունքն առ սոքօք՝ ուղիղք են։

Պ. Այո։

Հ. Եւ ո՞վ է տրոհիցն առ երկրն բարի բաշխողն, զարժանիսն բաշխելով, և որոյ են օրէնք ուղիղք։

Պ. Փողահարին և փանտռնահարին։

Հ. Ուրեմն ապա օրինականագոյն 'ի սոցունց այն է՝ որ փողահարագոյն է։

Պ Այո։

Հ. Եւ ո՞վ զկերակուրքն առ մարդկան մարմինքն բաշխել արիագոյն է. ո՞չ այն իսկ որ ըստ որում արժանին է բաշխէ։

Պ. Այո։

Հ. Սորա արդ բաշխմունքն և օրէնքն վեհագոյն, և այն որ յաղագս այսոցիկ օրինականագոյնն է, և արիագոյն բաշխող։

Պ. Յոյժ իսկ։

Հ. Ո՞վ է սա։

Պ. Դաստիարակ։

Հ. Սա իսկ զմարդկային երամն մարմնոյն բաշխել՝ քաջագոյն էր։

Պ. Այո։

Հ. Եւ ո՞վ զոչխարացն երամն արածել կարող է, և զի՞նչ է անունն սորա։

Պ. Հովիւ։

Հ. Ապա ուրեմն հովուին օրէնքն ոչխարացն՝ արիագոյնք են։

Պ. Այո։

Հ. Եւ անդիորդւոցն՝ արջառոցն։

Պ. Այո։

Հ. Եւ որո՞յ արդ օրէնքն արիագոյնք են անձանց մարդկան. ո՞չ թագաւորին, արդ ասա։

Պ. Ասեմ զնոյնդ։

Հ. Բարիոք այսուհետև ասես։ Ունիցի՞ս իսկ արդեւք ասել թէ ո՞վ 'ի նախնեացն եղև օրինադիր փողահարականացն. թերևս ոչ իմանաս, այլ թէ ախորժես՝ յիշեցուցից ես։

Պ. Յոյժ իսկ։

Հ. Մարսիաս արդեւք ասի, և 'ի մանկականսն իւր Ոլիմպոս փոխուգացին։

Պ. Ճշմարտապէս ասես։

Հ. Սոցունց արդեւք և հարուածքն փողոյն աստուածայինք են, և միայն շարժեն. և երևեցուցանեն զայնոսիկ որ պիտանացուքն են յաստուածոցն, և տակաւին և այժմ սոքա են իբրու աստուածայինք։

Պ. Են այդոքիկ։

Հ. Եւ ո՛վ ասի 'ի նախնի թագաւորացն եղեալ բարի օրէնսդիր, որոյ տակաւին և այժմ օրինադրութիւնքն կան և մնան՝ իբրու աստուածային գոլով։

Պ. Ոչ զմտաւ ածեմ։

Հ. Ո՞չ գիտես թէ ո՞յք ոմանք հնագոյն օրինօք վարին 'ի հելլենացւոցն։

Պ. Ուրեմն զլակեդմոնացիքն ասես, և զԼիւկիւրգոս զօրինադիրն։

Հ. Բայց այսոցիկ թերևս ոչ են տակաւին ամս երեքհարիւրս, և կամ սոցունց սակաւ ինչ յոլովագոյն։ Այլ այսոցիկ օրինացս վեհագոյնքն՝ թէ ուստի եկին նախ գիտե՞ս։

Պ. Ասեն իսկ թէ նախ 'ի Կրետէոյ։

Հ. Ո՞չ ապաքէն սոքա նախնեօք օրինօք վարին հելլենացւոցն։

Պ. Այո։

Հ. Գիտե՞ս արդ թէ ո՛վ ոմանք սոցունց բանի թագաւորք էին, Մինովս և Ռադամանթիւս՝ Արամազդայ և Եւրոպէ մանկունքն, որոց այս իսկ օրէնքս են։

Պ. ԶՌադամանթիւսէ իսկ ասեն, ո՛վ Սոկրատէս, թէ այր արդար էր. և զՄինովսէ թէ վայրենի ոմն և դժուարին և ապիրատ։

Հ. Ատտիկեցի և ողբերգական առասպել ասես, ո՛վ վեհագոյն։

Պ. Եւ զիա՞րդ. ո՞չ այսոքիկ ասին յաղագս Մինովսի։

Հ. Ո՞չ ապաքէն 'ի Հոմերոսէ և յԵսիոդոսէ, որք մանաւանդ. հաւանականագոյնք են ամենեցուն ողբարարացն, զորոց դու լսելով՝ զայս ասես։

Պ. Սակայն և զինչ սոքա յաղագս Մինովսի ասեն։

Հ. Ես արդեւք քեզ ասացից, զի ոչ արդեւք և-
դու ամբարշտեցիս, որպէս և բազումք. քանզի ոչ
գոյ որ ինչ սոցունց ամբարշտագոյն է, և ոչ գոյ իր
յորմէ պարտ է յաւէտագոյն խորշիլ, եթէ յաս-
տուածքն բանիւ և գործել մեղանչել: Եւ երկրորդ՝
աստուածային մարդիկ, այլ յոյժ բազում պարտ է
միշտ առնել նախախնամութիւն, յորժամ հանդեր-
ձեալ իցես զայն ումն պարսաւել կամ գովել, գուցէ
ոչ ասիցես ուղղապէս: Ի սակս այսորիկ պարտ է
իմանալ և ճանաչել զարք բարիք և զչարք. քանզի ատէ
աստուած զայնոսիկ որ պարսաւիցէ զնմանին սորա,
և կամ գովիցէ զհակառակեալն ընդ սմա, և է սա
այն որ բարին է. զի մի կարծիցես զքարինս իսկ սըր-
բազան գոլոյ, և զծառք և զհաւք և զօձք, և ըզ-
մարդիկ ոչ: Այլ ամենեցուն այսոցիկ սրբազանա-
գոյն է մարդ՝ որ բարին է, և անմաքրագոյն՝ որ
չարն է: Իսկ արդ և յաղագս Մինոսի՝ իբրու զսա
Հոմերոս և Եսիոդոս ներբողեն 'ի սակս այնմիկ ասա,
զի մի մարդ գոլով 'ի մարդոյ՝ 'ի դիւցազին որդի
Արամազդայ բանիւ մեղանչես: Զի Հոմերոս՝ յաղա-
գըս Կրետացի ասելով թէ բազում մարդիկ են սմա
և իննսուն քաղաք, « աստանօր, ասէ, Կնոսոս՝ մեծ
քաղաք, յորում Մինովս իննամեայ թագաւորէր Արա-
մազդայ մեծին ո՛վ Արիստէէ [1] »: Արդ այս Հոմերոսին ներ-
բողեան 'ի Մինովս՝ սղիւք ասացեալ, որպիսի յոչ և
մի 'ի դիւցազինսն է արարեալ Հոմերոս. քանզի թէ
Արամազդ ճարտասան է, և արհեստս այս է ամե-
նագեղեցիկ, բազում և այլ ուրուք յայտնի: Սա-
կայն աստանօր ասէ զՄինովս զուգաւորիլ իննա-
ամեայ ժամանակաւ ընդ Արամազդայ բանիւք, և
ուսանիլ խրատելով իբրու ճարտասանի եղոյր՝ Արա-
մազդայ: Եւ արդ զի որում զայս պատիւս ետ Հո-
մերոս 'ի դիւցազանցն, իբրու առ 'ի յԱրամազդայ
խրատիլ, ոչ գոյ այլ՝ բաց 'ի Մինովսայ, այս է գո-
վասանութիւն սքանչելի: Եւ Ոդիւսեւս 'ի Նեկուայ-

1 Այսպէս 'ի մերում թարգմանութեան, որպէս և 'ի ստորև, վրիպական իմացուածով յոյն բառին ὀαριστής: ՅՈդիսական քերթուածոց Հոմերի են տողքս:

քըն[1] ասէ՝ դատելով, ոսկի նշանակ ունել, քերդելով զՄինովս, և ոչ զՌադամանթիւս։ Բայց զՌադամանթիւս ոչ աստանօր դատելով քերդեաց, և ոչ միաբանեալ ընդ Արամազդայ ոչ ուրուք. վասն այսոցիկ ասեմ և զՄինովս ամենեցուն յաւէտադոյն առ 'ի Հոմերոսէ ներբողիլ. քանզի Արամազդայ մանուկ գոլ, և 'ի ձեռն սորա խրատիլն, ոչ ունի գերազանցութիւն գովասանութեան։ Զի զայս իսկ տաղըս նշանակէ, թէ իննամեայ թագաւորէր Արամազդայ մեծին Արիստէս զուգակից Արամազդայ գոլ զՄինովս։ Քանզի ժմ արքն բանք են և ժմ Արիստէս, զուգակից է բանիւք, ուսանէր արդ 'ի ձեռն իննն ամաց յԱրամազդայ յայրն Մինովս, զոմանս ուսանելով, և զոմանս ապացուցանելով, զայն իսկ որ յառաջին իննամեայ ժամանակին ուսեալ էր առ 'ի յԱրամազդայ։ Եւ են ոմանք՝ որոց թուի թէ ժմ Արիստէօն ըմպակից և խաղակից նշանակի գոլ Արամազդայ։

Այլ այսուիկ արդեւք արուեստիւ վարիցի ոք, զի ոչ ինչ ասեն՝ այն որ այսպէս կարծեն. քանզի բազում մարդկան գոլով ելլենացւոց և բարբարոսաց ողջոյն[2] այլ ոմանք՝ 'ի միասին յըմպելոյ 'ի բաց կացեալք, և յայսպիսի խաղալեացս՝ առ որոց գինին է։ Այլ կրետացիքն, և երկրորդ լակեդոմոնացիքն առ 'ի կրետացւոցն ուսեալք. և 'ի Կրիտէ[3] մին սա է յայլոց օրինացն զորս եդ Մինովս, ոչ ըմպակից լինելըն միմեանց 'ի հարբեցութեանն։ Եւ յայտ է թէ զոր կարծէր բարի գոլ, զայնոքիկ եդ օրինական իւրոց քաղաքացւոցն. քանզի ոչ ուրուք, իբրու այր ռմն յոռին՝ Մինովս, զայլ ինչ կարծէր, և գործէր զայլ ինչ քան զայն որ կարծէր։ Վասն որոյ իսկ և զօրէնս զայսոսիկ եդ իւրոց քաղաքացւոցն. 'ի ձեռն որոց Կրետէ զամենայն ժամանակս իւր բարեբաստի, և Լակեդոմոն՝ յորում հետէ սկսաւ այսոքիւք

1 Յոյնն՝ ἐν νεχεια

2 Յօրինակին ոչ գոյն. ուղղեցաք ըստ յունին։

3 Յօրինակին՝ ոփէ.. ուղղեցաք ըստ բնագրին։

աստուածայնովքս վարիլ։ Իսկ Ռադամանթիւս, բարի այր, իսկ քանզի խրատեալ էր առ 'ի Մինովսայ, և խրատեալ էր իսկ՝ ոչ զբոլոր զթագաւորական արհեստն, այլ զայն որ պաշտօն տայր թագաւորականին՝ որչափ վերակացու լինել 'ի դատաւորականն, ուստի և դատաւոր բարի ասացաւ գոլ։ Քանզի օրինապահով սովաւ վարէր Մինովս ըստ քաղաքին այնմիկ որ էր Կնոսոս. իսկ 'ի միւսում քաղաքին՝ որ էր Կրետէ, Տալոսով. քանզի Տալովս երից անգամ յամին շրջէր ընդ գեւղսն՝ պահելով զօրէնսն 'ի սոսա, 'ի պղնձի վճիռսն ունելով գրեալ զօրէնս, ուստի և պղնձի կոչեցաւ։ Ասէ իսկ Եսիոդոս՝ եղբայրատեսակք սոցունց Մինովս. քանզի յիշեալ զանուն սորա ասէ, « որ թագաւորականագոյն եղև մահկանացու թագաւորաց, և զյոլովից զվերին զդասն ընկալաւ արանց գովելեաց, կենդանի[1] ունելով նշանակ, որով և քաղաքաց թագաւորէր ». և սա ասէ զԱրամազդայ նշանակն ոչ այլ ինչ, քան եթէ զխրատն զԱրամազդայ, ըստ որում ուղղէր զԿրետէ։

Պ. Վասն էր արդ երբէք, ով Սոկրատէս, այսպիսի համբաւս իմանիք զՄինովսէ, իբրու անխրատի ուրուք և չարի գոլով։

Հ. Վասն որոյ և դու, ով լաւագոյն, եթէ ողջախոհ իցես՝ խորշիցիս, և այլ ամենայն այր՝ որոյ հանդերձեալ է ընտրեալ գոլ, ոչ երբէք թշնամանեալ ընդ առն քերթողականի ոչ և միոյ. քանզի քերթողքըն՝ մեծ զօրութիւն ունին առ կարծիսն առ որպիսի արդեւք ինչ արասցեն 'ի մարդիկ, կամ բարեբանելով կամ ստորոգելով։ Որով արդեւք և սխալեցաւ Մինովս, պատերազմել ընդ այսմիկ քաղաքիս, յորում և այլ բազում իմաստութիւն գոյ. և քերթողք պէսպէսք այս իսկ քերթուածոյ և ողբերգութեան։ Եւ ողբերգութիւն է նախնի աստանօր, ոչ իբրու կարծեն 'ի Թեսպիդոսէ 'ի բաց սկսեալ և ոչ 'ի Փռինիքոսէ։ Այլ եթէ կամիցիս զմտաւ ածել՝ յոյժ նախնի զսա գտցես, գոլով գիւտ այս-

1 Յոյնն՝ զԱրամազդայ։

միկ քաղաքի։ Եւ է իսկ քերթուածոյս հրապարակի հրճուականագոյն և սփոփականագոյն ինչ՝ ողբերգութիւնս. յորում արդեւք և երկար անկեալ առ մեզ զՄինովս պատուհասեմք, փոխանակ այնոցիկ՝ հարկեաց զմեզ վճարել զմաքսն զայնոսիկ։ Զայս ինչ արդ մեղաւ Մինովս թշնամացեալ ընդ մեզ, ուստի է արդ իրս՝ զոր դուդ հարցանես. վասն որոյ և եղև թուեցեալ չարագոյն։ Ապ'եթէ ոչ էր այս, յոյժ իսկ բարի էր և օրինական, զոր և յառաջագոյն ասէաք օրինադիր գոլ բարի. և մեծագոյն նշան այս է, զի անշարժք են սորա օրէնքն, իբրու յաղագս քաղաքի բնակութեան էապէս գտեալ և քաջ զճշմարտութիւնն։

Պ. Թուիս ինձ, ով Սոկրատէս, վայելչագոյն ասացեալ զբանդ։

Հ. Ո՞չ ապաքէն, եթէ զճշմարտապէս ասեմ, թըւին քեզ նախնագունիւք՝ կրետացիքն Մինովսայ և Ռադամանթիւսի քաղաքացիքն օրինիւք վարեալք։

Պ. Երևի։

Հ. Սոքա ուրեմն նախնեացն արիագոյն օրինադիրք եղեն՝ արածողք և հովիւք արանց. որպէս և Հոմերոս ասէ, հովիւ ժողովրդոց գոլ զբարի զօրավարն։

Պ. Յոյժ իսկ։

Հ. Բեր արդեւք՝ առ 'ի սիրելոյն Արամազդայ՝ եթէ ոք հարցցէ զմեզ ու մարմնոյ բարի օրինադիրն է և բաշխողն, զինչ են այսոքիկ զոր բաշխելով առ մարմինն վեհագոյն զսա գործիցեն, ասասցո՞ւք արդ բարեւք և ողիւք տալով պատասխանի, եթէ սնունդ և վաստակք՝ ոմանքն աճեցուցանելով, և միւսիւք կրթելով, և բաղկացուցանելով զնոյն մարմինս։

Պ. Այսպէս իսկ։

Հ. Ապ'եթէ յետ այսորիկ հարցցէ զմեզ թէ զինչ երբեք իցեն այն իսկ, զոր բարի օրինադիրն և բաշխողն՝ բաշխելով առ հոգին, վեհագոյն զսա գործիցէ, զի՞նչ արդեւք պատասխանի տալով ոչ ամաչիցեմք՝ վասն մեր նոցունց և վասն հասակաց մերոց։

Պ. Ոչ ունիմ տակաւին զայս ասել։

Հ. Իսկ արդ գարշելի զհոգւոյ մերոյ յորում եր-կաքանչիւրքն երևին սովաւ՝ ոչ գիտել, այսինքն է յորում են բարիքն և յուրիքն, և զմարմնոյ իսկ և զայլոցն քննել։

